ՀԱՄԱՌՕՏ

# ՎԱՐՔ ՍՐԲՈՑ



ԵՐԿՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ



ՎԵՆԵՏԻԿ

Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ

1900

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Աստուծոյ իրեն հաւատարիմ ծառայից պատրաստած յաւիտենական կենաց արժանի ըլլալու, և մարդուս երկրիս վրայի սակաւօրեայ փորձանգալից պանդըխտութեանը ճամբէն անխոտոր անցնելու. համար, սուրբ եկեղեցին մեզի զանազան լուսատու առաջնորդներ կը ցուցընէ սրբոց խումբը՝ որոնք Աստուծոյ սիրովը վառուած կտրեցին այս տաժանելի ճամբորդութիւնը, ու տեսակ տեսակ մահուամբ գնացին իրենց փրկչին հետ միանալու: Այս դիտմամբ սրբոց վարքերը գրուած են, և հին սովորութիւն էր, ինչպէս մեր ազգին մէջ ինչուան հիմայ տեղ տեղ կը տեսնենք, ամէն սրբոց տօնին օրը եկեղեցեաց մէջ անոնց վարքը կարդալ՝ հաւատացելոց սրտին եռանդը վառելու, և Աստուծոյ շնորհաց զօրութիւնը և մարդկային տկարութեան վրայ ունեցած ազդեցութիւնը ցուցընելու համար: Եւ յիրաւի, բարեպաշտ քրիստոնէի մը ասկէց աւելի մեծ մխիթարութիւն ու քաջալեր չկրնար ըլլալ, քան անոնց վարուցը մէջ տեսնելը թէ ինչպէս խաբէական ու փուճ բաներ են աշխարհային վաղանցուկ մեծութիւնն ու հաճոյքը՝ անանց կենաց համեմատութեամբը, որ մեր ճշմարիտ հայրենիքն է, ու անոր հասնիլը սրտերնուս միակ փափաքը պիտի ըլլայ:

Այս վախճանաւ հրատարակած ենք ազգերնուս տօնած սրբոց վարքը գրաբառ լեզուով, և անոր օգուտը

աւելի տարածել ուզելով բարեյիշատակ Ինճիճեան Հ. Ղուկաս վարդապետը, մեր մէջ աւելի ծանօթ եղած սրբոց վարքը աշխարհաբառ լեզուով հրատարակեց, և անոր պտուղը տեսնելով բարեպաշտ ու սրբասէր Անձ մը՝ ուզեց իր արդեամբքը անկէ դուրս մնացած ուրիշ անուանի սրբոց՝ և արևմտեան եկեղեցւոյ մէջ հռչակուած սրբուհեաց վարքը՝ նոյնպիսի ոճով ու գրքովս ազգերնուս ծանօթացընել։

Աստուած տայ որ այս համառօտութեանս ալ բարեպաշտ հաւատացելոց վրայ ըրած օգուտը տեսնենք, որով բարերարը իր ազնիւ սրտին, և մենք ալ մեր դոյզն աշխատութեան վարձքը առած կը սեպուինք։

# ՍՐԲՈՒՀԻ ՉԷՉԻԼԻԱ

Քրիստոնէութեան երրորդ դարուն ատենները քանի որ սուրբ եկեղեցին հալածանաց և նեղութեանց մէջ ըլլալով՝ իր սրբասէր որդւոցը արեամբը՝ իբրև երկնային ցօղով մը պարարելով՝ աւելի աճումն ու հաստատութիւն կ'առնուր, Կեկիլիա կամ Չէչիլիա անունով մաքրակենցաղ կոյս մը երևցաւ, որ իր սրբակրօն վարքովը ու պանծալի վկայական մահուամբը՝ եկեղեցւոյ պայծառութեանը վրայ նոր փառք մըն ալ աւելցուց։ Իր անունը թէպէտ և լատին եկեղեցւոյ մէջ շատ հռչակուած, ու իր պատուոյն համար չորրորդ դարէն ի վեր եկեղեցիներ ու վկայարաններ շինուած են, բայց լիակատար վարքն այնչափ ստոյգ չգիտցուիր։ Այս յայտնի է որ Հռոմայեցի էր Չէչիլիա ու մեծատուն և հարուստ ծնողաց զաւակ. ոմանք կ'ըսեն թէ ծնողքը քրիստոնեայ էին, ինքն ալ պզտիկուց բարեպաշտ դայեկաց խնամօքը դաստիարակած. ընդհակառակն՝ ոմանք, ինչպէս մեր ազգին յայսմաւուրքն ալ, հեթանոս ծնողաց զաւակ կը համարին զսրբուհին. սակայն առջի կարծիքը աւելի ընդհանուր ու հաւանական կ'երևնայ։

Ազնուական ու աղէկ դաստիարակութիւն մը ունեցաւ Չէչիլիա, ինչպէս որ իր մեծազգութեանն ալ կը վայլէր. բարեպաշտութեան հետ ուսմունք ու գիտութիւն ալ սորվելով՝ մտացը բարեմասնութիւնները աւելի կերպով մըն ալ պայծառացուց. աշխարհային ուրիշ մխիթարութեանց ալ կարօտ չըլլալու համար, նուագարան զարնել սորվեցաւ, որ թէ՛ իրեն անմեղ զբօսանք մը եղաւ, և թէ անով կը փառաբանէր զԱստուած. անոր համար այս սրբուհին նուագածուաց ու երաժըշտաց պաշտպան բռնած են արևմտեայք։

Չէչիլիայի արտաքին տեսքն ալ հոգւոյն ազնուութեանը համեմատ ըլլալով՝ շատ մեծամեծներ իրենց որդւոցը հարսնացընել կ'ուզէին. բայց սրբուհին մշտնջենաւոր կուսութիւն ուխտած ըլլալով՝ Քրիստոսի իր փըրկչին հարսնանալը՝ ամէն աշխարհային խաբէական խոստումներէն վեր սեպած էր։ Իր առաջադրութեանը մէջ հաստատուն կենալու փափաքովը վառուած՝ սկսաւ ծածուկ ճգնութիւններ ընել, ու պաքերով և անդադար աղօթքներովը սատանեան ամըչցընել կը ջանար։

Բայց երբոր չափահաս եղաւ Չէչիլիա, ծնողքը զինքը աշխարհք մտցընելու ետևէ սկսան ըլլալ. աղջկանը կամքն ալ գիտնալով՝ չէին համարձակեր իրեն դիմացը խօսք մը բանալ աս բանիս վրայ. ուստի իրմէ ծածուկ՝ Վալերիանոս անունով ազնուատոհմ ու մեծատուն պատանւոյ մը հետ նշանեցին զինքը,

որ իր ազնիւ կատարելութիւններովը Ջէյլի-
կիայէն շատ վար չէր մնար։ Սրբուհին իր
նշանուիլն ու հարսանեաց պատրաստութիւնը
տեսնելով՝ թէպէտ շատ տակն ու վրայ եղաւ,
բայց ծնողացը հրամանին ալ դէմ դնել չու-
զելով՝ լռելեայն հաւանութիւն մը ցըցուց ա-
նոնց առջևը։ Իր բոլոր յոյսը Աստուծոյ վրայ
դրած ըլլալով, առանձին տեղ մը քաշուեցաւ
ու արտասուօք կը խնդրէր որ իր կուսու-
թեան ծաղիկը Աստուած անփորձ պահէ աշ-
խարհիս հրապուրանաց փտանգաւոր հողմե-
րէն։ Հառաչանօք աղօթելու ատենը հրեշտակ
մը երևցաւ Ջէյլիխայի, ու քաջալերելով զին-
քը, «Մի՛ վախեր, ըսաւ. կուսութեանդ պա-
հապան դրաւ զիս Աստուած. Վաղերիանոս
նշանածդ ալ քեզի հետևելով, ինքն ալ քու
ճամբադ պիտի բռնէ»։ Սրբուհին այս խօս-
քերով սիրտ առած, ուրախութեամբ կ՚օրհ-
նէր զԱստուած, ու հարսանեաց հանդիսին
օրուանը կը սպասէր. ծնողքն ալ անոր ցը-
ցուցած ուրախութիւնը տեսնելով, կարծեցին
թէ միտքը փոխուեր է, ուստի ամէն փա-
ռաւորութեամբ հարսնիքը կատարեցին։

Հանդիսին գիշերը Ջէյլիխա իր փեսին հետ
առանձնանալով, «Տէր իմ, ըսաւ, խօսք մը
ունիմ քեզի զուրցելիք. խնդրեմ՝ որ ուրիշը
չգիտնայ»։ Վաղերիանոս երբոր իմացաւ,
«Ես քրիստոնեայ եմ, ըսաւ սրբուհին, ու ինք-
զինքս մանկութենէս ի վեր իմ Աստուծոյս
նուիրած՝ մշտնջենաւոր կուսութեամբ. ինքն
ալ ինծի երկնային հոգի մը պահապան խրկեց,

որ իմ կուսութիւնս անարատ պահել խոստացայ։ Աստուծոյ կամացը դէմ մի՛ կենար, տէր իմ. չըլլայ թէ գլխուդ փորձանք մը բերես»։ Վաղերիանոս յանկարծակիի գալով ի՛նչ ըսելիքը չէր գիտեր. քիչ մը ատեն մտածելէն ետքը, «Քոյր իմ, ըսաւ, արդեօք ես ալ այդ երկնային հոգին կրնա՞մ տեսնել, որպէս զի անով զուրցածներուդ ճշմարտութիւնը ճանչնամ։ — Ինչո՞ւ չէ, կրկնեց սրբուհին. բաւական է որ սուրբ մկրտութեամբ՝ հեթանոսութեանդ աղտերը սրբես»։ Աստուծոյ շնորհքը ծագեց Վաղերիանոսին սրտին մէջ, որ մէկէնիմէկ յանձն առաւ սրբուհւոյն առաջարկութիւնը. ուստի Չէչիլիա թուղթ մը գրեց Ուրբանոս կամ Ուրկիանոս սրբազան քահանայապետին, որ հալածանաց վախէն Հռոմայ գետնադամբանները պահուըտեր էր. ու իր փեսային ձեռքը տալով այն գիրը՝ քահանայապետին խրկեց զինքը։ Ուրբանոս սրբուհւոյն գրած թղթէն ամէն բան տեղն ի տեղը իմանալով՝ ուրախութեան արցունքով մը օրհնեց զԱստուած, որ հաճեցաւ իր աղախնոյն ձեռքովը մոլորելոյ մը փրկութեան լուսաւոր ճամբան ցուցընել։ Նոյն ատեն յարգելի ծերունի մը երեցաւ՝ որ վերէն ի վար ճերմակ հագեր էր ու բոլոր լուսով պայծառացած. ձեռքն ալ ոսկեգիր թուղթ մը կար։ Վաղերիանոս երբոր վախէն մարեցաւ ընկաւ, ծերունին վեր վերցուց զինքը, ու ձեռքի թուղթը անոր տալով «Առ կարդա» ըսաւ։ Թղթին վրայ Պօղոս առաքելոյն այս

խօսքերը գրուած են եղեր. «Մի տէր, մի հաւատք, մի մկրտութիւն». — «Այսոնց հաւատալու որ ըլլաս, ըսաւ ծերունին, մկրտութեան սուրբ խորհուրդը կրնաս ընդունիլ»: Այս խօսքն ըսելով՝ աներևոյթ եղաւ առանց իր ով ըլլալը իմացընելու:

Քահանայապետը հարցուց Վաղերիանոսին թէ «Կը հաւատա՞ս կարդացածիդ». և անոր հաստատուն հաւատքը տեսնելով՝ շաբաթ մը իր քովը պահեց զինքը, ու քրիստոնէական կրօնից վարդապետութիւնները սորվեցընելով՝ մկրտեց ու իր տունը դարձուց: Վաղերիանոս տուն որ եկաւ՝ տեսաւ որ Չեչիլիա աղօթքի հետ էր, քովն ալ լուսաւոր և հրեղէն բոցաթև հոգի մը կայնած ու ձեռքը երկու պսակ, որոնցմէ մէկը վարդէ՝ միւսն ալ շուշանէ հիւսած էին. «Աս պսակները ձերն են, ըսաւ հրեշտակը, ու յաւիտենական փըրկութեան հասնելնուդ առհաւատչեայ նշաններ»: Ետքը Վաղերիանոսի դառնալով, «Աստուած կը հրամայէ քեզի, ըսաւ, որ ի՛նչ շնորհք որ խնդրես իրմէ իմ բերնովս՝ պիտի կատարէ»: Վաղերիանոս ուրախութեամբ հրեշտակին ոտքը իյնելով, «Տէր իմ, ըսաւ, Տիբուրտիոս անունով սիրելի եղբայր մը ունիմ. անոր քրիստոնէական սուրբ կրօնքն ընդունելը՝ ինծի համար մեծ պարգև է»: Հրեշտակը խոստանալով որ անոր աստուածահաճոյ բաղձանքը կատարէ, աներևոյթ եղաւ:

Չեչիլիա ու Վաղերիանոս երբոր այս աս-

տուածային յայտնութեան վրայ իրարու հետ
կը խօսէին և կ'ուրախանային, Տիբուրտիոս
վրայ հասու, ու զարմանալով մը այն նորօ-
րինակ անուշահոտութեան պատճառը հար-
ցուց: Վաղերիանոս իր եղբօրը գիրկն իյնե-
լով, «Սիրեցեալդ իմ, ըսաւ, այս բուրումը
երկնային անուշահոտութիւն մըն է որ Քրիս-
տոս իր հաւատացեալ ծառայից պատրաս-
տեր է. փրկութեան ճամբան բաց է առջևդ,
սիրելի. դարձիր դու ալ ու սուրբ մկրտու-
թեամբ՝ քրիստոնէական հաւատոց ճշմարիտ
լոյսը ճանչցիր»: Տիբուրտիոս զարմանալով,
«Եղբայր իմ, ըսաւ, չեմ հասկընար ի՞նչ կը
զրուցես, կամ թէ որդեօք երա՞զ է տեսածս,
ճշմարիտ աստուածները թողլով՝ խաչելեալ
հրէի՞ մը պիտի հետևիս»: «Քրիստոնէութիւ-
նը մի՛ արհամարհեր, ըսաւ Վաղերիանոս.
յիրաւի ինչու ան հիմա երազ էր տեսածս.
փառք Աստուծոյ որ կռապաշտութեան խոր
խաւարն ու քունը ինծմէ հալածեց». ու գլխէն
անցած ամէն բաները տեղն ի տեղը իր եղ-
բօրը պատմելէն ետքը, սրբուհւոյն յանձնեց
որ անոր ալ փրկութեան ճամբան ցուցընէ:

Սրբուհին իր աստուածուսոյց բերանը բա-
նալով՝ քրիստոնէական սուրբ կրօնքին վար-
դապետութիւնը Տիբուրտիոսի առջևը դրաւ:
Ան ալ երկար ատեն զարմանալով մը մտիկ
ընելէն ետքը, աստուածային շնորհքով լու-
սաւորուած՝ բոլորով սրտի. Քրիստոսի հա-
ւատքը ընդունեցաւ, և Զէչիլիայի պատուի-
րելովը՝ Ուրբանոս քահանայապետին երթա-

լով՝ սուրբ մկրտութիւնը ընդունեցաւ։ Անկէ ետքը այս երկու հարազատ եղբարքը՝ իրենց Աստուծմէ ընդունած մեծ շնորհաց յարգը աղէկ ճանչնալով, հաստատութեամբ մտքեր-նին դրին որ միայն ոգւով ամէն ջանք ը-նեն Աստուծոյ երախտեացը ապերախտ չգըտ-նուելու. առատ ողորմութիւն կուտային աղ-քատաց. իրենք էին հաւատոյ համար վկայուած սուրբ մարտիրոսաց մարմիններն ժողվողնե-րը, և բանտուած հաւատացեալները մխի-թարողքը ու սիրտ տուողները։

Հռովմայ Ալմակիոս քաղաքապետին ականջն հասնելով ասոնց բռնած ճամբան, առջևը կանչեց զիրենք, ու քաղցրութեամբ մը «Ձեր ազնուականութեանն ու մեծութեանը կը վայ-լէ՞, ըսաւ, որ երթաք քրիստոնեայ ըսուած խառնաղանճ ու տգէտ ամբոխին հետ խառ-նուիք ու անոնց սէր ու մեծարանք ցուցը-նէք. միթէ ուրիշ մարդ կը պակսի՞ թէ որ ողորմութիւն ընել ուզենաք»։ Տիբուրտիոս առաջ անցաւ, ու «Տէր իմ, կ'երևնայ թէ, ըսաւ, քրիստոնեայքը լաւ ճանչցած պիտի չըլլաս որ վրանին այսպէս գէշ կը խօսիս. իրենց աստուածը քու սուտ աստուածներուդ ամենևին չնմանիր. վարդապետութիւննին ալ ձեր ունեցածէն բոլորովին տարբեր, որ սրբութեան և առ Աստուած կ'առաջնորդէ»։ Զարմացաւ քաղաքապետը, և հետը երկայն բարակ վիճաբանելէն ետքը՝ երբոր Տիբուր-տիոսի մտաց հաստատութիւնը տեսաւ, հրա-մայեց որ տանին բանտ դնեն զինքը. «Գուցէ

բանտին տանջանքներուն, ըսաւ, խելքը գլուխը կարենանք բերել»։

Ալմակիոս Վալերիանոսի դարձաւ «Եղբօրդ յիմարութիւնը տեսա՞ր», ըսաւ։ Վալերիանոս պատասխանեց. «Երանի՛ իրեն որ Քրիստոսի վրայ ունեցած սիրոյն համար՝ յիմար կոչուելու արժանի եղաւ. բայց յիմարը դուք էք՝ որ քրիստոնէից պաշտած ճշմարիտ աստուածը թողլով՝ անշունչ արարածոց քարի ու փայտի կ'երթաք երկրպագութիւն կ'ընէք»։ Բարկացաւ քաղաքապետը, Տիբուրտիոսն ալ բանտէն հանել տուաւ, ու հրամայեց որ երկուքն ալ անխնայ ծեծեն։ Այն խիստ տանջանացը ատեն երանելի հարազատքը մէկմէկու սիրտ կուտային ու Աստուծոյ շնորհակալ կ'ըլլային որ իր սուրբ անուանը համար չարչարանք ու նեղութիւն քաշելու արժանի եղան։ Դատաւորը երբոր տեսաւ թէ սաստիկ ծեծ ուտելնուն կիսամեռ ընկան՝ հրամայեց որ վերցընեն ու նորէն բանտ տանին։

Քաղաքապետին երկրորդը խորհուրդ տըւաւ Ալմակիոսի որ շուտով երկու եղբարքն ալ սաստիկ տանջանքներով մեռցընէ. «Այն ատեն, ըսաւ, ասոնց ունեցած չունեցածն ալ մեզի կը մնայ»։ Յանձն առաւ Ալմակիոս ու պատուիրեց որ Արամազդայ մեհեանը տանին զիրենք և զոհելու ստիպեն, ու դէմ դառնալու որ ըլլան՝ մահապարտ սեպուին. ուստի Մաքսիմոս գլխաւոր դահճապետին յանձնեց որ աս հրամանը ի գործ դնէ։ Մաք-

սիմոս այն երանելեաց ուրախութիւնն ու ցնծութիւնը տեսնելով, «խնդրեմ, ըսաւ, այդ ձեր բերկրութեանը պատճառը ի՞նչ պիտի ըլլայ. մահուան դառնութիւնը ի՞նչպէս չէք յիշեր. ձեր մեծութեանն ու հարստութեանը յիշատակը ի՞նչպէս սրտերնիդ չմորմոքեր»։ Տիբուրտիոս դարձաւ «Սիրեցեալդ իմ, ըսաւ, աշխարհիս մեծութիւնն ու հարըստութիւնը ծուխի մը պէս կ՚անցնին կ՚երթան. վա՜յ անոր որ այս կեանքիս հետ կապուեր է. երջանիկը մենք ենք որ կ՚երթանք յաւիտենական հանգիստն և ուրախութիւնը գտնելու»։ Մաքսիմոս «Ի՞նչ կ՚ըսէք, ըսաւ. մեռնելէն ետքը կեանք ըսելը ի՞նչ կը նշանակէ։ — Յաւիտենական կենաց համար է ըսածս, պատասխանեց Տիբուրտիոս. ամենաբարին Աստուած՝ որ քրիստոնեայքս կը պաշտենք, իր հաւատարիմ ծառայից անմահ հոգւոյն անանցանելի կեանք մը պատրաստեր է անդին աշխարհքը. ափսոս անոնց որ քրիստոնէութիւնը ի՞նչ ըսել է չեն ճանչնար. այնպիսեաց համար սարսափելի տանջանք ու կրակ պատրաստուած է, որուն մէջ պիտի տանջին յաւիտեան»։ Աստուծոյ շնորհքը դահճապետին սիրտն ալ լուսաւորեց որ Տիբուրտիոսէն աս և ասոր նման խօսքերը լսելով, «Ես ալ, ըսաւ, ձեր աստուածը կը պաշտեմ, ու քրիստոնեայ կ՚ըլլամ»։ Եւ գըլխատման տեղը չտարած՝ իր տունը հրաւիրեց երանելի վկայքը. Զէչիլիան ալ հոն կանչելով, Աստուծոյ շնորհքովը սրբուհին դահճապետին և իր

ընտանեաց սիրտն ալ լուսաւորեց ու յորդորեց որ Քրիստոսի հաւատքը ընդունին։ Քահանայ մըն ալ կանչել տուաւ զիրենք մըկըրտել տալու համար։

Ալմակիոս երբոր աս բանս ալ լսեց՝ բարկութենէն կրակ կտրելով՝ մէկէն մարդիկ խրկեց որ երթան Տիբուրտիոսն ու Վաղերիանոսը բռնեն, և քաղաքէն դուրս հանելով ստիպեն զիրենք որ քրիստոնէութիւնը թողուն. ու թէ որ չհաւանին՝ մէկէն նոյն տեղը սպաննուին։ Երանելի հարազատքը չէ թէ միայն յանձն չառին անոր խօսքին մտիկ ընելու, հապա նաև զարմանալի արութեամբ ամէն տանջանքի համբերելով՝ նահատակուեցան. Մաքսիմոս ալ ծեծի տակ մեռաւ։ Ասոնց նահատակութիւնը լսելով Չէչիլիա, քանի մը հաւատացեալք հետն առած գիշեր ատեն սուրբ վկայից մարմինը վերցընելով տարաւ պատուով թաղեց։

Ատենը հասաւ որ սրբուհին ալ իր վկայական մահուամբը՝ անցաւոր կենաց աստուածահաճոյ ընթացքը լմընցընէ, և իրեն խոստացուած մարտիրոսական պսակը ընդունի։ Վասն զի Ալմակիոս աչքը Տիբուրտիոսի և Վաղերիանոսի ընչիցը վրայ տնկած ըլլալով, երբոր լսեց թէ Չէչիլիա անոնց ունեցածը չունեցածը աղքատաց բաժներ է, հրամայեց որ մէկէն բռնեն զինքը ու բանտ դնեն։ Բանտ երթալու ատենը այնպիսի ուրախութիւն մը կ'երևնար Չէչիլիայի երեսը որ պահապան զինուորները զարմանալնէն ի՛նչ ընելիքնին

չէին գիտեր. մէկալ կողմանէ ալ սրբուհւոյն ծաղկահասակ տարիքը և գեղեցկութիւնը տեսնելով՝ լալով կը յորդորէին որ մէկդի դնէ յամառութիւնը ու դատաւորին հնազանդի։ Սրբուհին դարձաւ «Մի՛ լաք, ըսաւ, սիրելիք, մանաւանդ թէ աւելի ուրախացէք ինծի հետ՝ որ արժանի պիտի ըլլամ Քրիստոսի սիրոյն համար չարչարանք ու նեղութիւն քաշել. կը ցաւիմ՝ վրանիդ որ իմ երջանկութիւնս չէք կրնար ըմբռնել, անոր համար մտքերնիդ դրեր էք թէ ըրածս յամառութիւն է. բայց ի՞նչ կ'ըսէք, անխելք չէ՞ք կոչեր այն մարդը որ կտոր մը տիղմը ոսկւոյ հետ կը փոխէ, ու փուճ ծաղիկ մը անգին մարգարտէ վեր կը սեպէ. գիտցած ըլլաք որ նոյնպէս խենթութիւն է՝ անցաւոր ու սակաւօրեայ կենաց համար՝ յաւիտենական ու անպատում կեանքը ձեռքէ փախցընել։ Ես ահաւասիկ այն անմահ կենաց արժանի պիտի ըլլաս, և ինչո՞ւ իմ ուրախութեանս վրայ կը զարմանաք»։ Ձինուորներէն շատը Ջէչիլիայի հաստատուն հաւատքը տեսնելով, իրենք ալ կռապաշտութենէ ետ կեցան. անոնց մէջն էր նաև Գորդիանոս անունով ազնուականը, որ սրբուհւոյն մեռնելէն ետքը՝ իր տունը եկեղեցի շինել տուաւ։

Ջէչիլիա քանի մը օր բանտին մէջ կենալէն ետքը՝ դատաւորը կանչել տուաւ զինքը, և անոր վայելչադէմ կերպարանքը և խելացի վարմունքը տեսնելով՝ կը ջանար որ համոզէ զինքը աստուածոց երկրպագութիւն ընելու

և մանուընէ ազատել տալու համար։ Բայց երբոր լսեց թէ այնչափ բազմութեան ալ դառնալուն պատճառ եղեր է, գութը բարկութեան դարձուց և սկսաւ խստութեամբ խօսիլ հետը։ Սակայն Ջէչիլիայի համարձակախօսութիւնը տեսնելով, «Կ'երևնայ թէ, ըսաւ, դեռ չես գիտեր թէ կենացդ ու մահուանդ տէրը ես եմ»։ Այն ատեն սրբուհին ծանրութեամբ մը Ալմակիոսի հետ խօսիլ սկսաւ, ցուցընելով անոր թէ իր ունեցած իշխանութիւնը միայն անցաւոր կենաց վրայ է. ու թէ Քրիստոսի համար այս կեանքը կորսընցընողը՝ մեծ երջանկութեան պիտի հասնի անդիի աշխարհքը. «Քրիստոնէից աստուածն է, ըսաւ, իմ ու քու կենաց տէրն ու արարիչը. իսկ ձեր պաշտած կուռքերը ունայնութիւնք են, որո՛նք մարդիկ ըսուելու ալ արժանի չեն»։ Դատաւորը սրբուհւոյն աստուածները անարգելուն չդիմանալով, մէկէն հրաման տուաւ որ ջեռուցեալ բաղնիքի մը մէջ բանտ դնեն որ տաքութենէն մեռնի։ Բայց Ջէչիլիա հրաշքով մը այն տաք տեղւոյն մէջ իրեք օր և իրեք գիշեր անվնաս մնաց. աս որ տեսաւ Ալմակիոս՝ հրամայեց դահճին որ երթայ նոյն տեղը գլխատէ զինքը։ Դահիճը շատ աշխատեցաւ սրբուհին գլխատելու համար, ու քանի մը անգամ սրովը չարաչար վիրաւորելէն ետքը երբոր տեսաւ որ չմեռնիր՝ յուսահատեցաւ թողուց գնաց։ Ուստի Ջէչիլիա իրեք օր ալ ապրելէն ետքը՝ խաղաղութեամբ հոգին աւանդեց, և Ուր-

բանոս որբազան քահանայապետը պատուով թաղել տուաւ զինքը։

Զէյթիփայի փառաւոր նահատակութիւնը 232ին եղաւ, կ'ըսեն, նոյեմբեր ամսուն քանուերկուքին. իսկ մեր ազգին յայսմաւուրքը տրէ ամսոյն 20ին կամ 21ին կը դնեն, որ նոյեմբերի 24 կամ 25 ըսել է։



# ՍՐԲՈՒՀԻ ԱԳԱԹԱ

Դեկոս կայսեր հալածանաց ատենը՝ Սիկիլիա կղզւոյն Պանորմա կամ՝ Փալէրմոյ քաղաքին մէջ շատ անուանի էր Ագաթա անունով մեծազգի կոյսը իր խելքին և գեղեցկութեանը համար։ Կռապաշտները սրբուհւոյն ի՛նչ հաւատքի տէր ըլլալը իմանալով՝ Կատանա քաղքին Կուինտիանոս դատաւորին մատնեցին զինքը։ Ագաթա աներկիւղ քաջութեամբ մը՝ առանց դատաւորին քննութեանը սպասելու՝ համարձակ խոստովանեցաւ իր քրիստոնէութիւնը, և թէ այս իր սուրբ հաւատոյը մէջ հաստատ մնալու համար պատրաստ է ամէն տանջանք և նեղութիւն՝ ինչուան մահն ալ աչք առնելու։ Դատաւորը Ագաթայի վայելուչ կերպարանքը տեսնելով սիրտը առաջ չէր երթար որ տանջել տայ զինքը. ուստի յուսալով որ գուցէ իր միտքին հաստատութենէն ետ կենայ՝ Ափրոդիսիա անունով չարաբարոյ կնկան մը յանձնեց զինքը, որ ամէն ջանք ընէ երկրաւոր խոստմունքներով Ագաթայի միտքը փոխել տալու. Ափրոդիսիա շատ փորձերէն ու հրապուրանքներէն ետքը՝ սրբուհւոյն մտաց հաստատութիւնը տեսնելով՝ դա-

տաւորին առևջը հանեց զինքը, ու «Մէկ կերպով մը չկրցայ, ըսաւ, ասոր յաղթել. վասն զի պարգև, խոստմունք, ոսկի ու արծաթ՝ իր աչքը մէկ ստըկի մ՚ալ չեն արժեր»: Կուինտիանոս աչքը կանչեց սըրբուհին, ու նախ քաղցրութեամբ՝ ետքը սպառնալեօք ալ սկսաւ հետը խօսիլ. «Դուստր իմ, ըսաւ, ի՞նչ պիտի ըլլայ այդ յամառութեանդ պատճառը. ինչո՞ւ չես հնազանդիր՝ մեր անմահ աստուածոց երկրպագութիւն ու զոհ մատուցանելու»: Սրբուհին Ագաթա «Յիսուսի փրկչին աղախինն եմ, ըսաւ, ու զինքը միայն կը պաշտեմ. վասն զի ինքն է միայն ճշմարիտ Աստուած. իսկ ձեր պաշտած ոսկեղէն արծաթեղէն, քարէ ու փայտէ արձանները մէյմէկ սատանայ են»: Բարկացաւ կուինտոս՝ ու աստուածոց արհամարհանացը չդիմանալով՝ հրամայեց որ անխնայ ապտակեն զսրբուհին: Ետքը իրեն դառնալով՝ «Դեռ վրադ սէր ունիմ, ըսաւ. ուստի նայէ որ սէրս անգթութեան չփոխես. զոհէ աստուածոց, ապա թէ ոչ՝ սաստիկ տանջանքներով պիտի մեռցընեմ զքեզ»: Պատասխան տուաւ Ագաթա. «Իմ օգնականս Աստուած է. ատ սպառնալիքներով մի՛ կարծեր թէ կարենաս զիս իմ հաւատքէս փոխել. մարմինս քու ձեռքդ է. ի՞նչպէս որ կ՚ուզես զիս տանջէ, որպէս զի կարենամ՝ հոգւոյս յաւիտենական փրկութիւնը գտնել»: Կուինտիանոս հրաման տուաւ որ բանտ դնեն զԱգաթա:

Երկրորդ օրը դիմացը բերել տուաւ զսըր-

բուհին, ու նորէն յորդորել սկսաւ՝ որ մտիկ ընէ ու աստուածոց զոհ մատուցանելէն ետ չկենայ։ Բայց երբոր տեսաւ որ փոխանակ համոզուելու՝ դատաւորին առջեւը դնել սկսաւ կռապաշտից համար պատրաստուած յաւիտենական դատապարտութիւնը ու տեսակ տեսակ տանջանքները, պատուիրեց դահճաց որ անխնայ չարչարեն զսրբուհին։ Անոնք ալ առին ու բարձր տեղէ մը կախելով՝ չարաչար ծեծելէն ետքը, տաք տախտակներու վրայ պառկեցուցին ու կողերը քերեցին։

Կուինտիանոս սրբուհւոյն քաշած տանջանքները տեսնելով՝ սիրտը կտոր կտոր կ՚ըլլար. «Դուստր իս, կ՚ըսէր, յամառութիւնդ թող, ու խնայէ քու հասակիդ և գեղեցկութեանդ»։ Ագաթա զուարթութեամբ մը պատասխան տուաւ. «Ուրախ ես, ըսաւ, որ փրկչիս սիրոյն համար տանջուելու մեծ պարգևին արժանի եղայ. ցորենը ինչուան չծեծեն չմաքրեն՝ շտեմարանի մէջ չեն պահեր»։

Կատղեցաւ դատաւորը, ու երկար տանջանքներով սրբուհւոյն երկու ստինքն ալ կտրել տալէն ետքը՝ նորէն բանտ դնել տուաւ, խստիւ պատուիրելով բանտապետին որ չըլլայ թէ քովը մարդ հանդիպցընէ։

Կէս գիշերուն ծերունի մը երևցաւ կուսին, որուն համար ոմանք, ինչպէս մեր յայսմաւուրքն ալ, Պետրոս առաքեալն էր կ՚ըսեն. ձեռքն ալ տեսակ մը դեղ բռներ էր։ Ագաթա երբոր տեսաւ որ ծերունին իրեն կը մօտենայ, անոր ով ըլլալը հարցուց։ Ծերու-

նին «Զքեզ քու վերքերէդ բժշկելու եկեր եմ, ըսաւ։ Աս որ լսեց սրբուհին վախնալով մը պատասխան տուաւ. «Իմ բժիշկս Քրիստոսն է» ըսաւ. «Ես ալ Քրիստոսի աշակերտն եմ» ըսաւ ծերունին, ու դեղը անոր վիրացը վրայ դնելով՝ բժշկեց ու ինքն աներևոյթ եղաւ։ Սրբուհւոյն հետ բանտարկուած մարդիկը աս տեսիլքը տեսնելով շատ վախցան։ Տեսլենէն ետքը Ագաթայի մարմնոյն վրայ վէրքի պզտի նշան մ'ալ չմնաց. բոլոր բանտն ալ երկնային լուսով մը պայծառացաւ։ Պահապաններն եղած բաներէն սարսափելով՝ վախերնէն բանտին դռները բաց թողուցին ու իրենք ելան փախան. ան ատեն Ագաթայի բանտակիցքը սկսան զինքը յորդորել որ աս առիթը չկորսընցընէ, ու մէկէն ելլէ փախչի. «Քաւ լիցի, ըսաւ սրբուհին. Աստուած որ զիս այսչափ տանջանաց մէջ հաստատուն պահեց, յուսամ որ մարտիրոսութեան պսակին ալ արժանի պիտի ընէ»։

Վրան չորս օր անցնելէն ետքը, Կուինտիանոս նորէն առջևը բերել տալով Ագաթան, երբոր անոր հրաշալի բժշկութիւնը տեսաւ, զարմանալէն ի՛նչ ըսելը չէր գիտեր։ «Շիտակը զրուցէ, ըսաւ, ո՞վ բժշկեց զքեզ»։ Պատասխանեց սրբուհին. «Քրիստոս որդին Աստուծոյ»։ Բարկացաւ դատաւորը «Դեռ կը յանդգնի՞ս, ըսաւ, թշուառական, այդ անիծեալ անունը բերանդ առնուլ»։ Սրբուհին ըսաւ. «Օրհնեալ է Քրիստոսի տեառն մերոյ և փրկչին սուրբ անունը. ես ալ իրեն աղա-

խինն եմ ու սուրբ շնորհացը և ձեռնտուութեանը կարօտ»։ Կուինտիանոս «Տեսնե՛ք, ըսաւ, այդ փրկիչը պիտի կարենա՞յ ազատել զքեզ իմ ձեռքէս»։ Ու հրամայեց որ գետնին վրայ կրակ տարածեն, վրան ալ սրածայր խեցիի կտորուանք, ետքը սրբուհին մերկացուց և անոնց վրայ պառկեցընել ու քաշկըռտել տուաւ։

Նոյն ատեն Աստուծոյ մասնաւոր հրաշքովը՝ Սիկիլիոյ Ետնա հրաբուխ լեռը բո՛ւնկեցաւ, ու քաղաքին մէջ մեծ աւերմունքներ ընելով՝ փլատակացը տակ շատ մարդիկ մեռած մնացին։ Ժողովուրդը այս սարսափելի պատուհասը տեսնելով՝ բազմութեամբ դատաւորին տունը վազեցին, ու սպառնալով կը պոռային որ շուտ ընէ ու այն անմեղ աղջիկը տանջելէն ետ կենայ. Կուինտիանոս երբոր ժողովրդեան աս սպառնալիքը լսեց՝ Ագաթան մէկէն բանտ դնել տուաւ, ու ինքն ալ վախէն գնաց ծածկուեցաւ։

Սրբուհին բանտն որ մտաւ՝ ձեռուըները երկինք վերցընելով, «Տէր իմ, ըսաւ, և Յիսուս փրկիչ, որ այսչափ տանջանաց և նեղութեանց մէջ իմ կուսութիւնս անարատ պահեցիր, կ՚աղաչեմ փրկէ զիս աշխարհիս խաբէութիւններէն, ժամ մը առաջ սուրբ արքայութեանդ արժանի ընելով։ Զիս չարչարողներուն շնորհքդ տուր որ իմանան իրենց մոլորութիւնն ու կորուստը՝ ու ճանչնան զքեզ. ընդունէ իմ հոգիս ալ որ քու սուրբ տեսլեանդ կը կարօտի»։ Ագաթա այս աղօթքը

զրուցելու ատենը խաղաղութեամբ հոգին աւանդեց՝ փետրուար ամսուն հինգերորդ օրը 251 թուոյն։ Հաւատացեալք եկան սրբուհւոյն մարմինը անուշահոտ եղերով օծեցին, ու մաքուր կտաւներով նոր գերեզմանի մը մէջ ամփոփեցին, և իր գերեզմանէն շատ հրաշքներ տեսան, ինչպէս ինչուան հիմա ալ չեն պակսիր։ Ինքը մասնաւոր պաշտպան սեպուած է կատանացւոց և բոլոր Սիկիլիա կղզւոյն, Ետնա լեռան հրաբուխէն եղած փնասուցը դէմ։

Կուինտիանոս դատաւորը սրբուհւոյն մեռնիլը լսելով՝ հետը մարդիկ առաւ, որպէս զի անձամբ Ագաթայի տունը երթայ անոր հարստութիւնները յափշտակելու համար։ Բայց երբոր լաստով գետէ մը կ'անցնէր՝ Աստուծոյ պատուհասը վրան հասաւ. վասն զի գետին մէջ իյնելով՝ խեղդուեցաւ, և մարմինն ալ չկրցան գտնել։ Հեթանոսք այս անակնունելի դիպուածը տեսնելով շատ վախցան, ու սկսան սրբուհւոյն տնեցւոցը և ազգականացը վրայ աղէկ աչքով նայիլ՝ որ չըլլայ թէ պատիժ մը հասնի գլխընուն։

Երբոր սրբուհւոյն վկայական մահուան տարեդարձը մօտեցաւ՝ փետրուար ամսուն առջի օրը Ետնա լեռը բռընկեցաւ, ու լաւայի հրեղէն գետը սկսաւ դէպ ի քաղաքը վազել։ Կատանացիք Ագաթայի գերեզմանին ծածկոյթը առնելով՝ տարին լաւային վազած տեղը դրին, որ մէկէնիմէկ պաղեցաւ ու ալ առաջ չկրցաւ երթալ։

# ՍՐԲՈՒՀԻ ԼՈՒՉԻԱ

Չորրորդ դարուն մէջ Դիոկղետիանոս կայսեր հալածանաց ատենն էր սրբուհի Լուկիա կամ՝ Լուչիա, այս ինքն՝ լուսաւոր ըսուած պանծալի վկայուհին, Սիկիլիա կղզւոյն Սիրակուզա քաղքէն։

Հինգ տարեկան էր Լուչիա երբոր իր հայրը մեռաւ. և որովհետև միամօր էր իր ծնողացը՝ Եւտիքիա մայրը ամէն հոգ ըրաւ քրիստոնէավայել և ազնուական դաստիարակութիւն մը տալու անոր։ Սրբուհին հասկըցաւ իր մօրը խրատուցը ոյժը, և պզտիկուց սկսաւ բարեպաշտութեան և աղօթասիրութեան մասնաւոր եռանդ մը ստանալ. պարկեշտ ու նազելի կերպովն ալ ամէն տեսնողներուն սիրելի կ՚ըլլար։ Հոգւոյն գեղեցկութենէն զատ՝ բնութիւնը վայելուչ կերպարանք մը տուած ըլլալով Լուչիայի, գիտէր Եւտիքիա որ իր աղջիկը ուզողներ շատ պիտի գտնուին. իր ջանքը այն էր որ այնպիսւոյ մը հետ նշանէ զինքը՝ որ չըլլայ թէ Լուչիա սուրբ հաւատքը և ստացած ջերմեռանդութիւնը կորսնցընէ։ Եւ յիրաւի, քանի որ Լուչիայի տարիքն առաջ կ՚երթար՝ շատ մեծամեծներ եկեր էին ի-

րենց զաւակայը համար առնուլ զինքը. բայց մայրը անոնց միտք չընելով՝ ազնուական սեպհոյ մը որդւոյն հետ նշանեց իր աղջիկը, որ թէպէտ հեթանոս էր, սակայն Եւտիքիա անոր ազնիւ բնաւորութիւնը տեսնելով՝ յոյս ունէր որ ինքն ալ Լուչիայէն լուսաւորուի՝ քրիստոնեայ ըլլայ. կամ՝ գէթ չստիպէ իր զաւակը սուրբ հաւատքը ձգել ու կուռքերը պաշտել։

Սրբուհին մօրը բռնած կերպերէն իմացաւ անոր կամքը. բայց չուզելով զինքը վշտացընել՝ մանաւանդ որ տեռատեսութեան հիւանդութեամբն ալ կը տանջուէր, առջի բերան ամենեւին ձայն չհանեց. սակայն ինքնիրեն մտնջենաւոր կուսութիւն ուխտեց Աստուծոյ դիմացը, խոստանալով որ ինչուան մահն ալ աչքն առնու՝ այս իր ուխտէն ետ չկենալու համար։ Օր մը Եւտիքիա պսակուելու վրայ խօսք բացաւ իր աղջկանը առջեւը. Լուչիա պլպլելով, «Մայր իմ, ըսաւ, խնդրեմ՝ որ այսպիսի ծանր բանի մէջ չփութանք առանց մտածութեան գործ մը ընելու. դեռ տարիքս ալ չէ լցուած. զքեզ որչափ սիրելս ալ լաւ գիտես. ինչպէս պիտի կարենանք մէկզմէկ թողուլ։ Հիւանդութիւնդ մէկ կողմանէ զքեզ կը տանջէ, աս ցաւն ալ աւելնալու որ ըլլայ՝ արդեօք ի՞նչ պիտի ըլլաս. քիչ մը ատեն համբերէ՝ ինչուան որ Աստուծոյ շնորհօքը ունեցած հիւանդութիւնդ անցնի և անկէ ետքը կը մտածենք»։ Եւտիքիա՝ աղջկանը սիրտը կոտրել չուզելով, իր կամքին թողուց այս

բանը. բայց Լուչիա երբոր լսեց թէ սեպուհը մօրը ատէն ընկած ամէն ջանք կ'ընէ ժամ մը առաջ հարսնախօսութեան բանը լմընցը-նել՝ արտասուօք և ողբովք կ'աղաչէր Աստու-ծոյ որ խափանէ այս բանին գործադրու-թիւնը։

Շատ չանցաւ որ Լուչիայի մօրը հիւան-դութիւնը ծանրանալով՝ անկողին ձգեց զին-քը, և այս կերպով հարսանեաց վրայի խօ-սակցութիւնները բոլորովին մոռցուեցան։ Սրբուհին թէպէտ և մէկ կողմանէ այս բա-նին վրայ շատ ուրախացաւ, բայց մէկալ կող-մանէ ալ մօրը հիւանդութիւնը մեծ կսկիծ էր իր սրտին. և որովհետև այն ատենները շատ հռչակուած էր Սիկիլիոյ Կատանա քաղ-քին մէջ եղած Ագաթա վկայուհւոյն գերեզ-մանը՝ անկէ եղած անթիւ սքանչելեացը պատ-ճառաւ, Լուչիա յորդորեց իր մայրը որ ել-լեն իրենք ալ հոն ուխտի երթան. «Յայտնի տեսանք, ըսաւ, որ բժիշկք իրենց ամէն ճար-տարութիւնը թափելով՝ ունեցած հիւանդու-թեանդ ճար մը չկրցան գտնել. սուրբ աւե-տարանին մէջ պատմուած տեռատես կնկան պատմութիւնն որ յիշենք, Աստուծոյ ամենա-կարողութիւնը և իր սրբոց բարեխօսութիւ-նը յայտնի կը տեսնենք»։ Յանձն առաւ Եւ-տիքիա, և ելան երկուքն ալ Կատանա գնա-ցին. Նոյն օրը սրբուհւոյն վկայութեանը տա-րեդարձին յիշատակը ըլլալով՝ մեծահանդէս կը տօնէին հաւատացեալք։ Լուչիա դարձաւ իր մօրը, «Մայր իմ, ըսաւ, կը հաւատամ

թէ Յիսուս Քրիստոս իր վկայուհւոյն բարեխօսութեամբը կարող է ազատել զքեզ քու ցաւէդ. թէ որ կը հաւատաս՝ մօտենանք անոր գերեզմանին ու ջերմեռանդութեամբ աղօթենք»։ Աղօթքի ատեն Լուչիայի վրայ թըմբութիւն մը գալով՝ տեսիլք տեսաւ որ սրբուհին Ագաթա երկու հրեշտակներով ու մեծ փառքով իրեն երեցաւ։ Երբոր Լուչիա վախնալ ցըցուց, սրբուհին «Քոյր իմ, ըսաւ, ի՛նչ կը փնտռես. ի՞նչու ինծմէ եկեր կը խընդրես այն բժշկութեան շնորհքը քու մօրդ համար, երբոր դու ալ կրնաս կատարել այդ խընդիրքը. ահա քու հաւատոցդ համար բժշկութիւն շնորհեց Աստուած քու մօրդ. և գիտնաս, սիրելի, որ ինչպէս ես իմ վկայական մահուամբս Կատանայի պարծանքն եմ եղած, դու ալ Սիրակուզա քաղաքը պիտի փառաւորես. վասն զի դու ալ ինծի պէս քու կեանքդ Աստուծոյ նուիրեցիր կուսութեամբ»։

Ագաթա երբոր աներևոյթ եղաւ, սրբուհին Լուչիա վախէն սարսափած՝ քունէն արթընցաւ, և տեսաւ որ իրաւցընէ առողջացեր էր մայրը. ուստի սրբուհւոյն գերեզմանին վրայ շնորհակալութեան աղօթքնին կատարելով՝ ելան գնացին։

Տուն որ դարձան, սրբուհին մօրը դիրկը ընկաւ, «Մայր իմ, ըսաւ, Աստուած քեզի շնորհք մը ըրաւ ծանր հիւանդութենէդ զքեզ առողջացընելով. իր սիրոյն համար ալ ըլլայ, բան մը պիտի խնդրեմ քեզմէ, կ՚աղաչեմ չէ չըսես։ ինչուան այս օրս կուսութեամբ

մեծցայ, թող տուր զիս որ միշտ նոյն մաքրութեանը մէջ մնամ. տղակուց ի վեր աշխարհէս զզուանք մը, երեսդարձութիւն մը ունէի. տեսնես որ հասաւ՝ կ'աղաչեմ մի՛ թողուր զիս որ անոր շփոթիցը և անձկութեանցը մատնուիմ. ուխտերով ինքզինքս Աստուծոյ նուիրեր եմ և կը խնդրեմ որ անոնց մէջ հաստատուն մնամ. պատրաստած օժիտդ ինծի տուր, որ երթամ Քրիստոսի երկնաւոր փեսայիս աղքատ եղբարցը բաժնեմ»։ Եւտիքիայի սիրտը արդէն փոխուած ըլլալով՝ իր ՚ւրան եղած զարմանալի բժշկութեանը պատճառաւը, երբոր իր աղջկանը բերնէն այս սրտաշարժ խօսքերն ալ լսեց, ուրախութեան արցունք թափելով «Դուստր իմ, ըսաւ, Աստուած օրհներ է քու առաջադրութիւնդ ու կամքդ. ես ի՛նչպէս իր կամացը դէմ կրնամ դառնալ. օրհնեալ է Աստուած որ այս խորհուրդը քու միտքդ ձգեց. ուստի առ օժիտդ ու իմ՝ ունեցած անցաւոր հարըստութիւններէս որչափ որ կ'ուզես, և գնա կարօտելոց բաժնէ՝ որ անոնց աղօթքովը յաւիտենական արքայութիւնը ժառանգենք»։

Լուչիա մօրմէն այս հրամանը առնելով՝ սկսաւ կամաց կամաց իրեն ունեցածը չունեցածը աղքատաց ու կարօտելոց բաժնել։ Սրբուհւոյն հետ նշանուած երիտասարդ սեպուհը այս բաները տեսնելով՝ շատ կը զարմանար. բայց երբոր մէկուն մէկալէն հարցընելով՝ անոր միտքը իմացաւ, բարկութենէն ի՛նչ ընելիքը չէր գիտեր։ Մէկէն Սի-

րակուզա քաղքին Պաքասիոս դատաւորին գնաց, և Լուչիայի և իր մօրը բռնած ճամբան անոր իմացընելով, «Դիոկղետիանոս և Մաքսիմիանոս կայսերաց հրամանին դէմ՝ քրիստոնեայ եղեր են» ըսաւ։

Դատաւորը երբոր աս բանս լսեց՝ մէկէն աղջիկը բերել տուաւ զսրբուհին, ու կը յորդորէր որ մտիկ ընէ խօսքին՝ աստուածոց երկըրպագութիւն տալով, և այն ազնուական սեպուհին սէրը չմերժէ։ Լուչիա աներկիւղ կերպով մը «Ես քրիստոնեայ եմ, ըսաւ, և գիտեմ՝ որ ճշմարիտ աստուածը մէկ է. ինքն է իմ՝ սէրս ու երկնաւոր փեսայս, անոր համար ինքզինքս ուրիշի մը չեմ կրնար տալ. ինքն է որ ինծի այս կեանքս տուեր և զիս փրկեր է. ուստի պէտք է որ ես ալ իր սիրոյն սէր փոխարինելով՝ ինչուան մեռնիլս ալ յանձն առնում»։ Պաքասիոս դարձաւ «Ատանկ փուճումուճ խօսքերով գլուխս մի՛ ցաւցըներ, ըսաւ. կայսերաց հրամանն է, պէտք է որ աստուածոց զոհես»։ Սրբուհին «Աղէկ կ՚ըսես, ըսաւ, թէ կայսերաց հրամանը ոտքի տակ առնուլը մեծ յանցանք է. երբոր անցաւոր ու մահկանացու տեարց պատուէրը այսչափ զօրաւոր է, ինչպէս կը ստիպես զիս որ անանց և անմահ երկնի և երկրի թագաւորին հրամանը չպահես, ու ձեր անշունչ կռոցը պատիւ և պաշտօն ընծայես. վա՜յ մեզի, թէ որ անցաւոր թագաւորաց հաճոյ ըլլալու համար՝ Աստուծոյ երեսէն իյնանք։ Ուստի գիտցիր որ Քրիստոսի տեառն

մերոյ շնորհօքը, քու խօսքերուդ և ապառ-
նալեացդ մտիկ պիտի չընեն. ապականացու
մարմինս քու տանջանքներովդ ի՛նչպէս որ
կուզես չարչարէ, ամենևին փոյթս չէ. վասն
զի գիտեմ որ մարմինս որչափ տկարանայ՝
հոգիս այնչափ աւելի կը զօրանայ»։ Բար-
կացաւ Պասքասիոս «Ի՞նչ ելեր դիմացս բան
կը ծախես, ըսաւ. քու ինչ ըլլալդ միթէ
ես չե՞մ գիտեր. դու չէ՞իր որ անառակ վար-
քովդ հայրենի ժառանգութիւնդ վատնեցիր»։
Սրբուհին երբոր դատաւորին ըրած ամէն
ամբաստանութիւններուն սուտ ըլլալը յայտ-
նի ցըցուց, Պասքասիոս կրակ դարձած հրա-
ման տուաւ որ քաշկռտելով տանեն զԼուչիան
ու ըլկելու տանին։ Դատաւորին պատուէրը
կատարելու համար մարդիկ ժողվուեցան որ
տանին զսրբուհին. բայց աստուածային շը-
նորհքը ոյժ տուաւ Լուչիայի որ անոնց դէմ
դնէ. շատ ուժեղ մարդիկ վրան թափեցան,
բայց տասնըվեց տարեկան նորահաս օրիորդը
չկրցան տեղէն շարժել։ Ճարերնին հատած
ձեռքէն ոտքէն չուաններ կապեցին, արիւն
քրտինք մտան, սկսան ամէն ուժով քաշել
զինքը. սակայն Լուչիայի չկրցան յաղթել։

Դատաւորին խելքը այս բանիս չհասնելով՝
«Լուչիայի ըրածը վհկութիւն է» ըսաւ. և
հրամայեց որ քաղաքին մէջ գտնուած կա-
խարդները՝ մոգերն ու քուրմերը գան ժող-
վուին՝ այս նորանշան բանին պատճառը հաս-
կընալու և կամ սրբուհւոյն յաղթելու հա-
մար։ Բայց անոնց ալ ամէն ջանքը փուճ ե-

յաւ։ Պասքասիոս տեսնելով որ տկար աղջկանէ մը խաղք եղաւ՝ ընելիքը չէր գիտեր. եզներ բերել տուաւ ու չուաններով Լուչիայի հետ կապեց՝ որպէս զի կարենայ զինքը տեղէն շարժել։ Երբոր այն ալ չեղաւ, կատղեցաւ դատաւորը, «Ի՞նչ է այդ կախարդութիւնդ» ըսաւ. — «Ես կախարդ չես, պատասխանեց Լուչիա, հապա Աստուծոյ ոյժն է որ այսպէս զձեզ ամըչցուց. իր զօրութեանը դէմ՝ դնելու ի՛նչ երեսով կը համարձակիք. Ինչուան Երբ ըրած հրաշքները կախարդութիւն պիտի սեպէք. գիտցէք ուրեմն թէ որուն որ պաշտպանը Աստուած է, անոր կերպով մ'ալ փնասել չէք կրնար։

Պասքասիոս հրամայեց որ սրբուհւոյն չորս բոլորը կրակ վառեն, որպէս զի վախէն իր կեցած տեղէն շարժի։ Լուչիա անվախ կերպով մը պատասխան տուաւ. «Կը յուսամ յԱստուած որ քու կրակդ ալ չկարենայ կերպով մը ինծի փնասել. որպէս զի ամէն տեսնողներն ալ քրիստոնէից Աստուծոյ զօրութիւնը իմանան»։ Դատաւորին պաշտօնեայքը բերին կուպրին չորս կողմը փայտ, եղ, ծիւթ և ուրիշ դիւրավառ նիւթեր դիզեցին ու կրակ տուին անոնց։ Ծուխն ու բոցը հնոցի մը պէս ելան բարձրացան, անանկ որ տեսնողները կը կարծէին թէ մէկէն ինկաւ սրբուհին ու մեռաւ. բայց Լուչիա՝ Բաբելոնի երից մանկանց պէս կրակին բռնութեանը մէջ անփնաս մնալով՝ զԱստուած կը փառաբանէր։ Բոցն որ հատաւ՝ հոն կեցողները

երբոր տեսան որ չէ թէ միայն ողջ մնացեր է Լուչիա, այլ և պզտի վնաս մըն ալ չէ կրած, և ոչ իսկ զգեստները այրեր են, ապշեցան մնացին. ու անոնցմէ շատը սկսան բարձր ձայնով աղաղակել թէ իրաւցընէ Լուչիայի աստուածն է միայն ճշմարիտ. և կ'անիծէին դատաւորը որ խեղճ ու արդար աղջկանը դէմ այսպիսի խստութիւն և անգթութիւն կը բանեցընէ։ Պասքասիոս ժողովրդեան շշնկոցը լսելով վախցաւ որ չըլլայ թէ Լուչիայի պատճառաւը իրեն ալ վնաս մը հանդիպի, ու հրաման տուաւ դահճին որ գլխատէ զինքը. ուստի այս կերպով երջանիկ վկայուհին նահատակուեցաւ։ Ոմանք կ'ըսեն թէ սրով խոցեցին, ու քանի որ դեռ չէր մեռած՝ քրիստոնեայք առին մօտ տուն մը տարին զինքը, ուր գուշակեց սրբուհին թէ Դիոկղետիանոսի մահուամբը քրիստոնէից վըրայ եղած հալածանքն ալ պիտի դադրի. և հոն հոգին աւանդեց դեկտեմբեր ամսուն տասուերեքին, յամի տեառն 304։

Սրբուհւոյն մայրը իր աղջկանը մարմինը Սիրակուզա թաղել տուաւ, ուր ետքը վրան փառաւոր եկեղեցի մը շինեցին, ուսկից շատ հրաշքներ կ'ըլլային։ Ետքը Կոստանդնուպօլիս փոխադրուեցաւ, անկէ ալ Վենետիկ։ Ինչուան հիմայ Սիրակուզա քաղքին աւերակներէն կէս ժամի չափ հեռու վանքի մը մէջ այս սրբուհւոյն նուիրած եկեղեցւոյն մէջ կը պահուի այն սիւնը, որուն կռթըներ է եղեր Լուչիա, երբոր դատաւորին պաշտօ-

նեայքը բռնութեամբ զինքը բոզանոց կ'ուզէին տանիլ։

Հասարակ աւանդութիւն մը կայ հաւատացելոց մէջ՝ թէ սրբուհին Լուչիա իր վայելուչ գեղեցկութիւնը աւրելու միջով՝ Պասքասիոս դատաւորին առջեւը իր երկու աչքը հանած ըլլայ. բայց որովհետեւ վկայագիրք չեն յիշեր այս դիպուածը՝ ուստի կ'երեւնայ թէ կամ անստոյգ ըլլայ, եւ կամ ուրիշ համանուն սրբուհւոյ մը գործ։



# ՍՐԲՈՒՀԻ ԱԳՆԷՍ

Հռովմ՝ քաղաքին մէջ ծնաւ այս հրաշակաւոր կոյսը՝ քրիստոնէութեան երրորդ դարուն վերջերը՝ հարուստ և առաքինի ծնողաց զաւակ, որոնք իրենց աղջկանը ազնիւ կատարելութիւնները առաքինական դաստիարակութեամբ ալ աւելի կերպով մը պայծառացընելու ետևէ եղան։ Ամէն բանէն առաջ հաւատքին մէջ հաստատ կենալ սորվեցուցին իրեն. և ան առտնէն սկսաւ Ագնէս կուսական կենաց մասնաւոր եռանդ և փափաք մը զգալ․ Հազիւ թէ զԱստուած սկսեր էր ճանչնալ, ինչպէս կ'ըսէ սուրբն Ամբրոսիոս, երբոր անոր սիրովը լցուած էր. անոր համար տղայական հասակին մէջ ալ իր գլխաւոր զբօսանքն ու մխիթարութիւնն էին աղօթքն ու բարեգործութիւնները։

Դեռ տասուերեք տարեկան էր Ագնէս երբոր բոլոր Հռոմայ մեծամեծքը սրբուհւոյն հօրը ետևէն ընկեր էին որ իրենց որդւոցը հարսնացընէ. և Սիմփրոնիոս քաղաքապետին Պրոկոպիոս որդին ամենէն աւելի այս բանին փափաքող էր. ուստի օր մը մեծագին ընծայ մը խրկեց Ագնէսի, իմացընելով անոր

իր կամքը։ Սրբուհին խրկած ընծան եւս դարձընելով՝ իմացուց իրեն թէ չկրնար խնդիրքը կատարել. բայց Պրոկոպիոս չէ թէ միայն չկակղեցաւ, այլ նաեւ ամէն ջանք կ՚ընէր որ մտքի գրածը առաջ տանի. սակայն երբոր տեսաւ թէ սրբուհին մտիկ չըներ, սպառնալեօք ջանաց զինքը վախցընել։ Ան ալ որ չյաջողեցաւ՝ ուզեց որ անձամբ երթայ հետը խօսի. «Անշուշտ ան ատեն գէթ վախէն ինծի կը հաւանի» ըսաւ։ Երկայն բարակ հետը խօսեցաւ, բայց Ագնէսի մտաց հաստատութեանը չկրցաւ յաղթել. վասն զի սրբուհին աստուածային շնորհքով մը զօրացած ըլլալով՝ քաջութեամբ անոր ամէն հրապուրանացը դէմ դնելէն ետքը, «Գնա հեռացիր, ըսաւ, ինծմէ, որովհետեւ իմ փրկչէս՝ որուն ինքզինքս կուսութեամբ նուիրեր եմ՝ կ՚ուզես զատել»։

Պրոկոպիոս սրբուհւոյն աս խօսքերը լսելով արտմութենէն յուսահատութեան մէջ ինկաւ, ու սաստիկ ցաւէն ի՛նչ ընելիքը չէր գիտեր։ Սիմփրոնիոս իր հայրը որդւոյն այս տագնապը տեսնելով, սիրտ տուաւ իրեն ու յորդորեց որ ամենեւին չվախնայ. «Իմ իշխանական զօրութեամբս կը ստիպեմ, ըսաւ, Ագնեսի ծնողքը՝ որ ուզեն չուզեն քու կամացդ հնազանդին»։ Իր պալատը կանչել տուաւ աղջիկը, և ամէն պատիւ և սէր ցուցընելէն ետքը, ինչպէս որ անոր աստիճանին և մեծութեանը կը վայլէր, «Դուստր իմ, ըսաւ, զքեզ հոս կանչելուս պատճառը կարծեմ քիչ

չատ իմացած պիտի ըլլաս. դու ալ կը տեսնես թէ ի՛նչպէս իմ որդիս քեզի կը փափաքի. ես ալ անոր ընտրութեանը չատ հաւնած եմ ունեցած ազնուական կերպիդ և գեղեցիկ յատկութիւններուդ համար. թէ որ քու հանգիստդ ու երջանկութիւնդ կ'ուզես, խօսքիս մտիկ ըրէ, սիրելի, ու մեր առաջարկութեանը դէմ մի՛ կենար»: Սրբուհին իր համեստ և անոյշ կերպովը պատասխանեց քաղաքապետին. «Շնորհակալ եմ, ըսաւ, այդ գովեստներուն և այգ սիրոյն որ իմ վրաս կը ցուցընէք. բայց գիտցած ըլլաք, տէր իս, որ ինծի ուրիշ փեսայ մը ընտրեր եմ ես, որուն ազնուականութիւնը և մեծութիւնը անպատմելի է և անհամեմատ. իմ երկնաւոր փեսայիս սիրուն համար՝ կուսական սուրբ կեանքը ընտրեր եմ, ըսաւ. և այս փառքը երկրաւոր ամէն թագաւորութեանց և պատիւներու հետ ամենևին չեմ փոխեր»: Սիմփրոնիոս երբոր չհասկընալ ցըցուց սրբուհւոյն այս խօսքերը, իր պաշտօնէից մէկը դարձաւ, «Այս աղջիկը, ըսաւ, քրիստոնեայ ըլլալով՝ իր կրօնքին աւելորդապաշտութիւններովը մեծցեր և այս տարիքս է հասեր. ուստի երկնաւոր փեսայ ըսելով քրիստոնէից աստուածը կ'իմանայ»:

Քաղաքապետը սրբուհւոյն վրայ նայելով «Դուստր իմ, ըսաւ, լաւ իմացայ որ խաբուեր ես քու ննջաւոր հաւատակիցներէդ. չէ, սիրելի, չէ. խնայէ քու գեղեցկութեանդ ու հասակիդ. այդ գրուցած խօսքերդ բոլոր անխելք աւելորդապաշտութիւններ են. մըտքէդ

հանէ այն բանը որ զրուցեցիր թէ կոյս պիտի մնաս։ Դարձիր մեր ճշմարիտ աստուածները պաշտէ, ու անոնց պատուիրանացը հետևէ. մտածէ մէյմը թէ ի՛նչ պատուոյ պիտի հասնիս. միտքդ բեր այն հարստութիւններն ու այն հաճոյքը որոնց արժանի պիտի ըլլաս. ահաւասիկ քեզի քսանըչորս ժամ կուտամ, ըսաւ դատաւորը, գնա մտածէ թէ Հռովմայ իշխանուհի՞ կ'ուզես ըլլալ թէ չարաչար տանջանքներով մեռնիլ կորսուիլ»։ «Մտածելու համար ինծի այդչափ միջոց մի՛ տար, ըսաւ սրբուհին. իմ՝ միտքս արդէն հաստատ է, և հիմակուընէ գիտնաս որ Աստուծոյ շնորհօքը փոխուելիք չունի։ Քրիստոսէ զատ ուրիշ փեսայ չունիմ և պիտի չունենամ. և ճշմարիտ Աստուծմէ զատ ուրիշ աստուած չեմ ճանչնար. ի՞նչպէս ստիպել կ'ուզես զիս որ երթամ անշունչ արարածոց՝ քարի ու փայտի երկրպագութիւն ընեմ։ երկրաւոր մահ սպառնալով՝ միտքդ դրեր ես թէ կարենա՞ս պիտի զիս վախցընել. բայց երանի՛ ինծի թէ որ մարտիրոսական սուրբ պսակին ալ արժանի ըլլամ»։

Դատաւորը սրբուհւոյն այս համարձակ պատասխանը լսելով զարմացաւ մնաց. բայց ուրիշ փորձ մ՛ըն ալ փորձել ուզեց։ Տեսնելով որ սրբուհւոյն կուսութեան սիրովը վառուած ամէն բան կ'արհամարհէ, ջանաց որ սպառնալեօք վախցընէ զինքը. «Կամ Պրոկոպիոսի հարսն եղիր, ըսաւ, և կամ գիտնաս որ ես նախ քու կուսութիւնդ բռնի ոտքի տակ առ-

նել տալէն ետքը՝ չարաչար տանջանքներով ալ պիտի սպաննեմ։ — Իմ ապաւէնս ու պաշտպանս Աստուած է, պատասխանեց սըրբուհին. աղէկ գիտեմ որ ինքը ամէն նեղութիւններէ և բռնութիւններէ զիս կը փրկէ. վասն զի ինքն է մաքրութեան տէրն ու իր ծառայից և աղախնեայց պաշտպան»։ Բարկացաւ Սիմփրոնիոս, և հրամայեց որ չղթայի զարնեն զսրբուհին։ Ագնէս տասուերեք տարեկան կոյսը ամենևին չվախցաւ այն զարհուրելի չղթաներէն, և ոչ զինքը կապող ու չարչարող անգութ դահիճներէն։ Տեսնողներուն սիրտը կը կտրտէր ու արցունքնին չէին կրնար բռնել. սրբուհին միայն ուրախ ու պայծառ երեսով հանդարտ կեցեր էր։

Հրամայեց Սիմփրոնիոս որ քաշկռտելով կռատունը տանին զինքը և բռնի ստիպեն որ զոհէ աստուածոց. բայց սրբուհին չէ թէ միայն անոնց մտիկ չըրաւ, այլ և կռատան մէջ եղած անթիւ բազմութեան առջևը խոստովանեցաւ համարձակ իր հաւատքը և կռոց ստութիւնը ցըցուց։ Քաղաքապետը Ագնեսի մտաց հաստատութիւնը տեսնելով՝ առջի ըրած ըսպառնալիքը միտքը եկաւ. ուստի հրամայեց որ պոռնկանոց տանին զինքը. սակայն Աստուած թող չտուաւ որ կերպով մը սրբուհւոյն մաքուր կուսութիւնը արատաւորուի. քաղաքապետին Պրոկոպիոս տղան ալ՝ յանկարծական մահուամբ պատժեց։ Սիմփրոնիոս իր սիրելի որդւոյն անակնկալ մահը տեսնելով սպառնալիքը փոխեց ու սկսաւ աղաչել որ իր

որդին կենդանացընէ. «Ան ատենը կը հաւտամ կ'ըսէր որ միայն քու պաշտածդ է ճշմարիտ Աստուած»։ Սրբուհին երբոր աղօթքի կեցաւ, մէկէն կենդանացաւ Պրոկոպիոս ու սկսաւ բարձրաձայն աղաղակել թէ «Յիրաւի Ագնեսի աստուածն է միայն ճըշմարիտ Աստուած. մեր կուռքերը բոլոր սուտ են» կ'ըսէր։

Սիմփրոնիոս այս մեծ հրաշքն որ տեսաւ՝ ալ սիրտը առաջ չէր երթար որ զսրբուհին դատապարտէ. բայց քուրմերը աստուածոց եղած նախատինքը տեսնելով, սկսան պոռալ ու քաղաքապետը ստիպել որ զԱգնէս մեռցընէ. «կախարդ է, կ'ըսէին, այդ աղջիկը. աստուածոց դէմ մեծ անիրաւութիւն ըրած կ'ըլլաս թէ որ զանիկայ ողջ պահես»։ Սիմփրոնիոս չէր գիտեր որ ի՛նչ ընէ. մէկ կողմանէ Ագնեսի վրայ կը գթար, մէկալ կողմանէ ալ քուրմերէն կը վախնար որ չըլլայ թէ իրեն դէմ գրգռեն զժողովուրդը. ուստի դատաստանը իր երկրորդին յանձնելով՝ ինքը տունը քաշուեցաւ։ Քաղաքապետին երկրորդը երբոր տեսաւ թէ ամէնքը իր գլուխը ժողվուած կը ստիպեն որ շուտով մեռցընէ զսրբուհին, հրամայեց որ ողջ ողջ այրեն։

Մեծ խարոյկ մը վառելով՝ Ագնէսը մէջը ձգեցին, բայց բոցը երկու բաժնուելով՝ հոն կեցողները սկսաւ այրել. իսկ սրբուհին խարուկին վրայ կեցած՝ զԱստուած կը փառաւորէր։ Երբոր քուրմերը այս հրաշքն ալ կախարդութիւն սեպեցին, դատաւորը վախնա-

լով որ չըլլայ թէ Ագնեսի պատճառաւը խռովութիւն մը ելլէ՝ հրամայեց դահճին որ նոյն խարոյկին վրայ ելլելով զորբուհին գլխատէ։ Ագնէս այս հրամանն որ լսեց՝ սիրտը ուրախութեամբ լեցուեցաւ. «Հասաւ, կ'ըսէր, այն երջանիկ առենը՝ որ երթամ իմ փեսայիս հետ միանամ». ու տեսնելով որ դահիճը վախով ու պատկառանօք իր քովը կը մօտենար, «Դուն ըրէ, ըսաւ. կատարէ քեզի եղած հրամանը. երանի՛ ինծի որ երկրաւոր մահուամբս՝ երկնաւոր անմահ կեանք մը պիտի սկսիմ». ետքը աչուըները երկինք վերցընելով, «Տէր Յիսուս, ընդունէ, ըսաւ, իմ հոգիս, որ միշտ քու տեսութեանդ փափաքեր է»։ Այս խօսքը զուրցելու առենը դահիճը սրով խոցեց զորբուհին, ու մէկէն մեռաւ։

Հեթանոսք շատ եռանդ եղան որ սուրբը թաղելու հրաման չտրուի. բայց Ագնեսի ծնողքը լալով և ուրախութեամբ իրենց սիրելի աղջկանը մարմինը վերցընելով՝ Հռոմայ քաղքէն դուրս տեղ մը թաղեցին զինքը։ Չորս օր անցեր էր սրբուհւոյն մահուընէն ետքը, երբոր իր Էմերենցիանա անունով դայեկակից ընկերը՝ Ագնեսի գերեզմանին վրայ ընկած կուլար հառաչանօք. կռապաշտները վրայ հասան ու մէկէն նոյն տեղը քարկոծեցին զինքը. Ագնեսի ծնողքը գիշեր առեն եկան և պատուով զինքն ալ իրենց աղջկանը գերեզմանին քով թաղեցին։ Իսկ իրենք շատ անգամ գիշերով անոնց գերեզմանին վրայ

կ'երթային աղօթք ընելու. անգամ մ'ալ տեսիլք տեսան որ գունդ մը լուսազգեստ մարդիկ առջևնէն կ'անցնէին. անոնց հետ էր նաև իրենց աղջիկը՝ սրբուհին Ագնէս, քովն ալ մաքուր և սպիտակ գառն մը կեցեր էր։ Կոյսը մօտեցաւ իր ծնողացը, քաջալերեց զիրենք ու մխիթարելով՝ «Մի՛ լաք, ըսաւ, հապա շնորհակալ եղէք Աստուծոյ որ ձեր զաւակը հաճեցաւ այսպիսի փառաց հասցնել»։ Այս ըսելով աներևոյթ եղաւ։

Մեծին Կոստանդիանոսի Կոստանդիա քոյրը՝ քանի որ դեռ քրիստոնեայ չէր եղած, իր բորոտութեանը դեղ մը չկրնալով ընել, սրբուհւոյն գերեզմանը ուխտի գնաց։ Նոյն ատեն վրան թմրութիւն մը գալով՝ տեսիլքին մէջ Ագնէս կոյսը տեսաւ որ կ'ըսէր իրեն. «Եթէ Քրիստոսի հաւատալու ըլլաս՝ մէկէն կը բժշկուիս»։ Կոստանդիա արթննալով՝ տեսաւ որ բորոտութիւնը բոլորովին անցեր է. ուստի դարձաւ քրիստոնեայ եղաւ, ու սրբուհւոյն գերեզմանին վրայ փառաւոր եկեղեցի մը շինել տուաւ. ինչուան հիմայ նոյն եկեղեցւոյն մէջ ամէն տարի երկերկու գառն կ'օրհնէ սրբազան քահանայապետը, և անոնց բրդէն շինել տալով պալիում ըսուած եմիփորոնը՝ արքեպիսկոպոսաց ընծայ կը խրկէ։

Սրբուհին Ագնէս՝ արևմտեան եկեղեցւոյն մէջ շատ հռչակաւոր ըլլալուն՝ տարին երկու անգամ տօնը կը կատարեն. Ամբրոսիոս, Օգոստինոս և Հերոնիմոս եկեղեցւոյ վարդապետներն ալ զանազան գովեստներ գրած են

վրան. և յիրաւի, ի՜նչ մեծ զօրութիւն էր աստուածային սիրոյ՝ որ տասուերեք տարուան տղայ հասակին մէջ արհամարհեց իր ճոխութիւնն ու ազնուականութիւնը, ու Քրիստոսի համար ինչուան կեանքն ալ ուրախութեամբ զոհեց։



# ՍՐԲՈՒՀԻ ՏՈՐՈԹԷԱ

Սրբուհին Տորոթէա հռչակաւոր կոյսը Կեսարիա Կապադովկիոյ կամ Ղայսերի ըսուած փոքր Ասիոյ քաղաքէն էր, ազնուական ու հարուստ և բարեպաշտ ծնողաց զաւակ։ Վասն զի կ'ըսեն թէ Տորոթէայի մարտիրոսութենէն առաջ՝ իր ծնողքը Քրիստոսի համար իրենց արիւնը թափեր են։

Տորոթէայի անունը այնպէս հռչակուած էր բոլոր քաղքին մէջ՝ որ ամէնքը մտքերնին դրած էին թէ մէկը չկայ որ անոր խելքն իմաստութիւնն ու համեստութիւնը ունենայ. բայց իր աւելի մեծ պարծանքը բարեպաշտութիւնն ու անյողդողդ աստուածպաշտութիւնն էր։ Իր ազնիւ բարեմասնութեանցը և գեղեցկութեանը համար՝ շատերը ետևէ եղան որ Տորոթէան իրենց հարսնացընեն. թէպէտ և ամէնքը, մինչուան կռապաշտներն ալ, լաւ գիտնալով որ սրբուհին աշխարհք մտնելու կամք չունի՝ իրմէ կը պատկառէին։

Սափրիտիոս հեթանոս քաղաքապետը Կեսարիա հասնելով՝ երբոր քաղաքացւոց սրբուհւոյն վրայ ունեցած մեծ համարմունքը

լսեց ու տեսաւ, և իմանալով որ քրիստոնեայ է, առջևը կանչել տուաւ զինքը. «Վասն զի միայն անոր համար այս քաղաքս եկած եմ, կ'ըսէր, որ քրիստոնեայքը ստիպեմ մեր անմահ աստուածոց երկրպագութիւն ընելու»։ Տորոթէան երբոր քաղաքապետին առջևը հանեցին, Սափրիտիոս՝ անունը հարցուց. «Անունս Տորոթէա է», պատասխանեց սըրբուհին պարկեշտ և անոյշ կերպով մը։ — «Լսեցի, ըսաւ դատաւորը, որ մեր աստուածները թողլով՝ քրիստոնէից խաչելեալ աստուածը կը պաշտես եղեր. մի՛թէ չե՞ս գիտեր թէ մեծազօր կայսերք ի՛նչպէս խստիւ արգիլած են որ աշխարհիս վրայ քրիստոնեայ մը չգտնուի. եղողներն ալ կամ պիտի դառնան մեր կուռքերը պաշտեն, և կամ չարաչար մահուամբ մեռնին»։ «Կայսերաց հրամանը լաւ գիտեմ, ըսաւ Տորոթէա. բայց աս ալ գիտեմ որ ճշմարիտ աստուածը մէկ պիտի ըլլայ, ու զինքը միայն պէտք է պաշտել. իսկ ձեր մեծարած աստուածները՝ ամէնքն ալ սուտ են ու մարդիկ զիրենք աստուածացուցեր են, որպէս զի համարձակ ու անվախ ամէն անօրէնութիւն ու չարութիւն ընեն. բայց խնդրեմ գրուցէ ինծի թէ դիւա՞ց երկրպագութիւն պէտք է ընել, և կամ մարդկանց խօսքին հնազանդելու համար ճշմարիտ Աստուծոյ հրամանը ոտքի տակ առնուլ»։

Սափրիտիոս Տորոթէայի իմաստուն և խելացի խօսքերը լսելով՝ ապշեցաւ մնաց. ետքը

դարձաւ, «Դուստր իմ, ըսաւ, խելքդ գլուխդ ժողվէ, եթէ չես ուզեր որ դու ալ ծնողացդ պէս սոսկալի տա՛նջանքներով մեռնիս երթաս։— Քու տանջանքներէդ ամենեւին չեմ վախնար, պատասխանեց սրբուհին. իմ փափաքս այն է որ իր արեամբը զիս փրկող տիրոջը իմ կեանքս նուիրեմ։ — Ո՞վ է քու տէրդ, հարցուց քաղաքապետը, որուն սիրոյն համար մեռնելն աչք կ'առնուս»։ Պատասխան տուաւ Ֆորոնթեա. «Յիսուս փրկիչն է իմ տէրս և իմ աստուածս։ — Ո՞ւր է քու աստուածդ և փրկիչդ» կրկնեց Սափրիտիոս։ «Իբրև Աստուած, պատասխանեց կոյսը, ամէն տեղ է. և իբրև մարդ երկինքն է, ուր հօրը աջակողմը նստած, հոն իր հաւատարիմ ծառայիցը համար մեծամեծ երջանկութիւններ և անպատմելի ուրախութիւն պատրաստեր է. կը յուսամ որ ես ալ իմ մահուամբս արժանի պիտի ըլլամ այն երկնային բնակութեանը։ Քեզի համար ալ պատրաստ է այն երջանիկ արքայութիւնը, բաւական է որ կուռքերդ թողուս և դառնաս քրիստոնեայ ըլլաս»։

Քաղաքապետը արհամարհելով սրբուհւոյն խօսքերը, «Նորէն կ'ըսեմ, ըսաւ. մտքէդ հանէ՛ այդ անճոռնի կարծիքները. դարձիր զոհէ մեր աստուածոց. ապա թէ ոչ՝ յայտնի գիտնաս որ չարաչար տանջանքներով զքեզ պիտի սպաննեմ։ — Աստուած չընէ, պատասխանեց սրբուհին, որ ես դիւաց զոհ ընես, և աշխարհային սէրը երկնային սիրոյն հետ փո-

խեմ»։ Դատաւորը այս խօսքերը լսելով՝ «Իմացայ, ըսաւ, որ քրիստոնեայք իրենց աւելորդապաշտութեամբքը գքեզ խաբեր են. մեղք ես, հասակիդ ու գեղեցկութեանդ նայելով գթա քու վրադ. չըլլայ թէ կամաւ ինքզինքդ թշուառացընես»։ Տորոթէա զարմանք ցուցընելով անոր խօսքին վրայ, «Կը տեսնես, ըսաւ, տէր իմ, որ չես գիտեր թէ ի՞նչ է ճշմարիտ երջանկութիւնը՝ զորն որ թշուառութիւն կը կոչես. ճշմարիտ ուրախութիւն այս աշխարհիս մէջ միայն բարեպաշտ քրիստոնեայքն ունին»։

Դատաւորը Տորոթէայի իմաստուն և խելացի խօսքերը լսելով, ինքիրմէն դուրս ելաւ ու բերանը խօսք չմնաց. իմանալով ալ որ սրբուհւոյն չկարենայ պիտի յաղթել, կամ միտքը փոխել տալ, վախցաւ որ չըլլայ թէ երկայն բարակ խօսելով իր միտքն ալ փոխուի, ուստի հրամայեց որ տանին բանտ դնեն։

Այն օրերը քրիստոնէիցմէ Կրիստա և Կալլիստա անունով երկու քոյրեր՝ հեթանոսաց տանջանքներէն վախնալով՝ հաւատքնին ուրացեր էին։ Սափրիտիոս առջևը կանչել տուաւ զասոնք, «Դուք ալ, տեսայք, ըսաւ, որ քրիստոնէութիւնը ձգելնուդ համար ի՞նչ պատիւներու և ի՞նչ փառաց հասայք, բայց ես ձեզի աւելի մեծ պարգևներ կը խոստանամ թէ կայսեր կողմանէ և թէ ինծմէն՝ թէ որ կարենաք Տորոթէա աղջկանը միտք փոխել և յորդորել որ զոհէ աստուածոց. ամէն ջանք

ըրէք որ իր յամառութեանը յաղթէք. Թէ
որ կերպով մը կրցաք այս բանս առաջ տա-
նիլ՝ մեծ փառաց պիտի հասնիք»։ Ուրա-
ցեալները այս խոստմունքները լսելով՝ խոս-
տացան որ եթէ իրենց թողու՝ կրնան Տո-
րոթէայի միտքը դարձընել։ Կրիսպա և Կալ-
լիստա սրբուհւոյն քովը եկան, ու սկսան
յորդորել որ Սափրիտիոսի խօսքին մտիկ ընէ.
«Զգէ, կ'ըսէին, քրիստոնէական հաւատքը,
որպէս զի մեզի պէս պատուոյ հասնիս. ան-
ցաւոր կեանք մը ունինք աշխարհիս վրայ,
փուճ տեղը ինչո՞ւ կորսընցընենք»։ Տորոթէա
դարձաւ անոնց. «Իրաւ կը զրուցէք, ըսաւ,
թէ անցաւոր կեանք մըն է ունեցածնիս. ան-
ցաւորին համար յաւիտենականը ի՛նչպէս ոտքի
տակ առիք. Քրիստոսի տեառն մերոյ սպառ-
նալիքներէն ի՛նչպէս չըվախցաք. արդարոց
վայելքն և մեղաւորաց տանջանքները ո՞վ մոռ-
ցընել տուաւ. չէ, սիրելիք. զղջացէք ձեր ը-
րած յանցանացը և մեծ մեղքին վրայ»։ Ու-
րացեալ կանայքը սրբուհւոյն խրատը լսելով
սկսան յուսահատաբար լալ. «Վա՜յ մեզի,
կ'ըսէին, որ արքայութիւնը կորսընցուցինք
երկրաւոր հաճոյքը կատարելու համար։ —
Ըրած մեղքերնիդ մեծ բան է Աստուծոյ առ-
ջև, պատասխանեց Տորոթէա, բայց յուսա-
հատութեան մեղքը աւելի սարսափելի է.
Քրիստոս ամենահնար ու ճարտար բժիշկ
մըն է, վէրք չկայ որ չկարենայ բժշկել. զմեզ
մեր մեղքերէն փրկելու համար աշխարհք
գալով՝ փրկիչ ըսուեցաւ. ապաշխարեցէք ու-

րեմն բոլոր սրտանց, ու ձեր փրկութեանը վրայ ամենեւին մի՛ տարակուսիք»։ Կրիսպա և Կալլիստա սրբուհւոյն ոտքը ինկան, կ՚աղաչէին որ իրենց համար աղօթք ընէ, որպէս զի մեղքերնին քաւուի։ Տորոթէա քաջալերեց զիրենք, մխիթարեց ու ետքը Սափրիտիոսի խրկեց, ու ինքը կը սպասէր թէ ի՛նչ լուր պիտի առնու։ Քաղաքապետը զիրենք տեսնելով՝ հարցուց թէ «Յանձն առա՞ւ Տորոթէա աստուածներուն զոհել»։ Կանայքը պատասխանեցին. «Ի՞նչպէս կրնայինք ստիպել զինքը որ իր ճշմարիտ հաւատքէն ետ կենայ. զղջացինք մենք ալ մեր ըրած ուրացութեանը վրայ. ուստի մեզի ալ մի՛ խնայեր» ըսին։ Սափրիտիոս իրենց տուած պատասխանը լսելով՝ կրակ դարձաւ. «Կ՚երդնում, ըսաւ, որ եթէ նորէն չզոհէք աստուածոց, երկուքնիդ ալ եռացեալ տաք ջրոյ մէջ ձգել կու տամ Տորոթէայի առջև, որ երթաք ձեր յիմարութեան պատիժն ընդունիք»։ Կրիսպա և Կալլիստա այս խօսքերը լսելով՝ սկսան մէկզմէկ քաջալերել որ Քրիստոսի սիրոյն համար՝ դատաւորին տանջանացը ուրախութեամբ համբերեն. «Յուսանք, կ՚ըսէին, որ թողու Աստուած մեզի՝ մեր ուրացութեան մեղքը»։ Եւ յիրաւի, երջանիկ մարտիրոսութեամբ երկուքն ալ նահատակեցան։

Սափրիտիոս այս մտքէն չանցած դիպուածը տեսնելով, հրաման տուաւ որ անխնայ չարչարեն զՏորոթէա։ Քաղաքապետը այն

դառն տանջանացը մէջ սրբուհւոյն զուարթութիւնը տեսնելով՝ ի՛նչ ընելիքը չէր գիտեր։ Տորոթէա դարձաւ. «Այսօրուան ուրախութիւնս ուրիշ մէկ օր մը չեմ ունեցած, ըսաւ. վասն զի Աստուծոյ շնորհքովը սատանայի գերութենէն երկու հոգի ազատելով՝ անոնց փրկութեանը պատճառ եղայ. կը յուսամ որ քիչ ատենէն ես ալ արժանի պիտի ըլլամ՝ արդարոց համար երկինքը պատրաստուած ուրախութեանց մասնակից և հաղորդ ըլլալու»։

Սափրիտիոս հրամայեց որ անխնայ ծեծեն զսրբուհին ու կողերը այրեն. բայց քանի որ տանջանքները կը շատնային՝ Տորոթէայի ուրախութիւնն ալ կ՚աւելնար։ Դատաւորը բարկութենէն ինքզինքը ուտելով, աւելի դառն տանջանքներով չարչարել տուաւ զինքը. բայց երբոր տեսաւ թէ անոր յաղթել չկրնար՝ գլուխը կտրել հրամայեց։ Տորոթէա երբոր այս վճիռը լսեց՝ ուրախութեամբ մը ձեռուըները երկինք վերցընելով շնորհակալ եղաւ Աստուծոյ որ այնպիսի կերպով հաճեցաւ երկնից արքայութեան մասնակից ընել զինքը։ Ուստի երբոր ծընկան վրայ եկած աղօթքի հետ էր՝ դահիճը գլխատեց զսրբուհին յամի տեառն 308, փետրուար ամսուն վեցերորդ օրը։ Հաւատացեալք Տորոթէայի մարմինը պատուով ժողվեցին և նշխարացը մեծ մասը Հռովմ քաղաքին մէջ է, կ՚ըսեն, իր անունով շինուած եկեղեցւոյն մէջ։

# ՍՐԲՈՒՀԻ ՈՐՍՈԼԱ

Սրբուհւոյն Որսոլայ և իր նահատակակից ընկերաց յիշատակը որչափ որ հռչակաւոր է արևմտեան եկեղեցւոյ մէջ՝ այնչափ ալ ցաւալի է իրենց նահատակութեանը ամբողջ պատմութեան կորսուիլը. փասն զի եղածներուն շատն ալ առասպելներով լեցուն են։ Աւելի ստոյգ կը սեպուի այն վկայաբանութիւնը որ Հռովմայ Վատիկանեան ըսուած գրքատան մէջ գտնուէր է. ասկէ առնուած է նաև մեր հոս գրածը։

Որսոլա վկայուհին մեծին Բրիտանիոյ կղզւոյն մէջ ծնած է Քրիստոսի 362 թուականին։ Իր հայրն էր կ՚ըսեն Դիոննաոտոս անունով Քոռնովալիոյ թագաւորը, մայրն ալ Դարիա մեծ իշխանուհին. երկուքն ալ ընտիր, աստուածապաշտ և երկիւղած անձինք, որ իրենց միամօր դստերը վրայ ամէն հոգ և խնամք ընելով՝ ջանացին քրիստոնէական առաքինի կրթութիւն մը տալ անոր։

Որսոլա բաց ի արտաքին բարեմասնութիւններէն՝ ազնուական բարի ու վեհանձն սիրտ մըն ալ ունէր, խոնարհ կերպ մը և առաքինութեան սէր։ Տասներկու տարեկան

եղած ատենը ամենուն աչքը անոր վրայ դարձեր էր. Ինքը միայն աշխարհիս ընդունայնութեան ստութիւնը աղէկ ճանչցած ըլլալով՝ ամենևին ականջ չէր դներ այնպիսի փուճումուճ գովութեանց. «Հոգւոյն գեղեցկութիւնը միայն՝ երջանկութեան պատճառ պիտի ըլլայ, կ՚ըսէր. մարմնական վայելչութիւնը ան ծաղկըներուն կը նմանի՝ որոնց բացուիլն ու չորնալը մէկ կ՚ըլլայ»։ Լաւ հասկըցեր էր Որսոլա թէ քրիստոնեայ աղջկան մը ճշմարիտ զարդը պարկեշտութիւնն է. անոր համար ոչ երբէք ինքզինքը զարդարելու և մարդկանց դիմացը բան մը երևնալու ջանք ունեցաւ. և հազիւ թէ Քրիստոսն սկսաւ ճանչնալ, կուսական կենաց իղձ և փափաք մը կը զգար։

Այն ատենները Մաքսիմոս բռնաւորը որ մեծին Բրիտանիոյ մէջ Գրատիանոս կայսեր զօրացը սպարապետն էր, իր զօրքերէն կայսր անուանուելով՝ անոնցմով Գաղղիա անցաւ ու հոն իր իշխանութիւնը հաստատեց։ Եւ որովհետև զօրացը մէջ Կոնոն անունով անուանի սպարապետ մ'ալ կար որ իր քաջութեամբն ու խելքովը Մաքսիմիանոսի շատ սիրելի եղած էր, կայսրը իրեն վաստակոցը փոխարէն մը ընել ուզելով՝ Արմորիկիա կամ փոքր Բրիտանիա ըսուած նահանգին դուքս դրաւ զինքը. Կոնոն ալ Նանթէս քաղքին մէջ դնելով աթոռը, իր երկիրը ծաղկեցընել ու բարեկարգել սկսաւ. և որովհետև դեռ աշխարհք չէր մտած՝ հարս մը փնտռելու ե-

տեէ եղաւ. և Որսոլայի առաքինութիւնը՝ համեստութիւնը և անհամեմատ գեղեցկութիւնը իմացած ըլլալով՝ միտքը դրաւ որ իրեն հարսնացընէ։ Ուստի մարդ խրկեց Բրիտանիա Որսոլայի հօրը որ երթան հետը խօսին ու աղջիկը մեծ պատուով առնուն իրեն բերեն. և որովհետև իր ապայից և զօրապետաց շատն ալ դեռ չէին ամուսնացած՝ պատուիրեց իր մարդիկներուն որ ուրիշ տեսքով աղջիկներ ալ հետերնին բերեն անոնց համար։

Քոռնովալիոյ թագաւորը մեծ պատուով ընդունեցաւ կոնոն դքսին մարդիկը. և իշխանին կամքը լսելով՝ շատ ուրախացաւ իրեն առաջարկութեանը վրայ, որովհետև դքսին ազնիւ բնաւորութիւնը լաւ գիտէր. ուստի խոստացաւ որ անպատճառ աղջիկը հետերնին կը խրկէ։ Բայց Որսոլայի մայրը աս բանս լսելով շատ ցաւեցաւ. վասն զի միամօր աղջիկն ըլլալով՝ իրեն մեծ մխիթարութիւն էր, և սիրտը առաջ չէր երթար որ իրմէ բաժնուի։

Իսկ Որսոլայի միտքը բոլորովին ուրիշ բան էր. աստուածպաշտութեամբ մեծցած ըլլալով՝ առաջադրեր էր որ միշտ կոյս մնայ. ուստի երբոր իր հօրը կամքը լսեց՝ շատ ցաւելով լալ սկսաւ։ Հայրը թէպէտ մեծ սէր ունէր իր աղջկանը վրայ, բայց աղէկ գիտնալով թէ այս հարսնախօսութիւնը թէ իրեն և թէ աղջկանը շատ օգուտներ ունէր, կոնոնի քրիստոնեայ և ազնուաբարոյ մարդ ըլլալուն համար, ստիպեց Որսոլան որ հնազանդի իրեն ու ելլէ երթայ։

Սրբուհին հառաչելով մը հօրը ոտքը ինկաւ, «Խնդրեմ, ըսաւ, հայր իմ, միայն այս անգամ լսէ քու աղջկանդ, ու Աստուծոյ սիրոյն համար՝ իմ երկնաւոր փեսայէս զիս մի՛ բաժներ. Քրիստոսի Աստուծոյ իմոյ հարսնանալ ուխտեր եմ, թող զիս որ ողջակէզս կատարեալ ըլլայ»: Հօրը սիրտը ելլելով, «Դուստր իմ, ըսաւ, հնազանդէ քու ծնողացդ. Աստուծոյ օրհնութիւնը հետդ է, զմեզ մի՛ արհամարհեր»: Սրբուհին տեսնելով որ ոչ իր աղաչանքովը և ոչ ողբերովը կրցաւ հօրը միտքը փոխել, չուզեց որ անոր կամացը դէմ կենալով զինքը վշտացընէ. ուստի դրսէն հաւանութիւն մը ցըցուց, և ինքզինքը բոլորովին Աստուծոյ կամացը յանձնելով, սկսաւ աղօթքի հետ ըլլալ, խնդրելով Յիսուսէն որ կուսութեանը շնորհքը անարատ պահէ. «Դու գիտես, ըսաւ, փրկիչ իմ, սրտիս փափաքը, ու թէ ի՞նչպէս փուճ բաներ կ՚երևնային իմ աչքիս աս աշխարհիս մեծութիւններն ու տեսակ տեսակ հաճոյքը. բայց ես զքեզ միայն սիրեցի, տէր իմ, ու քեզի միայն փափաքեցայ. մի՛ արհամարհեր իմ խնդրուածքս, ու ցրուէ ծնողացս խորհուրդը, որով զիս ուխտէս ետ դարձընել կը փափաքին»:

Կոնոնի խրկած մարդիկը երբոր սրբուհւոյն հաւանութիւնը լսեցին՝ ճամբայ ելլելու պատրաստութիւն սկսան տեսնել, ու շատ աղջիկներ ալ առին հետերնին. ետքը ամէնքը մէկտեղ Լոնտրա քաղաքը ելան գնացին, որպէս զի յաջողակ հովմով մը մէկէն ճամբայ ելլեն:

Որսոլա իր ընկերակից աղջկանցը հետ շատ անգամ աշխարհիս մեծութեան ունայնութեանցը վրայ կը խօսէր. և որովհետև բոլորն ալ քրիստոնեայ ծնողաց զաւկըներ էին, կուսական կենաց երջանկութիւնն ու հանդըստութիւնը կը բացատրէր անոնց։

Աղջիկները սրբուհւոյն եռանդուն հոգին տեսնելով, և անոր ազդու խօսքերը լսելով՝ միտքերնին դրին որ աշխարհիս ամէն բերկրութիւններուն աչք գոցելով՝ Յանուն Քրիստոսի միայն սիրելի ըլլալ. ուստի սրբուհին իրենց բռնելու ճամբուն առաջնորդ առնելով՝ անոր ըսածներուն կը հետևէին, և իր խօսքերէն դուրս չէին ելլեր։ Յաջող քամիով մը ճամբայ ելան, և թէպէտ նաւերնին արագութեամբ առաջ կ՚երթար, բայց Որսոլա ամենևին չէր տարակուսեր թէ Աստուած անփորձ պիտի պահէ իր կուսութիւնը։ Եւ յիրաւի, Բրիտանիոյ կղզիէն դեռ նոր հեռացեր էին, երբոր սաստիկ քամի մը ելլելով՝ զամէնքը վախի ու տրտմութեան մէջ ձգեց. միայն սրբուհին ուրախ և զուարթ կեցեր էր այն շփոթութեան առենը, և իր ընկերները կը խրախուսէր. «Երկինքը հզօր Աստուած մը ունինք, կ՚ըսէր, որ հողմոց և ալեաց իշխանն է. մեռնելու ալ ըլլանք՝ դարձեալ պէտք է ուրախանանք հաւատացեալքըս՝ որ կ՚երթանք մեր արարչին հետ կը միանանք»։

Սրբուհւոյ այս քաջալերական խօսքերը մեծ ազդեցութիւն ըրին իր ընկերակցացը և ու-

րիշ նաւորդաց վրայ. բայց հովը քանի պնաց սաստկացաւ, և նաւուն մէջինները անոր բռնութեանը դէմ դնել չկրնալով՝ երբոր ինչ ընելիքնին չէին գիտեր, նաւը աւազի վրայ խրեցաւ. մնաց։ Եւ որովհետև Պելճիա ըսուած գաւառը այն կողմերը կ'իյնար, մակուկներով ամէնքը հոն ելան. Որսոլա ալ Աստուծոյ խնամոցը շնորհակալ ըլլալով՝ հետն առաւ իր ընկերները և անոնցմով Քոլոնիա քաղաքը գնաց կ'ըսեն, ու հոն նահատակուեցաւ հետևեալ կերպով։

Գրատիանոս կայսրը Մ'աքսիմոս բռնաւորին ապստամբութիւնը լսելով՝ և թէ ի՛նչպէս Գաղղիա անցեր, և հոն ինքնագլուխ իշխանութիւն կը բանեցընէ, շատ նեղացաւ. բայց որովհետև իր ունեցած զօրքերովը Մ'աքսիմոսի դէմ դնել չէր կրնար, Հոնք ըսուած հին Սարմատիոյ վայրագ, անգութ և կռապաշտ ազգը օգնութեան կանչեց։ Իրենց զօրագլուխ կեցաւ Կոն անունով իշխանը, որ քրիստոնէից դէմ չարաչար ատելութիւն ունենալուն՝ հրաման տուեր էր զօրացը որ ամենևին չխնայեն, ու ձեռուընին անցածը սպաննեն։ Կոնի զօրքերը ճամբան քրիստոնէից և Բրիտանացւոց իրենց թշնամեացը նաւը տեսնելով, վրան վազեցին ու արգիլեցին որ առաջ չերթայ. իմանալով ալ որ այն բազմաթիւ օրիորդքը Մ'աքսիմոսի Գրատիանոս կայսեր թշնամւոյն իշխանացը հարս պիտի ըլլան, և թէ Որսոլա Կոնոն դքսին թագուհին է, մէկէն զամէնքն ալ բռնեցին հետերնին տարին։

Սրբուհին այս զարմանալի հրաշքը տեսնելով՝ աստուածային յայտնութեամբ իմացաւ որ չէ թէ միայն կուսութեան, այլ նաև մարտիրոսական մեծ պսակին ալ արժանի պիտի ըլլայ իր ընկերներովը. ուստի երկնային սիրով վառուած՝ կը քաջալերէր զիրենք որ մահուընէ չվախնան. «Քրիստոսի համար մահը անմահութիւն է, կ՚ըսէր. երանի՛ մեզի որ այս շնորհացն ալ արժանի պիտի ըլլանք. ինչուան հիմա կեանքերնիս Քրիստոսի նուիրած էինք կուսութեամբ, առենը հասաւ որ իր սուրբ հաւատոցը համար արիւննիս ալ թափենք»։

Հոնաց զօրքին սպարապետներէն մէկը Որսոլայի գեղեցկութիւնը լսելով՝ առջևը կանչեց զինքը, և ամէն հնարքն սկսաւ բանեցընել որ հաւանի իրեն հարս ըլլալու. և մեծամեծ խոստմունքներով և ինչուան սպառնալեօք ալ կը ջանար զինքը որսալ։ Բայց սրբուհին անոր ամէն հնարիցը դէմն առնելով «իմ ընկերներովս պատրաստ եմ, ըսաւ, ամէն չարչարանք և ինչուան մահն ալ աչքերնիս առնելու մեր Աստուծոյ սիրոյն համար». բարկացաւ սպարապետը, և առանց քննելու՝ մէկէն հրամայեց որ զամէնքն ալ նահատակեն։ Ուստի ոմանց գլուխը կտրեցին, զոմանք ալ նետով սպաննեցին. սրբուհին Որսոլա ալ նոյնպէս նետով խոցոտելով՝ մարտիրոսական սուրբ պսակին արժանի եղաւ հոկտեմբեր ամսուն 21ին 323 թուականին. և ան առենէն ի վեր արևմտեան եկեղեցին մեծ փառքով սկսաւ

անոնց յիշատակը տարուէ տարի հանդիսով տօնել. իսկ իրենց մարմինները Քօլոնիայի մէջ թաղեցին հաւատացեալք։

Սրբուհւոյն Ուրսուլայի վկայակից ընկերակցաց թիւը չգիտցուիր. բայց յայտնի է որ շատ բազմաթիւ եղած պիտի ըլլան։ Սիկիպերդոս անունով մէկը որ երկոտասաներորդ դարուն սկիզբները կ'իյնայ՝ 11,000 հոգի էին կ'ըսէ. իրմէ ետքը եկող վկայագիրք ալ նոյն կարծիքի վրայ են. բայց կ'երեւնայ թէ այս թուոյն մէջ չափազանցութիւն պիտի ըլլայ. ընդհակառակն ոմանք ալ չափէն աւելի կը նուազեցընեն։

Ատեն անցնելէն ետքը սրբուհւոյն Ուրսուլայի անուամբը միաբանութիւն մը հաստատեցին բարեպաշտք՝ Ուրսուլինեանք անունով. այս միաբանութեան անձինքն են աղջիկ տղայք և այրիք, որոնք սրբոյն Օգոստինոսի կանոնները կը պահեն, ու քաղքին գլխաւոր եպիսկոպոսին իշխանութեան տակն են, ու աղջիկներ դաստիարակելով՝ հասարակաց մեծ օգուտ ըրած են։ Այս ընկերութեան հաստատողն եղաւ երանելին Անճելա պրէշիացի տիկինը, որ նախ Իտալիոյ քաղաքաց մէջ կանգնեց 1537ին, և Հռովմայ քահանայապետքն ալ իրենց կոնդակներովը և ձեռնտուութեամբը ընդունեցան այն նորահաստատ ընկերութիւնը։ Իրմէ ետքը ուրիշ Գաղղիացի մեծուհի մըն ալ՝ իր երկրին մէջ հաստատեց այս միաբանութիւնը, որոնք ետքը շատ բազմացան։

## ՍՐԲՈՒՀԻ

# ՄԱՐԳԱՐԻՏԱ ԹԱԳՈՒՀԻ

Սրբուհին Մարգարիտա ազնուազարմ և մաքրակրօն Թագուհին՝ Անգղիոյ Եդմոնտոս Բ Թագաւորին Թոռն էր, որ Դանեաց Քանութոյ Մեծն ըսուած Թագաւորին դէմ դնել չկրնալով, ստիպուեցաւ որ իր տէրութիւնը երկու բաժնէ, և մէկ մասը անոնց տայ։ Եդմոնտոսի մահուընէն ետքը Քանութոյ վախնալով որ չըլլայ թէ անոր որդիքը և ազգականները նորէն զօրանալով, իր մասը ետ ուզենան առնուլ, բոլորը մէկէն Գերմանիա վռընտեց. անոնք ալ գնացին Հունգարացւոց սուրբ Ստեփանոս Թագաւորին ապաւինեցան, որ վրանին ձեռք դրաւ, և հօր պէս ամէն խնամք ցըցուց։ Եդմոնտոսի համանուն անդրանիկ որդին՝ Ստեփանոս Թագաւորին աղջկանը հետ կարգուեցաւ. պզտի տղան ալ որ Եդուարդ կ'ըսուէր, անոր Ագաթա Թոռը իրեն առաւ։ Ասոնց աղջիկն է սրբուհին Մարգարիտա որ 1402ին ծնաւ։

իշխանուհեաց մէջ քիչ հոգի եղած է որ Մարգարիտայի պէս իրենց ունեցած ազնիւ բարեմասնութիւնքը՝ տղակուց ալ յայտնի ցուցըցած ըլլան։ Աստուած որ այս սրբուհին ամէն տիկնանց բարի օրինակ պիտի ընծայէր աշխարհի, վեհանձն և գթած սիրտ մը պարգևեր էր իրեն. կենդանի և եռանդուն հոգի մը, քաղցր բնաւորութիւն, և որ մեծն է՝ առաքինութեանց զարմանալի սէր և ախորժ մը։

Ամէն բանէ աւելի պզտիկութենէն ի վեր մասնաւոր ջերմեռանդութիւն մը ստացեր էր առ սուրբ Աստուածածինն. կ'ըսեն թէ սուրբ կուսին անունը միայն լսելով արցունքը չկրնար եղեր բռնել. ամբողջ օրեր սրբութեան դիմաց կ'անցընէր, հոգևոր ընթերցմունքն և աղօթքն ալ իր սրտին մեծ մխիթարութիւններն էին։ Հագուիլ կապուիլ չէ թէ միայն չէր սիրեր, այլ նաև կը զզուէր այն իր փափուկ հասակին մէջ. վասն զի առաքինութիւնը միայն իր ճշմարիտ զարդարանքը սեպած էր։ Երբոր իրեն կ'ըսէին թէ արքայազուն աղջկան մը համար քու ճամբադ բռնելը մեծ ամօթ է, «Քրիստոնեայ աղջկան մը ազնուութիւնը իր արտաքին հանդերձիցը վրայ պիտի չըլլայ» կ'ըսէր։

Պզտիկութեան ատենը երբոր հայրը մեռաւ, Մարգարիտա սկսաւ ետևէ ըլլալ որ զինքը վա՛նք մը դնեն, որ երկրաւոր զբաղմունքներէն ազատ ըլլալով, իր հոգւոյն փըրկութեանը վրայ խնամք ունենայ։ Բայց այն օրերը իր հօրեղբայրը սուրբն Եդուարդ Գ.

Քանութոյ թագաւորին մահուընէն ետքը։ Անգ-
ղիոյ թագաւոր ըլլալով, Հունգարիայէն իր
Ետկարոս եղբօրորդին, և անոր երկու քոյ-
րերը Մարգարիտան և Քրիստինէն իր քո-
վը կանչեց։

Մարգարիտա Բրիտանիոյ արքունեաց մէջ
իր ազնիւ կատարելութիւններովը և անզու-
գական առաքինութեամբքը ամենուն զար-
մանալի եղաւ և սիրելի. ուստի Սկովտիոյ
Մալքոլմոս թագաւորը իրեն համար հարս
ուզեց զինքը։ Իրաւ Մարգարիտայի կամացը
դէմ էր աշխարհք մտնելը, բայց ազգակա-
նացն աղաչանացը մտիկ ընելով յանձն ա-
ռաւ. սակայն ան արքունի ճոխութեանցը
մէջ եռանդը և աստուածպաշտութիւնը աւելի
աճեցուց. իր համեստութեամբը և խոնարհ
հլութեամբն ալ թագաւորին սիրելի եղաւ։
Իսկ իր փեսան Մալքոլմոս՝ Մարգարիտայէն
վար չէր մնար իր ազնիւ բարքովը ու առա-
քինութեամբքը։ Արդէն աստուածավախ և
բարեպաշտ մարդ մը ըլլալով՝ կնկանը յոր-
դորանօքը աւելի վառուած՝ ջանք ըրաւ քրիս-
տոնէութիւնը իր տէրութեան մէջ ծաղկե-
ցընել. խաղաղ և հանդարտ կառավարու-
թեամբն ալ արժանապէս սիրելի եղաւ ամե-
նուն։ Աստուծոյ օրհնութիւնը այս երջանիկ
ամուսնացը վրայէն չպակսեցաւ, և վեց մանչ
տղայ պարգևեց անոնց՝ երկուք ալ աղջիկ։

Մարգարիտա զաւակացը քրիստոնէական
դաստիարակութեանը վրայ մեծ հոգ և խը-
նամք ունենալով, ամէն ջանք կ՚ընէր որ չըլ-

լայ թէ իր անհոգութեամբը անոնց գէշ կըր-
թութեանը պատճառ ըլլայ. առաքինութեանց
սկզբունքները աւելի օրինակով քան թէ խօս-
քով կը տպաւորէր անոնց սրտին մէջ. կը
նայէր որ այն իշխանազուն մարդիկը՝ որոնց
իր որդիքը կը յանձնէր՝ ոչ այնչափ իրենց
մեծութեամբն ու իշխանութեամբը՝ որչափ
բարեկրօն վարուքը վկայուած ըլլան։ Ամէն
ջանք կ՚ընէր որ անոնց թարմ միտքը լու-
սաւորելով աշխարհիս ունայնութեան ստու-
թիւնը և յաւիտենական երանութեան մե-
ծութիւնը ճանչցընէ. կը ցուցընէր իրենց
թէ ինչպէս վաղանցուկ բաներ են աշխար-
հիս մեծութիւնն և իշխանութիւնը։

Մալքոլմոս թագաւորը իր դշխոյին կար-
գէ դուրս հանճարը և գործունէութիւնը
տեսնելով՝ ուզեց որ տէրութեան պաշտօննե-
րուն ալ խառնուի իբրև խորհրդական իշխա-
նաց։ Մարգարիտայի դրած իմաստուն և
խելացի օրէնքներուն ազդեցութիւնը՝ քիչ
ատենուան մէջ սկսաւ տեսնուիլ։ Շատ ան-
կարգութիւններ մտած էին Սկովտիոյ մէջ.
քառասնօրեայ պահքը բռնողները խիստ քիչ
էին, նոյնպէս խոստովանութեան ալ և սուրբ
խորհրդոց յաճախութիւնը բոլորովին դա-
դրած էր. կիրակի ու տօն օրերն ալ սուրբ
չէին բռներ։ Թագուհին այս ամէն անկար-
գութիւնները տեսնելով՝ միտքը դրաւ որ զա-
նոնք վերցընելու. համար ամէն ջանք ընէ.
ուստի մէկէն բարեպաշտ և իմաստուն քա-
րոզիչներ բերել տուաւ ամէն աշխարհէ. ժո-

ղովրդապետ և հոգաբարձու ալ ջերմեռանդ և աստուածասէր մարդիկը դրաւ. իր բարի օրինակովը ժողովուրդը աստուածպաշտութեան կը յորդորէր, եւ քիչ ատենուան մէջ յայտնի տեսնուեցաւ թէ օրհներ է եղեր Աստուած Մարգարիտայի ջանքը։ Սկովտիոյ պալատականքը անփութութեան զարկած՝ հաւատոյ սկզբունքներն ալ մոռցեր էին, և հաղորդութեան սուրբ խորհրդոյն և ոչ զատկին կը մերձենային սրբուհին մէկ օր մը լալով խրատել սկսաւ զիրենք որ այս պաղութենէն ետ կենան. «Զըլլայ թէ, կ'ըսէր, մեր մեղացը համար՝ Աստուած բոլոր ժողովուրդը պատժէ»։ Պալատականները սկսան իրենք զիրենք արդարացընել թէ հաղորդութենէ ետ կենալնուն պատճառը անփութութիւնը չէ, այլ կը ճանչնանք կ'ըսէին մեր տկարութիւնն ու խեղճութիւնը, և թէ ի՛նչպէս անբաւական ենք այնպիսի մեծ Աստուած մը մեր սրտին մէջ ընդունելու. բայց Մ'արգարիտա համոզեց զիրենք թէ միայն անզեղջ ու իրենց մեղացը վրայ յամառեալ մեղաւորները արժանի չեն այն սուրբ և սարսափելի խորհրդոյն։

Երանելի թագուհւոյն առաքելանման ջանքովը քրիստոնէական սուրբ կրօնքը շատ ծաղկեցաւ այն գաւառաց մէջ։ ինքը ամէն ջանք ըրաւ, ետքը խստիւ ալ պատուիրեց քաղաքապետաց ու իշխաններուն որ ամէն արթնութիւն ընեն որ չըլլայ թէ կիրակի ու տօն օրեր ծառայական սպասաւորութեանց ետևէ իյնողներ գտնուին. արգիլեց նաև սի-

մոնականութիւնն, հայհոյութիւնը՝ վաշխը, և ասոնց նման ուրիշ անկարգութիւններըː

Մալքոլմոս իր թագուհւոյն խելացի կարգաւորութեանց և ըրած բարեկարգութեանցը վրայ զարմանալով, արքունի գանձուց վրակեցու դրաւ զինքըː Մարգարիտա այն մեծ պաշտօնը ձեռքն որ առաւ՝ մէկէն աղքատաց ու եկեղեցեաց սկսաւ առատ ողորմութիւններ բաժնել. շատ եկեղեցիներ շինեց՝ հինցածները նորոգեց, և մասնաւոր զարդեր և սպասներ շինել տուաւ անոնց ամենուն համար. ասոնցմէ զատ՝ վանքեր ու աղքատանոցներ ալ հաստատեց. « Ետևէ եմ, կ'ըսէր, որ ըրած ողորմութիւններովս արքունի գանձը պարպեմ »ː Աղքատաց վրայ մեծ խնամք ունէր. անանկ որ կ'ըսեն թէ իր ատենը Սկովտիոյ մէջ գրեթէ մուրացկան աղքատ չէր մնացածː իրեն ունեցած ստակը անոնց տալով սպառելէն ետքը՝ ոսկիէ ու արծըթէ զարդերն ու ազնիւ ակունքն ալ, ինչուան սենեկին աւելորդ սեպուած կահկարասիքը բոլոր խեղճերուն բաժներ էː

Սովորութիւն ըրած էր որ ամէն օր կերակուր ուտելէն առաջ՝ ինը որբոց և քսան աղքատաց սեղան կը դնէր, ու անձամբ կը ծառայէր անոնցː Շատ անգամ թագաւորն ալ Մարգարիտայի տուած բարի օրինակին հետևելով՝ իր սեղանէն առաջ իրեքհարիւր աղքատաց համար թագաւորական կերակուրներ պատրաստել կուտար, ու Մարգարիտայի հետ անոնց կը սպասաւորէրː

Արքունի անթիւ հոգոց և զբաղմանցը մէջ Մարգարիտա ամենևին չէր մոռցած իր քրիստոնէական պարտքերը։ Ամէն իրիկուն կ'ելլէր եկեղեցին կ'երթար, ուր նախ իրեն առանձնական աղօթքներն ընելով՝ առաւօտեան ժամերգութիւնն ալ կը լսէր, ու ետքը տուն դառնալով՝ աղքատաց ոտուըները կը լուար, և անոնց առատ ողորմութիւն տալէն ետքը քիչ մը քուն կ'ըլլար։ Արթըննալէն վերջը՝ հոգևոր ընթերցման ետևէ կ'ըլլար, ու արքունի մատուռն երթալով՝ ինչուան հինգ կամ վեց պատարագ կը լսէր։ Անկէ ետքը ինչուան ճաշաժամուն ատենը տէրութեան գործքերը կը հոգար։

Պահոցը խստութիւնը և ինքզինքը մահացընելը շատ անգամ չափէն ալ աւելի էր. կերածը այնչափ քիչ բան էր որ տեսնողները կը զարմանային թէ ինչպէս կ'ապրի. և մահուանը պատճառը ոմանք իրեն չափազանց խստակրօն վարքը կը համարին։ Իր մօտալուտ մահը աստուածային յայտնութեամբ մը իմացած ըլլալով՝ ընդհանրական խոստովանանք եղաւ, ու ետքը կամաց կամաց տկարանալով անկողին ինկաւ. բայց հիւանդութեան ատենն ալ իր աստուածպաշտութիւնն ու գթած սիրտը ամենևին չմոռցաւ։ Աստուած ուրիշ վըշտով մըն ալ Մարգարիտայի փառքը աճեցընել ուզեր է եղեր. վասն զի ան ատենները Մալքոլմոս իր փեսայն Անգղիոյ Գուլիելմոս Կարմիր թագաւորին դէմ պատերազմի գնացած ըլլալով, գեռէ մը անց-

նելու տեղն իր Եդուարդ անդրանիկ տղուն հետ մէկտեղ խղդուեցաւ։ Թագուհւոյն մեծ կսկիծը մխիթարողը աստուածային կամաց համակերպութիւնն էր. բայց այս ձախորդ-լուրը առնելէն ետքը շատ չկրցաւ ապրիլ. վասն զի սաստիկ ջերմամբ մը տկարանալով՝ մեծ ջերմեռանդութեամբ վերջին թոշակն ու օծումը առնելէն ետքը՝ կանչեց իր որդիքը, և սրտաշարժ խրատներ խօսելով՝ յունիս ամսոյն տասներորդ օրը 1093ին վախճանեցաւ սրբութեամբ։



## ՍՐԲՈՒՀԻ

# ՄԱԹԻԼՏԷ ԹԱԳՈՒՀԻ

Սրբուհին Մաթիլտէ վեսթֆալիա նահանգը ծնաւ իններորդ դարուն վերջերը՝ ազնուական և հարուստ ծնողաց տնէ, որոնք իրենց բարեպաշտութեամբը աղէկ իմացած ըլլալով աշխարհային մեծութեան և բերկրութեանց ունայնութիւնը, ամէն ջանք ըրին Մաթիլտէի ազնուական դաստիարակութենէն աւելի քրիստոնէական ճշմարիտ կրթութիւն մը տալ: Եւ այս վախճանին համար ձեռքերնէն եկածին չափ աշխատելէն ետքը, Էրֆուրթի կուսանաց վանքը դրին իրենց զաւակը, որպէս զի աբբասուհին որ Մաթիլտէի մեծ մայրն էր, անոր կրթութեանը աւելի կերպով մը հոգ ունենայ: Այն առանձնութեան մէջ աղէկ իմացաւ Մաթիլտէ թէ ի՛նչպէս մարդուս կենաց մի միայն մխիթարութիւնն՝ աստուածպաշտութիւնն և աղօթասիրութիւնն է. ուստի աշխարհային ամէն բերկրութիւնները մոռցած՝ հոգևոր ընթերց-

ման եռանդ էր անդադար։ Աբբատուհին սորվեցուց Մաթիլտէի թէ ինչպէս իր վիճակին յարմար ձեռագործաց հետ ըլլալը աւելի պատիւ է իրեն քան թէ ցածութիւն. «Դատարկութիւնը, կ'ըսէր, սուրբ գրոց մէջ իրաւամբք մայր ամենայն ախտից ըսուեր է. վասն զի դատարկակեացը հարկաւ գէշ մարդ կ'ըլլայ. ահաւասիկ կ'ըսէր, մաքուր ջուր մը որչափ ալ ականակիտ աղբիւրէ առաջ եկած ըլլայ՝ լճանալու որ ըլլայ մէկէն կը հոտի ու կ'որդնոտի։ Ուստի փոյթ ունեցիր, սիրեցեալ որդեակ, որ քեզի համար զբաղմունք մը գտնես, որով չէ թէ միայն առողջ և զուարթ կ'ըլլաս և անցուցած օրերդ զուարճալի կ'երևնան, այլ և տեսողաց ալ շինութիւն և բարի օրինակ կ'ըլլաս»։

Մաթիլտէ աղէկ հասկցաւ իր հոգևոր դաստիարակին տուած խրատուցը ոյժը, և կը խնդրէր Աստուծմէ որ տղայութեան ատեն ստացած անմեղութիւնը՝ աշխարհիս ըզբաղմունքներուն մէջ չկորսուին։ Աստուած ալ բարի աղջկան խնդրուածոցը լսեց, որով բարեպաշտութեան կենդանի օրինակ մը եղաւ Մաթիլտէ չէ թէ միայն վանական առանձնութեան՝ այլ նաև թագաւորական հաճոյից և բերկրութեանցը մէջ։

Աշխարհք մտնելու տարիքն որ հասաւ՝ Մաթիլտէի բարեպաշտ ծնողքը զինքը վանքէն հանել տուին, ու Սաքսոնիոյ Օթոն իշխանին Հենրիկոս որդւոյն հետ կարգեցին։ Քիչ ատենէն երբոր Օթոն մեռաւ՝ Հենրի-

կոս անոր տեղը անցաւ. Գերմանիոյ կոնրադոս Թագաւորին մահուընէն ետքը ալ՝ անոր յաջորդ եղաւ։ Հենրիկոս աստուածավախ և բարեպաշտ Թագաւոր մը ըլլալով՝ իր հպատակացն ալ շատ սիրելի եղաւ. ուստի ասով սիրտ առաւ Թագաւորը, և տէրութեան ներքին հոգը Մաթիլտէի յանձնելով, ինքը Թըշնամեացը վրայ պատերազմի ելաւ. ու երբոր նորանոր յաղթութիւններով կը զօրանար, իր դշխոյն խելացի կարգերով տէրութիւնը բարեկարգելու հետ էր։

Պարկեշտութեամբն, հեզութեամբը և անմեղութեամբ ամենուն աչքը մտաւ. և շատ ամբարիշտ մարդիկ Թագուհւոյն խրատուցը մտիկ ընելով՝ իրենց բռնած գէշ ճամբէն ետ կեցան։ Մաթիլտէ այս հոգևոր պտուղները տեսնելով շնորհակալ կ՚ըլլար Աստուծոյ. բայց իր սրտին ուրախութիւնը շատ կը չափաւորէր երբոր մտածելու ըլլար որ չըլլայ թէ ուրիշներուն փրկութեանը փոյթ ունենալով ինքզինքը մոռնայ. ուստի բայց ի անդադար աղօթքէն՝ ծոմերով ու ներքին ճգնութեամբք ալ իր մարմինը կը չարչարէր։ Շատ անգամ հիւանդաց այցելութեան ելլելով կը մխիթարէր զիրենք ու կը քաջալերէր, բանտարկեալները կ՚ազատէր ու մեծ յանցանք ունեցողներուն ալ առատ ողորմութիւն տալով կը յորդորէր որ ապաշխարութեամբ իրենց մեղքը քաւեն։ Հենրիկոս իր փեսայն ալ Մաթիլտէի օգնական և ընկեր եղած էր անոր ամէն բարեպաշտական գործոցը։

Քսանուիրեք տարի այսպիսի խաղաղ հանդարտութեամբ մը իրենց աստուածահաճոյ կեանքը անցուցին. բայց Աստուած որ միշտ վշտօք և նեղութեամբք արդարոց առաքինութիւնը և հաւատքը կը փորձէ, ուզեց որ Մաթիլտէ ալ նոյն բովքէն անցնի աւելի մաքրուելու և փառաւորուելու համար։ Հենրիկոսի իր երկանը վրայ յանկարծական հիւանդութիւն մը եկաւ, անանկ որ ամէնքը անոր կեանքէն յոյսերնին կտրեցին. թագուհին ալ արտասուօք կ'աղօթէր որ փեսին առողջութիւն պարգևէ Աստուած. բայց երբոր ժողովրդեան ողբոցը ձայնէն անոր մեռնիլն իմացաւ, զարմանալի համակերպութեամբ մը Աստուծոյ կամքը օրհնեալ ըլլայ ըսաւ, ու հոգւոյն համար աղօթք և պատարագներ յանձնել տուաւ։

Այս վշտին վրայ Աստուած Մաթիլտէի ուրիշ աւելի մեծ նեղութիւն մ'ալ խրկեց. իրեք տղայ ունեցեր էր իր երկանէն, Ոթոն, Հենրիկոս և Բրունոն. և թէպէտ ամէն ջանք ըրաւ անոնց աղէկ դաստիարակութեանը համար, ու իրենց հօրը մեռնելէն ետքը արտասուօք ալ խրատեց զիրե՛նք որ Աստուծոյ վախը սրտերնուն մէջ պահեն, ու մէկմէկու հետ միաբան ու սիրով ըլլան, բայց ետքը տեսաւ որ իր խրատները մեծ արդիւնք մը չունեցան. վասն զի իրենց մէջ անմիաբան ըլլալով՝ մօրերնուն սրտին ալ մեծ կսկիծ եղան։ Հենրիկոսի մահուընէն ետքը անոր Ոթոն անդրանիկ որդին հօրը տեղ թագաւոր

դրին զի օրինաւոր ժառանգ ըլլալէն զատ ուրիշ շատ ալ ազնիւ կատարելութիւններ ունէր. բայց Ոթոնի Հենրիկոս եղբայրը անոր իշխանութեանը վրայ նախանձելով՝ իր եղբօրը դէմ պատերազմի ելաւ. ու ետեւ էր որ անոր իշխանութիւնն ալ ինքը յափըշտակէ. «Եղբայրս որ ծնաւ, կ'ըսէր, հայրերնիս սոսկ Սաքսոնիոյ իշխանն էր. իսկ ես իրեն Գերմանիոյ թագաւոր եղած ատենը ծներ եմ»։ Հենրիկոսի իրաւունքը թէպէտ ասանկ խախուտ հիման մը վրայ հաստատուած էր, բայց Մաթիլտէ իր մայրը վրան մասնաւոր գութ և սէր ունենալուն պատճառաւը կը ջանար որ ինքը ըլլայ հօրը յաջորդ. ուստի ամէն տեղ հռչակեց թէ Հենրիկոս է Սաքսոնիոյ թագաւորը, և ասով երկու եղբարց գժտութեանը և իրարու դէմ պատերազմ բանալուն պատճառ եղաւ։

Մաթիլտէ թէպէտ և այս իր գործողութեամբը մեծ սխալմունք ըրած սեպուեցաւ, բայց Աստուած նորանոր փշտօք անոր յանցանքը քաւեց։ վասն զի երկու եղբարքը մէջերնին հաշտուելով՝ իրենց մօրը դէմ դարձան, և քանի մը չարամիտ մարդկան ալ սուտումուտ ամբաստանութեանցը ականջ կախելով, ունեցածը չունեցածը յափշտակեցին իրմէ. և չլսուելու անգթութեամբ մը խեղճ աղքատութեան մէջ ձգեցին իրենց տիկին մայրը։ Մաթիլտէ՝ որ լաւ ճանչցեր էր ըրած պակասութիւնը, առանց բերնէն գանգատ մը հանելու, «Աստուծոյ կամքն է, ըսաւ, որ

զիս պատժել ուզեց ըրած անիրաւութեանս համար»։ Անդադար աղօթք կ'ընէր Աստուծոյ որ իր որդւոյը բռնած ճամբան ուղղէ, որ չըլլայ թէ իրենց գէշութեամբը ժողովըրդեան անհանգստութեանն ու աւրուելուն պատճառ ըլլան. «Որդիքս, կ'ըսէր, ինծի նեղութիւն կ'ուզեն հասցընել. բայց անով իմ բարւոյս պատճառ կ'ըլլան. վա՛յ է ինծի թէ որ գանգատանօք և տրտնջելով կորսընցընեմ իմ վարձքս»։ Երբոր ծանօթները իր որդւոցը՝ մօրերնուն դէմ ցըցուցած անգթութիւնը վար զարնէին, ամէն ջանք կ'ընէր որ կերպով մը արդարացընէ զանոնք. «Օթոն իմ որդիս, կ'ըսէր, արժանապէս ինծի դէմ ելած է. վասն զի ես ալ իրեն դէմ անիրաւութիւն ըրի. իսկ Հենրիկոսին համար որ իմ այնչափ սէրս ու խնամքս տեսեր է, ամենեին չեմ հաւատար թէ չարիքս ուզենայ. ո՛վ գիտէ ի՛նչ մտքով ինծի այս կերպը կը ցուցընէ. միտքըս դրած էի թէ ծերութեանս մխիթարիչը ինքը պիտի ըլլայ. Աստուած չէ ուզած, իր կամքն օրհնեալ ըլլայ. բայց ես կը խնդրեմ Աստուծմէ որ զիս միշտ այսպիսի վիճակի մէջ ձգէ, սակայն այն մեծ մխիթարութեանն ալ արժանի ընէ որ կարենամ տեսնել իմ որդիքս՝ թէ իրենց հոգւոյն փրկութեանը ետևէ են»։

Օթոնի և Հենրիկոսի իրենց մօրը դէմ ցուցըցած ատելութիւնը շատ երկար քշեց. վերջապէս Աստուած Մաթիլտէի երկայնամիտ համբերութիւնը պսակել ուզելով՝ բա-

ները աղէկի դարձուց, և իրեն անկարգ որ-
դիքը մեծամեծ թշուառութիւններով պատ-
ժեց. վասն զի Օթոն շատ ներողութեանց հան-
դիպելէն ետքը, պատերազմի մը մէջ չարաչար
յաղթուեցաւ. Հենրիկոս ալ ծանր հիւանդու-
թեամբ մահուան դուռը հասաւ։ Օթոնի կինը
յայտնի իմանալով թէ Աստուծոյ պատիժն
են այս դժբաղդութիւնները, եպիսկոպոսաց
և իշխաններու ձեռքովը ջանք ըրաւ որ յոր-
դորէ զիրենք խաղաղութեան և սիրոյ ետևէ
ըլլալու։ Եւ յիրաւի, Օթոն անդրանիկը իր
կնոջը խրատուցը մտիկ ընելով՝ զղջացաւ
մօրը դէմ՝ ցուցըրած անգութ կերպին վրայ.
ուստի քանի մը եպիսկոպոսներ և իշխաններ
խրկեց Վեսթֆալիա, ուր առանձնացեր էր
Մաթիլտէ, և անոնց միջնորդութեամբը կ՚ա-
ղաչէր որ իրմէ կրած անիրաւութիւնները
մոռնայ, և նորէն գայ իր քովը բնակի։ Սըր-
բուհին թէպէտ այն մինակութիւնը թողուլ
չէր ուզեր, բայց եպիսկոպոսներէն ստիպուե-
լով՝ ճամբայ ելաւ հետերնին. Օթոն մօրը
դիմացը ելաւ, և ոտքը իյնելով արտասուօք
կ՚աղաչէր որ ներէ իր յանցանացը։ Հենրի-
կոս ալ իր եղբօրը տուած բարի օրինակին
հետևելով՝ ըրած չարեացը համար թողու-
թիւն խնդրեց մօրմէն. Մաթիլտէ քաջալե-
րեց զիրենք և ուրախութեամբ ելաւ արքու-
նիքը գնաց։

Թագուհին թէպէտ իր առջի փառքն ու
պատիւը գտաւ, բայց աշխարհքէս բոլորովին
զզուած ըլլալով՝ միայն հոգևորի և ուրիշնե-

րուն բարիք ընելու ետևէ եղաւ։ Քանի որ տարիքը կ՚առնէր՝ այնչափ ալ իր սրտին եռանդը կ՚աւելնար. ուստի բնութեանը տկարանալուն ամենևին չնայելով՝ քանի կ՚երթար իր պաքերն, հսկումները և ճգնութիւնները կը շատցընէր։ Գիշերը մութ ատեն իր արքունեացը մատուռը առանձնանալով՝ աղօթքի ետևէ կ՚ըլլար. անկէ ուրիշ եկեղեցի մը կ՚երթար, և աղօթքներ ու պատարագներ լսելէն ետքը՝ աղքատաց առատ ողորմութիւն բաժնելով տուն կը դառնար։ Կէսօրուան կերակրէն ետքը հիւանդաց այցելութեան կ՚ելլէր և անձամբ կը ծառայէր անոնց. դատարկութեան չարաչար ատեցող ըլլալով՝ ամէն ջանք կ՚ընէր որ միշտ իրեն զբաղմունք մը գտնէ. ուստի արքունեաց մէջ ալ իր հանգստեան ատենները հոգևոր գրքեր կարդալով կ՚անցընէր։

Աստուած Մաթիլտէին քաշած վշտացը փոխարէն՝ մեծամեծ մխիթարութիւններ պարգևեց իրեն այս աշխարհիս մէջ ալ. վասն զի Օթոն անդրանիկը յաղթեց Դանեայ, Պոհեմիան իր իշխանութեանը տակն առաւ, և Մեդիոլանու մայր եկեղեցւոյն մէջ Իտալիոյ թագաւոր պսակուեցաւ 961ին. ետքը յաջորդ տարին ալ Հռովմայ մէջ մեծ փառօք Յովհաննէս ԺԲ սրբազան քահանայապետէն կայսր անուանեցաւ. Հենրիկոսն ալ Պաւերայի դուքս դրին. բայց իր ըրած անգթութեան գործքերովը անունը շատ աւրեց. իսկ Բրունոն եկեղեցական վիճակի մէջ մտած ըլլալով՝ Քո-

լոնիոյ արքեպիսկոպոս ընտրուեցաւ, և իր առաքինակրօն վարուցը համար սրբոց կարգը դասուած է։

Մաթիլտէ երբոր իմացաւ թէ իր Օթոն որդին կայսերական փառօք Հռովմէն ելեր ետ կը դառնայ, Քոլոնիա քաղաքը գնաց Բրունոնի քով, որպէս զի Օթոնը դիմաւորէ։ Անկէ Նորթաուզէն քաղաքը անցաւ, ուր որ կուսանոց մը շինել տուած էր իր ծախքովը։ Որբուհին իր մօտալուտ մահը աստուածային յայտնութեամբ իմացած ըլլալով՝ վերջին բարևը տուաւ իր որդւոցը, ու այն վանքը առանձնացաւ. և յիրաւի, քանի մը օրէն ետքը վրան տկարութեան և հիւանդութեան նշաններ սկսան տեսնուիլ. թէպէտ ինքը առանց հանգիստը փնտռելու դարձեալ հիւանդաց ու վանքերու այցելութեան կ'ելլէր. ետքը Սպասոնիոյ դքսութեան մէջ իրեն շինել տուած վանքը գնաց՝ ուր որ իր գերեզմանը պատրաստել տուեր էր. վասն զի Հենրիկոս իր փեսայն ալ հոն թաղուած էր։ Այն վանքն որ հասաւ, հիւանդութիւնը անակնունելի կերպով մը ծանրացաւ, և մէկէն ձայնը ելլելով թէ մահուան վտանգի մէջ է, շատ մարդիկ զինքը տեսնելու կուգային. անոնց մէջ էր նաև Մաթիլտէի թոռը Գուլիելմոս Մակոնցայի արքեպիսկոպոսը։ Թագուհին զինքն որ տեսաւ, աղաչեց որ միշտ քովը կենայ խոստովանցընելու և պէտք եղած հոգևոր նպաստները մատուցանելու համար։ Արքեպիսկոպոսը մտիկ չընելով անոր խօսքին, վերջին օծումը

տալէն ետքը երբոր հրաման ուզեց որ իր գործոցը երթայ, Մաթիլտէ վանքին աբբառուհւոյն յանձնեց որ Գուլիէլմոսի աշխատունացը փոխարէն ընծայ մը ընէ իրեն: Աբբառուհին դարձաւ, «Ունեցած բոլոր հարստութիւնդ աղքատաց բաժնեցիր, ըսաւ. հիմա միայն այս լաթերը մնացեր են՝ որոնցմով յանձնեցիր որ վախճանելէդ ետքը զքեզ պատենք»: Մաթիլտէ, «Ուրեմն այն լաթերը ընծայ ըրէք իրեն, ըսաւ. վասն զի ինքը ինծմէ առաջ կարօտ պիտի ըլլայ անոնց»: Իրաւցընէ երբոր Գուլիէլմոս արքեպիսկոպոսը դէպ ի քաղաք կ'երթար, ճամբան հիւանդանալով վախճանեցաւ. անոր մահուընէն ետքը տասը օր ալ ապրեցաւ Մաթիլտէ, և երբոր իմացաւ թէ վախճանը մօտեցեր է, վանքին մէջի եղած քահանաները և միանձնուհիքը իրեն կանչեց, ու անոնց ամենուն հոգևոր խրատներ խօսելէն ետքը, պատարագ մատուցանել տուաւ, ու երկրորդ անգամ վերջին թոշակը առնելով աղաչեց որ ինչուան ինքը վախճանի՝ սաղմոսերգութիւններ ընեն, ու երբեմն երբեմն սուրբ աւետարան կարդան: Ետքը գետնի վրայ քուրձ մը փռել տալով՝ իջաւ անոր վրայ նստեցաւ, ու իր ձեռքովը գլխոյն վրայ մոխիր ցանելով՝ խաղաղութեամբ հոգին աւանդեց մարտ ամսուն 14ին յամի 968: Մեծահանդէս իրեն յուղարկաւորութիւնը կատարելով՝ Հենրիկոսի իր փեսային քով թաղեցին զինքը, ինչպէս որ կը փափաքէր:

Նոյն վանքին աբբառուհին ալ՝ որ Մաթիլ-

տէի թոռն էր, իր սրբակաց վարքովը շատ անուանի եղաւ. և թէպէտ իր երկու քոյրերը մեծ իշխանազանց հարս եղան, բայց ինքը մշտնջենաւոր կուսութիւն ուխտած ըլլալով՝ արհամարհեց աշխարհային բերկրութիւնները, ու իր հանւոյն շինած վանքը քաշուեցաւ. ուր իր սուրբ վարքովը ամենուն զարմանք և բարի օրինակ ըլլալով՝ իրենց մեծաւոր դրին զինքը. խելքին հետ առաքինութիւնն ալ կը փայլէր վրան. ինքզինքը ամենէն անարգը կը սեպէր, ուստի վանքին ամենէն նուաստ ծառայութիւնները անձամբ կը կատարէր. և սանկ խոնարհ, առաքինի և ճշմարիտ քրիստոնէական կեանք մը անցընելէն ետքը՝ սրբութեամբ և բարի համբաւով վախճանեցաւ։



## ՍՐԲՈՒՀԻ

# ԵՂԻՍԱԲԵԹ ԹԱԳՈՒՀԻ

*Այն հռչակաւոր սրբուհեաց մէջ որ աշխարհային փառաց և ճոխութեան բուռն հողմունքը արհամարհելով, իրենց սուրբ վարուց մաքուր ծաղիկը անարատ պահեցին, անուանիներէն մէկն է նաև սրբուհին Եղիսաբեթ որ Հունգարացւոց կամ Մաճառաց Անդրէաս Բ թագաւորին աղջիկն էր։ Պզտիկուց ի վեր զարմանալի բարեպաշտութեան ոգի մը կ'երևնար վրան. անանկ որ հինգ տարեկան մատղաշ հասակին մէջ ուրիշ բան չէր ախորժէր, բայց յաճախ եկեղեցիներն երթալով աղօթքի հետ ըլլալ. և շատ կը ցաւէր երբոր բռնի արքունիքը կը տանէին զինքը. շատ անգամ ալ պալատականաց գգուանքէն փախչելու միտքով՝ իրենց առանձնական մատրան մէջ կը պահուըտէր, ու ծընկի վրայ եկած կ'աղօթէր։ Եւ թէպէտ դեռ տղայ էր, սակայն իր խելքին և բարեպաշտութեանը համբաւը ամէն տեղ հռչակուելով՝ Հերմաննոս*

Սաքսոնիոյ դուքսը Եղիսաբեթի հօրը մարդ-
խրկեց որ յանձն առնու իր Լուդովիկոս որ-
դւոյն հարսնացընել աղջիկը։ Անդրէաս չկըր-
ցաւ չէ ըսել. ուստի խոստացաւ որ խընդիր-
քը կատարէ. բայց Հերմաննոսի սիրտը հան-
դարտելու տեղ՝ աւելի կ՚եփէր որ օր մը ա-
ռաջ Եղիսաբեթ իր արքունիքը գայ. անոր
համար մարդիկ կը խրկէր Հունգարացւոց
թագաւորին ու խնդիրքը կ՚առաջարկէր։ «Որ-
պէս զի, կ՚ըսէր, իմ թագուհիս անոր դաս-
տիարակութեանը վրայ խնամք ունենայ»։
Անդրէաս շատ ցաւեցաւ որ իր սիրելի աղջ-
կանէն այսպէս շուտով պիտի բաժնուի. բայց
Հերմաննոսի սիրտը կոտրել չուզելով, հետը
բարի ու առաքինի դաստիարակներ դրաւ
ու խրկեց զինքը։ Եղիսաբեթ հոն որ հասաւ՝
ամէնքը մեծ պատւով ընդունեցան, և վրան
պէտք եղած հոգն ու խնամքը անպակաս կը
ցուցընէին։

Ութը տարուան եղած ատենն ալ Եղիսա-
բեթի հանճարն ու իմաստութիւնը յայտնի
կ՚երևնար. և իր պարկեշտութեամբն ու աս-
տուածսիրութեամբը զամէնքը կը զարմացը-
նէր։ Աղէկ կը տեսնուէր որ Եղիսաբեթ իր
սիրոյն նպատակ ու մէկ հատիկ վախճան՝
զԱստուած դրեր էր. անոր համար արա-
րածական և արտաքին սէրը անշահ համա-
րելէն զատ՝ կը զզուէր ալ անկէ։ Իր հայրենի
ժառանգութեան մեծ մասը աղքատաց կը
բաժնէր. ինչպէս հօրը տունը՝ սաանկ ալ
Սաքսոնիոյ արքունեաց մէջ ամէն օր մատուռը

առանձնանալով՝ աղօթքի ետեւէ կ'ըլլար. մնա-
նաւոր ջերմեռանդ էր Պահապան հրեշտակին
ու Յովհաննէս աւետարանչին։

Լուդովիկոս իր փեսայացուին Ագնէս քրոջը
հետ կը դաստիարակուէր Եղիսաբեթ, ուստի
մէկմէկու հետ ալ եկեղեցի կ'երթային. եր-
կուքն ալ նոյնպէս փառաւոր հագուած կա-
պուած, և գլուխնին մարգրիտներով զար-
դարած պսակներ դրած։ Սոփիա՝ Ագնեսի
մայրը դիտեր տեսեր էր որ երբ այս երկու
իշխանազուն օրիորդքը եկեղեցին կը մտնէին,
Եղիսաբեթ իր թագը մէկէն գլխէն հանելով
մէկդի կը դնէր։ Այս բանիս պատճառն որ
հարցուց իրեն, որբուհին պարզմտութեամբ
մը պատասխան տուաւ. «Չեմ կրնար համ-
բերել, ըսաւ, որ գլուխս զարդարուն պսակ
ըլլայ՝ երբոր տեսնեմ որ իմ տէրս Յիսուս
Քրիստոս փշով պսակուեր է»։

Ագնէս և իր Սոփիա մայրը տեսնելով որ
Եղիսաբեթ արքունի փառաց և ճոխութեանց
վրայ ամենևին աչք չունի, սկսան զինքը ու
բռնած կերպը արհամարհել. «Թագուհւոյ
մը անվայել բան է, կ'ըսէին, այդ կեանքդ.
այլ աղէկ է որ երթաս վանք մը քաշուիս
մայրապետ ըլլալու»։ Պալատականներն ալ
սկսան վրայ տալ, ու ծանր խօսքերով զինքը
կը նախատէին. սկսան ըսել թէ այսպիսի
խեղճ կին մը մեր թագուհւոյն որդւոյն ար-
ժանի չէ. պէտք է որ նորէն զինքը Հուն-
գարիա դարձընենք։ Իշխաններուն այս նա-
խատալից խօսքերը աւելի ան առենը ծանր

եկան Եղիսաբեթի երբոր տեսաւ որ Հերման-
նոս մեռաւ, և կառավարութիւնը Սոփիայի ձեռքն անցաւ՝ իբրև խնամակալ Լուդովիկոս արքայորդւոյն։

Սոփիայի և պալատականաց տուած հալածանքներովը Եղիսաբեթի սրտէն աշխարհային սէրը աւելի ալ մարեցաւ. և կարծես թէ աւելի աղէկ իմացաւ թէ ճշմարիտ քրիստոնէի մը սրտին հանդարտութիւնը՝ վշտօք և Քրիստոսի սիրոյն համար չարչարանք և նախատինք կրելով կ'ըլլայ. անոր համար չէ թէ միայն չէր վշտանար, այլ նաև ուրախութիւն էր իր սրտին։

Լուդովիկոս արքայորդւոյն թագաւորելու ատենը հասնելով՝ ամէնքը միտքերնին դրեր էին որ ինքն ալ պիտի արհամարհէ զԵղիսաբեթ ու չուզենայ իրեն հարսնացընել. բայց բոլորովին ներհակը պատահեցաւ. վասն զի արքայորդին ուրիշ կատարելութիւններէն զատ՝ աստուածսիրութեամբն ու բարեպաշտութեամբ ալ Եղիսաբեթէն վար չմնալով՝ իշխանաց գանգատներն ու անտեղի խօսքերը լսելով շատ կը զարմանար. ուստի յայտնեց ամենուն թէ իրեն համար աշխարհիս մէջ ուրիշ հաճոյական ու սիրելի անձ մը չեն կըրնար գտնել՝ Եղիսաբեթէն աւելի. «իրեն առաքինութեանցն համար է, ըսաւ, որ վրան զմայլեր եմ»։ Ուստի մեծագին ընծաներ և պարգևներ տալէն ետքը՝ մեծ հանդիսով հարսնիքը կատարեց։

Անկէ ետքը այս բարեպաշտ ամուսինքը

խաղաղ ու հանդարտ կեանք մը սկսան անցընել. ամէն բանի մէջ իրարու խորհրդովը կը շարժէին, և ժողովուրդն հանգիստ ու երջանիկ ընելու համար հնարք չէր մնար որ չմտածէին. ուստի անոնց ալ շատ սիրելի եղան, որոնք երկանը Բարեպաշտ մականունը կուտային, զԵղիսաբեթ ալ Մայր աղքատաց կը կանչէին: Բայց Թագուհին առաքինութեան լուսաւոր ճամբան անխոտոր կտրելու համար՝ առաքինի և խելացի քահանայ մը իրեն հոգևոր դաստիարակ ընտրեց, և ամէն բանի մէջ անոր խորհուրդ կը հարցընէր: Այս քահանան Կոնրադոս կ'ըսուէր, որ իր բարեպաշտութեամբն անշահասիրութեամբը և աղքատասէր բարքովը ան ատենի քահանայից բարի օրինակ եղած էր: Եղիսաբեթի աստուածսիրութիւնը տեսնելով Կոնրադոս՝ հրաման տուաւ որ կարենայ խստամբեր ճգնութեանց ետևէ ըլլալ. սակայն քիչ ատենէն պատուիրեց որ խստութիւնները քիչ մը չափի բերէ: Հասարակաց սեղանի ատեն ալ կը ջանար սրբուհին որ անորժահամ կերակուրներէ ետ կենայ. բայց այն կերպով կը գործէր այս ճգնութիւնը՝ որ ուրիշները իմանալ չէին կրնար: Թէպէտ զարդարանքի ու աւելորդ պերճութեանց թշնամի էր, բայց հագածն ալ շատ անգամ իր վիճակին համեմատ էր. կը վախնար որ չըլլայ թէ երկանը սիրտը կոտրէ իր անպաճոյճ կերպովը:

Անգամ մը եկեղեցական մեծ հանդէս մը ըլլալով՝ Եղիսաբեթ իր փառաւոր զգեստնե-

րը և գլուխը ոսկիով և մարգրիտներով զարդարած թագ մը դնելով եկեղեցին գնաց. բայց ժամն որ մտաւ՝ խաչելութեան պատկեր մը աչքին դպաւ. և ինքնիրմէն ամչնալով մտքէն կ'անցընէր թէ «Ահաւասիկ իմ տէրս և փրկիչս զիս սիրելուն համար յանձն առաւ խաչին վրայ մերկ մեռնիլ, իսկ ես խեղճ արարած մը ըլլալով՝ ինչպէս կը յանդըգնիմ՝ այսպիսի փառաւոր հագուստով մը իմ փըրկչիս առջին երևնալ. ինքը փշով պսակուեցաւ, ես ի՛նչ սրտով մարգըրտէ ու ոսկիէ թագ դրեր եմ գլուխս. աշակերտները իրեն այն նեղ ատենին՝ թողուցին զինքը ու փախան. ես ինչպէս կը համարձակիմ այսչափ իշխաններով ու ծառաներով իր տունը մտնել։ վա՛յ ինծի, կ'ըսէր. Յիսուսի ինծի ցուցըցած սիրոյն ես ա՞յս փոխարէնը պիտի ընեմ. զիս իր պատուական արեամբը փրկողին հրամանը ա՞յս կերպով պիտի կատարեմ»։ Աս և ասոր նման խօսքեր մտքէն անցընելու ատենը՝ արցունքը աչքէն գետի պէս կը վազէին. ետքը վրան տագնապ մը գալով մարեցաւ ընկաւ. ուստի կիսամեռ եկեղեցիէն դուրս հանեցին ու արքունի պալատը տարին։ Բայց Եղիսաբեթ անկէ ետքը ամենևին փառաւոր հագուստով եկեղեցի չգնաց. մանաւանդ թէ պալատին մէջ հագածն ալ՝ սովորական ու անպաճոյճ զգեստ մը՛ն էր։ Արքունեաց մէջ եղած ազնուատոհմ օրիորդներէն ալ շատը՝ թագուհւոյն տուած բարի օրինակին հետևեցան. բայց Եղիսաբեթ անհամեմատ էր իր

խոնարհութեամբն ու խստակրօն վարքովը։ Աղքատաց և հիւանդներու վրայ մասնաւոր գութ ու խնամք ունէր, և ըրած ողորմութիւններուն չափը չկար. 1225ին երբոր Գերմանիա սաստիկ սով ընկաւ, Եղիսաբեթ արքունի գանձը բանալով՝ շատերուն խեղճութեանն ու մահուան դէմը առաւ. և որովհետև Լուդովիկոս իր փեսան ուրիշ հեռու տեղ մը գնացեր էր, երբոր իր պալատը դարձաւ, պաշտօնատեարքն սկսան գանգատիլ իբր թէ թագուհին ըրած ողորմութեամբքը արքունի գանձը պարպած ըլլայ. բայց առաքինի իշխանը՝ տհաճութեան դոյզն նշան մ'ալ չցուցընելէն զատ, աւելի ալ ուրախացաւ որ անանկ օգտակար բաներու ծախեր է իր ստակը. «Աղքատաց ողորմելով աւելի կը շահինք, ըսաւ, քան թէ կը կորսընցընենք»։

Իրենց պալատը աղուոր դիրք ունեցող ապառաժ լեռան մը վրայ շինուած ըլլալուն՝ հիւանդ աղքատները չէին կրնար դիւրաւ վեր ելլել՝ ողորմութիւն ուզելու համար։ Եղիսաբեթ լեռան ստորոտը հիւանդանոց մը շինել տուաւ, և ինքը ամէն օր զանոնք տեսնելու կ'երթար և պէտք եղած բաներնին կը հոգար. անկէ զատ որբանոց մըն ալ կանգնեց, ուր որ իր ստըկովը զիրենք կը պահէր. ամէն օր ալ ինը հարիւր աղքատաց կերակուր բաժնել կուտար. անանկ որ իրեն ողորմութիւններովը շատ աղքատներ խեղճութենէն ազատելով՝ անկէ ետքը սկսան իրենց ապրուստը ճարել։

Ան ատենները Երուսաղէմ սուրբ քաղաքը անհաւատից ձեռքէն ազատելու համար խաչակիր զինուորութիւններ հաստատուելով, 1227ին Լուդովիկոս ալ Փրեդերիկոս Պարպառոսսա կայսեր հետ ուզեց Պաղեստին անցնիլ։ Եղիսաբեթէն բաժնուելու ատենը թէպէտ և երկուքին սիրտն ալ շատ վշտացաւ, բայց մխիթարութիւննին այն էր որ սուրբ հաւատոյ փառացը և պայծառութեանն համար էր իրենց առժամանակեայ բաժանումը։ Լուդովիկոս Նէապոլիս գնաց, որպէս զի հոնտեղէն կայսեր հետ նաւ մտնէ՝ սուրբ երկիրն անցնելու համար. բայց նաւ չմտած՝ Ոթրանթ քաղքին մէջ ծանր ջերմ մը եկաւ վրան, ուստի մէկէն վերջին օծումն և ուրիշ եկեղեցւոյ խորհուրդներն ջերմեռանդութեամբ ընդունելով՝ սրբութեամբ մեռաւ նոյն տարուան սեպտեմբեր ամսուն 11ին։ Եղիսաբեթ իր էրկանը անակնկալ մահը լսելով, տրտմութենէն ինչ ընելիքը չէր գիտեր. «Որովհետև ինքն ինծմէ բաժնուեցաւ, կ'ըսէր, հարկ է որ ես ալ մեռած սեպուիմ. աշխարհս և իր ունայնութիւնները ալ ինծի համար չեն»։ Եւ յիրաւի, կարծես թէ ան ատենէն մարգարէացաւ իր գլխուն եկած ապագայ նեղութիւնները։

Լուդովիկոսի մահուամբը բոլոր տէրութիւնը տակնուվրայ եղաւ. ամէն իշխանազունքը նախանձով շարժած՝ սկսան Եղիսաբեթը և իր փեսայն ատել. «Բոլոր տէրութիւնը աղքատացաւ, կ'ըսէին, ասոնց տուած ողորմու-

թեամբը». և ետևէ էին որ անոնց ցեղին չմնայ թագաւորութիւնը. մանաւանդ որ Հերմաննոս՝ Լուդովիկոսի որդին ալ դեռ պզտիկ ըլլալով՝ կառավարութիւն չէր կրնար ընել. ուստի ժողովուրդը համոզելով՝ Հենրիկոս՝ Լուդովիկոսի եղբայրը իրեն յաջորդ դրին։ Հենրիկոս իշխանութիւնը ձեռքն առնելէն ետքը առջի գործն այն եղաւ որ զԵղիսաբեթ արքունիքէն վռնտեց. և ոչ միայն իրեն ապրելու չափ պէտք եղած հարկաւոր ստակը չտուաւ, այլ նաև արգիլեց որ չըլլայ թէ մէկը գթալով անոր վրայ իրեն տեղ տայ։ Ամէն աղքատաց ողորմութիւն տուող և անոնց վրայ գութ ունեցող մեծ իշխանուհին, անոնցմէ ամենէն աւելի խեղճ վիճակին մէջ ընկաւ. աշխարհային փառքը այսպէս դիւրաթառամ և վաղանցուկ է. բայց Եղիսաբեթի պէս իշխանուհւոյ մը համար՝ որ իր ճշմարիտ հանգիստը առաքինութեան քան թէ արքունեաց մէջ գտեր էր՝ նոր բան մը չէր այս անկարծելի դիպուածը. ուստի զարմանալի համակերպութեամբ մը այս անգութ և անիրաւ վարմանցը համբերեց, և ոչ թեթև կերպով մը գանգատեցաւ այն անիրաւութեանը վրայ։ Աստուծոյ վրայ միայն իր յոյսը դնելով՝ պալատէն դուրս ելաւ, ու խեղճ տնակի մը մէջ գնաց բնակելու, և կէս գիշերուն Փրանկիսկեան կրօնաւորաց եկեղեցին երթալով մանաւոր շնորհակալութեան աղօթք ընել տուաւ Աստուծոյ՝ իրմէ ընդունած երախտեացը համար։ Երկրորդ օրը ետևէ եղաւ որ իրեն

բնակելու տեղ մը գտնէ. բայց Հէնրիկոսի խիստ հրամանին պատճառաւ ամէնքը կը վախնային զինքն իրենց քովն առնելու. ուստի Նորէն Փրանկիսկեանց եկեղեցին քաշուեցաւ ինչուան իրիկուն։ Բայց երբոր նոյն գիշերը Հէնրիկոս անլուր անգթութեամբ մը Եղիսաբեթի անմեղ տղաքը՝ պալատէն դուրս վռնտեր ու իրենց մօրը խրկեր էր, չկրցաւ սրբուհին արցունքը բռնել։

Բարեպաշտ քահանայ մը թագուհւոյն այս խեղճութիւնը տեսնելով, չդիմացաւ՝ իր քովը առաւ զինքը տղոցը հետ մէկտեղ. բայց աղքատ ըլլալուն՝ հազիւ թէ միայն մէկ խուց մը կրցաւ տալ Եղիսաբեթի ու իր որդւոցը և նաժշտայը համար։ Սրբուհին մեծ շնորհակալութեամբ բարեսիրտ քահանային հիւրասիրութիւնը ընդունեցաւ. բայց իր անգութ թշնամիքը՝ այն աստիճանի խեղճութեանն ալ գոհ չըլլալով՝ բռնութեամբ եկան զինքը այն տնակէն հանեցին ու իր առջի հիւղը տարին։ Ամենուն հասնող թագուհին՝ ուրիշներու օգնութեանը կարօտ եղաւ. բայց այն թշուառ վիճակին մէջ ամենևին իր սրտին ուրախութիւնը չպակսեցաւ. մանաւանդ թէ կը խնդրէր Աստուծմէ որ աւելին ալ քաշելու արժանի ըլլայ իր սիրոյն համար։

Եղիսաբեթի մօրքոյրը որ կուսաստանի մը աբբասուհին էր, անոր գլխէն անցած ամէն խեղճութիւնները լսելով՝ գթաց վրան, ու իր վանքին մէջ տեղ տուաւ անոր. ետքը պատուիրեց որ ելլէ իրենց ազգական Բամբեր-

կայ քաղքին եպիսկոպոսին երթայ. «Ինքը ճար մը կ՚ընէ, ըսաւ, քու խեղճութեանդ»։ Եպիսկոպոսը երբոր Եղիսաբեթը տեսաւ՝ յիշելով թէ ի՛նչ մեծ փառքէ ո՛ր աստիճանի նեղութեան մէջ ինկեր է, արցունքը չկրցաւ բռնել. և իր պալատին մօտ տեղուանքը պզտիկ տուն մը տուաւ անոր։

Այն տէրերը Լուդովիկոսի մարմինը որ Օթրանթ քաղաքը թաղուած էր՝ հանեցին գերեզմանէն, ու մեծ պատուով իր երկիրը սկսան բերել, և երբոր Բամբերկայ քաղքին մօտեցան, եպիսկոպոսը քահանաներով և կրօնաւորներով ընդ առաջ ելաւ։ Եղիսաբեթ ալ եկեղեցին գնաց այս տխուր հանդիսին ներկայ գտնուելու համար. և զարմանալի արիութեամբ մը ինքզինքը կը զօրացնէր որ կարենայ քաջութեամբը յաղթել իր սրտին ցաւոցը. բայց երբոր տեսաւ այն սնտուկը՝ որուն մէջ իր սիրելի ամուսնոյն ոսկերքն ամփոփուած էին, արցունքը չկարենալով բռնել՝ սկսաւ բարձրաձայն լալ։ Սակայն մէկէն ինքզինքը մխիթարելով՝ ու Աստուծոյ սուրբ կամքը յանձնելով, շնորհակալութեան աղօթք ըրաւ որ այս ցաւն ալ քաշելու արժանի եղաւ։

Լուդովիկոսի մարմինը օրերով Բամբերկայ քաղաքը մնալէն ետքը՝ հանդիսով ուզին Տուրինկիա գաւառը տարին. ու երբոր երթալու վրայ էին, Եղիսաբեթ աղաչեց իշխանաց որ իրեն համար Հենրիկոսի առջևը միջնորդութիւն ընեն, ու իր անմեղութիւնը հաս-

կըցընեն. բայց ամենևին չիմացուց Հենրիկոսի իրեն դէմ ցըցուցած նախատինքներն ու իրմէ կրած վիշտերը, անոնք ալ խոստացան իրեն։ Եւ երբոր Տուրինկիա հասան՝ Հենրիկոսի բռնած կերպը տեսնելով՝ շատ ցաւեցան, ու սկսան խրատել զինքը որ Եղիսաբեթի և անոր տղոց անմեղութեանը վրայ գթայ, ու գիրենք նորէն իր քովը կանչէ։ Հենրիկոս թէպէտ և առջի բերան ամենևին չէր ուզեր անոնց խօսքին մտիկ ընել՝ բայց ետքը կակըղնալով, չէ թէ միայն յանձն առաւ որ Եղիսաբեթ ետ դառնայ, այլ նաև խոստացաւ որ տէրութեան կառավարութիւնը անոր ձեռքը յանձնէ. բայց Եղիսաբեթ այս պայմանը չընդունեցաւ, այլ խնդրեց որ այն պատիւը իր Հերմաննոս որդւոյն պահուի. ուստի մեծ փառքով նորէն իր պալատը դարձաւ։ Հենրիկոս ալ առջի ըրած չարեացը փոխարէն՝ ամենայն կերպով ետևէ եղաւ որ արժանի պատիւն ընծայէ իրեն։ Բայց Եղիսաբեթի հանգիստը այնչափ երկարատև չեղաւ, ինչպէս որ կը կարծուէր. վասն զի Կոնրադոս քահանայն՝ թագուհւոյն աշխարհատեցութիւնը և կրօնաւորական կեանքի սէրը տեսնելով՝ թող տուաւ իրեն որ Փրանկիսկեան կուսանաց ուխտը կատարէ, և միշտ իր իշխանութեանը տակն ըլլայ. և որովհետև քահանայն Մարկբուրկ քաղաքը կը կենար, Եղիսաբեթ ալ անոր տանը քովերը առանձին բնակարան մը շինել տալով, ինչուան մահը հոն քաշուեցաւ, ու դիւցազնական ա-

առաքինութեամբ իր օրերը կ՚անցընէր։ Անդրէաս Հունգարացւոց թագաւոր՝ Եղիսաբեթի հայրը, շատ ջանաց որ զինքը նորէն արքունիքը բերել տայ. բայց ամէն ջանքը փուճ ելաւ. վասն զի սրբուհին այն խաղաղ և հանգիստ վիճակը չուզեց թողուլ։ Ջեռքէն եկածին չափ ողորմութիւն ընելէն ամենևին ետ չէր կենար, և բաց ի ուրիշ հոգևոր գործքերէն, շատ մեղաւորաց դարձին ալ պատճառ եղաւ, որոնցմէ մէկը պատմենք։

Անառակ երիտասարդին մէկը անգամ մը թագուհին տեսնելով անանկ սիրտը շարժեցաւ անոր առաքինութիւններն ու սրբութիւնը տեսնելով, որ գնաց Եղիսաբեթի ոտքն ինկաւ ու աղօթքը կը խնդրէր. «Որպէս զի Աստուծոյ շնորհքովը արժանի ըլլամ, կ՚ըսէր, յաւիտենական երանութեան»։ Եղիսաբեթ մխիթարեց զինքը, ու ետքը, «Թէ որ ճշմարտապէս դարձ խնդրելու համար ինծմէ աղօթք կ՚ուզես, ըսաւ, եկու միաբան աղօթենք»։ Հաւանեցաւ երիտասարդը, ու հազիւ թէ աղօթքնին սկսեր էին, Աստուծոյ շնորհքը ծագեց պատանւոյն վրայ, ու սկսաւ յորդառատ արցունքով ըրած մեղքերը ապաշխարել։ Ետքը խօսք տուաւ Եղիսաբեթի որ առջի զեղծ վարքէն ետ կենայ. և խոստմունքը պահելով ճշմարիտ առաքինի և աստուածահաճոյ անձ մը եղաւ. ետքն ալ Փրանկիսկեանց կարգը մտնելով՝ ինչուան մահը սրբութեամբ ապրեցաւ։

Եղիսաբեթ որչափ իր մահուան մօտենալը

կ՚իմանար, այնչափ աւելի իր եռանդը և ստա-
տուածպաշտութիւնը շատցաւ. ունեցածը
չունեցածը կտակաւ բոլոր աղքատաց թողուց,
ետքը եկեղեցւոյ սուրբ խորհուրդները մեծ
ջերմեռանդութեամբ ընդունելով՝ երջանիկ մա-
հուամբ մը կնքեց իր փշտալից օրերը, նոյեմ-
բեր ամսուն տասնըիննին, քսանըչորս տա-
րուան նորահաս տիոցը մէջ. և մարմինը՝
սրբուհւոյն շինել տուած հիւանդանոցին քովի
մատրանը մէջ թաղեցին, և գերեզմանէն շատ
հրաշքներ եղան. ուստի Մ՚ոգունտիայ արքե-
պիսկոպոսը այն հրաշքները գիր անցընելով՝
Հռովմայ այն ատենուան Գրիգոր Թ սրբա-
զան քահանայապետին խրկեց: Պապն ալ եր-
կայն բարակ քննութիւններէն ետքը՝ 1235ին
հոգւոյն սրբոյ գալըստեան օրը սրբոց կարգը
դասեց զԵղիսաբեթ: Ասոր վրայ Մ՚ոգուն-
տիոյ արքեպիսկոպոսը պատրաստութիւն տես-
նել սկսաւ՝ մեծ հանդիսով սրբոյն մարմինը
Մ՚արկպուրկէն փոխադրելու համար: Փրե-
դերիկոս Բ կայսրը այն հանդիսին ներկայ
գտնուելով՝ սրբուհւոյն գերեզմանին առջև քա-
րը վերցընողը ինքն եղաւ, և Եղիսաբեթի
մարմինը ոսկեզօծ արծըթէ փառաւոր սնտու-
կի մը մէջ դնելով՝ հիւանդանոցի եկեղեցւոյն
խորաններուն մէկուն վրայ դրին, ուսկից
անթիւ հրաշքներ և բժշկութիւններ եղած են:

ՍՐԲՈՒՀԻ

# ԱԳՆԷՍ ՄՈՆԹԷԲՈՒԼՉԻԱՆՑԻ

Տրասիմեն լճին քով Մոնթէփուլչիանոյ ըսուած քաղաքին մէջ ծնաւ այս երջանիկ կոյսը՝ Քրիստոսի 1263 թուին։ Ծնողքը աւելի իրենց հաւատքովը ու աստուածպաշտութեամբը քան երկրաւոր մեծութեամբ անուանի ըլլալով, ամէն ջանք ըրին որ իրենց այս դուստրը ճշմարիտ քրիստոնէի վարք ու կրթութիւն ունենայ։ Եւ յիրաւի, Ագնէս այն առենէն յայտնի ցուցընել սկսաւ որ ծնողացը ջանքն ու ակնկալութիւնը փուճ պիտի չհանէր. վասն զի տղայութեան առենէն երկրաւոր մեծութիւնները արհամարհել սկսաւ, ու աղօթքը միայն և բարեպաշտութիւնը իրեն մխիթարութիւններն էին։ Այն իր փափուկ հասակին մէջ զարմանալի եռանդով մը մանկական զբօսանքները թողլով կ՚երթար տանը մէկ անկիւնը կը քաշուէր, ու ծընկան վրայ եկած աղօթքի հետ կ՚ըլլար. ան առենէն իմացաւ Ագնէս որ աս աշխարհիս հետ

սիրտը կապողը անդին թշուառ պիտի ըլլայ, ուստի ինը տարեկան եղած չեղած, ծնողացը աղաչել սկսաւ որ զինքը Մոնթէփուլչիանոյի Քրձազգեստ ըսուած կուսանաց վանքը դնեն։

Բարեպաշտ ծնողքը յայտնի իմացան որ աստուածային ազդմանէ մը առաջ եկած պիտի ըլլայ Ագնեսի փափաքը, ուստի չ՚ըրցան չէ ըսել։ Սրբուհին քիչ ատենուան մէջ ամէն կուսանաց բարի օրինակ եղաւ. բոլորն ալ կը զարմանային անոր ճգնութիւններուն՝ ջերմեռանդութեանը, աղօթասիրութեանը և հնազանդութեանը վրայ։ Ան օրերը Արեցցոյ քաղաքին արքեպիսկոպոսը պարկեշտ ու սրբակրօն աբբասուհւոյ մը յանձնեց որ իր թեմին տակ եղած կուսանաց վանքերուն այցելութեան ելլէ. աբբասուհին երբոր Քրձազգեստից վանքը մտաւ, Ագնէս աղջկանը շնորհալի կերպն ու սրբութիւնը տեսնելով՝ յայտնի գուշակեց թէ ատենով մեծ անուն պիտի հանէ այն օրիորդը, ու սուրբ Ագնէս վկայուհւոյն պէս՝ եկեղեցւոյ պայծառութեանը առիթ պիտի ըլլայ. անոր համար յանձնեց կուսանաց որ մասնաւոր խնամք ու մտադրութիւն ունենան վրան։

Բայց Ագնէս չկրցաւ երկար ատեն այն վանքը մնալ, ինչպէս կը փափաքէր։ Փրոչենոյի բնակիչքը կուսանոց մը հաստատելով իրենց քաղքին մէջ, Քրձազգեստ կուսանաց վանքը մարդիկ խրկեցին երթալու աբբասուհւոյն աղաչելու որ Ագնէս աղջիկը այն վանքին մեծաւոր խրկէ։ Հնազանդեցաւ սըր-

բուհին աբբասուհւոյն կամացը, և իր Մարգարիտա անունով դաստիարակին հետ ելաւ այն վանքը գնաց։

Մեծաւորութեան ատենը իր առաքինութիւններն ու ճգնութիւնները աւելի կերպով մը շատցընելու ետևէ եղաւ. վասն զի «Աստիճանս մեծնալով՝ ուրիշներուն բարի օրինակ տալու պարտքերս ալ աւելցան» կ'ըսէր։ Կերածը լոկ հաց ու ջուր էր, անկողինն ալ մերկ գետինը. ուստի այս իր բռնած խիստ կերպերէն առողջութիւնը վնասուելով՝ միանձնուհիքը ստիպեցին զինքը որ ըրած ճգնութիւնները չափի մը դնէ։ Ագնէս մտիկ ըրաւ անոնց, բայց առջի կրած ճգնութեանց ու պահոց պատճառաւը առողջութիւնը կորսընցուց, ու իր մնացած օրերը գրեթէ հիւանդութեամբ անցուց։

Ագնէսի սրբութեան ու զարմանալի առաքինութեանց համբաւը ամէն տեղ լսուելով՝ Մոնթէփուլչիանոյի Քրձազգեստ կուսանքը խնդրեցին իրմէ որ նորէն իրենց վանքը դառնայ. բայց սրբուհին մտիկ չըրաւ։ Սակայն երբոր շատ ստիպեցին որ գէթ անգամ մը ելլայ այցելութեան գայ, ելաւ քովերնին գնաց, և ուրիշ բարեպաշտական գործերէն զատ՝ առաջարկեց անոնց որ քաղքին դրանը քովերը եղած բլրոյն վրայ վանք մը շինեն. վասն զի ինչուան այն ատենը վատահամբաւ կանայք կը բնակէին այն տեղը, ու ժողովըրդեան գայթակղութեանը մեծ պատճառ եղեր էին։ Երբոր Ագնեսի բարի առաջարկութեա-

նը ամէնքը հաւնեցան, չուտով փրոչէնոյ դարձաւ, ու իր տեղը ուրիշ սրբակաց կոյս մը աբբաուհի ընել տալով, անոնցմէ մէկը հետն առաւ, ու Մոնթէփուլչիանոյ դառնալով՝ իր մտածած խորհուրդը առաջ տանիլ սկսաւ, և Աստուծոյ յաջողելովը շատ մեծամեծ օգուտներ տեսնուեցան անկէ։

Բժշկութեան շնորհք ալ տուաւ Աստուած սրբուհւոյն, և շատ հրաշքներ ալ ըրած է. նոյնպէս շատ անզեղջ մեղաւորաց դարձին ալ պատճառ եղաւ, ինչպէս պատմութիւններէն յայտնի է։ Բայց որովհետև ատենը հասած էր որ սրբուհւոյն երջանիկ հոգին այս աշխարհիս բանտէն ազատելով՝ երթար իր փրկչին հետ միանար, Աստուած ալ թող տուաւ որ հիւանդութիւնը զօրանալով՝ մահուան վտանգի մէջ իյնայ։ Ազնեսի ուրախութիւնը անպատմելի էր. բայց երբոր տեսաւ որ կուսանքը չորս բոլորն առեր, ու իրմէ բաժնուելնուն վրայ դառնապէս կ՚ողբան, մխիթարեց զիրենք ու քաջալերեց «Թէ որ ճշմարտապէս զիս կը սիրէք, ըսաւ, աւելի պիտի ուրախանաք քան թէ տրտմիք՝ այս աշխարհէս ազատելով՝ երկնից արքայութիւնը ժառանգելուս համար»։ Աս և ասոր նման ուրիշ քաջալերական խօսքեր գրուցելէն ետքը, կամաց կամաց զօրութիւնը պակսեցաւ, ու խաղաղութեամբ հոգին աւանդեց ապրիլի 20ին յամի տեառն 1317։

ՍՐԲՈՒՀԻ

# ՄԱՐԳԱՐԻՏԱ ՔՈԼՈՆՆԱ

Մարգարիտա երջանիկ կոյսը ծնաւ երեքտասաներորդ դարուն վերջերը Հռոմ քաղքին Քոլոննա ըսուած հարուստ և երևելի ցեղէն։ Պզտիկութեանը ատեն հայրն ու մայրը կորսնցընելով որբ մնաց Մարգարիտա. և որովհետև իր եղբայրը Յակոբ կը տեսնէր որ առաքինութեանց փափաք մը ունի և աշխարհի համար չէ, միտքը դրաւ որ կուսական կենաց նուիրէ իր քոյրը։ Եւ թէպէտ մէկ դիէն ալ Յովհաննէս եղբայրը շատ կ՚աշխատէր որ աշխարհք մտցընէ, բայց Մարգարիտա բոլորովին հրաժարեցաւ «Ես միայն երկնաւոր փեսային հարսնացած եմ» ըսելով։

Ինքզինքը Աստուածածնայ խնամոցը յանձներ էր. ուստի տեսիլքի մէջ իրեն երևցաւ Աստուածածինը, ու ըսաւ թէ «Աղօթքդ լսեցի, ես զքեզ կը հոգամ միշտ, ու քեզի հետ եմ»։ Որով մխիթարուելով այնչափ զօրացաւ որ ալ ինքը զինքը բոլոր հոգևորի տուաւ։

վասն զի ճգնութիւնները շատցուց, օրերով ծոմ կը կենար, գիշերները շատ անգամ ա-ղօթքով կ'անցընէր, միայն հարկաւոր քունը կ'ընէր՝ ան ալ գետնի վրայ։ Հոգևոր պաշ-տամանց ատենները՝ իր բարի օրինակովը ալ ջերմեռանդութեան կը շարժէր ուրիշնե-րը։ Եւ որովհետև իր հոգևոր կրթութիւն-ները լաւ կերպով առաջ տանելու համար պէտք էր աշխարհքէ հեռու ըլլալ, հոգևոր հօրը ա-ռաջնորդութեամբը թողուց իր հայրենիքը ու ամէն հանգստութիւնը, ու գնաց Բաղէս-դրին քաղաքը, ուր եկեղեցին մտնելով աւե-տարանին աս խօսքը լսեց թէ «Որ գայ զկնի իմ, ընդ խաւար մի՛ գնասցէ». ասկէց սիրտ առաւ. թէ ուրեմն աշխարհքիս վրայ Աստուծոյ ճամբէն աւելի լուսաւոր ու ապա-հով ճամբայ չկայ. մէկէն Բաղէսդրինի լեռը ելաւ ու հոն տեղի կուսանաց զգեստը հա-գաւ, մազերն ալ կտրեց։ Անկէ ետքը սկսաւ Մարգարիտան իր ճգնութիւնները աւելի կերպով մը շատցընել. հոգևոր մտածութեանց հետ կ'ըլլար, և ուրբաթ օրերը միայն կտոր մը հաց ու ջուր էր իր կերակուրը. իսկ մէ-կալ օրերը ծոմով կ'անցընէր։

Հռոմ երբոր իմացան ազգականները որ այսպիսի խիստ ճգնութեան տուեր է ինք-զինքը, սկսան յորդորել որ նորէն աշխարհք մտնէ. բայց խաբուեցան. վասն զի Մար-գարիտա աստուածային սիրով վառուած ըլ-լալով՝ ամենևին ականջ չդրաւ աշխարհքիս հրապուրանաց ձայներուն. մերժեց անոնց

կամքը, ըսելով թէ «Ասկէ գեղեցիկ բաղդ-
չէի կրնար ունենալ աշխարհքիս վրայ, ինչ-
պէս որ հիմա աս կրօնիս մէջ ունեցայ»։ Ան
ատեն Յակոբ եղբայրը գնաց իրեն քովը հո-
գևոր հայրութիւն ընելու անոր. հետը տա-
րած ըլլալով իրեն համար պատրաստած օ-
ժիտները, բոլորն ալ աղքատաց ողորմութիւն
տուաւ։

Իսկ ինքը խոնարհական ծառայութիւններէ
չէր փախչէր. անդադար աղքատ տները կ'եր-
թար, և հոնտեղուանքը պէտք եղած ծառա-
յութիւնները սիրով կը կատարէր. ինչպէս
հիւանդները հոգալ, դեղերնին տալ. և ին-
չուան որ չառողջանային՝ ետ չէր դառնար։

Խնդրեց եղբօրմէն որ կուսաստան մը շինէ
իրեն համար, բայց աս որ չյաջողեցաւ՝ գնաց
փրանկիսկեան կուսանաց վանքը մտաւ. սա-
կայն ծանր հիւանդութիւն մը քաշելով անկէ
ալ անցաւ Հռոմ. բայց որպէս զի կարենայ
իր պարտքերը կատարել, աղքատասէր կըն-
կան մը քով ամէն ծառայութիւնները կ'ընէր
Աստուծոյ սիրոյն համար։ Սակայն հոն ալ
դըժուար էր ազգականներուն ձեռքէն ազա-
տիլը. ուստի Հռոմէն ելաւ Նորէն գնաց Բա-
լէոդրինի լեռը. հետը կային Նաև հռոմայեցի
ազնուական աղջիկներ, որ անոր սրբակաց
վարքէն շարժելով, յանձն առին աս խոնարհ
ծառայութիւնը։ Եւ Մարգարիտան ասոնց
հետ միշտ խոնարհութեամբ կը վարուէր, և
ոչ երբէք կ'ուզէր մեծ երևնալ անոնց մէջ.
ուստի երբոր խորհուրդ կամ խրատ խնդրէին

մէկալնոնք իրմէն՝ իրենց հոգևոր հարցը կը խրկէր, և կամ կ'ըսէր թէ մեր հոգևոր դաստիարակը Աստուածամայրն է. բայց թէպէտ անոնք բերնէն խրատ ալ չկարենային լսել, սակայն իրեն մաքրափայլ վարքէն ամէն տեսակ կատարելութեանց օրինակներ կ'առնուին։

Մարգարիտան երբոր այսպիսի աքանչելի առաքինութիւններով ծաղկելու հետ ըլլալով՝ Աստուծոյ ու մարդկանց սիրելի էր, կուշտին վրայ վէրք մը ունեցաւ որ սաստիկ ցաւ կուտար իրեն. և իրեն ցաւակից եղողներուն կ'ըսէր թէ «Աղօթք ըրէք Աստուծոյ որ աս աշխարհքիս մէջ նեղութիւններ խրկէ ինծի, որպէս զի անդին աս նեղութիւնները չունենամ»։ Աս ցաւը եօթը տարի համբերութեամբ քաշեց, ինչուան որ հիւանդութիւնը ծանրանալով՝ թողուց աս ցաւալից աշխարհքը 1284ին։

Մարգարիտային մեռնելէն վերջը շատ հրաշքներ կը պատմեն վրան։ Կարդինալ եղբայրը Յակոբ իր պաշտպանութեան տակը առաւ անոր աշակերտուհիքը ու գիրենք Հռոմ փոխադրեց. հետը տարաւ նաև սուրբ կուսին նշխարքն ալ։

# ՍՐԲՈՒՀԻ ԳՐԻՃԻՏԱ

Շուէտի երկիրը իշխանազուն ու բարեպաշտ մարդ մը կար Պիրճիէրոս անունով, որ իր Սիկրիտիա անունով ամուսնոյն հետ՝ աստուածավախ ու երջանիկ կեանք մը կ՚անցընէր, ունեցած բոլոր հարստութիւնը աղքատաց ու եկեղեցեաց բաժնելով։ Իրենց բարեպաշտութեանը պտուղն եղաւ Գրիճիտա անունով դուստրը, որուն ծնունդն ալ հրաշքով մը եղաւ։ Վասն զի երբոր Սիկրիտիա դեռ յղի էր, ծովով ճամբորդութիւն ընելու ատենը ալեկոծութեան մը հանդիպեցաւ, ու շատերը խղդուելով մեռան. միայն Սիկրիտիա քանի մը հոգւոյ հետ հազիւ ազատեցաւ այն մեծ վտանգէն։ Կ՚ըսեն թէ նոյն գիշերը տեսիլք տեսաւ Սիկրիտիա, որ լուսաւոր մարդ մը իրեն երեւնալով «Ուրախ կեցիր, ըսաւ, քու զաւակիդ համար Աստուած զքեզ ալ փրկեց այսօրուան վտանգէն. բայց ջանք ըրէ որ Աստուծոյ սիրովը մեծցընես զինքը»։ Քիչ ատենէն ծնաւ Գրիճիտա յամի տեառն 1302։

Պզտիկութեան ատենը մօրմէն որբ մնալով Գրիճիտա՝ բարեպաշտ մօրքոյրը ձեռք դրաւ

սրբուհւոյն վրայ, ու պէտք եղած խնամքը պակաս չէր ըներ անոր աղէկ ու քրիստոնէական դաստիարակութեանը համար։ Պրիճիտա ալ այն պզտիկութեան ատենէն յայտնի կը ցուցընէր իր եռանդուն սիրտը և հաստատուն բարեպաշտութեան ոգին։ Օր մը չարչարանաց վրայ քարոզ մը լսելով՝ այնչափ սիրտը շարժեցաւ որ նոյն գիշերը տեսիլքի մէջ տեսաւ զՔրիստոս իբր թէ նոյն օրը խաչ ելած ըլլայ։ Սրբուհին տակնուվրայ եղաւ այն սրտաշարժ տեսարանէն, ու դարձաւ «Տէր իմ, ըսաւ, քու չարչարանացդ ու կրած վշտացդ պատճառը որո՞նք եղան։ — Անոնք, ըսաւ Քրիստոս, որ զիս ու իմ սէրս կ'արհամարհեն»։ Այս տեսիլքը այնպիսի տպաւորութիւն մը ըրաւ Պրիճիտայի սրտին վրայ, որ քանի որ միտքը գար՝ արցունքը չէր կրնար բռնել։

Ինքը կուսութեան մասնաւոր սէր ու փափաք ունէր, բայց հայրը բռնութեամբ նշանեց զինքը ազնուական ու բարեպաշտ իշխանի մը հետ. Պրիճիտա չկրցաւ հօրը կամացը դէմ դնել. բայց իր երկանը հաւանութեամբը՝ անկէ ետքը աւելի մեծամեծ ճգնութեանց ու մահացուցմանց ետևէ սկսաւ ըլլալ։ Դատարկութեան մեծ թշնամի էր, ուստի կամ աղօթքի ու հոգևոր ընթերցմանց ետևէ կ'ըլլար, և կամ իր աղախնայցը հետ տնական աշխատութեանց կը պարապէր։ Գթած ու առատաձեռն սիրտ մըն ալ ունենալով՝ Աստուծոյ իրենց տուած հարստութիւնը աղքատաց ու խեղճերուն կը բաժնէր առատա-

բար։ Մեծամեծ հիւանդանոցներ ալ շինել տուած էր աղքատաց համար, ու իր ծախքովը կը հոգար անոնց ծառայելու ու զիրենք խնամելու համար պէտք եղած բաները։

Պրիճիտայի ամուսինը թագաւորին գլխաւոր խորհրդականներէն մէկը ըլլալով՝ մեծ պատիւ ու իշխանութիւն ունէր բոլոր տէրութեանը մէջ. սակայն իր ընկերոջը անպաճոյճ ու խստակրօն վարքէն բարի օրինակ առնելով՝ աշխարհային մեծութիւնը արհամարհեց, ու ինքնիրեն առանձին մնալով՝ հոգևոր կրթութեանց ետևէ սկսաւ ըլլալ։ Եւ աս փափաքը անանկ զօրացաւ իր սրտին մէջ, որ քիչ ատենէն ետքը Կիստերսեանց վանքը քաշուեցաւ Պրիճիտայի հաւանութեամբը, ու հոն բարի ու երջանիկ մահուամբ մը մեռաւ։ Անկէ ետքը սրբուհին Պրիճիտա տանը բաները աղէկ կերպով մը կարգաւորելով՝ սկսաւ ինքզինքը մեծամեծ ճգնութեանց տալ։ Էրկանը մահը պատճառ առնելով՝ հաստ ու խոշոր զգեստներ առաւ վրան, որով բոլոր իշխանազանց դիմացը ծաղրելի եղաւ։ Բայց սրբուհին աղէկ գիտնալով թէ Քրիստոսի ցուցըցած ճամբուն հետևողը՝ հարկ է որ նախատինք ու արհամարհանք ալ քաշէ՝ ամենևին ականջ չկախեց անոնց խօսքերուն։

Մայրապետաց կարգ մըն ալ հաստատեց Պրիճիտա, ու կանոնները Քրիստոսի տուն տալովը գրեց կ՚ըսեն։ Վասն զի շատ աստուածային յայտնութիւններ ունեցաւ սըրբուհին, ու շատ անգամ հրեշտակաց բերնո-

վը անոր հետ խօսեցաւ Աստուած, ինչպէս որ յայտնի է ։ Բայց Պրինճիտայի եղած յայտնութեանցը՝ շատերը չհաւատալով՝ սկսան խենթի տեղ դնել զինքը. սակայն կերպով մը սրբուհին իր բարի առաջադրութիւններէն խափանել չկրցան։ Աստուած ալ անոր գերազանց առաքինութիւնները սքանչելագործութեան շնորհքովը պսակեց. անանկ որ սրբուհւոյն վրայ ծիծաղողներն ալ երբոր իրմով եղած հրաշքները կը տեսնէին՝ աղէկ կ՚իմանային թէ շատ կը սխալէին որոնք որ Աստուծոյ ծառայիցը վրայ աշխարհի աչքով կը նայէին։

Հոգւոյ փրկութեան ալ մասնաւոր եռանդ մը ունէր Պրինճիտա, և աս վախճանին հասնելու համար ձեռքէն եկած ամէն ջանքը կը գործէր։ Այն պատճառաւ գրած է իր խրատական զանազան թուղթերը, որ ան ատենի եկեղեցականաց և ուրիշ ամէն աստիճանի մարդկանց առջևը մեծ յարգ ու պատիւ ունէին։

Իր խստամբեր վարուցը և ըրած ճամբորդութեանց պատճառաւը՝ ջերմ մը ու ստամոքսի հիւանդութիւն եկաւ վրան. ետքը Հռովմ քաղաքը հասնելով հիւանդութիւնը ծանրացաւ ու անկողին ինկաւ. ուստի սուրբ խորհուրդները ջերմեռանդութեամբ ընդունելով՝ սրբութեամբ վախճանեցաւ յամի 1373 յուլիս ամսուն քսանուիրեքին՝ եօթանասունըմէկ տարեկան. և ինչպէս կենդանութեան ատենը՝ մահուընէն ետքն ալ զանազան հրաշքներ տեսած են հաւատացեալք իրեն բարեխօսութեամբը։

## ՍՐԲՈՒՀԻ

# ԿԱՏԱՐԻՆԷ ՍԵՆԱՑԻ

Թոսքանայի Սենա քաղաքին մէջ ծնաւ այս երջանիկ ու հռչակաւոր կոյսը, յամի տեառն 1347, բարեպաշտ ու աստուածավախ ծնողաց զաւակ. որոնք Թէպէտ և քսանըհինգ զաւկի տէր՝ ու այն բազմաթիւ գերդաստանը պահելու հարկաւոր հարստութիւնը չունէին, բայց իրենց որդւոցը լաւ դաստիարակութեանը համար ամէն տեսակ զոհ աչուընին առեր էին։ Կատարինէ աղջիկը իրեն բարեպաշտ ծնողացը մեծ ուրախութիւն էր ոչ միայն ունեցած ազնիւ կատարելութեանցը համար, այլ նաև իր եռանդուն բարքովը և խելացի լեզուանիութեամբը։ Հինգ տարուան եղած ատենը Ողջոյն քեզ Մարիամ աղօթքը բերնուց սերտած ըլլալով, սանդուղներէն վեր ելլելու և իջնալու ատենները կը գրուցէր. ութը տարուան հասակին մէջ Աստուծոյ մասնաւոր շնորհքովը լուսաւորուած՝ կուսութիւն ուխտելով ինքզինքը սուրբ Աստուածածնայ

պաշտպանութեանը յանձնեց ։ Առանձնութեան սէր մը ձգեց անկէ ետքը. Հազիւ երբեք կը խօսէր՝ աւելի աղօթքի ու մտածականաց հետ ըլլալով, ու իր փափուկ մարմինը ճգնութիւններով կը չարչարէր ։

Տասներկու տարեկան որ եղաւ՝ ծնողքը իրենց աղջկան միտքը իմացած չըլլալով՝ ետևէ էին որ ժամ մը առաջ աշխարհք մըտցընեն զինքը. ուստի սրբուհւոյն մայրը անոր ճգնաւորական ու անպաճոյճ բռնած ճամբան տեսնելով՝ յորդորեց որ մէկդի թողու այն կերպը ու իր վիճակին և տարիքին համեմատ զգեստ մը հագնի ։ Կատարինէ ալ անոր սիրտը չկոտրելու համար՝ առջի խստակրօն կեանքը ձգել ձևացուց, ու սկսաւ վայելուչ հագուստ մը գործածել. Թէպէտ և միտքը հաստատութեամբ դրած էր որ կուսութեան ուխտը կատարելու համար ամէն բան աչք առնէ՝ առանց ծնողացը խօսքին և աղաչանացը մտիկ ընելու ։ Քիչ մը ատեն վրան անցնելէն ետքը՝ Կատարինէի Բոնաւենտուրա անունով աշխարհք մտած մեծ քոյրը իր ծաղիկ հասակին մէջ ընկաւ մեռաւ. սրբուհին որ արդէն աշխարհքէս զզուած էր, երբոր այս ցաւալի դիպուածն ալ տեսաւ՝ աւելի աղէկ իմացաւ անոր ընդունայնութիւնը և խեղճութիւնը, ու սկսաւ մեծ եռանդեամբ ինքզինքը հոգևորի տալ ։ Օրուան մեծ մասը աղօթքով կ'անցընէր, կերածն ալ ոչ ինչ բան մը ըլլալով. մէկ օր մ'ալ մկրատը ձեռքն առաւ ու գլխուն մազերը արմատէն կտրե-

լով, սև քօղ մը վրան ձգեց. Կատարինէի ծնողքը այս բանս տեսնելով՝ շատ նեղացան, որովհետև մտքերնուն վրայ հաստատուն էին որ օր մը չէ նէ օր մը իրենց աղջիկը բռնի աշխարհք մտցընեն. անոր համար արգիլեցին որ մէյմ՚ալ առանց իրենց գիտնալուն ինքիր գլխուն չերթայ խուցը չառանձնանայ, ու իր պզտի սենեկէն դուրս հանելով՝ ստիպեցին որ տանը մանրմունր ծառայութիւնները ինքը տեսնէ։

Կատարինէ տրտմելու տեղ աւելի ուրախութիւն ցըցուց՝ որ այնպիսի անարգ ծառայութիւններ դրին վրան. իրաւ մեծ վիշտ էր իրեն առանձնութիւնը կորսնցընելը, բայց անոր ալ սիրով կը համբերէր։ Շատ չքշեց, Աստուած Կատարինէի համբերութեանը նայելով բաները աղէկի դարձուց. վասն զի հայրը իր ազնիւ աղջկանը խոնարհութեանը ու առաքինութեանը վրայ զարմանալով, թող տուաւ որ իր առջի կեանքը վարէ, առանց տնական արտաքին հոգոցը զբաղելու։

Կատարինէ իր բաղձանացը հասնելով, աստուածային եռանդեամբ մը վառուած սկսաւ մեծամեծ ճգնութեանց ու մահացուցմանց ետևէ ըլլալ։ Անկողինը չոր փայտ էր, հագածն ալ հաստ բրդէ զգեստ մը, որուն տակէն շատ անգամ քուրձ կը հագնէր, ու երկըթէ շղթայով մը մարմինը կը կապկըպէր։ Աղքատաց առատ ողորմութիւն կուտար. հիւանդները, վշտագնեալքը ու բանտի մէջ ե-

ղած յանցաւորներն ալ իր խրատներովը ու հոգևոր խօսքերովը կը մխիթարէր։ Իրեն մեծ զուարճութիւն էր գիտուն և առաքինի մարդկանց հետ հոգևոր բաներու վրայ խօսակցութիւն ընելը. կ'ըսեն թէ անգամ մը իր խոստովանահօրը գրուցած ըլլայ թէ «Այնչափ սիրելի են ինծի այսպիսի երկնային խօսակցութիւնները՝ որ հարիւր օր հարիւր գիշեր առանց ուտելու խմելու անձանձիր և սիրով մտիկ կ'ընեմ»։ Կատարինէի ունեցած եռանդը աւելի անով զարմանալի էր, որ տասնըհինգ տարեկան աղջիկ մը այս աստիճանի խոնարհութիւն, հնազանդութիւն և կամքը կտրել գիտնայ։ Հիւանդութիւններ ալ եկան վրան, բայց ինքը չէ թէ միայն պզտի տրտունջ մ'ալ բերնէն չէր հաներ, այլ նաև ուրախ էր որ այսպիսի վշտերով հոգւոյն աղտերը կը մաքրուին։

Կատարինէ կուսանաց վանքը մտնելու ալ մեծ փափաք ունենալով՝ Սենայի մէջ եղած Դոմինիկեան միանձնուհեաց վանքը առանձնացաւ յամի 1365, տասնըութը տարեկան հասակին մէջ, և մաքրակրօն վարքովը, հնազանդութեամբը և աղքատութեամբ ամենուն բարի օրինակ եղաւ. կ'ըսեն թէ երեք տարի միակերպ լռակեցութեան հետ էր, միայն ամենէն հարկաւոր բաները խօսելով։ Միշտ իր խուցը կը քաշուէր, գիշեր ցորեկ աղօթքի ու մտածականաց պարապելով. անոր համար աստուածային յայտնութիւններ ալ ունեցաւ։

Բայց բարիատեաց սատանան տեսնելով որ կատարինէ իր հոգւոյն փրկութենէն զատ, ուրիշ անթիւ մեղաւորաց դարձին ալ պատճառ կ՚ըլլայ, ամէն ջանք ըրաւ՝ բռնած առաքինի ճամբէն ետ կեցընելու համար։ Մաքրութեան դէմ փորձութիւններ ու պիղծ խորհուրդներ ձգեց անոր մտքին մէջ. «Ինչ պիտի ըլլայ կ՚ըսէր այդպիսի խիստ կերպով ինքզինքդ չարչարելուդ պատճառը. միտքդ ինչ ես դրեր, իբր թէ կարենաս պիտի շարունակել այդ կեանքդ. մէկդի թող այդ խենթութիւնդ, ու կենացդ յարդը ճանչցիր։ Աշխարհիս բերկրութիւնները վայլելու ատենը ճիշդ հիմայ է քեզի համար, դարձիր ու աշխարհք մտիր ուրիշ կանանց պէս. նայէ Սառայի, Ռեբեկայ, Ռաքելի ու Լիայի վրայ՝ թէ ինչպէս ամուսնութեամբ հաճոյ եղան Աստուծոյ»։ Աս և ասոր նման անդէպ խորհուրդներով խեղճ աղջիկը կը չարչարուէր. շատ անգամ մտքէն կ՚անցընէր որ թողու վանական առանձնութիւնը ու երթայ աշխարհք մտնէ. բայց Աստուած թող չտուաւ որ իր սիրելի աղախինը սատանայէն յաղթուի. զօրացաւ Կատարինէ, ու իր խոնարհութեամբը սատանան ամըչցուց։ Բայց անկէ ետքը աւելի աղէկ իմանալով թէ մարդս ինչ տարիճանի խեղճութեանց մէջ կրնայ իյնալ թէ որ Աստուծոյ շնորհքը իրեն չօգնէ, անարգ ու խոնարհ ծառայութեանց կուէ սկսաւ ըլլալ՝ աղքատաց ու անտէր հիւանդաց սպասաւորելով։ Շատ անգամ անձամբ կ՚ելլէր

աղքատաց ողորմութիւն տալու կ'երթար անոնց տնակը, որպէս զի բրած բարիքը միայն Աստուած գիտնայ առանց մարդկանց իմանալուն։ Կը պատմեն թէ անգամ մը տկարացած անկողին ընկեր էր Կատարինէ, ու շարժելու ոյժ չէր մնացած վրան. բայց լսելով թէ իրենց տանը մօտ բնակող այրի կին մը մեծ նեղութեան ու աղքատութեան մէջ կը տանջուէր իր որդւոցը հետ, սրբուհին Աստուծմէ խնդրեց որ այնչափ ոյժ պարգեւէ իրեն որ կարենայ այրի կնկան տունը երթալ՝ անոր խեղճութեանը դարման մը ընելու համար։ Աստուած Կատարինէի աղաչանացը մտիկ ըրաւ. վասն զի երկրորդ առտուն այնչափ ցորեն, գինի և իւղ տարաւ անձամբ ան աղքատին տունը, որ առողջութեանն ատենն ալ այնչափ ծանրութիւն չէր կրնար վերցընել։ Տուն որ դարձաւ, մէկէն առջինին պէս նորէն տկարացած անկողին ընկաւ։

Սենա քաղքին մէջ ուրիշ հիւանդ կին մը կար, որուն քովը մարդ մօտենալ ալ չէր կրնար սաստիկ բորոտութեանը պատճառաւ։ Կատարինէ այս բանս իմանալով, օրը երկու անգամ զինքը տեսնելու կ'երթար, ու կերակուրն և ուրիշ պէտք եղած բաները իր ձեռքովը կը մատակարարէր։ Եւ թէպէտ հիւանդը փոխանակ սրբուհւոյն խնամոցը շնորհակալ ըլլալու՝ ծանր խօսքերով կը նախատէր զինքը, բայց Կատարինէ չէ թէ միայն ինչուան անոր մահուանը օրը քովէն չզա-

տուեցաւ, այլ նաև մանկուընէն եղքը լուաց անոր մարմինը ու իր ձեռքովը գերեզման դրաւ։ Ուրիշ կին մ՚ալ քաղցկեղ ունէր, և քովը մարդ չէր համարձակեր մօտենալու՝ վիրացը աղտեղութեան պատճառաւը։ Կատարինէ անոր ալ ծառայել սկսաւ այնպիսի յօժարութեամբ որ հիւանդն ալ կը զարմանար, ու չէր գիտեր ի՛նչ կերպով շնորհակալ ըլլայ։ Բայց քիչ ատեն վրան անցնելէն ետքը՝ չէ թէ միայն սրբուհւոյն խնամքը մոռցաւ, այլ նաև պժգալի ապերախտութեամբ մը, վրան ծանր ամբաստանութիւններ դրաւ, ու շատերուն հաւատացուց։ Բայց Կատարինէի սիրտը չէ թէ միայն չկոտրեցաւ անոր ծառայութենէն ետ կենալու, այլ և ոչ ինքզինքը արդարացընելու ջանք ըրաւ, միտքը հաստատութեամբ դնելով՝ թէ անհնարին է որ Աստուած իր անմեղութիւնը չյայտնէ։ Եւ յիրաւի ամբաստանող կինը սրբուհւոյն համբերութիւնը և սէրը տեսնելով լեզուն փոխեց, ու սկսաւ ամենուն դիմաց խոստովանիլ իր ըրած ամբաստանութեանց ստութիւնը։

Անզեղջ մեղաւորներն ալ դարձի բերելու մեծ ջանք ունէր Կատարինէ. և իր ամէն մէկ խօսքերը և Աստուածահաճոյ գործքերը մէյմէկ զօրաւոր քարոզներ էին ապաքինութեանց յորդորելու համար. և ինչպէս Պիոս Բ սրբազան քահանայապետը կ՚ըսէր, Կատարինէի հետ խօսողը անհնարին էր որ իր պակսութիւնները չշտկէր։ Իրեն բարի օրինակովը դարձի եկող մեղաւորները խիստ

շատ ըլլալուն, մենք մէկը միայն պատմելով գոհ ըլլանք։ Սենա քաղաքին մօտերը երկու աւազակներ բռնուեր ու ի մահ դատապարտուեր էին. երկուքին սիրտն ալ խստացած չէ թէ միայն չէին ուզեր ապաշխարել իրենց մեղքը, այլ նաև սոսկալի հայհոյութիւններ կ՚ընէին։ Կատարինէ տեսնելով որ այս դժբաղդ մարդիկը իրենց տանը առջևէն կ՚անցընէին մահուան տեղը տանելու համար, մէկէն եռանդեամբ մը Աստուծոյ աղօթել սկսաւ որ այն խեղճերուն դարձ տայ։ Իրաւցընէ երբոր գլխատման տեղը հասան, Աստուծոյ շնորհքովը այն երկու անզեղջ մեղաւորքը դարձի եկան, ու արտասուօք իրենց մեղքերը խոստովանելով՝ երջանիկ վախճան ունեցան։

1374ին տենները Սենա քաղաքին մէջ մեծ սրածութիւն մը ելնալով՝ շատ մարդիկ կը մեռնէին, բայց Կատարինէի աղօթքովը շատերուն ալ առողջութիւն պարգևեց Աստուած։ Երբոր Փիզա քաղաքը գնացեր էր սրբուհին, Փլորենտիայի, Փերուճիայի, և Թոսքանայի մեծ մասին բնակիչքը՝ սրբազան քահանայապետին դէմ պատերազմի ելեր էին. բայց ետքը Փլորենտացիք կռուէն ձանձրանալով՝ ուզեցին հաշտութիւն ընել Կատարինէի միջնորդութեամբը։ Սրբուհին յանձն առաւ, ու ան ատենի Աւենիոն քաղաքին մէջ նստող Գրիգոր ԺԱ. քահանայապետին երթալով բաները յարմարցուց, և կ՚ըսեն թէ սրբազանը համոզողներուն գլխաւորներէն մէկը եղաւ սրբուհին որ Նորէն Հռովմ փոխադրէ քահանայապետական աթոռը։

Երբ նորէն Սենա քաղաքը դարձաւ կատարինէ, ու իր հանգիստ առանձնութիւնը գտնելով՝ սկսաւ աղօթքի և մտածականաց տալ ինքզինքը. Աստուծմէ ալ զանազան տեսիլքներ ու յայտնութիւններ ունեցաւ, ինչպէս շատ հաւատարիմ անձինք կը պատմեն։ Անցուցած բոլոր կեանքը՝ երկայն հրաշք մը կրնար ըսուիլ. մարմինը երկրիս վրայ, իսկ հոգւով կարծես թէ միշտ Աստուծոյ հետն էր. Յիսուսի սիրոյն համար ալ չարչարանք ու նեղութիւն քաշելը իրեն համար մեծ զուարճութեան տեղ սեպած էր։ Ան ատենները Գրիգոր ԺԱ սրբազանին մահուամբը, քահանայապետական իշխանութեան համար մեծամեծ կռիւներ ու հակառակութիւններ ծագեցան։ Սրբուհին այս անմիաբանութեանցը գէշ հետևանքները յայտնի տեսնելով՝ արտասուօք կ՚աղաչէր որ խաղաղութեան ետևէ ըլլան, ինչուան անձամբ ելաւ՝ Հռոմ քաղաքը գնաց հաշտութեան ճար մը գտնելու համար. բայց քաշած նեղութեանցը պատճառաւը Հռոմայ մէջ հիւանդացաւ, ու ապրիլ ամսուն 29ին սրբութեամբ վախճանեցաւ յամի տեառն 1380, երեսունուերեք տարուան հասակին մէջ, և մեծ ուխտատեղի եղաւ իր գերեզմանը անկէ եղած հրաշքներուն համար։

# ՍՐԲՈՒՀԻ ԹԵՐԵԶԱ

Կաստիլիոյ թագաւորութեան Աւիլա քաղաքը ծնաւ այս երջանիկ կոյսը յամի տեառն 1515։ Ծնողքը կարծես թէ երկնային ազդեցութեամբ մը իմանալով՝ թէ այս իրենց դուստրը օր պիտի գայ որ բոլոր աշխարհիս զարմանքը պիտի ըլլայ իր աստուածահաճոյ ու սրբակրօն վարքովը, ամէն հնարք բանեցուցին որ լաւ ու ճշմարիտ քրիստոնէի դաստիարակութիւն մը առնու։ Ըրած ջանքերնուն փուճը չերթալն ալ յայտնի տեսնելով շատ կ'ուրախանային. վասն զի Թերեզայի վրայ անմեղութիւն մը ու մեծ եռանդ կ'երևնար այն տղայութեան հասակին մէջ ալ։ Բարեպաշտ հայրը աղէկ սովորութիւն մը ունէր որ ընտանեաց հանգստեան ժամանակը սրբոց վարք կը կարդար անոնց. սրբուհին այն սրտաշարժ պատմութիւնները լսելով անանկ կը զմայլէր որ մէկ անգամով գոհ չըլլալով՝ առանձին ինքնիրենն ալ կ'երթար անկիւն մը կը քաշուէր նորէն կարդալու իրմէ մեծ եղբօրը հետ։ Սրբոց նահատակութիւնները լսելով՝ այնպիսի մեծ տպաւորութիւն ըրաւ իրենց փափուկ սրտին մէջ որ խօսքը

մէկ ըրին Մաւրիտանացւոց մէջ երթալ ու Քրիստոսի հաւատքը դաւանելով արիւննին թափել։ Թերեզա եօթը տարուան էր ան ատենը, իսկ եղբայրը տասնամեայ։ Ճամբուն վրայ իրենց ազգականներէն մէկը հանդիպելով՝ երբոր անոնց դիտաւորութիւնը իմացաւ, բռնի հօրերնուն տունը տարաւ զիրենք. ան ատեն մտքերնին դրին որ մարտիրոս ըլլալու տեղ՝ մէյմէկ անապատական ըլլան. ուստի պարտեզին մէջ ծառերու ճիւղերով երկու խրճիթ շինեցին, ուր որ Թերեզա շատ անգամ կ'առանձնանար աղօթք ընելու համար։ Աստուածածնայ ալ մասնաւոր ջերմեռանդութիւն մը ունենալով՝ սուրբ կուսին պսակը շատ անգամ օրուան մէջ կը դարձընէր։

Երբոր տասուերկու տարուան էր Թերեզա, իր բարեպաշտօն մայրը մեռաւ. այս պատճառաւ աղջկանը վրայ հոգևոր պաղութիւն մը եկաւ, ու հոգևոր գրքերու տեղ սկսաւ փուճումուճ առասպելախառն գրքեր կարդալ. անոնցմով աւելի ալ աւրուեցաւ, ու սկսաւ աշխարհային փառաց ու սնոտի պերճութեանց վրայ համարմունք ու սէր մը ձգել։ Թերեզայի հայրը իր աղջկանը այս բռնած կերպը տեսնելով՝ մէկէն Օգոստինեան կուսանաց վանքը դրաւ զինքը, որպէս զի աշխարհքէ հեռու ըլլալով՝ իր վարքը նորէն շտկելու փոյթ ունենայ։

Թերեզա հազիւ թէ ութը օր կեցեր էր այն վանքին մէջ՝ մէկէնիմէկ աստուածային

շնորհքով մը լուսաւորուած իր առջի բռնած կերպին ընդունայնութիւնը և վտանգը ճանչցաւ, ու պզտիկութեանը անմեղ կեանքը նորէն սկսաւ առաջ տանիլ։ Բայց չէր կրնար որոշել թէ արդեօք աշխարհք մնալը եթէ կուսութիւնը իրեն հոգւոյն փրկութեանը աւելի օգտակար կրնայ ըլլալ։ Երբոր այս մտածութեան մէջ էր, հիւանդութիւն մը եկաւ Թերեզայի վրայ, որով հայրը ստիպուեցաւ վանքէն հանել զինքը ու իր տունը բերել տալ. քիչ մը վրայ դնելէն ետքը՝ առողջութեան մէջ աւելի հաստատուելու համար՝ իրենց գեղի տունը խրկեց աղջիկը։ Ճամբան իր մէկ կրօնաւոր ազգականին հանդիպեցաւ Թերեզա, ու անոր հոգևոր խրատներովը այնչափ սիրտը շարժեցաւ որ աշխարհային երկրութիւններէ բոլորովին զզուելով՝ հաստատութեամբ միտքը դրաւ որ ինքն ալ նոյն հոգևորական ճամբան բռնէ, ուստի հօրմէն արտասուօք ու շատ դժուարութեամբ հրաման առնելով՝ Աւիլա քաղքին մէջ եղած Կարմեղական կուսանաց վանքը մտաւ՝ քսան տարուան հասակին մէջ։ Կրօնաւորական զգեստն հագաւ չհագաւ՝ այնպիսի զարմանալի եռանդ ու սրբութիւն մը ստացաւ, որ ամենուն բարի օրինակ եղաւ։ Վանքին մէջի ամէն դժուարին ու անարգ ծառայութեանց սիրով կը վազէր, մէկ կողմանէ ալ մարմինը մահացուցմամբ ու խիստ ծոմապահութեամբք չարաչար կը տանջէր. որով առողջութիւնն ալ տկարացաւ ու սաստիկ հիւանդութիւններ

քաշեց։ Բայց ինքը մարմնոյն տկարութեանցը ամենևին չնայելով, սիրով և ուրախութեամբ կուսական ուխտերը կատարեց։ Եւ որովհետև այն վանքին կուսանքը արգելականք չէին, սրբուհւոյն հայրը աբբատուհւոյն հրամանաւը քիչ մը ատենուան համար Նորէն գեղ տարաւ զինքը՝ որ դեղերով և օդափոխութեամբը կորսընցուցած առողջութիւնը Նորէն ստանայ. բայց Թերեզա քանի կ'երթար աւելի կը տկարանար, ու Քրիստոսի վրայ ունեցած սիրովը կը հալէր ու կը մաշէր։ Սրբուհւոյն խոստովանահայր քահանան իր թոյլ կեանքովը ամենուն գայթակղութեանը առիթ եղած էր. ասիկա Թերեզայի անմեղութիւնը և սրտին մաքրութիւնը տեսնելով՝ անանկ ըզմայլեցաւ մնաց որ իր մեղքերը լալով խոստովանեցաւ սրբուհւոյն, ու անոր աղօթքովը վարքը փոխելով երջանիկ մահուամբ մեռաւ։

Թերեզայի հիւանդութիւնը օրէ օր աւելի ծանրանալով՝ ամէնքը անոր կեանքէն յուսերնին կտրեցին. հայրն ալ Նորէն իր գեղի տնէն քաղաքը իջեցուց աղջիկը։ Սրբուհին հօրը տունը հասաւ չհասաւ, անանկ այլայլութիւն ու մարմրուք մը եկաւ վրան, որ չորս օր անզգայ մեռելի պէս ընկաւ մնաց։ Բայց ետքը կամաց կամաց վրայ դրաւ, ու իրեք տարուան մէջ իր առջի առողջութիւնը ստացաւ։

Հիւանդութեան ատենը անդադար եկող գացողներու հետ խօսելով Թերեզա ու հետերնին բարեկամանալով՝ Նորէն սկսեր էր

աշխարհային բաներու վրայ սէր ձգել, ուստի առողջանալովը դարձեալ իր միտքին վրայ հաստատուեցաւ: Աղօթքէ ու ջերմեռանդութենէ բոլորովին պաղեցաւ, ու ինչուան սկսաւ մըտքէն անցընել թէ այս հիւանդոտ կենօքը կոյս ըլլալ ուզենալը բոլորովին կեղծաւորութենէ առաջ կուգայ. ուստի այս վախճանով վանական կենաց բարի կրթութիւններն ալ գրեթէ բոլորովին թողուց: Բայց Աստուած Թերեզան ձեռքէ չձգեց. վասն զի սրբուհւոյն հայրը մահուան անկողին ընկաւ, ու բժիշկները կեանքէն յոյսերնին կտրեցին. Թերեզա հօրը քով կեցած սկսաւ խորունկ մտածել թէ ի՛նչպէս մարդուս ամէն մէկ գործքը այն վախճանաւ պիտի ըլլայ որ աս վերջին սարսափելի վայրկենին խղճմտանքը զինքը չչարչարէ. աշխարհային բերկրութեանց վաղանցուկ ունայնութիւնն ալ աւելի աղէկ իմացաւ, ու նորէն հաստատութեամբ միտքը դրաւ որ Աստուծոյ շնորհքովը իր բռնած ճամբան մէկդի թողու, ու Քրիստոսի ձայնին հետեւելով երթայ դարձեալ վանք մտնէ: Հօրը մահուընէն ետքը իր ուխտը կատարեց Թերեզա, գնաց վանքը առանձնացաւ, ու բոլոր կեանքին մէջ իր ունայնամիտ ամբարհաւաճութեանը վրայ կուլար ու կ'ողբար. ու տասնըութը տարի առանց մխիթարութեան մը ցաւօք և վշտօք իր կեանքը անցուց: Բայց դեռ ինքզինքը բոլորովին աշխարհի վերաբերութիւններէն զըկած չըլլալով, անկարելի կ'ըլլար որ կատարեալ հանգիստ կարենայ

գտնել այն վանական առանձնութեանը մէջ. ուստի մելամաղձութիւն մը եկաւ վրան, ու անկէ ետքը ոչ աշխարհային և ոչ հոգևորական մխիթարութիւններէն համ կ'առնէր։ վերջը վերջը սրբոյն Օգոստինոսի խոստովանութեանց գրքին հոգեշահ խրատներովը, և Քրիստոսի տեառն մերոյ չարչարանքները մտածելով, այն տխուր մտածութիւնները վրայէն փարատեցան։ Բայց չատերը սկսան արհամարհանօք հռչակել թէ կեղծաւորութեան համար է այս ցուցըրցած ճգնութիւնները. Նոյն իսկ Թերեզայի քոյրերն ալ չարաչար կը նախատէին զինքը։ Աստուած Թերեզայի անմեղութիւնը յայտնի ցուցընելու համար, իմաստուն խոստովանահօր մը առաջնորդութեանը յանձնեց զինքը, որ անոր հոգին ու եռանդը աղէկ մը հասկընալէն ետքը՝ խրատեց որ չնչին ու պզտի բաներու վրայ իր սրտին եռանդը չկապէ. հապա Քրիստոսի տեառն մերոյ վարքը ու չարչարանքները մտածէ, ու ջանայ ինքզինքը մահացընել ու իր կրքերը սանձել։ Մտիկ ըրաւ Թերեզա խոստովանահօրը խրատուցը, ու ապաշխարութեան և խիստ հրահանգաց տուաւ ինքզինքը։

Սուրբն Ֆրանչիսկոս Պորճեան Աւիլա քաղաքը գալով յորդորեց զԹերեզա՝ որ իրմէ չքաշուի, և ունեցած տարակուսանացը լուծումն խնդրէ. սրբուհին ալ ամէն բաները տեղն ի տեղը պատմեց իրեն, որով Ֆրանչիսկոս յայտնի իմացաւ թէ իրաւ աստուա-

ծայրին յայտնի հրաշքներ են Թերեզայի պատմածները․ ուստի յորդորեց որ բռնած ճամբուն մէջ հաստատուն կենայ ու մարդկանց խօսքերէն ամենևին տակնուվրայ չըլլայ։ Կը պատմեն թէ մէկ օր մը Թերեզա աղօթելու ատենը մտքովը յափշտակեցաւ, ու Քրիստոսի տեառն մերոյ ձայնը լսեց՝ որ կ'աւետէր իրեն թէ օր պիտի գայ որ իր խօսակցութիւնը միայն հրեշտակաց ու երկնայնոց հետ պիտի ըլլայ։ Աս տեսլենէն ետքը զարմանալի փոփոխութիւն մը տեսնուեցաւ սրբուհւոյն վրայ. ամենևին փոյթը չէին մարդկանց խօսքերը, ու ականջ չէր կախէր ոչ անոնց տուած գովեստին և ոչ ըրած ամբաստանութեանցը. իր ջանքը միայն այն էր որ և ոչ թեթև մեղքով մը իր փրկիչը վշտացընէ։ Սրբոյն Ֆրանչիսկոսի մահուընէն ետքը ուրիշ հոգեսէր խոստովանահայր մը գտաւ իրեն համար, ու անոր խրատներովը հոգևորական ճամբուն մէջ զարմանալի յառաջադիմութիւն մը ունեցաւ։ Թերեզայի սիրտը անշիջանելի վառարան մը դարձեր էր երկնային սիրոյ, միտքն ու հոգին ալ բոլորովին աստուածատեսութեանց մէջ ընկղմած։ Կը պատմեն հաւատարիմ անձինք թէ շատ անգամ կ'երենայ եղեր Յիսուս, ու մեր քրիստոնէական սուրբ հաւատոյ խորհուրդներուն գաղտնիքը կը բացատրէ եղեր իրեն։ Սրբուհին իր կողմանէ ամէն ջանք կ'ընէր որ այս աստուածային տեսիլքները մարդիկ չիմանան. բայց որովհետև իր հոգևոր հայրը խրատուցն ալ

միամիտ հնազանդութեամբ կը հետեւէր, պէտք կ'ըլլար որ անոնց ստիպելովը ամէն գլխէն անցած բաները տեղնիտեղը պատմէ։ Ասիկայ ալ սրբուհւոյն համար համբերութեան ու առաքինութեան մեծ նիւթ էր։ Վեց իմաստուն ու հոգեսէր մարդիկ սրբուհւոյն եղած յայտնութիւնները քննելու ետեւէ ըլլալով՝ վճռեցին թէ բոլոր պատմած հրաշքները խաբէութիւններ են, և կ'ուզէին արգիլել զինքը որ սուրբ հաղորդութեան խորհրդոյն չըմերձենայ, և կ'ըսէին թէ դիւահար է և վրան երդմնեցուցչութիւն ընելու է։ Սրբուհին այս բանս որ լսեց՝ բոլորովին տրտմութեան մէջ թաղուած՝ արտասուօք գնաց խաչելութեան ոտքը ինկաւ, իր սրտին ցաւոցը մխիթարութիւն մը խնդրելու։ Ետքը երկնային ուրախութեամբ քաջալերուելով՝ հաստատուն կերպով առաջադրեց անկէ ետքը մարդկանց կարծեացը վրայ ամենեւին համարմունք չունենալու։ Բայց ետքը վանական կենաց վրայ պաղութիւն մը սկսաւ զգալ Թերեզա, ու մէկ օր մը իր երկու բարեկամ միանձնուհեացը հետ խօսելու ատենը «Ասիկա քաղաքը եղած վանքին կենցաղավարութիւնը ինծի չյարմարեցաւ» ըսաւ. անոնք ալ նոյն բանը գրուցելով՝ Թերեզան յորդորել սկսան որ ուրիշ նոր կրօն մը հաստատէ, և կը խոստանային որ իրենք ալ օգնական կ'ըլլան սրբուհւոյն ջանիցը թէ՛ ստըկով և թէ խորհըրնդով. ուրիշ ազնուական ու հարուստ տիկին մըն ալ Թերեզայի ընկեր եղաւ, ու չորսը

մէկ եղած այս նորաձեւութիւնն ընելու ետեւէ եղան. և կ'ըսեն թէ սրբուհւոյն աստուածային յայտնութիւն եղաւ թէ սկսած գործը յաջողութեամբ առաջ պիտի երթայ. ուստի այս տեսիլքէն մեծ քաջալերութիւն առած՝ մտքերնին դրին որ ամէն արգելքներու դէմ դնեն։ Ետքը սրբուհին Թերեզա ան ատենի եղած աստուածաբանից և հոգեւոր անձանց խորհուրդ հարցուց այս բանիս վրայ. անոնք ալ գովելով յորդորեցին որ մէկէն մտքի դրածը կատարել սկսի. ուստի սրբուհին տուն մը վարձեց իր միաբանութեանը համար։ Բայց ինչպէս ամէն բարի գործոց՝ Թերեզայի դիմացն ալ մեծամեծ արգելքներ ելան, անոր համար ստիպուեցաւ թողուլ սկսած գործը, որպէս զի չարախօսաց բերանը կարկէ։ Աս բանիս վրայ՝ ամէնքը Թերեզայի դէմ դարձան ու նախատական ու ծանր խօսքերով զինքը կ'արհամարհէին, որոնց սրբուհին զարմանալի խոնարհութեամբ կը համբերէր։ Բայց երբոր Պիոս Դ սրբազան քահանայապետէն իր կրօնքին հաստատութեան կոնդակը ընդունեցաւ, չորս առաքինի ընկերներովը վանքը մտաւ, ու մեծ փառքով եկեղեցւոյն նաւակատեաց հանդէսը քաղքին եպիսկոպոսին ձեռքովը կատարել տուաւ։ Ահա այս կերպով սկսաւ Թերեզայի հաստատած մեծ կրօնը՝ որուն բարի վարուց և առաքինութեան ո՛րչափ մեծ ձեռնտու ըլլալը՝ հաւատացեալք աղէկ գիտեն։

Սրբուհին տեսնելով որ օր օրուան վրայ

իր վանքին կուսանաց. Թիւը կը շատնայ, միտքը դրաւ որ անոնց համար կանոններ ալ հաստատէ. ուստի Աստուծմէ լոյս խնդրելով՝ խիստ կանոններ դրաւ իրեն աշակերտեալ միանձնուհեացը։ Բայց անոնցմով պակսելու տեղ՝ աւելի բազմանալ սկսան, որով հարկ եղաւ որ քիչ ատենուան մէջ վանքերը շատնան, ու Թերեզայի սրբութեան համբաւը ամէն տեղ հռչակուեցաւ։ Անգամ մը կարմեղականաց մեծաւորը սրբուհւոյն հաստատած վանքերուն այցելութեան ելլելով, զարմացաւ մնաց անոնց բարեկարգութեանը վրայ, ու Թերեզայէն խնդրեց՝ որ նոյնպէս ուրիշ վանքեր հաստատէ. ան ալ Աստուծոյ յաջողելովը տասներկու տարուան մէջ շատ քաղաքներ վանքեր շինել տուաւ ու բարեկարգ կանոններ սահմանեց. Թէպէտ և այս մեծամեծ բաները առաջ տանելու համար շատ հալածանք ու նեղութիւններ ալ քաշեց։

Անկէ ետքը ետևէ եղաւ Թերեզա որ էրիկ մարդկանց վանքերու մէջ ալ մնած անկարգութիւնները վերցընէ։ Շատերը այս բանիս դէմ կեցան, և Թերեզան ժողովրդեան աչքէն հանելու համար սկսան անվայել զըրպարտութիւններ ընել վրան. բայց ինքը երկու բարեպաշտ քահանայից՝ որ իրեն հետևեր էին, կանոններ տալէն ու մասնաւոր զգեստ սահմանելէն ետքը՝ Բոկոտն կարմեղականաց վանքը խրկեց որ երթան նոյն կանոններով այն կրօնը կարգի բերեն, ինչպէս որ յաջողեցաւ ալ։

Թերեզայի անհամեմատ սրբութիւնը տեսնելով իր խոստովանահայրքը՝ ստիպեցին որ իրեն վարքը տեղն ի տեղը գրէ։ Այսպիսի հրաման մը շատ ծանր եկաւ խոնարհամիտ սրբուհւոյն, բայց հնազանդեցաւ և ուզածնին կատարեց։ Անոնց հրամանովը ուրիշ զանազան գրքեր ալ գրեց, որոնց ամենուն մէջ իր եռանդը և սրբութիւնը յայտնի կերպով կը տեսնուին։ Զարմանալին ան է որ այնչափ զբաղմանցը մէջ իր սրտին եռանդը ամենևին չպակսեցաւ, մանաւանդ թէ աւելի կերպով ալ աստուածային սիրոյն կրակը արծարծեց։ Վասն զի Թերեզայի վառեալ սէրը ունեցողները՝ խիստ քիչ եղեր են սրբոց մէջ։ Իրեն եղած տեսլեանց ու յայտնութեանցը թիւը չկար. կ՚ըսեն թէ մէկ օր մը սերովբէ մը տեսաւ տեսլեան մէջ՝ որ կրակի խանձողով մը սրբուհւոյն սիրտը կ՚այրէր։ Միշտ քաշելու ալ մասնաւոր սէր մը ունէր, ու միշտ կը խնդրէր Աստուծմէ որ ինչուան մահուան վայրկեանը նեղութիւնք իր վրայէն չպակսին։

Թերեզա իմանալով որ մեռնելու ատենը մօտեցեր է, ամէն իր ջանքովը բարեկարգած վանքերուն խրատներ և զգուշութեան կանոններ գրեց. անկէ ետքը կամաց կամաց աւելի ալ տկարանալով՝ անկողին ընկաւ։ Վերջին թօշակը առնելէն առաջ վանքին մէջի եղած կուսանքը իր քովը կանչեց, ու լալով ներումն խնդրեց անոնցմէ՝ թէ որ երբէք իրենց վշտացը պատճառ եղեր է. ու երբոր հաղորդութեան սուրբ խորհուրդը խուցը բերին,

Թերեզա աստուածային սիրով մը վառուած՝ նոր զօրութիւն և ոյժ մը ստացաւ, և արտասուախառն ուրախութեամբ մը աղաղակել սկսաւ թէ «Եկաւ հասաւ այն երջանիկ օրը որ այս աքսորանաց ու վշտալից երկրէն պիտի ազատիմ»։ Անկէ ետքը վերջին օծումն ալ ընդունելով՝ երջանիկ ու խաղաղ մահուամբ մը իր օրերը կնքեց յամի 1582 վաթսուն տարուան։ Մէկէն նոյն վայրկենին անուշահոտութիւն մը բուրեց սրբուհւոյն խուցին մէջ. երեսն ալ պայծառացաւ։ Երկրորդ օրը մեծ հանդիսով թաղեցին զինքը վանքին եկեղեցւոյն դասին մէջ, ու ան ատենէն սկսան զարմանալի հրաշքներ երևնալ սրբուհւոյն բարեխօսութեամբը։ Իրեք տարի հոն տեղը թաղուած մնալէն ետքը՝ հանդիսով առին իրեն մարմինը Աւիլա քաղքին մենաստանը փոխադրեցին. բայց ետքը Քսեստոս Ե սրբազան քահանայապետին և ուրիշ մեծամեծաց խնդիրքովը Ալպայի վանքը տարին, ուր որ ինչուան հիմա կեցած է. իրեն նշխարացը մէկ մասն ալ Հռովմայ Բոկոտն Կարմեղականաց վանքը պահուած է։



# ՍՐԲՈՒՀԻ ՔԼԱՐԱ

Արեւմտեան եկեղեցւոյն տօնելի սրբոցը վարուցը գրքին մէջ՝ սրբոյն Ֆրանչիսկոսի Ասսիզացւոյն վրան խօսելու ատեն թէպէտ քիչ շատ յիշատակութիւն եղած է նաև այս սրբուհւոյն վրայ, բայց հիմա կուսանաց վարքին մէջ աւելի ամբողջ տեղեկութիւն մը տանք իր վարուցը։

Ասսիզա քաղքին մէջ ծնաւ այս սրբուհին յամի տեառն 1183, հարուստ և ազնուական տընէ։ Տղակութեան ատենէն ալ յայտնի կ'իմացուէր թէ իր փափուկ սիրտը վառարան մը պիտի ըլլար աստուածային սիրոյ. վասն զի փուճումուճ զբօսանաց տեղ աղօթքի ու ջերմեռանդութեան մասնաւոր սէր մը ձգեր էր. և սուրբ կուսին վարքը լսելով՝ հաստատութեամբ միտքը դրեր էր որ ինքզինքը անոր պաշտպանութեանը նուիրէ անարատ կուսութեամբ։

Քանի որ տարիքը կ'առնէր, աշխարհիս բերկրութեանցը վրայ ունեցած զզուանքն ալ կ'աւելնար. անոր համար մարդկանց մէջ մտնել և անոնց հետ կենակցիլ ալ չէր ուզեր, որպէս զի չըլլայ թէ իր սրտին կրակը այն-

պիսի կերպերով մարի։ Ծնողքը կը ստիպէին զինքը որ իրենց վիճակին յարմար հագուի կապուի եկեղեցին կամ՝ ուրիշ տեղուանք երթալու ատենները. Քլարա ծնողացը սիրտը չկոտրելու համար կը հնազանդէր անոնց, սակայն իր ազնիւ զգեստուցը տակէն հաստ քուրձ մը կը հագնէր մարմնոյն վրայ։ Եւ թէպէտ սրբուհւոյն մայրը բարեպաշտ տիկին մը ըլլալով իր աղջկանը ունեցած հոգեսէր եռանդը տեսնելով շատ կ'ուրախանար, բայց մէկալ կողմանէ ալ կը վախէր որ չըլլայ թէ առողջութեանը վնաս մը բերէ իր ճգնութիւններովը։ Եւ յիրաւի, կարծես թէ Քլարա մանաւոր կերպով ինքզինքը չարչարել կ'ուզէր այնպիսի հասակի մը մէջ՝ որ ուրիշներու համար բերկրութեանց և հաճոյից տարիներ են. վասն զի ծոմ կենալը և ինքզինքը մահացընելը՝ իրեն համար զբօսանք և զուարճութիւն կը սեպէր։

Ան ատենները սուրբն Ֆրանչիսկոս Ասսիզացին իր զարմանալի կրօնքը հաստատելով՝ շատ հռչակուեր էր։ Քլարա անոր ըրած առաքինական գործողութիւնները լսելով միտքը դրաւ որ մէյմը տեսնուի անոր հետ ու կուսական կենաց համար ունեցած բաղձանքը յայտնէ։ Երբոր սրբոյն Ֆրանչիսկոսի խոնարհութիւնը ու սրբութիւնը տեսաւ Քլարա, բոլորովին մտքովը յափշտակուած՝ մէկէն իր փափաքը և աշխարհային կենաց դէմ ունեցած ատելութիւնը յայտնեց իրեն։ Ֆրանչիսկոս ալ աստուածային յայտնութեամբ ի-

մնալով թէ ինչպիսի՛ գերազանց շնորհաց արժանի պիտի ըլլայ ատենով, քաջալերեց զինքը ու յորդորեց որ Աստուծոյ շնորհքովը ջանայ միջին դրածը առաջ տանելու։ Քլարա անկէ ետքը շատ անգամ Փորձիունքուլա սրբոյն Ֆրանչիսկոսի մենաստանը կ'երթար անոր հոգեշահ խրատները լսելու համար. Ֆրանչիսկոս ալ անոր զարմանալի սրբութիւնը տեսնելով՝ յորդորեց որ ինչպէս ինքը էրիկ մարդկանց համար մասնաւոր կրօն մը հաստատեց, Քլարա ալ կանանցը հաստատէ։ Սրբուհին հաւանեցաւ Ֆրանչիսկոսի տուած խրատուցը, և յամի տեառն 1212՝ ծաղկազարդի կիրակէին օրը իր ամենէն զարդարուն զգեստները հագած՝ Ասիզի քաղքին եպիսկոպոսական եկեղեցին գնաց. ետքը իրիկուան դէմ՝ ալ Ֆանչիսկեանց եկեղեցին գնաց նոյն հագուստով։ Կրօնաւորք ձեռուընին ջահեր ու ճրագներ առած սաղմոսերգութեամբ իրենց եկեղեցին ընդունեցան զսրբուհին. Քլարա իրեն մազերը կտրել տուաւ, և փառաւոր հագուստները մէկդի ձգելով՝ ապաշխարողաց քուրձ մը առաւ վրան, ու գնաց մօտիկ տուն մը առանձնացաւ։

Քլարայի այս ըրած գործողութիւնը Ասիզացիք լսելով շատ զարմացան. և որովհետև դեռ տասնըութը տարուան աղջիկ տղայ էր, ամէնքը միջերնին դրին թէ մանկական թեթևամտութեամբ եղած գործողութիւն մըն է, բայց ծնողքը շատ զայրացան որ առանց իրենց հրամանին բոլոր ընտանիքը խաղք

ըրաւ ամենուն առջեւը։ Անոր համար ելան իրենց առանձնացած տունը գնացին որ բռնութեամբ առնուն քաղաքը բերեն։ Քլարա աստուածային շնորհքով մը զօրացած ոչ անոնց աղաչանքէն կակղցաւ, և ոչ սպառնալիքներէն վախցաւ. մէկ ձեռքովը եկեղեցւոյն խորանը բռնած՝ մէկալովն ալ իր կտրած մազերը ցուցընելով, «Աղէկ գիտցէք, ըսաւ, որ ես Յիսուսի Քրիստոսի ընծայուեցայ, և մարդիկ չեն կրնար զիս իրմէ բաժնել»։ Ֆրանչիսկոս Բենեդիկտեան կուսանաց մէկ վանքը դնել տուաւ զսրբուհին. Քլարա հազիւ թէ տասնըհինգ օր հոն կեցեր էր, Ագնէս քոյրը իրմէ բարի օրինակ առած՝ նոյն վանքը եկաւ, և կրօնաւորական զգեստ հագնելով՝ միտքը դրաւ որ ինքն ալ քրոջը հետ նոյն առաքինական կեանքը անցընէ։ Ծնողքը այս բանս ալ տեսնելով շատ տաքցան, ու հետերնին մարդիկ առած՝ բռնութեամբ վանքը վազեցին ու Ագնէսը յափշտակելով՝ իրենց տունը կը տանէին. Քլարա սրտառուչ աղօթքով մը Աստուծոյ դիմեց, ետքը մէկէն վանքէն դուրս ելաւ, ու իր քրոջը ետևէն վազելով՝ զարմանալի հրաշագործութեամբ մը ճամբուն վրայ անշարժ կեցընել տուաւ իր քոյրը. անանկ որ բազմութիւնք չկրցան տեղէն շարժել տալ, և իմանալով թէ Աստուծոյ բանը կայ ասոր մէջ՝ թողուցին որ քրոջը հետ նորէն վանք դառնայ։

Սուրբն Ֆրանչիսկոս այս զարմանալի հրաշքը լսելով, ուզեց որ իր կողմանէ ալ անոնց աստուածահաճոյ բաղձանացը կատարուելուն

օգնական ըլլայ. ուստի իրեն ջանքովը նորոգուած սրբոյն Դամիանոսի եկեղեցին ու անոր քովի եղած տունը՝ այս երկու սրբասէր քերցը տուաւ. և այս կերպով սկսաւ Քլարեան ըսուած կուսանաց կրօնը: Սրբուհւոյն մայրը և պզտիկ քոյրն ալ՝ եկան նոյն վանքը կրօնաւորելու համար, նոյնպէս ուրիշ շատ ազնուական աղջկունք՝ աշխարհային բերկրութիւնները արհամարհելով, այն նորածին աղքատ կրօնին մէջ մտնելը ամէն փառքէ վեր սեպեցին: Երբ սրբոյն Ֆրանչիսկոսի առջևը կրօնաւորական ուխտերը յանձն առնելով, միաբան հաւանութեամբ Քլարան իրենց աբբասուհի դրին. բայց իր խոնարհութեամբը ինքզինքը ամենէն աւելի նուաստը սեպելով, ցածուն ծառայութիւնները անձամբ կը կատարէր. վասն զի ինքն էր սեղանի վրայ և հիւանդանոցին մէջ սպասաւորողը: Աղքատութեան առաքինութեան ալ մասնաւոր եռանդ մը ստացեր էր. չէր ուզեր որ իր մենաստանը կալուած կամ եկամուտ ունենայ, այլ ողորմութեամբ իրեն ամենօրեայ ապրուստը ճարէ. կ'ըսեն թէ և ոչ կ'ուզէր որ ամբողջ հաց մը բերուի իր վանքը, այլ կտորուանք ըլլան. որպէս զի կուսանացը սըրտին մէջ փառասիրութիւնը և կամ աշխարհային հաճոյք չզօրանան. այն պատճառաւ՝ հօրը վախճանելէն ետքը իրեն ընկած ժառանգութեան մասը աղքատաց ու կարօտելոց բաժնել տուաւ: Գրիգոր Թ սրբազան քահանայապետը անոնց խեղճութիւնը տես-

նելով՝ ուզեց որ սորվելով օգնութիւն մը ընէ.
բայց Քլարա քահանայապետին խնամոցը շնոր-
հակալ ըլլալով աղաչեց որ այն բարիքը ը-
նելէն ետ կենայ, որպէս զի չըլլայ թէ կրօ-
նաւորական սկզբնական ոգւոյն աւրուելու ա-
ռիթ ըլլայ։ Կը պատմեն թէ մէկ օր մը ճա-
շաժամուն ատենը հասած ըլլալով՝ յիսուն
կուսանաց համար պզտիկ հացէ մը աւելի
ապրուստ չկար. Քլարա կերակուր բաժնողին
ապսպրեց որ այն մէկ հացը կտոր կտոր
ընելով ամենուն բաժնէ. և մասնաւոր հրաշ-
քով հացը բազմացաւ ու ամէնքը կշտացան։

Քլարայի անցուցած խստակրօն կեանքը
յիրաւի զարմանալի հրաշք մըն էր։ Վասն
զի կրօնքին ամէն խստութիւնները ճիշդ կեր-
պով պահելէն զատ, իր կողմանէ ալ մաս-
նաւոր ճգնութիւններ ունէր ինքզինքը մա-
հացընելու համար։ Մարմնոյն վրայէն խոշոր
քուրձեր կը հագնէր. և անոնց վրայ մաս-
նաւոր սուր փշեր խոթուած էին որ ամէն
մէկ շարժելուն մարմնոյն մէջ կը խրէին ու
չարաչար կը տանջէին զինքը. պահոց օրեր
կերածը լոկ հաց և խմածն ալ պարզ ջուր
էր. իսկ երկուշաբթի, չորեքշաբթի և ուր-
բաթ օրեր անսուաղ կ'անցընէր. քունն ալ
չոր գետնի վրայ էր. բայց ետքերը մահուը-
նէն քանի մը տարի առաջ՝ սրբոյն Ֆրան-
չիսկոսի հնազանդելու համար՝ յարդէ ան-
կողնի մը վրայ կը քնանար։

Բայց իրեն խստակրօն վարուցը ժամանակ
մեծամեծ մխիթարութեանց ալ արժանի ե-

ղաւ, վասն զի ինչպէս որ Հաւատարիմ անձինք կը պատմեն, աստուածային յայտնութիւններ ունեցաւ Բլարա, որոնցմով երկրիս վրայ երկնից արքայութեան քաղցրութիւնը և արդարոց պատրաստուած վայելքը կ՚իմանար։ Աղօթքի ատեն ցուցըցած եռանդը զարմանալի բան մըն էր. մտաւոր աղօթից ատենն ալ շատ անգամ մտքովը կը յափշտակուէր կ՚ըսեն. իր խօսքերը ազդու և եռանդուն էին, որոնցմով լսողին սիրտը բոլորովին ինքիրմէ դուրս կ՚ելլէր։ Սուրբ կուսին ալ շատ ջերմեռանդ էր։

Բայց իրեն մեծամեծ ճգնութիւններովը՝ առողջութիւնը վատթարանալ սկսաւ, թէպէտ և եռանդը և աղօթասիրութիւնը ոչ երբեք պակսեցան. ոտքի վրայ կենալ չկըրնալով՝ կ՚ըսեն թէ ինքզինքը սրբութեան դիմաց տանել կուտար՝ միաբանական աղօթից ատեն ուրիշներուն հետ ներկայ գտնուելու համար։

Փրեդերիկոս Բ կայսրը Հռովմայ սրբազան քահանայապետին դէմ պատերազմ բանալով, Սարակինոսները իրեն օգնութեան կանչեց։ Անոնք ալ սրբազանին սահմանները կոխկրտելով՝ եկան Ասսիզի քաղաքն ալ պաշարեցին. և որովհետև Բլարեան կուսանաց վանքը քաղքին պարսպացը մօտիկ էր, թշնամիք վանքը աւարի առնուլ կ՚ուզէին։ Բլարա երբոր այս բանս լսեց, աստուածային վստահութեամբ մը զօրացած վանքին քահանային հրաման տուաւ որ սրբութիւնը

ճանապարհով առնու դրանը քով տանի։ Ետ-քը ինքն ալ բոլոր կուսանաց հետ մէկտեղ վար իջաւ. և ամէնքը մէկէկէն սկսան եռան-դեամբ և լացով աղօթք ընել՝ որ Աստուած ողորմի իրենց ու թշնամեաց բռնութենէն ազատէ։ Եւ լսեց Աստուած անոնց աղօթքին. վասն զի Մարտիկինոսը այս բանս տեսնելով շատ փախցան, ու մէկէկէն ազատ թողուցին զիրենք։

Քաղաքային մանկունքնէն տարի մը առաջ Ռու-տելայի կարդինալը՝ որ ետքը քահանայապետ ընտրուելով Աղեքսանդր Դ կոչուեցաւ, անոր հիւանդութիւնը լաւ ըլլալով՝ այցելութեան գնաց. և տեսնելով որ մահուան մօտեցեր է՝ վերջին թոշակը մատակարարեց իրենց։ Եր-կար սուրբ խորհուրդը ընդունեցաւ. Քլարա՝ այնպիսի ուժ և զօրութիւն մը եկաւ վրան, որով չէ թէ միայն անկողինէն ելաւ, այլ նաև իրենց պաշտօնին վերաբերեալ ամէն գործո-ղութիւնները անթերի կը կատարէր։ Հե-տեւեալ տարին Իննովկենտիոս Դ սրբազան Հայ-րապետը՝ Գաղղիայէն Հռոմ դառնալու ա-տենը ուզեց որ նախ Ասիսիի երթայ Քլա-րան տեսնելու համար։ Տեսաւ որ սրբուհին մահուան մօտեցած ըլլալուն վերջին թոշակը ընդուներ էր. Քլարա երբոր սրբազան քա-հանայապետին ցըցուցած խնամքը իմացաւ, արտասուալից ուրախութեամբ խնդրեց իր-մէ որ իր մեղացը արձակումն շնորհէ. Ին-նովկենտիոս անոր զարմանալի սրբութիւնը տեսնելով, կ'ըսեն թէ իր քովը եղած Տիրա-

նաւորաց դարձեր ըսեր է, թէ «Աշխարհիս վրայ երևցած անուանի սուրբերէն մէկն է որ պիտի կորսընցընենք»։

Քլարա ուզեց որ սրբոյն Ֆրանչիսկոսի Ասսիզացւոյն պէս կտակ մը ընէ. որպէս զի իրեն աշակերտուհեացը սրտին մէջ աւելի կերպով մը տպաւորէ աղքատութեան և բուն ճշմարիտ կրօնաւորութեան ոգին։ Խոստովանահայրը երբոր համբերութեան գերազանց առաքինութիւնը կը գովէր Քլարայի առջև, սրբուհին դարձաւ, «Հայր սուրբ, ըսաւ, որչափ մեծ ցաւ կը զգամ՝ քանի որ կը մտածեմ թէ աշխարհէս հեռանալէս ու ինքզինքս Յիսուսին նուիրելէն ետքը, պզտիկ առիթ մ'ալ չէ եղած որ անոր սիրոյն համար վիշտ մը քաշելու արժանի ըլլամ. ի՜նչ մեծ մխիթարութիւն է հաւատացեալ հոգւոյ մը՝ երբոր մտածէ թէ իր փրկչին համար վիշտ ու չարչարանք կը քաշէ»։ Կը պատմեն թէ հոգևարութեան առենը Քրիստոս տէրն մեր կուսանաց բազմութեամբ Քլարայի խուցը մտած ըլլայ՝ անոր երջանիկ հոգին անմահութեամբ փառաւորելու համար. և այս կերպով մայիս ամսուն մետասաներորդ օրը՝ յամի տեառն 1253 խաղաղութեամբ հոգին աւանդեց, վաթսուն տարուան հասակին մէջ, քառասուներկու տարի վանքը կենալէն ետքը։

Երբոր Քլարայի մահուան լուրը տարածուեցաւ, վազող վազողի եղան զինքը տեսնելու համար. ինչուան քահանայապետն ալ ծիրանաւորացը հետ մէկտեղ վանքը եկաւ.

ետքը մեծ փառքով իրեն երջանիկ մարմինը Ասիզի քաղքին մէջի սրբոյն Գրիգորի ըսուած եկեղեցւոյն մէջ թաղեցին, և անթիւ հրաշքներ տեսան հաւատացեալք սրբուհւոյն բարեխօսութեամբը։ Անոր համար Ոստիայի կարդինալը որ տարիէ մը ետքը քահանայապետ ընտրուեցաւ, մեծ հանդիսով սրբոց կարգը դասեց զինքը, ու ի պատիւ սրբուհւոյն եկեղեցի մը շինել տալով՝ մարմինը հոն փոխադրեց՝ մահուընէն հինգ տարի ետքը։

Քլարայի կենդանութեան ատենէն ալ իրեն ջանքովը հաստատած կրօնքը Իտալիոյ և Գաղղիոյ մէջ տարածուիլ սկսեր էր. բայց իր մահուընէն ետքը զանազան ճիւղեր բաժնուեցաւ, թէպէտև ամենուն ոգին և վախճանն ալ նոյն ըլլալով հաւատացելոց և եկեղեցւոյ մեծամեծ օգուտներ ըրած են։



# ՍՐԲՈՒՀԻ

# ՎԱՐԴՈՒՀԻ ԼԻՄԱՑԻ

Սրբուհին Վարդուհի կամ Ռոզա երջանիկ կայսը Ամերիկայի փերու բառած նահանգին Լիմա քաղաքը ծնաւ, հարուստ ու ազնուական ծնողացմէ որ Սպանիայէն անցեր հոն տեղուանքը կը բնակէին։ Սրբութեան կնիքը պզտիկութենէն յայտնի կ'երեւնար Վարդուհւոյն վրայ, ու իր եռանդուն և խելացի հանդարտութեամբը տնեցոյը մեծ ուրախութիւն էր. ծնողացը ազախին աղջկանը հետ խօսքը մէկ ընելով՝ շատ անգամ կ'երթային պարտիզին մէկ անկիւնը կ'առանձնանային աղօթքի ետեւէ ըլլալու համար։ Հոգեսիրութեան պտուղը այն պզտիկութենէն յայտնի տեսնուիլ սկսաւ Վարդուհւոյն վրայ. աշխարհային բերկրութիւններէ զզուանք մը կը զգար, ու ինքնիրեն առաջադրեր էր որ կուսական արբակրօն կենաց ինքզինքը նուիրէ։ Կ'ըսեն թէ ծոմապահութիւններ ալ կ'ընէ եղեր տընեցոցմէ ծածուկ՝ ախորժահամ կերակուր-

ներէ և պտուղներէ ինքզինքը զրկելով. քաշած հիւանդութեանցը տանեն ալ չէ թէ միայն չէր տժգոհար, այլ նաև ուրախութեամբ «Երանի՛ ինծի, կ'ըսէր, որ այս հիւանդութիւններովս՝ Քրիստոսի իմ՝ փրկչիս սիրոյն համար չարչարանք քաշելու արժանի կ'ըլլամ. ափսոս որ քաշածներս՝ գործած մեղքերուս համեմատութեամբը բան մը սեպուելու արժանի չեն»։ Ծնողքը և բարեկամները աղջիկ բերան Վարդուհւոյն բռնած կերպը թեթեւամտութենէ առաջ եկած կարծելով՝ կը նախատէին զինքը ու ծանր խօսքերով կ'արհամարհէին։ Ետքը երբոր տեսան որ իր գործած առաքինութեանցը հիմք հաստատուն բարեպաշտութիւնն ու աստուածսիրութիւնը դրեր է, միտքերնին փոխեցին ու սկսան լաւ համարմունք ստանալ վրան։

Բայց որովհետև մտքերնին դրած էին որ աշխարհք մրտցընեն զինքը, մայրը սկսաւ աղջիկը յորդորել որ այն աշխարհատեցութիւնը մէկդի ձգէ, ու ինքզինքը վայելուչ կերպով հագուիլ կազմուելու տայ. սակայն Վարդուհւոյն սիրտը բոլորովին Յիսուսի նուիրուած ըլլալով՝ անհնարին էր որ աշխարհի հաճոյ ըլլալու մտքով իրեն առած երջանիկ ճամբէն ետ կենար. ուստի արտասուօք մօրը կ'աղաչէր որ չըլլայ թէ իր աղջիկը ծնողացը հրամանին դէմ՝ անհնազանդութիւն ընելու վտանգի մէջ ձգէ։

Վարդուհի տեսնելով որ ծնողքը զինքը հարսնացընելու նորէն ետևէ ինկեր են, ա-

մէն ջանք ընել սկսաւ Լիմա քաղքին մէջ եղած Գլարեան կուսանաց վանքը մտնելու, որ մտքերնէն այն խորհուրդը փարատի․ բայց ուրիշները թող չտուին։

Բայց Աստուած մասնաւոր հրաշքով մը իմացուց սրբուհւոյն թէ վանք մտնելը իրեն հոգւոյն փրկութեանը օգտակար չէ։ Վարդուհի ալ այն ատենը միտքը դրաւ որ սրբոյն կատարինէ սենացւոյն պէս, որուն մասնաւոր ջերմեռանդ էր, տանը մէջ կենայ․ ու անպաճոյճ և կուսական վարքովը աւելի փառաւոր յաղթութիւն մը ընէ՝ աշխարհի և սատանային վրայ։ Ուստի աւելի կերպով սկսաւ ինքզինքը չարչարել՝ անդադար ծոմապահութեամբ և ուրիշ հոգևորական կրթութիւններով․ աղօթասիրութեան զարմանալի եռանդ մը կ'երևնար վրան․ կը պատմեն թէ ինչուան երկու օր երկու գիշեր անդադար աղօթքի հետ եղեր է եկեղեցւոյն մէջ՝ առանց բերանը բան մը դնելու․ հեզութիւնն ալ հիանալի բան մըն էր․ ոչ երբէք եղած էր որ ուրիշի սիրտը կոտրելու համար թեթև խօսք մը զրուցած ըլլայ։

Աղքատաց վրայ ալ մասնաւոր սէր ունենալով, շատ անգամ անոնցմէ շատերը կ'առնէր հետը իրեն տունը կը բերէր, և անոնց ամէն հարկաւոր բաները իր ձեռքովը կը կը հոգար շատ անգամ ալ ուրիշ բարեպաշտ կանանց հետ մէկ ըլլալով՝ քաղքին հիւանդանոցները կ'երթար ծառայելու համար․ և այնպիսի սիրով ու ժրաջան փութով մը կը

կատարէր այն առաքինութիւնները՝ որ ամէնքը վրան կը զարմանային, ու չէին գիտեր թէ ի՛նչ կերպով զինքը գովեն. բայց Վարդուհին իրեն ըրածները բանի մը տեղ չսեպելով «Կը զարմանամ, կ'ըսէր, թէ ինչո՛ւ այնչափ մեծ բան կը սեպեն Քրիստոսի սիրոյն համար կատարած փոքր ծառայութիւնս, երբոր ինքն տէրն տէրանց զիս սիրելուն համար փշով պսակուեցաւ ու հրեից թուքումուրը ընդունեցաւ»։

Բայց սատանան որ ամէն Աստուծոյ ծառայիցը բռնած հոգևոր ճամբուն արգելք ըլլալ կ'ուզէ, Վարդուհւոյն միտքն ալ զանազան փորձութիւններ սկսաւ ձգել. ու մանաւոր կերպով կը ջանար որ Աստուծոյ ողորմութեանը դէմ թերահաւատութիւն ձգէ անոր սրտին մէջ. «Աս բռնած ճամբովդ ալ փրկութեան հասնիլը քեզի համար անկարելի է, կ'ըսէր. մարդս ինչ ալ որ ընէ, Աստուծոյ նախասահմանութեանը դէմ չկրնար դառնալ». բայց Աստուած գթացաւ սրբուհւոյն վրայ, ու հոգևոր հարց իմաստուն առաջնորդութեամբը՝ անոր մտքէն այսպիսի կասկածները փարատեց։ Վարդուհի իր ըրած սոսկալի ծոմապահութիւններն ու կրած ճգնութիւնները բանի տեղ չսեպելով, նոր նոր տանջանքներ կը հնարէր ինքզինքը չարչարելու համար. իր վիշտը միայն այն էր որ ծածկելը անկարելի կ'ըլլար ուրիշներէն։ Որովհետև, ինչպէս որ վերը յիշատակեր ենք, սրբոյն կատարինէ սենացւոյն հետևող ըլլալու

մասնաւոր փափաք մը ունէր, ուզեց որ անոր ըսէ՝ ինքն ալ իրեն համար փշէ պսակ մը շինէ գլուխը դնելու. ասոր թիթեղէ պսակ մը շինեց, ու մէջը երեք կարգ երկըթէ փշեր շարեց, ու գլուխը դրաւ՝ խոստովանահօրմէն գաղտ առանց ուրիշի մը գիտնալուն։ Մէկ օր մը Վարդուհւոյն հայրը բանի մը վրայ շարա- շար տաքցած ըլլալով՝ սրբուհւոյն եղբօրը կը սաստէր. Վարդուհին մէջ մտաւ որ հաշտու- թեան միջնորդ ըլլայ. ան ատեն հայրը մէկդի հրեց զորբուհին. և ձեռքը գլխուն պսակին դպչելով՝ Վարդուհւոյն երեսներէն գետի մը պէս արիւնը վար թափիլ սկսաւ։ Ծնողքը երբոր բանը իմացան, զարմանալնէն ի՛նչ ը- նելիքնին չէին գիտեր. ասոր խոստովանա- հօրը աղաչեցին որ յորդորէ զորբուհին իր անձին վրայ գթալով այնպիսի ճգնութիւն- ներէ ետ կենալու։ Հոգեւոր հօրը դիմաց եր- բոր պսակը դրին՝ պատրեցաւ միայն. սակայն սրբուհւոյն աղաչանացը դէմ դնել չկարենա- լով՝ թող տուաւ որ նորէն գործածէ այն պսակը։

Աստուած ուրիշ նեղութեամբ մըն ալ իւր սիրելի աղախինը փորձել ուզեց։ Այն առա- քինի ու աղօթասէր անձը՝ ատեն անցնելէն ետքը հոգեւորի այնպիսի պաղութիւն մը կը զգար, որ բանէ մը համ չէր առնէր. այս պատճառաւ մեծ այլայլութիւն մը եկաւ Վար- դուհւոյն վրայ. մէկ կողմանէ Աստուծոյ կ՚ա- ղաչէր որ այս պաղութիւնը իր վրայէն վեր- ցընէ, միւս կողմանէ ալ անդադար խորհուրդ

և խրատ կը խնդրէր իր հոգևոր դաստիա-րակներէն այնպիսի անհնարին վիշտէ մը ա-զատելու համար. բայց ճար չէր ըլլար. ին-չուան որ Աստուած ողորմեցաւ իրեն ու սա-ջի եռանգը պարզեց. Վարդուհի յարմար առիթ սեպելով այս բանս ինքզինքը աւելի մեղաւոր և խեղճ համարելու՝ աւելի խստամ-բեր ճգնութեանց ետևէ եղաւ։ Ամէն մէկ խոստովանանք ըլլալուն՝ արցունքի գետեր կը վազէին աչքէն, ինչպէս որ կը պատմեն. վասն զի միտքը հաստատուն դրած էր թէ իրեն պէս մեղաւոր մը անհնարին է որ աշ-խարհիս երեսը գտնուի. թէպէտ և խոստո-վանահայրքը կ'ըսէին թէ այնչափ արդար է, որ արձակման ենթակայ մեղք մը գրեթէ ոչ երբեք գործած է իր բոլոր կենացը մէջ։

Այսպիսի խստակրօն վարքով մը Վարդու-հւոյն առողջութիւնը փճացուիլ սկսաւ. բայց ինքը ամենևին մտիկ չէր ըներ, գիտնալով թէ մարմնոյն տկարանալովը՝ անմահ հոգին փառաւորութեան պիտի հասնի հանդերձեալ աշխարհքին մէջ. «Աստուծոյ սիրոյն համար ամէն տեսակ նեղութիւնները ինծի մեծամեծ ուրախութեանց պատճառ են» կ'ըսէր։

Հիւանդութիւնը օր օրուան վրայ շատ ծան-րացաւ, ետքերը անդամալուծութիւն մ'ալ եկաւ վրան՝ որով տեղէն շարժելու կարողու-թիւն չունէր։ Վարդուհւոյն ուրախութիւնը այն դառն ցաւերուն մէջ անոր վրայ էր՝ որ լեզուն արձակ էր ու անխափան կրնար զԱս-տուած փառաւորել։ Ետքը ընդհանրական

խոստովանանք մը եղաւ մեծաւ եռանդեամբ, ու վերջին օծումն և յետին Թոշակը ընդունեցաւ. անկէ վերջը բոլոր ընտանիքը և ազգականները իր քովը կանչեց, և արտասուօք ներումն խնդրեց իր գործած պակասութեանցը. անանկ որ ամենուն լացը շարժեց։ Անկէ ետքը քանի մը օր ալ ապրելէն վերջը՝ խաղաղութեամբ հոգին աւանդեց յամի 1617, երեսունըմէկ տարեկան հասակին մէջ. և կը պատմեն թէ մեռած վայրկենին՝ սրբակաց անձ մը աչքովը տեսեր է որ Վարդուհին հրեշտակաց բազմութեամբը երկինք կ'ելլէ եղեր։

Լիմացիք երբոր սրբուհւոյն մահը լսեցին՝ ամէնքը մէկէն անոր հօրը տունը վազեցին զինքը վերջին անգամ տեսնելու և սուրբ մարմինը համբուրելու համար. և շատ հիւանդներ անոր բարեխօսութեամբը իրենց ցաւոցը բժշկութիւն ընդունեցան։ Ետքը իրիկուան դէմ Վարդուհւոյն մարմինը մեծ հանդիսով վերցուցին Դոմինիկեանց վանքին եկեղեցւոյն մէջ թաղեցին։ Եւ ինչպէս կենդանութեան ատենը՝ այսպէս ալ մեռնելէն ետքը զանազան հրաշքներով փառաւորեց Աստուած իւր սիրելի աղախինը, ինչպէս որ հաւատարիմ անձանց վկայութեամբն ու հաստատութեամբը ստուգուած է։

# ՍՐԲՈՒՀԻ ՎԵՐՈՆԻՔԱ

իտալիոյ Պինաքոյ ըսուած աւանին մէջ ծնաւ Վերոնիքա՝ յամի տեառն 1445։ Հայրը երկրագործ էր, բայց իր բարեկրօն վարքովը ամենուն սիրելի ու բարի օրինակ եղած էր. աշխատասէր բնաւորութիւն մ՚ալ ունենալով՝ իր Վերոնիքա աղջիկն ամէն օր արտերը կը տանէր աշխատելու համար. որ իր հլու հպատակութեամբը ծնողացը սիրելի և ամէն տեսնողներուն զարմանալուն պատճառ եղեր էր։

Հոգեսէր ալ ըլլալով Վերոնիքա՝ Միլան քաղքին մէջ եղած սրբոյն Մարթայի անունով կուսաստանը առանձնանալ ուզեց՝ իր հոգւոյն փրկութեանը աւելի կերպով մը մտադիր ըլլալու համար։ Աբբաուհին անոր բարեմիտ կերպը տեսնելով՝ զարմացաւ մնաց. բայց որովհետև կարդալ գրել ամենևին չէր գիտէր Վերոնիքա՝ յորդորեց որ վանք մըտնելէն առաջ այն բաները սորվի՝ որպէս զի վանական առանձնութիւնը իրեն զուարճալի ընէ և օգտակար։ Սրբուհին հնազանդելով՝ տուն դարձաւ. և տեսնելով որ առտուընէ ինչուան իրիկուն աշխատութեան ետևէ ըլլալով՝

կարդալու ժամանակ չկրնար գտնել՝ գիշերուան քունը կը զոհէր սորվելու համար։ Բայց ետքը վախնալով որ չըլլայ թէ ուսումը փոխանակ իրեն հոգւոյն փրկութեանը օգտակար ըլլալու՝ վնասու պատճառ ըլլայ, բոլորովին ետ կեցաւ այն ջանքէն, ու դնաց սրբոյն Մարթայի կուսաստանը, և աշխատաւոր մայրապետներէն եղաւ։ Հոն իր կեանքը երկու բանի նուիրեր էր Վերոնիքա, հոգևորի և վանքին ծառայութիւններուն հետևէ ըլլալու. և որովհետև խիստ աղքատ էին այն կուսանքը, և հարկ էր որ բարեպաշտից ողորմութեամբը իրենց ապրուստը գտնեն, Վերոնիքա ամէն օր դըռնէ դուռ կը պտըտէր մուրալու համար։

Վանք մտնելէն իրեք տարի ետքը հիւանդութիւն մը եկաւ սրբուհւոյն վրայ. բայց ինքը անխափան իր պարտքերը կը կատարէր առանց ինքզինքը մտածելու. ու երբոր ուրիշները վրան խղճալով կը յորդորէին որ աշխատանքը պակսեցընէ, Վերոնիքա պատասխան կուտար, թէ «Աշխատանքէ փախչիլը ամօթ է ինծի պէս ուժեղ և առողջ աղջկան մը համար»։

Քսան տարի ամենուն բարի օրինակ ըլլալով՝ իր կեանքը անցուց սրբուհին, և թէպէտ զանազան տեսլեանց ու յայտնութեանց արժանի կ'ըլլար, բայց իր խոնարհամտութեամբը ինքզինքը բանի տեղ չսեպելով՝ ամենևին ձայն չէր հանէր. և շատ կը վշտանար երբոր կ'իմանար թէ ուրիշները զինքը բանի մը

տեղ դրեր ու մեծ համարմունք ունէին վրան։ Պահք բռնելու ալ մասնաւոր ջերմեռանդութիւն մը ունէր Վերոնիկա. և շատ օր ալ բոլորովին ծոմ կը կենար։

Անգամ մը Հռոմայ քաղաքը գնաց Վերոնիկա, և իր բարի օրինակովը շատ մեղաւորաց առ Աստուած դառնալուն պատճառ եղաւ. անկէ Միլան անցաւ, և հոն տեղի կուսանաց վանքերուն ալ մեծամեծ հոգևոր պտուղներ ըրաւ իր առաքինի վարքովը և հոգեշարժ խրատներովը. նոյնպէս Բարմա, Ֆլորենտիա և Հռոմ քաղաքներն ալ երթալով առաքինական քաջութիւններ գործեց։

Վերոնիկա աստուածային յայտնութեանց և տեսլեանց ալ արժանի եղաւ. բայց ինքզինքը արժանի չսեպելով՝ շատ կը վախնար որ չըլլայ թէ դիւական փորձութիւններ ըլլան այն տեսիլքները. ուստի կ՚ուզէր անապատ մը առանձնանալ և հոն քաշուիլ ճգնութեան և աշխարհի հետ վերաբերութիւն մը չունենալու համար. բայց Աստուած հրեշտակի ձեռքով իմացուց իրեն թէ անապատը առանձնանալը իրեն հոգւոյն օգտակար չէ, ու յորդորեց որ բռնած աստուածահաճոյ ճամբուն մէջ հաստատուն մնայ։ Բայց սատանան նախանձելով անոր առաքինասէր ճգնութեանը վրայ, սկսաւ փորձութիւններով նեղել զինքը, ու երբոր տեսաւ որ Վերոնիկա իրեն կերպով մը տեղիք չտալէն զատ՝ աւելի ալ զինքը կ՚ամըչցընէ, մարմինը չարչարել սկսաւ. ու ինչպէս հաւատարիմ անձինք կը վկայեն,

շատ անգամ Վերոնիկային կ'երևնար ու նախատական խօսքերով զինքը արհամարհելէն ետքը՝ ինչուան սրբուհւոյն ծեծ ալ կը քաշէր։ Կոյսը հաստատութեամբ միտքը դրած ըլլալով թէ իր մեղացն համար է որ Աստուած թող կուտայ որ այս փորձանքներն իր վրայ հասնին, հեզութեամբ կը համբերէր, ու կը խնդրէր որ ողորմի Աստուած իր խեղճութեանը։

Այսպիսի զարմանալի վարքով մը իր կենացը օրերը անցընելով՝ ատենը եկաւ որ բոլորովին աշխարհքէս զատուի, և երթայ իւր փրկչին հետ միանայ, ուստի կամաց կամաց մարմինը տկարանալով՝ հիւանդացաւ և անկողին ինկաւ. ու ամէն հոգևոր պատրաստութիւնները մեծ եռանդեամբ ընդունելով՝ խաղաղութեամբ իր երջանիկ հոգին աւանդեց յամի տեառն 1497, յունուար ամսուն տասուիրեքին։ Կուսանքը լալով ողբալով իր մարմինը առին՝ եկեղեցւոյն մէջ հինգ օր անթաղ թողուցին որ բարեպաշտ հաւատացեալք կարենան իր սուրբ մարմինը համբուրելու. ետքը փառաւոր հանդիսով թաղեցին զինքը, և շատ հրաշքներ տեսնուեցան իրեն բարեխօսութեամբը։



# ՍՐԲՈՒՀԻ ՓԻԼՈՄԵՆԱ

վերջի ատեններուս մէջ հանդիպած Աստուծոյ մեծամեծ հրաշքներէն մէկն ալ սրբուհւոյն Փիլոմենայի մարմնոյն գտնուիլը սեպելու է. որ զարմանալի հրաշքով մը մահուընէն հազար հինգ հարիւր տարի վերջը՝ անզուգական գանձ մը յայտնուեցաւ բոլոր ջերմեռանդ հաւատացելոց և, իրեն բարեխօսութեամբը մեծամեծ օգուտներ տեսնուեցան ամէն տեղ։ Իսկ մարմնոյն գիւտը այս կերպով եղաւ կ'ըսեն։ Հռովմ քաղքին մէջ սովորութիւն կայ որ տարուէ տարի բարեպաշտ հաւատացեալք սուրբ մարտիրոսաց գետնադամբանները այցելութեան կ'երթան մեծ հանդիսով և տօնախմբութեամբ։ 1802ին մայիս ամսուն քսանըհինգերորդ օրը սրբուհւոյն Պրիսկիղեայ ըսուած գետնադամբանները գնացած ըլլալով, մեծ գերեզմանաքար մը գտան, որ ինչուան այն ատենը ոչ ոք տեսած էր. քարին վրայ ալ զանազան նշաններ կային, որոնցմով հին ատենի հաւատացեալք կուսութիւն և մարտիրոսութիւն կ'իմանային. այսպիսի տապանագիր մըն ալ կար վրան լատին գրերով. ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ ԸՆԴ ՔԵԶ ՓԻԼՈՄԵՆԱ. ԵՂԻՑԻ ԵՂԻՑԻ։

Երբոր գերեզմանաքարը տեղէն վերուցին, սուրբ նահատակին ոսկորներն երևնալ սկըսան, քովն ալ կոտրտած անօթ մը կար, ու մէջը ցամքած արեան նշաններ. որով յայտնի էր թէ մարտիրոսութեամբ կնքուած պիտի ըլլայ Ֆիլոմենա. վասն զի հին ատենի հաւատացեալք սովորութիւն ունէին որ մարտիրոսաց և վկայուհեաց թաղման ատենը՝ իրենց արիւնն ալ ամանի մը մէջ ամփոփելով՝ հետերնին կը թաղէին։ Երբոր զարմանքով մը սրբուհւոյն արեան կաթիլները ազնիւ սափորի մը մէջ կը դնէին քրիստոնեայք, տեսան որ ամէն մէկ կաթիլը սափորի մէջ վազելու ատենը ոմանք ոսկւոյ, ոմանք արծաթի, ոմանք ադամանդի և զմրուխտի, և ուրիշ ազնիւ քարերու կը դառնային՝ ծիածանի գոյն առնելով։ Եւ հաւատարիմ ականատես անձինք կը պատմեն թէ մինչուան հիմա՝ այն պատուական սափորի մէջէն նոյն գոյները կը ցոլանան սրբուհւոյն արեան կաթիլներէն։

Սրբուհւոյն Ֆիլոմենայի մարտիրոսութեան պատմութիւնը որոշ չգիտցուիր, բայց ինչպէս որ վերը յիշատակեցինք, իրեն գերեզմանաքարին վրայի եղած նշաններէն գուշակուած էին վկայագիրք անոր նահատակութեան պատմութիւնը։

Գերեզմանաքարին վրայ փորուած առաջին խորհրդաւոր նշանը՝ նաւու խարիսխ մըն է, որ ոչ միայն յուսոյ նշան է, այլ նաև հեթանոսաց հնարած տանջանք մըն էր՝ քրիս-

տոնեայքը նահատակելու համար, ինչպէս որ Տրայիանոս կայսրը սուրբ Կղեմէս պապը նահատակել ուզելով՝ հրամայեց, որ նաւու խարիսխ մը կապեն ոտքին, ու ծովը ձգեն։

Երկրորդ խորհրդաւոր նշանը նետ մըն էր, որով դարձեալ հեթանոսք՝ քրիստոնեայքը կը նահատակէին. ինչպէս որ սրբոյն Սեբաստիանոսի պատմութենէն յայտնի է։ Իսկ երրորդ խորհրդաւոր նշանը արմաւենւոյ մը ոստ էր, որով սրբուհւոյն հեթանոսաց դէմ ցըցուցած յաղթութիւնը կ՚իմացուի. ասկէ զատ խարազան մը փորագրած է՝ որով կռապաշտք քրիստոնեայքը կը ծեծէին։ Դարձեալ ուրիշ երկու նետեր ալ կը տեսնուին, և մէկ շուշան ծաղիկ մը, որ ինչպէս հիմա՝ նոյնպէս ալ հնոց մէջ անմեղութեան և կուսութեան նշան կը սեպուէր։ Այս ամէն նշաններով յայտնի կը տեսնուէր թէ սրբուհին Փիլոմենա վկայական մահուամբ ելեր է այս աշխարհէս։

Հիմա տեսնենք աստուածային յայտնութեանց գլխաւորներն որ այս սրբուհւոյն նահատակութիւնը ամենուն հռչակելու համար հաճեցաւ Աստուած զանազան անձանց յայտնել մի և նոյն ժամանակի մէջ. ասոնցմէ մէկը բարեպաշտ արհեստաւոր մըն էր, և երկրորդը սրբակաց կոյս մը։ Արհեստաւորին եղած յայտնութիւնը այս կերպով էր. «Տեսլեանս մէջ յափշտակուելով՝ Դիոկղետիանոս կայսրը տեսայ, կ՚ըսէր, որ անկարգ սիրով մը կուրցած՝ սրբուհին Փիլոմենա իրեն հարս կ՚ուզէր

առնուլ. երբոր տեսաւ թէ անիկա իր սէրը կ'արհամարհէ, սկսաւ պատիժներ սպառնալ. և մէկ կողմանէ ալ մեծամեծ խոստմունքներով՝ անոր սիրտը որսալու կը նայէր. բայց Ֆիլոմենա երբոր անոր կամացը տեղիք տալու դոյզն նշան մ'ալ չցուցընելէն զատ, կուսութիւնը անարատ պահելու համար ինչուան մեռնիլն ալ յանձն առնուլ կ'ուզէր, Դիոկղետիանոս կրակ կտրեցաւ, և սաստիկ տանջանքներով չարչարել տալէն ետքը՝ գլուխը կտրել հրամայեց»:

Երկրորդ՝ և աւելի մանրամասն յայտնութիւնը, Նէապօլսոյ վանքերուն մէկին մէջի միանձնուհւոյ մը եղած է հետևեալ կերպով:

Աս կոյսը սրբուհւոյն Ֆիլոմենայի բարեխօսութեամբը մեծամեծ շնորհքներ ընդունած էր Աստուծմէ. և հաւատարիմ անձինք կը վկայեն թէ շատ անգամ կ'երևնայ եղեր ասոր սրբուհին և հոգևորական ճամբուն մէջ անխոտոր առաջնորդելու համար պէտք եղած խրատներն ու ազդարարութիւնները կը ծանուցանէր անոր: Միանձնուհին ջերմեռանդաստուածպաշտութենէն աւելի հեզահոգի խոնարհութիւն մ'ալ ունենալով՝ սկսաւ վախնալ որ չըլլայ թէ իր աստուածային յայտնութիւն կարծածները սատանայի խաբէութիւններ ըլլան, անոր համար արտասուօք կը խնդրէր Աստուծմէ որ անոնց ի՛նչ ըլլալը իրեն իմացընէ:

Միանձնուհւոյն խուցը Ֆիլոմենայի պղտի արձանը կար, և կուսանք այն արձանին ե-

բեմին վրայ ատեն ատեն զարմանալի փոփոխութիւններ տեսնելով՝ առին իրենց եկեղեցւոյն մէջի խորաններուն մէկուն վրայ դրին, և տարուէ տարի մեծ հանդիսով անոր տօնը կը կատարէին։ Միանձնուհին ամէն անգամ՝ հաղորդութեան սուրբ խորհուրդը ընդունելէն ետքը կ'երթար այն արձանին դիմացը գոհութեան աղօթքը կատարելու համար. մէկ անգամ՝ մ'ալ սաստիկ փափաք մը եկաւ ասոր Ֆիլոմենայի մարտիրոսութեան ճիշդ ատենը իմանալ. մէյ մ'ալ առանց իրեն իմանալուն աչուըները գոցուեցան ու վրան թըմրութիւն գալով անոյշ ձայն մը լսեց արձանին դրուած տեղէն. «Օգոստոս ամսուն տասներորդ օրը, կ'ըսէր, եղաւ իմ յաղթողական նահատակութիւնս»։ Միանձնուհին երբոր այս ձայնը լսեց՝ սկսաւ վախնալ որ չըլլայ թէ խաբէութիւն մը գտնուի ասոր մէջ ալ. ուստի իրեն հոգևոր հօրը առանձին ծանուցանելով այս յայտնութիւնները՝ իր միտքին տարակոյսն ալ բացաւ անոր, և արտասուօք կ'աղաչէր որոշակի կերպով մը իր սիրտը հանդչեցընել։ Հոգևոր հայրը անոր ամէն պատմածները պէտք եղածին պէս քննելով՝ իմացաւ թէ աստուածային յայտնութիւն է միանձնուհւոյն եղածը, և քաջալերելով յորդորեց որ սրբոյն Ֆիլոմենայի մեծագոյն փառացը համար Աստուծմէ խնդրէ որ անոր նահատակութեան կերպն ալ յայտնէ իրեն։ Խոնարհութեամբ հնազանդեցաւ միանձնուհին, ու երբոր մէկ օր մը իր սենեկին մէջ

քաշուած՝ առանձին կ'աղօթէր՝ դարձեալ վրան թմրութիւն մը եկաւ, և այն առջի ձայնը լսեց՝ որ եկեղեցւոյն մէջ իրեն հետ խօսեցաւ: «Ես, կ'ըսէր, Յունաց աշխարհին տիրող իշխաններուն մէկուն աղջիկն եմ: Մայրս ալ թագաւորական տոհմէն է. և որովհետև զաւակ չունէին, իրենց սուտ աստուածներէն կը խնդրէին որ հաճին որդի մը պարգևել իրենց: Հօրս արքունեացը մէջ քրիստոնեայ բժիշկ մը կար Պոբղիոս անունով. ասիկայ իմ ծնողացս սրտին ցաւը տեսնելով՝ սկսաւ յորդորել զիրենք որ թողուն կռապաշտութիւնը և քրիստոնէական սուրբ կրօնքը ընդունին. «Կրնայ ըլլալ որ, կ'ըսէր, այն պատճառաւ Աստուած ձեր խնդրուածոցը լսէ.»: Աստուծոյ շնորհքը ծնողացս միտքը լուսաւորեց, դարձան քրիստոնեայ եղան. և ինչպէս որ Պոբղիոս առաջուց կը գուշակէր, Աստուած պարգևեց զիս ծնողացս: Տասուերեք տարուան եղած ատենս ծնողացս հետ հարկաւոր բանի մը համար Հռովմ քաղաքը գնացի, և Դիոկղետիանոս կայսեր ներկայացայ: Կայսրը զիս որ տեսաւ, աչքը վրաս մնաց. ուստի հօրմէս խնդրեց որ զիս իրեն հարսնացընէ: Հայրս մեկէն հաճութիւն ցըցուց, թէ ինծի և թէ իրեն համար մեծ պատիւ սեպելով այս բանս: Տուն որ դարձանք, մօրս հետ խօսքը մէկ ըրին, և սկսան յորդորել զիս որ դէմ չդառնամ՝ իրենց կամացը՝ կայսեր հարսնանալու համար: Զարմանալով մը դարձայ իրենց հարցուցի. «Ի՞նչ.

կ՚ուզէ՞ք, ըսի, որ մարդու մը սէրը չարհա-
մարհելու համար՝ Տիտոսի աչքը ոտքի տակ առնում՝. մի՛թէ չէ՞ք գիտեր թէ ինչպէս անարատ կուսութիւն ուխտեր եմ։ — Դուն պզտիկ էիր ան ատենը, պատասխանեց հայրս. անոր համար այն ատենուան ուխտդ բանի չգար. միտքդ բեր թէ ինչ մեծամեծ նեղութիւններ պիտի քաշենք մենք ալ դուն ալ՝ թէ որ կայսեր կամքը չկատարենք»։ Բայց ես Աստուծոյ շնորհքովը զօրացած դէմ կեցայ անոնց խօսքերուն։

Մայրս տեսնելով որ հօրս խօսքը մտիկ չըրի, լալով ողբալով քովս եկաւ ու կ՚աղաչէր որ հնազանդիմ իրենց. ոտքս ինկաւ, «Խեղճ ծնողացդ վրայ գթա՛» ըսելով կը պաղատէր. բայց ես դարձեալ դէմ կեցայ. «Կուսութեամբ ինքզինքս Աստուծոյ նուիրեր եմ, ըսի. անհնարին է որ երկրաւոր արքայութիւնը անմահին հետ փոխանակեմ»։ Աս խօսքս որ լսեց մայրս, տրտմութենէն յուսահատութեան մէջ ինկաւ, և հօրս հետ մէկտեղ առին զիս կայսեր դիմացը հանեցին։ Դիոկղետիանոս շատ ջանաց որ սպառնալեօք և խոստմամբք զիս համոզէ. բայց երբոր տեսաւ որ մտիկ ընելս անկարելի է, բարկութենէն կրակ կտրեցաւ, ու հրամայեց որ առնեն բանտը դնեն զիս. և միտքը դրած ըլլալով՝ թէ իր տանջանքներովը պիտի կարենայ իմ մտացս հաստատութիւնը յաղթել, ամէն օր կուգար զիս տեսնելու, և փորձ չէր մնար որ չփորձէր՝ որ կուսութենէս ետ կե-

նամ. բայց ես Աստուծոյ շնորհքովը դէմ կեցայ անոնց խօսքերուն։ Երեսունըեօթը օր բանտը կենալէն ետքը՝ գիշեր մը Աստուածածին սուրբ կոյսը ինծի երևցաւ ու քաջալերով ըսաւ, թէ իրեք օրէն ետքը ամէն նեղութիւնները պիտի դադրին, ու երկնից արքայութեան պիտի արժանի ըլլամ։ Եւ յիրաւի, Դիոկղետիանոս կայսրը տեսնելով որ ես մտքիս վրայ հաստատուն կեցեր եմ, ուզեց որ հրապարակաւ զիս չարչարէ. ուստի նախ հրամայեց որ ձաղկեն զիս. ետքը մերկացընել տուաւ, ու սեան մը կապել տալով՝ քաղքին ազնուականաց դիմացը այնչափ ծեծել տուաւ որ մարմինս արիւնլուայ եղաւ։ Դիոկղետիանոս տեսնելով որ սաստիկ ցաւէն մեռելի պէս ընկայ մնացի, շուտով մը բանտ դնել տուաւ, կարծելով թէ հոնտեղը պիտի մեռնիմ։ Բանտն որ մտայ՝ երկու հրեշտակ երևցան ինծի, և իմ վէրքերուս վրայ առողջարար դեղ մը դնելով՝ բոլոր վէրքերս բժըշկուեցան ու իմ կատարեալ առողջութիւնս ստացայ։ Դիոկղետիանոս կայսրը երբոր այս բանս լսեց, իր առջևը կանչել տուաւ ու զարմացաւ մնաց. և սկսաւ զիս համոզել թէ Արամազդ աստուածոց հայրը իմ խեղճութեանս վրայ գթալով՝ ինծի բժշկութիւն պարգևած ըլլայ, որպէս զի Հռովմայ տիկին և իշխանուհի ըլլամ. ու սկսաւ նորէն մեծամեծ խոստմունքներով յորդորել զիս որ հաւանիմ իրեն ու սէրը չմերժեմ։ Բայց երբոր տեսաւ թէ իրեն մտիկ ընելու կամք չունիմ, հրա-

մայեց որ Նաւու խարիսխ մը կապեն վրան ու անով Տիբերիս գետը ձգեն։ Երբոր Թագաւորին պաշտօնեայքը առին զիս գետը նետել կ'ուզէին, երկընքէն երկու հրեշտակ հասան ու խարսխին չուանը կտրելով՝ զիս ալ անթիւ ժողովրդեան առջևը՝ ցամաք հանեցին։

Տեսնողներէն շատը այս զարմանալի հրաշքը տեսնելով՝ դարձան քրիստոնեայ եղան. բայց Դիոկղետիանոս կայսրը կարծելով թէ կախարդութիւն է ըրածս, հրամայեց որ Հռոմ քաղքէն դուրս հանեն զիս, ու նետերով խոցոտեն ու սպաննեն։ Այս հրամանը կատարելու ատեն՝ արիւնը գետի պէս մարմնոյս չորս կողմէն կը վազէր, ու գրեթէ կենդանական զօրութիւն վրաս չէր մնացած՝ երբոր գթալով առին բանտը տարին զիս։ Բայց Աստուծոյ օգնութիւնը նորէն ինծի հասաւ. վասն զի բանտին մէջ անոյշ քուն մը եկաւ վրաս, ու արթննալէս ետքը տեսայ որ բոլորովին բժշկուեր էի։ Դիոկղետիանոս այս բանս որ լսեց՝ բարկութենէն կրակ կտրելով պատուիրեց որ դարձեալ սուր նետերով զիս խոցոտեն. բայց խաբուեցաւ. վասն զի պաշտօնեայքը թէպէտ և ամէն ուժերնին կը թափէին՝ բայց սլաքը նետէն չէր բաժնուէր։ կայսրը այս բանս տեսնելով՝ ինչ ընելիքը չէր գիտէր. հրամայեց որ սլաքները կրակի մէջ ձգելով տաքցընեն՝ ու այնպէս իմ վրաս պարպեն. բայց դարձեալ ջանքերնին փուճը ելաւ. վասն զի ինծի կերպով մը վնասել չկրնալէն զատ՝ պաշտօնէիցմէ շատը մեռան, շատերն

ալ. դարձան քրիստոնեայ եղան. ուրիշներն ալ, Դիոկղետիանոսը մեղադրել սկսան իրենց դէմ ցուցըրած անգթութեանը համար. Կայսրը վախցաւ որ չըլլայ թէ իր պատճառաւ իւրեն գլուխը ցաւի, ուստի մէկէն պատուիրեց, որ գլուխս կտրեն։ Այս կերպով երկրաւոր ունայնութիւններէն ազատեցաւ իմ հոգիս, ու գնաց երկինքը անմահ փեսայիս հետ միանալու»։

Այս յայտնութիւններովն է ահաւասիկ որ հաւատացեալք Փիլոմենայի վարքն ու նահատակութեան պատմութիւնը իմացան։

Անկէ ետքը հանդիսով առին սրբուհւոյն մարմինը Պրիսկիլեայ գերեզմանէն հանեցին ու Մունեանոյ բերած տեղը փոխադրեցին, ուսկից շատ հրաշքներ տեսան ամէն հաւատացեալք, և Փիլոմենայի անունը և զօրաւոր բարեխօսութիւնը աշխարհքիս չորս կողմը քիչ ատենուան մէջ լսուեցաւ։ Իրեն բարեխօսութեամբը եղած հրաշքները այնչափ շատ են՝ որ հատորներով հրատարակեր են Եւրոպայի ամէն ազգերը։ Բայց մենք հոստեղս իր մէկ քանի հրաշքները պատմելով գոհ ըլլանք։

1831ին Նափոլի քաղքին մէջ խեղճ ու աղքատ կին մը կար՝ որ իր ցաւագարութեանը առողջութիւն գտնելու համար՝ տանը մէջ եղած սրբուհւոյն Փիլոմենայի պատկերին առջևը կանթեղ մը կը վառէր։ Մէկ օր մը տունը տնէն եղը պակսեցաւ, և որովհետև գնելու համար հարկաւոր եղած ստակն ալ չունէր,

պարզմտութեամբ մը սրբուհւոյն իր կարօտութիւնը յայտնելով՝ դրացիին տանը գնայ անոր ճրագին լուսովը աշխատանքի նստէ չըլլալու համար։ Գիշերը ուշ ատեն տունը դառնալով զարմացաւ. Ինչու երբոր տեսաւ որ տանը լապտերը վառուած և մէջը լեցուն եղ էր։ Մէկէն զգաց իր դրացիները կանչեց, ու սկսաւ պատմել անոնց Ֆիլոմենայի զօրաւոր բարեխօսութեամբ եղած հրաշքը։ Բայց իր ցաւոցը վրայ դեռ ամենևին տարբերութիւն մը չէր եղած, և տղաբերքի ատենն ալ հասած ըլլալով՝ խեղճը մահուան դուռը մօտեցեր էր։ Կինը Ֆիլոմենայի պատկերը ձեռքն առնելով՝ արտասուօք կը խընդրէր իրմէ որ խնայէ իր խեղճութեանը ու աս ցաւէն զինքը ազատէ։ Երբոր այսպիսի խօսքերով սրբուհւոյն դիմացը խեղճ կը թափէր՝ ծնաւ որդին, բայց մեռած էր։ Մայրը այս բանս տեսնելով՝ սիրտը դառնացաւ, ու հրամայեց որ մէկէն իր տանը մէջէն վերցընեն Ֆիլոմենայի պատկերը. «Չէի կարծեր, կ'ըսէր, թէ այսպիսի գեղեցիկ փոխարէն մը պիտի ընէ իմ ջերմեռանդութեանս և անդադար աղաչանքիս»։ Մէկէն նոյն ատենը մեռելին դիակը իր տեղէն շարժիլ սկսաւ, ու երբոր ամէնքը զարմանալով վրան կը նայէին, սկսաւ ճըւալ։ Այն ատենը ամէն հոն գտնուողները զարմանալնէն ի՛նչ ընելիքնին չգիտնալով՝ տըղան մկրտեցին, որ երեսունըհինգ օրուընէ ետքը մեռաւ։ Աս հրաշքին լուրը բոլոր Նէապոլսոյ մէջ տարածուեցաւ,

ու Փիլոմենայի անունը շատ պայծառացաւ։

Սրբուհւոյն Փիլոմենայի ջերմեռանդ ծնողք մը՝ տասնըմէկ ամսուան աղջիկ մը ունէին, և մէկ հատիկ զաւկընին ըլլալով վրան կը գուրգուրային։ Մէկ օր մը այս աղջիկը իրենց տանը չափաւոր բարձրութեամբ պատուհանէն վար ընկաւ։ Խեղճ մայրը երբոր այս ցաւալի դիպուածը տեսաւ՝ շփոթութենէն ինչ ընելիքը չգիտնալով աղաղակեց. «Սրբուհի Փիլոմենա, քուկդ էր այս աղջիկը». այս ըսաւ, ու մէկէն տանը դռնէն դուրս վազելով՝ տեսաւ որ սրբուհւոյն բարեխօսութեամբը՝ իր տղուն պզտի վնաս մըն ալ չէր եղած։



# ԱԲԴԼՄՍԵՀ ՎԿԱՅ

Պարսկաստանի Շիգար քաղաքին մէջ Ղևի անունով մեծատուն Հրէայ մը կար Քրիստոսի վեցերորդ դարուն առենները, հարուստ ու ազնուական և Պարսից նախարարացը սիրելի։ Շատ զաւկըներ ունէր Ղևի, բայց անոնց մէջ Ասեր անունով պզտի որդին ամենէն աւելի սիրելի էր իր հօրը՝ ունեցած ազնիւ կատարելութեանցը համար։ Երբոր քիչ մը տարիքը առաւ Ասեր, հայրը յանձնեց անոր որ իր ոչխարները արածէ. և այն միջոցաւը Աստուած զարմանալի կերպով մը այս ազնիւ տղան քրիստոնական կրօնից աշակերտեց։

Շիգար քաղքին մէջ եղած Պարսից մոգերուն և քրիստոնէից տղաքն ալ՝ Ասերայ հետ իրենց հօրը ոչխարները կ'արածէին. ու երբոր կերակրոյ առենը կը հասնէր՝ կռապաշտից որդիքը զատ՝ քրիստոնեայքն ալ առանձին՝ կը նստէին ուրախութեամբ կերակուրնին ուտելու։ Ասերայ սիրտը կոտր կոտր կ'ըլլար երբոր ինքզինքը զրկուած կը տեսնէր այնպիսի ընկերութենէ ու մինակ մնացած. վասն զի իրմէ զատ ուրիշ Հրէին

տղաք չկային որ անոնց հետ ինքն ալ ուրախանար։ Քրիստոնեայ տղոց ազնիւ կենցաղավարութիւնը տեսնելով՝ կը փափաքէր որ ինքն ալ անոնց մէջ խառնուի. բայց չէր համարձակէր, գիտնալով որ քրիստոնեայք Հըրէաներէն կը գարշին։ Խեղճ Աբելը տխուր մտածմունքներով ու աչքին արցունքովը մէկդի քաշուած իր կերակուրը կ'ուտէր, երբոր ուրիշները խնդալով կ'ուրախանային։ Համարձակեցաւ օր մը, ու քրիստոնեայ տղոց մօտենալով «Խնդրեմ, ըսաւ, ինչո՞ւ համար ինծմէ հեռու կը քալէք, ու չէք ուզեր որ ես ալ ձեզի հետ մէկտեղ ուտեմ և ուրախանամ»։ Հովիւները դարձան, «Սիրեցեալ եղբայր, ըսին իրեն, ինչպէս որ գիտես՝ Հրէայք թշնամի են քրիստոնէից, և մեզի ալ արգիլուած է ձեզի հետ հաղորդութիւն ընելը. բայց մեր մէջը խառնուիլ որ ըսիր, ատոր մի միայն ճամբան սուրբ մկրտութիւնն է. ինչուան որ ջրով չմկրտուիս, ու Հոգւոյն սրբոյ շնորհքը չընդունիս, մեր հետն ամենևին միաբանութիւն չես կրնար ունենալ»։ Աբելայ սիրտը անպատում ուրախութեամբ լեցուելով, «Ահաւասիկ ջուրն ալ քովերնիս է, ըսաւ, ինչո՞ւ համար կ'ուշանաք ու զիս չէք մկրտեր. ես բոլորով սրտիւ պատրաստ եմ ձեր հաւատքը ընդունելու»։ Բարեսիրտ տըղաքը իրենց անմեղ հովուակցին թափած արցունքները, և Քրիստոսի վրայ ցուցըցած սէրը տեսնելով՝ շատ ուրախացան. «Քրիստոս մեր փրկիչն է, ըսին, որ այս փրկարար

խորհուրդը քու միտքդ ձգեց, սիրեցեալ եղբայր. ինքն է որ զքեզ կ'ուզէ իր անվախճան փառացը հաղորդ ընել. ուստի պէտք է որ քահանայի մը երթաս, ըսին, ու իրմէ մկըրտուիս. վասն զի մենք չենք կրնար մատակարար ըլլալ այն սուրբ խորհրդոյն»։ Ասեր իր ընկերակցացը ոտքը իյնելով՝ արտասուօք կը պաղատէր. «Կ'աղաչեմ, կ'ըսէր, զիս ձեր քովէն մի' հեռացընէք. հայրս մովսիսական կրօնից սաստիկ նախանձայոյզ ըլլալուն՝ կը վախեմ որ չըլլայ թէ զիս չարաչար պատժէ՝ երբոր քահանայի քով երթալս իմանայ»։ Հովիւները Ասերայ հաւատքը և եռանդուն սիրտը տեսնելով, դաշտին մէջը եղած ջրհորին աւազանին մէջ զինքը իջեցուցին, ու աղօթք ընելով Աստուծոյ որ ընդունի իրենց կատարած խորհուրդը, մկրտեցին զինքը ու Աբդլմսեհ անուն դրին, որ Քրիստոսի ծառայ ըսել է. ու երբոր մկրտութեան աւազանէն դուրս հանեցին, մէկիկ մէկիկ ամէնքն ալ պագտուեցան հետը, ու իրենց նոր զգեստները անոր հագցընելով՝ ուրախութեամբ մէկտեղ կերակուրի նստան, շնորհակալ ըլլալով Աստուծոյ որ հաճեցաւ իրենց ընկերութեանը մէջ խառնել՝ Ասերայ պէս հրեշտակային պատանին. ու սկսան խրատել զինքը որ Հրէաներէն հեռու կենայ, և զգուշանայ որ չըլլայ թէ սուրբ մկրտութեամբ ստացած մաքրութիւնը նորէն կորսընցընէ. Աբդլմսեհ ալ խոստացաւ իրենց որ Քրիստոսի սուրբ շնորհքովը հաստատուն պիտի կենայ իր առաջա-

դրութեանը մէջ։ Քրիստոնեայ տղաքը Արդըլմեճի Քրիստոսի ծառայ ըլլալը արտաքին նշանով մըն ալ ցուցընել ուզելով, ականջին բլթակը ծակեցին, ու իրենցմէ մէկուն գինդը անոր ականջը անցուցին։

Գիշերն որ վրայ հասաւ, Արդըլմեճ առաւ իր հօրն ոչխարները, և ուրախութեամբ տուն դարձաւ. բայց մայրը իր որդւոյն ականջէն գինդ մը կախուած տեսնելով՝ շատ այլայլեցաւ. «Որդեակ իմ, ըսաւ, գլխընուս ի՛նչ ձիւն բերիր. ինչո՛ւ համար ինքզինքդ ծառայ ըրիր, Մովսիսի տուած հրամանին դէմ ականջդ ծակել տալով»։ Արդըլմեճ մօրը այլայլած սիրտը հանդարտեցընելով, «Մարդկային ծառայութեան նշան չէ, ըսաւ, մայր իմ, վրաս տեսած նշանդ, այլ Քրիստոսի փրկչին՝ որուն որ ես այսօր հաւատացի, սէրն է որ զիս այս բանիս յորդորեց»։ Մայրը տղուն քրիստոնեայ ըլլալը լսելով՝ ալ աւելի շփոթեցաւ. բայց հանճարեղ տղան կարգաւ պատմեց իրեն՝ ամէն գլխէն անցած բաները, և իր ընկերակիցներէն լսած հաւատոյ վարդապետութիւնը անոր առջևը դրաւ. Աստուծոյ շնորհքը Արդըլմեճի մայրն ալ լուսաւորեց, որ մէկէն ճանչցաւ տղուն զրուցած խօսքերուն ճշմարտութիւնը. բայց իր էրկանը կատաղութենէն վախնալով որ չըլլայ թէ Արդըլմեճի գլխուն փորձանք մը բերէ, երեսուն օր առաւ տանը մէջ պահեց զինքը, առանձին տեղ մը հօրմէն ծածուկ։ Իսկ Ասեր ամէն օր կանուխ իր ընկերակցացը քովը

կ'երթար, սուրբ հաւատոյ խորհուրդները կը սորվէր, մարտիրոսաց նահատակութիւնը կը լսէր, ու իր Քրիստոսի վրայ ունեցած սէրը օր օրուան վրայ աւելի բորբոքելով՝ գիշերը տուն կը դառնար ու մօրը կը պատմէր։

Գիշեր մը երբոր այս անմեղ հրեշտակը քուն կ'ըլլար. տեսիլք տեսաւ որ մութ տեղ մը ձգեր էին զինքը, ուր շատ չարագործաց հետ տանջանք կը քաշէր։ Աբդլմսեհ այն դառն նեղութեանը մէջ ուրիշ օգնութիւն չկրնալով գտնել, քրիստոնէից Աստուծոյն ցաւագին արցունքով պաղատիլ սկսաւ որ վրայ հասնի և այն վշտերէն փրկէ զինքը։ Եւ յիրաւի, տեսաւ որ լուսաւոր երիտասարդ մը գուբը իջաւ, ու Աբդլմսեհի ձեռքէն բռնելով՝ դուրս քաշեց զինքը այն տանջանաց տեղէն, և տարաւ ուրիշ երանելեաց խմբին մէջ խառնեց, պատուիրելով որ անոնց հետ զԱստուած փառաբանէ։ Աբդլմսեհ դարձաւ այն երիտասարդին, «Տէր իմ, ըսաւ, ո՞վ ես դու որ վրաս այս աստիճանի խնամք ու սէր կը ցուցընես»։ Լուսաւոր պատանին «Ես Քրիստոսն եմ, ըսաւ, որ քեզի օգնութեան կանչեցիր. բայց ուրախ եղիր որդեակ իմ, վասն զի երկնից արքայութեան մէջ քեզի համար մասնաւոր փառք ու պատիւ պատրաստուած է. հոն պիտի իմանաս թէ ես ո՛րչափ սէր ունիմ վրադ։ Աբդլմսեհ կէս մը սարսափած կէս մըն ալ ուրախացած՝ սիրալիր խօսքերով շնորհակալ կ'ըլլար իրեն, ու կը խնդրէր որ զինքը երբեք չձգէ։

Արդլմնեհի ձայնը լսելով արթընցաւ մայրը ու որդւոյն քովը երթալով՝ հարցուց թէ որո՛ւն հետ կը խօսի։ Տղան դարձաւ, «Մայր իմ, ըսաւ, քրիստոնէից աստուածը Յիսուս Քրիստոս որ աշխարհք եկաւ, ու մեր ազգակիցներէն խաչուեցաւ ու մեռաւ, ինքը լուսաւոր երիտասարդի մը կերպարանքով երեւցաւ ինծի, ու փրկեց զիս այն տանջանաց գուբէն, ուր որ մեր հայրը հետ ես ալ կը չարչարուէի. եւ ինքը մխիթարեց զիս ու քաջալերեց՝ և տարաւ ինծի պէս պզտիկ տղոց խմբին մէջ խառնեց, որպէս զի անոնց հետ զԱստուած օրհնեմ։ Ահ, ինչո՞ւ համար արթընցուցիր զիս. ինչպէս սիրտս կը կարօտի որ մէյմ՚ ալ կարենայի տեսնել այն երջանիկ խումբը, ու անոնցմէ ամենեւին չզատուիլ»։ Մայրը իր սիրեցեալ տղուն բերնէն այսպիսի խօսքեր լսելով՝ աղիքը գալարեցան. «Որդեակ իմ, ըսաւ, թէ որ կը սիրես քու մայրդ, գթա վրաս. ու չըլլայ թէ հայրդ իմանայ այդ խօսքերդ. գիտցիր որ ինչուան արիւնդ կրնայ մտնել. ինչպէս պիտի թողուս քու մայրդ ու եղբարքդ, կամ մենք ինչպէս պիտի ապրինք առանց քեզի»։ Սուրբ մանուկը գորովալից մօրը արցունքը սրբելով, «Մի՛ խռովիր մայր իմ, ըսաւ, երանի՛ ինծի թէ որ Քրիստոսի սիրոյն համար արժանի ըլլամ այս երկրաւոր մարմինը իրեն զոհել. արդէն ես աչքս առեր իմ՝ ամէն ցաւ ու վիշտ քաշել իրեն համար. դու ալ. կ՚աղաչեմ, հաւատա իրեն. ինքը զքեզ անշուշտ կը մխիթարէ.

մկրտուէ յանուն Յիսուսի Քրիստոսի, որպէս զի տեսնես իր մեծ զօրութիւնը, և հասկընաս թէ երկրաւոր մահը անմահութիւն է արդարոց համար։ — Կ՚իմանամ, ըսաւ մայրը, որ աստուածային զօրութիւն մըն է որ քեզի այդ խօսքերը զուրցնել կուտայ. կը հաւատամ ես ալ Քրիստոսի, բայց հիմակուհիմայ մեր մէջը միայն այս խօսակցութիւնները, որպէս զի հայրդ ու եղբայրքդ չիմանան»։ Աբդլմսեհ մօրը հաւատքը տեսնելով՝ ուրախութենէն ի՞նչ ընելիքը չէր գիտէր. ու երկրորդ օրը առաւ իր ոչխարները, ու մօրը ձեռքը պագնելով. «Մնաս բարով, ըսաւ. ես աճապարիկ իմ ընկերացս քովը կ՚երթամ. ու թէ որ ուշանամ՝ դու ալ իմ ետեւէս հասիր»։ Ճամբուն վրայ ծերունի եպիսկոպոս մը հանդիպեցաւ տղուն. Աբդլմսեհ արդէն իր հովուակիցներէն իմացած ըլլալով թէ քրիստոնեայք դրոշմ ալ կ՚առնուն իրենց հաւատոյը մէջ հաստատուն մնալու համար, մէկէն վազեց եպիսկոպոսին քովը, ու անոր օրհնութիւնը խնդրելով աղաչեց որ դրոշմէ զինքը։ Զարմացաւ եպիսկոպոսը, «Որդեակ իմ, ըսաւ, դու զիս ուստի՞ կը ճանչնաս։ — Հայր իմ, պատասխանեց Աբդլմսեհ, Քրիստոս որ հաճեցաւ փրկութեան ճամբան ցուցընել ինծի, ինքն է որ զիս քեզի խրկեց»։ Եպիսկոպոսը օրհնելով զԱբդլմսեհ «Քրիստոս, ըսաւ, պատուիրեց ինծի որ քեզի դրոշմին սուրբ խորհուրդը մատակարարեմ»։ Աբդլմսեհ ուրախութեամբ մը իր ընկերակ-

ցացը վազելով՝ պատմեց անոնց տեսած տե-
սիլքը, ու ծերունի եպիսկոպոսին ձեռքով
դրոշմ ընդունիլը:

Նոյն օրը Աբդլմսեհի հայրը Ղևի մեծ կո-
չունք ընելու պատրաստուած ըլլալով՝ բարե-
կամներն ու դրացիները սեղանի հրաւիրելէն
ետքը՝ իր ծառաները խրկեց որ երթան
տղաքն ալ բերեն: Աբդլմսեհ չէր ուզեր իր
ընկերներէն բաժնուիլ. բայց անոնց յորդո-
րելովը ելաւ ծառայիցը հետ տուն երթալու:
Բայց երբոր տանը մօտեցաւ, չէր ուզեր անէն
ներս մտնել. սակայն ծառայքը բռնութեամբ
զինքը ներս խոթելով տարին կոչնոց սենեա-
կը, ուր որ Ղևի իր բարեկամներովը կ'ու-
րախանար: Ասերայ ակընջին վրայ եղած գինդն
որ տեսաւ, «Որդեակ իմ, ըսաւ, ո՛վ խաբեց
զքեզ, ու ո՛վ ստիպեց որ այդ ծառայութեա-
նը նշանը վրադ առնուս»: Աբդլմսեհ չնոր-
հալից հանդարտութեամբ մը պատասխան
տուաւ հօրը. «Մի՛ խռովիր, ըսաւ, հայր իմ.
ինքզինքս կամաւ Քրիստոսի տեառն իմոյ ծա-
ռայութեանը նուիրեցի, քրիստոնէից սուրբ
հաւատքը ընդունելով»: Ղևի բարկութենէն
կրակ դարձաւ, ու ի՛նչ ընելիքը չգիտնալով
ոտք ելաւ ու անմեղ հրեշտակը գետին զար-
նելով՝ հայրենի գուլթը մէկդի դրած սկսաւ
չարաչար ծեծել: Կոչնականները տղուն վրայ
ցաւելով՝ սկսան յորդորել հայրը որ խեղճին
վրայ գթայ. «Տղայ է, կ'ըսէին, ըսածը չգի-
տեր»: Հօրը սրտին բարկութիւնը քիչ մը
իջնալով՝ թողուց տղան ու եկաւ նստաւ որ

կերակուր ուտէ։ Սեղանի նստողները տղան յորդորել սկսան որ գայ հետերնին կերակուր ուտէ. բայց Աբդլմսեհ դէմ կը կենար. «Քրիստոնեայ եմ, կ՚ըսէր, ու ձեզի հետ չեմ կրնար կերակուրի նստիլ»։ Ղևի նորէն կատղեցաւ, ու կ՚ուզէր դարձեալ ելլել ծեծել զինքը. բայց բարեկամները թող չտուին ու սկսան նորէն սպառնալեօք ու աղաչանքով խրատել տղան որ հնազանդի իրենց։ Աբդլմսեհ «Թէ որ, ըսաւ, ինծի երևցած տեսիլքը դուք ալ տեսնէիք, սրտերնիդ առաջ չէր երթար զիս այս բանիս յորդորելու։ Շատ կը ցաւիմ որ աչուըներնուդ վրայ ձգուած մովսիսական վարդապետութեանց վարագոյրը՝ թող չտար ձեզի յայտնի տեսնել ինծի տեսնուած ճշմարտութիւնը. Քրիստոս՝ զորն որ յանիրաւի մեր հարքը Երուսաղեմի մէջ խաչեցին, ինք երևցաւ ինծի և սորվեցուց իր հաստատուն սուրբ հաւատքին ճշմարտութիւնը։ Ինչուան որ դուք ալ չթողուք ձեր օրէնքը, փրկութեան ճամբուն ոչ երբեք պիտի կարենաք հասնիլ։

Նորահաս տղու մը բերնէն այսպիսի համարձակ ու խելքով պատասխաններ լսելով՝ կոչնականները շատ զարմացան. բայց մէկալ կողմանէ ալ իրենց կրօնիցը ըրած արհամարհութեանը չդիմանալով՝ յորդորել սկսան տղուն հայրը որ ելլէ Աբդլմսեհը պատժէ։ Ծառայքն այս չփոթութիւնը տեսնելով՝ ցաւեցան խեղճ տղուն վրայ, ու թող տուին որ տնէն դուրս ելլելով ինքզինքը ազատէ։ Բայց

հայրը գազանային անգութ վրէժխնդրութեամբ մը վառուած, սեղանին վրայէն յափըշտակեց դանակը, ու անմեղ Աբդլմսեհի ետեւէն վազել սկսաւ, որ դէպ ի Ջրհորին քովը կ'երթար, ուր Քրիստոսի սուրբ հաւատքը ընդունեցաւ։ Ճամբան ետեւը դարձաւ Աբդլմըսեհ, ու տեսնելով հայրը որ մռմռալով ետեւէն կը վազէր, «Հա՛յր իմ, աղաղակեց, հայր սիրելի. Մովսիսի օրէնքը ոտքի տակ մի՛ առներ. փուճ տեղը անմեղ արիւն մի՛ թափեր. չըլլայ թէ գլխուդ փորձանք մը հանդիպի»։ Որո՞ւ կ'ըսէր. Ղեւայ աչքը դարձած, սիրտն ալ բոլորովին մարդկութենէ դուրս ելած, որդւոյն արտասուագին ձայնովը կակըղնալու տեղ՝ աւելի կրակ կը կտրէր։ Աբդլմսեհ տեսաւ որ աղաչանքը չզօրեր, վազեց իր մկրտուած տեղը ուր զՔրիստոս ճանչցաւ և իրմով զօրացաւ, նոյն տեղէն՝ իր անմեղ հոգին ալ երկինք պիտի թըռցընէ եղեր։ Ծընկան վրայ գալով շնորհակալ եղաւ Աստուծոյ որ արժանի ըրաւ զինքը Քրիստոսի փրկչին մեզի համար թափած արեանը արիւն փոխարինել. «Յիսուս փրկիչ, ըսաւ, ընդունէ զիս քու ընտրելոցդ թուոյն մէջ. արժանի ըրէ որ երկնից արքայութեանդ մէջ զքեզ տեսնելու արժանի ըլլամ. բայց հօրս իմ վրաս ցուցըցած կատաղութիւնը մեղք մի՛ սեպեր. իմ արեանս համար զինքն ալ փրկէ. ընդունէ՛ կամակար զոհս Յիսուս փրկիչ իմ և ապաւէն»։ Աբդլմսեհ իր խօսքը հովուակից ընկերակցացը դարձընելով, «Եղբա՛րք իմ,

սիրելիք, կ՚ըսէր արտասուալից ձայնով մը, ուր էք. եկէք ձեր քարոզութեան պտուղը տեսնելու. եկէք որ իմ պսակմանս վրայ մէկտեղ ուրախանանք. գէթ մահուընէս ետքը զիս մի՛ մոռնաք, ու ինծի համար աղօթք ընելէն մի՛ դադրիք: Մա՛յր իմ սիրելի, եղբարք հարազատք, ահաւասիկ ձեզմէ կը բաժնուիմ, խնդրելով Աստուծմէ որ իր շնորհքովը ձեր սիրտն ալ լուսաւորէ»:

Արդլմսեհ երբոր գետնի վրայ ընկած այս խօսքերը կը գրուցէր, գազանասիրտ հայրը վրայ հասաւ, ու այն ջրհորին քովը՝ ուր որ սուրբը մկրտուեցաւ՝ անմեղ զաւակը վիրաւորեց չարաչար, որ իր սուրբ արեանը մէջ տապլտըկելով ինքզինքն ու իր հոգին Աստուծոյ կը յանձնէր: Դեռ ուրախութեամբ մը տուն դառնալով արիւնով թաթխուած դանակը կոչնականաց կը ցուցընէր, իր կոյր ու անմիտ օրինապահութեանը վրայ պարծենալով:

Վաղուան օրը երբոր Արդլմսեհի հովուակիցքը իրենց ոչխարներին արածելու եկան, տեսնելով իրենց սուրբ ընկերոջը մարմինը արեան մէջ թաթխուած՝ իմացան անոր գըլխուն եկածը, ու մէկ կողմէն անոր երջանիկ նահատակութեանը վրայ կ՚ուրախանային, մէկալ կողմէն ալ դառն արցունքով իրենց սիրելի ընկերոջմէն բաժնուելնուն վրայ կ՚ողբային: Ինկան անոր սուրբ մարմնոյն վրայ, իրենց սէրը կը յիշեցընէին, ու կը խնդրէին անմեղ հրեշտակէն որ աղաչէ զԱստուած, զիրենք ալ իր քովը ընդունելու: «Ով դառն

անմեղ, կ՚ըսէին. որ անգութ մարդը քու արիւնդ մտաւ, և զմեզ քու եղբայրակցութենէդ զրկեց»։ Երկար ատեն արցունք թափելէն ու լալէն ետքը, առին անոր երջանիկ մարմինը ու արեամբը ներկած հողովը զինքը թաղեցին։

Աբդլմեսհի նահատակութեանը վրայ քանի մը օր անցնելէն ետքը՝ գերեզմանին քովերէն վաճառականներ կ՚անցնէին իրենց բեռներովը գիշեր ատեն։ Հեռուէն տեսնելով որ գերեզմանի մը մէջէն լոյս կ՚ելլէ, անոնցմէ քանի մը հոգի որ քրիստոնեայ ալ էին, եկան գերեզմանին քով, և անոյշ հոտ մըն ալ առնելով, «Հոս Աստուծոյ հրաշքը պիտի ըլլայ», ըսին, ու առին Աբդլմեսհի մարմինը իրենց վաճառակից ընկերացը տարին «Մեծ գանձ մը գտանք» ըսելով։ Հաւատացեալ վաճառականներէն մէկը, որուն կինը ամուլ էր, ուխտ ըրաւ Աստուծոյ որ եթէ այս սրբոյն բարեխօսութեամբը տղայ մը ունենայ, անոր պատուոյն եկեղեցի մը շինել կուտայ՝ երջանիկ մասունքը անոր մէջ զետեղելու համար։

Տուն որ հասաւ, իր կնոջը և բարեկամացը ցըցուց սրբոյն մասունքը, և իր խոստացածը պատմեց անոնց. ու երբոր իմացաւ թէ Աստուած իր կնոջը անզաւակութիւնը վերուցեր է, ուրախութեամբ փառք տուաւ Աստուծոյ, և սկսաւ վկայարանը շինել։

Իսկ Աբդլմեսհի ընկերները ինչպէս որ սովորութիւն ըրած էին ամէն օր գալու ի-

րենց եղբօրը գերեզմանին այցելութիւն ընելու, Հետեւեալ օրը երբոր գերեզմանը բացուած ու երջանիկ մարմինը վերցուած տեսան, շատ ցաւեցան. ու կերպով մը իմանալ չկրնալով թէ ի՛նչ եղած պիտի ըլլայ, տուներնին դարձան ու իրենց ծնողացը ամէն բան տեղն ի տեղը պատմեցին։ Անոնք ալ շուտով մը հետերնին ուրիշ հաւատացեալք առած, եկան սրբոյն նահատակութեան տեղը, ու իմանալով որ կարաւան անցեր է անկէց, ու թէ անշուշտ իրենք եղած պիտի ըլլան սուրբ նահատակին մասունքը վերցընողները, սկսան ողբալ թէ ի՛նչպէս այնպիսի մեծ գանձէ զըրկուեցան. ուստի մէկէն անոր արեամբը թաթխուած հողերը ժողվեցին, ու անոր գերեզմանին վրայ վկայարան մը շինեցին։ Անկէ ետքը մեծ ուխտատեղի եղաւ հաւատացելոց այն վկայարանը, ու շատ հրաշքներով ալ փառաւորեց Աստուած իր ծառայն։

Տարի մը անցնելէն ետքը նոյն վաճառականները նորէն իրենց գործոյը համար այն տեղէն անցնելու ատեննին, սրբոյն գերեզմանին վրայ շինուած վկայարանը տեսնելով պատմեցին տեղացւոց թէ իրենք վերցուցին սրբոյն մարմինը ու իրենց երկիրը տարին. ետքը սուրբ վկային անունը հարցուցին իմացան, և խոստացան որ անոր նշխարաց մէկ մասը ասոնց խրկեն վկայարանին մէջ դնելու համար։ Երկիրնին որ դարձան՝ վաճառականը տեսնելով իր կնոջը բերած տղան, շատ ուրախացաւ. և ի շնորհակալութիւն՝

տղուն անունը Աբդլմեսհ դրաւ։ Ան ատեն կինը պատմեց էրկանը թէ ի՛նչպէս մանկահասակ սուրբ մը երեցեր է իրեն տեսլեանը մէջ, քանի որ էրիկը տուն չէր դարձած, ու պատուիրեր է որ իր անունը դնեն Աստուծոյ իրենց պարգեւած զաւկին. ու երբոր ես անունը հարցուցի ըսաւ, «Էրիկդ երբոր դառնայ, պատասխանեց, իմ՝ անունս և Նահատակութեանս պատմութիւնը տեղնիտեղը կ՚իմանայ»։

Աբդլմեսհի հայրը Ղևի ծերութեան ատենը դիւահարութիւն մը ունեցաւ, ու քանի որ իր սիրելի որդին և անոր դէմ ցըցուցած անգթութիւնը կը յիշէր՝ սրտին ցաւէն ինքզինքը կ՚ուտէր. իմանալով ալ թէ այս դիւահարութիւնը Աստուծոյ պատիժն է՝ որ իր որդւոյն համար կը քաշէր, օր մը երբոր սատանայէն չարչարուած գետինն ընկեր կը տապլտըկէր, վրայ հասան որդիքը, ու մէկէն առին իրենց եղբօրը վկայարանը տարին, և հոն անոր արեամբը ներկուած սիւնին քով կապեցին։ Ղևի երբոր տեսաւ իր որդւոյն բարեխօսութեամբը ընդունած բժշկութիւնը, Աբդլմեսհի մկրտուած տեղը՝ ինքն ալ բոլոր տնեցովը հետ մկրտուեցաւ. նոյնպէս ուրիշ շատ Հրէաներ ու Պարսիկներ ալ Քրիստոսի հաւատքը ճանչցան։ Ասանկով Աբդլմեսհի անունը ամէն ազգաց մէջ տարածուելով շատ անուանի եղաւ։

Ատեն անցնելէն ետքը, երբոր այն տեղերը Հագարացւոց իշխանութեան տակն անցան,

սրբոյն բարեխօսութեամբ եղած հրաշքները լսելով՝ իրենք ալ բարեխօս կը բանէին զինքը ու անոր աղօթք կ՚ընէին։ Հազարացւոց գըլխաւոր ու հարուստ Նախարարներէն մէկը ահագին անապատի մէջ իր հազարաւոր ուղտերը կորսընցընելով՝ երբոր ամէն ջանք ըրաւ ու կերպով մը չկրցաւ գտնել՝ ուխտ ըրաւ սրբոյն որ եթէ գտնէ՝ տասնին մէկը իրեն Շիգար քաղքին մէջ ունեցած վկայարանին պարգև տայ։ Բայց երբոր ուղտերը գտաւ, սիրտը առաջ չէր երթար որ խոստացած ուխտը կատարէ. և թէպէտ բարեկամները շատ յորդորեցին որ ըրած խոստմունքէն ետ չկենայ ու գլխուն փորձանք մը չբերէ, բայց Նախարարը մտիկ չըրաւ. «Այնչափ ուղտը սուրբը ի՞նչ պիտի ընէ», կ՚ըսէր. ուստի տասը ուղտ առաւ Աբդլմսեհի վկայարանին ընծայ խրկեց։ Սակայն քիչ ատենէն ինքն ալ զղջաց ըրած ուխտազանցութեանը վրայ. վասն զի քանի մը օրէն նորէն կորսուեցան ուղտերը։ Հազարացին իմացաւ որ սրբոյն պատիժն է այս բանս. ու ինքը ամըչնալով անձամբ երթալ անոր վկայարանը ու ըրած յանցանացը ներումն խնդրել, բարեկամներուն աղաչեց։ Անոնք երբոր Շիգար քաղաքը հասան ու սրբոյն վկայարանին մօտեցան, տեսան որ բոլոր կորսուած ուղտերն և ուղտապանները դէպ ի հոն կը վազեն. ու զարմանալէն բերաննին գոցուեցաւ. «Ցիրաւի մեծ է, կ՚ըսէին, քրիստոնէից աստուածը»։ Ուստի մէկէն իրենց տիրոջը խոստացած տա-

սանորդը պարգևեցին սրբոյն, ու մէկալ ուղտերն առնելով իրենց քաղաքը դարձան, ու ամէն բան տեղն ի տեղը պատմեցին Նախարարին։



# ՍՈՒՐԲ ԿԻՐԱԿՈՍ

Լիկայոնիա գաւառին Իկոնիոն քաղաքը Թագաւորական ցեղէ բարեպաշտ կին մը կար Յուղիտա անունով Դիոկղետիանոս կռապաշտ կայսեր հալածանաց օրերը, որ իր Կիրակոս անունով փոքրիկ տղուն հետ աղօթից և բարեպաշտական գործոց ետևէ էր անդադար։ Ան օրերը Դոմետիանոս անունով պաշտօնեայ մը եկաւ Լիկայոնիա, կայսեր կողմանէ քրիստոնեայքը դատելու համար։ Յուղիտա իրմէն աւելի տղուն համար վախնալով՝ Սելևկիա քաղաքը փախաւ. սակայն հոն ալ ուրիշ անգութ դատաւոր մը կար Աղեքսանդրոս անունով, որ Թագաւորին հրամանաւը խեղճ քրիստոնեայքը անողորմաբար կը չարչարէր. Յուղիտա անկէ ելաւ Տարսոն քաղաքը փախաւ. ու երբոր Աղեքսանդրոս դատաւորը հոն ալ հասաւ, Տարսոնացիք մատնեցին զինքը Աղեքսանդրոսի. բարեպաշտօն կինը փախչելու ատենը երկու հաւատարիմ նաժիշտներն ալ հետը առեր էր, բայց անոնք երբոր տեսան թէ իրենց խաթունը դատաւորի ձեռք ընկաւ, թողուցին զինքը ու փախան։ Յուղիտա միայն իրեն հրեշտակատիպ Կի-

բակոս տղան գիրկը առած, առանց վախնալու դատաւորին դիմացը ելաւ։ Աղեքսանդրոս անոր ազնուական կերպը տեսնելով, «Ո՛վ ես դու, ըսաւ, խաթուն, ու ի՛նչ հաւատքի տէր ես. ի՛նչ աստիճանի մարդ ես, անունդ ի՛նչ է, և աշխարհքդ ուսկի՞ց»։ Յուղիտա վեհանձն արիութեամբ մը, «Ես քրիստոնեայ եմ, ըսաւ. և այն պատճառաւ ունեցածս չունեցածս բոլոր թողեր ու պանդխտութեամբ աս հեռաւոր երկիրս եկեր եմ, որպէս զի սուրբ հաւատքս կարենամ ամբողջ ու հաստատուն պահել»։ Աղեքսանդրոս բարկանալով անոր համարձակութեանը վրայ, հրամայեց որ Կիրակոս տղան մօրը դրկէն հանեն ու իրեն բերեն. ետքը սպառնալեօք ու յորդորանօք երանելի կինը յորդորել կը ջանար, որ թողու զՔրիստոս, ու կուռքերը պաշտէ։ Բայց Յուղիտա անոր ամէն խօսքին դէմը կ'առնէր՝ մահն ալ աչքը առնելու պատրաստ ցուցընելով ինքզինքը, քան թէ քրիստոնական սուրբ հաւատքը թողուլ. դատաւորը ան ատեն հրամայեց որ չարաչար ծեծեն երջանիկ կինիկը։ Խեղճ Կիրակոսը արտասուագին աչքով կը նայէր, ու անոր կրած նեղութիւնը տեսնելով՝ բարձրաձայն կուլար. Յուղիտա ալ մայրենի գթովը իրեն քաշած վշտերը բանի տեղ չսեպելով, կարեկցութեամբ անմեղ մանկանը վրայ կը նայէր, ու հառաչանաց ձայներով կը խնդրէր Աստուծմէ որ կռապաշտից մէջ անարատ պահէ իր զաւակը։ Սուրբ մանուկը լսելով մօրմէն

թէ ինչպէս տանջանաց ատենը անդադար Քրիստոսի անունը կը յիշատակէ, նոյնը կը կրկնէր ինքն ալ թէ «Քրիստոնեայ եմ՝ ու զՔրիստոս կը պաշտեմ»։

Դահիճքը քանի կ՚երթային, աւելի սաստիկ կերպով կը չարչարէին սուրբ կինը. բայց ինքը զարմանալի համբերութեամբ՝ անմռունչ յօժարակամ ամէն փիշտ կը քաշէր Յիսուսի սիրոյն համար. սակայն Կիրակոս տղուն աղիքը կը գալարէին՝ մօրը փշտերը տեսնելով։ Աղեքսանդրոս դատաւորը տղան գիրկը առեր՝ կը պագնէր զինքը ու կը շոյէր, ջանալով անոր լացը դադրեցընել։ Բայց Կիրակոս գլուխը մօրը կը դարձընէր, ու ձեռքով ոտքով Աղեքսանդրոս դատաւորը կը նեղէր, ուզելով նորէն իր մօրը գիրկը դառնալ։ Դատաւորը հարցուց իրեն թէ ինչ կ՚ուզես. բայց Կիրակոս փոխանակ պատասխան տալու, իր մօրը բերնէն լսած խօսքը անդադար կը կրկնէր թէ «Քրիստոնեայ եմ»։ Բարկացաւ Աղեքսանդրոս, և անլուր կատաղութեամբ մը այն երջանիկ անմեղ մանուկը իր գահոյիցը բարձր աստիճաններուն վրայէն գլորելով վար նետեց. ու սուրբ Կիրակոսին գլուխը քարին զարնուելով՝ ճեղքեցաւ, ու այն կերպով իր մաքուր հոգին Աստուծոյ աւանդեց։

Կիրակոսի գորովագութ մօրը Յուղիտայի սիրտը կտոր կտոր եղաւ այն ցաւագին տեսլենէն. բայց իր մխիթարութիւնը միայն ան էր որ Աստուած արժանի ըրաւ զինքը որ-

դւոյն նահատակութիւնը աչքով տեսնելու. ու սկսաւ ուրախութեամբ օրհնել զԱստուած։ Աղեքսանդրոս կրակ կտրեցաւ ան ատենը, ու հրամայեց որ բարձր տեղէ մը կախեն ու մարմինը քերեն, բայց Յուղիտա այն դառն չարչարանաց մէջն ալ ուրախութեան արցունքով շնորհակալ կ'ըլլար Աստուծոյ՝ որ արժանի ըրաւ զինքը իր միածնին չարչարակից ընելու։ Դատաւորը պատուիրեց որ ձէթ ու նաւթ տաքցընեն չարաչար, ու մարմնոյն վրայ լեցընեն. մէկ կողմանէ ալ Աղեքսանդրոսի պաշտօնեայքը կը յորդորէին զինքը որ մէկդի ձգէ յամառութիւնը ու դատաւորին հնազանդի։ Բայց Յուղիտա աստուածային շնորհքով վառուած՝ անոնց ամէն հրապուրանացը դէմ կը դնէր. «Անկարելի է, կ'ըսէր, որ ես անշունչ արարածոց երկրպագութիւն ընեմ՛. վասն զի իմ՛ Աստուածս երկինքն է, որ այս փառաց ալ հասնելու զիս արժանաւորեց»։

Աղեքսանդրոս տեսնելով թէ Յուղիտայի միտքը փոխելը անհնարին է, հրամայեց որ գլուխը կտրեն։ Մէկէն դահիճները կապեցին կապկըպեցին երջանիկ վկայուհին, ու առին գլխատման տեղը տարին. Յուղիտա խնդրեց անոնցմէ որ քիչ մը ատեն տան իրեն միտքը վրան ժողվելու և աղօթելու համար։ Ինկաւ գետնին վրայ «Աստուած իմ՛, ըսաւ, շնորհակալ եմ՛ որ իմ՛ որդիս ինծմէ առաջ երկնից արքայութեանդ մէջ ընդունեցար. հիմա իմ՛ ատենս ալ հասաւ. ուստի արժանի ըրէ որ

ես ալ ընտրելոցդ թուոյն մէջ խառնուիմ, ու իմ սիրելի զաւակս որբոց հետ դասաւորած տեսնեմ՝»։ Աղօթքը լմընցընելուն պէս, դահիճը Յուղիտայի գլուխը կտրեց յուլիս ամսուն հնգետասաներորդ օրը յամի տեառն 304 կամ 305. ու իրեն և տղուն սուրբ մարմինները՝ Յուղիտայի նաժիշտքը գիշեր ատեն եկան վերուցին, ու Տարսոն քաղաքէն դուրս ծածուկ այրի մը մէջ ամփոփեցին. որ ետքէն կոստանդիանոս կայսեր օրովը յայտնուեցան, ու վրանին մեծ վկայարան շինուեցաւ։



# Ս. ՎԱՀԱՆ ԳՈՂԹՆԱՑԻ

Ազգային եկեղեցւոյ պատմութեան հռչակաւոր ու անուանի պարծանքը՝ սուրբն Վահան Գողթնացի, Խոսրով Հայոց Նախարարին որդին էր՝ եօթներորդ դարուն ատենները. այն ատեններն որ մեր Հայրենի երկիրը տեսակ տեսակ թշնամեաց ոտնակոխ եղեր և մեծամեծ թշուառութիւններ կրեր էր։

Աբդլլա անուանով հագարացի ոստիկան մը կար այն ատենները, որ Հայոց Նախարարացը դէմ սրտին մէջ ոխ ունենալով՝ յարմար առիթի մը կը սպասէր անոնցմէ վրէժ առնելու։ Նախիջևան քաղաքը նստող իր Կաշմ անունով ոստիկանին պատուէր խրկեց որ իր վրան առնու Հայոց աշխարհին ոստիկանութիւնը, և դրսուանց անոնց մեծերուն հետ ամենայն բարեկամութեամբ ու մարդասիրութեամբ վարուի. այն կերպով զանոնք բոլորովին ջնջել կը փափաքէր։ Ետքէն անոնց հրաման խրկեց որ հարկաւոր բանի մը վրայ մտածելու համար արժան է որ Նախիջևան քաղաքը երթան Կաշմ ոստիկանին ներկայանալու համար։ Բարեսիրտ Նախարարները նենգաւորին հրապուրողական խօսքերէն խաբուեցան,

ու բոլորը միաբան Նախիջեւան քաղաքը ժողվուեցան։ Կաշմ խաբէութեամբ մը անոնց զէնքը վրանիրնէն վերցուց, ու մեծ եկեղեցւոյն մէջ ժողվել տուաւ զիրենք, իբր թէ հաւատարմութիւն երդուրնելու համար։ Նախարարները ներս մտան չմտան, անօրէն ոստիկանը եկեղեցւոյն դռները մէկէն գոցեց, և եկեղեցւոյն կրակ տուաւ. ուր ամէնքը զարմանալի արիութեամբ և ուրախութեամբ սրտի ինքզինքնին անոյշ պատարագ. Նուիրեցին Աստուծոյ Հօր։ Այլազգիք իրենց ուզածին հասնելով, սկսան բոլոր քաղաքները թալլելու աւրըշտըկելու ելլել. ու բաց ի ուրիշ բաներէն, որ տղոցն և աղջկանց հանէին, կ'առնուին իրենց երկիրը կը տանէին, և կամ Դամասկոս Նստող ամիրապետին կ'ընծայէին։

Ասոնցմէ մէկն էր նաև Վահան Գողթնացի երջանիկ մանուկը, որ չորս տարեկան էր երբոր այլազգեաց ձեռքը ընկաւ. որն որ առին մէկէն թլփատեցին, ու տեսնելով անոր խելքն ու հանճարը, իրենց կրօնին վերաբերեալ ամէն բաները սորվեցուցին իրեն. անանկ որ երբոր քիչ մը տարիքը առաւ արքունի գործոց և պաշտամանց ալ մէջը մտաւ, ամէն մեծամեծաց սիրելի ըլլալով։

Օմար երկրորդ երբոր ամիրապետ նստաւ, բարի և գթած սիրտ մը ունենալով, Հայոց գերիներուն աղաչանքովը հրաման տուաւ իրենց որ կարենան հայրենիքնին դառնալ։ Վահան գիտէր թէ քրիստոնէի զաւակ է, սիրտն ալ տարակոյս մտեր էր Հագարացւոց

գենին ստուգութեանը վրայօք, ուստի գնաց ինքն ալ արտասուօք ամիրապետէն խնդրեց որ իրեն ալ հրաման տայ հայրենիքը դառնալու. «Երթամ մէյմը իմ բաներս կարգաւորեմ, կ'ըսէր, ու ետքը անյապաղ նորէն հոս կը դառնամ»։ Ամիրապետը թէպէտեւ շատ կը ցաւէր որ իրմէն պիտի բաժնուի, բայց այնպիսի մեծ իշխանի մըն ալ սիրտը կոտրել չէր ուզեր. ուստի հրամանը տուաւ, պատուիրելով որ մէկէն իր գործը լմընցընէ ու դարձեալ իրեն դառնայ։

Վահան երբոր Գողթան իր երկիրը դարձաւ, տեղւոյն բնակիչքը ուրախութեամբ անոր քովը ժողվուեցան. կը պատմէին իրեն տղայութեան ատենը անցած խեղճ դիպուածները, ու թէ ինչպէս զինքը յափշտակեցին Հագարացիք, ու առին իրենց երկիրը տարին, մէկ կողմանէ ալ սրտերնին կտոր կտոր կ'ըլլար քանի որ միտքերնէն կ'անցընէին թէ քրիստոնեայ բարեպաշտօն իշխանի մը զաւակ էր Վահան, ու առանց գիտնալու իր հաւատքը կորսընցուց։ Սակայն Վահան քրիստոնէութեան կարգերն ու կանոնները տեսնելով ու լսելով, կամաց կամաց վրանին համարմունք ու սէր մը ունենալ սկսաւ. մէկուն մէկալին հարցուց իմացաւ, ու Աստուծոյ լուսաւորելովը՝ ճշմարտութիւնը տեղն ի տեղը իմանալով, զղջաց իր կուրութեանը վրայ, ու գետնի վրայ ինկնալով աղաչեց Աստուծոյ՝ որ իրեն պէս կորուսեալ ոչխարէ մը երես չդարձընէ. այլ ընդունի իրեն սրտեռանդն

զղջումը, ու մանկութեան և տղայութեան ատենի մեղքերը չյիշէ. ու իրեն արցունքովը իբրև երկրորդ աւազանով մը մաքրուելով, բոլորովին Նոր ճամբայ մը բռնեց, ու մեծ գաւառի մը իշխող տէրը, անապատականի կեանք կ'անցնէր. «Աշխարհիս մեծութիւնը չըլլայ թէ իմ կործանմանս պատճառ ըլլայ» կ'ըսէր։

Ան ատենները Օմար ամիրապետին մահուամբը կրնար Վահան ամենևին Դամասկոս չդառնալ. բայց այլազգի նախարարները՝ Նոր ամիրապետին ականջը հասուցին Վահանայ քրիստոնէութեան լուրը։ Վահան երբոր այս բանս իմացաւ, մտածեց որ անոնց կատաղութենէն ազատելու համար՝ ընտանիքը հետն առնու ու ելլէ Յունաց աշխարհքը փախչի. բայց Սիւնեաց գաւառին իշխանքը հաւանեցուցին զինքը որ երթայ իրենց աշխարհը նստի. սակայն հոն ալ այլազգիներէն հանգիստ չգտնելով, Աստուծոյ յանձնեց ինքզինքը, ու քանի մը հոգւով ընկերացած, ձիով ասդին անդին կը քալէր պանդխտութեամբ. ինչուան ունեցածը չունեցածն ալ հատաւ, ընկերակիցքն ալ զինքը մի՛ակ թողուցին, ու իրենց երկիրը դարձան։ Բայց Վահան Աստուծոյ սիրոյն համար ամէն վշտաց ուրախութեամբ կը համբերէր. ետքը աղքատի կերպարանք մտնելով՝ այն ատենուան մեր ազգին Դաւիթ կաթուղիկոսին գնաց, ու իրեն գլխէն անցած ամէն բաները՝ տեղովը պատմեց իրեն։ Կաթուղիկոսն ալ յան-

ձնարարական թուղթ մը տալով ձեռքը, հրամայեց որ երթայ անապատներն ու վանքերը, և հոնտեղը իրեն աղօթքին և ճգնութեանցը նուէր ըլլայ։

Վահան սիրով մտիկ ըրաւ կաթուղիկոսին խրատուցը, ու Շիրակայ գաւառին մէջ եղած ճգնաւորաց վանք մը մտնելով, ու վեց ամիս հոն տեղը կենալով, պամէնքը զարմացուց իր խստակրօն ժուժկալութեամբը։ Բայց սատանան հոն ալ հանգարտ չթողուց զերանելին։ Վանքին մէջի կրօնաւորները վախնալ սկսան որ չըլլայ թէ Վահանայ պատճառաւ իրենց գլխոյն ալ փորձանք մը բերեն Հագարացիք. ու երբոր Շիրակայ մեծին իրենց վախը յայտնեցին, ինքն ալ վրայ տուաւ, ու հրամայեց որ ժամ՝ մը առաջ հեռանայ Վահան այն վանքէն։

Վահան սիրով հնազանդեցաւ անոնց խօսքին, և ուրիշ անծանօթ անապատի մը մէջ եղած վանքը քաշուեցաւ. և հոն ամբողջ տարի մը կեցաւ զարմանալի առաքինակրօն քաղաքավարութեամբ և ճգնասէր վարքով։ Ընթերցասէր ալ ըլլալով՝ սուրբ գիրքը կը կարդար կը քննէր, ու օր օրուան վրայ հաւատքը աւելի կ՚աճէր ու կը զօրանար. անանկ որ Քրիստոսի փրկչին իր արիւնը նուիրելու՝ կենդանի փափաք մը սկսաւ ունենալ. անոր համար միտքը դրաւ որ Աստուծոյ յանձնէ ինքզինքը ու ելլէ նորէն Դամասկոս քաղաքը երթայ, ուր համարձակ կերպով իր հաւատքը դաւանի։ Ուստի վանքին ճգնաւորացը հրաժարական վերջին բարևը տուաւ՝ աղաչելով

որ իրեն համար սուրբ աղօթքներին անպակաս ընեն։ Անկէ Գեղամայ երկրին մէջ եղած Մաքենոցաց ըսուած վանքը հասնելով, գըլխաւորին տեղն ի տեղը իր ունեցած փափաքը յայտնեց. ու պէտք եղած խրատն ու քաջալերութիւնը ընդունեցաւ իրմէ։ Խաչի տօնին օրը նոյն վանքին մէջ Քրիստոսի կենարար մարմնոյն և արեանը հաղորդուեցաւ Վահան. ու նոյն ատեն զարմանալի տեսիլք մը երևցաւ իրեն. վասն զի երկընքէն լոյս մը տեսնուեցաւ, ու անկէց ձայն կուգար թէ «Մի՛ վախնար Վահան, ազատութեան մեղքիրդ բոլոր քաւուեցան, և փափաքածիդ պիտի արժանաւոր ըլլաս, և Քրիստոսի խոստացած վարձքն ալ պիտի ընդունիս»։ Վանքին մէջի եղած կրօնաւորներէն մէկ քանին ալ այն աստուածահրաշ լոյսը տեսնելով՝ զարմացան մնացին. և Վահանայ ինչպիսի՛ մարդ ըլլալը աղէկ իմանալով, լացով և ողբով զինքը ճամբայ դրին։

Անկէ Թեղենեաց ըսուած վանքը անցաւ Վահան, ու քանի մը օր հոնատեղն ալ կենալէն ետքը Սովի կոչուած վանքը գնաց, ուր Յովհաննէս առաջնորդը մեծ սիրով ընդունեցաւ Աստուծոյ կենդանի նահատակը. և լսելով թէ ինչո՞ւ համար Դամասկոս կը դառնայ, քաջալերեց զինքը ու մխիթարեց. ու վանքէն ելլելու ատենը՝ իր կրօնաւորներէն քանի մը հատը անոր ուղեկից դրաւ, որ երթան աչքով տեսնեն այն նորօրինակ սիրոյն զարմանալի հանդէսը։ Անկէ ելան Բզնունեաց գա-

ւառին Երաշխաւոր ըսուած վանքը հասան, ուր որ դարձեալ մեծ ընդունելութիւն գտաւ Վահան, և ամէն իր գլխէն անցածները պատմեց անոնց, և թէ հինգ տարի Քրիստոսի սիրոյն համար պանդխտութեամբ թափառելէն ետքը՝ հիմա ճամբայ է ելեր Դամասկոս երթալու, և հոն սուրբ նահատակութիւնն ընդունելու համար։ Վանականները անոր սըրտին եռանդն ու վառեալ փափաքը տեսնելով, արտասուօք երանի՛ կուտային իրեն. սուրբ գրոց խօսքերովն ալ զինքը աւելի կը քաջալերէին ու կը զօրացնէին։ Ետքը Աստուծոյ յանձնելով զերանելին՝ ճամբայ դրին, իրենց մէջ կրօնաւոր մը անոր ընկեր տալով։

Երկայն ճամբայ ընելէն ետքը Ուրհա քաղաքը հասաւ Վահան. և Քրիստոսի սուրբ դաստառակին պէտք եղած պատիւը ընծայելէն ետքը, Նորէն ճամբայ ելաւ ու Դամասկոս քաղաքը հասաւ։ Հոնտեղը իմանալով թէ ամիրապետը Ռուծափ քաղաքը գնացեր է, իր ընկերակից կրօնաւորացը խորհուրդ տուաւ որ իրմէ բաժնուին. որպէս զի չըլլայ թէ իրեն պատճառաւը անոնք ալ փորձանքի մը գան։ Ինքը անվեհեր արիութեամբ ելաւ պաշտօնատեարց գնաց, ու ամէն բան իմացուց անոնց թէ ինքն ո՛վ է ու թէ ի՛նչ բանի համար Նորէն ելեր Դամասկոս դարձեր է։ Պաշտօնեայքը զարմացան մնացին, ու չէին ուզեր խօսքին հաւատալ. բայց Վահան կ՚աղաչէր որ երթան մեծամեծացն ալ իր գալը իմացընեն։ Անոնք երբոր սուրբը տեսան, բերաննին գո-

ցուեցաւ ու չէին գիտեր ի՛նչ զրուցեն․ կը տեսնէին թէ այն փառաւոր ու պատուական իշխանը, ո՛ր աստիճանի նեղութեան և աղքատութեան մէջ ինկեր է․ ու բանի մը տեղեակ չըլլալով՝ սկսան անոր խեղճութեան պատճառը հարցընել․ «Քրիստոսի սիրոյն համար, պատասխանեց Վահան, իմ երկրաւոր մեծութիւններէս կամաւ հրաժարեցայ․ վասն զի ինքն ալ ինծի համար աղքատութիւն յանձն առաւ․ և հիմայ հոս ձեր քաղաքը եկեր եմ որ անանց մեծութիւնը ստանամ իմ արեամբս․ ուստի կը խնդրեմ՝ ձեզմէ որ այս ամէն բաները ամիրապետին իմացընէք»։ Հոն եղողներուն սիրտը տակն ու վրայ եղաւ այն գորովալից տեսլենէն, ու ամիրապետին մատնելու տեղ սկսան յորդորել որ խնայէ իրեն ու ելլէ երթայ։ Վահան տեսաւ որ անոնց սէրը անգթութեան փոխել տալը անկարելի է, գնաց ինկաւ Աստուծոյ դիմացը, «Յիսուս փրկիչ, որ կորուսեալքը գտնելու եկար, ըսաւ, իմ՝ յոյսս և օգնութիւնս ալ դու ես․ զիս երբեք մի՛ ձգեր, ու արժանի ըրէ որ կարենամ քեզի համար արիւնս թափել, ու անով իմ մեղացս բազմութիւնը ջնջել»։ Աղօթքը լմընցուց Վահան, ու մէկէն չիփչիտակ դահճապետին գնաց, ու իր Դամասկոս գալուն պատճառը իմացուց, և գիր մըն ալ տուաւ իրեն, աղաչելով որ երթայ ամիրապետին տայ։ Ամիրապետը թուղթն որ կարդաց, հրամայեց որ առջևը բերեն Քրիստոսի նահատակը, ու երբոր անոր խեղճ կերպը տե-

սաւ, «Վահագ իշխան, զարմանալով մը հարցուց անոր, ու ի՞նչ աղքատութեան մէջ ընկեր ես. ի՞նչպէս եղաւ որ ունեցածդ չունեցածդ կորսնցուցիր: — Քրիստոս իմ տէրս, պատասխան տուաւ Վահան, ինծի պէս թշուառական մարդը փրկելու համար, յետին անարգութիւն յանձն առաւ. մեծ բա՞ն մըն է իմ ըրածս՝ անոր ցուցըցած տիրոյն հետ համեմատելու որ ըլլանք»: Ամիրապետը «խենթեցա՞ր Վահագ, ի՞նչ եղար» ըսաւ: «Իրաւ կ՚ըսես, պատասխանեց Վահան, ատեն մը խենթ էի քանի որ քրիստոնէութիւնը չէի ճանչցած. բայց հիմա լուսոյ և ճշմարտութեան ճամբուն մէջն եմ Աստուծով»: Ամիրապետը Վահանայ վրայ սէր ունենալով՝ չէր ուզեր անոր արիւնը մտնել. անոր համար ոսկի արծաթ ու տեսակ տեսակ գանձեր բերել դիզել տուաւ անոր առջևը, ու սկսաւ յորդորել որ աւելլին ալ արժանի պիտի ըլլայ թէ որ խօսքին մտիկ ընէ ու քրիստոնէութիւնը թողու: Վահան քաջութեամբ դէմ կեցաւ անոր ամէն հրապուրանացը. «Քրիստոսի ծառայ եմ, ըսաւ, ու չես կրնար քու ունայնութեան պարգևներովդ զիս խաբել»: Ամիրապետը հրաման տուաւ որ վերցընեն Վահանը ու տանին բանտ դնեն. և ամէն օր մարդիկ կը խրկէր իրեն որ երթան յորդորեն զինքը՝ յամառութիւնը թողլու և ամիրապետին հրամանը կատարելու. բայց սուրբը անոնք ամէնն ալ իր երկնաւոր իմաստութեամբը ամօթով՝ կը ձգէր, ու չէին

կրնար Վահանայ դիմացը բերաններին բանալ, և կ'երթային ամիրապետին կը խոստովանէին թէ այնպիսի մարդու մը միտքը փոխելը անհնարին բան է։

Վահան քանի որ բանտին մէջն էր, ասորի տեղացի քահանայ մը ծածուկ իրեն քովը գնաց, ու սուրբ խորհուրդը մատակարարեց իրեն իբրև վերջին թոշակ։ Ետքը դարձաւ Քրիստոսի նահատակը, ու բանտապետին շնորհակալ ըլլալով «Ուրախութեամբ կը թողում զքեզ, ըսաւ, ու հանդերձեալ աշխարհը կ'երթամ. վասն զի վրաս մեծ խնամք ու գութ ցըցուցիր։ — Ես վրադ ի՞նչ խնամք ունեցեր եմ» զարմանալով մը հարցուց բանտապետը. «Քրիստոս քեզի հատուցանէ, ըսաւ Վահան. վասն զի ես վաղուան օրը պիտի մեռնիմ»։

Խօսքն ալ կատարուեցաւ. երկրորդ օրը ամիրապետը առջևը բերել տուաւ Վահանը ու հարցուց իրեն թէ «Խելքդ գլուխդ եկա՞ւ»։ Երանելի նահատակը աներկիւղ կերպով մը պատասխան տըւաւ. «Ճշմարտութիւնը մէկ է, ըսաւ, ու ես շնորհակալ եմ Աստուծոյ որ անոր հասնելու արժանի ըրաւ զիս. դաւանած հաւատքս խենթութիւն չէ, հապա բուն իմաստութիւն. անոր համար քու ամէն պարգևներդ ու հրապուրողական խօսքերդ՝ աչքիս առջևը բան մը չեն երևնար. ու ես չեմ կրնար քեզի հնազանդելու համար՝ Աստուծոյ խօսքը ոտքի տակ առնուլ, և այս սուրբ հաւատքս թողուլ»։ Ամիրապե-

տը բարկութենէն կրակ կտրեցաւ, ու հրամայեց որ շուտով սպաննեն զինքը. քովի եղողներն ալ նոյնը կը կրկնէին. «Չենք կրնար դիմանալ, կ'ըսէին, անոր մեր դենիցը դէմ հայհոյանացը»: Դահճապետը սպանման տեղը տարաւ զինքը, ու հոն ալ նորէն կը յորդորէին որ այն վերջի վայրկենին խելքը գլուխը ժողվէ, ու պնդագլուխ յամառութիւնը թողու: Բայց երանելին Վահան ուրախութեամբ կ'երթար սպանման տեղը, մխիթարութիւնը անոր վրայ հաստատած ըլլալով, որ խաբէական աշխարհիս անթիւ նեղութիւններէն պիտի ազատի, ու երթայ իր երկնային և յաւերժական հայրենիքը: Գլխատման տեղն որ հասաւ, ուրախութեամբ ծնկան վրայ եկաւ Քրիստոսի քաջ նահատակը. «Շնորհակալ եմ, ըսաւ, Աստուած իմ՛ և փրկիչ, որ սրտիս հառաչանքը և աչացս արտասուքը հաճեցար ընդունել, և քու անուանդ համար մեռնելու մեծ պարգևին զիս արժանաւորեցիր. յիշէ զիս Աստուած իմ, և բաց ինծի արքայութեանդ դռները, որպէս զի անվախճան կենաց մէջը քու սիրելեացդ հետ մէկտեղ դասաւորուիմ. բոլոր քրիստոնեայքը քու սուրբ և ուղիղ հաւատոցդ մէջ հաստատ պահէ»: Ան ատենը դահճապետը սուրը մերկացաւ, ու Վահանայ ցուցընելով, «Ահաւասիկ ատենը հասեր է, ըսաւ, քու ձեռքդ է մեռնիլդ կամ ապրիլդ»: Պատասխան տուաւ Վահան. «Քրիստոսի համար մեռնիլը ամէն բանէն աւելի քաղցր է ինծի». ուստի մէկէն սուրբ նահատակին գլուխը կտրեցին:

Այս կերպով եղաւ երանելւոյն վահանայ պանծալի նահատակութիւնը Քրիստոսի 738 թուականին, և թէպէտ անոր վկայական մահը մեծ սուգ և միանգամայն մեծ ուրախութիւն եղաւ բոլոր Դամասկոս եղած հաւատացելոց, սակայն չէին կրնար սրբոյն պատուական մարմինը վերցընել՝ ամիրապետէն դրուած խիստ հրամանին պատճառաւը: Բայց նոյն գիշերը երկնաւոր տեսլեամբ մը ամիրապետը վախնալով՝ հրամայեց որ կարենան վահանայ մարմինը վերցընել հաւատացեալք, և ուզածնուն պէս պատուով թաղեն: Մահուան մօտեցած հիւանդ մը կար Դամասկոս քաղաքը, որ աղաչեց վահանայ սուրբ նշխարացը զինքը մօտեցընելու, որով մէկէն առողջացաւ: Ուրիշ մըն ալ բարձր տեղէ վար իյնալով՝ երբոր ամէնքը ողբալ սկսան կարծելով թէ մեռած ըլլայ, անիկայ մէկէն ոտք ելաւ «Մի՛ վախէք, ըսաւ, բան չկայ. վասն զի աչքովս տեսայ ես զսուրբն վահան՝ որ իյնելու ատենս կը պաշտպանէր ինծի»:



# ՍՈՒՐԲ ՄԻՆԱՍ

Աթենացի էր այս մեծազգի ու հռչակաւոր սուրբը, և իր խելքին ու հանճարոյն համար ամենուն առջևը պատուական ու մեծարոյ։ Ան ատենները, այսինքն Քրիստոսի 300 թուականին, Աղեքսանդրիա քաղքին մէջ մեծ խռովութիւն մը ելաւ, և Մաքսիմիանոս Հռովմայեցւոց կայսրը թէպէտև ամէն ջանք ըրաւ անոր դէմը առնելու, բայց բոլորը փուճի գնացած տեսնելով՝ այս սուրբն Մինասը անոնց խրկեց որ իր իմաստուն ճարտասանութեամբը համոզէ զիրենք խաղաղութեան ետևէ ըլլալու։ Գնաց Մինաս Աղեքսանդրիա, և ամէն բան կարգի դնելէն ետքը, թագաւորին իմացուց իրեն ձեռքով եղած խաղաղութիւնը. ան ալ Աղեքսանդրիա քաղքին վերակացութիւնը անոր յանձնեց։

Քրիստոնեայ էր Մինաս, բայց չէր ուզեր որ առջի բերան ուրիշները իր ի՞նչ հաւատքի տէր մարդ ըլլալը իմանան. սակայն կամաց կամաց ինքզինքը յայտնել սկսաւ, և Քրիստոսի անուամբը հրաշքներ ու բժշկութիւններ ալ կ՚ընէր. ետքը կուռքերն ու կռատունները կործանել սկսաւ։ Աղեքսանդրիա քաղաքին քրմապետը այս բաները որ տեսաւ,

մէկէն Թագաւորին Թուղթ գրեց թէ տես ի՛նչ տեսակ մարդ մը առեր իշխանապետ դրեր ես։ Մաքսիմիանոս երբոր քրմապետին գրած թուղթը կարդաց շատ զայրացաւ. ու Երմոգինէս անունով աթենացի հռչակաւոր և ուսումնական իշխանը խրկեց, որ երթայ Մինասայ ըրածները քննէ, ու պատշաճ կերպով զինքը խրատէ։ Երմոգինէս ճամբայ ելլելուն առջի գիշերը տեսիլք տեսաւ, որ իրեք փառաւոր մարդիկ իրեն երևցած՝ «Ելիր Աղեքսանդրիա գնա, կ'ըսէին, որ ճշմարտութիւնը ճանչնաս, և ուրիշներուն ալ հոգւոյն փրկութեանը պատճառ ըլլաս»։ Երկրաւոր իշխանութեանց յայտնի նշանակ մը կարծեց Երմոգինէս այս տեսիլքը. և սկսաւ աւելի փութով մը իրեն յանձնուած գործը կատարելու ետևէ ըլլալ։

Աղեքսանդրացիք երբոր իմացան թէ Երմոգինէս անուանի փոխարքան իրենց քաղաքը պիտի գայ, մեծ հանդիսով իրեն դիմացը ելան. Երմոգինէս ալ գնաց Թագաւորական պալատը իջաւ։ Նոյն գիշերը Մինաս՝ փոխարքային ներկայացաւ, ու անոր պէտք եղած պատիւը տալէն ետքը, «Համարձակութեանս ներէ, ըսաւ, իշխանդ մեծ. կը խնդրեմ իմանալ թէ ի՛նչ պատճառաւ այս քաղաքը եկար»։ Երմոգինէս «Վաղը կ'իմանաս, ըսաւ, հոս գալուս պատճառը»։

Վաղուան օրը հրաման ըրաւ փոխարքան, որ ամէնքը գան ժողվուին, Մինասայ դատաստանը կտրելու համար. և երբոր բոլոր

քաղաքը հոն ժողվուեցան, Երմոգինէս հրամայեց որ առաջ անցնի Մինաս, ու հարցուց իրեն, թէ «ի՞նչ բան է որ մեր թագաւորին ականջը հասեր ու զինքը խռովեր է. յիրաւի քրիստոնեա՞յ ես և աստուածները կ'արհամարհե՞ս»: Մինաս անվախ համարձակութեամբ մը իր հաւատքը դաւանեցաւ, և աստուածուսոյց իմաստութեամբը զամէնքը զարմացուց. անանկ որ բարձրաձայն աղաղակել սկսան թէ «Քրիստոնէից աստուածն է ճշմարիտ աստուածը»: Երմոգինէս այս զարմանալի փոփոխութիւնը տեսնելով՝ շատ վախցաւ, ու հրամայեց որ ամէն մարդ իր բանին գործին երթայ. իսկ ինքը երկրորդ օրը նորէն առջևը կանչել տուաւ Մինասը, ու սկսաւ աղաչանքով ու սպառնալեօք յորդորել զինքը, որ մտիկ ընէ իրեն ու Քրիստոսի հաւատքը թողու. բայց երբոր տեսաւ թէ անիկայ իր մտքին վրայ հաստատուն կեցեր է, ոտիցը ներբանքը կտրել տուաւ, աչուըները փորեց, լեզուն ալ արմատէն կտրեց. ու հրամայեց որ վերցընեն զերանելին ու առնուն բանտ դնեն:

Բանտին մէջ երբոր մեռելի պէս ընկեր էր սուրբն Մինաս, մէյմըն ալ չորս կողմէն բանտը լուսաւորուեցաւ, ու Քրիստոս տէրն մեր իր սիրելի ծառային քովը իջնալով՝ մխիթարեց զինքը ու զօրացուց, ու բոլոր վէրքերը բժշկեց. ետքը դարձաւ, «Մի՛ վախեր, ըսաւ, Երմոգինէսն ալ որ քեզի թշնամի ու հակառակորդ կը կարծես, ինքն ալ քու օրինակին պիտի հետևի՝ իմ սուրբեցուցած սուրբ հաւատքս ընդունելով»:

Երմոգինէս փոխարքան ալ Մինասայ վրայ մեծ գութ ու սէր ունենալով, շատ զղջացեր էր անոր դէմ ցուցըրած անգթութեանը վրայ, ու արտմութենէն նոյն գիշերը քունն ալ չէր տարած։ Վաղուան օրը հրամայեց որ անոր մարմինը դուրս հանեն որ վրան ողբայ, ու մեծ հանդիսով թաղել հրամայէ. վասն զի հաստատութեամբ միտքը դրած էր թէ այնպիսի տանջանքէ ետքը Մինասայ ապրիլը անհնարին է։ փոխարքային պաշտօնէիցմէ հինգ հոգի բանտը գնացին ու ապշեցան մնացին երբոր տեսան թէ ի՛նչպէս Մինաս երանելի վկային ողջ առողջ կեցեր է ու քովն ալ երկնային հոգիներ իջեր ու անոր սպասաւորութիւն կ՚ընեն. ուստի մէկէն երանելոյն ոտքը ինկան ու լալով Քրիստոսի սուրբ հաւատքը ընդունեցան։ Դատաւորը տեսնելով թէ խրկած մարդիկը ետ դառնալու կ՚ուշանան, անոնց տեղ ուրիշներ խրկեց որոնք բանտն եկան ու Մինասայ աղաչեցին որ ելլէ թատրոնը գայ որ ամէնքը քրիստոնական հաւատոյ զօրութիւնը իմանան։ Քաջ նահատակը մտիկ ըրաւ անոնց, և ուրախութեամբ ելաւ թատրոնը գնաց ու Երմոգինէս փոխարքային հետ պագտուելով «իմ Աստուծոյս զօրութիւնը ճանչցիր, ըսաւ, տէր իմ. տես թէ երեկուան օրը չարչարանքներովդ զիս ի՛նչ վիճակի մէջ ձգեցիր, ու հիմա իմ փրկիչս ի՛նչպէս բժշկեց զիս»։

Երբոր Մինաս խօսքը լմնցուց՝ ամէնքը սկսան աղաչել իրեն որ առաջ տանի իր խօս-

քը. «Ինչպէս մեծ է եղեր, կ'ըսէին, քրիս-տոնէից Աստուածը»: Ու երբոր սուրբը խօսիլ սկսաւ, բոլոր ժողովուրդը անանկ ըզմայլած մտիկ կ'ընէր՝ որ 'տեղերնէն հեռանալ ամենեւին չէին ուզեր: Ան ատենը Երմոգինէսի ու բոլոր ժողովրդեան աչքին առջեւը երկընքէն երկու հրեշտակ իջան, ու Մինասայ գլխոյն վրայ հովանի կ'ընէին: փոխարքան երբոր այս տեսաւ, զարմանալով մը կանչեց. «Յիրաւի մեծ է Մինասայ աստուածը. պէտք է անոր միայն հաւատալ. ափսոս ինծի որ ինչուան հիմա սուտ և անշունչ կուռքերը աստուածոց տեղ կը պաշտէի. հիմա ահաւասիկ ճանչցայ ճշմարտութիւնը»: Ու մէկէն աթոռէն վեր ցատքեց, գնաց իր քաղաքակցին՝ երանելույն Մինասայ ոտքը իյնելու, բայց հրեշտակները քովը տեսնելով չհամարձակեցաւ, ու նորէն ետ ետ քաշուեցաւ. ետքը գնաց պագտուեցաւ հետը ու մէկդի տանելով «Մեծ հրաշք մը տեսայ, ըսաւ, այսօր. ուստի ես ալ քու հաւատքդ բոլորով սրտիւ ընդունիլ կ'ուզեմ. վախս միայն այն է՝ չըլլայ թէ զզջումս ընդունելի չըլլայ Աստուծոյդ, ինչուան հիմա կուռքերը պաշտելուս համար: — Այդ բանը մտքէդ ալ մի' անցըներ, պատասխանեց Մինաս, վասն զի մեր աստուածը մարդասէր է ու ողորմած. ինքը ինծի յայտնեց քու դարձդ ու փրկութեան հասնիլդ»: Երմոգինէս դատաւորը պատուիրեց ժողովրդեան որ տուներնին քաշուին, ու երկրորդ օրը նոյն թատրոնը գան դարձեալ

ժողվուելու. իսկ ինքը բոլոր գիշերը Մինասայ հետ անցուց՝ հաւատոց համար պէտք եղած բաները իրմէն սորվելով։

Երկրորդ առտուն եպարքոսին հրամանաւը ամէնքը եկան թատրոնը ժողվուեցան. ան ատեն Երմոգինէս ոտք ելաւ ու ամենուն առջեւը իրեն Քրիստոսի հաւատքը ընդունելը խոստովանեցաւ. իրեն հետ ժողովրդեան մեծ մասն ալ բարձրաձայն աղաղակել սկսան թէ «Մինասայ հաւատքն է ճշմարիտը, ու մենք ալ անոր կը հաւատանք»։ Եւ որովհետեւ ժողովելոց մէջը եպիսկոպոսներ ալ կային, Մինաս իր Եւգրափոս անունով դպրապետը խրկեց որ երթայ ջուր բերէ հաւատացեալքը մկրտել տալու համար. Երմոգինէս եպիսկոպոսաց առջեւը գնաց ծընկան վրայ եկաւ՝ ու սուրբ մկրտութիւնը կը խնդրէր անոնցմէ։

Մկրտութեանը վրայ քանի մը օր անցնելէն ետքը, նոյն սուրբ եպիսկոպոսները երանելի փոխարքային իրենց վիճակակից ըրին, եպիսկոպոսութեան մեծ աստիճանին արժանի ընելով։ Երմոգինէս ալ ունեցածը չունեցածը բոլոր աղքատաց բաժնեց, եւ սրբոյն Մինասայ ու Եւգրափոսի հետ մէկ եղած՝ քրիստոնէական սուրբ կրօնքը ծաւալելու ետեւէ ինկաւ։

Բուստիկոս անունով աղեքսանդրացի հեթանոս մը աս ամէն եղած բաները տեսնելով՝ գնաց մէկէնիմէկ բոլորը տեղն ի տեղը Մաքսիմիանոս թագաւորին հասկըցուց. «Աս-

տուածոց բոլոր մեհեանները կործանեցին քանդեցին, ըսաւ, ու հրաման տուին որ խաչելեալ Աստուած մը պաշտեն ամէնքը»։ Կայսրը աս որ լսեց՝ բարկութենէն կրակ կտրեցաւ, ու տասն հազար հոգի հետը առնելով՝ ելաւ Եգիպտոս գնաց, ու Երմոգինէսն ու Մինասը մէկէն բռնել տուաւ. ու ինքը հրապարակի մէջ նստած քովը կանչեց զանոնք. ու Երմոգինէսի դառնալով, «Խելքդ կորսընցուցիր ի՞նչ եղար ըսաւ. ինծմէ այսչափ պատիւ տեսնելէն ու այսչափ փառք ստանալէն ետքը՝ ո՞յս փոխարէնը պիտի ընես եղեր իմ սիրոյս. Քրիստոնէից հաւատքին ի՞նչ բանին հաւնեցար, որ մէկէն մեր աստուածները թողուցիր»։ Երմոգինէս երբոր թագաւորին խօսքին պատասխան տալ կ՚ուզէր, նոյն հրեշտակները որ Մինասայ վրայ երեցեր էին, եկան դարձեալ Երմոգինէսի հովանաւորութիւն ընելու, ու սկսան քաջալերել զինքը որ ամենևին չվախնայ։ Ան ատեն Երմոգինէս դարձաւ Մաքսիմիանոսի, ու «Տէր թագաւոր, թէ որ իմանալ կ՚ուզես, ըսաւ, թէ ի՞նչ բանէ շարժած Քրիստոսի հաւատքը ընդունեցայ, այս բազմութիւնը թող իմ տեղս խօսի. ինք քեզի պատմէ՝ թէ ի՞նչ աստիճանի կոյր նախանձայուզութեամբ մը վառուած՝ եկայ Աղեքսանդրիա քաղաքը, Քրիստոսի տեառն իմոյ Մինաս երանելի նահատակը դատելու համար. ոտուըները կտրել տուի, աչուըները փորեցի, լեզուն ալ արմատէն կտրեցի. միտքս դրեր էի՝ երկրորդ օրը գազանաց և շանց

տուջևը ձգել անոր մեռեալ մարմինը։ Մէյմ՛ ալ ինչ տեսնեմ. բոլորովին առողջացուցեր էր զինքը՝ Քրիստոս տէրն մեր։ Հիմա ինչպէս կը յորդորես զիս որ այսպիսի աստուած մը պաշտելէն ետ կենամ. բայց գիտցիր թագաւոր, որ Աստուծոյ շնորհքովը իմ հաւատքիս մէջ անշարժ պիտի մնամ. ի՛նչ տանջանքներով որ կ՚ուզես՝ զիս չարչարէ, անհնարին է որ երկրաւոր կեանքը վայելելու համար՝ յաւիտենականն ու անանցը ոտքի տակ առնում։

Մաքսիմիանոս թագաւորը աս խօսքերս լսելով բարկութենէն ինքզինքը կ՚ուտէր. ուստի մէկէն աթոռէն վեր ցատքեց ու ինքիր տիգովը սուրբն Երմոգինէսը վիրաւորեց, ու ոտուըները կտրելով՝ հոն մօտ եղած գետը նետել հրամայեց. սուրբ Մինասն ալ մութ բանտի մը մէջ արգիլել տուաւ, և ոտուըներէն ծանր քար մը կապելով՝ խստիւ պատուիրեց որ ամենևին չթողուն որ քովը մարդ մտենայ. Աղեքսանդրիա քաղաքն ալ իր մեծութենէն ու փառքէն ձգել հրամայեց. «Ահաւասիկ Մինաս բանտին մէջ անօգնական ու խեղճ մնացեր է, ըսաւ. Երմոգինէսն ալ գետը նետեցինք. դուք ալ ձեր փառքէն պիտի իյնաք՝ անոնց քարոզած վարդապետութեանը ականջ կախելնուդ համար»։

Բայց նոյն գիշերը հրեշտակք երանելոյն Երմոգինէսի մարմինը գետէն հանեցին, ու Մինասայ բանտը բերելով՝ երկուքն ալ առողջացուցին. և ինչուան առտու անոնց հետ

էին. կը քաջալերէին զիրենք ու կը մխիթարէին. «Ամենեւին մի՛ վախնաք, մենք միշտ ձեր հետն ենք» կ'ըսէին։ Թագաւորը երբոր երկրորդ առտուն աս ամէն բաները լսեց ու տեսաւ, զարմանալէն ապշեցաւ մնաց. ու սրբոյն Եւգրափոսի բերնէն ալ աստուածոց և իրեն դէմ նախատինքներ լսելով՝ մէկէնիմէկ գլխատեց զերանելին իր ձեռքովը. ու մէկալ երկուքն ալ նոյնպէս գլխատել տուաւ։ Մահուընէն առաջ խնդրեց իրմէ սուրբն Մինաս որ մարմինը Բիւզանդիոն քաղաքը թաղել տայ. բայց թագաւորը միտք չըրաւ, ու երկըթէ սնտուկի մը մէջ դնելով անոր մարմինը՝ ծովը ձգել հրամայեց։ Քանի օրուընէ ետքը սրբոյն տապանը Բիւզանդիոն քաղաքը հասաւ, և եպիսկոպոսը տեսլեան մէջ հրեշտակէն հրաման առնելով՝ գնաց ու սրբոյն պատուական նշխարքը մեծ հանդիսով ամփոփել տուաւ։

Սրբոյն Մինասայ և իր ընկերացը զօրաւոր բարեխօսութեամբն եղած հրաշքները խիստ շատ են. բայց մենք քանի մը հատը յիշատակելով գոհ ըլլանք։

Կոստանդիանոս բարեպաշտ կայսեր օրովը երբոր Քրիստոսի հաւատքը ամէն տեղ ծաւալեցաւ, Աղեքսանդրացիք ալ ի յիշատակ և ի պատիւ սրբոյն Մինասայ՝ հռչակաւոր եկեղեցի մը շինեցին։ Ան տեղները հարուստ վաճառական մը Աղեքսանդրիա քաղաքը գալով՝ երբոր լսեց սրբոյն Մինասայ հրաշքները, «Կ'ուզէի ես ալ, ըսաւ, իրեն վկայարանը երթալ, ու քանի մը յիշատակներ

տալով՝ Աստուծմէ իմ գործոցս յաջողութիւն խնդրել»։ Ուստի հետը շատ մը ստակ առնելով ճամբայ ելաւ սրբոյն վկայարանը երթալու. սակայն գիշերը վրայ հասնելով՝ ուզեց պանդոկի մը մէջ հանգչիլ՝ ու երկրորդ առտուն նորանց իր ճամբան շարունակել։ Պանդոկապետը ասոր հարստութիւնը տեսնելով՝ անօրէն խորհուրդ մը մտածեց, ու գիշեր ատեն ելաւ խեղճ վաճառականը սպաննեց. և որպէս զի ըրած չարութիւնը մարդ չիմանայ՝ կտոր կտոր ըրաւ անոր մարմինը, և կ՚ուզէր բոլորը մէկէն լիճը ձգել. բայց օրը լուսնալով՝ չկրցաւ բան մը ընել։ Մէյմ՚ալ սուրբն Մինաս ձիաւորի կերպարանքով վրայ հասաւ, թագաւորէն խրկուած մարդ մը ձևացընելով ինքզինքը։ Պանդոկապետը վախէն ի՛նչ ընելիքը չգիտնալով՝ առաւ սպաննած մարդուն գլուխը՝ զամբիւղի մը մէջ դրաւ ու ձեղունէն կախեց։ Սուրբն Մինաս պանդոկապետին դառնալով «Շիտակն ըսէ, ըսաւ, ո՛ւր է այն մարդը որ երէկ իրիկուն հոս եկաւ հանգչելու համար»։ Պանդոկապետը «Հոս մարդ մը չեկաւ» ըսաւ։ Ան ատեն սուրբն Մինաս «Թէ որ խոստովանիլ չես ուզեր, ըսաւ, ճշմարտութիւնը, հիմա ես զինքը քու պանդոկիդ մէջ պիտի գտնեմ». ու մէկէն զամբիւղը վար առաւ, ու սպաննուած մարդուն մարմինը ցըցուց անոր։ Պանդոկապետը տեսնելով որ չարութիւնը իմացուեցաւ, ընկաւ սրբոյն ոտքը ու ցաւագին արցունքով աղաչել սկսաւ որ ներէ իրեն. «Ոսկւոյն սէրն էր,

ըսաւ, որ զիս կուրացուց. հիմա իմէն գող-
ցած բոլոր ստակը քեզի կը դարձընեմ,
վրան ալ իմ ունեցածէս հարիւր դահեկան
աւելցընելով, միայն խնդրեմ որ ծածուկ
պահես ըրած յանցանքս»: Սուրբն Մինաս
պատասխանեց իրեն. «Զղջա՛ ըրածիդ վրայ,
ու յանցանքիդ կը ներեմ» ըսաւ: Պանդո-
կապետը լալով «ի՛նչ որ կը հրամայես՝ մտա-
դիւր կը կատարեմ», ըսաւ. ու թէ որ զիս
թագաւորին ձեռքէն խալըսես, կ'երթամ
սրբոյն Մինասայ տաճարը կրօնաւոր ըլլալու
համար»: Ան ատեն սուրբն Մինաս անոր
սրտանց զղջումը տեսնելով՝ զամբիւղը մէջ-
տեղը բերել տուաւ. ու ինքն ալ ծընկան վրայ
եկած՝ երկար ատեն աղօթք ընելէն ետքը՝
դարձաւ սպաննուած մարդուն, ու հրամայեց
իրեն որ յանուն Յիսուսի Քրիստոսի ողջըն-
նայ, «Որպէս զի դուն ալ ճանչնաս, կ'ըսէր,
թէ ես եմ Քրիստոսի ծառան սուրբն Մի-
նաս»: Մէկէն սպաննուած մարդը ոտք ելաւ,
ու սրբոյն ոտքը իյնելով՝ սկսաւ շնորհակալ
ըլլալ իրեն որ այնպիսի խորունկ քնէ մը
արթընցուց. վասն զի գլխուն եկած բաները
ամենեւին չէր իմացած, պանդոկապետն ալ
ամենեւին ձայն չհանեց. իսկ սուրբն Մինաս
օրհնեց զիրենք ու աներեւոյթ եղաւ: Պանդո-
կապետը գողցած ստակը վաճառականին դար-
ձընելով՝ ինքն ալ սրբոյն Մինասայ խոստա-
ցած հարիւր դահեկանը տուաւ, ու եղան
երկուքը մէկտեղ սրբոյն Մինասայ վկայա-
րանը գնացին՝ իրենց ուխտը կատարելու

համար։ Այն ատեն պանդոկապետը իր յանցանքը ամենուն առջև խոստովանեցաւ, ու թէ ի՛նչպէս սրբոյն Մինասայ հրաշքովը սպաննուած մարդը յարութիւն առաւ. ու հինգ տարի կրօնաւորական խստամբեր կեանք անցընելէն ետքը՝ սրբութեամբ վախճանեցաւ։

Եւտրոպիոս անունով հարուստ աղեքսանդրացի մը ուզեց երկու արծըթէ սկուտղ շինել տալ, մէկը իրեն՝ մէկալն ալ սրբոյն Մինասայ վկայարանին ընծայ ընելու համար. ուստի արծաթագործը կանչեց ու պատուիրեց իրեն որ երկու սկուտղ շինէ մէկմէկու նման. մէկուն վրայ իր անունը գրէ ու մէկալին վրայ ալ սրբոյն Մինասայ անունը։ Արծաթագործը երբոր շինեց լմընցուց՝ Եւտրոպիոս տեսաւ որ սրբոյն համար շինուածը աւելի փայլուն ու գեղեցիկ էր. ուստի միտքը դրաւ որ իրենը սրբոյն տայ ու մէկալը իր գործածութեանը պահէ, ու երբոր մեռնի՝ սրբոյն վկայարանին թողու։ Ուստի այս մտքով նաւ մտաւ՝ Մինասայ տաճարը երթալու. կերակրէն ետքը ծառան արծըթէ սկուտղը առաւ նաւուն քովը տարաւ լուալու համար. բայց ալիք մը եկաւ լուալու ատենը, ու այն անօթը ծառային ձեռքէն խլեց տարաւ. խեղճը յայտնի գիտնալով թէ տիրոջմէն ինչեր պիտի քաշէ այն բանին պատճառաւը, յուսահատութենէն ինքզինքը ծովը ձգեց։ Եւտրոպիոս այս խեղճ դիպուածն որ տեսաւ, յայտնի իմացաւ թէ Աստուծոյ պատիժն է որ կը քաշէր, սրբոյն Մինասայ տաճարին

խոստացած անօթը իրեն համար գործածելուն պատճառաւը. ուստի ուխտեց սրբոյն որ ուրիշ երկու սկիհ ալ կ'ընծայէ թէ որ արժանի ըլլայ իր ծառային մարմինը գտնելու և զինքը թաղելու։ Երկրորդ օրը երբոր նաւահանգիստը հասան, Եւտրոպիոս աչքերը ասդին անդին կը պտըտցընէր՝ ծառային մարմինը տեսնելու համար. ու երբոր նաւավարները ըրածին վրայ կը զարմանային. «Աստուծոյ վրայ յոյս ունիմ, կ'ըսէր, որ սրբոյն Մինասայ բարեխօսութեամբը՝ արժանի պիտի ընէ զիս այս շնորհքին»։ Աս զրուցելու ատենը մէյմ'ալ տեսաւ որ իր ծառան ծովուն մէջ լողալով դէպ ի ցամաքը կուգար. տէրը ուրախութենէն ինչ զրուցելիքը չգիտնալով՝ ցամաքը հասաւ չհասաւ՝ գնաց իր ծառային գիրկը ընկաւ ու կը հարցընէր թէ ինչպէս ազատեցար ծովէն։ «Ծովուն մէջ ընկած ատենս, պատասխանեց ծառայն, լուսաւոր մարդ մը տեսայ՝ որ հետը եղած երկու մարդիկներուն հրամայեց որ զիս բռնեն ու չթողուն որ խեղդուիմ. անոնք էին որ զիս ինչուան այս տեղս բերին», ըսաւ։ Ամէնքը իմացան թէ սուրբն Մինաս եղած պիտի ըլլայ այն լուսաւոր մարդը. ուստի ծառային տէրը ելաւ ուրախութեամբ անոր վկայարանը գնաց, և իրեն խոստացածներէն զատ ուրիշ առատ ընծաներ ալ պարգևելով սրբոյն, ուրախութեամբ իր տունը դարձաւ։

Աղեքսանդրիա քաղաքին մէջ երկու վաճառական կային մէկմէկու սրտակից բարե-

կամ, որոնցմէ մէկը քրիստոնեայ էր, մէկալը հրէայ։ Եղաւ որ հրէան ուզեց ճամբորդութիւն մը ընել, ուստի իրեն ստակները իր բարեկամ վաճառականին յանձնեց։ Ստակին սէրը քրիստոնէին վրայ զօրացաւ, ու բարեկամութիւնը ոտքի տակ առնելով՝ կնոջը հետ խորհուրդ ըրաւ, որ հրէին ստակը մէջ խառցընեն՝ վկայ մը չունենալուն համար. «Երդուըննալ տալու ալ ըլլայ, ըսաւ, սիրով կ'երդնումք. վասն զի հրէան խաբելը մեղք չէ»։ Հրէայ վաճառականը ճամբորդութենէն դառնալով՝ ընծաներ խրկեց իր բարեկամին, և խնդրեց որ քովը ունեցած պահեստը ետ դարձընէ։ Քրիստոնեան դարձաւ «Քովս բան չկայ, ըսաւ, ես քեզի ի՞նչ ետ դարձընեմ»։ Հրէան տեսաւ որ վկայ չկայ մէջտեղը ու փուճ տեղը խօսքը պիտի երկըննայ ու հակառակութիւն և կռիւ ծագի մէջերնին. անոր համար յորդորեց քրիստոնեան որ ելլեն երկուքը մէկտեղ սրբոյն Մինասայ տաճարը երթան՝ հոն երդուըննալու համար. «Լսեր եմ, ըսաւ, որ ստերդումները կը պատժէ սուրբն Մինաս. թէ որ երդուընցար ու գլխուդ փորձանք մը չեկաւ, քեզի ըլլայ ստակը»։ Քրիստոնեան սիրով յանձն առաւ այս պայմանը, ու ելան սրբոյն Մինասայ վկայարանին դրանը առջևը գնացին. Հրեան կը խրատէր իր բարեկամը որ փուճ տեղը մեղք չմտնէ. «Ըստակս ինծի դարձուր, կ'ըսէր, ես քեզի փոխարէնն ընելու չեմ մոռնար». բայց քրիստոնեան միտք չըրաւ, ու մտաւ ժամուն մէջ

և երդուըննալով դուրս ելաւ։ Այն ատենը երկուքը նորէն ձիերնին հեծան, ու ետ դառնալու ատեննին՝ քրիստոնեան ձիէն վար ընկաւ, ու առանց իրեն իմանալուն՝ գրպանէն դետին ձգեց այն սնտուկին բանալին, որուն մէջ Հրեայէն գողցած ստակն էր։ Քիչ մը առաջ երթալէն ետքը ձիերնէն վար իջան կերակուրնին ուտելու. բայց Հրեայն սկսաւ ինքիր վրայ ափսոսալ. «Ինչու համար, կ՚ըսէր, Մինասայ բարեխօսութեանը ապաւինեցայ, որ զիս այսպէս ամօթով ձգեց»։ Աս զրուցելու ատենը տեսաւ որ քրիստոնեայ վաճառականին ծառան՝ Հրէին քսակը ձեռքն առած քովերնին եկաւ։ Տէրը հարցուց իրեն թէ ուսկի՞ց կամ ի՞նչ պատճառաւ հոս եկար. «Տէր իմ, պատասխանեց ծառայն, փառաւոր հեծեալ մը եկաւ քու տունդ, և խաթունիդ ցուցընելով այս մատանին ու բանալին՝ հարցուց իրեն թէ կը ճանչնա՞ս որունն են ասոնք։ Ու երբոր անիկայ կը ճանչնամ ըսաւ, Էրկանդ հրամանն է, պատասխանեց ձիաւորը որ սընտուկին մէջէն հանես Հրեայէն գողցած ստըկին քսակը, ու ծառայիդ ձեռքովը անոր հասցընես. ապա թէ ոչ, Աստուծմէ պիտի պատժուիս, ըսաւ»։ Հրեան աս որ լսեց՝ ուրախութենէն ոտք ելաւ «Յիրաւի մեծ է, աղաղակեց, քրիստոնէից աստուածը ու իր սուրբ ծառայն Մինաս. ես ալ նոյն ճշմարիտ հաւատքը կ՚ընդունիմ, ըսաւ». ու նորէն սրբոյն վկայարանը դառնալով՝ ստըկին երրորդ մասը անոր պարգևեց, ու ետքը դարձաւ քրիստոնեայ եղաւ։

# ԵՒՍՏՐԱՏԻՈՍԵԱՆՔ

Դիոկղետիանոս կայսեր հալածանաց օրերը Կապադովկիա քաղաքը Լիւսիաս անունով իշխանապետ մը եկաւ կայսերական հրամանով բոլոր քրիստոնեայքը դատելու և չարչարելու համար։ Իրեն պաշտօնէից մէջ Եւստրատիոս անունով հայազգի արօրկացի բարեպաշտ ու աստուածասէր իշխան մըն ալ կար, որ քանի որ քրիստոնէից հալածանքը և անոնց հեթանոսներէն քաշած նեղութիւնները կը տեսնէր, սիրտը կտոր կտոր կ'ըլլար, ու արտասուօք կը խնդրէր Աստուծմէ որ քաղցրահայեաց ըլլայ իր ծառայից վրայ, ու այնպիսի դառն ժամանակի մը մէջ զանոնք երեսէ չձգէ։ Մէկ կողմանէ ալ՝ Աստուծոյ սիրովը վառուած ըլլալով՝ կը փափաքէր անոնց նահատակակից ըլլալ, ու Քրիստոսի համար արիւնը թափել։ Այն պատճառաւ իր հաւատարիմ ծառաներէն մէկը իրեն կանչեց, ու իշխանական գօտին ու պատիւները անոր տալով «Աս ամէն բաները Արօրկա քաղքին եկեղեցին տար, ըսաւ, ու առանց մէկու մը գիտնալուն՝ խորանին վրայ դիր, ու դուն ժամուն մէջը պահուըտէ. երբոր տեսնես թէ

Օքսենտիոս երանելի քահանայն անունք վերցուց, թող տուր ու ինծի դարձիր․ բայց թէ որ ուրիշ մը վերցընէ, չըլլայ որ անոր քովը թողուս»։ Միտքը դրեր էր երանելին Եւստաթիոս որ՝ եթէ Օքսենտիոս քահանան ըլլայ վերցընողը, ըսել է թէ հաճոյ է Աստուծոյ իրեն համար մարտիրոսական արիւն թափելու փափաքը։ Ծառան Արօրկա քաղքէն դառնալով՝ պատմեց Եւստաթիոսի թէ ինչպէս գօտին սեղանին վրայ դրած ատենը, մէկէն հոն հասաւ Օքսենտիոս քահանան, ու անոր իշխանական գօտին վերցուց։

Եւստաթիոս երբոր աս բանս լսեց, անպատում բերկրութիւն մը զգաց սրտին մէջ. մէկէն իրեն բարեկամները կերակրի հրաւիրեց իր տունը, ու անոնց անսովոր ուրախութիւն մը կը ցուցընէր, որուն պատճառը բազմականքն ալ չէին կրնար իմանալ։ Ան ատեն իշխաններէն մէկը Եւգինէոս անունով համարձակեցաւ, ու «Տէր իմ Եւստաթիոս, ըսաւ, ի՞նչ պիտի ըլլայ այսչափ ուրախութեանդ պատճառը. մի՛թէ անո՞ր համար որ վաղուան օրը Լիւսիաս հրամայեր է բոլոր քրիստոնեայքը դառն տանջանքով սպաննելու, և միտքդ դրեր ես թէ մեծ բաներ պիտի վաստըկիս այն պատճառաւը։ — Վաղը կը տեսնես, ըսաւ Եւստաթիոս, իմ անկապուտ փառքս ու մեծամեծ շահերս»։

Երկրորդ օրը քաղաքին մէջ մասնաւոր տեղ պատրաստել տուաւ Լիւսիաս դատաւորը, և հրամայեց որ բոլոր քաղաքը հոն ժողվուի,

ու երբը ինքն ալ գալով՝ բանտին մէջի եղած քրիստոնեայքը դուրս հանել տուաւ, որոնց մէջ էր նաև Օքսենտիոս քահանան։ Սուրբն Եւստրատիոս աս որ լսեց, մէկէն բանտը վազեց, ու երանելի վկայից աղօթքը կը խնդրէր. «Ես ալ կը փափաքիմ, կ՚ըսէր, այս օրուան օրը ձեզի հետ մահակից ու չարչարակից ըլլալ»։ Անոնք ալ մէկէն ձեռուընին վեր վերցընելով՝ աղօթք ըրին երանելւոյն համար, ու ելան դատաւորին առջևը գացին։ Լիւսիաս հրամայեց որ Օքսենտիոս քահանայէն սկսելով՝ զամէնքն ալ մէկիկ մէկիկ իր առջևը դատաստանի կանչեն։ Եւստրատիոս առաջ անցաւ. «Տէր իմ, ըսաւ, զիս ալ ասոնց հետ մէկտեղ դատէ. վասն զի ես ալ նոյն սուրբ հաւատքը կը դաւանիմ, որուն համար այս երանելիքը այսչափ չարչարանք ու նեղութիւն կը քաշեն. յոյս ունիմ Աստուծոյս վրայ, որ քու հօրդ սատանային հնարած մեքենաները տակն ու վրայ պիտի ընեմ ու զինքը խայտառակեմ»։ Զարմացաւ դատաւորը անոր համարձակութեանը վրայ, և հրամայեց որ մերկացընեն զԵւստրատիոս իրեն իշխանական ու փառաւոր զգեստներէն. երբը դարձաւ իրեն «Նայէ, ըսաւ, Եւստրատիոս, քու ձեռքդ է ապրիլդ կամ մեռնիլդ. զղջա յամառութեանդ վրայ։ — Ճշմարիտ դաւանութեանս վրայ ի՛նչպէս զղջամ» պատասխանեց Եւստրատիոս։ Լիւսիաս անոր ազգը, ցեղը և անունը ուզեց իմանալ. «Հայկազուն եմ, պատասխան տուաւ սուրբը, Ա-

բօրկա քաղքէն. անունս ալ Եւստատիոս կամ Տէր Յուսիկ կ'ըսուի. բայց իմ ճշմարիտ Աստուծոյս ծառան եմ, ու պզտիկուց ի վեր զինքը միայն պաշտել սորվեր եմ»: Լիւսիաս Եւստատիոսի զինուորակիցներէն իմանալով թէ քանըերօթը տարիէ ի վեր ամենայն հաւատարմութեամբ ծառայեր է տէրութեան, վրան կը գթար, ու սիրտը առաջ չէր երթար որ այնպիսի պատուական մարդու մը արիւն մտնէ. ուստի նորէն կը յորդորէր որ մեղքին դրածէն ետ կենայ, ու աստուածոց պաշտօն մատուցանէ. «Ան ատեն մենք ալ կը ներենք, կ'ըսէր, քու համարձակութեանդ, ու նորէն մեծամեծ փառաց կը հասցընենք: — Անշունչ արարածոց ինչպէս կը ստիպես զիս որ զոհ մատուցանեմ, պատասխանեց Եւստատիոս. օր պիտի գայ որ դու ալ անոնց ստութիւնն ու խաբէութիւնը պիտի իմանաս» ըսաւ:

Լիւսիաս բարկացաւ երանելոյն անվախ համարձակութեանը վրայ, ու պատուիրեց դահճաց որ կախեն զինքը ու տակէն կրակ վառեն, մէկ կողմանէ ալ զինքը չարաչար ծեծեն, ստիպելով որ հնազանդի դատաւորին ու աստուածոց երկրպագութիւն ընէ: Սուրբը այն դժնդակ նեղութեան մէջ Աստուծոյ սիրովը մխիթարուած էր, անոր համար և ոչ ձայն մը հանեց և կամ երեսին գոյնը այլայլեցաւ. կարծես թէ ինքը չէր նեղութիւն քաշողը:

Լիւսիաս ապշեցաւ մնաց անոր զարմանալի համբերութեանը վրայ, ու հրամայեց որ տան-

ջնլէն ետ կենան. ետքը ծիծաղելով մը դարձաւ Եւստրատիոսի, «ի՞նչպէս, ըսաւ, հաւնեցա՞ր աս տանջանքներուն, ու նորէն կ'ուզե՞ս նոյն չարչարանքները քաշել։ — Երանի՛ է ինծի, պատասխանեց Եւստրատիոս, թէ որ նորէն զիս չարչարել սկսիս. վասն զի աս աշխարհիս նեղութիւնները ի՞նչ պիտի ըլլան՝ հանդերձեալ փառաց համեմատութեամբը»։ Լիւսիաս իր զինուորներուն դառնալով, «կ'ախորժի, ըսաւ, նեղութիւն քաշելով, ինչո՞ւ համար խեղճին սիրտը կոտրենք. ուստի աղ ու բորակ խառնեցէք քացախի հետ ու անոր մարմնոյն վէրքերուն վրայ դրէք. նայինք թէ գոհ կ'ըլլա՞յ»։ Եւստրատիոս այն տանջանքին մէջ ալ անխռով զուարթամիտ կեցեր էր, և շնորհակալ կ'ըլլար Աստուծոյ։

Դատաւորը նորէն յորդորել սկսաւ որ թողու զՔրիստոս ու անմահ աստուածները պաշտէ. «Մտածէ մէյմը, կ'ըսէր, թէ ինչ պատիւներու և փառաց պիտի հասնիս՝ թէ որ խօսքիս մտիկ ընես. անմտութիւն մըն է առեր անցեր ես, ըսելով թէ իմ աստուածս զիս կը փրկէ. ո՞ւր է, ինչո՞ւ համար չերևնար ինչուան հիմա զքեզ իմ ձեռքէս ազատելու և տալու տանջանքներէս խալըսելու»։ Եւստրատիոս դարձաւ «կը զարմանամ, ըսաւ, ո՛վ դատաւոր, թէ ինչպէս չես կրնար իմ Աստուծոյս զօրութիւնը իմանալ. այդչափ տանջանքներու մէջ կենդանի մնալէս աւելի մեծ հրաշք ի՞նչ կ'ուզես»։

Աս ըսելու ատենը, Եւստրատիոսի վիրաւոր

մարմնոյն վրայէն կեղեւանքն սկսան գետին իյնալ, ու ինքն իր առողջութիւնը ստացաւ. անանկ որ վէրքի և ոչ պզտի նշան մը մնաց վրան։ Ժողովուրդը աս որ տեսաւ՝ ամէնքը միաձայն աղաղակել սկսան թէ «Մ՛եծ է քրիստոնէից աստուածը»։ Դատաւորին զինուորներէն մէկն ալ, այսինքն սուրբն Եւգինէոս՝ Եւստրատիոսի բարեկամը, անոր համբերութիւնը տեսնելով՝ առաջ անցաւ ինքն ալ ու «Ես ալ քրիստոնեայ եմ, ըսաւ, ո՛վ Լիւսիաս. քու աստուածներդ բոլորն ալ սուտ ու դիւական բաներ են»։ Դատաւորը ի՛նչ ընելիքը չգիտնալով՝ պատուիրեց որ երկուքը մէկէն բանտ տանին. «Յարմար ատեն որ գտնենք, երկուքին ալ արժանաւոր պատիժը կուտանք» ըսաւ։

Երկրորդ առտուն Լիւսիաս կ՚ուզէր Նիկոպօլիս քաղաքը երթալ. բայց նախ անձամբ սուրբ վկայից բանտը գնաց, ու միայն երանելին Եւստրատիոսը դուրս հանել տալով՝ ծիծաղելով մը «Բարի տեսանք, ըսաւ, սիրելիդ իմ Եւստրատիոս. ոտքիդ յարմար ագնիւ հողաթափներ բերի, որ դիւրութեամբ կարենաս քալել, և ինծի հետ ուղեկից ըլլալ»։ Հողաթափ ըսածներն ալ՝ սուր գամերով շինուած էր. և դատաւորը իր կնիքը վրան զարկաւ, որ չըլլայ թէ գթայ մէկը անոր վրան ու ոտքերէն հանել ուզէ այն հողաթափները. ետքը մէկալ ընկերներն ալ բանտէն հանեց, ու հրաման տուաւ զօրացը որ քաշելով քաշկռտելով՝ իր ետեւէն բերեն զամէնքն ալ։

Երկու օր ճամբայ ընելէն ետքը Արօրկա քաղքին մօտերը եղած բերդին մէջ քիչ մը հանգչիլ ուզեց Լիւսիաս. ու քաղքին բնակիչքը բոլոր կուգային իրենց երանելի քաղաքակիցը ու անոր ընկերները տեսնելու. բայց Եւստրատիոսի ազգականներէն մէկն ալ չհամարձակեցաւ անոր քովը գալ, վախնալով որ չըլլայ թէ իրենք ալ բռնուին։

Մարդարիոս անունով գեղջուկ բայց աստուածապաշտ ու առաքինակրօն մարդ մը՝ իրեն տանը յարկը նորոգել կուտար ան օրերը. մէյմ՚ալ տեսաւ որ սուրբ վկայքը կ՚անցնէին, ու անոնց մէջ էր նաև իր տէրը երանելին Եւստրատիոս. մէկէն վազեց վար իջաւ, ու իր կնոջը քովն երթալով՝ հայերէն խօսիլ սկսաւ անոր հետ. «Մեր քաղքին իշխանը կը տեսնե՞ս, ըսաւ, ինչպէս Քրիստոսի սիրոյն համար արհամարհեց իր ամէն ունեցածը չունեցածը, և հիմայ մարտիրոս ըլլալու կ՚երթայ»։ Բարեպաշտ կինը «Ի՛նչ կեցեր ես, ըսաւ, տէր իմ. ու ինչո՞ւ չես ուզեր որ դուն ալ անոր նահատակութեան ընկեր ըլլաս, արքայութեան մէջ ինծի ու երկու տղոցդ բարեխօս ու պաշտպան ըլլալու»։ Երանելին Մարդարիոս՝ վառուեցաւ կնոջը քաջալերական խօսքերէն, համբուրեց իր տղաքը, ձեռուըները վեր վերցուց. «Դու տէր ինծի օգնական եղիր, ըսաւ, ու այս տղաքն ալ երբեք մի՛ ձգեր». ու մէկէն ճամբայ ելաւ, և վազելով Եւստրատիոսի ետևէն կ՚երթար. ճամբուն վրայ իրեն գեղակից հարուստ մար-

դու մը հանդիպեցաւ. «Ես ահաւասիկ կ'եր-
թամ, ըսաւ, ճշմարտութեան համար արիւնս
թափելու. ուստի քեզի կը յանձնեմ իմ
տղաքս ու ընտանիքս. քու վարձքդ անդիի
աշխարհին մէջ պիտի ընդունիս Աստուծմէ»։
Երբոր անիկայ ուրախութեամբ յանձն ա-
ռաւ Մարգարիտի առաջարկութիւնը, երա-
նելին անոր ալ վերջին բարեւը տալով, վազեց
գնաց դէպ ի բերդը, և ուրախութեամբ մը
աղաղակել սկսաւ թէ «Տէր իմ Եւստա-
տիոս, ինչպէս ոչխարը իր հովուին, նոյնպէս
ալ ես քու ետեւէդ եկայ՝ քեզի հետ արիւնս
թափելու. իրաւ ես անարժան եմ, բայց
խնդրեմ՝ ընդունէ զիս ալ քու երջանիկ վկա-
յակցացդ թւոյն մէջ»։ Ետքը դարձաւ դա-
տաւորին պաշտօնէիցը, «Ես ալ իմ Եւստա-
տիոս տիրոջս քրիստոնեայ սուրբ հաւատքը
կը դաւանիմ» ըսաւ։ Զինուորները մէկէն
զինքն ալ բռնեցին, ու մէկալ բանտարկելոց
մէջ խառնելով՝ ամէն բան տեղովը Լիւսիայ
ականջը հասուցին։

Դատաւորը աս ալ որ լսեց, բարկութենէն
ինքզինքը ուտելով՝ եկաւ նստաւ անոնց դա-
տաստանը տեսնելու. ուստի ամէնքը մերկա-
ցընել տուաւ, ու կապած կապկըպած իր
առջեւը կանչեց. անոնց մէջ էր նաև երանելի
Օքսենտիոս քահանան, որ իր ընկերները կը
մխիթարէր ու կը զօրացընէր։ Դատաւորը
իրեն նայելով, «Այսչափ նեղութիւն քաշելէն
ետքը, ըսաւ, արդեօք խելքդ գլուխդ եկա՞ւ.
կ'ուզե՞ս մեր աստուածները պաշտել»։ Օքսեն-

տիոս պատասխան տուաւ իրեն. «Գիտցած ըլլաս ով դատաւոր, որ Աստուծոյ շնորհքովը՝ մտացս հաստատութենէն ետ կենալիք չունիմ. պզտիկութենէս ի վեր նոյն հաւատքը դաւաներ եմ, ու նոյնպէս ալ պիտի մեռնիմ. տանջանք, նեղութիւն, վիշտ, չարչարանք, ի՛նչ որ կ՚ուզես, ամենուն ալ պատրաստ եմ. ուստի ինծմէ ուրիշ պատասխանի մի՛ սպասեր. ու միտքդ ինչ որ դրեր ես, մէկէն կատարէ»։

Ան ատենը Լիւսիաս հրամայեց որ գըլխատմամբ սպաննեն երանելի քահանայն. և երբոր գլխատութեան տեղը հասուցին՝ ծունկ չոքեցաւ սուրբն Օքսենտիոս, «Աստուած յաւիտենական, արքայութեանդ դռները բաց ինծի, որ արժանի ըլլամ՝ զուարթերես քու առջեդ ելլելու», ըսաւ՝ և մէկէն գլուխը կտրեցին։ Դատաւորը հրամայեց որ Մարդարիոսը առջև կանչեն զինքն ալ դատելու համար. երբոր երանելւոյն շղթաները կը քակէին զինուորները, Մարդարիոս Եւստաթիոսի կ՚աղաչէր որ իրեն համար աղօթք ընէ. «Սորվեցու ինծի, կ՚ըսէր, թէ ինչ պատասխան տալու է անօրէն դատաւորին»։ Եւստաթիոս պատասխան տուաւ. «Ինչ որ քեզի հարցընելու ըլլայ՝ դու ամենուն պատասխան մի՛ տար, բայց միայն այս զրուցէ թէ քրիստոնեայ եմ՝ ու Քրիստոսի ծառայ»։ Երբոր Լիւսիայ առջևը բերին Մարդարիոսը, վրան փրթաւ դատաւորը, «Անօրէն ու անպիտան մարդ, ըսաւ, որ իշխեցիր զաստուածները արհամարհել, ըսէ ինծի շուտով անունդ ի՛նչ է,

ո՛ր աշխարհքէն կամ ո՛ր քաղաքէն ես»։ Մարդարիոս պատասխանեց. «Հարցուցած բաներուդ ուրիշ պատասխան մը չունիմ, բայց եթէ քրիստոնեայ եմ ու Քրիստոսի ծառայ»։ Դատաւորին պաշտօնեայքն սկսան յանդիմանել զերանելին. «Դատաստանի կարգը չե՞ս գիտեր, կ՚ըսէին, որ հարցուած բանին պատասխան պիտի տաս». բայց Մարդարիոս դարձեալ իր առջի խօսքը կը կրկնէր։

Լիւսիաս բարկանալով հրամայեց որ ոտիցը պճղունքը ծակեն, ու անկէ չուան անցընելով ձողէ մը կախեն, ու կռնըկին տակը կրակ վառելով բոլոր մարմինը այրեն։ Մարդարիոս այն տանջանաց մէջ ալ Եւստրատիոսէն սորված խօսքը կը կրկնէր. և ժամերով նոյն դառն չարչարանաց արութեամբ համբերելէն ետքը՝ երջանիկ հոգին աւանդեց։

Դատաւորը իր անգթութեանցը վրայ զըւարճանալով հրաման տուաւ որ երանելին Եւգինէոսն ալ առաջ կանչուի. ու անոր դառնալով «Ի՛նչպէս յանդգնեցար, ըսաւ, մեր մեծ ինքնակալին հրամանը ոտքի տակ առնելու, ու անոնց պաշտած աստուածները արհամարհեցիր։ — Իմ աստուածս ինծի զօրութիւն տուաւ, պատասխանեց Եւգինէոս, որ քու կուռքերդ արհամարհեմ, և անոնց ստութիւնը ամենուն իմացընեմ»։ Լիւսիաս որ լսեց, մէկէն հրաման տուաւ դահճաց որ սուրբ վկային լեզուն և ձեռուըները կըտրեն ու փշալից գաւազանով աղէկ մը ծեծեն։ Այն տանջանքներուն մէջ ալ սուրբն Եւգինէոս իր հոգին Աստուծոյ յանձնեց։

Անոր ալ մահուընէն ետքը դատաւորը հրամայեց որ ամէնքը հոն մօտ եղած դաշտը ժողվուին, և զինուորք փորձ ընեն իրենց ճարտարութիւնը ցուցընելով։ Ան ատեն Ովրեստէս անունով քրիստոնեայ զինուոր մը երևցաւ բազմութեան մէջ, գեղեցիկ դէմքով ու վայելուչ հասակաւ։ Լիւսիաս զինքն որ տեսաւ՝ աչքը վրան մնաց, ու քովը կանչելով հրամայեց որ իր գեղարդը ձգէ որոշուած նպատակին։ Անիկայ մէկէն ձիուն զարկաւ ու առաջ անցնելով՝ իր գեղարդը որոշուած սահմանին դիպեցուց. սակայն ձիուն սաստիկ ցնցմանէն՝ վզէն կախուած ոսկի խաչը դուրս ելաւ։ Լիւսիաս աս բանս որ տեսաւ, մէկէն քովը կանչեց Ովրեստէսը. ու խաչը ձեռքը առնելով «Ի՛նչ կը նշանակէ, ըսաւ, ասիկայ. միթէ դու ալ աւելորդապաշտ Գալիլեացւոց հետևո՞ղն ես։ — Խաչելեալ Յիսուս փրկչին ծառան եմ՛, պատասխանեց Ովրեստէս, ինքն է որ երկիրս՝ երկինքն ու անոր մէջի եղած ամէն բաները ստեղծեր է»։ Դատաւորը ծանր երկըթէ անուր մը կախել տուաւ անոր պարանոցէն. «Ինքն ալ թող Եւստրատիոսին հետ մեզի ուղեկից ըլլայ» ըսաւ. ու զանոնք դատելու համար առանձին օր սահմանեց։

Երբոր Լիւսիաս Նիկոպօլիս քաղաքը հասաւ, գունդ մը քաղաքացի զինուոր դատաւորին առջևն ելան՝ «Մե՛նք ալ քրիստոնեայ ենք, ըսին, ու քու աստուածներդ կ՛արհամարհենք»։ Լիւսիայ խելքը գլխէն գնաց երբոր այս բանս տեսաւ, և ընելիքը չէր գի-

տեր. ուստի քաղցրութեամբ խրատել և յորդորել սկսաւ. բայց երբոր տեսաւ թէ անոնք մտիկ ընելիք չունին, անոնց իշխանութեան դուռին ետ առաւ ու բանտ դնել հրամայեց. և ինքը կը մտածէր թէ ի՛նչպէս զանոնք սպաննէ առանց քաղքին մէջ շփոթութիւն ձգելու. բայց այս բանս ալ անկարելի կ'երեւնար, Եւստաթիոսի պէս մեծ մարդը ամենուն ծանօթ ըլլալուն համար. ուստի առաւ Եւստաթիոսն ու Ովրեստէսը Սեբաստիա քաղքին մէջ եղած Ագրիկողայոս իր գործակցին խրկեց, զինուորացը ձեռքը թուղթ մը տալով առ իշխանն, որուն մէջ անոնց ո՛վ ու ի՞նչ խելքի տէր մարդիկ ըլլալը տեղն ի տեղը կ'իմացընէր։ Ճամբուն մէջ Եւստաթիոս հարցուց Ովրեստէսի՝ և իմացաւ Օքսենտիոս սուրբ քահանային երջանիկ նահատակութեան պատմութիւնը, և թէ ի՛նչպէս ագռաւի ձայնով գտան հաւատացեալք անոր պատուական գլուխը՝ զոր կորսուած կը կարծէին. ու լալով մը «Տուա ընենք, ըսաւ Ովրեստէսի, երթանք մենք ալ արիւննիս թափենք՝ որ երկնից արքայութեան մէջ զինքը տեսնելու արժանաւորինք»։

Հինգ օրէն ետքը Սեբաստիա քաղաքը հասան երանելի վկայքը. Ագրիկողայոս դատաւորն ալ Լիւսիայ թղթէն ամէն բան իմանալով՝ մէկէն զիրենք բանտ դնել տուաւ. և վաղուան օրը բազմութեան առջև Լիւսիայ գրած թուղթը կարդալով՝ զանոնք դատելու նստեցաւ. ետքը Եւստաթիոսի վրայ նայելով

«Մի՛ կարծեր, ըսաւ, թէ Լիւսիայ տուած տանջանքները պիտի կրես ինծմէ ալ. վասն զի աւելի դաժան և խիստ կերպով պիտի չարչարել տամ զքեզ. ուստի հիմակուընէ մտիկ ըրէ խօսքիս, ու աստուածոց երկրպագութիւն ըրէ, որ ինծմէ պատիւ ու փառք տեսնես»: Եւստրատիոս իր աստուածուսոյց բերանը բացաւ, և հեթանոսաց գրքերուն և իրենց օրինաց խօսքերովը ամօթով ձգեց Ագրիկողայոս դատաւորը. ցըցուց իրեն կռոց ստութիւնը և քրիստոնէից Աստուծոյ ճշմարտութիւնը. ու դատաւորը յորդորել սկսաւ որ յաւիտենական դատապարտութենէն վախնայ, և փոխանակ ուրիշները յորդորելու որ քրիստոնէութենէ ետ կենան, ինքն ալ դառնայ Քրիստոսի սուրբ հաւատքը ընդունի: Ագրիկողայոս հրաման տուաւ Եւստրատիոսի որ լռէ, և նախ երանելին Ովրեստէսը չարչարել ուզեց, յուսալով որ կարենայ Եւստրատիոսը վախցընել ու միտքը փոխել տալ. ուստի երկըթէ անկողին մը բերել տուաւ ու անոր տակը կրակ վառեց. ու երբոր երկաթը չարաչար տաքցաւ, սուրբն Ովրեստէսը անոր վրայ պառկեցընել հրամայեց, ու ետքը Եւստրատիոսի նայելով «Տես, ըսաւ, թէ ինչ տանջանքներ պիտի քաշես թէ որ խօսքիս մտիկ չընես»:

Երբոր սուրբն Ովրեստէսը այն մահճին քովը բերին կեցուցին, բնութիւնը այլայլեցաւ, և վախէն երեսին գոյնը նետեց, ու Եւստրատիոսի դառնալով «Տէր իմ, ըսաւ,

ինծի համար աղօթք ըրէ, վասն զի մեծ վախ է որ կը զգամ՝ այս տանջանարանը տեսնելով։ — Ամենևին մի՛ վախեր, եղբայր իմ, պատասխանեց Եւստատիոս, հաւատով նահատակութեան վազելու որ ըլլաս՝ ամենևին ցաւ չես զգար. վասն զի Աստուած մեզի կ՚օգնէ. երանելոյն Օքսենտիոսի և ուրիշ սրբոց նահատակութիւնը յիշէ. մի՛ մոռնար դարձեալ թէ այս աշխարհքիս վայելքն և ուրախութիւնը ժամանակաւոր են, իսկ հանդերձեալքը յաւիտենական»։ Ովրեստէս երկրթէ մահճին մօտեցաւ, «Աստուած յաւիտենական, իմ անարժանութեանս համար երեսդ ինծմէ մի՛ դարձըներ, ըսաւ, սուրբ հաւատոցս մէջ զիս հաստատուն պահէ». ետքը երեսը խաչ հանեց, ու անվախ համարձակութեամբ գնաց մահճին վրայ ընկաւ, ու մէկէն երջանիկ հոգին աւանդեց։

Ագրիկողայոս հրաման տուաւ որ զԵւստատիոսը վերցընեն բանտ դնեն։ Բանտին մէջ իր ծառային պատուիրեց սուրբը որ իրեն թուղթ բերէ կտակը ընելու համար. «Վասն զի վաղուան օրը պիտի մեռնիմ» ըսաւ։ Ու իրեն քաշած ամէն չարչարանքները և նեղութիւնները տեղն ի տեղը գրեց, և հրաման տուաւ՝ որ իրեն և չորս ընկերակցացը սուրբ մարմինները Արօրկա քաղաքը տանին և առանձին տեղ մը թաղեն. իրեն ունեցած կալուածոց եկամուտն ալ վկայարանին դարձընել պատուիրեց. իսկ ուրիշ ստացուածոց կէսը աղքատաց բաժնեց, մէկալ մասն ալ իր

քերցը և ծառայիցը տուաւ։ Սեբաստիոյ Վլասիոս սուրբ եպիսկոպոսը՝ հալածանաց վախէն պահուըտած ըլլալով, գիշեր ատեն ծածուկ բանտը եկաւ, և պահապանաց շատ ստակ տալով, Եւստրատիոսի քովը գնաց, և արտասուախառն ուրախութեամբ վրան իյնալով՝ սկսաւ անոր սուրբ շղթաները համբուրել, և իրեն երանի՛ կուտար և աղօթքը կը խընդրէր։ Եւստրատիոս դարձաւ «Հայր սուրբ, ըսաւ, մանաւանդ թէ ես քեզնէ աղօթք պիտի խնդրեմ որ կարենամ արքայութեան փառաց արժանաւոր ըլլալ. վասն զի հրեշտակի տեսլեամբ իմացայ որ, ըսաւ, վաղուան օրը այս աղցաւոր և ունայն աշխարհէն պիտի հեռանամ»։ Ետքը ցըցուց իրեն կտակը և աղաչեց որ լինքիր վրայ առնու անոր գործադրութիւնը. եպիսկոպոսն ալ սիրով յանձն առաւ. ետքը վերջին թոշակին սուրբ խորհուրդն ալ մատակարարեց անոր, և ինչուան առաւօտ հոգևոր զրուցատրութեանց ետևէ եղան։

Ագրիկողայոս դատաւորը առտուն հրաման տուաւ որ զԵւստրատիոս առջևը բերեն. ու զինքը առանձին տեղ մը տանելով, «Գիտցած ըլլաս, ըսաւ, որ վրադ շատ տրտմած եմ, և սիրտս առաջ չերթար արիւնդ մտնելու. գէթ ժողովրդեան առջևը ըլլայ՝ այնպէս ցըցուր թէ հաւանեցար խօսքիս ու աստուածները պիտի պաշտես, ու սրտովդ քու հաւատքիդ հետևէ, խնայէ քու գեղեցկութեանդ ու հասակիդ. իմ վրաս ալ ցաւէ և զիս ալ

մի՛ տրտմեցըներ»։ Եւստռատիոս պատասխան տուաւ «Ամենևին մի՛ խռովիր, տէր իմ, և փուճումուճ խորհուրդներով ինքզինքդ անհանգիստ մի՛ ըներ. այս յայտնի գիտցիր որ քու խօսքերուդ ամենևին մտիկ պիտի չընեմ. քու տուած տանջանքներդ ինծի համար մեծամեծ ուրախութեանց առիթներ են»։

Ադրիկողայոս աս որ լսեց, տրտմութենէն երեսը գոյեց, անանկ որ ամէնքն ալ իմացան թէ կը ցաւի վրան դատաւորը, և իրենք ալ սկսան լալ ու սրբոյն վրայ խղճալ։ Եւստռատիոս ձայնը բարձրացուց. «Ով դատաւոր, ըսաւ, ինչո՞ւ համար թագաւորիդ հրամանը չուտով չես կատարեր, և իմ ցանկալի երանութեան հասնելս կ'ուշացընես. Նորէն կ'ըսեմ, քրիստոնէից Աստուծոյն ծառայն եմ և ձեր կուռքերը կ'արհամարհեմ»։ Ադրիկողայոս տեսաւ որ միտքը փոխելը անկարելի է, հրամայեց որ կրակի մէջ այրելով մեռցընեն զինքը։ Մէկէն հնոցը պատրաստեցին, և բոլոր Սեբաստացիք հոնտեղը ժողվուեցան այս նորանշան հանդէսը տեսնելու համար. Եւստռատիոս մօտեցաւ վառարանին. «Գթա, տէր, իմ վրաս, ըսաւ, և օգնէ ինծի որ քու սուրբ պարգևացդ անարժան հոգիս, խաղաղութեամբ գայ քու քովդ հանգչի. զմեզ իրենց բարեխօս բռնողներուն խնդրուածքը կատարէ, ըսաւ. սուրբ եկեղեցին ալ ձեռքէ մի՛ թողուր»։ Աս և ասոնց նման ուրիշ աղօթքներէն ետքը՝ ինքզինքը խաչակնքեց ու հնոցին մէջ նետուեցաւ. և այսպիսի երջանիկ

նահատակութեամբ բանաւոր և հաճոյական պատարագ մը եղաւ Աստուծոյ սուրբն Եւստաթիոս. և արժանաւորք տեսան որ անոր երանելի հոգին լուսոյ նման երկինք վերացաւ: Ագրիկողայոս դատաւորը ուրախութեամբ մը տուն դառնալով՝ բարեկամացը մեծ կոչունք ըրաւ իրեն ըրած յաղթութեանը համար, և խստիւ արգիլեց որ չըլլայ թէ մէկը անոր մարմինը վերցընէ: Բայց Վլասիոս եպիսկոպոսը՝ գիշեր ատեն հետն ուրիշ հաւատացեալք ալ առած՝ եկաւ Ովրեստէսի և Եւստրատիոսի մարմինն և ոսկորները վերցուց, և փայտէ տապանի մը մէջ դնելով՝ շատ ատեն իր քովը պահեց. ետքը անձամբ Արօրկա քաղաքը տարաւ և սրբոյն պատուիրած տեղը ամփոփեց անոր և ընկերացը սուրբ նշխարքը. և Դիոկղետիանոսի հալածանաց դադրելէն ետքը վրանին մեծ ու փառաւոր վկայարան շինեց:



# ՍՐԲՈՒՀԻ ՍՈՓԻԱ

Իտալացի էր սրբուհին Սոփիա, որ իրեն Պիստիս, Ելպիս և Ագապի անունով իրեք աղջիկները հետն առնելով՝ Հռոմ քաղաքը գնաց Քրիստոսի սուրբ դրօշմը ընդունելու համար։ Աղջիկներուն մէջէն մեծը տասուե-րեք տարուան էր, երկրորդը տասնըմէկ և պզտիկն ալ ինը տարուան. բայց իրենց հո-գեւոր եռանդեամբը և իմաստութեամբ մօ-րերնուն սրտին մեծ ուրախութիւն և սփո-փանք էին։

Անտիոքոս անունով մարդ մը այս պարկեշ-տասուն և վայելչադէմ աղջիկները տեսնելով որ իրենց մօրը հետ եկեղեցին կ՚երթային, վրանին աչք ձգեց, և անոնցմէ մէկը իրեն կ՚ուզէր առնուլ. Սոփիա Անտիոքոսի խնդրուա-ծոցը դէմ կեցաւ. «Մենք քրիստոնեայ ենք, ըսաւ. աղջիկներս ալ մշտնջենաւոր կուսու-թիւն ուխտած ըլլալով՝ անհնարին է որ քե-զի հարսնանան»։ Անտիոքոս այս բանիս վրայ բարկանալով՝ գնաց Ադրիանոս կռապաշտ կայսեր մատնեց զիրենք. «Օտար կին մը Հռոմ քաղաքը եկեր է, ըսաւ, իր իրեք աղ-ջիկներովը. և զամէնքը կը յորդորէ որ կուռ-քերը չպաշտեն, և ուրիշ Նոր Աստուծոյ մը պաշտօն կը սորվեցնէ»։ Ադրիանոս մարդ-խրկեց որ չորսն ալ իր առջևը բերեն. իրեք

երանելի քորքը երբոր կայսեր հրամանը լսեցին, ուրախութեամբ ձեռք ձեռքի տուած՝ ելան գնացին. և երբոր կայսեր պալատին առջևը հասան, երեսնին խաչ հանեցին ու քաջութեամբ Ադրիանոսի առջևը ելան, որ անոնց գեղեցկութիւնը տեսնելով՝ չուզեց վնաս մը հասցընել, ու մեծ իշխանուհւոյ մը յանձնեց որ իրեն տանը մէջ պահէ զամէնքն ալ իրեք օր, ինչուան որ վրանին բան մը կարենայ մտածել: Սոփիա իր աղջիկները կը քաջալերէր Քրիստոսի հաւատոց մէջ հաստատուն և անշարժ կենալու, և մահուընէ ամենևին չվախնալ: Իրեք օրը անցնելէն ետքը՝ թագաւորը առջևը կանչել տուաւ զանոնք, և անուշութեամբ և մեծամեծ խոստմունքներով կը ջանար աղջկանցը միտքը դարձընել: Անոնք համարձակութեամբ պատասխան տուին Ադրիանոսի. «Ինչուան որ զմեզ չարչարել չսկսիս, բերաններնէս խօսք մըն ալ պատասխան չես կրնար առնուլ, ուզածիդ պէս տանջէ զմեզ, որ մեր Աստուծոյն զօրութիւնը կարենաս իմանալ»: Թագաւորը անոնց համարձակախօսութեանը վրայ զարմանալով՝ Սոփիայի անոնց տարիքը հարցուց. ու երբոր իմացաւ, Պիստիսը քովը կանչեց և սպառնալեօք ջանաց որ վախցընէ զինքը. բայց երբոր տեսաւ թէ անիկայ աներկիւղ աստուածները և զկայսրը կ'արհամարհէ, կախել տուաւ զինքը և հրամայեց որ գաւազաններով չարաչար ծեծեն. բայց Պիստիսի մարմինը ամենևին չվիրաւորուեցաւ անոնց ան-

խնայ հարուածներէն, և ինքն ալ զուարթամիտ ուրախութեամբ և անայլայլ դէմքով կը համբերէր ։ Ետքը սրով ծեծել սկսան զերանելին. բայց անով ալ չկրցան վնասել իրեն. կրակին մէջ ձգեցին, և կրակը մարեցաւ։ Պիստիս ուրախութեամբ կ'օրհնէր զԱստուած, և թագաւորին դառնալով «Տեսա՞ր, կ'ըսէր, իմ Աստուծոյս զօրութիւնը և քուկին տկարութիւնդ»։ Ետքը վազեց իր մօրը և քերցը գիրկը ինկաւ, կը յորդորէր զանոնք որ թագաւորին տուած տանջանքներէն չվախնան. «Ամենևին ցաւ մը չզգացի, կ'ըսէր, այնչափ չարչարանաց մէջ»։ Ան ատենը թագաւորին հրամանաւը՝ դահիճը երանելւոյն գլուխը կտրեց։

Անկէ ետքը իրեն երկու քոյրերն ալ չարաչար տանջեցին. և անոնց մտաց հաստատութեանը չկարենալով յաղթել՝ գլուխնին կտրեցին։ Սոփիա իրենց մայրը՝ իր պատուական դստերացը մարմինները ժողվեց և առանձին տեղուանք դրաւ, ետքը քաղքէն տասնըութը մղոն դուրս հանելով առանձին տեղ մը դրաւ և վրանին փառաւոր վկայարան շինեց։ Ետքէն ինքն ալ անոնց գերեզմանին վրայ ընկած արտասուօք աղօթելու ատենը՝ սուրբ հոգին աւանդեց, և հաւատացեալք իրեն մարմինն ալ առին դստերացը հետ մէկտեղ թաղեցին։ Կ'ըսեն թէ ասոնց նշխարաց պատուական մասունքը Հռոմ սրբոյն Պետրոսի և Սեղբեստրոսի անուամբ շինուած եկեղեցեաց մէջ են։

# ՔԱՌԱՍՈՒՆ ՄԱՆԿՈՒՆՔ

Կոստանդիանոս կայսեր գահակից ու քեռայր Լիկիանոսի թագաւորութեան ատենը, Կապադովկիոյ կամ փոքուն Հայոց մէջ քառասուն թուով կտրիճ ու վայելչադէմ պատանիներ կային՝ ազնուականաց տղաք՝ որոնք Հռովմայեցւոց սպարապետներուն աչքը մտնելով իրենց կտրճութեամբը, զինուոր գրուեր էին։ Կը պատմեն թէ անգամ մը կայսեր հրամանաւը այս քառասուն պատանիքն ալ պատերազմի գնացեր էին ուրիշ կռապաշտ զինուորաց հետ. ու երբոր թշնամեացմէ պաշարուելով ջրերնին պակսեցաւ, ասոնց աղօթքովը յանկարծակի յորդ անձրև եկաւ, և Հռովմայեցւոց ջրերուն գուբը լեցուեցաւ, որով աւելի ալ սիրելի եղան թէ իրենց գըլխաւորներուն և թէ կայսեր։ Բայց հեթանոսութեան կոյր նախանձայուզութիւնը անոնց երախտիքը և արիասիրտ քաջութիւնը մոռցընել տուաւ. վասն զի Լիկիանոս՝ քրիստոնէից դէմ անհնարին հալածանք հանելով, Լիսիաս Կապադովկիոյ դքսին ալ հրաման խրկեց որ զօրացը քննութիւն ընէ և ամէն քրիստոնեայքը չարաչար տանջանքներով ըս-

պաննէ։ Եւ որովհետև այս քառասուն մանկունքը այն ատենները Սեբաստիոյ մէջ էին, Լիւսիաս Ագրիկողայոս դատաւորին իմացուց որ զանոնք բռնէ ու քննէ, ինչուան որ ինքն ալ քիչ ատենէն հոն հասնի։ Քառասունքը աս որ լսեցին տրտմելու տեղ աւելի ուրախացան, ու սկսան մէկզմէկ քաջալերել. «Քրիստոս մեր վրայ իր կեանքը դրաւ, կ՚ըսէին. մենք ալ արիւննիս իրմէն չխնայենք»։

Սահմանեալ օրը հասնելով՝ Ագրիկողայոս քառսունն ալ իր առջևը բերել տուաւ, և անոնց անունը, ազգը և ցեղը հարցուց։ Քաջ նահատակքը մէկ բերան պատասխան տուին. «Ամէնքնիս ալ քրիստոնեայ ենք, և մեր հայրենիքը՝ հանդերձեալ աշխարհն է»։ Ամէնքը զարմացան անոնց քաջասիրտ համարձակութեանը վրայ. բայց դատաւորը ամենէն ալ առանձին իրենց հաւատոյ դաւանութիւնը լսելէն ետքը, քովը կանչեց ու յորդորանօք և սիրով խօսիլ սկսաւ հետերնին. «Բոլոր Հռովմայեցիք ձեր հաւատարիմ և անխարդախ ծառայութեանը վրայ զարմացեր են, ըսաւ, ու մեծամեծ պատիւներու հասցընել կ՚ուզեն զձեզ. հիմայ է ահաւասիկ ատենը՝ ձեր մեր վրայ ունեցած սիրոյն հաւատքը ցուցընելու՝ Լիկիանոս ինքնակալին հրամանը կատարելով. Թողուցէք սա ձեր խաչելեալ աստուածը, ու անմահ աստուածները պաշտեցէք»։ Երանելի նահատակքը Ագրիկողայոսի պատասխան տուին. «Թէ որ մահկանացու թագաւորի մը հաւատարմութեամբ ծառայել-

նուս համար՝ գովեստ ու պատիւ կը խոստանաս մեզի, ինչպէս կրնանք մենք անմահ թագաւորին պաշտօնը ոտքի տակ առնուլ, և իրեն մեզի խոստացած վարձքը արհամարհել։
— Խօսքիս դէմ մի՛ կենաք, պատասխանեց Ագրիկողայոս. երկու բան կայ դիմացնիդ, կամ զոհեցէք աստուածոց և կամ չարաչար մահուամբ պիտի մեռնիք»։ Երբոր տեսաւ թէ անոնք իր խօսքին միտիկ ընելիք չունին, բանտ դնել տուաւ զիրենք. «Ինչուան վաղը ձեզի մտածելու ատեն կուտամ, ըսաւ. գացէք դուք ինքիրեննէդ մտածեցէք թէ որն է աղէկը, մեռնի՞լը եթէ փառաւորապէս ապրիլ և մեծ պատիւներու արժանի ըլլալ». անոնք բանտն որ մտան՝ ձեռուընին վեր վերցընելով Աստուծոյ օգնութիւնը խնդրեցին, և անդադար սաղմոսերգութեամբ գիշերը կը փառաւորէին։

Վաղուան օրը Ագրիկողայոս դատաւորը երանելի նահատակքը քննելու համար եկաւ դատաստանի նստաւ, ու քառասուննն ալ մէկէն իր դիմացը բերել տալով, «Ճշմարտութեամբ կ'ըսեմ ձեզի, ըսաւ, սիրելիք իմ, որ Հռովմայեցւոց թագաւորը ձեզի պէս վայելչահասակ ու քաջ զինուորներ չունի. անոր համար ալ է որ ամենքնուս դիմացը սիրելի էք դուք, և այն պատճառաւ չեմ ուզեր ձեր արիւնը մտնել. եկէք խօսքիս միտիկ ըրէք, ու սէրս ակամայ ատելութեան մի՛ դարձընէք»։ Երանելեաց մէջէն Կանդիտոս անունով մէկը իմացաւ որ չարութեամբ ու կեղծուպատիր

խօսքերով զիրենք խաբել կ'ուզէ դատաւորը. և սկսաւ զինքը չարաչար յանդիմանել։ Ագրիկողայոս Կանդիտոսի և անոր ընկերացը խօսքերէն իմացաւ որ զինքը կիրք կ'ուզեն հանել. յորդորանքը նորէն ձեռք առաւ. «Նայեցէք, ըսաւ, ձեր ձեռքն է ապրիլը կամ մեռնիլը, սիրելի կամ ատելի ըլլալը։ — Ձեզի ատելի կ'ուզենք ըլլալ, պատասխանեց Կանդիտոս, որ Քրիստոսի զմեզ փրկողին հաճոյանանք»։

Ագրիկողայոս տեսաւ որ իրեն խօսքը չանցնիր, հրամայեց դահճաց որ չարաչար կապեն կապկըպեն զամէնքն ալ, ու քաշքըշելով բանտ տանին։ Սուրբ վկայից մէջէն Կիւրիոն անունով մէկը դատաւորին դառնալով «Ի՞նչ իշխանութեամբ, ըսաւ, մեզի պէս զինուորական մարդիկը կը չարչարես անգթաբար. Լիւսիայ քեզի հրամայածը ուրիշ բան չէր, բայց քննել զմեզ ու զգուշութեամբ պահել, ինչուան որ ինքը դուքսն ալ գայ»։ Ագրիկողայոս վախնալով՝ անոնց ոտքին կապանքը թուլցընել տուաւ, ու բանտապետին մանաւոր կերպով պատուիրեց որ խնամով և զգուշութեամբ անոնց վրայ հոգ ունենայ, ինչուան որ Լիւսիաս Սեբաստիա հասնի։ Քաջ նահատակքը ուրախութեամբ բանտը մտան, կը քաջալերէին մէկզմէկ ու կը զօրացընէին, ինչուան որ եօթը օրէն ետքը Լիւսիաս դատաւորը Սեբաստիա հասաւ, և ութերորդ օրը՝ քառասուն վկայքը իր առջևը դատաստանի կանչեց։ Դուքսը անոնց զուարթերես խնդութիւնը տեսնելով զարմացաւ մնաց.

«Սիրելի զօրականք իմ, ըսաւ, դուք իմ դիմացս միշտ պատուական սեպուած էք, անոր համար մեծամեծ պատիւներու ալ արժանի սեպեր եմ զձեզ. բայց հիմայ աւելի պիտի փառաւորեմ զձեզ թէ որ խօսքիս մտիկ ընէք. վասն զի ինչպէս որ լսեր էք՝ երկու բան դրուած է առջեւնիդ, կամ մեռնիլ չարաչար մահուամբ, և կամ աստուածները պաշտելով՝ երջանիկ և հանգիստ կեանք անցընել»։

Քառասունքը նշան ըրին իրենց Կանդիտոս վկայակցին՝ որ դատաւորին պէտք եղած պատասխանը տայ. առաջ անցաւ սուրբը «Մեր ամենուն փափաքը լսէ, ըսաւ, ով դատաւոր. մեր պատիւներն ու կեանքը քուկդ ըլլան. վասն զի անհնարին է որ անցաւոր վայելից համար յաւիտենականը ոտքի տակ առնունք»։ Լիւսիաս կատղեցաւ, և հրամայեց որ քարերով անոնց բերնին զարնեն. երբոր մարդիկը կը դանդաղէին դքսին պատուէրը կատարելու, Լիւսիաս բարկացաւ ու կը ստիպէր որ շուտ ընեն, այնպիսի յանդուգն խօսողները չարաչար պատժեն։ Պաշտօնեայքը շուարեցան մնացին, ու երբոր սուրբ վկայքը քարկոծել ուզելով՝ քարերը վրանին կը նետէին, փոխանակ անոնց վնաս մը ընելու, քարաձիգներուն վրայ կը դառնային կ՚իյնային քարերը ու չարաչար կը վիրաւորէին։ Լիւսիաս այս զարմանալի հրաշքին վրայ կրակ կտրելով՝ քար մը առաւ ձեռքը որ անձամբ անոնց ձգէ. բայց Ագրիկողայոս դատաւորին

վրայ ընկաւ քարը ու ծնօտը ջախջախեց։ Դուքսը տեսաւ որ ատոնց հետ գլուխ ելլել չըլլար, ուստի հրամայեց որ նորէն բանտ տանին ինչուան որ զանոնք չարաչար տանջանքով մը սպաննելու հնարք մտածէ։ Բանտին մէջ կրկին անգամ երեցաւ Քրիստոս իր սիրելի վկայից, և քաջալերելով մխիթարեց։

Երկրորդ առտուն երբոր նորէն Լիւսիայ առջևը կանչուեցան, սուրբ նահատակքը առանց դատաւորին հարցընելուն սպասելու, «փուճ տեղը մեզի հետ մի՛ խօսիր, ըսին. ինչ որ միտքդ դրեր ես շուտով կատարէ. վասն զի անհնարին է որ մենք քու խօսքիդ մտիկ ընենք ու զՔրիստոս ուրանանք»։ Լիւսիաս Ագրիկողայոս դատաւորին հետ խօսքը մէկ ըրած, հրամայեց որ սուրբ վկայից վիզը մէյմէկ չուան ձգեն, ու ամէնքը մէկտեղ առնեն Սեբաստիա քաղաքէն դուրս եղած լճին մէջ ձգեն. որպէս զի կամ ջրին մէջ խեղդուին, և կամ գիշերը օդին դժնդակ ցրտութենէն սառին։ Մասնաւոր պահապաններ ալ դրաւ վրանին, որ չըլլայ թէ մէկը լճին մէջէն ելլելով փախչի. բայց հոն մօտ եղած բաղնիքն ալ տաքցընել տուաւ, որ եթէ մէկը զղջայ յամառութեանը վրայ և ուզենայ ապրիլ ուրացութեամբ, երթայ այն բաղնիքին մէջ մտնէ։

Գիշերուան մօտ էր երբոր սուրբ վկայքը գետին մէջ ձգեցին. մէյմ՚ալ հիւսիսային ցուրտ հովմը սկսաւ փչել, ու գետին ջուրը քանի

կ'երթար սառելով կը կարծրանար, և երանելեաց մարմինը կը ճարճատէր, մորթը կը պատռէր ու անկէց յորդ արիւն վազելով՝ վարդագոյն սուրբ արիւննին կ'երթար կէս սառած ջրոյն հետ կը խառնուէր։

Աստուծոյ դատաստանին գաղտնեացը ով կրնայ խելք հասցընել. անոնցմէ մէկը Քրիստոսի համար այնչափ չարչարանք ու նեղութիւն քաշելէն ետքը, բանսարկուին խաբէութեանը ցաւագին որս մը պիտի ըլլայ եղեր։ Իր երանելի ընկերքը աչուընին երկինք վերցուցած՝ կիսահագագ ձայնով մը շնորհակալ կ'ըլլային Աստուծոյ՝ որ զիրենք սուրբ մարտիրոսութեան պսակին արժանաւորեց. բայց այն թշուառականը, չկրցաւ համբերել քիչ մը նեղութեան. գրեթէ մէկ ոտքը երկրիս վրայ՝ մէկալը արքայութեան մէջ դրած ատենը, Քրիստոսի սիրոյն պաղեցաւ, գնաց բաղնիքին մէջ ընկաւ։ Խեղճը չէր գիտէր թէ յաւիտենականին հետ անցաւոր կեանքն ալ պիտի կորսընցընէր. վասն զի բաղանեաց մէջ մտնելուն պէս՝ մարմնոյն սառոյցը քակուեցաւ տաքութենէն, ու յանկարծական այլայլութիւն մը գալով վրան՝ հոգին փչեց։ Ընկերները անոր գլխոյն փորձանքը և հոգւոյն կորուստը իմանալով՝ դառնապէս կ'ողբային, ու արտասուօք կը խնդրէին Աստուծմէ՝ որ իրենց սուրբ դաւանութեանը մէջ հաստատուն պահէ զիրենք։

Իրեք օր այն ցրտասարսուռ լճին մէջ կենալէն ետքը, յանկարծակի լիճը լուսաւո-

րուեցաւ, և Նորօրինակ ջերմութիւն մը ծաւալեցաւ գետին մէջ, անանկ որ սառուցեալ ջրերը կակղնալ սկսան. մէյմ'ալ Քրիստոս տէրն մեր երևցաւ անոնց սրովբէագունդ բազմութեամբ։ Երանելի վկայքը աս որ տեսան՝ ուրախութեամբ մէկմէկու կը ցուցընէին. «Ահաւասիկ մեր փրկիչը, կ'ըսէին. տեսէք ի՛նչպէս մեծավայելուչ փառօք մեր մէջը մտեր է. գիշերանց ի՛նչ պայծառութիւն է որ ծագեց մեր վրայ արեգակն արդարութեան»։

Պահապանները քնոյ մէջ ըլլալով՝ այս տեսիլքը ամենևին չիմացան. բայց անոնցմէ մէկը որ բաղանեաց վրակեցուն էր, ու արթուն կեցած երանելեաց քաջալերական խօսքերն ու սրտապինդ աղօթքները կը լսէր, երբոր այս լոյսը տեսաւ՝ զարմանալէն ի՛նչ ընելիքը չէր գիտէր. մէյմըն ալ տեսաւ որ երկնքէն երեսը երեսունինը փառաւոր պսակներ չարուած են։ Աստուծոյ շնորհքը բաղանեպանին սիրտը լուսաւորեց, սկսաւ ինքնիրեն մտածել թէ քառասուն հոգի էին ասոնք ու անոնցմէ մէկը բաղնիքը երթալով՝ թշուառաբար մեռաւ. «Յայտնի է, կ'ըսէր, թէ Աստուծոյ երեսէն ընկաւ այն մարդը, վասն զի երկնքէն երեսը անոր համար պսակ չեմ՝ տեսներ»։ Մէկէն իր ընկերակից պահապանացը ձայն տալով, զգեստները վրայէն հանեց, ու ինքզինքը գետը նետելով, մեծաձայն աղաղակել սկսաւ թէ «Ես ալ քրիստոնեայ եմ»։ Սուրբ վկայքը այս բանս որ տեսան, անպատում ուրախութեամբ մէկզմէկ մխիթարել սկսան։

Երկրորդ առտուն Լիւսիաս և Ագրիկողայոս ելան՝ գետին քովը գնացին որ տեսնեն թէ ի՛նչ եղան քառասունքը. ու երբոր բաղնեպանն ալ անոնց մէջ խառնուած տեսան, զարմացան մնացին և սկսան քովի պահապանաց այն բանին պատճառը հարցընել։ «Գիշեր առեն երբոր մենք խոր քունի մէջ էինք, ըսին, յանկարծակի այս մարդը արթընցուց զմեզ, ու տեսանք որ արեգակնատիպ պայծառութիւն մը կը ցոլանար ծովակին վրայ. բաղնեպանն ալ քրիստոնեայ եմ՝ աղաղակելով՝ ինքզինքը անոնց թուոյն մէջ խառնեց»։ Ագրիկողայոս այս որ լսեց, հրաման տուաւ որ ամէնքն ալ գետէն հանեն, ու կացնով բարձերնին ու ողքնին անգթաբար կոտրտեն։ Երանելի նահատակաց մէջ Մելիտոն անունով մանկագոյն վկայ մըն ալ կար. ասոր բարեպաշտուհի մայրը վախնալով որ չըլլայ թէ տղան մահուընէ զարհուրելով՝ սուրբ հաւատոյը մէջ վտանգի, «Քիչ մը համբերէ, կ'ըսէր, սիրեցեալ որդեակ. Քրիստոս տէրն մեր զքեզ մխիթարէ»։ Եւ երբոր ամենուն բարձերը կոտրտելով՝ երանելի վկայքը հոգինին աւանդեցին, Մելիտոն դեռ կենդանի էր. անոր համար դատաւորին պաշտօնեայքը ուրիշներուն մարմինները սայլի մէջ դնելու ատեննին որ գետը նետեն, Մելիտոնի վրայ գթացին ու հոն թողուցին որ գուցէ ապրի։ Առաքինի մայրը այս որ տեսաւ՝ սիրտը փուշփուշ եղաւ որ չըլլայ թէ իր որդին Քրիստոսի համար այնչափ չարչարանք քաշելէն

ետքը նահատակութեան պսակէն զրկուի․ մէկէն շալակը զարկաւ իր սիրելի որդին «Որդեակ իմ Մելիտոն, կ՚ըսէր, երթանք շուտով մը քու ընկերացդ ետեւէն հասնելու, որպէս զի անոնց հետ մէկտեղ պսակուիս, ու ես ալ արժանի ըլլամ մարտիրոսի մայր սեպուելու»։ Ճամբուն վրայ երբոր այսպիսի սիրալիր խօսքերով առաքինի մայրը զաւակը կը քաջալերէր, Մելիտոն իր սուրբ հոգին խաղաղութեամբ Աստուծոյ յանձնեց. մայրն ալ ուրախութեամբ առաւ զինքը ընկերակցացը պատուական նշխարաց մէջը խառնեց։

Երբոր Ալիս գետին քովը հասան, Լիւսիաս և Ագրիկողայոս հրաման տուին որ մեծ կրակ մը վառեն, ու անոր մէջը ձգեն սուրբ վկայից մարմինները, որպէս զի հաւատացեալք չկարենան ժողվել զանոնք ու պատուել։ Այրելէն ետքը ոսկորներն ալ առին բոլորը մէկէն գետին մէջ նետեցին, մտքերնին դնելով թէ զանոնք ձեռք ձգելը անհնարին բան է. բայց խաբուեցան. վասն զի Աստուծոյ մասնաւոր հրաշքովը՝ բոլորը մէկէն գնացին գետին մէկ խաղին մէջ հաւաքուեցան. ու քաջ նահատակքը իրենց երանելի վկայութենէն իրեք կամ վեց օր ետքը երևցան խմբովին Սեբաստիոյ Պետրոս անունով եպիսկոպոսին, ու իրենց ոսկերաց տեղը ցուցընելով՝ պատուիրեցին որ գիշեր ատեն երթայ ժողվէ զանոնք ու վայելուչ տեղ մը ամփոփէ։ Եպիսկոպոսը քանի մը հաւատացեալք հետը առած, սրբոց պատուիրած տեղը գալով՝ տեսաւ

որ գետին մէջէն փառաւոր լոյս մը կը ցօլանար. ուստի ուրախութեամբ անոնց սուրբ ոսկերացը պատուական մասունքը ժողվեց, ու առանձին տեղ մը պահեց, սպասելով որ անգութ հալածանաց սաստիկ մրրիկը դադրի, որ կարենան վկայարան շինել։ Եւ յիրաւի, քանի մը տարիէն ետքը երբոր Կոստանդիանոս կայսրը առանձին թագաւորելով՝ Քրիստոսի հաւատոյ, Սեբաստացիք փառաւոր եկեղեցի շինեցին անոնց նշխարացը վրայ. և զանազան հրաշքներ տեսնուեցան անոնց բարեխօսութեամբը։ Ինչուան հիմա կեցած է այն ծովակը ուր որ այս սուրբերը ձգուեցան ու Քառասուն մանուկ կ'ըսուի, և մեծ ուխտատեղի է բոլոր հաւատացելոց։



# ՍՐԲՈՒՀԻ ՆՈՒՆԷ

Հռիփսիմեանց ընկերներէն էր այս երջանիկ առաքելուհին. ու երբոր Հռոմ քաղքէն մեկտեղ ճամբայ ելլելով՝ Հայաստան աշխարհը հասան, և վանաց մէջ եղած հալածանաց պատճառաւը հարկ եղաւ որ մեկմէկէ բաժնուին, Նունէ ինքզինքը Աստուծոյ խնամոցը յանձնելով՝ ելաւ շիփշիտակ Վրաստան գնաց, ու Մծխիթայ քաղքին մէջ մեկու մը քով ծառայութեան մտաւ, ու ինքիր աղօթքին և ճգնութեանցը հետ էր, և Քրիստոսի անուամբը այլևայլ բժշկութիւններ ալ կ'ընէր։

Վրաց Միհրան թագաւորին ականջը հասան անոր ըրած բժշկութեանց լուրերը, և որովհետև հիւանդ տղայ մը ունէր՝ և բժշկաց ամէն ջանքը փուճ ելեր էր, կնկանը խորհըրդովը առաւ Նունեայ խրկեց իր տղան, որ խաչակնքելով մէկէնիմէկ բժշկեց զինքը։ Քիչ ատենէն ետքը տղուն մայրը հիւանդանալով անկողին ընկաւ, ու մէկէն մարդիկ խրկեց Նունէի որ շուտ ընէ իր պալատը գայ զինքը բժշկելու համար. բայց սրբուհին միտք չըրաւ, վախնալով որ չըլլայ թէ ըրած բժշկութիւններովը անունը մեծնայ ու փառաւորուի.

ան ատեն Թագուհին անձամբ անոր ոտքը գնաց. Նունէ ալ դէմ դնել չկրնալով՝ աղօթք ըրաւ և բժշկեց զինքը։ Միհրան այս որ լսեց, բանի իրեն արքունիքը բերել տուաւ սրբուհին, ու մեծամեծ ընծաներ պարգևել կ'ուզէր անոր. բայց Նունէ բան մը չառաւ։ Թագաւորը հարցուց իրեն թէ որո՞ւն զօրութեամբը կ'ընէ այս հրաշքները. Նունէ ալ կարգաւ տեղնիտեղը քարոզեց անոր Քրիստոսի հաւատքը, և անկէ ետքը սկսաւ աւելի համարձակութեամբ ամենուն սորվեցընել փըրկութեան ճամբան։

Ան օրերը Միհրան Թագաւորը որսի ելած ըլլալով՝ յանկարծակի օդը մթընցաւ, ու անհնարին մառախուղ մը պատեց անոր չորս կողմը. անանկ որ Թագաւորը ճամբան չարունակել չկրնալով, չէր գիտէր ո՞ւր կ'երթար։ վախցաւ որ չըլլայ թէ Տրդատ Թագաւորին գլխուն եկած փորձանքը իրեն ալ հանդիպի. ուստի մէկէն Նունեայ Աստուծոյն դիմեց աղօթքով, և ուխտեց որ եթէ այս փորձանքէն անվտանգ խալըսի, ինքն ալ նոյն հաւատքը ընդունի։ Ան ատենը մէկէն լոյս մը ծագեց և մէգը փարատեցաւ. Միհրան Թագաւորն ալ իր խօսքին վրայ հաւատարիմ կենալով՝ բոլոր ընտանիքովը և բնակչօք Քրիստոսի հաւատքը ընդունեցաւ։

Եւ որովհետև ան օրերը մեր ազգին հոգևոր ծնող սուրբն Գրիգոր Լուսաւորիչը վիրապէն նոր դուրս ելած, աստուածուսոյց վարդապետութեամբ Քրիստոսի հաւատքը կը

քարոզէր, Նունէ խնդրեց Միհրան թագաւորէն որ մարդիկ խրկէ այն մեծ խոստովանողին՝ վրաց աշխարհին հոգևոր գլուխ մը խնդրելու համար։ Գրիգոր դեռ սուրբ աստիճան առած չըլլալուն, հրաման խրկեց Նունեայ որ կուռքերը կործանէ ու անոնց տեղ խաչեր տնկէ, ինչուան որ Աստուած հովիւ մը պարգևէ իրենց։

Նունէ մէկէն Մծխիթայ քաղքին դէմը եղած գետին անդիի կողմը ամպրոպային Արամազդայ պատկերը կործանեց, որուն քաղաքացիք ամէն առտու պարտական էին երկըրպագութիւն ընել։ Վրաց մեծամեծքը խռովելով, թագաւորին գլուխը փրթան, «Մեր մեծ աստուածը կործանել կուտաս, ըսին, անոր տեղը ի՞նչ պիտի պաշտենք»։ Միհրան թագաւորն ալ սուրբ խաչը ցուցընելով «Նունէ մեզի կը սորվեցընէ, ըսաւ, ի՛նչ ընելիքնիս»։ Սրբուհին հաւատացեալ ու բարեպաշտօն իշխանաց հետ մէկ եղած՝ Արամազդայ մեհենին կործանած տեղը մեծ փայտէ խաչ մը տնկել տուաւ. սակայն Մծխիթացիք՝ երբոր առտուան դէմ իրենց սովորութեանը համեմատ Նունէի քարոզած աստուծոյն երկրպագութիւն ուզեցին ընել, տեսանելով թէ փայտի կտոր մըն է, սրտերնին շատ կոտրեցաւ, ու սկսան ծաղր ընել. «Մեր անտառները այդպիսի աստուածներով լեցուն են» ըսելով։ Նունէ Աստուծոյ դիմեց որ տգէտ ժողովրդեան գայթակղութիւնը հրաշքով մը փարատէ. մէյմ՚ալ աստուածային լոյս մը ե-

բեցաւ բլրոյն վրայ ու մէկ անուշահոտութիւն մըն էր տարածուեցաւ, և հրեշտակաց օրհնութեան ձայներ կը լսուէին։ Ժողովուրդը աս որ տեսաւ, ամէնքը մէկէն ահիւ և դողութեամբ երկրպագութիւն ըրին սուրբ նշանին, և մեծամեծ բժշկութիւններ և հրաշքներ ալ տեսնուեցան այն տեղը։

Եւ որովհետև մեհեանները կործանելէն ետքը նորադարձ ժողովրդեան համար առանձին եկեղեցի մըն ալ հարկաւոր էր շինելը, Նունէ եկեղեցւոյն ձևը տուաւ Միհրանայ. և թագաւորին հրամանաւը մեծ ու փառաւոր եկեղեցի մը շինել սկսան։ Ահագին ծանրութեամբ սիւներ ալ պիտի դրուէին, բայց գործաւորք անոնցմէ մէկը ամէն ճիգը թափելէն ետքը երբոր տեղէն շարժել չկրնալով յուսահատած կեցեր էին, Նունէ գիշեր ատեն առանձին այն տեղը գնաց, ու աղօթքի կեցաւ. մէյմ՚ալ ինքնիրեն սիւնը բարձրացաւ. և օդուն մէջ այնպէս կախուած մնաց. Թագաւորն ու ճարտարապետք երբոր այս բանս իմացան, երկրորդ առտուն բազմութեամբ եկան այն նորօրինակ հրաշքը տեսնելու. Նոյն ատեն սիւնը մէկէն անոնց աչքին առջևը գնաց իրեն խարսխին վրայ հաստատուած մնաց։ Բազմութիւնը այս որ տեսաւ, սկսան մեծաձայն աղաղակել, թէ «Մեծ է քրիստոնէից աստուածը. և Նունէի քարոզածները բոլոր ճշմարտութիւններ են»։ Անկէ ետքը Տրդատ թագաւորը եպիսկոպոսներ ու քահանաներ խրկեց որ հաւատացեալքը մկրտե-

ցին ու հաւատոյ ուրիշ պէտք եղած բաները սորվեցուցին անոնց։

Այսպիսի աստուածահաճոյ կեանք մը անցընելով երջանիկ առաքելուհին Նունէ, մեռաւ սրբութեամբ. և վրացիք մեծ պատուով թաղեցին զինքը։



# ՍՈՒՐԲ ԿԻՊՐԻԱՆՈՍ

Ափրիկէի Կարքեդոն քաղաքին մէջ Կիպրիանոս անունով անուանի հեթանոս փիլիսոփայ մը կար Քրիստոսի երրորդ դարուն առենները, տղայութեան առենէն կաց նուիրած իր ծնողքէն։ Ամենուն դիմացը մեծ պատիւ ունէր Կիպրիանոս, և բոլոր քաղաքացիքը իրեն խօսքերը պատգամի տեղ կ'ընդունէին և անոնց դէմ դառնալ չէին կրնար։ Ինքը Կիպրիանոս ալ հեթանոսութեան թանձր խաւարովը ծածկուած ըլլալով, դիւաց հետ հաղորդակցութիւն ունէր, և պէտք եղած բաները անոնցմէ կ'իմանար և իրեն ուզածներն ալ անոնց ձեռքովը կատարել կուտար։

Նոյն քաղաքին մէջ Յուստինէ կամ Յուստինա անունով կոյս աղջիկ մը կար, որ Քրիստոսի սուրբ հաւատքը սարկաւագէ մը ընդունած ըլլալով, իր ծնողացն ալ հոգւոյն փրկութեանը պատճառ եղեր էր։ Յուստինէ սովորութիւն ունէր որ ամէն օր իր մօրը հետ մէկտեղ եկեղեցին կ'երթար։ Աղջկանը նազելի գեղեցկութիւնը և վայելուչ համեստութիւնը՝ երիտասարդի մը սիրտը կարա-

ցուցին, որ սկսաւ ամէն ջանք ընել՝ Ցուստիանէն իրեն հարսնացընելու համար։ Բայց ոչ իրեն խօսքերը և ոչ խրկած պարգևները ընդունելի եղան. «Աստուծոյ նուիրեր եմ ինքզինքս, կ'ըսէր սուրբը. ու անհնարին է որ արարածական սէրը անմահին հետ փոխանակեմ»։ Մէկ կողմանէ ալ սրտեռանդն աղօթքներով՝ ինքզինքը կուսութեանց պահապան սուրբ Աստուածածնայ կը յանձնէր։

Երիտասարդը տեսնելով որ Ցուստիանէն համոզելը անկարելի բան է, ուրիշ հնարքի մը ձեռք զարկաւ։ Մեծամեծ պարգևներ տուաւ Կիպրիանոս մեծանուն կախարդին, խնդրելով իրմէ որ ճարտարմտութեամբը իր յոյսը և փափաքը կատարէ։ Կիպրիանոս արդէն լսած ըլլալով Ցուստիանէի գեղեցկութիւնը, ուզեց անձամբ ալ տեսնել, ու երբոր սուրբ կոյսը եկեղեցիէն դուրս կ'ելլէր, աւելի մեծ սիրով բորբոքեցաւ Կիպրիանոս, և ուզեց որ փոխանակ երիտասարդին տալու զինքը, ինքն իրեն հարսնայընէ, ուստի դիւաց պատուիրեց որ երթան Ցուստիանէի միտքը և սիրտը շփոթեն։

Իմացաւ Ցուստիանէ դիւաց նենգուպատիր որոգայթները, Քրիստոսի ու Տիրամօր յանձնեց ինքզինքը, գիտնալով որ անոնց պաշտպանութեան ապաւինողը ոչ երբէք ամչցեր է կամ՝ պիտի ամչնայ։ Ինքիր գեղեցկութիւնը և տեսքը ապականել սկսաւ անդադար ճգնութեամբ և խստամբեր ծոմապահութեամբ. և այս կերպերով դիւաց որոգայթները փճա-

ցուց, ու գիրենք խաղք խայտառակ ըրաւ ձգեց։

Կիպրիանոս անոնցմէ զօրաւոր սատանաներ սկսաւ խրկել Յուստինէի վրայ, բայց իր ուզածին չկրցաւ հասնիլ։ Չէր կրնար իմանալ թէ ինչ կերպով դիւաց ներգործութիւնները կը փճանան. ուստի սատանաներուն չարաչար ծեծ մը քաշել սկսաւ. «Աս ի՞նչ բան է ըրածնիդ, ըսաւ, որ այսչափ ատեն ուշանալէն ետքը, իմ՝ յոյսերս ալ փուճը հանեցիք»։ Սատանաները դարձան «Անհնարին բան է, ըսին, այն աղջկան յաղթելը, որ խաչելոյն նշանաւը զմեզ կը հալածէ»։ Կիպրիանոս «Ձեզմէ խեր չկայ» ըսաւ, ու դիւաց հարիւրապետը խրկեց Յուստինէի վրայ. բայց ան ալ խաղք եղած ետ դարձաւ։

Աստուծոյ շնորհքը Կիպրիանոսի սիրտը լուսաւորեց, որ մէկէն իմացաւ դիւաց խաբէութիւնը և քրիստոնէից աստուծոյն առջև տկարութիւնը։ Ուստի մէկէն ինքզինքը անոր պաշտպանութեան և խնամոցը յանձնել սկսաւ, և քրիստոնեայ քահանայից հետն ալ արդէն ծանօթութիւն ունեցած ըլլալով գնաց անոնց ոտքը ընկաւ, և սուրբ հաւատոյ պէտք եղած բաները կը հարցընէր ու կ'իմանար անոնցմէ։ Իր մոլորահնար գրքերը բոլոր կրակի տուաւ, ու երախայութեան պատրաստել սկսաւ ինքզինքը դառն և անտանելի չարչարանօք և ապաշխարութեամբ. ետքը Կարքեդոն քաղաքին եպիսկոպոսէն սուրբ մկրտութիւնը ընդունեցաւ, ու կախարդ Կիպրիա-

նոսը բոլորովին նոր մարդ փոխուեցաւ Աս-
տուծոյ շնորհաց ընտիր անօթ մը ըլլալով։ Եպիսկոպոսը ասոր ունեցած հոգեւորական եռանդը տեսնելով, եկեղեցւոյ դռնապանաց կարգը անցուց Կիպրիանոսը։ Իր աստուածպաշտութիւնը օրէ օր կ՚աւելնար, և մէկէն աղէկ կ՚իմացուէր թէ օր մը ի՜նչ մեծ մարդ պիտի ըլլայ Կիպրիանոս. անոր համար Եպիսկոպոսը եկեղեցւոյ փոքր աստիճանները տալէն ետքը, սարկաւագ ձեռնադրել տուաւ Կիպրիանոսը, որ իրեն ճարտասան լեզուին վրայ Աստուծոյ շնորհքն ալ աւելցընելով, աստուածային բանին անպարտելի ախոյեան մըն էր։ Անկէ ետքը քահանայ ձեռնադրեցին զերանելին, թէպէտև ինքը շատ դէմ կեցաւ. վերջն ալ եպիսկոպոս ընել տուին։

Ան օրերը Դեկոս կայսեր հրամանաւը մեծ հալածանք ելաւ քրիստոնէից վրայ. հեթանոսք որ արդէն Կիպրիանոսը չարաչար կ՚ատէին քրիստոնեայ ըլլալուն համար, այն հրամանը յարմար առիթ սեպեցին առիւծներու դիմաց ձգելով՝ չարաչար մահուամբ սպաննելու զերանելին։ Կիպրիանոսի ուզածն ալ ան էր. բայց իր ժողովրդեան աղաչանացը անսալով՝ գնաց պահուըտեցաւ։ Հալածանքին վրայ ժանտախտ մը ընկաւ Ափրիկէ ու չարաչար կոտորած կ՚ընէր. ան ատեն Կիպրիանոս հետն առաւ հաւատացելոց մէջէն առողջները, ու ազդու խրատներով յորդորեց որ ելլեն իրեն հետ քաղաքը դառնան՝ այն հիւանդութենէն բռնուողները հոգալու և խնա-

մելու համար։ Ժանտախտին ոյժն որ կոտրեցաւ, կռապաշտք բռնեցին երանելի Հայրապետը, և Դեկոս կայսեր կողմանէ եկած կուսակալ դատաւորին առջևը հանեցին։ Դատաւորը սկսաւ ողոքական և սպառնալից խօսքերով յորդորել զինքը որ մտիկ ընէ իրեն, ու առջի կրօնքը նորէն ընդունի։

Կիպրիանոս դարձաւ «Փուճ տեղը մի՛ աշխատիր, ըսաւ, զիս սուրբ հաւատքէս դարձընելու համար. փորձով և անձամբ իմացեր եմ՝ թէ որչափ անհնարին տարբերութիւն կայ ձեր անշունչ ու դիւական կռոց՝ ու մեր Աստուծոյն մէջ»։ Դատաւորը բարկացաւ, ու չարաչար ծեծել տալէն ետքը հրամայեց որ վերցընեն բանտ դնեն. իմանալով ալ թէ Յուստինէն եղեր է անոր Քրիստոսի հաւատքը ընդունելու պատճառը, զինքն ալ բռնել տուաւ, ու առանձին բանտի մէջ արգիլեց։ Քանի մը օր վրան անցնելէն ետքը, երկուքն ալ առջևը կանչեց ու խօսքին մտիկ ընելու յորդորել սկսաւ. բայց երբոր տեսաւ թէ մտիկ ընելիք չունին, իրենց մարմնոյն մորթը քերել տուաւ, ու ետքը տաքցուցած տապակի վրայ դրաւ. և տեսնելով թէ անոնք վնաս մը չքաշեցին, պատուիրեց որ գլխատմամբ մեռցունին. Յուստինէն մէկէն գլխատեցին, բայց Կիպրիանոսի համար կ'ըսեն վկայագիրք թէ սրբուհւոյն Յուստինէէն շատ ետքը մարտիրոս եղած ըլլայ. և պատմութիւնը այս կերպով կը պատմեն։

Դեկոս կռապաշտ կայսեր մահուընէն ետ-

քը, քիչ մը ատեն քրիստոնէից դէմ բորբոքած հալածանաց հուրը մարեցաւ. ուստի երանելին Կիպրիանոսն ալ Կարքեդոն դարձաւ, ու արթուն հսկողութեամբ հաւատացեալքը կը հովուէր։ Բայց խիստ սակաւատև եղաւ այն հանդարտութիւնը. վասն զի Վաղերիանոս կայսրը թագաւոր նստելով՝ իր ամբարիշտ խորհրդակցացը խօսքին մտիկ ըրաւ, ու խեղճ քրիստոնեայքը առջինէն աւելի հալածանաց և նեղութեանց մէջ ձգեց։ Իրեն կողմանէ Կարքեդոն քաղաքը անգութ պաշտօնեայ մը եկաւ, ու մէկէնիմէկ հրամայեց որ քրիստոնէից գլխաւոր Կիպրիանոսը իր առջևը բերեն։ Դատաւորը դարձաւ անոր «Մ՚եր մեծայաղթ կայսեր հրամանն է, ըսաւ, որ ամէն քրիստոնեայք դառնան՝ ճշմարիտ աստուածները պաշտելու. տեսնեմ դու ի՞նչ խելքի վրայ ես»։ Կիպրիանոս պատասխանեց. «Քրիստոսի սուրբ հաւատքը կը դաւանիմ, ու հաւատացելոց եպիսկոպոսն եմ. ճշմարիտ աստուածը մեր ունեցածն է, որն որ կը դաւանինք, և իրմէն կը խնդրենք աշխարհի խաղաղութիւն և ինքնակալաց երկար կեանք. և անհնարին է որ զիս այս հաւատքէն ետ կենալու կարենաս ստիպել»։ Դատաւորը ուզեց իմանալ թէ քրիստոնէից քահանայքը ո՞րչափ են և ուր կը կենան. բայց Կիպրիանոս չիմացուց. ան ատեն բարկացաւ իշխանը և Կուրուբա քաղաքը աքսորել տուաւ զինքը։ Սուրբն Կիպրիանոս այն տեղէն ալ իր աստուածուսոյց վարդապետութեամբը

քրիստոնեայքը կը մխիթարէր ու կը զօրացընէր հոգեռանդն թղթերով. քաղաքացւոց ալ շատ սիրելի եղաւ, որոնք իրեն ամէն հարկաւոր պիտոյքը սիրով և յօժարութեամբ կը բերէին։

Կիպրիանոսի աքսորանացը վրայ տարի մը անցնելէն ետքը, առջի բդեշխին տեղ Գաղերիոս Մաքսիմոս անունով մէկը կարքեդոն եկաւ, ու երանելին ետ դարձընել տուաւ։ Բայց Կիպրիանոս Աստուծոյ սիրովը վառուած՝ իրեն սիրոյն համար արիւնը թափելու կենդանի փափաք մը կը զգար ու հաւատացելոց մէկուն մէկալին իր սրտին իղձը կը յայտնէր։ Անոնք ոտքը ինկած կը խնդրէին իրմէ որ հաւատացելոց սիրոյն համար ըլլայ, քիչ մը ատեն լուռ կենայ, ինչուան այն դառն հալածանաց կրակը մարի, ու քրիստոնեայք հանգստութիւն գտնեն։ Բայց Կիպրիանոսի սրտին հուրը անոնց խօսքերովն ու աղաչանքներովը պաղելու տեղ, աւելի կը բորբոքէր. «Աստուած տայ, կ'ըսէր, որ այս վայրկենիս վրայ հասնին կռապաշտք ու գլուխս կտրեն։

Օր մը յանկարծակի իշխան մը հետը զօրքեր առած, եկաւ Կիպրիանոսի տունը կոխեց, ու առաւ պատուով իր կառքին մէջ նստեցուց զերանելին ու տունը տարաւ. հոն ալ ժողովուրդը իրեն դէմ չգրգռելու համար՝ նայեցաւ որ ամենայն մեծարանօք վարուի Կիպրիանոսի հետ։ Երկրորդ օրը տուաւ դատաւորին դիմացը հանեց զինքը. Մաքսիմոս զերանելին տեսաւ չտեսաւ՝ «Կիպրիանոս ը-

սուած չարագործը դո՞ւն ես» հարցուց։ «Այո՛ ես եմ» պատասխանեց երանելին։ «Կայսերաց հրամանն է, վրայ բերաւ դատաւորը, քեզ տեսնեմ, զոհէ աստուածոց որ տալու տանջանքներէս ազատիս։ — Փուճ տեղը խօսքը մի՛ երկընցըներ, պատասխանեց Կիպրիանոս, ի՛նչ կերպով որ գիտես զիս չարչարէ. վասն զի քեզի մտիկ ընելիք չունիմ»։ Դատաւորը այն ատեն որոշեց որ Կիպրիանոսի գլուխը կտրուի։ Աս որ լսեցին հաւատացեալք՝ ամէնքը մէկ եղած սկսան բարձրաձայն աղաղակել որ զիրենք ալ հետը գլխատէ. առանց անոր կենալ չենք կրնար կ՚ըսէին։ Դատաւորին պաշտօնեայքը բռնի զանոնք մէկդի հրելով, երանելին Կիպրիանոսը առեր գլխապարտութեան տեղը կը տանէին։

Սուրբը զգեստները մէկդի դնելով ծընկան վրայ եկաւ, ու աղօթքով դահճին հարուածոյը կը սպասէր։ Ետքը դարձաւ քովի հաւատացելոցը աղաչեց որ զինքը գլխատող դահճին մասնաւոր պարգև մը տան զինքը մեռցընելէն ետքը. դահիճը չէր համարձակեր այնպիսի պատկառելի անձի մը կեանքը վերցընել. բայց սրբոյն աղաչանացը դէմ դնել չկրցաւ, ու անհամեմատ Կիպրիանոսի պատուական գլուխը իրեն արեանը մէջ թաւալելով ինկաւ։ Գիշեր ատեն հաւատացեալք մեծ հանդիսով եկան անոր սուրբ մարմինը վերուցին, ու հալածանաց դադրելէն ետքը մեծ ու փառաւոր վկայարան մը շինուեցաւ Կարքեդոնի մէջ ի պատիւ սրբոյն Կիպրիանոսի և երանելի վկայուհւոյն Յուստինեայ։

# ՍԱՀԱԿ ԵՒ ՅՈՎՍԷՓ

իսմայէլացւոց Հարուն անունով ամիրապետին օրերը, Հայաստանի Կարին կամ Թէոդոսուպօլիս քաղաքին։ մէջ իրեք եղբարք կային Սահակ և Յովսէփ, և երրորդին անունը չգիտցուիր։ Քրիստոնեայ մօր զաւակ էին ասոնք, բայց հայրերնին այլազգի էր. սակայն որդիքը իրենց բարեպաշտ մօրը տուած կրթութիւնը աղէկ բանի բերելով, սրտերնուն մէջ կ'եփէին որ օր մը չէ նէ օր մը արժանի ըլլան՝ Քրիստոսի համար արիւն թափելու։ Բայց իրենց հօրերնուն վախէն քրիստոնէութիւննին չկրնալով համարձակ պաշտել, հնարք մը կը մտածէին այս բանիս առաջը առնելու. ուստի միաբան խորհրդով ելան այն ատենուան Կոստանդնուպօլսոյ Նիկեփորոս կայսեր թուղթ մը գրեցին, որուն մէջ կը յայտնէին իրենց հաւատքը, և կը խնդրէին իրմէ որ իր ընդարձակ տէրութեանը մէջ բնակելու տեղ տայ իրենց։ Նիկեփորոս ասոնց խորհուրդը լսելով շատ ուրախացաւ, ու մէկէն թուղթ գրեց որ ելլեն շուտով իր քովը գան, և ուրիշ բան ամենևին չմտածեն. ինքն իր ընելիքը գիտէ։ Երանելի հարազատքը կայսեր այս

ընդունելութիւնը լսելով շատ ուրախացան և երբոր իրենց ուրիշ քրիստոնեայ ազգակիցներն ալ յորդորելու հետ էին որ ելլեն միատեղ փախչին, բանը մատնութեամբ իրենց հօրը ականջը հասաւ, որ մէկէն արգիլեց անոնց ճամբորդութիւնը. բայց իրեք եղբարց մէջէն պըզտիկը բանը յարմարցընելով՝ ծածուկ առանց մէկու մը գիտնալուն՝ գնաց Յունաց երկիրը փախաւ։

Նոյն կերպով իրենք զիրենք հօրերնուն ձեռքէն խալըսել կ'ուզէին Սահակ և Յովսէփ բայց չյաջողեցան. վասն զի Յովսէփ աշխարհք մտած ըլլալով՝ կին ու որդիք ունէր, ու անոնց հետ մէկտեղ փախչիլը անհնարին էր. մէկալ կողմանէ ալ չէր ուզեր այլազգեաց ձեռքը թողուլ զանոնք. Սահակ ալ եղբօրը սիրոյն համար չուզեց իրմէ բաժնուիլ։ Ան օրերը Մամիկոնէից Քուրդիկ անունով իշխանին վրայ ապստամբութեան ամբաստանութիւն մը եղած ըլլալով, ինքզինքը այլազգեաց բռնութենէն ազատելու համար կը մտածէր երթալ Յունաց կայսեր ապաւինիլ։ Սահակ և Յովսէփ եղբարքը աս որ իմացան, խնդրեցին իրմէ որ զիրենք ալ յանձն առնու իրենց ընտանիքովը փախցընել։ Մ՚տիկ ըրաւ Քուրդիկ անոնց աղաչանացը, բայց հարկաւոր բանի մը համար ճամբայ ելլելու ուշանալով, Սահակ և Յովսէփ ալ ուզեցին նորէն կարին դառնալ։ Ճամբուն վրայ կարնոյ քաղաքապետին գործակալը հանդիպեցաւ անոնց, ու նեղը խօթելով իմացաւ անոնց միտ-

քը, ու իր տիրոջը տանելով՝ ամէն բան տեղն ի տեղը հասկըցուց անոր։

Իմացան երանելի հարազատքը թէ Աստուծոյ կամքն է որ հոն մեռնին, ու մահուամբ իրենց փրկչին վրայ ունեցած սէրը ցուցընեն. ուստի իրեն ապաւինելով՝ մէկզմէկ կը յորդորէին ու կը քաջալերէին։ Քաղաքապետը առջևը կանչել տուաւ զասոնք, ու սկսաւ հարցընել իմանալ թէ ի՛նչ խելքի վրայ են։ Քրիստոսի կրկին ախոյեանքը մէկ բերնով պատասխան տուին. «Մեր կրօնքը քրիստոնէութիւնն է, վասն զի Աստուծոյ շնորհքովը ճանչցանք մեր հօրը սորվեցուցածին ստութիւնը, ու այս սուրբ հաւատքը ընդունեցանք. և անանկ հաստատուն ենք մեր մտացը վրայ, որ ամենևին խախտելիք չունինք, մեռնիլն ալ աչուընիս առած ըլլալով՝ մեր Աստուծոյն սիրոյն համար. ուստի մի՛ դանդաղիր, ինչ տանջանք որ պիտի տաս՝ շուտ ըրէ, որ օր մը առաջ երթանք մեր փրկչին հետ միանալու»։ Դատաւորը հրաման տուաւ որ մէկէն վերցընեն բանտ տանին, ու ինքն իր խորհրդականները կանչեց որ մտածեն թէ ի՛նչ ընելու է այս երկու հարազատաց համար։ Մտածեցին որ այլազգեաց մէջի իմաստունքը առնուն բանտը խրկեն, որ երթան համոզեն զիրենք քրիստոնէութենէ ետ կենալու։ Անոնք ալ գնացին, «Ատ ձեր յամառեալ խենթութենէն ետ կեցէք, ըսին, որպէս զի մեր իշխանին մեծամեծ պարգևացը արժանի ըլլաք. իսկ թէ որ մտիկ չընէք,

գիտցած ըլլաք որ գլուխնիդ պիտի երթայ»։ Սուրբ Նահատակքը պատասխան տուին. «Այդպիսի խորամանկ խօսքերով անխելք մարդիկը միայն կրնաք խաբել. պարգևնիդ ալ ձեզի ըլլան, դուք միայն նայեցէք որ ըրած սպառնալիքնիդ շուտով կատարէք. մենք ուրախութեամբ այն վայրկենին կը սպասենք»։ Իմաստունքը ետ դարձան ու դատաւորին ամէն բան պատմեցին. ան ալ բարկութեամբ վճիռը կտրեց որ մէկէն սպաննեն։ Երանելի Նահատակաց ծերունի հայրը երբոր այս խեղճ լուրը լսեց, գնաց ինկաւ դատաւորին ոտքը, ու իրմէ հրաման առնելով որ իր որդւոցը հետ կարենայ քիչ մը խօսիլ, բանտը վազեց, արտասուախառն հեկեկանօք անոնց գիրկը ընկաւ, մէկ կողմանէ իր ծերութիւնը կը յիշեցընէր, մէկալ կողմանէ ալ իր գութն ու սէրը. կը պաղատէր ոտուընին կը պլլուէր որ հօրերնուն խօսքին մտիկ ընեն, գէթ առ երես քրիստոնէութիւնը ձգել ձևացընեն, ու մահուընէ ազատելով՝ ուրիշ տեղ երթան համարձակ իրենց հաւատքը պաշտեն։ Երանելի հարազատքը իմացան որ սատանայական հնարք մըն էր ասիկայ, հօրերնուն արտասուօքը կակղընալով՝ քրիստոնէական սուրբ հաւատքէն ետ կենալու համար. ուստի արութեամբ դէմ կեցան անոր ամէն ողոքանացը, ու նորէն մէկզմէկ քաջալերել սկսան։ Հայրերնին ալ տեսնելով թէ մտիկ ընելու կամք չունին, լալով և ողբով հեռացաւ քովերնէն։ Մէկէն դահճապետը վրայ հասաւ, ու դատաւորին

վճիռը ցուցընելով անոնց, առաւ գլխատման տեղը տարաւ։ Սուրբն Յովսէփ դահճապետին աղաչեց որ նախ Սահակայ գլուխը կտրեն, պզտիկութեանը համար վախնալով որ չըլլայ թէ հաւատքը թողու մահուան վախէն. բայց անիկայ յօժարութեամբ իր կեանքը նուիրեց. ետքը սրբոյն Յովսեփայ գլուխն ալ կտրեցին յամի տեառն 808։

Երանելեաց մարմինները առին բաց տեղուանք ձգեցին թռչնոց կերակուր ըլլալու համար, և խստիւ արգիլեցին որ չըլլայ թէ մէկը անոնց մօտենայ։ Բայց նոյն գիշերը աստուածային մասնաւոր հրաշքով լոյս ինջաւ անոնց մարմնոյն վրայ, որով ամենուն սիրտը վախ մը ընկաւ, և հաւատացեալք համարձակութեամբ եկան երանելեաց մարմինը վերուցին, և պատշաճաւոր տեղ մը դնելով՝ ատեն անցնելէն ետքը վրանին փառաւոր վկայարան շինեցին։ Ինչուան հիմա մեծ ուխտատեղի է հաւատացելոց՝ անոնց գերեզմանին տեղը։



# ՂԱՄՊԷՈՍ ԵՒ ՂԱՄՊԷՈՒՀԻ

Մաքսիմիանոս կայսեր հալածանաց օրերը, Նիկոմիդիա քաղաքէն էին այս երկու երանելի հարազատքը եղբայր և քոյր, որոնք կայսեր քրիստոնէից դէմ հանած հրովարտակէն փախնալով, Նիկոմիդիա քաղքին մօտ եղած լեռներուն մէկուն մէջ պահուըտեր էին ուրիշ շատ քրիստոնէից հետ։ Օր մը Եւղամպէոսը առին քաղաքը խրկեցին որ երթայ իրենց համար պէտք եղած կերակուրը գնէ, ու միանգամայն տեսնէ թէ հալածանքը ի՛նչ ջուրի վրայ է։ Եւղամպէոս տեսաւ որ ամէնքը կռոց տաճարները գունդագունդ կը վազեն, ու երբոր զարմանալով մը պատին վրայ դրուած կայսերական հրամանը կը կարդար, մարդիկ վրայ հասան «Տղայ, ի՛նչ ապշած կեցեր ես, ըսին, ինչո՞ւ համար մեհեանները չես երթար»։ Եւղամպէոս մտիկ չըրանոնց ու կ'ուզէր մէկէն ընկերացը քովը երթալ, ու ամէն տեսածը պատմել անոնց։ Մարդիկը տղուն բռնած կերպէն ու խօսքերէն իմացան թէ քրիստոնեայ պիտի ըլլայ. ուստի բռնեցին, ու աղէկ մը ծեծել տալէն ետքը երբոր ի՛նչ հաւատքի տէր ըլլալը

ճանչցան, մէկէն առին Նիկոմիդիոյ Մաքսի-մոս անուն դատաւորին առջևը տարին։ Դա-տաւորը Եւղամպէոսի շնորհալից կերպն ու գեղեցկութիւնը տեսնելով՝ զարմացաւ մնաց. և ուզելով տղուն սիրտը իրեն քաշել, զինքը բերողներուն վրայ բրդաւ բարկութեամբ, «Որո՞ւն հրամանովը, ըսաւ, այս տղուն վրայ ձեռք վերցուցեր, ու այդպէս չարաչար ա-ռեր կապկըպեր էք»։ Մէկէն Եւղամպէոսի կապանքը քակեցին, ու Մաքսիմոս քաղցրու-թեամբ մը իրեն դառնալով «Տղաս, զրուցէ ինծի, ըսաւ, ի՛նչ վիճակի մարդ ըլլալդ. ծա-ռա՞յ ես թէ ազատ»։ Տղան պատասխան տուաւ. «Անունս Եւղամպէոս է, ու Քրիստոսի իմ փրկչիս ծառան եմ. իսկ ըստ մարդկան ա-զատ, ու նշանաւոր ծնողաց զաւակ։ — Հապա ինչո՞ւ է որ, կրկնեց դատաւորը, ցած մար-դու մը պէս կայսերաց հրամանը կ'արհա-մարհես, ու անմահ աստուածները չես ուզեր պաշտել։ — Շատ կը ցաւիմ վրադ, տէր դատաւոր, պատասխան տուաւ Եւղամպէոս, որ այդպիսի թանձր տգիտութեան մէջ պա-չարուած միտք ունիս, սատանաները Աստուծոյ տեղ պաշտելով»։ Դատաւորը սարսափելով, «Հոգիդ սիրես, ըսաւ, այդպիսի խօսք մի՛ զրուցեր տղաս. չըլլայ թէ աստուածները վրադ բարկանան, ու հիմա մեր աչքին առջևը զքեզ չարաչար պատժեն»։ Բայց երբոր տե-սաւ որ Եւղամպէոս ծաղր կ'ընէ զանոնք, գութը բարկութեան դարձուց «Աստուած-ները քու ըրած հայհոյանացդ չխնայելով

իմ ձեռքս մատնեցին զքեզ, ըսաւ. բայց ես դարձեալ սէր ունիմ վրադ, ու անուշութեամբ զքեզ կը խրատեմ որ երթաս անոնց բագինները, ու զոհեր մատուցանելով՝ յանդըգնութեանդ ներումն խնդրես։ — Ի՛նչ կ՚ըսես, ըսաւ Եւղամպէոս. աստուած ըսածներդ քարի փայտի կտորուանք են. անոնք ի՛նչ գիտեն որ բարկանալ ալ գիտնան»։ Մաքսիմոս հրամայեց որ մերկացընեն զինքը, ու գետնի վրայ տարածելով՝ աղէկ ծեծ մը քաշեն, որ գոնէ անոր ցաւովը խելքը գլուխը ժողվէ ու աստուածները չարհամարհէ, բայց Եւղամպէոս Քրիստոսի սիրոյն համար ուրախութեամբ կը համբերէր ամէն տեսակ վըշտաց, ու ամենեւին ձայն մը չէր հաներ. ետքը ետքը հառաչելով մը՝ սրտառուչ աղօթքով Աստուծոյ շնորհակալ ըլլալ սկսաւ, ու իրեն ամենազօր օգնութիւնը խնդրել։ Ջերանելին ծեծող սպասաւորքը չարաչար յոգնելով գաւազանները մէկդի ձգեցին. բայց Յիսուսի սիրովը վառուած յաղթող նահատակը, ամենեւին վիշտ մը չունեցողի պէս ուրախ զուարթ կեցեր անոնց երեսը կը նայէր։ Դատաւորը վերցընել տալով զինքը՝ նորէն յորդորանքը ձեռք առաւ. «Նայէ, կ՚ըսէք, ու զարմացիր թէ աստուածները վրադ ի՛նչ սէր և խնամք ունին, որ այնչափ տանջանքներու մէջ ալ զքեզ անվտանգ պահեցին։ — Չէ թէ քու աստուածներդ, պատասխան տուաւ Եւղամպէոս, այլ Քրիստոս մեր փրկիչն է զիս զօրացընողը. դու ալ թէ որ իրեն օգնութեանը

քննաս, աղէկ կ՚իմանաս թէ իրեն ապաւինողը միշտ աննկուն և յաղթող է»։ Դատաւորը նեղացաւ, ու դահճաց պատուիրեց որ առնուն կախեն զինքը ու մորթը քերեն. բայց այն տանջանքին մէջ ալ զարմանալի էր երանելի նահատակին անվրդով ուրախութիւնը. վասն զի դահիճները յոգնեցան, ու իր վշտակիր մարմինը բան մը չէր զգար, Քրիստոսի սիրովը վառուած ըլլալով։ Կախաղանէն իջեցընել տուաւ զինքը դատաւորը, ու երկայն չուաններով սաստիկ կապկըպել տուաւ. անանկ որ երանելւոյն մարմինը ճաթըռտիլ սկսաւ։ Եւղամպէոս այն դառն տանջանաց մէջ ալ բերանը չբացաւ, ու անձայն կ՚օրհնէր զԱստուած։ Զարմացաւ միայն Մաքսիմոս դատաւորը, արձըկել տուաւ զինքը կապանքէն, ու առջևը կանչելով «Գէթ հիմայ խելքդ գլուխդ ժողվէ, ըսաւ. մտիկ ըրէ խօսքիս ու աստուածոց զոհէ»։ Եւղամպէոս պատասխանեց. «Անկարելի բան է որ ես պիղծ սատանաներուն երկրպագութիւն ընեմ՛»։ Ետքը դարձաւ դատաւորին «Ի՞նչ կ՚ըսես, հարցուց, արդեօք աստուածները իմ՛ վրաս սէր ունի՞ն»։ Մաքսիմոս չիմանալով Եւղամպէոսին միտքը, կարծեց թէ զղջացեր է իր յամառութեանը վրայ, և կ՚ուզէ աստուածոց երկրպագութիւն ընել. ուստի հրամայեց որ առնուն պատուով պահեն զինքը արքունեաց մէջ. ու ինք մունետիկի ձայնով բոլոր քաղքին մէջ հրատարակեց որ վաղուան օրը ամէնքը մեհեանը ժողվուին, մեծ հանդիսի մը պատճառաւ։

Երկրորդ օրը երբոր ամէնքը եկան մեհենին մէջ լեցուեցան, Մաքսիմոս դատաւորն ալ Եւլամպէոսը հետն առած եկաւ հոն տեղը մտաւ։ Երանելին աստուածները տեսնենելով՝ բարձր ձայնով ամենուն դիմացը աղաղակել սկսաւ. «Ըսէք ինծի, ըսաւ, ով քարէ ու փայտէ արձաններ. ուտել, խմել, հոտուըտալ և փառաւոր զգեստներ հագնիլ կ՚ուզէ՞ք»։ Ետքը դատաւորին դառնալով «Նայէ, ըսաւ, տէր իմ, ինչպէս անշունչ անզգայ կեցեր են. երբոր մէկ բանով մը զիրենք ուրախացընել չենք կրնար, ինչ ելեր քրիստոնեայքը կը ստիպես որ այսպիսի փուճ ու անզգայ աստուածոց երկրպագութիւն ընեն»։ Ետքը աչուըները երկինք վերցուց երանելին, երեսը խաչ հանեց ու մեհենին մէջ եղած Արամազդայ արձանին դառնալով. «Այ խուլ աստուած, ըսաւ, Քրիստոսի անուամբը կը հրամայեմ քեզի որ գետին իյնալով կտոր կտոր ըլլաս, որպէս զի ամէն հոստեղի կեցողները իրենց կրօնին ընդունայնութիւնը ճանչնան»։ Աս խօսքս ըսաւ չըսաւ երանելին, արձանը գետին իյնալով ջարդուբուրդ եղաւ։ Հոնտեղը դիպուած ժողովուրդը այս զարմանալի հրաշքն որ տեսան, փախչող փախչողի եղան, քրիստոնէից աստուծոյն զօրութիւնը խոստովանելով։

Բազմութեան մէջէն պարկեշտ հնգետասանամեայ աղջիկ մը դուրս ցատքեց, գնաց Եւղամպէոսի գիրկն ընկաւ, ու արտասուքը անոր պարանոցը թանալով, «Եղբայր իմ,

կ՚ըսէր ; յիշէ որ մէկ մօր զաւակ ենք, ու ինչուան այս տարիքս մէկտեղ ապրեր ենք. կ՚աղաչեմ քեզմէ՝ խնդրէ Աստուծմէ որ ես ալ հաղորդ ըլլամ քեզի պատրաստուած փառացը»։ Երանելոյն՝ Եւզամպէա քոյրն էր այն աղջիկը, որ իր փախստեանը տեղէն իր եղբօրը բռնուիլն ու Քրիստոսի համար չարչարանք քաշելու արժանաւոր ըլլալը լսելով, բնութեան տկարութիւնը ոտքի տակ առեր, ու Յիսուսի անշէջ սիրովը իր մաքուր սիրտը վառած՝ քաղաքը եկեր էր, եղբօրը չարչարանացը կցորդ ըլլալու։

Մաքսիմոս դատաւորը արդէն Եւզամպէոսի վրայ զարմացեր մնացեր էր. այս անակնունելի դիպուածն ալ որ տեսաւ, ալ խելքը գլխէն գնաց, ու հրամայեց որ երկուքն ալ առնուն զգուշութեամբ պահեն։ Քանի մը օր անցնելէն ետքը դատաստանի նստաւ, ու Եւզամպէան իր առջևը կանչելով, իմացաւ իրմէ իր ո՛վ և ի՛նչ հաւատքի տէր ըլլալը. ետքը աղջկան դառնալով, «խելքդ ու համեստութիւնդ տեսնելով վրադ կը գթամ, ըսաւ, դուստր իմ. ու հայրաբար խրատ կուտամ քեզի որ եղբօրդ խօսքերուն ամենևին ականջ չկախես. խեղճը խելքը կորսընցուցեր ու ի՛նչ ըսածը չգիտեր։ — Ճշմարիտ իմաստութիւնը իմ եղբօրս քովն է, պատասխանեց Եւզամպէա. իմ Աստուծմէ խնդրածս ալ այն է որ անոր բռնած ճամբէն ամենևին չխոտորիմ»։ Բարկացաւ Մաքսիմոս, ու պաշտօնէիցը պատուիրեց որ աղէկ մը ապտակեն այն աղջիկը.

«Որպէս զի երթայ սորվի, կ՚ըսէր, թէ մեր դիմացը այդպիսի յանդուգն և անամօթ կերպով խօսիլ չըլլար»։

Երբ Եւդամպէոսն ալ առջևը բերել տուաւ. «Նայէ, ըսաւ, մահուանդ առեհը եկեր հասեր է. թէ որ խելք ունիս, հնազանդէ ինծի. ապա թէ ոչ, սա դիմացի եռացեալ ջրով կաթսան կը տեսնե՞ս, անոր մէջ ձգել պիտի տամ՝ զձեզ որ երթաք խաչիք»։ Եւդամպէոս դատաւորին պատասխան մըն ալ չտալով՝ երեսը խաչ հանեց, ու ինքզինքը այն կաթսային մէջ նետելով՝ ձեռուըները երկինք վերցուց, ու սկսաւ շնորհակալ ըլլալ Աստուծոյ։ Սրբուհին Եւդամպէա եղբօրը այս քաջասըրտութիւնը տեսնելով «ինծի համար ալ աղօթք ըրէ», ըսաւ՝ ու երեսը խաչակնքելով գնաց նոյն կաթսային մէջ նետուեցաւ։ Երկուքը մէկէն աղօթքի կենալով, անվնաս կաթսայէն դուրս ելան, ու դատաւորին առջևը գնացին։ Հոն դիզուած բազմութենէն շատը այս զարմանալի հրաշքէն արթըննալով, Քրիստոսի սուրբ հաւատքը համարձակաձայն դաւանել սկսան. Մ՚աքսիմոս ալ բարկանալով, երկու հարիւր հոգւոյ չափ մէկէն նոյն տեղը գլխատել տուաւ. ետքը Եւդամպէոսի աչուըներն ալ հանել տալով՝ քրոջը դարձաւ «Դուստր իմ, ըսաւ, ահաւասիկ զքեզ մոլորցընողին աչուըները հանել տուի. հիմայ եկու իմ սիրոյս արժանի եղիր, անմահ աստուածոց զոհ մատուցանելով»։ Եւդամպէա պատասխանեց «Աս ինչ անխելք մարդ ես եղեր, ըսաւ. այսչափ հրաշք

տեսնելէն ետքը՝ նորէն աստուածներ պաշտեցէք ըսելը ի՛նչ կը նշանակէ »։ Մ՛աքսիմոսի սիրտը տակնուվրայ եղաւ բարկութենէն, ու հրամայեց որ մազերէն կախեն զորրուհին, ու կողերը քերեն։ Եւղամպէա մէկ կողմէն եղբօրը քաջալերական խօսքերովը սիրտ կ'առնէր, մէկալ կողմանէ ալ աղօթքով. ինքզինքը Աստուծոյ պաշտպանութեանը կը յանձնէր։ Դատաւորը կրակ կը կտրէր անոր համբերատար ժուժկալութիւնը տեսնելով. Եւղամպէօսը չորս ցցի վրայ կապել կապկրպել տուաւ, կողերուն վրայ խեցի ու լանջացը վրայ ալ մեծամեծ քարեր դրաւ. ետքը երանելի աղջիկն ալ կախաղանէն վար առաւ, ու քարերով կլակին զարնել հրամայեց։ Սըրբուհին Եւղամպէա նահատակութեան փափաքով վառուած, դատաւորին տուած տանջանքները բանի մը տեղ չէր դներ. իսկ եղբայրը այն անտանելի չարչարանաց առենը Մաքսիմոսի դարձաւ «Կը զարմանամ, ըսաւ, թէ ի՛նչպէս խելքդ չհասնիր Աստուծոյ սքանչելեացը. դահիճները տանջելէն ձանձրացան, մենք դեռ կարծես թէ բան մը չենք քաշած, և յօժարամիտ ուրիշ նեղութեանց ալ կը սպասենք»։ Դատաւորը վերցընել տուաւ զիրենք ու բանտի մէջ արգելուլ հրամայեց. և ինքը մեծ հնոց մը անդադար իրեք օր տաքցընել տալէն ետքը, երանելի վկայքը մէջը ձգեց. մէկէն հրեշտակ մը իջաւ երկընքէն՝ ու երանելեաց մէջ մտնելով՝ թող չտուաւ որ կրակի զօրութիւնը անոնց վրայ

ազդէ։ Մաքսիմոս միտքը դրաւ թէ առանց ըրածը կախարդութիւն պիտի ըլլայ, ու հնոցէն դուրս հանել տալով՝ վճիռ հանեց որ գլխատուին։ Այս կերպով երանելի Նահատակքը Քրիստոսի 291 թուին իրենց մաքուր հոգին ստեղծողին ձեռքը աւանդեցին։



# ԵՐՄՈՆԷ ԿՈՅՍ

Սրբոյն Ստեփանոսի նախավկային ընկերակից Փիլիպպոս անունով սարկաւագին աղջիկն էր սրբուհին Երմոնէ։ Քրիստոսի առաքելոց զանազան մահուամբ վախճանելէն ետքը, սրբուհին Երմոնէ ուզեց Յովհաննու աւետարանչին քովը երթալ. ուստի իրեն Եւտիքիա անունով քոյրը հետն առած, ուզեց դէպ ի Եփեսոս երթալ, որովհետեւ երանելի աւետարանչին գլխաւոր բնակութեան տեղը այն քաղաքն էր. բայց Երմոնէ Եփեսոս չհասած՝ սուրբ առաքելոյն վախճանիլն իմանալով շատ ցաւեցաւ։ Սակայն իրեն ցաւոցը մեծ մխիթարութիւն եղաւ որ Պետրոնիոս անունով առաքելաշնորհ հովիւ մը Պօղոս առաքելոյն ձեռքովը քահանայութեան աստիճանը ընդունած ըլլալով, Եփեսոսի եկեղեցին կը կառավարէր։ Պետրոնիոս իր քովը առաւ այս երկու կուսանքը, իբրեւ գործակից աւետարանին։ Երմոնէ բժշկութեան արուեստն ալ լաւ գիտնալով՝ շատ հիւանդաց երբեմն դեղով բայց աւելի շատ անգամ աղօթքով առողջութիւն կը պարգեւէր. նաեւ ալ անոնցմէ շատերն Քրիստոսի հաւատքը ընդունելու պատճառ կ՚ըլլար

Այն օրերը Հռովմայեցւոց Տրայիանոս թագաւորը Պարսից դէմ պատերազմ բացած ըլլալով՝ դէպ ի Ասիա վազեց, և քրիստոնէից դէմ անհնարին թշնամութիւն ունենալով՝ հալածանք հանեց անոնց վրայ։ Երմոնէ կուսին անունն ալ լսելով՝ մասնաւոր մարդիկ խրկեց որ հարցընեն իմանան ու փնտռելով իր առջևը բերեն։ Անոնք գնացին երկար ատեն ասդին անդին բոլոր այն կողմերը փնտռելէն ետքը երբոր յուսահատած ետ կը դառնային, Եփեսոս քաղքին մօտ եղած գեղ մը ինջան հանգչելու,* ու տեսան որ Երմոնէն իր Եւտիքիա քրոջը հետ պարտիզի մէջ նստած աստուածաշունչ կը կարդար, ու Պետրոնիոս քահանայն պէտք եղած տեղերը կը լուսաբանէր։ Հարցուցին անոնց թէ «Կը ճանչնա՞ք այս գեղիս մէջ Երմոնէ անունով քրիստոնեայ կին բժիշկ մը»։ Երմոնէ ինքզինքը մէկէն չյայտնեց անոնց, առաւ վեր իր տունը հրամցուց, ու փառաւոր սեղան մը տալով անոնց. «Կերակրէն ետքը ուզածնուդ վրայ պէտք եղած տեղեկութիւնը կուտամ» ըսաւ։ Սեղանը լմըննալէն ետքը «Ձեր փնտռած Երմոնէն ահաւասիկ ես եմ» ըսաւ։ Մարդիկը ապշեցան մնացին. մէկ կողմանէ անոր ցուցըցած սէրն ու պատիւը տեսնելով, չէին ուզեր թագաւորին մատնել այնպիսի ազնուասիրտ աղջիկ մը. միւս կողմանէ ալ Տրայիանոսէն կը վախնային։ Երմոնէ անոնց ոտքը ընկած կը պաղատէր որ չգթան իր վրան, ու թագաւորին հրամանը մէկէն կատարեն.

ուստի ետևնէն յօժարակամ ելաւ ինչուան Տրայիանոսի առջևը գնաց։

Թագաւորը զինքն որ տեսաւ, մէկէն յորդորական ու սիրալիր խօսքերը ձեռք առաւ, ու մեծամեծ պատիւներ խոստանալով յորդորել սկսաւ. որ մէկդի ձգէ քրիստոնէութիւնը ու աստուածները պաշտէ. բայց սըրբուհին Երմոնէ անոր ամէն պատիւները մերժելով բարձրաձայն կ'աղաղակէր. «Քրիստոսի աղախին եմ, ու անցաւոր բարիքները՝ ուրոնցմով զիս խաբել կ'ուզես, իմ առջևս խաբէական երազներ սեպուած են»։ Տրայիանոս Երմոնեայ համարձակութիւնը պատժել տալու համար չարաչար ապտակել տուաւ սըրբուհւոյն. բայց անիկայ ուրախութեամբ կը համբերէր. վասն զի Քրիստոսի սիրովը վառուած ըլլալով՝ աշխարհային նեղութիւնները աչքին դիմաց բան մը չէին երևնար։ Նոյն ատեն Քրիստոս՝ Պետրոնիոս քահանային կերպարանքը առած, եկաւ սըրբուհւոյն քովը կեցած կը քաջալերէր զինքը որ չարչարանքներէ ամենևին չվախնայ։ Տրայիանոս սըրբուհւոյն մնաց անդրդուելի հաստատութիւնը տեսնելով՝ զարմացաւ մնաց. և անոր զարմանալի խելքը և համեստութիւնը տեսնելով՝ ձեռքը առաջ չգնաց որ աւելի մեծ տանջանքներու մատնէ զսըրբուհին. մանաւանդ թէ անոր սիրոյն համար քրիստոնէից դէմ հանած հալածանքին սաստկութիւնն ալ կակղեցընել տուաւ։

Եւ որովհետև, ինչպէս որ վերը ըսինք, Տրայիանոս այն ատենները Պարսից դէմ

պատերազմ ունէր, ուզեց որ Երմիոնէն ալ իր հետը գայ, անոր իմաստուն խորհրդոցը կարօտ ճանչնալով ինքզինքը։ Սրբուհին պատասխանեց. «Տէր թագաւոր, ըսաւ, իմ քեզի հետ ճամբորդութիւն ընելս այնչափ օգտակար չկրնար ըլլալ. բայց ես իմ Աստուծոյս կողմանէ կը խոստանամ քեզի որ պիտի երթաս յաղթանակաւ պատերազմը լմընցընես, ու փառօք քու երկիրդ դառնաս»։

Տրայիանոս Երմիոնեայ ըրած այս մարգարէութեանը վրայ շատ ուրախանալով՝ հրամայեց որ մեծագին ընծաներ տան իրեն. բայց սրբուհին բան մը չառաւ, «Իմ մեծութիւնս ու փառքս Քրիստոսն է» ըսելով։ Երմիոնէ անկէ ետքը աւելի մեծ եռանդով՝ ամէն հաւատացելոց պէտք եղած բաները կը հոգար, ինչուան Տրայիանոս կայսեր մեռնիլը։ Իրեն յաջորդը Ադրիանոս՝ դարձեալ սկսաւ քրիստոնէից դէմ հալածանք հանել. ու Եփեսոս քաղաքը գալով՝ Երմիոնեայ ով ըլլալը քննեց իմացաւ, ու մարդիկ խրկեց որ երթան գտնեն զինքը ու իրեն բերեն։ Անոնք շատ փնտռելէն ետքը երբոր չգտան, ու առջիններուն պէս Եփեսոս քաղքին մօտ գեղ մը իջնալով՝ տեսան Երմիոնէն որ նոյն գեղը կ'երթար, և որովհետև զինքը չէին ճանչնար, հարցուցին իրեն թէ «Երմիոնէ անունով կինը արդեօք ուր կրնանք գտնել»։ Երմիոնէ առանց ինքզինքը յայտնելու՝ ինչպէս Տրայիանոս կայսեր պաշտօնէիցը, նոյնպէս ասոնց ալ մեծ սէր և ընդունելութիւն ցըցուց, և կոչունքէն

ետքը ինքզինքը յայտնեց անոնց։ Զինուոր-
ները այնչափ պատիւ տեսնելէն ետքը չէին
գիտեր ի՛նչ սրտով երթան կայսեր մատնեն
զինքը. բայց Երմոնէ աղաչեց ու խնդրեց
անոնցմէ որ իր վրայ չգթան, գիտնալով որ
իր սրտին ուզածն ալ այն է՝ ժամ մը յառաջ
Քրիստոսի համար իրեն արիւնը թափելու։
Ադրիանոս թագաւորը զսրբուհին տեսաւ
չտեսաւ, բարկութեամբ մը վրան բրդելով՝
«Տուր ըրէ, զրուցէ տեսնեմ, ըսաւ, քու
տարիքդ ու բաղդդ. և ի՛նչ բանի վրայ ա-
պաւինած՝ ելեր ես ամբարտաւանութեամբ մեր
աստուածները կ'արհամարհես։ — Իմ՝ ազգս,
հայրենիքս ու բովանդակ մեծութիւնս Քրիս-
տոս է, պատասխանեց Երմոնէ. կ'անարգեմ
ձեր աստուածները, որովհետև ատոնց աս-
տուած ըսելն ալ ամօթ է՝ մէյմէկ սատանայ
ըլլալնուն համար»։ Ադրիանոս աս յանդուգն
պատասխանին վրայ նեղանալով՝ հրամայեց
որ անխնայ անոր բերնին զարնեն. բայց
տեսնելով թէ տանջանք չզօրեր, սկսաւ անու-
շութեամբ իրեն սիրտը որսալու հնարքներ
մտածել. կը խոստանար Հռովմայ իշխանուհի
ընել զինքը թէ որ խօսքին հնազանդի. բայց
Երմոնէ համարձակ ծաղր կ'ընէր ու կ'ար-
համարհէր անոր ամէն խոստմունքները ու
պարգևները։ Ադրիանոս ան ատեն գութը
սպառնալեաց փոխեց, ու սրբուհւոյն ոտից
ներբանները չարաչար զարնել տուաւ, որով
արեան գետեր սկսան վազել Երմոնեայ մար-
մնոյն վրայէն։ Ետքը պղնձէ աւազան մը չի-

նել տուաւ կայսրը, ու մէջը հալած կապար լեցուց. Նաւթ ու ծծումբ ալ դրաւ՝ որպէս զի դիւրաւ բռնկի, ու Երմոնէն մէջը ձգել հրամայեց։ Սրբուհին ուրախութեամբ խաչ հանեց երեսը ու այն աւազանին մէջ նետուեցաւ. բայց Աստուծոյ մանաւոր հրաշքովը ամենևին փնաս մը չեղաւ Երմոնեայ, որ կրակին մէջէն սկսաւ բարձրաձայն օրհնել զԱստուած։ Ադրիանոսի խելքը այս բանին չհասնելով՝ կարծեց թէ աւազանը ինչպէս որ պէտք է լաւ չէ տաքցած. ուստի փորձի համար ուզեց մէկ ձեռքը ներս խոթել տաքութեան աստիճանը իմանալու. սակայն աւազանին մօտեցաւ չմօտեցաւ, կրակին սաստկութենէն կայսեր ձեռքը չարաչար այրեցաւ. անոր համար սկսաւ սրբուհւոյն Երմոնեայ աղաչել որ դուրս ելլէ ու զինքը բժշկէ. կը խոստանար որ ինքն ալ Քրիստոսի հաւատքը կ'ընդունի թէ որ այս բժշկութեան արժանի ըլլայ։ Երմոնէ գիտէր թէ ցաւին սաստկութենէն ազատելու համար է որ կայսրը այս խոստմունքները կ'ընէ. բայց անով ալ խօսքին միտք ըրաւ, ու հնոցէն դուրս ելլելով՝ անոր ձեռքը բժշկեց։ Քանի մը օր Ադրիանոս մարդասիրութեամբ վարուեցաւ Երմոնեայ ու բոլոր քրիստոնէից հետ. բայց քիչ ատենէն իր առջի խստութիւնը ձեռք առաւ, ու նորէն սրբուհին յորդորել սկսաւ որ կուռքերը պաշտէ. ու տեսնելով որ չհաւանիր, իրմէ տեսած երախտիքը մոռցաւ, և հրամայեց որ հրացեալ տապակի մէջ ձգեն

զսրբուհին։ Երմոնէ կրակի պէս տաքցած տեսնելով տապակը՝ Աստուծոյ ապաւինեցաւ, ու երեսը խաչ հանելով գնաց վրան ինկաւ. մէկէն տապակը զովացաւ, և անոր տակը դրուած կրակին բոցը բաժնուելով՝ հոն կեցողները սկսաւ այրել։ Ադրիանոս այս բանս ալ տեսնելով՝ իր առջի խստասրտութենէն քիչ մը կակղըցաւ, ու սրբուհին այն տանջանարանէն դուրս հանել տուաւ, պատուիրելով որ բանտի մէջ զգուշութեամբ պահեն։ Բայց քիչ ատենէն խելքը նորէն դարձաւ, ու Երմոնէն իր առջևը կանչելով «Տես, ըսաւ, իմ աստուածներս վրադ ի՛նչ սէր ու խնամք է որ կը ցուցընեն. և դու ի՛նչ պժգալի ապերախտութեամբ անոնց սէրը կ՚արհամարհես։ — Կը զարմանամ՝, ըսաւ սրբուհին, թէ ի՛նչպէս կը յորդորես զիս անշունչ արարածոց երկրպագութիւն ընելու». աս ըսաւ, ու Աստուծոյ համառօտ աղօթք մը ընելով, մէկէն հոն դրուած կռոց արձանները գետին իյնալով կտոր կտոր եղան։ Թագաւորը այսպիսի հրաշքներով արթըննալու տեղ, աւելի կուրացաւ, ու երկու զինուորաց հրաման տուաւ որ տանին գլխատեն. «Նայինք, ըսաւ, կրնա՞յ կախարդութեամբ ինքզինքը գլխապարտութենէ ալ ազատել»։ Զինուորներէն մէկը երբոր սուրը վերցուցած կ՚ուզէր սրբուհւոյն գլուխը կտրել, մէկէնիմէկ ձեռքը չորցաւ. մէկալ ընկերը զինքը ծաղր ընելով՝ երբոր անոր չկրցածը ինքը կ՚ուզէր կատարել, առջինին պատիժը իր գլուխն ալ հա֊

սաւ։ Ան ատեն՝ երկուքը մէկէն Երմոնեայ ոտքը ինկան, ու անոր սուրբ հաւատքը դաւանելով կը խնդրէին իրմէ որ զիրենք բժշկէ։ Սրբուհին անոնց հաւատոյ ուղղութիւնը իմանալով՝ խաչ հանեց վրանին ու ձեռուընին բժշկեց։ Երմոնէ անկէ ետքը աղօթքի կեցաւ, խնդրելով Աստուծմէ որ աշխարհային նեղութիւններէն ազատէ զինքը ու յաւիտենից արքայութեան արժանի ընէ. մէկէն հրեշտակ մը ինջաւ երկընքէն, ու սրբուհւոյն մաքուր հոգին Աստուծոյ յանձնեց։

Կայսրը Քրիստոսի հաւատքը ընդունող երկու զինուորներն ալ նահատակած ըլլալով, Եփեսոսի մէջ եղած բարեպաշտ հաւատացեալք՝ Երմոնեայ և անոնց մարմինները առին, ու պատուով առանձին տեղ մը պահեցին։



# ՅՈՎԱԿԻՄ ԵՒ ԱՆՆԱ

Սրբուհւոյ Աստուածածնին երջանիկ ծընողքը Յովակիմ և Աննա՝ թէպէտև թագաւորական ու քահանայական իսրայելի գըլխաւոր ցեղերէն ինջած էին, բայց Աստուած որ իր միածնին մարմնաւորութեանը սպասաւոր աղքատ մայր մը ընտրեր էր, ուզեց որ անոր ծնողքն ալ երկրաւոր վաղանցուկ մեծութեան տեղ՝ անմահական կենաց արժանի ճոխութեամբն անուանի ըլլան։

Յովակիմայ սրտին մեծ ցաւ էր իր Աննա կնոջը ամլութիւնը. և այս վշտացը համար մխիթարութիւն ընդունելու տեղ շատ անգամ նախատինք ալ կը լսէր ուրիշներէն, որովհետև ինչպէս յայտնի է, հին օրինաց մէջ անզաւակութիւնը մասնաւոր աստուածասաստ պատիժ մը սեպուած էր։ Ան օրերը Յովակիմ Երուսաղեմայ տաճարը գնաց՝ Աստուծոյ նուէր մը ընելու համար. քահանան արհամարհելով մը անոր անզաւակութիւնը՝ թող չտուաւ որ ուրիշներէն առաջ ընծայատար ըլլայ Աստուծոյ։ Բարեպաշտ Յովակիմայ շատ ծանր եկաւ այս նախատալից յանդիմանութիւնը մէկ կողմանէ Աստուծոյ կամքը օրհ-

նելով՝ մէկալ կողմանէ ալ իր թշուառութիւնները ողբալով՝ չուզեց Նազարէթ իր կնոջը քովը դառնալ. ու Երուսաղեմէն ելլելով գնաց Թախծագին անապատ մը քաշուեցաւ, ու պահոց և աղօթից ետևէ եղաւ հոն տեղը. «Անհնարին է, կ'ըսէր, որ տունս ոտք կոխեմ ինչուան որ չիմանամ՝ թէ Աստուած գթացեր է վրաս, ու իմ ցաւս պիտի փարատէ»։

Գանք իր ամուսնոյն վրայ. Աննա էրկանը ուշանալը տեսնելով՝ մեծ մտմտուքի մէջ ինկաւ. բայց երբոր պատճառը իմացաւ, սրտին ցաւէն աւելի մեծ նեղութեան և անձկութեան մէջ էր։ Սգոյ զգեստ մը առած վրան՝ տանը պարտէզը ինջաւ, ու ծառի մը տակ նստելով, ցաւալից և արտասուագին աչքերը երկինք վերցուց. «Աստուած յաւիտենական, իմ նեղութիւնս և խեղճութիւններս յիշէ, ըսաւ. վասն զի բոլոր արարածոց մէջ ամենէն անարգը ես սեպուած եմ. Աբրահամու կնոջը Սառային պէս զիս ալ յիշէ. ու անզաւակութեան ամօթը ինծմէ փարատէ»։ Մէկէն հրեշտակ մը երևցաւ երկընքէն, ու Աննան մխիթարելով, «Լսեց, ըսաւ, Աստուած քու աղօթիցդ. զաւակ մը պիտի ունենաս որուն անունը բոլոր աշխարհք պիտի իմացուի»։ Աննա տրտմութեան արցունքը աչուըներէն սրբելով՝ խոստացաւ որ այն պարգևական զաւակը Սամուէլի մօրը պէս Աստուծոյ նուիրէ։ Հրեշտակը Աննայի Յովակիմ էրկանն ալ երևցաւ, ու աւետիս տալով յորդորեց որ ելլէ իր կնոջը քով դառնայ. բարեպաշտ Յո-

վակիմը՝ Աստուծոյ և քահանայից համար ազնիւ ընծաներ առնելով հետը՝ երբոր տանը մտեցաւ, Աննա ընդառաջ վազեց, և ուրախութեան արցունքով մը՝ Աստուծոյ զիրենք իր երեսէն չձգելը իմացուց. Յովակիմ ալ զոհեր մատուցանելով Աստուծոյ շնորհակալութիւն ըրաւ։

Երբոր ատենը հասաւ, Յիսուսի փրկչին ամենամաքուր մայրը և բոլոր հաւատացելոց զօրաւոր պաշտպանը ծնաւ Աննա, զուրբ կոյսն Մարիամ, որ իր ծերացեալ ծնողացը անպատում բերկրութեան պատճառ եղաւ։ Երբոր Մարիամու ծննդեան տարեդարձը հասաւ, հայրը մեծ կոչունք և ուրախութիւն ըրաւ, քահանաները և Իսրայելի ծերերը և ուրիշ շատ մարդիկ իր տունը հրաւիրելով. ետքը քահանայապետն ու քահանաները իրենց գիրկը առնելով զորբուհին Մարիամ՝ Աստուծոյ աղօթք ըրին, ու անոր ծնողացը մաղթանք ըրին որ իրենց զաւակին անունը բոլոր աշխարհք հռչակուի։ Իրեք տարուան եղած ատենը՝ Աննա իրեն պարգևած զաւակը նորէն Աստուծոյ ուզեց դարձընել, տաճարին մէջի եղած կուսանաց հետ խառնելով՝ որ ինքն ալ նոյնպէս Աստուծոյ ծառայութեան մտադիր ըլլայ. բայց քահանայքը անոր տղայական հասակը տեսնելով՝ մօրը ըսին որ առնու նորէն իր տունը տանի, ինչուան որ աղջիկը եօթը տարուան ըլլայ։ Հնազանդեցաւ Աննա, առաւ իր տունը տարաւ սիրասուն աղջիկը, ու խոստմանը մէջ հաւատարիմ մնա-

լով՝ սահմանեալ ժամանակին նորէն առաւ տաճարը գնաց, ու անոնց խնամոցը յանձնելով՝ ինքն իր տունը դարձաւ։ Մարիամ եօթը տարի անարատ կուսութեամբ տաճարին սպասաւորութիւն ընելէն ետքը, Աստուծոյ մանաւոր տնտեսութեամբը՝ տասնըչորս տարուան հասակին մէջ սրբոյն Յովսեփայ աստուածահօր հետ նշանուեցաւ, ու տասնըհինգ տարեկան ծնաւ զՅիսուս փրկիչն աշխարհի։

Իսկ իրեն ծնողքը աստուածահաճոյ քաղաքավարութեամբ օրերնին լմընցընելով՝ խաղաղութեամբ վախճանեցան։ Ընդհանուր կարծիք է թէ սրբուհին Աննա երկանէն ետքը վախճանած ըլլայ, ու թէ տեսաւ իւր թոռը զՅիսուս, ու անոր տղայութեան ատենը վախճանելով՝ Գեթսեմանի ձորոյն մէջ թաղուեցաւ, և ինչուան հիմա տեղացիք թէ իրեն և թէ երկանը գերեզմանը կը ցուցընեն. Թէպէտ և մարմիննին արևմուտք փոխադրուած և շատ տեղ սփռուած է։



# ՍՐԲՈՒՀԻ ՎԱՍԻԼՈՒՀԻ

Բիւթանացւոց Նիկոմիդիա քաղաքէն էր սրբուհին վասիլուհի, Դիոկղետիանոս և Մաքսիմիանոս կռապաշտ կայսերաց օրերը. և թէպէտ տղայ հասակին մէջ հայրն ու մայրը կորսնցնելով՝ որբ մնացեր էր, բայց անոնց տուած բարեպաշտ կրթութեամբը ամենուն զարմանալի եղեր էր։

Նիկոմիդիա քաղաքին Աղեքսանդրոս հրամանատարը՝ կայսերաց պատուէրը կատարելու համար հրաման հանեց որ ամէն քրիստոնեայք դատաստանի պիտի կանչուին որ կամ կուռքերը պաշտեն և կամ չարաչար մահուամբ մեռնին։ Իր հրամանացը գործադիր անգութ դահիճները՝ արեան ծարաւի գազաններու նման ասդին անդին ընկած, բոլոր ձեռք ձգած հաւատացեալքը կը յափշտակէին դատաւորին առջևը կը տանէին։ Անոնց մէջ էր նաև երանելին վասիլուհի անմեղ կոյսը։ Դատաւորը անոր մանկական հասակը և երեսաց վայելուչ պայծառութիւնը տեսնելով՝ աչքը վրան մնաց. դարձաւ քովիններուն անմեղ աղջկան տարիքը կը հարցնէր. և երբոր իմացաւ թէ դեռ ինը տա-

րուան է, բայց քրիստոնէութեան ամէն բաները տեղն ի տեղը գիտէ, Վասիլուհւոյն դարձաւ դատաւորը, «Աղջիկս, ըսաւ, խօսքը կարճ բռնենք, եկու զոհ մատո աստուածոց, քանի որ ձեռքս տանջանքի չեմ՝ զարկած»։ Սրբուհին անվախ համարձակութեամբ երեսը խաչ հանեց, «Քրիստոսի իմ փրկչիս աղախինն եմ՝, ըսաւ, ու անոր ինքզինքս նուիրած, և յոյս ունիմ թէ ինքը վարձահատոյց պիտի ըլլայ ինծի. բայց կուռքերդ պաշտել որ ըսիր, այդպիսի բանի վրայ խօսք ալ խնդրեմ՝ որ չընես. վասն զի անհնարին է որ քեզի հաւանիմ՝, թէպէտ և հազարումէկ դառն տանջանքներով զիս չարչարես»։

Դատաւորը գազանային կատաղութեամբ մը բորբոքած մարդկային գութը ոտքի տակ առաւ, ու այն անմեղ ողայ աղջիկը գլխիվայր կախել տալով, չարաչար ծեծել հրամայեց. բայց երանելւոյն և ոչ փոյթն եղաւ. վասն զի Քրիստոսի սէրը մարմնաւոր տանջանաց ցաւը մոռցընել տուաւ իրեն, անմահական կենաց հասնելու փափաքով։ Զարմացաւ մնաց դատաւորը. կախաղանէն վար առնել տուաւ, սրբուհւոյն ոտից պճղունքը ծակեց, անոնցմէ երկըթէ շղթաներ անցընել տուաւ, ու նորէն կախել հրամայեց. գետնին վրայ ալ նաւթով խառնած ծծումբ վառել տուաւ, որպէս զի բոցին տաքութենէն ու հոտոյն դժնդակութենէն մէկէն մեռնի. բայց խաբուեցաւ. Վասիլուհի անայլայլ ուրախութեամբ զԱստուած կ՚օրհնաբանէր, ու ամենևին վնաս մը չեղաւ

իրեն։ Դատաւորին խելքը գլխէն գնաց, տեսնելով որ պզտիկ աղջկանէ մը յաղթուեցաւ. մեծ հնոց մը վառել հրամայեց, ու Վասիլուհին անոր մէջ ձգեց։ Սրբուհի կոյսը մէկէն աղօթքի կեցաւ հնոցին մէջ. կրակը հեռացաւ քովէն, և երանելին լուսով պայծառացած զուարթութեամբ շնորհակալ կ'ըլլար Աստուծոյ։ Դատաւորը աս որ տեսաւ, վախնալով շուտ մը իր տունը գնաց քաշուեցաւ. «Աս քրիստոնէից կախարդութեանցը խելք չհասնիր» ըսաւ, ու հրամայեց որ վաղուան օրը գազանաց առջև ձգեն զՎասիլուհին։

Երկրորդ օրը երկու կատղած առիւծներու մէջ ձգեցին սուրբ կոյսը։ Երանելին երբոր զանոնք տեսաւ, ու անոնց մռնչալու ձայները լսեց, Դանիէլ մարգարէին հրաշալի ազատութիւնը միտքը բերաւ, ու ջերմեռանդն աղօթքներով ինքզինքը Աստուծոյ յանձնեց։ Մէկէն առիւծները իրենց կատաղութիւնը մոռցան, ու ընտանի կենդանիներու պէս կ'երթային սրբուհւոյն քովը ու անոր կը քծնէին։ Աղեքսանդրոս դատաւորին վրայ աստուածային շնորհաց լոյսը ծագեց, որ երբոր այս բանս տեսաւ՝ իմացաւ քրիստոնական հաւատոց ճշմարտութիւնը, իր ապարանքը տարաւ սրբուհին, ու ոտքը իյնելով կը խնդրէր իրմէ որ այն սուրբ հաւատքը իրեն ալ սորվեցընէ։ Վասիլուհի առաւ զինքը քաղքին եպիսկոպոսին տարաւ, և ամէն բան տեղովը հասկըցուց անոր։ Սուրբ հօտապետը ուրախութեան արցունք թափելով, մեր հաւատքին վարդապե-

տութիւնը սորվեցուց անոր, ու մկրտութեան խորհուրդը մատակարարեց։ Աղեքսանդրոս դատաւորը քիչ մը ատեն ալ ապրելէն ետքը, անմահական ու անանց կենաց արժանաւոր եղաւ. իսկ Վասիլուհի կոյսը քաղքէն հեռու անապատ մը քաշուելով՝ սրբակրօն վարքով մը քիչ ատենուան մէջ իր մաքուր հոգին Աստուծոյ յանձնեց։ Նիկոմիդացիք անոր երջանիկ մահը լսելով՝ եկան մեծ հանդիսով սուրբ մարմինը վերուցին, ու արժանաւոր պատուով թաղեցին զինքը։



# ՆԵՐՍԷՍ ՄԵԾՆ

Հայաստան աշխարհին Լուսաւորչէն ետքը երեւցած անհամեմատ ու պանծալի մեծն Ներսէս առաքելաջան հայրապետը, սրբոյ Լուսաւորչին թոռանը թոռն էր. ու անոր և իրեն որդւոյն ու թոռանցը անզուգական բարեմասնութեանցը ու աստուածահաճոյ քաղաքավարութեան արժանաւոր ժառանգորդ։ Տղայ հասակին մէջ առաքինաջան և ուսումնական յառաջադիմութիւն մը հաւասար կը փայլէր անոր երեսին վրայ, և տեսնողը մէկէն կ'իմանար թէ Աստուած մեծ պարգեւ մը կը պատրաստէր անով մեր աշխարհքին, այնպիսի ատենուան մը մէջ յորում քրիստոնէական սուրբ կրօնքը Հայաստանի արքունեաց մէջ մտած, և անոր սորվեցուցած անարատութիւնն ու բարեկարգութիւնը շատ հեռու կ'երեւնար. Տըրդատայ թագին ժառանգները՝ անոր առաքինութիւններէն բոլորովին անմասն ըլլալով։ Առին Կապադովկիա խրկեցին զինքը, և հոն Ներսէս մանուկը աստուածային ու արտաքին գիտութեանց մէջ զարմանալի յառաջադիմութեամբ փայլեցաւ։

Կեսարիայէն Յունաց թագաւորութեան

մայրաքաղաք Կոստանդնուպոլիս քաղաքը անցաւ Ներսէս. և իր շնորհալից կերպովն ամենուն աչքը մտնելով՝ տեղացի իշխանաց մէկուն փեսայ եղաւ, ու սուրբն Իսահակ Պարթև հայրապետը ծնաւ։ Հայրենի աշխարհէն թէպէտև հեռացեր էր Ներսէս, բայց իր անարատ ու երկնահանդէտ քաղաքավարութեան համբաւը ամէն տեղ տարածուեր էր. անանկ որ երբոր Փառներսեհ կաթուղիկոսը մեռաւ, Հայոց եպիսկոպոսները մէկ եղան և ուզեցին որ անոր յաջորդ՝ Ներսէսը դրուի։ Ուստի մէկէն Կոստանդնուպոլիս մարդ խրկեցին որ զինքը առնեն շուտով իր հայրենիքը բերեն։ Իմացաւ Ներսէս անոնց միտքը և ցաւագին արցունքով հրաժարիլ կ'ուզէր. բայց ազգին բարւոյն դէմ դառնալ չկրնալով՝ ակամայ յանձն առաւ այն մեծ պաշտօնը։ Սակայն մէկալ կողմանէ ալ մտածելով՝ թէ տապարէզին մէջ մտնողը՝ աղէկ կերպով իր պարտքերը պիտի կատարէ որ ուրիշներուն գովութեանը արժանաւոր ըլլայ, մարդիկ խրկեց Հայոց Թագաւորին ու Նախարարացը՝ որ մեծին Գրիգորի Լուսաւորչայ աթոռին վրայ նստելովը՝ իրաւունք պիտի ունենայ իր անաչառ և վրէժխնդիր ոգին ալ զգենուլ՝ խստիւ յանդիմանելով յանցաւորները։ Անոնք սիրով յանձն առին Ներսեսի դրած պայմանները, ու մեծ հանդիսով առին Կեսարիա խրկեցին զինքը, որ քաղաքին Եւսեբիոս եպիսկոպոսէն ձեռնադրութիւնը ընդունի։

Օծման ատենը զարմանալի տեսիլք մը տես-

նուեցաւ եկեղեցւոյ մէջի բոլոր հաւատացեալ ժողովրդոց. վասն զի Հոգին սուրբ աղաւնակերպ եկաւ Ներսեսի գլխոյն վրայ հանգչեցաւ։ Ետքն ալ երբոր աստուածային անարիւն զոհը կը մատուցանէր, երկընքէն հրեղէն սիւն մը իջաւ եկեղեցւոյ վրայ, ու հրեշտակաց փառաբանութեան երգեր լսուեցան։ Պատարագէն վերջը բոլոր ժողովուրդը սուրբ Հայրապետին երեսը՝ Մովսէսի պէս լուսով պայծառացած տեսան, և երանի՛ կուտային Հայաստան աշխարհին որ այնպիսի սուրբ հովիւ ունենալու արժանի եղաւ։

Ճամբայ ելաւ Ներսէս Հայաստան երթալու, և ո՛ր քաղաքը կամ՝ գիւղն որ հասնէր, մեծ հանդիսով ամէնքն իրեն ընդառաջ կ'ելլէին, իրենց գործոյը յաջողութիւն և հիւանդաց առողջութիւն խնդրելու համար։ Իսկ երբոր բուն Հայաստան մտաւ, Արշակ Թագաւորը բոլոր Նախարարները հետը առած զինքը դիմաւորելու եկաւ, ու մեծ պատուով առին Էջմիածին իր աթոռը տարին։ Ժողովրդեան՝ նորընտիր հայրապետին վրայ ցուցըցած սէրը անպատմելի էր. Ներսէս ալ աղէկ գիտէր՝ թէ անոնց սիրոյն մի միայն փոխարէնը՝ իր կողմանէ անդադար աշխատիլը պիտի ըլլար. ուստի մէկէն Հայաստանի մէջ մնած տեսակ տեսակ անկարգութիւններն ու թոլութիւնները վերցընել սկսաւ. ինքն էր ոգւոց վարդապետը, մոլորելոց առաջնորդը, անսաստից խրատիչը և ճշմարիտ հաւատացելոց քաջալերիչը։ Թագաւորին հրամանաւը ժողովք մը ընել տուաւ

Աշտիշատ քաղքին մէջ, ու տեսակ տեսակ բարեկարգութիւններ հաստատեց որով կերպով մը Հայաստանը կերպարանափոխ ըրաւ, ինչպէս իրեն մերձաւոր պատմիչները կը վկայեն։ Քաղաքներուն ու գիւղից մէջ վանքեր ու կուսաստաններ հաստատեց, ու անոնց համար մասնաւոր կանոններ դրաւ։

Աղքատաց վրայ ցուցըրած սէրն ու փոյթը անպատմելի էր. կերակրին առենը անոնք էին իր սեղանակիցները, և շատ անգամ անոնց ոտքերը լուացող և պէտք եղած բաներնին հոգացողը երանելի հայրապետն էր։

Ան առենները Յունաց Վաղենտիանոս կայսրը Հայոց Արշակ թագաւորին հետ աւրուեցաւ, ու անոր Տրդատ եղբայրը որ Կոստանդնուպօլիս իր քովը պատանդ էր՝ սպաննել տալով, իր Թէոդոս սպարապետը շատ զօրքով Հայաստանի վրայ խրկեց։ Արշակ բաւական զօրութիւն չունենալով անոնց դէմ դնելու, գնաց Ներսէսի ոտքը ընկաւ, գիտնալով որ այնպիսի մեծարոյ մարդուն միջնորդութիւնը փուճը չելլեր։ Հաւանեցաւ Ներսէս, Հայոց մեծամեծներէն մարդիկ հետն առած՝ Թէոդոսի առջևն ելաւ, և աղաչելով որ արդէն խեղճըցած Հայաստանի վրայ ուրիշ թշուառութիւններ ալ չաւելցընէ, սպարապետին հետ մէկտեղ Բիւզանդիոն գնաց, ու կայսրն ալ համոզելով հաշտութիւն եղաւ, ու մեծ պատիւ տեսնելով ամենէն՝ Հայաստան դարձաւ։

Բայց Արշակ թագաւորը սուրբ հայրապետին յարգը չճանչցաւ. այնպիսի իմաստուն

խորհրդականի մը խօսքերը՝ իր անսաստութեամբը կը մերժէր. անոր վրայ՝ տեսակ տեսակ չարութիւններ ալ սկսաւ գործել, անպատճառ սպանութիւններ ու անիրաւ յափըշտակութիւններ ընելով, ինչուան իր Տրդատ եղբօրը Գնէլ որդին Նախանձու շարժած՝ սպաննել տուաւ։ Ներսէսի սիրտը կտոր կտոր եղաւ այնպիսի եղեռնագործութեանց համար. աստուածային վրէժխնդրութեամբ շարժած՝ անօրէն թագաւորին վրայ ցաւագին անէծքներ կարդաց, ու ինքը գնաց առանձին տեղ մը քաշուեցաւ, Հայաստանի ու անոր խեղճ թագաւորին վրայ հառաչանօք արտասուելու։

Վաղէս արիոսեան կայսրը իմանալով թէ Արշակ իրեն իշխանութիւնը ոտքի տակ առեր ու Պարսից ձեռնտու եղեր է, բարկութենէն կրակ կտրած՝ Նորէն Թէոդոս զօրավարը խրկեց անթիւ զօրքով։ Ուշ իմացաւ Արշակ իր անմտութիւնը, չէր գիտէր ի՞նչ կերպով այն մօտալուտ վտանգին դէմը առնու. գնաց Նորէն Ներսէսի ընկաւ, ու անոր սրտին ցաւոցը իրաւացի պատճառը լաւ գիտնալով, կը խոստանար որ եթէ այս աշխատանքն ալ յանձն առնու, ինքն իր վարքը պիտի փոխէ ու բոլորովին նոր մարդ պիտի ըլլայ։ Երանելի հայրապետը մտիկ ըրաւ անոր աղաչանացը, ձգեց իր առանձնութիւնը, ու գիտնալով որ բուն դառնութեան արմատը տանը մէջ բուսած է, Նախարարքը թագաւորին հետ հաշտեցուց, ու Նորէն Թէոդոսի գնաց։ Բարեպաշտ զօրապետը մտիկ ըրաւ Ներսէսի միջնորդու-

թեանը, բայց յորդորեց որ նորէն իր հետը մէկտեղ Կոստանդնուպօլիս դառնայ՝ կայսեր ներկայանալու։ Վաղէս, որ ինչպէս վերը ծանուցինք, արիոսեան հերետիկոսներէն և ուղղափառաց ոխերիմ թշնամին էր, աստուածահաճոյ հայրապետին և ոչ երեսը տեսնել ուզեց, ու հրամայեց որ հետը եղած քահանաներովը ու երկու սարկաւագներով առնուն զերանելին մէկէն աքսորեն։ Ձմեռուան մէջ ըլլալով՝ աքսորանաց տեղը նաւով երթալու ատեննին սաստիկ հովով մը անբնակ կղզի մը քշուեցան, և նաւը քարի զարնուելով ջարդուբուրդ եղաւ. բայց մէջինները մակոյկի մը մէջ մտնելով ինքզինքնին ցամաքը ձգեցին, և ինը ամիս հոնտեղը կեցան. և թէպէտ կերակրի կողմանէ պակասութիւն կար, կղզւոյն անբեր ըլլալուն պատճառաւը, բայց սրբոյն Ներսիսի աղօթքովը ամէն օր ձկներ կուգային ջրին ձգմամբը, ու իրենց կղզին կ'ելնային։ Սուրբ հայրապետը ջուր ալ բղխեցուց հրաշքով, որով իրեն հետ աքսորեալքը ամենևին մէկ կողմանէ նեղութիւն մը չունեցան։

Երբոր Վաղէս կայսրը մեռնելով՝ բարեպաշտ Թէոդոսը անոր յաջորդ եղաւ, բոլոր աքսորեալ հայրապետները ետ դարձուց, և մեծն Ներսէսն ալ Կոստանդնուպօլիս բերել տուաւ, ու Մակեդոնի դէմ եղած տիեզերական ժողովին մէջ զինքն ալ հրաւիրեց, ու մեծ սէր և ընդունելութիւն ցըցուց անոր։ Սուրբ հայրապետը երբոր Հայաստան դառնալու կը պատրաստուէր, Արշակ Հայոց թա-

դաւորին աքսորանքը ու ցաւալից մահը լսեց. ուստի մէկէն Թէոդոսի աղաչեց որ Պապ արքայորդին, որ այն ատենները Կոստանդնուպոլիս էր, թագաւոր օծել տայ, ու հետը Հայաստան խրկէ։ Մտիկ ըրաւ կայսրը, ու Տերենտիանոս սպարապետին ձեռքը զօրք տալով՝ Ներսէսի ու Պապայ հետ Հայաստան խրկեց. և որովհետև Պարսիկք այս բանիս առաջը առնելու համար՝ ահաւոր պատերազմի պատրաստութիւն տեսեր էին, Տերենտիանոս Ներսէսի աղօթքովը յաղթեց անոնց, ու Պապը թագաւորեցուց։

Ներսէս այս խաղաղութեանը վրայ ուրախանալով, նորէն սկսաւ թագաւորն ու նախարարները յորդորել, որ ամէն բանի մէջ Աստուծոյ վախը իրենց առաջնորդ բռնեն, ու վախնան որ չըլլայ թէ իրենց անկարգութեան պատճառաւը՝ Աստուծոյ պատիժը բերեն բոլոր ժողովրդեան վրայ։ Բայց Պապ թագաւորը մէկէն իր ճամբան փոխեց, հօրը օրինակովը զգաստանալու տեղ՝ աւելի ալ չարացաւ, ու սկսաւ ամօթալի կրից ետևէ ըլլալ. արհամարհեց Ներսէսի խրատները, և անլուր ամբարշտութեամբ մը անոր աստուածուսոյց բերնին կշտամբանքը չլսելու համար, կերակրի հրաւիրեց, ու անօրէնութեամբ թոյն տուաւ այն երանաշնորհ հայրապետին, որուն կեանքը՝ բոլոր Հայաստանի կեանքն էր։

Վրան քիչ ատեն անցեր էր չէր անցած, մեծն Ներսէս խառնագնաց թագաւորին չար գործքը իմացաւ. բայց ամենևին փոյթը չե-

ղաւ, մանաւանդ թէ շնորհակալ կ'ըլլար Աստուծոյ, որ իրեն այսպիսի մահ մը պատրաստեր է եղեր. Թագաւորին քանի մը խրատական խօսքեր ըսելէն ետքը, ելաւ տունը գնաց, և հոն իբրև Նոր Մովսէս մը աստուածային ազդեցութեամբ լեցուած, Հայաստանի ապագայ նեղութիւններն ու վշտերը մարգարէացաւ, և սրբազան արտասուացը հետ հայրենասիրական հառաչանքներ արձըկելով՝ երանելի հոգին թռաւ աշխարհէս, ու գնաց իր սիրելի փրկչին հետ միանալու։ Այսպիսի անզուգական անձ մը պէտք չէր որ այն ցաւալից մահուամբ աշխարհէս ելլէր. բայց ուրիշի բարիք ընողը՝ գրեթէ ոչ երբէք հանգստութիւն տեսած է. և հալածանքն ու նեղութիւնը՝ Աստուծոյ ընտրելոց կնիքն ու սրբազան նշանն է։ Մէկմէկէ հեռու երկու սրբակաց կրօնաւորներ կային ան ատենը Հայաստանի լեռներուն վրայ Շաղիտա և Եպիփան անունով. ասոնք երկուքն ալ կէսօր ատեն տեսան որ սրբոյն Ներսիսի հոգին ամպերու մէջ յափշտակուած երկնային լուսով մը ծածկուած դէպ ի վեր կ'ելլէր. և առաքեալք, և ճգնաւորք և վարդապետք խմբովին իրեն ընդառաջ կ'ելլէին։

Բոլոր Հայաստան իր սիրելի հովուապետին մահը անմխիթար կերպով լացաւ, և մեծ հանդիսով առին զինքը Թիլ ըսուած աւանին մէջ թաղեցին։ Քսան, կամ ինչպէս ուրիշ պատմիչները կ'ըսեն, երեսունըչորս տարի հայրապետութիւն ըրաւ սուրբն Ներսէս. և ի-

րեն գերեզմանէն շատ բժշկութիւններ տեսան հաւատացեալք. և թէպէտ երկար ատեն գերեզմանը անյայտ մնաց, բայց ետքէն Ռուբինեանց Լևոն Դ թագաւորին օրովը յայտնուեցաւ, մեծ ուրախութիւն պատճառելով բոլոր Հայաստան աշխարհին։



# ՑԱՆԿ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐՈՒՑ

# ՄԱՐԻԱՄՈՒ

## ԿՈՒՍԱՄՕՐ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐՈՒՑ

# Մ Ա Ր Ի Ա Մ Ո Ւ

## ԿՈՒՍԱՄՕՐ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

ԳՐԵԱՑ

## ՏԷՐ ՕՐՍԻՆԻ ՔԱՀԱՆԱՅ

*ԹԱՐԳՄԱՆԵԱԼ ՀԱՆԴԵՐՁ ՅԱՒԵԼՈՒԱԾՈՎՔ*


## Ի Հ. ԱՒՔՍԵՆՏԻՈՍԷ Վ. ԳՈՒՐԳԵՆԵԱՆ

Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷ





*ՎԵՆԵՏԻԿ*

Ի ՏՊԱՐԱՆԻ ՄԽԻԹԱՐԵԱՆՑ

**1885**

# ՑԱՆԿ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Արարչական զօրութեամբ տիեզերաց մէջ երեւցած այս հրաշալի կարգս դրուելէն յառաջ, երկիրս անկերպարան եւ անպատրաստ վիհ մի էր, եւ ըստ սուրբ Գրոց խաւար թանձրամած պատէր 'ի վերայ անդնդոց։ Աստուածային ամենակարող զօրութեամբ գրուցուած միակ խօսքով Եղիցի լոյս՝ ծագեցաւ անդէն եւ անդ այն հրաշալի եղական լոյսն՝ որ անեղական լուսոյն գեղեցիկ պատկերն էր. ետես զայն Արարիչն եւ հաճեցաւ եւ հրամայեաց որ յաւիտեան զատուի եւ անջատի՝ այն անգոյ եւ սկզբնածին խաւարէն։

Սակայն սկզբնական յանցանօք Նախամարդոյն՝ այլ առաւել սոսկալի խաւար մի պատեց զաշխարհս՝ ստուեր յաւիտենական մահու, որոյ մէջ անկեալ դնէին որդիք Ադամայ քառասուն դարերէ 'ի վեր։ Յանցանաց եւ մեղաց այս թանձր մթութեան մէջ ամենագութն Աստուած՝ իմացընելու համար մարդկան իրեն մօտաւոր ազատութիւնն՝ նոր լոյս մի երեւցուց՝ որում անձկանօք փափաքէին 'ի սկզբանէ անտի իրենց անկմանն. եւ այս լոյսն էր Օրհնեալն եւ Երանեալն Աստուածատիրուհին ՄԱՐԻԱՄ՝ որ 'ի լրման ժամանակաց պիտի ծնանէր աշխարհի

զԲանն Աստուած յաւիտենական՝ որ զմեզ 'ի գլորմանէ պիտի վերականգնէր։ ՄԱՐԻԱՄ անդէն 'ի ծնանելն յաշխարհի՝ նախիմաց իմաստութեամբ Աստուծոյ՝ յղացեալ անարատաբար զերծ և անմերձ 'ի սկզբնական մեղաց՝ եւ կանգնեցաւ բոլորովին անբիծ և անարատ յանդիման Ստեղծողին. ետես զնա Աստուած և հաճեցաւ և հրամայեց որ բոլորովին զատուի որոշուի այն երկրորդ խաւարէն մեղաց, որ է ասել հաստատեաց զնա 'ի շնորհս և արար զնա ամենևին անմեղանչական։

Այս հրաշալի անցքէս 'ի վեր՝ որ կատարեցաւ 'ի քառասներորդ դարու ստեղծագործութեան աշխարհի այսինքն յամի 3986, մինչև այս ներկայ տարիս 1885 բոլորեցան տասնևինն դարեր. և ՄԱՐԵՄԱՅ վարքն և գովեստք՝ իրեն անձին համար խօսած մարգարէութեանն համեմատ՝ Ցայսմ հետէ երանեսցեն ինձ ամենայն ազգք, հազար իննհարիւր տարեաց արձագանքովն հասան մինչև առ մեզ Վարդապետաց և Աստուածաբանից անթիւ և անհամար գրուածներովն։ Այնպէս որ աստի երեսուն տարի յառաջ փրանկիացի հռչակաւոր մատենագրին Աւգոստոսի Նիքոլայի վկայութեանն նայելով՝ մինչև իր Աստուածամօր վարքն գրած ատեն (1855ին) քառասուն հազար տեսակէն աւելի գրուածք հրատարակուած էին, դեռ 'ի նոցանէ շատերն ալ անծանօթ իրեն, և 'ի սոցանէ մեծագոյն մասն միածալ և քառածալ մեծ հատորներ, և որոց գրողներն աշխարհիս առաջին կարգի նրբահանճար մարդիկն եղած են,

որոց մէջ յիշեմք միայն զսուրբսն Աւգոստինոս, Անսելմոս, Բեռնարդոս, Մեծն Ալբերտ, Յովհաննէս Գերսոն, Պերիւլ, Պոսիւէ, և այլն. և 'ի մերոց հարց Մ. Խորենացի և Նարեկացի. և վերջերս Չամչեան և Աւգերեան և այլն: Վերոյիշեալ վկայութենէն ետև անցած երեսուն տարիներուն մէջ ալ՝ դարձեալ հազարաւոր նոր գրուածք հրատարակուած են այս նիւթոյս վերայ, և տարուէ տարի՝ մանաւանդ Կուսամօր նուիրեալ Մայիս ամսուն մէջ անվրէպ նոր երկասիրութիւններ երևին տպագրութեամբ:

Այս անբաւ գրուածոց մէջ մեք ընտրեցաք գրեթէ ամենէն համառօտն՝ միանգամայն և կատարեալն՝ զոր Օրսինի քահանայն փրանկերէն լեզուաւ գրած է դարուս առաջին քառորդին մէջ, և առաջին տպագրութեան յիսուն հազար օրինակներն մէկէն սպառելով՝ շատ անգամ կրկնուած է տպագրութիւնն, նոյն ժամանակի երևելի գրագիտաց և աստուածաբանից վկայութեամբքն պանծալի, և յետոյ զանազան լեզուներ ալ թարգմանուած, որոց մէջ մեր ձեռն եղածն իտալերէնն էր՝ բնագրին երկրորդ ճոխացուցեալ տպագրէն թարգմանուած և տըպեալ 'ի Միլան յամի 1839: Սակայն բաց աստի ունէաք 'ի ձեռին նաև քանի մի անուանի մատենագրաց գրուածներն, որք շատ քննութիւններով և ծանօթութիւններով ճոխացուցած են Աստուածամօր վարքն, որոց մէջ գլխաւորներն են՝ նախ վերոյիշեալ Աւգոստոս Նիքոլայ հըռչակաւոր փաստաբանին գրած Աստուածածնի վարքն երեք հատոր. — Ճենթիլուչչի քահա-

նային գրածն մի ստուար հատոր նուիրեալ առ բարեյիշատակ Քահանայապետն Պիոս Թ. — Թրոմպելլի՝ որ անուանի է իր մանրախոյզ քննութեանցն համար. — Սուրբն Ալփոնսոս Լիկուորի, Սենների, Վենթուրայ, Պալլերինի, Հուրթրի և այլն: — Մեծապէս օգտուեցաք նաև մեր հոգելոյս Ջամչեան և Աւգերեան Վարդապետաց երկասիրութիւններէն, հայկական աւանդութիւններն ալ աւելցընելու համար գործոյս վերայ՝ իւրաքանչիւր Գլխոց ծանօթութեանց մէջ:

Իսկ այս փոքրիկ աշխատութեանս վախճանն ուրիշ բան չէ՝ բայց եթէ նախ յայտնել որդիական սէրս առ Տիրամայրն, և երկրորդ կերպիւ իւիք ձեռնտու լինել և այլոց իրենց սէրն յարգութիւնն և բարեպաշտութիւնն աւելցընելու առ Մայրն ամենագութ և ամենասիրելի՝ որ գանձապահ է աստուածային շնորհաց, և յորոյ ձեռաց պիտի ընդունիմք ինչ օգնութիւն և նպաստ որ հարկաւոր է մեզ՝ ոչ միայն ներկայ կենաց մէջ, այլ և վաստկելու համար յաւիտենական երանութիւնն 'ի յերկինս: — Անշուշտ սիրելի է Տիրամօր նուէրս. ապա անտարակոյս եմ՝ որ նուէրն ընդունած ժամանակ՝ ոչ մերժէ զնուիրաբերս

Հ. Ա. Գ.

ի Հռոմ, 1885 'ի տօնի Աւետեաց Կուսին.

# ԱՌ ԿՈՒՍԱՄԱՅՐՆ

## ՊԱՂԱՏԱՆՔ ՍՐՏԻ ԶՂՋԱՑԵԼՈՑ·

Կոյս հրաշագեղ արփիազգեստ երկնաճեմ
Աստեղազարդ թագիւ պճնեալ բազմահոյլ
Այնքան հաճոյ վեհի արփւոյն վերնական
Զ՝ 'ի քեզ պքօղեաց հաւագայթիցն ըղնշոյլ·
Սիրայորդոր խօսել կամիմ՝ այլ չգիտեմ
Սկիզբն առնել թէ ոչ մատչիս յօգնական·
Եւ որ տարփմամբ կալաւ 'ի քեզ օթեւան·
Կոյս հեշտալուր որ սիրով — Զհայցուածս լսես հաւատով·
Եթէ զքեզ միշտ 'ի գութ շարժեն վիշտք մարդկան՝
Պաղատանաց լեր աղաչեմ ունկնդիր,
Թէպէտ եմ հող՝ իսկ դու դշխոյ ես երկնից
Ի դժուարին մարտ եղկելւոյս մերձ մատիր։

Կոյս իմաստուն 'ի համարոյն գեղապար
Երանելեաց և զգաստից կուսանաց
Նա՛ առաջին պայծառափայլ 'ի լապտեր
Ո՛վ աննկուն վահան ազգի թշուառաց
Մահու բաղդին 'ի հարուածոց մեզ ասպար
Որով ապրիմք այլ և յաղթեմք անվեհեր·
Ցայրատ բոցոյն բոլբոքելոց ցօղաբեր
Պանդխտիս սիրով մահացուաց· — Աղէ զաչացդ հայեցուած
Որ տրտմագին դառն զերաշխէպս կարեվէր
Տեսեր դողդորիկ յանդաման սիրտն քո որդւոյդ՝
Դարձո՛ այժմէն 'ի խիթալին իմ պայման
Որ վարանեալ առ քեզ դիմեմ 'ի խորհուրդ։

Կոյս մաքրափայլ բոլոր մասամբք անթերի
Զքնաղադեղ ծնիցելոյդ դուստր և մայր՝
Աստեաց կենաց դու լոյս և զարդ ապադայց ,
Ո՛վ լուսանցոյց երկնից բարձանց վեհավայր .
Քեւ քո Որդին Հօր ծոցածին եթերի
Ի վախճան աւուրց ելեալ մեզ 'ի յայց
Ի բովանդակ հողանիւթեայ յէակաց
Դու ընտրեցար միայնակ — Միրամայր Կոյս երանեակ
Որ զՆուայի ողբս դարձուցեր հրճուանաց .
Երանուհիդ 'ի փառս յաւէրժ անտրտում
Արա՛ կարողդ և զիս շնորհացն արժանի
Պսակազդեացդ յարքայութեան 'ի վերնում։

Կոյս սրբուհի լի շընորհօք բազմաբիւր
Որ խնկապէս խոնարհութեամբ գերազանց
Ելեր յերկինս՝ ուստի լսես զիմ լալիս ,
Դու իսկ ծնար զաղբիւրն համայն դթութեանց
Եւ զԱրեգակն արդարութեան լուսափիւռ
Որ ըզմռայլ ցրուէ զխաւար աշխարհիս .
Եւ ահիւսեակ քաղցրիկ անուամբք յորջորջիս
Ի Հարս 'ի Դուստր և 'ի Մայր — Կոյս դու 'ի փառս գերածայր ,
Արքայուհիդ այնմ որ զմեղաց լոյծ սարիս
Ածեալ յաշխարհ զազատութիւն երջանիկ ,
Նորին 'ի սուրբ 'ի վէրս եղեալ խորասոյզ
Ըզօխրաս հանցես յանդորր ո՛վ Կոյս դեղեցիկ։

Կոյս յաշխարհի անհամեմատ ու աննման
Որ սրտակաթ դեղովդ զերկինս արարեր
Ում ոչ յառաջ և ոչ երկրորդ ոք ընաւին
Վեհին տաճար դու կենդանի որբանուէր ,
Անբիծ խորհուրդք , դութ և գորով անսահման
Ըզկուսութիւնդ արդասաւոր գործեցին ,
Քեւ և իմ կեանքս 'ի խնդութիւն փոխեացին՝
Քոյ հայցուածովք բարեխնամ — Կոյսդ անուշակ Մարիամ .
Զի ուրանօր մեղք՝ անդ և շնորհք յորդեցին։
Ի դուճս հարեալ հոգւով մտօքս 'ի խոնարհ
Ըզխեղաթիւր դընացս ուղղել աղերսեմ
Եւ ցուցանել մոլորելոյս ճանապարհ։

— ԺԳ —

Կոյս հրաշափառ յաւէժակաց անսասան ,
Մըրրկածուփ ծովուս աստղիկ լուսափայլ
Աներկեան դու նաւուղղին ուղեցոյց ,
Տես թէ քան՝ 'ի կոհակս ու 'ի ծուփըս ծփեալ
Անօգնական անոք անղեակ կամ տատան .
Եւ թէպէտ մերձ հասեալ յետքն ճիչ անյոյս ,
Այլ տակաւին քեզ ակն ունիմ անբիծ Կոյս .
Գիտեմ ինձէն ես ըզմեղս — Այլ աղերսեմ Կոյս առ քեզ .
Մի խնդայցէ ժանտն 'ի կորուստ իմ հոգւոյս .
Յիշեա՛ զի մեղք իսկ մեր զԱստուած շարժեցին
Ի կուսական 'ի քում յանփորձ արգանդէ
Մարմին զգենուլ 'ի փրկութիւն մահացուին :

Կոյս քանիո՞ն հեղի ես դառն արտասուս
Յուսապատիր քանիցըս զուր ես յաղերս
Կողկողեցայ՝ ինձ 'ի հարուածս և յաղէտ
Յորմէ հետէ ծընայ յԱռնոյ ես յեզերս .
Հապ յայս հապ յայն առեալ դեգերս 'ի յափունս ,
Եւ կեանքս անցին 'ի վիշտս 'ի հոգս զըրահետ :
Գեղ վաղանցիկ , զընացք , բարբառ եւ ընդ եւ
Զհոգիս ողջոյն զերեցին . — Կոյս սուրբ չքնաղ տիրածին ,
Փութա՛ ճեպեա՛ թերեւս յամացս իցեմ կէտ .
Աւուրքըս շոյտ քան ըզկայծակըն սրացան՝
Ընդ աղետից և մեղանաց ընդ դուպարս
Անհետ ու անդարձ , օրհաս մընայ ինձ միայն :

Կոյս ահա նա որ ետ սրտիս վէրս հաստոյր
Լուծաւ 'ի հող , որ կենդանեաւ ինքն անդէտ
Վշտացս իմոց՝ յողբս համակեաց զիս յանբաւ ,
Որ թէ գիտակ իսկ գոյր՝ վախճանն էր հանդէտ .
Զի անպատեհ զընալ ըզհետ կամաց իւր
Ինձ մահ անշուշտ , ու անուան նորին կեղտ համբաւ :
Օ՛ն Դիցուհիդ երկնից դշխոյ մեր բնաւ
Թէ ներեսցի ասել զայդ — Ըզքէն Կուսանդ զերազարդ ,
Դու փարատեա՛ ըզվիշտս յինէն և ըզցաւ ,
Որ և զհամայնըս տեսանես և կարես
Ցիս բարձրասցի պատիւդ և քո փրկեցայց ,
Զի անհնարքն այլոց հեշտինք են առ քեզ :

Կոյս յոր յենուն ակնկալիք իմ և յոյս
Զի 'ի կամելդ կարես օգնել ինձ հիքիս ,
Մի՛ միս հայիր այլ որ յօժար զիս եստեղծ
Մի՛ պաղատիմ յետինս 'ի քայլ թողուր զիս .
Այլ աջ կարկառ ինձ 'ի խոնարհ անկելոյս ,
Ոչ յիմ արժանս այլ 'ի պատկերն անտախեղծ'
Զոր գեղ պատիր վիմատառեաց յես և եղծ
Ի սնոտի քիրտն ապաժոյժ : — Կոյս դու յարատօր քաղցրանոյշ
Աղբերացո՛ թաղձեալ ըղձիւքս յար 'ի մեղս .
Զի գէթ վերջինք իմ լիցին սուրբ արտասուք'
Ոչ հողեղէն 'ի կաւ հեղեալ զերդ յառաջ
Զորս հոսէի անմիտս 'ի կիրս դառն 'ի սուգ :

Կոյս մարդասէր բարձրայօնից աչաւոր'
Համաբնակից ծագմանն զքեզ գութ չարժեսցէ
Մի՛ ոտնհար լինել սրտիւ բեկելոյս .
Զի թէ 'ի դոյզըն մահացու հող յերկրէ
Ցայսքան եռանդ ես ցանկացայ տարփաւոր'
Ո՞հ քանի՜ն զքեզ սիրեսցես չքնաղ Կոյս
Եթէ երբեք 'ի պայմանէս զիս յանյոյս
Վերականգնես քո ձեռամբ . — Քեզ ձօնեցից խնդութեամբ
Ըղձիւս և զսիրտ , զերկս վաստակոց հանճարոյս ,
Զբարբառ շրթանց , զարատօր հառաչ անսուան քոյդ .
Զ' 'ի հաճոյս քեզ տենչս ընկալեալ զղջական
Տեսցես հասեալ զիս հանգրուանն 'ի յանքոյթ :

Ահա սրացեալ հասանէ օրն այն յետին
Առ դուրս ժաման , և ժամք թռուցեալ անհետին ,
Կոյս իմ միակ ապաւէն .
Մերթ խայթ մերթ մահ խոցեն ըղձիւրս կարեվէր .
Ցանձն արա զիս առ Միածինդ մարդասէր
Մարդ ճշմարիտ և Աստուած'
Յոր ուրեմն յետին շնչոյս ես հանգեայց :

( Ի Հռոմ 'ի 15 Մայիսի 1884 ).

# ՕՐԱՑՈՅՑ ԵՒ ՊԱՏԿԵՐ ՏՕՆԻՑ

## Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

| | Հ. Տ. | Ն. Տ. | | տես յէջ |
|---|---|---|---|---|
| Օգոստ. | | 5 | Կր. Չինաքեր Աստուածածին. . . | |
| | 15 | 15 | Վերափոխումն Տիրամօր . . . | 328 |
| | | | Հյ. Զկնի ինորէից՝ Յովակիմայ և Աննայի ծնողաց Ս. Աստուածածնի . . . . . . . . . | |
| | 25 | | Հյ. Յետ ինորէից Տօն իսկուհւոյն կարգեալ 'ի Ս. Լուսաւորչէ . | |
| | 20 | | Հյ. Տօն պատկերին Հոգեաց վանաց հաստատեալ 'ի Ս. Բարթողիմեայ . . . . . . . . . | 297 |
| | 31 | | Հյ. Գօտւոյ պատուական գօտւոյն . . | |
| | | | Կր. Չորրորդ կամ հինգերորդ կիր. Ամենասուրբ սիրտ Մարեմայ . | |
| Սեպտ. | | | Կր. Առաջին կիր. Շնորհաբաշխ Աստուածածին . . . . . . | |
| | 8 | 8 | Ծնունդ կուսին . . . . . . | 65 |
| | | 14 | Կր. Անուն Մարեմայ. . . . . . . | 68 |
| | | | Կր. Երրորդ կիր. Եօթն ցաւոց Տիրամօրն . . . . . . . . . . | |
| | 24 | | Կր. Գերեհան Աստուածածին . . . | |
| Հոկտ. | | | Կր. Առաջին կիր. Վարդարանին Տիրամօր . . . . . . . . . | |
| | | | Կր. Երկրորդ կիր. Մայրութիւն Աստուածածնի . . . . . . . | |
| | | | Կր. Երրորդ կիր. Բարեխնամ Աստուածածին . . . . . . . | |
| Նոյ. | | | Կր. Երրորդ կիր. Պաշտպան Աստուածածին. | |
| | 21 | 21 | Ընծայումն Աստուածածնի . . | 76 |
| Դեկտ. | 9 | 8 | Անարատ յղութիւն Աստուածածնի . . . . . . . . . | 45 |
| | | 10 | Կր. Տուն Տիրամօր 'ի Լաւրետոն . . | |
| | | 18 | Կր. Անկալութիւն ծննդեան փրկչին. | |
| | 25 | 25 | Ծնունդ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի . . . . . . . . | 171 |

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐՈՒՑ ԿՈՒՍԱՄՕՐՆ

## ԳԼՈՒԽ Ա.

*Անկնկալութիւն համօրէն աշխարհի վասն Կուսին և Մեսիային.*

Աշխարհիս ստեղծագործութեան մերձաւոր նախկին ժամանակաց 'ի վեր՝ երբ մեր առաջին Նախահարք Եդեմայ հովանաւոր ծառոց ներքև՝ ահիւ և դողութեամբ պաշարուած լսէին Ամենակալին որոտաձայն բարբառն՝ որ դատապարտէր զիրենք յաքսոր յաշխատութիւն և 'ի մահ, 'ի պատիժ իրենց անմիտ անհնազանդութեանն, խորհրդաւոր նախագուշակութիւն մի՝ յորում նշմարէր Արարչին գթութիւնն զայրացեալ Աստուծոյ բարկութեան մէջ, մխիթարէր այն երկու տկար արարածոց տրտմագին սրտերն, որք Արուսեկին նման հպարտութեամբ մեղանչած էին. և խոստանայր որ մին 'ի դստերաց Եւայի, կին մի այրասիրտ պիտի ջախջախէր զգլուխ նենգաւոր օձին ընդ ոտիւք իւրովք. և վերաստեղծէր ցյաւիտեանս իրենց մեղաւոր սերունդն. և այս կինս ինքն իսկ էր կուսամայրն ՄԱՐԻԱՄ [1]:

Այն ժամանակէն 'ի վեր նախջրհեղեղեան սերնդոց մէջ՝ անշարժ աւանդութիւն մի հաստատուեցաւ՝ որ լուսոյ պէս գեղեցիկ և մաքուր կոյս մի աստուա-

ծային զաւակ մի ծնանելով՝ պիտի դարմանէր 'ի կնոջէ յառաջ եկեալ զաղէտսն. և այս մխիթարական աւանդութիւնս որով անկեալ մարդկութեան յոյսն արծարծէր՝ ոչ երբէք ջնջուեցաւ 'ի մտաց մարդոյ՝ նա և երբ ցիրուեցան եղեն Սենաարայ դաշտաց խուճապմամբն. մանաւանդ թէ ուր տեղուանք որ ցրուեցան՝ իրենց հետ տարին անդր քան զեւրինս և ըղձովս այս քաղցր և հեռաւոր ակնկալութիւնս: — Իսկ երբ երթալով նախկին կրօնքն սկսան տկարանալ և հին աւանդութիւնք մթագնիլ, ժամանակաց եղծման դէմ՝ գրեթէ միայն անեղծ մնաց Կուսին և Մեսիային աւանդութիւնն, և հին հաւատալեաց աւերակաց վերայ բարձրացաւ՝ 'ի միջոյ տառասպելեաց բազմաստուածութեան, ինչպէս այն մշտադալար ծառն որ հնոյն և մեծին Բաբելոնի աւերակաց մէջ բուսանի [2]։

Եւ յիրաւի եթէ մարդ շրջի 'ի հիւսիսոյ ցհարաւ և յարևմտից մինչև ցարևելս յամենայն կողմանս աշխարհի, և քննէ ազգաց և ազանց կրօնական տարեգիրներն և աւանդութիւններն՝ 'ի բարեխառն գօտեաց ուր նռնենին բուսանի՝ մինչև յարևակէզ լերինս ուր արևդարձիկ ասացեալ ծաղիկն աճի՝ ամենայն ազգաց աստուածածնութեանց խորն գտանէ զԿոյսն խոստացեալ և զՈրդի նորա աստուածային, զանազան կերպարանօք բացատրեալ։

Թիպէթի, Ճափոնի և արևելեան Հնդկաց Թերակղզւոյն միոյ մասին մէջ՝ տեսանէ Ֆոյ աստուածն որ զմարդիկ փրկելու համար՝ մարմնանայ յարդանդի Թագաւորի մի խօսեցեալ աղջկան՝ որ է յաւէրժահարսն Լամկիուբրուն՝ գեղեցկագոյն և սրբագոյնն 'ի կանայս։ — Չինաց մէջ Շինկ-Մու մարդասիրագոյնն յաստուածուհիս ջրաբոյս ծաղկի մի միայն հպելով յղանայ. և իւր զաւակն ձկնորսի մի հիւղն մտանելով՝ զարգանայ և հրաշս ներգործէ։ — Լա-

մայք ասեն թէ Պուտտա հրաշեայ աստուածն ծը-նեալ է 'ի կուսէն Մահա-Մահէ։ — Սիամու աստուածն Սոմմոնոքոտոմ իշխան և օրէնսդիր՝ ծնեալ ասի նոյնպէս 'ի կուսէ յղացելոյ 'ի ճառագայթից արեգական։ — Լաօ-Ցէօ մարմնանայ յարգանդի խափշիկ օրիորդի՝ յասպիսի պէս գեղեցիկ և զարմանալի։ — Եգիպտացւոց կենդանակամարի Իսիսն կոյս է՝ միանգամայն և մայր։ — Դրուիդաց Իսիսն պիտի ծընանէր զհանդերձեալ Փրկիչն[3]։ — Գրամինք քուրմք հնդկաց ուսուցին որ երբ աստուած մի մարմնանայ՝ ծնանի յարգանդի կուսի աստուածային ներգործութեամբ. այսպէս եղեն Ճակրնաթ՝ հաշմանդամ փըրկիչ աշխարհի[4]. և Քրիշնա որ ծնաւ յայրի ուրեք՝ ուր եկին հրեշտակք և հովիւք պաշտել զնա յորորոցին, և երկոցուն մայրն ալ կոյս էին։ — Դոկդոս բաբելոնացի տեսանէ յերազի զլուսաւոր դեսպան Որմզդայ՝ որ արկանէ առ ոտս նորա փառաւոր զգեստներ, և երկնային լոյս մի ծագելով յերեսս նորա՝ արուսեկի պէս գեղեցկանայ, և այս գիշերային տեսլենէ ծագի Զորոաստր կամ Զրադաշտ և կամ լաւ ևս Իպրահիմ-Զէր-Ատէշտ՝[5] մոգուց հռչակաւոր մարգարէն և Զէնտա-վէսթա գրոց հեղինակն Քրիստոսէ 600 տարի յառաջ։ Բռնաւորն Նեբրովթ՝ յաստեղագիտաց իմանալով՝ որ ծնանելու մօտ եղած մանուկ մի իր աստուածներն և գահն պիտի կործանէր՝ իր տէրութեան սահմանին մէջ եղած ամեն յղի կանայքն ջարդել տայ. սակայն Զրադաշտայ մայրն ճարտարութեամբ և խոհեմութեամբ իւր զաւակն ազատէ[6]։ — Մագենիկ ասացեալ ցեղն որ բնակին 'ի Բարակուա Խարայէս լճին եզերքն՝ պատմեն թէ շատ հին ժամանակ գեղեցիկ կին մի մայր լինելով հանդերձ կոյս մնացել է, և իւր զաւակն զարմանալի հրաշս առնելէն ետև՝ որ մի յօդս վերացել է իւր աշակերտաց առջև, և յարև փոխարկել է[7]։

Եթէ այլայլեալ հաւատոց այս ամենայն յանուցիր հետքս մարդ ժողովէ՝ Կուսին և Քրիստոսի պատմութիւնն գրեթէ ամբողջ կարէ կազմել իւր պարագայիւքն։ Սուրբ կոյսն թէ և յարքունական զարմէ՝ սակայն Զրադաշտայ մօրն պէս աննշան և անտոհմ վիճակ մի ունի, նորա պէս իրեն ալ հասանէ հրեշտակ մի բանբեր երկնային աւետեաց։ Բուանաւորն Նեբրովթ՝ որոյ դոյութեան վրայ պատմիչք ոչ միաբանին 8՝ զՀերովդէս յիշեցընէ, և սորա պէս կամի ըսպանանել զմանուկ մոդն, ինչպէս որ Մարիաննայի արիւնարբու այրն 'ի խնդիր է կորուսանել զմանուկն Յիսուս. և սակայն երկուքին ձեռքէն ալ մանկունքն ազատին։ Մեր աստուածային Փրկիչն ալ որպէս ըզՊուտտա 'ի կուսէ ծնանելով, սինէացուոց աստուածուհւոյն զաւկին պէս՝ աղքատ ժողովրդեան մէջ ապրի. հրեշտակք և հովիւք գան պաշտել զնա՝ իւր ծննդեան գիշերին, որպէս զՔրիշնա. և յետոյ շատ հրաշս գործելէն ետև՝ զմիրիկս դադարեցուցանելով, 'ի վերայ ջրոց քայլելով, զդեւս հալածելով և ըզմեռեալս յարուցանելով, յաղթական փառօք 'ի յերկինս համբառնայ առաջի հինգհարիւր աշակերտաց, որոց աչքն շլանալով ոչ ևս տեսանեն զնա 'ի մէջոյ ամպոյ, ճիշդ որպէս պատմեն վայրենիքն Բաբակուայի։

Յիրաւ զարմանալի է որ այս հրաշալի վէպերս՝ (որք շատ աւելի հին լինելով քան զաւետարանս՝ 'ի նոցանէ օրինակուած չեն կարող լինել) այսչափ նըմանութիւն ունիցին Որդւոյն Աստուծոյ իրական կենաց հետ։ Կարելի՞ է որ ճշմարտութիւնն ծագի 'ի մոլորութենէ ... ապա զինչ կարեմք ասել այս նորանշան պատահմանց վերայ։ Միթէ յետին հեթանոս իմաստակաց և մեր դարուս ինքնահաճ իմաստասիրաց կարեմք հետեւիլ որ ասեն՝ թէ առաքեալք այս ամեն առասպելներս ասիական ժողովրդոց կրօ-

նիցն և վիպասանութիւններէն քաղած են։ Բայց ինչպէս կարելի է այս բանս, որովհետև գիտենք որ առաքեալք ռամիկ ժողովրդէն ընտրեալք՝ հազիւ թէ իրենց նաւակն Տիբերեայ ծովակին վրայ ուղղելու չափ գիտութիւն ունէին, և յառաքելութիւն կոչուած ժամանակ դեռ իրենց ուռկաններէն կը կաթկթէին լճակին ջրերն. Ինչպէս կարելի էր որ իրենց քարոզութեանց ժամանակ՝ սխալուած և լինելով աշխատանօք իրենց օրական ապրուստն ճարելու, ժամանակ ունեցած լիցին հնդկաց չինաց և պարսից գրեանքն թղթատելու, և անոնց մէջէն իրենց պէտք եղած առասպելներն հաւաքելու։ Ճըշմարտանմանութեան երևոյթ մի ունի՞ արդեօք կարծելն՝ թէ Սիմոն Պետրոս և որդիքն Զեբեդեայ և Պաւղոս Գամալիէլի իմաստուն և խստակրօն աշակերտըն՝ որ Կորնթոսի պէս ճոխ և շքեղ յունական քաղքին քարոզած ատեն գոչէր Ոչ եդի 'ի մտի գիտել ինչ՝ բայց միայն զՅիսուս Քրիստոս և զնոյն 'ի խաչ ելեալ, դիցաբանական գրութիւններէ առած լիցին այս հատուածներս՝ զնոսա խարդախութեամբ կարկատելու համար Յիսուսի Քրիստոսի այնչափ պարզ և վսեմ կենաց հետ, այն կռապաշտութենէ զոր ջնջելն իրենց պաշտօնն և առաքելութիւնն էր։ Մանաւանդ որ միայն ասիական գրեանքն քննելն և քաղելն բաւական չէր. վասն զի աշխարհիս միւս մասանց մէջ ալ գտանին այս լուսաւոր կէտերս կռապաշտութեան խոր խաւարին մէջ՝ որ պսակ կազմեն 'ի գլուխ մարմնացելոյն Աստուծոյ։ Ի բաց թողլով զաշխարհն Հնդկաց՝ որ յոյժ անկատար կերպով ծանուցեալ էր Տիբերիոսի ժամանակ, և յախճապակեայ աշտարակօք զարդարեալ Ճենաստանն՝ որոյ հեռաւոր գաւառներն հռոմէական [9] աշխարհակալութեան քաղցն ոչ գրգռէին, ինչպէս կարելի էր առաքելոց՝ հաղորդութիւն ունել ընդ հեռաւորն Ամե-

րիկայ՝ որ 'ի հին ցամաքէն բաժանեալ էր Ովկիանոսի համապարփակ ալեօքն, և գրեթէ կորուսեալ մարգարիտ մի 'ի մէջ անդնդոց։

Բայց ենթադրեմք թէ առաքեալք որ և իցէ միջոցաւ ձեռք ձգած լինէին այս հին և մթին աւանդութիւններս, և իրենց բնածին պարզմտութեան և խորին սրբութեան հակառակ՝ որք իրենց արեամբն իսկ իրենց վկայութիւնն կնքեցին և հաստատեցին, համարեցուք թէ խորհեցան և կամեցան՝ այս առասպելեալ պարագայներէս զոմանս աւետարանական պատմութեան մէջ անցուցանելու, և սակայն ասեմք թէ այս բանս իրենց կարողութենէն վեր էր։ Օրինակի աղագաւ ինչ երևսով կարէին Հերովդեսի ընծայել Պարսից անծանօթ թագաւորի մի անգթութիւնն՝ որոյ վերայ պատմութիւնն անստոյգ յիշատակներ միայն պահած է՝ առասպելեաց ծովու մի մէջ կորուսեալ, և որ թերևս և ոչ իսկ այնպիսի անձ մի և դէպք մի եղած է, և կեայր ասացեալ անաստուած ցեղի մի ստեղծաբանութիւնն և երևակերպութիւնն հնարած է։ Արդ ինչպէս կարելի էր առաքելոց՝ այս անօրէն գործս սակաւ մի փոփոխութեամբ՝ այսինքն փոխանակ յղեայ զորդիսն կոտորելով Հերովդեսի ընծայել՝ զոր բովանդակ Երուսաղէմ ճանաչէր և որոյ չքեղ և աղետալից թագաւորութիւնն ծանօթ էր ամենեցուն։ Կարելի բա՞ն է կարծելն որ այն նենգաւոր փարիսեցիք որ ջանային Քրիստոսի ամեն խօսքն 'ի չարն մեկնել և իրեն դարաններ կազմել, պիտի կլնէին այն պարսկական հին առասպելն՝ իբրև իրենց ժամանակ հանդիպած. և կամ Հերովդիանոսք լռութեամբ պիտի համբերէի՞ն այն զրպարտանաց՝ նոյն իսկ իրենց աստուծոյ տեղ դրած իշխանի մի [10] արքունեաց դաւիթներուն մէջ, այն իշխանին յորմէ այնչափ բարիք և պատիւ առած էին։ Մանաւանդ որ միայն այս աղանդաւոր թագա-

ւորագրունքս չէին Եդոմայեցի արքային կողմնակից-
ներն՝ որ զինքն արդարացնել պիտի ուզէին, այլ այն
ամեն անթիւ բարեկամներն որ թողել էր աշխարհիս
վերայ, և որք պատրաստ էին՝ այնոր սուտ ամբաստա-
նութեամբ անարգեալ պատուոյն և յիշատակին
վրէժխնդիր լինելու։ Որովհետև որչափ ալ Հերով-
դէս կրիւք և բռնութեամբ խռովեալ մարդ մի էր,
սակայն և այնպէս գիտէր ինքզինքն սիրելի ընծայել.
արիւնռուշտ քաղաքագէտ մի էր՝ սակայն և ճարտար,
զօրավար քաջ, իշխան առատաձեռն. որ թէպէտ վա-
գրի բնութեամբն և օտարախորթ լինելուն՝ հրէից
շատին հաճելի չէր՝ սակայն և այնպէս բարեկամներն
ալ շատ էին։ Իսկ արդ անմեղ մանկանց կոտորածն
սովորական յանցանք մի չէր՝ որ քաղաքական եղե-
րանց մէջ կորսուի և անյայտ լիցի. այլ այս անագո-
րոյն գործոյս մէջ՝ յայտնի երևէր անմտութիւնն և
բարբարոսութիւն. եթէ իւր արիւնարբու գազանու-
թիւնն իր մտերիմքն Անտոնիոս և Օգոստոս ներելի
համարեցան բայց ոչ նոյնպէս և անմտութիւնն ...
Արդ եթէ Հերովդիանոսք չկարացին բողոքել աւե-
տարանի այս պատմութեանս դէմ իբրև ամբաստա-
նութիւն՝ պատճառն այս է որ իրն ստոյգ էր, ծա-
նօթ ամենեցուն և դեռ կարի մօտաւոր ժամանա-
կաց՝ զոր ուրանալ անհնարին էր. և դարձեալ զի
յԵրուսաղեմէ երկու ժամ ևեթ հեռի՝ դեռ ևս
կենդանի էին մարք մատաղերամ վկայից որ իրենց
ողբալական հառաչի մահուամբ ցուցին զպատիւ ժա-
մանակակից լինելոյ ծննդեան Յիսուսի Քրիստոսի. և
դարձեալ եթէ Հերովդիանոսք քրիստոնէից զլու-
ցածն սուտ հանելու որ լինէին՝ ժողովուրդն իրենց
դէմ պիտի բողոքէր՝ ասելով թէ ինքն իսկ ականա-
տես եղած էր այն անագորոյն գործոյն։

Նոյն բանն կարեմք ասել նաև վասն կուսութեան
Մարեմայ և աստուածային ծննդեանն և վասն այցե-

լութեան հովուաց 'ի հրեշտակաց յորդորեալ, վասն փառաւորեալ յարութեանն և վասն ամենայն սքանչելեաց որ երևեցան 'ի գալստեանն Քրիստոսի։ Վասն զի առաքելոց այս բաներս գրած ժամանակ՝ դեռ կենդանի էին այն անձինքն զորս յիշատակեն. և կեանք ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ այնչափ կարճ եղև՝ որ հովիւք Բեթղեհեմի՝ որք երկրպագին Նմա յօրօրանն՝ կարելի էր թէ խօսակից լեալ իցեն ընդ առաքելոց՝ որք վկայք կացեալ էին համբարձման Նորա յերկինս։ Առաքեալքն Պետրոս և Յովհաննէս որ Քրիստոսի ժամանակ այնչափ երկչոտ էին՝ համարձակ յանդիմանէին զիշխանս ժողովրդեանն և զքահանայապետս, և զնոսա աստուածասպանս համարէին, և այս բանս ցուցանէին սքանչելեօք ծննդեան և կենաց և մահուանն Քրիստոսի։ Եւ հիմա ևս հրեայք այս ամբաստանութեամբս գրգռեալք և զայրացեալք՝ սակայն ոչ համարձակին ասել թէ այս իրք սքանչելիք՝ նենգուպատիր զրպարտութիւնք են։ Եւ յիրաւի ոչ երբէք ալ ուրացան զայսոսիկ. բայց իրենց խստասրտութիւնն արդարացնելու համար՝ համարին զնոսա դիւթութիւնս ուսեալս յեգիպտացւոց։

Աստի հետևի թէ առաքեալք ամենևին մանակցութիւն չունէին այն համաձայնութեան մէջ որ երևի աւետարանաց պատմածներուն՝ նախկին ազգաց առասպելախառն աւանդութեանց հետ։ Ապա ուրեմն ինչպէս բացատրելու է այս նմանութիւններս. արդեօք դիպաց խաղ և պատահմո՞ւնք սեպելու եմք զնոսա։

Սակայն դէպք և պատահմունք չէ կարող լինել այն հիմնական հաւատքն ասիական ազգաց՝ որով հաւատան աստուածոց մարդեղութեանն որ պիտի կատարուի միշտ յամենասուրբ յարգանդի կուսի։ Նոյնպէս դարձեալ դիպաց արդասիք չէ կարող լինել այն զոր համարին հեթանոսք թէ կանայքն այ-

նոքիկ առանձնաշնորհեալք որ կրեցին յարգանդի իւրեանց զծագումն աստուածութեան՝ լինելոց են միշտ կուսանք անարատք սուրբք և գեղեցիկք, համանմանք իրերաց՝ Նախատիպ օրինակի մի յարմար՝ որ հնագոյն ժամանակաց մթութեան մէջ ծածկուած է։ Դիպուած և պատահար չեմք կարող համարել այն հաստատուն հաւատքն զոր կալան ազգք զանազանք և հեռաւորք յիրերաց՝ թէ լուսաւոր ճառագայթ մի կարէ միացնել զաստուածային բնութիւնն ընդ մարդկային բնութեան։

Այս գաղափարներն՝ որոց վերայ երևի նախկին ժամանակաց կնիքն՝ մինչև աշխարհիս ծագումն հասանեն։ Ուրեմն ջրհեղեղէն յառաջ եղած նահապետաց շարքն՝ որ երկայնակեաց էին որպէս զմայրիս, ուղելով գաղափար մի տալ կանանց մէջ ամենէն աւելի երանելւոյն՝ որոյ հրաշալի զաւակն փրկելոց էր զազգ մարդկան, նկարագրեցին զնա որպէս զԵւա յառաջ քան զանկումն նորին. համարեցան զնա հրաշափառ և անարատ գեղեցկութեամբ զարդարեալ, որ որդւոց մարդոյ սիրտն ուրիշ զգացումն չէր կարող ազդել՝ բայց եթէ կրօնական յարգութիւն. ցուցին զնա որպէս պայծառ և սիրուն աստղ՝ քաղցր խորհրրդաւոր անարատ և քօղարկեալ լուսով պայծառացած՝ որոյ ծագումն նախընթաց լինելոց էր արեգականն արդարութեան։ Այն միջոցներն՝ զորս 'ի գործ ածէ Աստուած այս կուսական արգանդն բեղմնաւորելու՝ հիանալի կերպով համաձայնին այն գաղափարաց հետ՝ զորս տեսանեմք աշխարհիս զանազան ազգաց աստուածածնութեան մէջ։ Եթէ աչք մի տամք հին կրօնից վերայ՝ յամենեսին 'ի նոսա նկատեմք հուր իմն սրբազան. իսկ արդ հուրն՝ մոգուց կարծեօքն արեգական երկրաւոր նշանակն էր, և ինքն իսկ արևն ոչ այլ ինչ էր եթէ ոչ օթևան Բարձրելոյն, զոր երբայեցիք Աբելի հաւատոցն աւան-

դապանք և Նահապետաց Նախնին գաղափարին 11
պահպանիչք՝ Մշանջենաւոր Աստուծոյ խորանն հա-
մարէին։ Սուրբ Գիրք ասեն՝ թէ յառաջին ժամա-
նակս աշխարհի Աստուած ընտանեբար խօսակցէր
ընդ Նահապետաց. բայց որպիսի կերպարանօք երե-
ւէր նոցա՝ մինչդեռ ոչ ոք 'ի մարդկանէ կարէ տեսա-
նել զԱստուած և կեալ։ Մովսէս որ խօսէր ընդ նմա
դէմ յանդիման և որպէս զբարեկամ՝ ոչ այլ ինչ
տեսանէր բայց զմերձակայութիւնն աստուածային
'ի ձև ամպոյ իջելոյ 'ի վերայ քաւութեանն՝ որ էր
ոսկեղէն ծածկոյթ տապանակին, և այս երևոյթս
երբայեցիք կոչէին Շեքինա։ Անշուշտ այս կերպով
յայտնէր Աստուած զինքն Սեթայ ցեղին՝ մինչ
տակաւին չէին ապականեալ։ Իսկ երբ այս շնորհէս
ալ զրկեցան՝ որ Եդեմայ բարեմասնութեանց յետին
նշոյլն էր՝ Նոյի սերունդքն արարածոց մէջ ճառա-
գայթարձակ և մաքուր էակ մի որոնեցին՝ որ Ամենա-
կալին ներկայութեան հետ նմանութիւն մի ունիցի.
ուստի և զարեգակն զաստղն զայն մեծ և շքեղ՝ որոյ
շլացուցիչ ճառագայթք սախալեն զաչս մարդոյ յեր-
կիր խոնարհիլ, համարեցան որպէս յարմարագոյն
երկրաւոր նշանակ ներկայութեանն Աստուծոյ. և
Աստուած ալ իրենց այս գաղափարս հաստատեց ե-
րևելով 'ի բոց հրոյ մորենւոյն 'ի Քորէբ և 'ի կա-
տարս լերինն Սինայի։ Ուստի արեգակն համարե-
ցաւ՝ որպէս ստուէր անստեղծ լուսոյն, և աստի ան-
շուշտ յառաջ եկն ասիական ազգաց այն կարծիքն
թէ լուսաւոր ճառագայթ մի ածելոց էր զՓրկիչն
ակնկալեալ յարգանդ կուսին՝ որ նորոգելոց էր
զաշխարհս։

Աստուածային պաշտօնն՝ որ կրօնական արարողու-
թեամբք մեր առ Աստուած ունեցած սէրն և երախ-
տագիտութիւնն յայտնէ, աշխարհիս ստեղծագոր-
ծութեան հաւասար հնութիւն ունի, նոյնպէս և

սեղանք և բագինք երիցագոյն են որպէս զպաշտամունս [12]։ Անշուշտ անմեղութեան վիճակին մէջ Ադամայ և Եւայի նուէրքն էին միայն պտուղք և ծաղկունք [13]. բայց երբ մեղքն մուծին զմահ 'ի կեանս մարդոյ, և երբ նախահայրն՝ կենաց ծառոյն սրբազան հովանւոյն հետ 'ի միասին իւր անմահութեան բժժանքն ալ (հնարքն) կորոյս [14], իւր աքսորանաց երկիրն բուսած վայրի պտղոց և ծաղկանց վերայ աւելցուց իւր ոչխարաց հօտին երախայրիքն, որ ծանր խորհրդածութեան նիւթ լինելով՝ կարժէ որ սակաւ մի բացատրեմք։ Անշուշտ Ադամ որ մարմնոյն բարեկազմութեան հետ բանաւոր և վեհ հոգի մի ալ կրէր՝ յորում Աստուած դրած էր ամենայն առաքինութեանց և ծանօթութեանց ընձիւղներն՝ զուրկ չէր կարող լինել նա և 'ի գթութենէ. իւր յանցաւոր բարեհաճութիւնն առ Եւա՝ ցուցանէ իւր անչափ սէրն զոր ունէր առ կողակից իւր՝ որ մինչև 'ի տկարութիւն հասաւ, որով և երևի թէ քաղցրութեան և մեղմութեան զգացումն ալ ինչ աստիճանի տիրած էր իր սիրտն։ Ապա ուրեմն ուստի՞ միտքն անկաւ թէ Արարչին հաճոյ կարէ լինել իւր արարածոյն սպանութիւնն, և զի նոցա կեանքն բառնալն՝ բարեպաշտութեան գործ մի կարէր համարուիլ։

Անտարակոյս անասնոց զոհն՝ որ մարդուս մտաւորական ըղձից հետ ամենևին յարաբերութիւն չունի՝ 'ի սկզբան անդ բնական սոսկում մի պիտի պատճառէր իւր սրտին։ Վասն զի այս խեղճ անասունք՝ թէպէտ և զուրկ 'ի բանէ՝ այլ սիրոյ և գգուանաց ընդունակք, իր Եդեմայ դրախտին մէջ եղած ատեն՝ իւր թագաւորութեան հպատակներն էին. և ինքն նոցա սեղանոյն ճաշակից՝ նոյն բլրոյն մարգագետնաց վրայ 'ի միասին հանգչէր, նոյն առուակէն երկուքն ալ իրենց ծարաւն անցընէին, և արևն մայրն մտած ժամանակ

երբ իւր աղօթքն յերկինս վերառաքէր՝ Թռչուններն ալ իրեն ձայնակից լինէին՝ իրենց երեկոյեան երգերովն։ Յետոյ երբ իր յանցանօքն աքսորուեցաւ այն երջանիկ դրախտէն՝ անասունք ևս որ իր երջանկութեան մասնակից եղած էին՝ իր թշուառութեան և արտաքսմանութեանն ալ բաժանորդ եղեն [15]. ոմանք իրենց վայրագ կատաղութեան բնազդմամբն՝ զոր դրախտին մէջ մոռցած էին, անապատներու խորերն և լերանց անձաւներն քաշուեցան, մարդկանց հեռու մինչև ցմահ պատերազմելու պատրաստ. իսկ այլք ակարք անմեղ և սիրուն արարածք՝ իրենց դժբաղդ տիրոջն թշուառ վիճակին մասնակից լինելով՝ նորա քարայրին մօտերն մակաղեցան՝ իրենց կաթն և փափուկ գզաթն նմա մատակարարելով, նորա աշխատութեանն ձեռնտու և նորա տրտմութեանն մխիթար իրենց ձայնակցութեամբն։ Եւ սակայն այս սիրալիր գերեաց դասէն՝ որ անմեղութեամբ նորա իշխանութեան վստահացեալ և հնազանդեալ էին՝ պիտի ընտրէր Ադամ իր զոհերն, և վախկոտ ոչխարին վիզն մխել զսուրն՝ մինչդեռ նա իր տիրոջ ձեռքն քաղցրութեամբ լիզէր։ Ահ որչափ այլայլած պիտի լինի մարդն երբ նախ առաջին անգամ իւր ոտից առջև թաւալած տեսաւ անշէն և անպատսպար կենդանի արարած մի՝ որ հոգեվարք մահագոյժ ցնցմամբ գելոյր և գալարէր։ Բայց այս մտածութիւնս իւրն չէր, և ոչ ալ իւր կողմանէ կամաւոր ընտրութեան գործ մի. այլ մանաւանդ վերտամբեր հնազանդութենէ սահմանեալ գործ մի՝ անկատար կերպով քաւելու համար այն մեղաց յանցանքն՝ որ արիւն պահանջէր։ Ո՞վ էր ուրեմն այս բանս հրամայողն. բայց եթէ Աստուած որ կենաց և մահու բացարձակ տէրն է։

Նախամարդն աստուածային պատուիրանն անարգելուն պէս՝ Աստուած կարող էր զինքն անմիջապէս

ոչինչ դարձնել և իր հետքն անգամ երկրիս վրայէն ջնջել՝ զոր իւր յանցանօքն պղծած էր։ Սակայն ամենակալն չուզեց այս բանս, 'ի գութ շարժեցաւ այն ողորմելի ապստամբին վերայ, և զվճիռ մահու որում արժանի եղել էին իրենց ապստամբութեամբն, 'ի տարագրութիւն փոխարկելով՝ նոյն վայրկենէն իւր անքաւ ողորմութեամբն բացաւ նոցա առջև անմահութեան նոր և փառաւոր ակնկալութիւն մի։ Ըստ որքոյն Բեռնարդոսի այս անճառելի շնորհս՝ զոր Քրիստոս պիտի կնքէր իւր արեամբն 'ի վերայ խաչին, 'ի պատիւ Մարիամու տրուեցաւ, և այս անարատ և սուրբ կոյսն յոչնչութենէ ազատելու համար՝ խնայեց Բարձրեալն յԵւայն մեղապարտ և 'ի քովանդակ սերունդ նորա։ Թէպէտ և մեզ չափազանց երևի այս բարեպաշտ կարծիքս և չուզեմք ալ զայն ընդունիլ՝ սակայն ոչ տարակուսիմք հաւատալու՝ որ երբ Յաւիտենականն 'ի կշիռ դրաւ մարդկանց ճակատագիրն ընդ արեան Որդւոյն իւրոյ միածնի՝ արդիւնք և առաքինութիւնք Մարիամու որ օր մի թագուհի լինելոց էր հրեշտակաց և մխիթար տրտմեցելոց, աստուածային կշռոց մահադոյժ մէջն 'ի կողմն ողորմութեան դարձուցին։ Եւ այն առենէն խորհրդաւոր գուշակութիւն մի յայտնեց՝ թէ ժամանակաւ մարդարէ մի պիտի ծնանէր 'ի կնոջէ՝ որ զմեղս աշխարհի պիտի փրկանաւորէր իւր անպարտական մահուամբն վասն ամենեցուն մեռանելով։ Եւ այս յայտնութիւնս՝ ըստ հրէական աւանդութեան, հրեշտակ ամենակալի կըրկին հաստատեց առ մայրն Աբելի և Սեթայ։

Անշուշտ այս գուշակութիւնս որ մարդկանց փըրկութիւն խոստանայր՝ հարկ էր անջնջելի տառիւք տպաւորիլ նոցա միտքն. բայց Արարիչն ճանաչելով մարդկային մտաց անհաստատութիւնն, և թէ ինչպէս կիրք որ են մրրիկք հոգւոյն՝ պիտի ջնջէին նորա սըրտէն աստուածային սպառնալեացն և աւետեաց յիշա-

տակքն՝ այնպէս դիւրաւ որպէս ջնջին հետք նաւու ՚ի ծով հողմակոծ, այնոր համար Փրկչին խոստումն ուզեց կապել սարսափելի տեսարանի մի հետ, այնպիսի տեսարան որ խորին ազդեցութիւն մի ունիցի մարդկային բնութեան անհաստատ և մոռացկոտ մըտաց վերայ։ Այս բանիս համար ահա հաստատեց զոհերն և այնոր հետ միացեալ կրօնական արարողութիւններն՝ որ են միանգամայն յուշարարք, քաւչականք և նշանականք։

Երբոր մարդկութեան մեծ գերդաստանն՝ զոր Աստուած պահել էր աշխարհս նորէն բազմացնելու համար, բոլոր երկրիս երեսն ցրուեցաւ, իւրաքանչիւր գաղթական իր հետն առեալ տարաւ համայնաջինջ նաւակոծութենէ զերծեալ գիտութեանց և արուեստից մնացորդաց հետ՝ աստուածային պաշտօնն ալ՝ զոր Ենովք և նահապետք հաստատեալ էին, և հիմնեց ըզնոսին այն անարօր երկիրներուն մէջ՝ ուր որ իր վըրաններն կանգնէր [16]. և Նոյ Աստուծոյ եռանդուն պաշտօնեայն այնոց վերայ աւելցուց այն պատմական և կրօնական աւանդութիւններն՝ զորս յառաջ քան զջրհեղեղն իւր երկայնակեաց տարեօքն դիւրաւ կարացել էր հաւաքել իւր հարց և նախահարց խօսքերէն։ Ինքն ծանոյց իւր սերնդոցն մարդուս ՚ի հողոյ ստեղծուիլն, ապստամբութիւնն և անկումն, և հանդերձեալ կանգնումն՝ որոյ համար երախտապարտ լինելոց էին նոր Եւայի մի հրաշալի ծննդեանն. Ինքն ուսոյց նոցա որ արիւնաբուղխ զոհերն տեսած ատեննին՝ որ անկարող էին իրենց նախահարց յանցանքն քաւել, աչուըննին վերցնեն գերազանց զոհի մի որ նստի ընդ աջմէ Բարձրելոյն աստեղազարդ երկնից կամարն, այն զոհին որում ստուեր և նշանակ էին մատուցեալ զուարակքն և ոչխարք, և որ միայն կարող էր յաղթել մահու և աւերել զդժոխս։

Այս նախկին ծանօթութիւններս ՚ի սկզբան հա-

ւատորմութեամբ պահեցին ազգք և ազինք, որ և գտանին ամենայն կրօնից մէջ [17] ։ Ուստի կանգնեցին սեղանս և բագինս յափունս գետոց, յանտառս հովանաւորս, 'ի ծագս լերանց և յեզերս կանաչագեղն Ովկիանու և յուռզակոյտ բլուրս՝ ուր օշինդրն դառնահամ սպարզէ զտերևս իւր 'ի խորշակ անապատին ։ Ի սկզբան քօղազարդ լոյս լուսնակին ևեթ լուսաւորէր այն գեղջկական տաճարներն՝ որոց սահմանն հորիզոնն էր և կամար երկինքն աստեղազարդ ։ Այն հեռաւոր ժամանակաց մարդիկ այնպիսի արժանաւոր պաշտօն մատուցանէին Աստուծոյ, և այնպիսի ուղիղ վսեմ միօրինակ և պարզ միտք՝ որ անտարակոյս մինչև առ ինքն ելեալ հասանէին ։

Սակայն սակաւ տարիներ յառաջ հանդիպած սարսափելի աղետից յիշատակ մի՝ որով բոլոր աշխարհ համայնաջինջ ջրհեղեղով ծածկել էր կուլ տալով բոլոր մարդկան ազգն՝ աւելորդապաշտ վախով մի ամենուն սիրտն դողացնէր, և նախկին ժամանակաց [18] զուարթագին տօնախմբութեանց վրայ մահառիթ քօղ մի տարածէր ։ Եւ տեսնելով այն բարձրաբերձ աշտարակաց [19] լուռ աւերակներն՝ որ չէին կարացել ջնջեալ ցեղից հսկայներն այն նաւաբեկութենէ ազատել, և միանգամայն լերանց ձիւնապատ գագաթանց վերայ նշմարելով Ովկիանոսի հետքն մինչև ցբարձրութիւն բունոց արծուեաց, դող և սարսուռ մի եկն մարդուս վերայ, և զայրացեալ Աստուծոյ վրէժխնդրութիւնն զինքն սասանեցուց. և ինքն իր վերայ դառնալով՝ տեսաւ ինքզինք որպէս և էր իսկ՝ հիւլէ մի առ Յաւիտենականին, և վհատութեամբ հարցանէր թէ արդեօք կարելի՞ էր որ իւր աղօթքն և իղձք հասանէին մինչև յաթոռ հինաւուրց Թագաւորին. որովհետև ինքն այնչափ անարգ և Աստուած այնչափ բարձր էր ։ Եւ սա հարցմանս հաստատական պատասխան մի ոչ կարելով տալ՝ համարեցաւ թէ

հզօր միջնորդի մի կարօտ էր՝ որոյ ձեռքովն կարասցէ իւր պէտքն յայտնել և իւր երախտագիտութիւնն ցուցանել։ Այս միջնորդութեանս համար ընտրեց երկնից աստղերն՝ որոց վերայ հիացած նայէր իւր անքուն գիշերներն, և կարծէր թէ երկնային հոգիք էին որ զնոսա կառավարէին։ Այս է ահա սաբէութեան կամ աստեղագիտութեան և մոգութեան ծագումն՝ որ յետոյ դիցապաշտութեան փոխուեցաւ։

Ժամանակ անցնելով խաւարն աւելի թանձրացաւ, և կրօնից վերայ զանազան արարողութիւնք յաւելան, և Ճշմարտին Աստուծոյ պաշտօնն հետ զհետէ աստեղաց և տարերաց պաշտաման հետ խառնուեցաւ. սրբագիր նշանագրաց գիւտն ալ խառնակութիւնն 'ի ծայրն հասուց, և հաւատալեաց կործանմանէն Ճողոպրած սակաւ Ճշմարտութիւնք՝ մեհենից խորերն թաղուած մնացին խորհրդաւոր լռութեան մէջ, որպէս գերեզմանական լապտեր մի որ զմեռեալս ևեթ լուսաւորէ. և քուրմք մեհենիցն այնոցիկ ամենայն զգուշութեամբ ծածկեցին զնոսա յաչաց ամբոխին 20, և թողին որ ռամիկն պաշտօն մատուցանէ անմիտ երկրպագութեամբ վագերց և առիւծուց և տխտեռանց և մինչև անգամ բուսոց և տնկոց, նա և իւր կիրքն և ախտքն աստուածացնելով։ Նոյն ատենն էր որ նենգագործք ոմանք՝ մարդկային դիւրահաւանութիւնն իրենց շահուն գործածելով՝ աւելի ևս շփոթեցին և կամաւորապէս խզեցին նախապետական աւանդութեանց արդէն բրդբըզեալ թելն, և յանդգնաբար ապագայ ակնկալութիւնն անցելոց յիշատակութիւն և արդէն կատարուած համարելով՝ Բանին մարմնաւորութեան սքանչելիքն և Նորա վսեմ և աղէտալի մահուան սկզբնագիր յիշատակարաններն՝ սուտ և առասպելեալ աստուածոց վերայ յարմարցուցին։ Ըստ մեզ այս կեր-

զով բացատրելի են այն նմանութիւններն՝ որ զա-ռաջինն անիմանալի երևին մեզ և անբացատրելի։

Սակայն և այնպէս ոչ եթէ ամենայն ազգք բազմ-աստուածեանք արդէն կատարուած համարէին Մեսիային խորհրդաւոր անցքն. ինչպէս դրուիդք կամ քուրմք կելտաց՝ քրիստոնէական դարէն սակաւ մի յառաջ Գալլիոյ (Նախկին Փրանկիոյ) մութ անտա-ռաց մէջ կանգնէին զբագին (Virgini pariturae) կուս-ւի որ ծնանելոցն էր։ Սինէացիք (չինք) Կոնփուկիոսի հրահանգաց հետևելով՝ որ հին աւանդութեանց մէջ գտած էր այս պատգամս՝ սպասէին Սրբոյն որ լու-սաւորելոց էր զարևմտեան կողմանս Ասիոյ, և Մար-գացելոյն Աստուծոյ մահուանէն կէս դարու չափ յառաջ հանդիսաւոր դեսպանութիւն մի յղէին՝ զնա որոնելու համար։ Եւ մոգք Զրադաշտայ խօսիցն հաւատալով համաստեղութիւններն զննէին՝ Յակոբայ աստղն գտնելու համար, որ իրենց առաջնորդէր պի-տի յօրրանս Քրիստոսի [21]։ Պրահմինք հնդկաց հա-ռաչանօք սպասէին փառաւորեալ Աւատարի [22] այս ինքն մարդկութեան այնմ որ մաքրելոցն էր զաշխար-հս 'ի մեղաց, և Վիշնուէն խնդրէին զնա՝ ափուելով 'ի վերայ բագնաց Նորին գոհար ակունս և բանալիք ռե-հան հոտաւէտ՝ որ սիրելին էր Հնդիկ չաստուծոյն։ Գոռոզ որդիք Հռոմուլոսի որ այնչափ լեգէոնս գից հնարած էին և Կումէայ սիբիլլային Բ մատեանքն եր-կիւղածութեամբ պահէին՝ որ Աքիլլէսի և Հեկտորի ժամանակակից էր, ընթեռնուին 'ի Նոաավյան կոչսին և մանկանն աստուածայնոյ, զերկրպագութիւն հո-վուաց և զօձն ջախջախեալ, և զդարն ոսկի նորոգեալ յաշխարհիս։ Վերջապէս Մեսիայի գալստեան մօտ ամենայն ազգք արևելից մեծաւ անձկալութեամբ սպասէին հանդերձելոյ Փրկչին, զոր Պուլանժէ յետ ցուցանելոյ թէ որչափ հանրական էր այս յոյսս՝ ան-խորհրդաբար տիեզերական ցնորս կարծէ, թէպէտ

և մեռնելու ժամանակ խելքն գլուխն եկած [23] համարի [23]։

Այսպէս Աստուած Թողուց որ ազգք և ազինք դիւցակրօնք նոյն իսկ իրենց ցոփութեան մէջ՝ այս հաւատքս պահեն, որ զիրենք մոլորութեանց բաւղէն հանելու մի միայն Թելն էր․ Նաև ստիպեց զհայրն խաբէութեան գրելու սիբիլլային ձեռօք ծառի տերևոյն վրայ զանունն Մարիամու [24], որպէս զի Բանին մարմնաւորութիւնն ակնկալութեան նիւթ լիցի ամենեցուն․ և սակայն ո՛րչափ նուաղ և մութ էր այս պլպլացող կայծս այն Թանձր խաւարին մէջ, համեմատութեամբ այն լուսաւոր հեղեղին որ լուսաւորէր զորդիս Աբրահամու։ Ո՛վ ոչ զարմանայ այն շղթայաշար մարգարէութեանց վրայ որ աշխարհիս սկիզբէն սկսեալ հասանէ մինչև ցգերեզմանն Քրիստոսի [25]։

Ինչպէս որ ասացաք Մեսիայի նկատմամբ առաջին պատգամն՝ Աստուծոյ դժոխային օձին տուած սպառնալիքն է, որ ցուցանէ ոչ միայն Որդւոյն փառաւոր զօրութիւնն այլ և Մօր նորա գերմարդկային քաջութիւնն և գերազանց առաքինութիւններն։ Նա որ պիտի ծնանի 'ի կնոջէ՝ պիտի ճզմէ քոյ գլուխդ, ասաց Յաւիտենականն, և այս խորհրդական խօսքերս այլ աւելի բացայայտ կերպով ծանոյց Դրախտէն արտաքսելոց [26], և զոր Նոյ ալ աւանդեց Սեմայ՝ որ ժառանգ կարգեալ էր հաւատոց, և Սեմ որ իր նախահարց չափ երկայն ապրեցաւ՝ անշուշտ աւանդեց զայն Աբրահամու որ հայր էր հաւատացելոց։ Եւ սորա ժամանակն էր որ խորհրդաւոր օրհնութիւն մի՛ յորում բովանդակէր և խոստումն Մեսիային, ծանոյց որ այն Եւայի խոստացեալ օրհնեալ բարունակն՝ պիտի լինէր միանգամայն բարունակ և շառաւիղ Աբրահամու։ Այս նախկին աւանդութեանց անմիջապէս յաջորդէ Յակոբայ հռչակաւոր նախագու-

շակութիւնն՝ որ մեռնելու մօտ տեսնելով հոգւոյն աչօք երկոտասան ցեղից վիճակն Պաղեստին մտած ատեննին, իր մահուան անկողնոյն բոլորն ժողովեալ որդւոցն ծանուցանէ՝ թէ 'ի միջոյ ամենայն եղբարց Յուդայ ընտրուած էր լինել Իսրայէլի թագաւորաց ազգատոհմն, և սահմանեալ լինել հայր խոստացեալ Շիլոհի Գ որ լինելոց էր թագաւոր թագաւորաց և տէր տէրանց։ Այս գուշակութեանս մէջ Քրիստոսի գալստեան ժամանակն իսկ ճշգիւ նշանակուած է, այսինքն Նա յայնժամ պիտի ծագէ 'ի միջոյ աւերակաց հայրենեացն՝ երբ գաւազանն իշխանութեան (ըստ եբրայեցւոց շէպէթ) օտարի ձեռք անցնի [27]։

Մովսէս 'ի Ջրասոյզ մահուանէ փրկեալ մարգարէն՝ որ յաստուածակոյս կողմանէ կոչեցաւ հաւաքելու և 'ի գիր անցընելու առաջին դարուց պատմութիւնն և մարդկային ազգի նախկին աւանդութիւններն՝ որոց յիշատակն դեռ անմոռաց էր ազգաց մէջ, ինքն ալ մեծապէս հաստատեց իւր ծանր վկայութեամբն Յակոբայ մարգարէութիւնն ասելով առ ժողովուրդն Աստուծոյ. «Մարգարէ յարուսցէ ձեզ տէր Աստուած ձեր յեղբարց ձերոց իբրև զիս, նմա լուիջիք. և եղիցի եթէ ոք ոչ լուիցէ ձայնի մարգարէին՝ սատակեսցի անձն այն յԻսրայէլէ [28]»։

Եւ յիրաւի ժողովարանն հրէից միշտ Մեսիայի համար զրուցուած համարեցաւ այս յայտնի խօսքս. և Փիլիպպոս առանց տարակուսելու աստուածային Փրկչին մերոյ այս զհոսին ասելով առ Նաթանայէլ. «Զորմէ գրեաց Մովսէս յօրէնսն և մարգարէքն՝ գտաք զՅիսուս զորդի Յովսեփայ 'ի Նազարեթէ»։

Երբ Մովսիսի պաշտօնն աւարտելու մօտ էր, և Իսրայէլ դեռ անապատին մէջ 'ի վրանս բնակէր՝ Մովաբայ թագաւորն կաշառքով ուզեց որսալ զԲաղաամ որ գայ և Ռուբենեաց հովիւներէն [29] զիրենք անիծէ։ Եկն մարգարէն՝ բայց փոխանակ անիծանե-

լու՝ ինքն ալ Մեսիայի գալստեան ակնկալութիւնն զօրացուց, Ձինչ և որ՛չ կերպով Նորա երևելուն ժամանակն ալ հաստատելով: Կեցաւ կանգուն Փեգովրայ քարաժայռին գագաթն՝ մինչդեռ իւր բոլորտիքն ամէլութեան զոհերն կատարուէին. և տեսնելով անիծեալ լիճն (Մեռեալ ծովը) և Արաբիոյ ապալեր լերինքն՝ Եփրատայ ափունքէն եկած դիւթն աստուածային հոգւով սարսեցաւ, և երապատեա աչօք 30 զարմանալի տեսիլք մի տեսանէր: Իր հառկլեալ շնչով և վսեմական ծանրութեամբ զրուցած կարուկ անկանոն և անարուեստ խօսքերէն՝ յայտնի երևէր որ քան զինքն շատ աւելի զօրաւորագոյն և աներևոյթ իշխանութեան մի առջև կեցած էր, և ցածուն խոնարհութեամբ այս խորհրդաւոր խօսքերս զրուցէր որ ըստ եօթանասնից սակաւ մի տարբերի յեբրայականէն Դ. Ես պիտի տեսնեմ զինքն... բայց ոչ հիմա: Նկատեմ պիտի զինքն... բայց ոչ այժմ: Աստղ մի պիտի ծագի 'ի Յակոբայ... շառաւիղ մի պիտի բուսնի յԻսրայէլէ, և պիտի տիրէ 'ի վերայ ազգաց բազմաց: Այս կցկտուր խօսքերուն փառահեղ բայց միանգամ տխրագին տեսիլ մի կը յաջորդէ՝ աշխարհակալ ազգի մի յաղթութիւններն. և հռոմէական հսկայազօր իշխանութիւնն կը նկարուի այն մարգարէութեան մէջ իրեն ամենէն բարձր կէտն հասած երևելով. և ահա այն ժամանակն է որ Քրիստոս պիտի ելնէ յերկիր և նուիրէ զինքն 'ի վերայ փայտին պատուհասի և անարգութեան: Այս արիւնահեղ դարս աշխոյժ և արագ կերպով դծագրէ մարգարէն. և կարծես թէ դեռ չծնած քաղաքներ և պետութիւններն կանգուն տեսանէ անապատին վերայ իբրև 'ի հայելւոջ: Նշմարէ կայսերաց նաւատորմիղն որ Իտալիոյ նաւահանգստիցն մեկնելով և իրենց յաղթութեամբ քաջալերեալ ցռկանաւերով ղալիս ծովուն պատառեալ՝ հասանեն Ասորւոց դաշտերուն եզերքն: Տե-

սանէ այն Հրէաստանի կործանումն և աւերակներն որ դեռ չկայ և շատ տարիներէ ետև Հրէաստան պի-տի կոչուի, և ուր Աստուծոյ ժողովուրդն նոյն ատեն ուրիշ սեպհական ստացուածք չունէր՝ բաց եթէ իր նախահարց քանի մի գերեզմաններն։ Վերջապէս իր սրատես աչուըներովը նշմարէ հռոմէական արծիւ-ները անկումն՝ երբ դեռ հռոմէական ժողովուրդ կոչուածն չկար երկրիս վերայ, Իլիոնի որդւոյ ծնա-նելէն եօթնհարիւր տարի յառաջ, երբ այծք վայրիք Լատիոնի՝ տակաւին հանգիստ արածէին եօթն բլրոց անտառախիտ եմակաց դարափանց վերայ։

Այսոր վերայ շատ դարեր անցանէին՝ և նոր աւետիք կամ խոստում մի ոչ լսի Աստուծոյ կողմանէ. բայց Մեսիայի նկատմամբ եղած պատգամներն աւանդու-թեամբ յազգէ յազգ շարունակէին հաւատարիմ պահպանութեամբ, և կամ աստուածատուր օրինաց մէջ արձանագրին։ Իսրայէլի ազգն անյայտ բայց միանգամայն անդադար և կամակոր կռուով մի՝ իւր բոլորն եղած և զինքն նեղող կռապաշտ ազգաց հետ պատերազմի. իսկ երբոր տեղիք տայ իր խստապարա-նոց հակամիտութեան որ զինքն 'ի դիցապաշտութիւն մղէ՝ այն ատեն ամովրացւոց և մովաբացւոց մահա-բեր սուրն մերկանայ՝ առանց իրենց ուզելուն պաշտ-պան կանգնելու Աստուծոյ դատին, և Յակոբայ տի-րոջն եղած նախատանաց վրէժն խնդրելու։ Բայց այս յողդողդ վիճակիս մէջ ալ ժողովուրդն ոչ մոռանայ զգալուստ Օծելոյն, և Մեսիայի հաւատովը ապրի, և փոխանակ նորանոր յայտնութեանց՝ իւր իսկ կեանքն մարգարէական կերպարանք մի առնու. իւր քաղա-քական և կրօնական սահմանադրութիւններն, տեղա-կան սովորութիւններն և առանձնական կենցաղն բո-վանդակ նոյն վախճանին դիմեն և 'ի նոյն աղբերէ յա-ռաջ գան, և ամենայն ինչ զօդւուորի Յուդայի ցեղէ կուսէ մի ծնանելու փրկչին ծննդեան հետ։ Մեսիա-

յի անկախութիւնէն յառաջ եկած է Երկրորդօրինաց այն օրէնքն ալ՝ որ հրամայէ անզաւակ մեռնողներուն ժառանգ մի յարուցանելու՝ նորա կինն առնլով. որպէս զի վախճանելոյն անունն Իսրայէլի մէջ մշտնջենաւորէ, և նուազ օր մի մօտէն կամ հեռուէն ազգական համարուի երկնային Առաքելոյն: Եւ ահա այս 'ի դերև ելած յուսոյն վրայ է որ ողբայ Գաղայադու չքնաղագեղ կոյսն (դուստրն Յեփթայեայ) Յուդայի լերանց վերայ, ցաւագնելով իւր արիւնազանգ շիրմին վերայ՝ յորում պիտի շիջանէր 'ի սպառ իւր հօր ցեղն, ինքն միայն լինելով միամօր դուստր քաջ զօրավարին[31]: Եբրայեցւոց մէջ եղած այս հանրական հաւատքս նկատէր նաև այն Թեկուացի կինն իմաստուն՝ որ ապստամբ Աբիսողոմն իր հօր հետ հաշտեցնելու համար գործածած վարպետութեան մէջ. յայտնէր Դաւթի այն ձևացեալ ծածուկ դաւադրութիւնն որ իր միակ զաւկին դէմ կուզէին գործածել, դորովագութ մօր և յուդայեան ցեղի ախկնոջ երկիւղն քերթողաբար բացատրելով այս գործական խօսքերովս. Տէր արքայ, իմ թշնամիներս իմ վերջին կայծս ալ մարել կուզեն:

Որչափ խոր է արդի հրէից անհաւատութիւնն նոյնչափ խոր էր իրենց նախնեաց հաւատքն: Նախկին ժամանակի մարդկանց մեծ մտածութիւնն Մեսիայի գալուստն էր. աստուածային խոստման կատարելուն ժամանակէն այնչափ դարեր յառաջ եղողներն՝ այս հաստատուն համոզմամբ մեռանէին՝ որ այս խոստմունքս օր մի պիտի կատարուէր. և յաւիտենականութեան սեմոց վերայ հասած ատեննին՝ հեռուէն այս յուսոյ ողջունէին, ինչպէս որ մեծ մարգարէն Մովսէս հառաչանօք ողջունէր զերկիրն աւետեաց որ բղխէ զկաթն և զմեղր, որոյ մուտքն արգիլեալ էր իրեն Աստուած:

Դաւթի և իր արքայաժառանգ որդւոց ժամանակ՝

մարգարէական գուշակութեանց թելն կը նորոգուի, և Կուսին և Մեսիային խորհուրդն քան զարեգակն աւելի պայծառ մարգարէութեամբք կը յայտնուի։

Թագաւորն սուրբ զոր Աստուած Իսրայէլի՝ նախադասեց քան զտունն Սաւուղայ, տեսանէ զկուսութիւն Մարիամու և զտարօրինակ ծնունդ որդւոյն Աստուծոյ և գոչէ՝ քոյ ծնունդդ որդւոց մարդկան ծննդեան պէս շաղախած պիտի չըլլի՝ այլ մաքուր և սուրբ որպէս զանձրև ՚ի վերայ գեղմանն և որպէս ցօղ զի ցօղէ յերկիր. և յետոյ զաչքն առաւել ևս ՚ի բարձունս ամբառնալով տեսանէ զայն՝ զոր Աստուած տուեալ էր նմա յորդի ըստ մարմնոյ, նստեալ ընդ աջմէ Բարձրելոյն, քան զերկինս և զաստեղս աւելի անշարժ աթոռի վերայ։

Դրախտին մէջ արուած պատգամէն՝ մինչև եբրայեցւոց ՚ի պաղեստինացւոց աշխարհն հաստատուած ժամանակ՝ Կուսին ծնունդն աւելի զօրութեամբ իմացեալ էր քան թէ նախահարց և մարգարէից գուշակութեամբն յայտնեալ, բայց Դաւթի ժամանակէն ետև այլ Մարիամու Ճառագայթաձև դէմքն միայն անորոշ գծագրութեամբ ոչ ներկայանայ, այլ առաւել պայծառ նկարուած տեսանեմք զնա՝ որ սահմանեալ էր Աբրահամու, Յակոբայ և արդարոյն Յեսսեայ արիւնն ընթացուցանելու յերակունս Աստուծոյն մարդացելոյ։ Արդէն Դաւիթ խօսած էր այն կուսական զաւկին վերայ. իսկ որդի նորա Սողոմոն այնպիսի փափուկ վրձինով նկարեց նորա կերպարանքն՝ որ գերազանցէ քան զշնորհագեղ նկարագրութիւնս յաւերժհարսանց Արևելից՝ զորս Հիւրիս անուամբ քաղցրաժպիտ և թեթև ամպոց նման ոգիներ երազէ հովիւն արաբացի։ Ինքն Սողոմոն տեսանէ զկոյսն վերացեալ ամբարձեալ ՚ի մէջ դստերաց Յուդայ որպէս շուշան ՚ի մէջ փշոց, իւր աչկունքն գողտր և աղաւնականք են որպէս զաչկունս աղաւնոյ,

երեն իբրև զլար կարմիր շրթունքներն ելանէ ձայն զմայլական և դաշնակաւոր՝ որպէս զձայն տաւղաց՝ որ զԽորայէլ խրախուսէն 'ի պատերազմ. իւր օգապար ընթացքն իբրև զծուխ կնդրկի ծառացեալ բարձրացեալ, և գեղեցկութիւն նորա, յաղթէ պայծառութեամբն զլուսին ծագեալ բոլորածիր. պարզ և քերթողական են իր զուարճութիւններն, սիրէ զգնալ 'ի հովիտս զովարարս՝ երբ այգիքն ծաղկեալ են և թըզենիք ցցուին որպէս զմրուխտ յանսաղարթ բարունակս. իբրև զկեղև նռան [32] այտք նորա, և հաճութեամբ ունկնդիր լինի տատրակաց որ վուվուս արձակեն. անմռունչ և համեստ՝ ծածկէ զինքն յաչաց ամենեցուն և դադարէ 'ի տան իւրում որպէս զաղաւնիս քուենայս 'ի ծերպս վիմաց: Ինքն խորհրդաւոր հարսանեաց մի սահմանեալ է՝ նախամեծար քան ըզհարճս և զթագուհիս ամենայն ազգաց, և սիրելին ոգւոյ նորա թագ արքայական խոստացեալ է նմա, և այն բարեբաղդ կապն սիրոյն որով կապեալ է իւր փեսային հետ՝ հզօր է իբրև զմահ [33]:

Իսկ Եղիա մարգարէ Կարմելոսի ծայրն աղօթած ժամանակ՝ որ Աստուած վերջ տայ այն ցամաք երաշտութեան որ երեք տարուընէ 'ի վեր աղբիւրներն ցամքեցնելով երկիրս կը խորխոլէր, տեսանէ զկոյն խոստացեալ թափանցիկ ամպոյ նմանութեամբ որ բարձրանայ 'ի ծոցոյ ջուրց՝ անձրևաց դարձն աւետելով: Ժողովրդեան օրհնութիւններն կողջուննեն այս բարեբաղդ գուշակութիւնս [34], և մարգարէն աստուածային խորհրդոց տեսանող՝ հանդերձեալ երկնից թագուհույն աղօթարան մի կանգնէ հոն տեղն [35]: Եսայի ալ յայտնէ տանն Դաւթի՝ որոյ գլուխն Աքազ հողմակոծ անտառի մի պէս կը դողար 'ի ըմպատանալեաց ամբարիշտ զօրավարին, թէ Աստուած պիտի տայ իրեն ապահով նշան մի՝ Հրեաստանի հեռաւոր փառաւոր ապագային վերայ՝ ասելով. « Ահա

կոյս [36] յղասցի և ծնցի որդի և կոչեսցեն զանուն նո-
րա Էմմանուէլ որ թարգմանի ընդ մեզ Աստուած :...
Եւ բղխեսցէ գաւազան յարմատոյն Յեսսեայ, և ելցէ
ծաղիկ յարմատոյ անտի [37] :... Զի մանուկ ծնաւ
մեզ, որդի տուաւ մեզ... և անուն կոչեցաւ նմա.
Աստուած հզօր, իշխան հայր հանդերձելոյ աշխարհին.
մեծ է իշխանութիւն նորա, և խաղաղութեան նորա
չէք սահման: Յաթոռն Դաւթի նստցի և զարքայու-
թիւն նորա յաջողեսցէ: — Եւ կանգնեսցի նա 'ի նը-
շան ազգաց, և ընթասցին ազինք մատուցանել նմա
զաղօթս իւրեանց. և գերեզման նորա փառաւորեալ»:

Մեսիայի խորհուրդն բովանդակապէս յայտնե-
ցաւ մարգարէից. յորոց ոմանք տեսանեն զփառս
Բեթլեհեմի ուր ծնաւ. այլք գուշակեն զյաղթական
մուտս նորա յԵրուսաղէմ, նշանակելով նաև զխո-
նարհ և զյամրընթաց էշն և զյաւանակ յորս հեծաւ.
տեսանեն այս սրբազան Քահանայապետիս որ ըստ
կարգին Մելքիսեդեկի 'ի տաճարն մտնելն. գիտեն
զթիւ դրամոցն զորս դահիճք ժողովարանին պիտի
տան վասն աշակերտին՝ որ զտէրն պիտի մատնէ. տե-
սանեն նորա տանջանարանն որ գերեաց յատուկ էր,
և Աստուծոյ հոգեվարքին ժամանակ անարգաբար
նմա մատուցած լեղին. և իւր մօրն ձեռօք հիւսուած
պատմուճանին վերայ վիճակ ձգելն. լսեն այն բևեռ-
ներուն ձայնն՝ որ նորա զձեռս և զոտս ծակելով ա-
րիւնլուայ մարմինն գամեն պատուհասի փայտին վե-
րայ: Յետոյ տեսարանն կը փոխուի, և Ռափայելի նը-
կարուց պէս՝ նիւթն երկրիս վերայ սկսելով՝ անդր
քան զամպս շարունակէ: Մարդն ցաւագին և Մե-
սիայն խոնարհ զոր իրեններն մերժեցին և իւր ժո-
ղովուրդն ոչ ծանեաւ՝ 'ի բարձանց երկնից յաղթա-
կան աչքն դարձուցանէ իր սարսափած թշնամեաց
վերայ. և ամենայն ազգք երկրի յիշեն իրենց Աս-
տուածն՝ զոր այնչափ դարերէ 'ի վեր մոռցած էին:

Ազգք և ազինք խաչին դրօշին ներքև կը հաւաքուին․ և Քրիստոսի պետութեան սահմանն պիտի լինի բովանդակ աշխարհիս եզերքն։ Եւ այս մարգարէութիւններս ամբողջապէս կատարուեցան․ Յակոբ գուշակեց Նորա գալուստն ճիշտ այն ժամանակ՝ երբ հրեայք պիտի դադարէին յունենալոյ զիւրեանց սեպհական օրէնս՝ որով և տէրութիւնն ալ պիտի կործանէր․ Բաղաամ յաւելու թէ այս կործանումս պիտի լինէր յԻտալիոյ եկեալ ժողովրդեան ձեռօքն․ և Նախարարն Դանիէլ ճիշդ կերպով հաշուէ զեօթներորդսըն որ մինչև այն ատեն պիտի անցանէին։

Հանճարեղ մարդ մի ասաց թէ ինչ որ հանդիպի աշխարհիս մէջ՝ իր նախընթաց նշաններն ունի․ երբ արեգակն ծագելու մօտ է՝ հորիզոնն հազար ու բիւր երանգօք գունաւորի, և արևելք բովանդակ բորբոքած երևին․ երբ մրրիկ պիտի փրթի՝ ծովուն եզերքն խոր մռնչիւն մի կը լսուի և ալիք յանկարծակի իրար անցնին։ Եկեղեցւոյ Հարց կարծիքն ալ այս է որ Աստուածաշնչին նմանութիւններն ալ նախընթաց նշաններ են՝ որ արեգականն արդարութեանն Քրիստոսի, և զուարթարար արուսեկին այս ինքն Տիրամօրն ծագումն աւետեն․ Քրիստոսի Որդւոյն Աստուծոյ վերաբերի զօրութիւնն, իսկ Մարիամու շնորհքն և բազմագութ ողորմութիւն․ զի ինքն է ծառն կենաց զոր Աստուծոյ ձեռքն ինքնին բերաւ տնկեց 'ի մէջ մարդկան, մեր նախահարց Դրախտին մէջ վայելած երջանկութենէն աւելի գերազանց երանութեան մի երաշխաւոր․ ինքն է այն Տապանին աղաւնին որ կը բերէ աշխարհի հաշտութեան ձիթենին․ ինքն է աղբիւրն կնքեալ՝ յորում անմաքուր բան մի չէ կարող մանել իւր յստակ ջրերն պղտորելու․ գեղմն իմանալի՝ որ ընդունի զցօղն երկնային․ լեառն վիմածին՝ յորմէ կը բաժնուի վէմն առանց ձեռին հատեալ՝ որ կը փշրէ հեթանոսական կուռքերն, և այլն։

Հին ատեն պատմէին թէ Փիդիաս դիցուհւոյ մը արձանն ուզելով շինել՝ Յունաստանի գեղեցկագոյն կանանց զանազան մասերն առնլով յօրինեց զայն. այսպէս ևս ամենասուրբ հարսն Հոգւոյն Սրբոյ իւր միակ անձին վերայ համահաւաքեց այն ամենայն կատարելութիւններն՝ որ տեսնուեցան հին օրինաց հռչակաւոր կանանց վերայ՝ որք իրենց ժամանակակից մարդիկն հիացուցել էին. Եւայի, Սարայի և Հռաքէլի անհման և գերազանց գեղեցկութեան վերայ յաւելլով Դեբովրայի և Յայելի իմաստութիւնն և քաջութիւնն, Սամուէլի մօրն Աննայի եռանդուն աստուածպաշտութիւնն, Աբիգեայի խոհեմութիւնն, Յուդիթայ անձնանուէր սէրն, որոյ շուշանազարդ պըսակն Հոլոփեռնեսի արեամբն ներկաւ[38], Եսթերայ աներկիւղ համարձակութիւնն, Շուշանայ իր անուան նման ծաղկին մաքրութիւնն, Ասքայի Քաղեբայ դըստեր ազնուութիւնն որ մրցանակ տրուեցաւ կարիճ Գոդոնիէլի շահատակութեան, և Այն դառնակսկիծ մօր՝ որ իւր մթագնեալ աչաց առջև տեսաւ իր եօթն որդւոց դառնակսկիծ մահն՝ վասն պահպանութեան օրինացն հայրենեաց: Եւ սակայն սոքա ամենեքեան աժգոյն և աղօտ օրինակներ էին Մարիամու՝ որ յանձին պիտի բերէր զամենայն կատարելութիւնս կնոջ և հրեշտակի:

Չորս հազար տարիներու երկայն ակնկալութենէ ետև՝ վերջապէս այսչափ մարգարէութեանց լրման սահմանեալ ժամանակն հասաւ, որով հին օրինաց ստուերքն փարատին և Մարիամ ելանէ բարձրանայ Հրէաստանի հորիզոնին վերայ՝ որպէս յառաջընթաց աստղ տուընջեան:

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ Ա. ԳԼԽՈՅ

1 Ըստ աւանդութեան բաբելոնեաց՝ Ելայի պատուիրանազանցութեան ժամուն՝ արեգակն զարհուրելով իւր դէմքն ծածկեր է, և 'ի յիշատակ այս չարագոյժ երևութիս՝ կանայք եբրայեցւոց պարտաւորէին շաբաթ օրերն գիշերն 'ի բուն կանթեղներն վառ պահելու ( Պուլանժէ, Հնաբնական քաղաքականութիւն )։ Գրեթէ նոյն է Շնորհալւոյն աւագ ուրբաթու Այսօր անճառ երգոյն մէջ ասացեալն. « Ի միջօրեայն նսեմացաւ՝ յորժամ Ադամ մեղօք մեռաւ »։

2 Բաբելոնի աւերակաց մէջ մի միայն ծառ գտանի՝ որում պարսիկք ոծել անուն տան. ըստ իւրեանց այս ծառս հին քաղաքին մէջ էր, և հրաշիւք պահուեցաւ՝ որպէս զի իրենց մարգարէն Ալի որ էր փեսայ Մահմետի՝ Հիլլայի պատերազմէն ետև իւր ձին կապէ. մշտադալար ծառ մի է, և այն երկրին մէջ այնպէս դժուարագիւտ՝ որ նոյն տեսակէն ուրիշ մ'ալ միայն կայ 'ի Պասրայ (Ռիչ, Յիշատակարան)։

Ա. Նախկին հելլենք և աթենացիք կոյս անուամբ պատուեցին իրենց առաջնակարգ աստուածուհիներէն զԱթենաս՝ փառաւորէն տաճարովն Պարթենոնի որոյ աւերակքն ցարդ հիացուցանեն զուղևորս։ — Իսկ առ մեզ կոյս համարէր կարծեմ և Անահիտ։

3 « Ասորի դրուիդքն (անուանեալ քարմք կեղտոց) 'ի ներքին յոյս անպատրաստ անդրբի նուիրական խանճանչեան Իոփդրերոյ խոմ խոսուխ՝ յորժէ ծնանելոց էր որդի՝ այսինքն փրկիչ ազգի մարդկան։ (Եղիաս Սկեւտիոս Ցողոփս դիէց ֆեբրմանտրութ գլ. ԺԲ)։ Վասն կուսին որ ծնանիցի 'ի սերմանէ Որմզդի տես յԵզնիկ Եղծ աղանդոց գիրք Բ 10։

4 Ցակրնաթ եօթներորդ մարմնակերպութիւն համարեալ Պրահմայի՝ դրոշմի 'ի ձև բրգան անոտն և անձեռն. պրահմինք ասեն թէ աշխարհ փրկելու համար վերուցած ատեն՝ կորուսած է զձեռս և զոտս իւր (Քիրքէր)։

5 Ջէր-աթուշտ կամ Զրադաշտ նշանակէ լուսացեալ յոսկի. այս անունս ետուն Զօրոաստրի ասեն Յոյնք անուանեալ աղանդաւորք, որովհետև իր առաքելութիւնն ցուցանել ուզելով Վըշտասպ Կուշտասպայ տաբայեցի իշխանին՝ հալած ոսկւոյ մէջ ընկղմեցաւ, կամ ձեռքն կրակ լեցնելով երկայն ատեն մնաց առանց այրելու ( Թավէրնիէ Հտ. Բ էջ 92 )։ Բայց հին պատմութեանց

մէջ զանազան անձինք յիշատակին Ջրադաշտ անուամբ. որպէս և ոմն Հայ պամփիլեացի (Չամչեան Պատմ. հայոց Հտ. Ա. էջ 176 և Բուլենի Հնախօսութիւն):

6 Տես Թավէրնիէ 'ի նոյն տեղն:

7 Մուրաթորի:

8 Թրքաց և պարսից Նեմրուտ ասացեալն որ ըստ մեզ Նեբրովթ՝ ըստ ոմանց է նոյն ինքն Հսկայն որսորդ. իսկ ըստ այլոց՝ պարսից Զոհակ ասացեալ բռնաւորն՝ Ջրհեղեղէն ետև անմիջապէս Թագաւորող ցեղին կամ հարստութեան Թագաւորն. այլ ոմն համարի զսա Կայիկոս երկրորդ Թագաւոր՝ երկրորդ հարստութեան: — Ըստ Մարիբասայ, Խորենացւոյ, Եւսեբիոսի, Հերոնիմոսի և Աւգոստինոսի և 'ի վերջնոց Ալաքիոսէի՝ և այլն, Նեբրովթ նոյն է ընդ Բելայ որդւոյ Քուշայ սպանելոյ 'ի նահապետէն մերմէ Հայկայ (Չամչեան, Պատմ. հայոց Հտ. Ա. էջ 169):

9 Սերացւոց կամ սինեացւոց կամ Ճենաց աշխարհէն (որ հիմա Չինք անուանին, և 'ի Ս. Գիրս Գոգ և Մագոգ, տճ. Չին ու մաչին) առաջին դեսպանք հասին առ Հռոմայեցիս Աւգոստոսի ժամանակ, որք և ասէին Թէ երեք տարի տևեալ է իրենց ուղևորութիւնն:

10 Շողոքորդ դրամիկք Հերովդի՝ նորա մեծութենէն և ճոխութենէն շլացեալք՝ պնդէին Թէ ինքն է Մեսիայն. 'ի սոցանէ յառաջ եկն աղանդն հերովդիանոսաց՝ յիշատակեալ յԱւետարանս, որ և ծանօթ էր հեթանոսաց: Պերսէոս և իւր մեկնիչն ասեն Թէ մինչև Ներոնի ժամանակ այս աղանդաւորքս Հերովդէսի ծնունդն մեծահանդէս կատարէին՝ որպէս զտօն շաբաթու:

11 «Յարեաւ եհար զխորան իւր». Սաղմ ԺԸ. 6: Պարսիկք ևս նոյն կարծիքն ունէին, ասէ Հէյտուէյ, և համարէին Թէ Աստուծոյ աթոռն արեգական մէջ է, և ատոր յառաջ եկած է իրենց արեգական մատուցած պատիւն և երկրպագութիւնն:

12 Հաւանական է որ Աբէլ և Կային և առաջին նախահարք իրենց զոհն բարձր քարի կամ դալարազարդ հողակոշտի մի վերայ մատուցանէին. ուստի յառաջ եկած է Բարձանք կոչել զսեղանս յորոց վերայ զոհքն լինէին: Նոյնպէս նաև առ Լատ. altare բառն, զոր ոմանք 'ի կեղտական բառիցս allt բարձր և ar քար անձանցեալ համարին: Իսկ հայկական բառիցս սեղան և բագին նշանակութիւնն անյայտ է:

13 Ըստ հեթանոսական աւանդութեան՝ զոր յիշէ Պորփիւր (Յաղագս ժուժկալութեան գիրք Բ.) նախկին մարդիկ միայն ծաղկունս, պտուղս և դալարիս նուիրէին դից:

14 Աշխարհիս վերայ մարդս ոչ երբեք նոյն պատճառաւ անմահ լինելոց էր՝ որով են պարզ հոգեղէն արարածք, որովհետև

հողեղէն մարմինն պէտք էր որ 'ի հող դառնայր. այլ անմահ էր մասնական և անօրինակ շնորհիւն Աստուծոյ որ պայմանաւորեալ էր նմա յԱրարչէն, որով քան զբնական վիճակն բարձրագոյն աստիճանի մի հասած էր, և յորում պիտի յաւերժանայր եթէ պայմանն պահէր։ Մարդս ոչ երբեք ստացած է զանմահութիւն յերկրի իրաւամբ ծննդեան, այլ որ և է հողեղէն մարմին պիտի եղծանի լուծմամբ մասանցն, եթէ մասնաւոր կամք Արարչին ոչ ընդդէմ դարձցի. այս աստուածային կամքս յայտնեցաւ 'ի շնորհս նախահարց մերոց։ Աստուած անկեաց 'ի դրախտին փափկութեան ուր եդեալ էր զմարդն, զծառն կենաց՝ որ երկնային ծագմամբն ունէր զզօրութիւն վանելոյ զմահ, որպէս սարդենին՝ որ ըստ կարծեաց հնոց ունէր զզօրութիւն վանելոյ զշանթիս։ Այպա ուրեմն այն խորհրդաւոր ծառոյն հետ կապեալ էր մարդկան ազգի անմահութիւնն, և հեռի յապաւինէս մահն իւր որոյն վերայ պիտի հանէր, որով մարդս յերկնային բարձրութենէն անկանէր 'ի հողապատեան վիճակ իւր թշուառ (Ս. Աւգոստ. Խնդիրք հնին և նորոց կտակարանաց. խնդիր ԻԹ)։ Ուստի ոչ ոք կարծեմ կարէ տարակուսիլ թէ Աստուած իւր իրաւունքն բառնեցուց արտաքսելով զԱդամ 'ի դրախտէն յետ անհնազանդութեան նորա. և այս աքսորանացս հետ կապեալ էր վճիռն մահու վասն մարդոյ և սերնդոց նորա. առանց ծառոյն կենաց ինքն տկար և դիւրաբեկ արարած մի էր՝ ներքոյ անկեալ օրինաց արարածական մարմնոց. որպէս առ 'ի չգոյէ գեղթափի թոյնն սպանանէ։ Ադամ մահկանացու դառնալով ծնաւ նոյնպէս որդիս մահկանացուս, և հարկ եղև որդւոցն 'ի նմին պայմանի կալ յորում անկեալ էր ծնող նոցին։ Եւ այսու Աստուած ոչ անիրաւեցաւ մարդկային ազգի. բնութեամբ մահկանացու եմք, և եթող զմեզ մեր պայմանին մէջ։ Եթէ մարդ իրեն առատաձեռնեալ շնորհաց մուրհակն իւր ձեռօք պատառէ՝ այն շնորհն ետ առնուլն անգթութիւն չէ՝ այլ արդարութիւն։

15 Ճիշդ ոչ գիտեմք թէ Ադամ և Եւա ո՛րչափ ատեն կեցին յերկրաւոր դրախտին. և սակայն բաւական երկար ժամանակ մնացած պէտք է լինին։ Այսպէս համարի Միլտոն՝ զոր ոչ իբրև քերթող այլ իբրև հմուտ արևելագէտ կոչեմք հոս 'ի վկայութիւն։ Եթէ յիշեմք թէ Ադամ Եդեմայ մէջ ուսաւ զանուանել և անուանակոչել զամենայն թռչունս երկնից և զամենայն անասունս երկրի և զամենայն ձկունս ջուրց, և թէ ծանեաւ զամենայն սեպհականութիւնս և զզօրութիւնս բուսոց, և զորս կամեցաւ Աստուած ուսուցանել նմա սոկս ընթացից աստեղաց, կարեմք 'ի վերայ ածել թէ այս ամենայն մի աւուր մէջ չէր կարող լինել։ Պարսիկք և սինեացիք համարին թէ նախամարդն

շատ դարեր բնակած է 'ի դրախտին . ըստ արաբացւոց և ըստ րաբունեաց միայն կէս օր, բայց այս կէս օրս իրենք հինգհարիւր տարեաց համեմատեն, որովհետև զօր մի դրախտին հազար տարի համարին: Եղբայրասպանն Կայէն՝ որոյ ծնունդն ժամանակակից համարի 'ի գիրս Ծննդոց արտաքսելոյ ծնողացն 'ի դրախտէն, ընդհանրապէս կարծուի թէ ծնած է յերեքտասաներորդ ամի արարչութեան, որով ճշմարտանման երևի հաստատել զբնակութիւն նախահարց 'ի դրախտին ամս երկոտասան: Այս ժամանակս՝ թէ և սակաւ մի կարճ, բաւական եղև նախամարդոյն հաստատել զիշխանութիւն իւր 'ի վերայ անասնոց կարգելոց ընդ պետութեամբ իւրով, և կապելոյ կապանօք ընտելական սիրոյ ընդ խոնարհ հպատակաց իւրոց:

16 Ստոյգ է որ առաջին մարդկանց կեանքն գիւղական էր՝ բայց ոչ բնաւ վայրենի, և յառաջին ժամանակաց անտի իրենց պիտոյից և հաճոյից արուեստներն գիտէին: Որդիք Ադամայ փոքրիկ հասարակութիւններ կազմելուն պէս՝ տեսանեմք որ անդէն կրօնական պաշտօն մի հաստատեն, վրաններ շինեն, քաղաքս կառուցանեն, երկաթն գործեն, պղինձն հալեցնեն, երաժշտութեան գործիս հնարեն և աստեղաց ընթացքն գիտեն: Ըստ Պայլիի՝ աստեղագիտութեան պատմութիւնն ջրհեղեղէն յառաջ եղած ժողովրդէ սկսելու է՝ որոյ յիշատակն թէ և կորուսեալ է, սակայն թողած է քանի մի աստղաբաշխական ծանօթութիւնս տիեզերական յեղափոխութենէն ետև: Իսկ Լալանտ՝ որում այս կարծիքս չափազանց երևի, և վախէ որ մի՛ գուցէ այնու Սուրբ գրոց հարազատութիւնն հաստատուի՝ որոց ինքն ընչահաւատութեամբն հակառակ էր, աստեղաբաշխական գիտութեան սկիզբն յեգիպտացւոցմէ համարի: Բայց եբրայեցիք որպէս դրացիք ժամանակակիցք և ատեն մի նոյն իսկ հիւրք Եգիպտոսի՝ որ այս վէճս լուծելու բաւական հմտութիւն ունին՝ Լալանտի հակառակ՝ Պայլիին իրաւունս տան ասելով՝ թէ եգիպտացիք իրենց առաջին աստեղաբաշխական ծանօթութիւններն ջրհեղեղէն ապրեալ աւանդութիւններէ առած են (Յովսեպոս Հնախօսութիւն հրէից):

17 Հնդիկք, սիննէացիք, պերուվիացիք նաև Հիւրոնք ընդունին որ առաջին մարդն 'ի հողոյ արարաւ: Պրահմինք որ զարմանալի կերպով նկարագրեն իրենց դրախտն փորփոմ անուանեալ, յիշեն թէ հոն ծառ մի կայր՝ որոյ պտուղն անմահութիւն պարգևէր՝ եթէ հրաման լինէր անտի ուտելու: Պարսիկք մազդեզականք ասեն թէ չար հոգին Արհմն կամ խորոման խաբեց մեր նախածնողքն ընդ կերպարանօք օձի, յորմէ մեր մէջ ալ սովորութիւն եղած է ասել օձ խորոմանի: Իրոքացւոց մէջ աւանդութիւն կար թէ կին մի մոլորեցաւ առ՝ոտս ծառոյ միոյ, որոյ վրան Աստուած

բարկացաւ, և եղբայր զեղբայր իւր սպան։ Թամթարք մարդոյս անկման պատճառ համարին բոյս մի որ քաղցր էր իբրև զմեղր և յոյժ գեղեցիկ տեսլեամբ։ Թիպեթացիք նոյնպէս պատճառ համարին առաջին մարդոյն խաբուելով ուտելն 'ի միաասպեր ծառոյն անուանեալ «ճիմա» որ քաղցր և սպիտակ էր որպէս զշաքար, զոր ճաշակելով իմացաւ զմերկութիւն իւր։ Կնոջ և օձի աւանդութիւնն ծանօթ էր նաև առ մեքսիկացիս, և այլն. (Ռոզէլլի տը Լորկ, Քրիստոնէութիւն յանդիման աշխարհի գլ. Թ)։ Տես դարձեալ Շաթոպրիանի Ոգի քրիստոնէութեան։

18 Տես Պուլանժէ Հնութիւնք քողազերծեալք։

19 Բաբելոնի աշտարակն որ ժամանակաւ այնչափ մօտ էր ջրհեղեղին՝ գաղափար մի կարող է տալ նախջրհեղեղեան ճարտարապետութեան, զոր շինելու համար գործածէին աղիւս և կուպր. շատ հաւանական է որ այն ահագին աշտարակն նման էր հին անուանի Բէլայ աշտարակին որ 'ի Բաբելոն. որ արտաքուստ զնստագոյն վերելք մի ունէր պարուրաձև մինչև 'ի վերջին անձանձք գատիկոնն, և որ չէնքն այնպէս երևցնէր որպէս թէ եօթն աշտարակներ իրարու վերայ շինուած լինէին։

20 Պլատոն 'ի խօսելն զԱստուծոյ արարչէ տիեզերաց ասէ՝ թէ արգելեալ է տալ ծանօթս զնմանէ առ ժողովուրդն։ Նումայի մատեանքն գրեալք բարտի ծառոյ կեղևոց վերայ՝ զորս իւր մահուանէն շատ դարեր ետև իւր գերեզմանին մէջ գտին՝ քուրմերն ծածուկ այրեցին, բազմաստուածութեան վարդապետութեանն միաստակար սեպելով զնոսա։ — Պրահմինք որ ըստ ոմանց ճանապարհորդաց վսեմ գաղափար ունին Աստուածութեան վերայ՝ թողուն որ հնդիկ ժողովուրդն այլանդակ անասնոց երկրպագէ։ Միայն ճշմարիտ կրօնքն եղև որ զմարդիկ անմահ և բանաւոր արարածս համարեցաւ, և ուսոյց նոցա զպաշտօն ճշմարտին Աստուծոյ։

21 Ապիւլֆերած (Պատմութիւն հարստութեանց) ասէ թէ Զըրադաշտ նախածայնեաց մոգուց զծնունդ Մեսիային 'ի կուսէ, և թէ 'ի ծննդեան նորա անստուեր և անծանօթ աստղ մի պիտի երևէր՝ որ նոցա պիտի առաջնորդէր մինչև յորբանն նորա, ուստի հրամայեց՝ որ այն աստեղ երևելուն՝ ընծայաստար լեցին նըմա։ Նոյնպէս Շահրիսթան պարսիկ մատենագիրն յիշէ Զրադաշտայ մի կանխատացութիւնն որ նկատէ մարգարէ մի մեծ՝ որ պիտի նորոգէր զաշխարհս թէ ըստ կրօնից և թէ ըստ արդարութեան. և որում պիտի հպատակէին թագաւորք և իշխանք երկրի։

22 Նշանակէ զառասպելեալ մարմնակերպութիւն դիցն հընդկաց։

Բ. Սիբիլլա որ եւ ուղացուց գուշակական յոյն բարբառոյն տա-

փառաձախոհ կամ ուփռաուձիմաւփ թարգմանի՝ էինքի հնումն առ հեթանոսս կուսանք՝ որ զանազան նիւթոց վերայ գուշակութիւններ աւանդած են. 'ի սոցանէ գլխաւորն էր կումէական ։

23 « Միաձայն վկայութեան զօրութիւնն մեծ է. քանզի չէ մարթ լինել մոլորութիւն ինչ տիեզերական » ասէ Պերնարտէն տը Սէն Բիեր (Հէտուղըտըռաճիւռ համոնիյէ. հատոր. Ը. էջ 598) ։

24 Տես 'ի Պաւլոս Սէնեէրի Պոլտոհնաակր Մորքեամա անուանեալ գրոց Ա. մասին մէջ ։

25 Ի ժողովարանէն հրէից աւանդեալ աւանդութիւն և յեկեղեցւոյ իբրև ճշմարիտ ընկալեալ է՝ զի մարգարէք առ հասարակ վասն ժամանակի Մեսիային մարգարէացան ։

26 Ըստ աւանդութեան եբրայեցւոց Աստուած տեսանելով Ադամայ յուսահատութիւնն իւր յանցանքէն յառաջ եկեալ սարսափելի հետևանաց վերայ, հրեշտակի ձեռօք առաց նմա հանդարտել 'ի ցաւոցն. վասն զի 'ի սերնդոց իւրոց պիտի ծնանէր ազատիչ մի որ ջնջէր պիտի զսկզբնական մեղս, և թէ լինելոց էր փրկութիւն ամենեցուն որ յուսալոց էին 'ի նա (Պասնաժ, հտ Դ. գիրք Է. գլ. ԻԱ ) ։

Գ Շէյլոհ յեբրայականին նշանակէ որոյ, որում համարեալ յատուկ անուն Մեսիային, այսինքն որում միայն թագաւորել կամ որոյ է հանդերձեալ թագաւորութիւն. վասն որոյ և 'ի հայերէն թարգմանուած է Որոյ էոյն էն հանդերձելոցն ։

27 Քրիստոնեայք Մեսիային համար ասացեալ համարին այս յայտնութիւնս, և այսու ցուցանեն անհաւան հրէից թէ նա 'ի վաղուց եկեալ է. որովհետև յիննևտասն դարերէ 'ի վեր նոցա ցեղերն ցրուած և խառնուած են իրարու հետ, զոհերն դադրած, քաղաքական իշխանութիւնն վերցած, և չունին այլ ևս երկիր հայրենի և ազգային իշխանութիւն, և յամենայն տեղիս ուր որ ցրուած են՝ օտար ազգաց օրինաց հպատակ են ։ Այս պատճառաբանութիւնս տկարացընելու համար՝ արդի հրեայք ասեն թէ Շեղէբ բառն՝ զոր մեք գաւազան իշխանութեան իմանամք, նշանակէ նաև զգերիս պատժելոյ գաւազանն. և այս բանիս վերայ պնդելնուն պատճառն այն է՝ որ եթէ Մեսիայի համար ասացեալ ևս լիցի այս պատգամս՝ ուրիշ հետևանք ոչ ելանիցէ անտի՝ եթէ ոչ այս որ իրենց պատիժն պիտի տևէ մինչև 'ի գալուստ Մեսիային՝ առ 'ի ազատել զնոսա ։ Դարձեալ ուրանան թէ Շիլոհ բառն զՄեսիա ոչ ցուցանէ. բայց իրենց հին գրեանքն զիրենք սուտ հանեն. վասն զի Թալմուտի մէջ այս մարգարէութիւնս Մեսիային համար լինելն հաստատուի. և Օնքելոս ասացեալ քաղդէարէն յարասութեան մէջ այսպէս կը մեկնուի սոյն մարգարէութիւնս, որոյ բառական թարգմանութիւնն այս է. « Ի

Յուդայէ ոչ բնաւ պակասեսցէ ոք զգերագոյն իշխանութիւն յան-
ձին բերելով, և ոչ 'ի յաջորդս նորա պակասեսցին դպիրք՝ մին-
չև ոչ եկեսցէ Մեսիայն ։ Հիլլէլ բարունեւոյն որդին Յովնաթան՝
զոր նախապատիւ համարին Հրեայք և մեծարեն գրեթէ որպէս
զՄովսէս՝ զբառս Շիլոհ Թարգմանէ Իշխանութիւն և զԼիւհ
Մեսիա. Երուսաղեմի ասացեալ յարասութիւնն ալ այս կար-
ծեաց հետևի ։ Այսպէս ամենէն հին և հարազատ և յարգի
մեկնութիւնք Սուրբ գրոց՝ զօրաւոր զէնս ընծեռեն մեզ առ 'ի
յաղթահարել զՀրեայս ։

28 Աստի յառաջ գայ եբրայեցւոց ակնկալութիւնն Նոր օրէնս
ընդունելոյ 'ի Մեսիայէն՝ որ պիտի գերազանցէ քան զօրէնս
Մովսիսի. ուստի իրենց վարդապետք ասեն. « Օրէնք զոր ուսա-
նին մարդիկ յաշխարհիս ունայնութիւնք են՝ առ օրինօք Մե-
սիային » (Մեդրաշ-Քոհելեթ Քոհելեթ գլ. ԺԱ, 8)։

29 Դաշտն Բաբելոնի ընդ որ անցանեն բազում գետք և ջըր-
անցք՝ ճախնային են և լի ուռենեօք. վասն որոյ և 'ի Գիրս կոչի
հովիտ ուռենեաց, որպէս և 'ի Սաղմ. ՃԼԶ « Ի մէջ ուռեացնոցա
կախեցաք զկտակարանս մեր » այսինքն բաբելացւոց ։

30 Թէ և Բաղաամու մարգարէութեան հնագոյն լինելն ոչ գի-
տէաք՝ սակայն նոյն իսկ գրուածոյն կերպն բաւականապէս զնոյն
ցուցանէ, վասն զի Բաղաամ քաղդէացի աստեղագէտն՝ Յուդայի
փեսանողաց պէս ոչ մարգարէանայ. իրեն ընդարձակ ոլորտք մի
պէտք է՝ յորում կարասցէ տեսանել զերկիր զծով և զերկինս.
նա՝ ինքն իրեն խօսող մարդու մի պէս՝ տեսածներն ինքն իր ան-
ձին պատմէ՝ որ իր վերայ մեծ տպաւորութիւն գործեն։ Այս մար-
գարէութիւնս կերպով մի նմանի այնոցիկ՝ որոց Սկովտիոյ լեռ-
նաբնակք Երկրորդ տեսութիւն անունն տան ։

Դ. Յակոբայ նահապետին մարգարէութենէն ետև՝ Մեսի-
այի համար եղած գուշակութեանց մէջ ամենէն հուչակաւորն
Բաղաամու կանխաձայնութիւնն է, թէ նիւթոյն գերազանցու-
թեամբ թէ զրուցուածքին խորհրդաւորութեամբն և թէ ժա-
մանակին հնութեամբն որ է Քրիստոսէ 1500 տարի յառաջ. ուս-
տի զարմանք չէ որ միանգամայն մութ և դժուարին ալ ըլլի նո-
րա մեկնութիւնն, մանաւանդ ըստ զանազանութեան Թարգմա-
նութեանց եբրայականին, զոր սակաւ մի պարզելու համար աստ
կարգեմք՝ կանխաձայնութեանս երկու գլխաւոր մասունքն միայն
յառաջ ածելով. յորոց առաջնոյն մէջ ցուցանի Մեսիայի գա-
լուստն և նորանշան աստղն՝ որ պիտի ծագէր 'ի ծննդեան նորա.
և յերկրորդին եբրայեցւոց ազգին աստուածապաշտութեան
յանցանաց պատիժն՝ 'ի սպառ կործանմամբ 'ի ձեռն հռոմայե-
ցւոց պետութեան, որ Աստուծոյ բարկութեան գաւազան լինելէն
յետոյ՝ ինքն ալ ջախջախեցաւ, և տեղի ետ մշտնջենաւոր Թագա-

տրութեանն Քրիստոսի։ Արդ Բաղաամայ կանխաձայնութիւնն այս է (տես 'ի գիրս Թուոց ԻԴ 17 և 24) համեմատութեամբ եբրայական բնագրին և երից թարգմանութեանց Հայ, յոյն և լատին։

### ՀԱՅԵՐԷՆ

Ա. Ցուցից նմա և ոչ այժմ. երանեցից և ոչ 'ի մօտոյ։ Ծագեսցի աստղն Յակովբայ, և յարիցէ այր յԻսրայէլէ։

### ՅՈՒՆԱՐԷՆ

Ցուցից նմա և ոչ այժմ. երանեմ և ոչ մերձենայ։ Ծագեսցի աստղ 'ի Յակովբայ, յարիցէ այր յԻսրայէլէ։

### ԼԱՏԻՆԵՐԷՆ

Տեսից զնա բայց ոչ այժմ, նկատեցից զնա բայց ոչ 'ի մօտոյ։ Ծագեսցի աստղ 'ի Յակովբայ և յարիցէ գաւազան յԻսրայէլէ։

### ԵԲՐԱՅԵՑԵՐԷՆ

Տեսից զնա և ոչ այժմ, նկատեցից զնա և ոչ 'ի մօտոյ։ Մերձեցաւ աստղ 'ի Յակովբայ և յարիցէ գաւազան յԻսրայէլէ։

### ՀԱՅԵՐԷՆ

Եւ հարցէ զիշխանս Մովաբայ և առցէ աւար զամենայն որդիս Սեթայ։

### ՅՈՒՆԱՐԷՆ

Հարցէ զիշխանս Մովաբայ և առցէ աւար զամենայն որդիս Սեթայ։

### ԼԱՏԻՆԵՐԷՆ

Եւ հարցէ զիշխանս Մովաբայ և առցէ աւար զամենայն որդիս Սեթայ։

### ԵԲՐԱՅԵՑԵՐԷՆ

Եւ վիրաւորեսցէ զիշխանս Մովաբայ և սպառեսցէ զամենայն որդիս Սեթայ։

### ՀԱՅԵՐԷՆ

Բ. Եւ եղցէ 'ի ձեռաց կիտացւոց. և չարչարեսցեն զԱսուր, և չարչարեսցեն զեբրայեցիս, և ինքեանք միանգամայն կորիցեն։

### ՅՈՒՆԱՐԷՆ

Եւ ելցեն 'ի ձեռանէ կիտացւոց. և չարչարեսցեն զԱսուր, և չարչարեսցեն զեբրայեցիս, և ինքեանք նմանապէս կորիցեն։

### ԼԱՏԻՆԵՐԷՆ

Եկեսցեն եռաթիովք յԻտալիոյ. յորդեսցին (superabunt) յԱսորիս, աւարեսցեն և զեբրայեցիս, և 'ի վախճանի նա և ինքեանք կորիցեն։

### ԵԲՐԱՅԵՑԵՐԷՆ

Եւ նաւք 'ի ձեռանէ Քիթթիմ. և չարչարեսցեն զԱսուր, և չարչարեսցեն զԵբեր, և նա և ինքն բոլորովին զկորուստ։

Հարկ է գիտել նախ որ կոչողիս մէջ յիշուած կիտացիք անունն տասն անգամ յիշուած գտանեմք Ս. Գրոց մէջ, և հայերէնի, յունարէնի և լատիներէնի մէջ իրարմէ զանազան կերպով գրուած։ Այս անունս անշուշտ տեղւոյ և երկրի մի յատուկ է որ յեբրայականին մէջ ասի սովորաբար Քէթիմ, որոյ վերայ զանազան կարծիք եղած է ասէ Բոշարտն յորոց ա-

նոսանց աստուածաշնչական գրոց հին և նոր կտակարանաց (տպագրեալ 'ի Վենետիկ յամի 1769 յաշակերտաց Մխիթարայ Աբբայի). «Բայց առաւել հաւանական է բանն Սրբոյն Եպիփանու կիպրացւոյ և այլոց բազմաց, որք ասեն թէ անուանքս Քէթիմ կամ Քիթիմ 'ի սուրբ գիրս իմանի Կիպրոս կղզին, և ուրանօր 'ի Սուրբ գիրս գրի Քիտացիք իմանին կիպրացիք: Եւ քանզի ոմանք 'ի կիպրացւոց գնացեալ բնակեցան 'ի Մակե-

| ԳԻՐՔ | ՀԱՅ ԹՐԳՄՆ. ԵՕԹԱՆԱՍՆԻՑ | ՅՈՒՆԱՐԷՆ ԵՕԹԱՆԱՍՆԻՑ | ԼԱՏԻՆ ՎՈՒԼԿԱԹԱ ՑԵՐՐԱՑԱԿԱՆԷ |
|---|---|---|---|
| Ծննդոց | կիտացիք | նոյն ընդ հայ. | կիտիմ կամ Cetlim |
| Թուոց ԺԴ, 24 | 'ի ձեռաց կիտացւոց | նոյն ընդ հայ. | եռաթիօք յիտալիոյ* |
| Ա Մնացորդ Ա, 7 | կիտացիք | նոյն ընդ հայ. | Կիտիմ |
| Ա Մակաբ. Ա, 1 | յերկրին քետիմացւոց | նոյն ընդ հայ. | յերկրէն Կիտիմ |
| » » Ը, 5 | զարքայն կիտացւոց | զարքայութիւն կիտացւոց | զարքայն կիտացւոց |
| Եսայի ԻԳ, 1 | յերկրէն կիտացւոց | նոյն ընդ հայ. | յերկրէն կիտիմ |
| » » 12 | 'ի Կիտիիս | նոյն ընդ հայ. | նոյնպէս |
| » ԿԶ, 19 | յԵլլադա և 'ի կղզիս հեռաւորս | նոյն ընդ հայ. | in Italiam et Græciam — յիտալիա և յԵլլադա* |
| Երեմիա Բ, 10 | 'ի կղզիս քետիմացւոց | նոյն ընդ հայ. | նոյն ընդ հայ. |
| Դանիէլ ԺԱ, 30 | բանակք կիտացւոց | կիտացիք (պարզաբար) | եռաթիք և հռոմայեցիք* |
| Եզեկիէլ ԻԷ, 6 | 'ի կղզեաց քետիմացւոց | նոյն ընդ հայ. | 'ի կղզեաց իտալիոյ* |

* Դիտողութեան արժանի է որ 'ի լատին թարգմանութեան զոր արարեալ է Ս. Հերոնիմոս 'ի դարուն մէջ և որ Վուլկաթա կամ հրատարակեալ անուամբ ընդունելի և միայն գործածելի եղած է արևմտեան եկեղեցւոյ մէջ՝ իբրև մեկնութեամբ եբրայական Քիթիմ անունն եդեալ է Իտալիա Բաղատամու կանխաձայնութեան մէջ. վասն զի հրէից կործանումն որ կը գուշակուի

դոնիա, վասն այսորիկ և Մակեդոնիա յոմանց առացաւ Քիթիմ և բնակիչք նորա կոչեցան կիտիմացիք. տես յԱ. Մակաբ. գլ. Ա. 1»: - Երկրորդ պէտք է գիտել որ առ եբրայեցիս կղզիք ասէին և հեռաւոր աշխարհք՝ ուր նաւով հարկ լինէր երթալ 'ի Պաղեստինոյ, որպէս Եղլադա, Իտալիա, Սպանիա և այլն: Հիմա գնեմք հոս Կիտիս անուան յիշատակուած տեղերն և անուանակոչութեանց զանազանութիւնն.

| ԵԲՐԱՅԵՑԻ ԲՆԱԳԻՐ | ՅԱՐԱՍՈՒԹԻՒՆ ՔԱՂԴԷԱՐԷՆ Ի ԹԱՐԿՈՒՄ ՈՆԳԵԼՈՍ | ԱՍՈՐԵՐԷՆ կամ ՍԻՒՐԻԱԿԱՆ | ԱՐԱԲԵՐԷՆ |
|---|---|---|---|
| Քիթթիմ | Քէթիմ | Քէթիմ | Կիպրոս |
| 'ի ձեռանէ այսինքն 'ի ծովեզերեայց Կիտիմ | և նաւք եկեսցեն 'ի կիտացւոց | և լեգէոնք ելցեն յերկրէն կիտացւոց | 'ի նաւահանգըստէ Կիպրոսի |
| նոյնպէս | (չիք 'ի Վալթոն) | Քէթիմ | Կիպրոս |
| (չիք 'ի Վալթոն) | չիք | յերկրէն քիտացւոց | (չիք 'ի Վալթոն) |
| չիք | չիք | նոյն ընդ լտ. | չիք |
| Քիթթիմ | 'ի Թարգում Յոնաթան՝ յերկրէ Քէթիմայ | նոյն ընդ քաղդ. | յերկրէ կիտաց |
| նոյնպէս | նոյնպէս | նոյն ընդ քաղդ. | չիք |
| 'ի կղզիս | նոյն ընդ լտ. | նոյն ընդ հայ. | չիք |
| 'ի կղզիս Քիթթիմ | նոյն ընդ եբր. | 'ի կղզիս քետացւոց | 'ի կղզիս Սեթթի |
| նոյն ընդ լտ. | (չիք 'ի Վալթոն) | նոյն ընդ հայ. | յարտաքին կիտացւոց |
| նոյն ընդ հայ. և յոյն. | 'ի գաւառէն Ապուլիոյ (որ է յիտալիա) | կիտացւոց | 'ի կղզեաց Հնդկաց |

նոյն նախաձայնութեամբ 'ի ձեռն հռոմայեցւոց եղև՝ որք եկին յիտալիոյ, ինչպէս որ եբրայականն ալ հասկանար Քեթթիմ ասելովն. վասն զի ահա Դանիէլի մարգարէութեան մէջ ալ հռոմայեցւց անուամբ բացատրուի թէ եբրայականին և թէ լատինականին մէջ:

31 Ոմանք 'ի րաբունեաց համարին Թէ Յեփթայէ նուիրական ողջակէզ արարեալ աւելի 'ի մշտնջենաւորս ամուրի կեանք անցուցանելու դատապարտեցաւ: Բայց զայս կարծիս ջրէ նոյն իսկ սուրբ Գրոց խօսքն որ ասէ թէ «Ժողովէին դստերք Իսրայելի ողբալ զդուստրն Յեփթայեայ գաղաադացւոյ՝ չորս աւուրս 'ի տարւոջ» (Դատ. ԺԱ, 41): Իսկ արդ կենդանի մարդոյ վերայ ողբս առնել սովորութիւն չէ: Յովսեպոս Փլաբիոս եւս հաստատէ թէ դուստրն Յեփթայեայ զենաւ (Հնախօս. գիրք Ե գլ. Թ):

Ն. Այս է ընդհանրապէս Սուրբ Հարց կարծիքն ալ, որք ասեն թէ Յեփթայէ իւր զաւակն զոհելով գոնէ մահու չափ ոչ մեղանչեց ոչ ուխտին և ոչ կատարման մէջ. վասն զի տեսանեմք զի Գիրք եւս ոչ մեղադրեն զնա. մանաւանդ թէ յԱստուծոյ իսկ ազդեալ համարի զայս ուխտս առնելու (որպէս երևի 'ի համարս 29 և 30 ), որով և զյաղթութիւնն ստացաւ. ուստի և բանաւորապէս հետևեցուց թէ Աստուած որ է Տէր կենաց և մահու՝ այս պարագայիս մէջ հաճեցաւ իւր տուեալ օրէնքն դադարեցընել, և թէ Աստուծոյ կամքն էր որ ինքն ալ դրած ուխտն կատարէ:

32 Արևելեան ազգք զնուան պտուղ դրախտին կոչեն, զոր և եբրայեցիք իրենց կրօնական արարողութեանց մէջ գործածէին, և իբրև զարդ զգեստուց և կահուց տաճարին:

33 Սուրբ հարք Եղիայ Եղիան գիրքն Տիրամօր վերայ յօրինեալ այլաբանութիւն մի համարին. և զոր Յովսէփ Էրլօլանի անուամբ քահանայն՝ որ իւր արկադեան Ներալտոս կատարեաց անուամբն աւելի ծանօթ է՝ հռովմական գեղօնից վերածած է քերթողական գողտրիկ համառօտ ընդ անուամբս Սոմնոյէն որ և տպագրեալ է 'ի Հռոմ յամի 1739 յարդիւ պղնձագիր պատկերօք զարդարեալ:

34 «Յորժամ անձրևէ 'ի Պաղեստին, ասէ Վոլնէյ, տօն ցնծութեան կատարէ ժողովուրդն՝ 'ի մի վայր գումարեալ և ցցովք և պարուք բարձրաձայն աղաղակելով. Օրհնեալ է Աստուած» (Ուղեգրութիւն յԱտրէս):

35 Աղօթատեղին զոր կառոյց Եղիա 'ի վերայ լերին Կարմեղոսի՝ նուիրեալ զայն կուսին որ ծնանելոց էր կոչեցաւ Սեմէոն որ նշանակէ նուիրեալ օգոստափառ դշխոյի, որ և է նոյն ինքն Մարիամ Թագուհի երկնից և երկրի (Պատմութիւն լերին Կարմեղոսի, յաղերթութիւն որբոց Կարմելեան, գլ. ԼԱ):

36 Այս գերահրաշ մարգարէութիւնս երկայն և դժուարակնճիռն վէճից նիւթ եղև 'ի մէջ հրէից և քրիստոնէից: Րաբունիք որ յետ Յիսուսի Քրիստոսի մեկնաբանեցին այս խօսքս՝ ջանացին այլայլել այնոր ապացուցական զօրութիւնն որ զիրենք դատապարտէր, և մարգարէին խօսքն աղօտացուցանել ասելով՝ ա-

ւէին թէ եբրայական բնագրին գործածած բառն հալմա՝ պարզապէս ցուցանէ զկին մանկամարդ՝ թէ և եօթանասունք կոյս թարգմանած են զայն։ Սակայն Հարք եկեղեցւոյ իրենց այս առարկութիւնս քաջայայտ կերպով հերքած են. օրինակ իմն Սուրբն Յովհան Ոսկեբերան ասէ. « Հաւատարմագոյնք են մեզ թարգմանիչքն եօթանասունք, որ դարու միով և աւելի յառաջ քան զՔրիստոս յեզին զնոսին միաբանութեամբ. ժամանակն և թիւ և միութիւն նոցա հաւատարմագոյն ես ընծային մեզ քան զեբրայեցւոցն որ յաւուրս մեր՝ որք չարութեամբ կամակորեցին զսուրբ գիրս 'ի բազում տեղիս » ( Ճառ Դ գլ. Ա )։ – Սուրբն Հերոնիմոս քաջահմուտ եբրայական բարբառոյ 'ի մէջ ամենայն թարգմանչաց և մեկնչաց սուրբ գրոց՝ ասէ. « Ոչ երկնչիմ ասել թէ ոք 'ի հրէից յանդգնեսցէ զիս իբրև սուտախօսաւ՝ 'ի հաստատելս եթէ բառս հալմա յամենայն տեղիս սուրբ գրոց ցուցանէ զկոյս անարատ ամենևին և անբիծ, և ոչ բնաւ զկին մանուկն ( 'ի Մեկնութեան Եսայեայ գիրք Գ)։ – Լուտեր ևս որ այնչափ 'ի չարն վարեցաւ իւր գիտութեամբն՝ բնիկ մոլեգնութեամբն գոչէ. « Եթէ հրեայ մի կամ եբրայագէտ մի կայ որ կարասցէ ցուցանել թէ հալմա բառն սուրբ գրոց որ և իցէ տեղ հասարակ կին ցուցանէ և ոչ կոյս՝ ես հարիւր ֆիորինս խոստանամ նմա » (Գործք Լուտերի հտ. Ը էջ 129)։ – Նոյն ինքն Մահմէտ վկայէ Տիրամօր կուսութեան, զի ասէ. « Եւ Մարիամ դուստր Ամրամայ որ պահեց իւր կուսութիւնն, և մեք յղեցաք 'ի նա զհոգի մեր, և նա հաւատք ընծայեց բանից Տեառն և գրոց նորա » (Ղուրան, Սուրաթ 66. Ղուրանն 144 սուրաթս կամ գլուխս բաժանի)։

37 Յեսսէ՝ որ և կոչի Իսայի որդի էր Ովբեդայ, հայր Դաւթի, որոյ միջատակն յոյժ յարգի է առ հեբրայեցիս՝ և համարին զնա այր կատարեալ արդար։

Զ. Ըստ համառօտեմք ազգային յեկեղեցական երգոց և շարականաց մէջէն ինչ որ Սրբոյ կուսին համար գովասանական մակդիրներ տրուած է Սուրբ գրոց նմանութեամբ, որ և սիրուն փնջիկ մի ձեւանայ կարծեմ ոչ անհաճոյ յաչս Սիրամօրն 'ի բազմաբուրեան բուրաստանէ Հայաստանեայց եկեղեցւոյ քաղեալ.

Ազատիչ յանցանաց նախամօրն. — Աթոռ փառաց յերկրի. — Աթոռ փրկութեան. – Աթոռ քերովբէական. — Աղախին և մայր կենաց. — Աղբիւր անապակ լուսոյ. — Աղբիւր ծարաւեաց. – Աղբիւր կենաց բղխեալ յեդեմայ. – Աղբիւր կնքեալ ջրոյն կենդանութեան. – Աղբիւր յորդառատ. – Ամենագովելի և քան զերկինս բարձրագոյն. – Ամենապայծառ բերկրեալ միշտ կոյս. — Ամենօրհնեալ աստուածամայր Մարիամ. — Ամենօրհնեալդ 'ի կանայս. – Ամենօրհնեալ սրբուհի. – Ամպ թեթև յեր-

կրային ցանկութեանց. – Ամպ թեթեւ և լուսածին. – Ամպ թեթեւ
և լուսաւոր. – Ամպ թեթեւ ցօղեալ 'ի մեզ զարդարութիւն. – Ամպ
լուսեղէն. – Ամպ հովանաւոր. – Ամպ հովանի. – Այգի վայե-
լուչ. – Անապական անարատ կոյս Աստուածամայր. – Անապա-
կան և միշտ կոյս. – Անապական տաճար. – Անարատ տաճար
անվայրափակ Բանին. – Անարատ տաճար, բնակարան անբաւ
Աստուծոյ Բանին. – Անարատ տաճար տնօրէնութեան. – Ան-
դաստան մաքուր 'ի փշոց մեղաց. – Անդատապարտ շաւաւիղ. –
Անթառամ ծաղիկ. – Անիծից լուծիչ և քաւիչ մեղաց. – Անկի-
զելի մորենի. – Անհաս տնօրէնութեան մայր. – Անհարսնացեալ
մայր. – Անհարսնացեալ Մարիամ. – Անձնաւոր տաճար. – Ան-
ձրեւ կենաց. – Անճառելի լուսոյ մայր. – Անսկզբնական Բանին
Հօր բնակարան. – Անտանելի Բանին բարձող. – Անտանելւոյն
տաղաւար. – Ապաւէն մեր և յոյս. – Առագաստ անճառ Բա-
նին. – Առագաստ անճառելւոյ բնակողին. – Առագաստ լուսոյ. –
Առագաստ հրափայլ ծագմամբ. – Առագաստ փեսայացեալ Բա-
նին. – Առաւօտ խաղաղութեան. – Արարողին երկնի և երկրի
տաճար և առագաստ. – Աստուածածին անարատ կոյս. – Աս-
տուածածին անարատ մայր Տեառն և կոյս սուրբ. – Աստուա-
ծածին անհարսնացեալ, յերկրէ յերկինս հարսն ընծայեալ. –
Աստուածածին յոյս և ապաւէն. – Աստուածատունկ խնկաբեր
ծառ յանուշահոտ բուրաստանէն. – Աստուածորդւոյ մայր. —
Ասրն զոր ծանեաւ Գեդէոն. — Արեւելք արեգականն արդա-
րութեան. — Արեւելք գերարփին. — Արեւելք իմանալի. —
Արմատ տնկոյն անմահութեան. — Արուսեակ զուարթարար։

Բանաւոր բարունակ համեղաճաշակ պտղոյն։ — Բանաւոր
երկիր. — Բանին բարձող. — Բանին բարձող որ զամենայն կրէ
զօրութեամբ. — Բանին հօր մարմնարան, և առագաստ բնա-
կութեան. — Բաշխող բարութեանց. — Բարեբեր բոյս բարի. –
Բարձող անիծից. — Բարձող էիցս բարձողին. — Բարձող ողորմ-
մութեան նախամօրն Եւայի. — Բարձրագոյն սերովբէից. —
Բարձրելոյն հովանացեալ զօրութեամբ. – Բարունակ ծաղկեալ–
Բնակ հրեղէն աստուածութեան. — Բնակարան անբաւ Բանին
Աստուծոյ. — Բնակարան անսկզբնական Բանին Հօր. — Բնա-
կարան անսկզբնակից Որդւոյն. — Բնակարան աստուածու-
թեան. – Բնակարան աստուածային ներմարդութեան. — Բնա-
կարան Բանին. — Բնակարան Բանին Աստուծոյ. — Բնակարան
եկաւորութեան. — Բնակարան հոգւոյն սրբոյ. — Բնակարան և
առագաստ արարչին. – Բոլորից փրկութեան մայր։

Գանձ անապական. — Գանձ կենաց աստուածային. — Գա-
ւազան ծաղկեալ յարմատոյն Յեսսեայ. — Գեղ մարգարտա-
փայլ: — Գեղմն ընդունիչ ցօղոյն երկնային. — Գեղմն իմանա-

լի զօր ետես Գեդէոն. — Գերագոյն երկնից խորան և առագաստ. — Գերագոյն քերովբէից. – Գերահրաշ ծաղիկ բուրեան Եդեմայ. — Գրաւական կենաց մարդկան։

Դառնաճաշակ պտղոյն քաղցրացուցիչ. — Դուռն երկնային. — Դուռն երկնից. — Դուռն ընդ որ եմուտ Բանն Աստուած. -- Դուռն կնքեալ. — Դուռն փակեալ. — Դուստր Դաւթի Թագաւորի. — Դուստր լուսոյ. — Դրախտ աստուածային և Արևելք իմանալի։

Երանելիդ ամենեցուն. — Երկին վեհագոյն. — Երկիր բանաւոր արեգական օթարան. — Երկնաբերձ աշտանակ ծոյլ ոսկի. — Երկնային դուռն աստուածային. — Երկրպագեալ յանմարմնական զօրաց. — Երջանիկ կոյս. — Եօթնարփեան շնորհաց հոգւոյն ընդունարան։

Զանապական կոյսն Մարիամ Աստուածածին խոստովանի Եկեղեցի. — Զուգաթիւ աւուրց դարուց անցաւորաց. — Զօրութեամբ բարձրելոյն հովանաւորեալ։

Էին ամթոռ։

Ընդունարան եօթնարփեան շնորհաց. -- Ընդունող լուսոյ. — Ընտրեալ յառաջ քան զհիմունս աշխարհի։

Թարգման աստուածութեան։

Ի Լիբանանէ դիմեալ հարսն. — Իմանալի Արևելք — Իմանալի բանաւոր տախտակ օրինաց. —

Լայնածաւալ տեղի անպարագիծ էին. — Լեառն վիմածին. -- Լոյս լուսոյ մայր. – Լուծիչ երկանց Եւայի. – Լուսեղէն տաճար Աստուծոյ Բանին. -- Լուսոյ մայր և կոյս. -- Լուսոյն աշտանակ։

Խարիսխ յուսոյ հաստատութեան. -- Խորանայարկ կամարանման յօրինեալ. -- Խորան և տաճար Աստուծոյ Բանին. -- Խորան լուսոյ. -- Խորան լուսոյ անվայրափակ արփւոյն կենաց. — Խորան հոգւոյն սրբոյ, — Խորան սրբութեան. -- Խորհուրդ կենաց. – Խորհրդաւոր խորան բանին։

Ծագող արեգականն արդարութեան. -- Ծագումն արևու. – Ծաղիկ անթառամ. — Ծաղիկ դաշտաց. – Ծառ կենաց անմահական պտղոյն. -- Ծառ կենաց ծաղկեալ. -- Ծառ կենաց որ զանմահութեան պտուղն ետուր. -- Ծառ կենաց տնկեալ յԱգին. -- Ծիրանազգեաց կոյս. – Ծնող Արարչին. – Ծնող և աղախին Տեառն։

Կատարումն մարգարէից. -- Կենարար Բանին բնակարան. -- Կենդանի տապանակ կտակարանաց Նորոյ ուխտի. -- Կոյս ամենասուրբ. -- Կոյս անապական. -- Կոյս անարատ. -- Կոյս անհարսնացեալ. -- Կոյս Աստուածորդւոյ մայր. -- Կոյս բերկրեալ. – Կոյս երջանիկ. – Կոյս և մայր և բնակարան՚ աստուա-

ծայրն ներմարդութեան. — Կոյս յետ ծննդեան. — Կոյս սուրբ. — Կոյս սրբուհի. — Կուսին նախնոյ մօրն Եւայի՝ բարձան անէծքն տրտմական, քո սուրբ ծննդեամբ կոյս Մարիամ. — Կուսութեանց մայր. — Կուսութեանց պարծանք։

Համեղաճաշակ պտղոյն բանաւոր բարունակ. — Հանգիստ աշխատելոց· — Հարսն անփորձ. — Հարսն երկնաւոր. — Հարսն երկնային. — Հարսն երկնից. — Հարսն զգեցեալ զարեգակն արկեալ զքև. — Հարսն ընծայեալ յերկրէ յերկինս. — Հարսըն 'ի յերկրէ երկնից. — Հիմն եկեղեցւոյ. — Հոգւոյն սրբոյ տուն և տաճար. — Հողանիւթեայ տաճար փառաց. — Հոտ անմահութեան ծննդոց Եւայի։

Ճանապարհ արքայութեան. — Ճեմարան Բանին Աստուծոյ. — Ճշմարիտ արևելք Արեգականն արդարութեան։

Մայր անարատ. — Մայր անարատ անհայր ծննդեան. — Մայր անարատ Էմմանուէլի. — Մայր անճառ լուսոյն. — Մայր անտանելւոյն. — Մայր Աստուծոյ· — Մայր Բանին. — Մայր Բանին ծնող. — Մայր Բանին անտեսութեան. — Մայր և աղախին Փրկչին մերոյ· — Մայր և բնակարան աստուածութեան. — Մայր և կոյս աղախին Քրիստոսի որ բարեխօս ես միշտ աշխարհի. — Մայր և յետ ծննդեան մնալով կոյս. — Մայր լուսոյ և առագաստ Աստուծոյ Բանին. — Մայր լուսոյ Մարիամ. — Մայր խաչեցելոյն. — Մայր կենաց. — Մայր կենդանութեան. — Մայր կուսութեան և յղութեան լուսոյ. — Մայր հաստատութեան մարդկան. — Մայր միածնին. — Մայր սուրբ անարատ լուսոյն. — Մայր վերաձգողին. — Մայր Տեառն. — Մայր Քրիստոսի. — Մարգարէից հանդիսարան, գրաւական կենաց մարդկան. — Մարգարիտ լուսափայլ, հոգւոյն սրբոյ տուն և տաճար. — Մարգարտատեսիլ և ծիրանազգեաց հրաշափառագոյն կոյս. — Մարգարտափայլ սուրբ կոյս. — Մարիամ անհարսնացեալ. — Մաքուր աղաւնի. — Մաքուր և անբիծ կոյս. — Մաքուր ծնող փեսայի. — Միածին Որդւոյ բնակարան. — Միամայր Մարիամ. — Միայն կուսութեանց մայր. — Միայն օրհնեալդ 'ի կանայս. — Միջնորդ Աստուծոյ և մարդկան. — Միջնորդ օրինաց և շնորհաց. — Մորենի անբոցակէզ. — Մորենի անկէզ. — Մորենի անկիզելի. — Մորենի վառեալ որ ոչ այրէր. — Մորենի Մարիամ։

Յարուցելոյն 'ի մեռելոց բնակարան մայր և կոյս. — Յերկրէ յերկինս հարսն ընծայեալ. — Յոյս հաստատութեան. — Յոյս և փրկութեան Մայր. — Յոյս մեր և ապաւէն։

Նախամօր երկանց բարձող. — Նախաստեղծին ծնունդ. — Նիւթեղէն սրովբէ. — Նմանող երկնից. — Նորատունկ բուրաստան. — Նոր խառնարան հրաշալի նոր խառնման. — Նոր խորան Արեգական արդարութեան. — Նոր տաճար անճառ լուսոյն։

Շառաւիղ օրհնութեան. – Շնորհ աշխարհի. – Շուշան հովտաց։

Ուրախութիւն աշխարհի. — Ուրախութիւն երկնի և երկրի. — Ուրախութիւն հրեշտակաց. — Ուրախութիւն տրտմեցելոյ բնութեանս։

Պայծառ երկինք. — Պայծառ քան զերկինս. — Պարգև բնութեանս. — Պարծանք ազգի մարդկան. — Պարծանք եկեղեցւոյ. — Պարծանք և մայր հաստատութեան մարդկան. — Պարծանք կուսութեան. – Պարտէզ փակեալ աստուածատունկ Եդեմ. — Պսակ կուսից Տիրամայր։

Սափոր ոսկեղէն. — Սափոր ոսկի երկնային հացին. — Սափոր ոսկի երկնային մանանային. – Սերովբէ հողեղէն. – Սիւն լուսոյ. — Սիւն հրեղէն. — Սիւք հանդարտ. — Սուրբ սրբոց. – Սպասաւոր անճառելի ծննդեան. – Ստեղծողին մայր և հնութեան կերպի նորոգողին. — Սրբուհի Մայր Քրիստոսի։

Վառարան աստուածային բոցոյն. — Վեհագոյն սերովբէից և բազմաչեայ քերովբէից. — Վերընկալ աստուածային Բանին. — Վերօրհնեալ 'ի սրովբէից։

Տաղաւար աբրահամեան աստուածընկալ. – Տաղաւար հոգւոյն. — Տաճար անապական. —. Տաճար անեղ Բանին. — Տաճար անխախտելի. – Տաճար Բանին Աստուծոյ. – Տաճար և առագաստ արարողին երկնի և երկրի. – Տաճար լուսոյ անըստուերին. — Տաճար լուսոյ մայր. — Տաճար ընդհանուր լուսոյն. — Տաճար սրբութեան անճառ լուսոյն. — Տաճար սքանչելի արդարութեան. — Տապանակ աստուածային ուխտի կտակարանաց. — Տապանակ կտակարանաց. — Տապանակ կտակի Բանին. — Տապանակ ապրեցուցիչ. — Տեղի անտանելի լուսոյն. – Տեղի անտանելի Բանին. – Տեղի իջման. – Տիրամայր Աստուածածին. — Տիրամայր սրբուհի կոյս. — Տումար անճառ անքնին. — Տուն և տաճար Հոգւոյն սրբոյ. — Տուն տնօրէնութեան.

Ցանկալի զուարթնոց. – Ցանկալի կուսից. – Ցաւագին մայր Տեառն. — Ցօղ քաղցրածաւալ։

Փափկութեան դրախտին բացող բանալի. — Փրկող կենդանութեան ազգի մարդկան։

Քաղաքավարեալ 'ի մարմնի անարատ վարուք. – Քան զարեգակն պայծառագոյն. — Քան զերկինս բարձրագոյն. — Քաւիչ մեղաց, լուծիչ յանցանաց. — Քրիստոսի բարձող. – Քրիստոսի մայր Աստուծոյ մերոյ. – Քրովբէական աթոռ արարչին մերոյ։ – Քերովբէ հողեղէն։

Օգնական և շնորհ աշխարհի. — Օթարան արեգական. — Օթարան լուսածին. — Օրհնեալ ես կոյս տաճար մաքրեալ. — Օրհնեալ 'ի կանայս. — Օրհնիչ Եւայի։

38 Շուշան ծաղիկն որ առ Եբրայեցիս ասի շըշան կամ շօշանա ուստի և Թուրքերէն սուսէն կամ սուսամ և ըսմղաք ծանօթ է ամենեցուն իւր սպիտակափառ գեղեցկութեամբն և քաղցրաբոյր հոտովն, որով և անարատ մաքրութեան և անմեղութեան նշան համարեալ՝ կնոջ յատուկ անուան տեղ ալ քանի։ Նախնիք այս ծաղկիս համար ասէին թէ վհկաց գիւթութիւններն և անտառական ծրարներն ցրուէ և վտանգներն հեռացնէ։ Յուդթայ համար ասի թէ Հողոփեռնէսի բանակն և վրանն աներկիւղ մտնելու համար՝ շուշան ծաղկանց պսակ կրեր 'ի գլուխըն՝ որ նորա արեամբն ներկաւ (Մխիթարեան թարգմանաց 'ի գիրս Յուդթայ)։

# ԳԼՈՒԽ Բ.

## *Անարատ յղութիւն Մարեմայ.*

*Այն կինն որ 'ի յաւիտենից նախասահմանեալ էր՝ մարդկային բնութիւնս աստուածացնելով՝ աշխարհիս փրկութեան առիթ լինելու և ընդունելու յանարատ արգանդին զՈրդին Աստուծոյ՝ զոր երկինք և երկիր և ծով համատարած ոչ կարեն տանել, այն կինն որում աշխարհիս ստեղծագործութեանն 'ի վեր ամենայն արարածք սպասէին, և զոր Աստուած ինքնին յայտնեց դրախտին մէջ, և որ վախճան և նպատակ սահմանեալ էր բովանդակ այն սուրբ սերնդեան որ նահապետաց ժամանակէն սկսեալ զիրար յաջորդեցին[1], այն կինն ասեմ հասարակ կին մի չէ կարող լինել. այլ հարկ է որ մարդկային բնութենէ գերազանց ձրիւք ճոխացեալ լիցի։ Ահաւասիկ Մարիամու անարատ յղութեան վարդապետութիւնն ալ այս մեր ատենքն ունեցած յարգութենէ յառաջ գայ։ Վասն զի մեք դժբաղդ նախահօր զաւակներն և յաջորդն լինելով, և ապստամբ հօր յանցանօքն անարգեալք և անկեալք յառաջին պատուոյն, և իր դատապարտութեան վճռովն անչքացեալք, փոխանակ շնորհաց կեանքն ընդունելու՝ ընկալաք զմահ մեղաց, և սարսափելի ճակատագրով մի՝ ծնանելէ յառաջ դատապարտեալ եմք։ Այս դժբաղդութիւնս՝ որ յարակից է մարդկային ցեղին՝ որ 'ի ծագման անդ իւրում ընդ անիծիւք անկաւ՝ որպէս մարդ մի ևեթ նկատուելով, այս դժբաղդութիւնս ասեմ ամենեցուն հաւասար է, և Սուրբ գիրք ոչ զոք յորդւոց Ադամայ՝ յայնմանէ ազատ համարին. բայց հաւատացելոց բարեպաշ-*

տութիւնն ոչ երբէք կարաց համոզուիլ՝ որ Աստուծոյ Մայրն ալ ենթակայ եղած լինի այս անարգական դատակնքոյս՝ որ դրոշմէ 'ի մեզ դժոխոց խարանադրոշմն յարգանդի անդ մօր մերոյ. և մինչ այս կարծիքս պաշտպանեցին թէ գերագոյն Դատաւորն իւր անողոքելի օրինաց վճիռն և հետևանքն դադրեցուցած է Մարիամու նկատմամբ՝ որ աշխարհ եկն առ 'ի մասնակից լինիլ կատարման աստուածային անհասանելի և 'ի յաւիտենից ծածկեալ խորհրդոյն՝ որ է մարմնաւորութիւն Բանին Ա։ Եւ որչափ ալ Աւետարանք այս նիւթոյս վրայ լռեն, սակայն հանրական հաւատք մի դարձած է որ Կոյսն 'ի պատիւ գերահրաշ մայրութեանն առ որ սահմանեալ էր՝ պահուած է այն սարսափելի անդնդոց եզերաց վերայ՝ զոր մեր նախահարց մահադոյժ անհնազանդութիւնն մեր ոտից ներքև բացաւ, և զի իւր յղութիւնն ալ այնպէս անարատ եղած է՝ որպէս իւր բովանդակ կեանքն[2] Բ։

Եւ սակայն այս կարծիքս՝ որ Կուսամօր պատուոյն և մեր իսկ սիրոյն այնչափ յարմար կուգայ՝ միջին դարու ժամանակներն իւր հակառակորդներն ունեցաւ հըզօր մարդիկ, արք իմաստունք և գիտունք և աստուածաբանք անուանիք և եռանդուն սիրողք Մարիամու, որպիսիք էին սուրբն հայրք Բեռնարդոս, Բոնավենտուրա, Թովմաս ագուինացի, մեծն Ալբերտոս և այլք։ Բայց և այնպէս առ Կոյսն եղած հաւատքն և եռանդն յորում յոյնք առաջին համարին, յաղթեց նոցա կարծեացն. և այն որ դպրոցական վարդապետաց արծուատես յաչացն վրիպած էր՝ պարզամտաց յայտնուեցաւ։ Նորէն քննուեցան առաքելոց և հարց գրուածքն, մանրակրկիտ և խղճամիտ հետազօտութեամբ յայտնուեցան՝ ինչ որ նոքա դարուց 'ի դարս աւանդել էին Կուսին բարեմասնութիւնքն, և այս հետազօտութիւններէս պայծառ լոյս մի ծագեցաւ այս

նիւթոյս վերայ՝ որ Տիրամօր պատմութեան մէջ մութ կէտ մի էր համարուած ։

Եւ յիրաւի մինչև առաքելոց ժամանակն 'ի վեր ելնելով՝ տեսանեմք որ Մարիամու ամենասուրբ և անարատ անուններն կը տրուին[3] Գ. և Աբդիաս բաբելոնացւոյն յիշածին համեմատ՝ Ս. Անդրէաս առաքեալ այսպէս խօսի Աստուածամօր վերայ. « Որպէս առաջինն Ադամ արարաւ 'ի հողոյ որ չև ևս էր անիծեալ, այսպէս և երկրորդն Ադամ յօրինեցաւ 'ի կուսական հողոյ՝ որ ոչ բնաւ անկաւ ընդ անիծիւք »։

Սուրբք և վկայք որ եղեն երրորդ դարուն մէջ որպէս Ս. Իպպոլիտոս, Ս. Գրիգոր Նէոկեսարացի, Որոգինէս, Ս. Դիոնեսիոս Աղեքսանդրացի միշտ մաքուր և անարատ անուամբ յիշեն զՍ. Կոյսն ։ Իսկ Ս. Կիպրիանոս աւելի ճշդութեամբ այսպէս գրէ. « Խտիր մեծ է ընդ Կոյսն և ընդ այլ մանկանցուս. քանզի բաց 'ի բնութենէն չիք ինչ նորա ընդ նոսա կցորդութիւն. օտար ամենևին 'ի յանցանաց »։

Չորրորդ դարու մէջ Ս. Բասիլիոս և Եպիփան նոյն պատիւն ընծայեն Մարիամու ։ Ս. Ամբրոսիոս նմանեցուցանէ զնա « Ի բարունակ գեղաղէշ և լուսապայծառ յորում չիք ոչ վարակ սկզբնական մեղաց և ոչ կեղև ներգործական յանցանաց ». և Ս. Հերոնիմոս նմանեցուցանէ զնա « Ցամպ տուընջեան՝ որ ոչ բնաւ գիտաց զխաւար » Ն Սողոմոնի այն խօսքին վրայ որ ասէ Սրբաչնորհեալ նոցա ամպով 'ի տուշէ ։ Կրիսիպպոս ոմն երէց Երուսաղէմի որ շատ հին հեղինակ մի է անարատ անուանն տալէն ետև Մարիամու՝ յաւելու. « Չիք ինչ նորա հասարակ ընդ ազգին իւրոյ Թիւրելոյ, նա որոյ բնութիւնն ազատ է 'ի կշտամբանաց և 'ի մեղաց, և նման է վարդենւոյ անկէլոյ յանդաստան փշալից »։

Ս. Յովհան Ոսկեբերան կոչէ զԿոյսն ամենասուրբ, անարատ, երանեալ քան զամենայն արարածս և փառաւորեալ մայր Աստուծոյ ։

Ի հինգերորդ դարու Ս. Աւգոստինոս և ոչ իսկ հանդուրժէր՝ որ սկզբնական մեղաց վերայ խօսուած ժամանակ՝ Մարիամու անունն անգամ 'ի բերան առնուի. և դիտելու բան է որ այս ասացած ժամանակ ինքն Պեղագեանց դէմ պաշտպանէր սկզբնական մեղաց վարդապետութիւնն։ — Ս. Յովհան Ոսկիբերան ալ հաստատէ թէ «Արդեամբ Մարիամու փրկեցաւ ամենայն»։ — Ս. Փուլգենտիոս 'ի սկիզբն վեցերորդ դարուն ասէ թէ «Ս. Կոյսն ամենևին ազատ եկաց յառաջնոյ դատակնքոյն»։ — Ս. Յովհան Դամասկացի ութերորդ դարուն վերջերն Կուսին յղութեան վերայ խօսելով՝ սուրբ և անարատ կոչէ զայն ասելով. «Ամենևին գեղեցիկ ես ով Մարիամ. ամենևին գեղեցիկ ես 'ի յղութեանդ. զի առ 'ի լինել տաճար Աստուծոյ ստեղծար, և արատ մեղաց ոչ երբէք զհոգիդ քոյ վարակեաց ոչ մահուչափին ոչ ներելին և ոչ սկզբնականն »[4] Դ։

Մարիամու անարատ յղութեան նկատմամբ այս շղթայաշար վկայութիւններս յանկարծ դադարին յարևմուտս իններորդ դարէն սկսեալ մինչև ցչորեքտասաներորդ դարու սկիզբն. սակայն ոմանք արք համբաւաւորք 'ի նպաստ կարծեացս գրեցին, իսկ բազումք գիտութեամբ և սրբութեամբ գերազանց՝ հակառակն ճառեցին։ Բայց փոխանակ այսմ Երանելւոյ Կուսին յղութեան տօնն նոյն ատեններն շատ տէրութեանց մէջ հաստատուեցաւ նաև յարևմուտս՝ որ յարևելս Է դարէն 'ի վեր արդէն հաստատեալ էր։

Հենրիկոսի առաջնոյ Անգլիոյ թագաւորին և Նորմանտիոյ դքսին արքայութեան ժամանակ՝ Ռուան քաղքին մէջ տարօրինակ հանդիսութեամբ կատարուէր այս տօնս. և այն ատենի ժամանակագիրք հաստատեն թէ յառաջ եկած է Սրբոյ Կուսին երևմանէն առ աբեղայ մը երկիւղած և արժանահաւատ՝ զոր հրաշիւք ազատեալ էր սարսափելի նաւակոծու-

թենէ։ Եւ հին պատմութիւններն հաստատեն թէ նոյն քաղաքին երեւելիներն ընկերութիւն մի հաստատեցին՝ որ տարուէ տարի ծանրագին մրցանակներով վարձատրէին ո՛ր և իցէ լեզուաւ գրուած ճառական և քերթողական գրուածներն 'ի պատիւ Կուսին։ Այսպէս շնորհօք բերկրեալ Տիրամայրն բանաստեղծութեան կենդանանալոյն ալ պատճառ լինէր, և իւր անարատ յղութիւննիւթ մատակարարէր քերթողաց։

Կուսամօր անարատ յղութեան տօնն 'ի Նորմանտիոյ՝ ծովը անցնելով՝ հաստատեցաւ յԱնգլիա որ այն ատեն ուղղափառ էր, և իւր իշխանազունքն և պարոնք խորին յարգանօք մեծարէին զՏիրամայրն։

Նոյն ատեններն այս տօնս հաստատէր նաև 'ի գաւառին Լուգդոնի. թէ և Սուրբ Բեռնարդոս յանդիմանէր զկանոնիկոսս Լիոնի՝ որ առանց առաքելական աթոռոյն խորհրդակցութեան կատարէին զտօն անարատ յղութեան[5]։ — Բարիզու հայրապետ մի Րանուլփոս անուամբ՝ 'ի վախճանելն յամին 1288 մեծագումար կտակ ձգեց առ 'ի հաստատել զժամերգութիւն անարատ յղութեան Կուսին։

1394 ին Արագոնայի թագաւորն Յովհաննէս Ա արքունի հրովարտակաւ անարատ յղութեան տօնն հաստատեց Սպանիոյ ամենայն գաւառաց մէջ՝ որ Սարակինոսաց լուծն թօթափել էին, ասելով որ իւր նախորդներն ալ յառաջ քան զինքն նոյն տօնն փառաւորապէս կատարէին 'ի յիշատակ գթութեանց Տիրամօրն։ Կարեմք ասել որ այս հրովարտակս Մարիամու թագին ամենէն գեղեցիկ գոհարներէն մին է՝ որ և արձանագրեալ է 'ի գիրս առանձնաշնորհութեանց թագաւորութեան Վալենցայի 1394 ամին։

Թէպէտ և երկար ժամանակ արգիլուած էր բեմերէն և դպրոցաց մէջ անարատ յղութեան վերայ վարդապետելն, սակայն շատ կրօնական միաբանութիւնք և մանաւանդ Փրանկիսկեանց Ուխտն[6] Նոր եռան-

գետամբ զայն արծարծել սկսան, և բանիւ և գրով հրապարակաւ զայն գուանէին, և այնպիսի հզօր և յաղթահարիչ փաստերով զնոյն հաստատէին որ ոչ միայն հաւատացելոց բազմութիւնն՝ այլ և Եւրոպիոյ ուսումնական ընկերութիւնք եռանդեամբ զայն ընկալան. ինչպէս Բարիզու Սորպոնի աստուածաբանութեան դպրոցին վարդապետք 1576ին ժողով մի գումարելով՝ հրատարակեցին որ Կուսին անարատ յղութիւնն իրենք հաւատոյ մասն համարէին. Նոյն վարդապետներն ուրիշ վճռոյ մէջ ասէին՝ որ իրենց նախորդաց հետոցն հետևելով պարտաւորէին զանձինս երդմամբ այս կարծիքս պաշտպանելու. հաստատելով և յայտարարելով որ յայսմհետէ ոչ ոք իրենց կաճառին անդամակցի՝ մինչև որ իրենց պէս երդում չտայ բոլոր կենաց մէջ պաշտպան կալու անարատ յղութեան վարդապետութեանն: Նոյնն արարին յետոյ նաև Մակոնցայի, Քոլոնիայի, Վալենցայի, Ալքալայի, Քոիմպրայի, Սալամանքայի և Նափոլիի համալսարաններն:

Փրանկիսկեանք սկսան տօնախմբել զայն սուրբ և անարատ յղութեան անուամբ, և ժամերգութեանց մէջ յիշատակել այն շնորհալից օրն յորում Մարիամ ազատ պահուած էր սկզբնական մեղաց արատաւորութենէն: Սուրբ Աթոռն ալ ոչ միայն թոյլ տայր այս տօնս կատարելու՝ այլ և յայտնապէս ձեռնտու լինէր նոյն առանձնաշնորհութիւններն և ներողութիւններն շնորհելով՝ ինչ որ Ամենասուրբ Հաղորդութեան տօնին համար սահմանուած էին:

1618ին Նափոլիի փոխարքայն և բոլոր պալատականք և զինուորք Աւագ Տիրամօր եկեղեցւոյն մէջ ուխտ եդին հաւատալու և պաշտպանելու զանարատ յղութիւն Կուսին: — 1624ին Նեվէրի դքսին ասպետական կարգն Հռոմայ մէջ հաստատուեցաւ ընդ անուամբս Ասպետք անարատ յղութեան փառաւորեալ Կուսին:

Նմանապէս քանի մի ժողովք պաշտպանեցին այս վարդապետութիւնս ինչպէս Բասիլէայի ժողովն որ 1429ի սեպտ. 21ի գումարման մէջ այսպէս ասէ. «Սուրբ ժողովս մէջ դժուարին վէճ մի ծագեցաւ փառաւորեալ Կուսին Մարիամու Տիրամօր յղութեան վերայ՝ և իւր սրբացման սկզբնաւորութեան նկատմամբ, յասել ոմանց թէ իւր հոգին առ սակաւ մի ժամանակ կամ գոնէ առ վայր մի սկզբնական մեղաց ենթակայ եղած է. և այլոց զհակառակն պաշտպանելով՝ թէ Աստուծոյ սէրն զոր ունէր առ Կոյսն նախաժաման հասած է յառաջնում իսկ վայրկենի ստեղծմանն, և զի Բարձրեալն որ զնա արարչագործեաց, և Որդին որ ընտրեաց զնա լինել իւր մայր 'ի վերայ երկրի՝ ճոխացուցին զնա առանձինն և տարօրինակ շնորհօք. և զի Քրիստոս փրկանաւորեաց և զնա գերագոյն իմն և սեպհական եղանակաւ պահելով 'ի սկզբնական արատոյ և սրբացուցանելով անդէն յառաջնոյ վայրկեանէ յղութեանն, (որով եղև և Փրկիչ նորին որպէս և ամենայն մարդոյ): Ուստի խոհեմութեամբ քննելով այն պատճառներն և երևելի արանց վկայութիւններն՝ որ շատ տարիներէ 'ի վեր յերկուց կողմանց յառաջ բերուած են այս սուրբ ժողովս հրապարակական գումարմանց մէջ, և ուրիշ շատ բաներ ալ նկատելով նոյն նիւթոյն վերաբերեալ, և զամենայն ինչ կշռելով և կատարեալ եղանակաւ խորհըրդածելով՝ որոշեմք և հրատարակեմք՝ թէ այն վարդապետութիւնն որ ուսուցանէ թէ փառաւորեալ կոյսն Մարիամ Աստուածամայր՝ մասնաւոր նպաստիւ և նախաժաման և գործունեայ շնորհիւ՝ ոչ բնաւ ենթակայ եղած է ներգործապէս սկզբնական մեղաց, այլ մանաւանդ թէ ինքն եղած է միշտ սուրբ անարատ և ազատ յոր և է սկզբնական և ներգործական մեղաց, այսօրինակ վարդապետութիւնս ասեմք է բարեպաշտական, համեմատ պաշտաման Եկեղեցւոյ, կաթողիկէ

հաւատոց, ուղիղ բանի և Սուրբ գրոց. և այսպէս լինելոյն համար պէտք է որ ամենայն ուղղափառք նոյնպէս դաւանին և ընդունին. այնպէս որ յայսմ հետէ ոչ ումեք օրէն իցէ զհակառակն քարոզել և ուսուցանել: Դարձեալ նորոգելով անարատ յղութեան հաստատեալ տօնն՝ որ վաղեմի և գովելի սովորութեամբ կատարի յ'8 Դեկտեմբերի և թէ 'ի Հռոմ և թէ յայլ եկեղեցիս, մեք կամիմք և հրամայեմք որ այս տօնս կատարուի նոյն օրն անուամբ Յղութեան Կուսին յամենայն եկեղեցիս 'ի մենաստանս և 'ի վանորայս կաթողիկէ կրօնից, և զի հաւատացեալք յայտնեսցեն զուրախութիւն իւրեանց երգովք օրհնութեան և ցնծութեան »: Ժողովն յաւելու ևս ներողութիւնս այս հանդիսութեանց օրն:

Հարք Ժողովոյն Տրիտենդոյ բացայայտ կերպով հրատարակեցին որ սկզբնական մեղաց նկատմամբ իրենց տուած վճռոյն մէջ՝ ոչ համարին իմանալ զանարատ և զերանեալ Մայրն Աստուծոյ ասելով. «Սուրբ սինհոդոսս յայտ առնէ՝ զի ոչ համարի 'ի վճռիս յայսմ յորում բանք լինին զսկզբնական մեղաց, իմանալ զԱստուածամայրն երանեալ և ԱՆԱՐԱՏ [7] »:

Եկեղեցւոյ մէջ երկու կողմնակցութիւնք կային այս դժուարակնճիռն խնդրոյս վերայ. և յերկուս կողմանս ևս կային երևելի վարդապետք և հռչակաւոր աստուածաբանք: Ոմանք համարէին Եկեղեցւոյ վարդապետութիւնն զուտ որպէս և էր ջատագովել՝ վտանգաւ իսկ նովին անկանելոյ յանխոհեմութիւն և գիտելոյ առաւել քան զարժանն. իսկ այլք ամենայն ջանիւք պնդէին պաշտպանել Տիրամօր առանձնաշնորհութիւններն ևս:

Սուրբ աթոռն առջի բերան ազատ թողուց աստուածաբանական հակաճառութիւններն, և իւր գերագոյն և երկայնամիտ իմաստութեամբն կշռէր երկուց կողմանց հաստատութեան պատճառներն. և հանդար-

տօրէն քննելով Հարց և Նախկին վարդապետաց կարծիքն՝ մեծ հաւանականութիւն գտաւ 'ի Նպաստ գերազանց առանձնաշնորհութեանն՝ զոր այլք կամէին կապտել 'ի Սրբոյ Կուսէն, յորում և տեսանէր առաքելական աւանդութեան ճառագայթարձակ անդրադարձութիւնն. և այն ատենէն ինքն ալ հակամիտ երևցաւ անարատ յղութեան պաշտպաններուն. որով և Քսեստոս Դ վերահաստատեց այս տօնս. իսկ քահանայապետքն Պաւղոս Ե և Գրիգոր ԺԵ ոչ միայն արգիլեցին այս նիւթոյս վերայ հրապարակական հակաճառութիւններն, այլ և առանձին խօսակցութիւններն՝ հակառակ խորհրդոյ անարատ յղութեան։ Սակայն Ս. Աթոռն իւր սովորեալ խոհեմութեամբն ոչ կամեցաւ վճռաբար դատապարտել հակառակ կարծիքն՝ 'ի պատիւ երևելի արանց և սրբոց որ ներհակ կարծեաց կողմն էին. և ոչ երբեք թոյլ տուաւ որ այն կարծիքն հերետիկոսական, յանդուգն կամ գայթակղական կոչուի, և ոչ իսկ սխալական. այլ բաւական համարեցաւ անարատ յղութեան վարդապետութեանն համոզել զամենեսին. քաջ գիտելով որ կաթողիկեայ բարեպաշտութիւնն կարօտութիւն չունէր այլ աւելի կերպական որոշողութեան՝ առ 'ի ընծայել Մարիամու զայն ամենայն փառս և զպատիւ որ իր մեծվայելչութեանն արժանաւոր էին, իրեն որ Մայր է գթութեան և Ապաստան մեղաւորաց, և զոր Եկեղեցին ընծայէ մեզ որպէս Միջնորդ և Բարեխօս առ Յիսուս Քրիստոս։

Այս դատից ժամանակ մեծարգոյ ձայն մի լսուեցաւ, ձայն Պոսիւէի վահանին հաւատոց որ ել կանգնեցաւ 'ի պաշտպանութիւն Սրբոյ Կուսին. « Անարատ յղութեան կարծիքն, ասէ ինքն, ոչ գիտեմ որպիսի զօրութիւն մի ունի՝ որ զպաշտօնասէր հոգիս համոզէ. յետ մասանց հաւատոյ՝ գրեթէ ոչ այլ ինչ տեսանեմ աւելի ստուգագոյն քան զայս. ուստի և ոչ

զարմանամ որ Փարիզու աստուածաբանից դպրոցն ալ իւր աշակերտացն պարտաւորէ այս վարդապետութիւնս պաշտպանելու. ես ալ ուրախ եմ և ցնծամ նոցա գիտմանն հետևելուս համար։ Նոյն դպրոցին կաթողիկ սնած՝ կամակար հնազանդիմ իւր վճռոյն, այնչափ առաւել որչափ որ ինձ երևի թէ Եկեղեցւոյ կամքն ալ այս է, և Մարիամու յղութեան մեծ յարգութիւն մատուցանէ։ Ոչ պարտաւորէ զմեզ անհարատ դաւանել զյղութիւն նորա, այլ իմացընէ թէ այսպէս հաւատալն իրեն հաճոյական է։ Կան նիւթեր զորս ինքն հրամայէ՝ որոց հաւատալով ցուցանեմք նմա զհնազանդութիւն մեր. կան և այլք զորս հաճոյէ, և յայնոսիկ կարեմք ցուցանել մեր սէրն առ նա։ Եթէ ճշմարտիւ Եկեղեցւոյ որդիք եմք՝ մեր ծնողասիրութեանն վայելէ ոչ միայն պատուիրանացն հնազանդիլ՝ այլ և հպատակիլ առ դոյզն ակնարկութիւն կամաց այսպիսի բարեգութ և սուրբ մօր » Զ։

Երբ Արծուեին մելգաց (Պոսիւէ եպիսկոպոս մելգաց) այս կերպով իւր միտքն բացատրեց՝ անարատ յղութեան ջերմեռանդութիւնն օր աւուր աւելի տարածուեցաւ։ Սպանիոյ մէջ՝ ուր կարդինալն Քսիմենէս 1506ին Անարատ յղութեան անուամբ եղբայրակցութիւն մի հաստատել էր, մեծաւ հանդիսութեամբ կատարուի այս տօնս՝ որով մշտնջենաւորապէս ալ պահի յիշատակն այս բարեփառ առանձնաշնորհութեանն Մարիամու։ Ամեն քարոզիչք իրենց քարոզն այս բառերովս սկսանին. « Օրհնեալ լիցի Ամենասուրբ Հաղորդութիւնն սեղանոյն, և անարատ յղութիւն Կուսին Մարիամու Տիրամօրն յղացելոյ զերծ 'ի սկզբնական մեղաց՝ յառաջնոյ վայրկեանէ անոր բնական և իրական կենաց իւրոց. ամէն »։

Եւ ոչ միայն 'ի բազում դարուց հետէ այս վարդապետութիւնս ընդունելի եղած է սպանիական եկեղեցւոյ մէջ, այլ և այնչափ ջերմեռանդ է Փերդինան-

դասի և Իշապելի ժողովուրդն առ Տիրամայրն՝ որ զիբար ողջունելու հաճոյական ձևն՝ անարատ յղութեան դաւանութիւնն է. սպանիացի առուն մի մտնող հիւրն բարի լոյս մաղթելէն յառաջ պէտք է ասէ Ողջոյն քեզ Մարիամ անարատ, որում տանտէրն պատասխանէ Առանց մեղաց յղացեալ 8: Նոյն հաւատքն ծաւալեալ է նաև ընդ բովանդակ Իտալիա և Փրանկիա ինչպէս որ վկայէ Բարիզու հայրապետ մի ասելով. «Այս բանիս վերայ պարծենալով վկայեմք, և փափաքիմք որ աշխարհիս ամենէն հեռաւոր տեղեաց կաթողիկեայք ալ գիտնասցեն՝ որ մեր թեմին մէջ այս ջերմեռանդութիւնս 'ի վաղուց խոր արմատ ձգած է, և զոր աւելի ևս ամրապնդեն աճեցընեն և ընդարձակեն դժբաղդութիւնք ժամանակիս»: Ուստի Անարատ յղութեան ջերմեռանդութիւնն ինչպէս 'ի Փրանկիա՝ յետ բազում մրրկաց, այսպէս ալ բոլոր Եւրոպա հաստատուած է: Ես Ս. Անսելմոսի հետ կարեմք հաւատալ թէ Աստուած որ երկնից հրեշտակներն ապահովեց՝ իրենց ապստամբ ընկերներն յերկնից թօթափած ժամանակ, նոյնն պահած է նաև զՍուրբ Կոյսն՝ որ հանդերձեալ էր լինել Մայր իւր Որդւոյն և Թագուհի հրեշտակաց, այն անկմանէն որում դժբաղդաբար հաղորդեղէն ամենայն մարդիկ. և թէ Աստուած ալ ասաց Մարիամու ինչ որ Ասուերոս կամ Արտաշէս առ Եսթեր. «Այս ամենուն վերայ դրուած օրէնքս՝ քեզ համար չէ»:

Փութամք հոս աւելցընելու որ այսպիսի վկայութեանց վերայ հաստատուած, և գրեթէ բոլոր աշխարհի եռանդն ունենալով բարեյիշատակ Քահանայապետն Պիոս Թ գումարեց այն հռչակաւոր ժողովն 'ի Հռովմ յամի 1854, և առաւել քան 500 հայրապետաց միաձայնութեամբն՝ որ յամենայն ազգաց և յամենայն կողմանց աշխարհի ժողովեալ էին, վճռեցաւ և սահմանեցաւ վասն հաւատոյ Աստուածամօր անարատ յղութիւնն:

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ Բ. ԳԼԽՈՅ

1 Ըստ Սրբոյն Աւգոստինոսի սերունդն որում բաղձային ամենայն նահապետք է Յիսուս Քրիստոս և Յիսուս Քրիստոս 'ի Մարիամ՝ առ որ միայն կարէր հասանել իրենց բեղմնաւորութիւնն։ « Եւ յիրաւի, ասէ իմաստուն աստուածաբան ոմն, եթէ բոլոր համազգոյից ճիգն դիմէ 'ի Յիսուս Քրիստոս 'ի Տէրն դարուց և ժամանակաց, սակայն այսու ոչ յաւակնի հասանել իւրով զօրութեամբ մինչև ցՈրդին Աստուծոյ. այլ իւր զօրութեան ընդարձակութիւն զկայ առնու 'ի խոնարհն Մարիամ՝ որ պիտի ծնանի զբողբոջն օրհնեալ՝ ոչ զօրութեամբ հաւուց իւրոց՝ այլ զօրութեամբ Բարձրելոյն ։

Ա. Այս օրս որ արդէն անարատ յղութեան վարդապետութիւնն մասն հաւատոյ սահմանեալ է ձայնակցութեամբ աւելի քան զ500 հայրապետաց այնպէս որ ալ ամեն վիճաբանութիւնք աստուածաբանից դադարեալ և արգելեալ են, և հաւատացելոց ուրիշ բան ոչ մնայ բայց եթէ յարգութեամբ հնազանդիլ եկեղեցւոյ իշխանութեան և վճռոյն, մանաւանդ թէ շընորհակալ ևս լինել նմա՝ որ Աստուածամօր այս գերազանց ձիրքըս հաճեցաւ վերջապէս հրատարակել բոլոր աշխարհի՝ որ 'ի վաղուց փափաքելին և ըղձալին էր ամենայն սիրողաց և սիրելեաց Տիրամօրն, հարկ համարիմք յորդորել զբարեպաշտս ընթեռնուլ 'ի տօնական ճառս լիակատար վարուց սրբոց զճառ անարատ յղութեան կուսին յօրինեալ 100 տարի յառաջ 'ի լուսահոգի Հ. Մկր. Վ. Աւգերեան և 70 տարի յառաջ տպագրեալ 'ի Վենետիկ 'ի վանս Սրբոյն Ղազարու յամի 1814 ։

Այս տեղս դնեմք դարձեալ վարդապետիս վարդապետ լուսահոգի Ջամչեան Հ. Միքայէլի Պօղքէր փօնից ասացեալ գրոց մէջէն 'ի փօնի անարատ յղութեան Ս. Աստուածածնի ճառէն հատուած մի՝ որ գոնէ հարիւր տարի յառաջ գրուած է և գրեթէ 80 տարի յառաջ տպագրեալ (էջ 39)։

« Այլ ոմանք աստանօր առարկեն ասելով. որդին Աստուծոյ եկն յաշխարհ առ 'ի փրկել զամենայն մարդ. զի ամենայն մարդիկ անկեալ էին 'ի ներքոյ դատապարտութեան 'ի ձեռն սկզբնական մեղաց. որոց ամենեցուն փրկիչ եղև Քրիստոս։ Իսկ եթէ սուրբ Կոյսն չլինէր անկեալ ընդ նովին դատապարտութեամբ, որդին Աստուծոյ ոչ լինէր նմա փրկիչ։ Եւ այսմ հետևեցուցանեն՝ թէ ուրեմն սուրբ Կոյսն 'ի յղանալն անդ՝ անկա

ընդ այնու դատապարտութեամբ։ Բայց յաւելուն ևս՝ թէ ՚ի նմին վայրկենի ազատեաց զնա որդին ՚ի դատապարտութենէ անտի, և օրհնեաց ՚ի սկզբնական մեղաց. և այսու որպէս այլոց՝ նոյնպէս և մօր իւրում եղև փրկիչ։ Դիւրաւ լուծանի այս առարկութիւն. վասն զի որպէս աւանդեն և հաստատեն աստուածաբանք և փիլիսոփայք, երկու տեսակք են փրկութեան. մին ազատող և միւսն նախապահող. կամ մին բարձող և միւսն պահող. զոր օրինակ ըստ ասելոյ Գաղենոս բժշկի՝ երկու տեսակք են դեղոց. մին բժշկէ զհիւանդութիւն, և միւսն արգելու զայն, կամ նախապահէ ՚ի հիւանդութենէ. արդ առաւել գովելի է նախապահելն ՚ի չարէ՝ քան զեկեալ չարն խափանել. առաւել գովելի մասն դեղոյ ասէ Գաղենոս ոչ է այն՝ որ առողջացուցանէ, այլ այն՝ որ խափանէ։ Բժիշկն առաւել ուրախանայ յարգելուլն զհիւանդութիւն՝ որ գալոցն է, քան յորժամ եկեալ հիւանդութեան դարման մատուցանիցէ. առաւել ճարտար համարի բժիշկն այն՝ որ մինչև եկեալ իցէ հիւանդութիւն ընդդէմ ելանէ այնմ. քան բժիշկն այն՝ որ յետ տիրելոյ հիւանդութեան՝ դեղով փարատէ զայն. վասն զի մին ոչ թողու կրել զնեղութիւն հիւանդութեան և զցաւութիւն դեղոց. իսկ միւսն ենթադրէ կրել հիւանդին զնեղութիւն, և զայն եդեալ՝ դառն դեղով բժշկէ։ Միոյն գործ՝ է գործ սիրոյ. իսկ միւսոյն՝ գործ ցաւակցութեան. արդ գործ սիրոյ մեծ է քան զգործ ցաւակցութեան։ Եթէ այս այսպէս իցէ, ուրեմն և Քրիստոս նախապահելով զսուրբ Կոյսն ՚ի սկզբնական մեղաց՝ առաւել ևս գերազանց փրկիչ եղև նմա՝ քան թէ յետ անկանելոյ նորա ՚ի նոյն բժշկէր զնա։ Գիտէր՝ թէ ծանր հիւանդութիւն է սկզբնական մեղքն. զի՞րդ ապա մարթ էր լինել՝ զի նա գիտելով թողուցու զի մայր իւր անկանիցի յայնպիսի հիւանդութիւն ծանր։ Ցանցանք է բժշկի՝ որ առոյգ գիտելով զդեղ հիւանդութեանն՝ որ գալոցն է, ոչ կամի տալ զայն դեղ. այլ թոյլ տայ՝ զի եկեսցէ հիւանդութիւնն և տագնապեսցէ զհիւանդն, և յետոյ ձեռն արկանիցէ բժշկել։ Սոյնպէս (որ քաւ լիցի ասել) յանցանք իմն համարիւր որդւոյ Աստուծոյ՝ որ գիտելով զանհնարին խօթութիւն կամ զհիւանդութիւն սկզբնական մեղաց՝ ոչ կանխէր դարման մատուցանել մօր իւրում. մի՞թէ պակասէ՞ր ՚ի կարելոյ կամ ՚ի սիրելոյ։ Ասէ Կանոնլերոս բժիշկ՝ թէ գերազանց արհեստ է բժշկին զթոյնս ՚ի դեղ փոխարկել. զի՞րդ ապա ամենաճարտար բժիշկն տեսանելով զթոյն սկզբնական մեղաց՝ ոչ փոխարկեաց զայն ՚ի դեղ մօր իւրոյ։ Ասէ դարձեալ նոյն Կանոնլերոս թէ նմանքն պահին ՚ի նմանեաց. արդ չիք առաւել նման մօր քան զորդի. զի է հայելի ծնողին և բնական պատկեր նորա. ապա և որդւոյն Աստուծոյ արժան էր պահել զիւր նմանն՝ այսինքն զմայր իւր ՚ի սկզբնական մեղաց։ Ցայս ամենայն հայելով կարող

եմք ասել՝ թէ սուրբ Կոյսն առաւել պարտական եղև Փրկչատոր նախապահողի զինքն 'ի մեղաց՝ քան ազատողի 'ի ներքոյ մեղաց. որպէս առաւել պարտական լինի մարդ այնմ՝ որ ըմբռնէ զինքն և ոչ թողու անկանիլ 'ի տիղմ, քան այնմ՝ որ յետ անկանելոյ 'ի տիղմ հանէ զնա և մաքրէ: Եթէ Աստուած ոչ նախապահէր, այլ միայն փրկէր զսուրբ Կոյսն 'ի դատապարտութենէ սկզբնական մեղաց փրկագործ շնորհիւ, ոչ այնչափ փառաւոր երևէր գործ փրկութեան նորա. իսկ նախապահողական շնորհիւ փըրկելովն առաւել փառաւոր երևի այն գործ: Ապաքէն առաւել բարի է նախապահել զքաղաքն 'ի խռովութեանց և յամպարշտութեանց քան զիջուցանել զյարուցեալ խռովութիւնն և բառնալ զամպարշտութիւնն: Առաւել բարի է նախապահել զտունն 'ի կրակէ՝ քան յետ 'ի կրակ յափշտակելոյն շիջուցանել»:

2 Անարատ յղութեան վարդապետութիւնն և հաւատքն Հայոց և յունաց մէջ շատ հին է և 'ի վաղ ժամանակաց հաստատեալ, որոյ համար և մասնաւոր տօն սահմանեալ է որ յէ դարէ 'ի վեր կատարի:

Բ Մինչդեռ լտ. յ8 դեկտ. կատարեն զտօն անարատ յղութեան, Հայք և այլ արևելեան ազգք կատարեն զնոյն յ9 դեկտ. յայս հաստատեալ որ Մանուէլ Կոմնենոս կայսրն՝ ըստ մեզ Կիռ Մանուէլ՝ թագաւորեալ յամէ 1143 ց1180 'ի գրուածի ուրեք (զոր յիշատակէ Թէոդորոս Պալսամոն 'ի Նոմոկանոնին Օրէնսգանոնացն փոփոխ) ժողովրդեան հրամայեալ տօներն համրած ժամանակ ասէ. « իններորդ օր դեկտեմբերի զի 'ի նմին աւուր կատարի տօն յղութեան ծնողի Աստուծոյ մերոյ » ( տես Բենեդիկտոս ԺԴ յաղագս տօնից Յիսուսի Քրիստոսի և Կուսին Մարիամու գլ. ԺԶ յօդ. Գ): — Բայց յայտնի է թէ տօնս արդէն 'ի վաղուց կայր, և ոչ եթէ նոյն ատեն հաստատուեցաւ. զի ըստ ասելոյ Գէորգայ ուրումն եպիսկոպոսի Նիկոմիդիոյ արդէն սովորութիւն էր այն տօնն կատարել Հերակլ կայսեր ժամանակ՝ որ զՓոկաս սպանելէն յետոյ յամի 616 կայսր պսակեալ էր 'ի Սերգիոսէ պատրիարքէն Կ. Պօլսոյ յերրորդ ամի քահանայապետութեան Վոնիփակիոսի Դ ին: — Մատթէոս բարիզացի անուամբ միանձին գրոց մէջ այսպիսի յիշատակութիւն մի ալ ընթեռնումք որ յամի 1228 եպիսկոպոս մի 'ի հայոց 'ի կղզին յԱնգլիա օթևանեալ 'ի մենաստանի Սրբոյն Ալբանոսի՝ մի ոմն 'ի միանձանց եհարց նմա թէ իւրենց կողմերն ալ կատարէ՞ր տօն յղութեան կուսին. առ որ պատասխանեց « Այո՛, քանզի յղութիւնս ալ հրեշտակային աւետեօք ծանուցաւ Յովակիմայ մինչդեռ նա արտամագին կայր յանապատի. ( թերևս ասել կամի անսերմ յղութեամբ որպէս ատեն յոյնք, և որ չէ մեզ ընդունելի): Նոյնպէս կատարեմք և զտօն յղութեան Յհ. Մկրտչի ասէ նոյն

պատճառաց։ Իսկ վասն յղութեան Տեառն մերոյ՝ որ եղև աւետեօք հրեշտակապետին առ Մարիամ, և յղացաւ 'ի Հոգւոյն սրբոյ՝ չեղև բնաւ տօնակոյս ։։ Այդ տօնիս 'ի սկզբանէ Ե դարու կայր տօն առ յոյնս, հաւանականապէս յետ սակաւուց եմուտ և առ Հայս թէ և սկզբնաւորութիւնն յայտնի չէ ։ - Դարձեալ դիւրին չէ ցուցանելն թէ երբ և որպէս անցաւ այս տօնս յարևելից յարևմուտս. սակայն ենթադրուի թէ երկուց կայսրութեանց մէջ յարաբերութիւնն անպակաս լինելով պաշտօնաւորք Կուսին յարևմուտս սկսեալ են Աստուածածնայ այս չնաշխարհիկ գերազանցութեանս յիշատակն կատարել. զոր օմանք յԱնգղիոյ համարին սկսեալ յաւուրց անտի Սրբոյն Անսելմոսի հռչակաւոր բնազանցին և աստուածաբանին և եպիսկոպոսին Կանտորբերիոյ 'ի ԺԱ դարու, և այլք համարին 'ի Սպանիոյ ըսկսեալ։ Վերոյիշեալ Զամչեան Հ. Միքայէլի Անարատ յղութեան ճառին մէջ ընթեռնումք համառօտելով. « Տօն յղութեան յառաջ քան զամենայն սկսաւ (յարևմուտս) 'ի Սպանիա որպէս ցուցանէ բան Տեսիփոսի աշակերտի Սրբոյն Յակոբայ առաքելոյն՝ որ եղև քարոզիչ սպանիացւոց. զոր հաստատէ Որոգիոս սպանիացի յամի 400։ Հնագոյն է և յԱնգղիա ըստ վկայութեան Բեդայ քահանայի յԸ դարու. 'ի սմին դարու մտեալ էր և 'ի Գաղղիա, և հետզհետէ 'ի Գերմանիա և յԻտալիա։ Առ յոյնս ևս կայր տօնս 'ի վաղուց, որպէս յայտ է 'ի տօնացուցէ ՅՀ. Դամասկացւոյ 'ի Ժ դարու և 'ի սահմանադրութենէ Կիռ Մանուէլի կայսեր։ Իսկ առ մեզ չէ յայտ սկզբնաւորութիւն տօնիս։ Ի տարածիլ այսր սովորութեան ընդ ամենայն տեղիս՝ ապա յետ բազում ժամանակաց հաստատեաց զտօնս պապն Աղէքսանդր Ե յամի 1409. և Քսիստոս Դ հռչակեաց յընդհանուր եկեղեցիս, որ և յամի 1483 նզովեաց զընդդիմակացս նորին, զոր և ընկալաւ Ժողովն տրիտենդեան և հաստատեաց Պիոս Ե։ Աղէքսանդր Է յամի 1656 վճռեաց զի տօնս է անարատ յղութեան և ոչ պարզապէս յղութեան, և զի ութօրէիւք կատարեսցի յեկեղեցիս, զոր և հաստատեաց Կղեմէս ԺԱ 'ի 1656, յորում ըստ ժամանակագրաց յամի աշխարհի 1656 ապրեցաւ 'ի ջրհեղեղէ տապանն Նոյի։ Արևելեայք կատարեն զտօնս յ9 դեկտ. իսկ արևմտեայք յ8 նորին (տես զպատճառն 'ի վեր անդր) զի առ նախնի հռովմայեցիս հեթանոսս նոյն օր նուիրեալ էր Նեպտունոսի չաստուածոյն ջուրց՝ պաշտպան համարելոյ յընկղմանէ, որ և փոխադրեցաւ 'ի տօն անարատ յղութեան Կուսին՝ որ ազատ գտաւ յընկղմանէ մեղաց. էր առ հռովմայեցիս հեթանոսս և տօն ինչ անուանեալ յղութեան ըստ Մակրոբիոսի, զոր անուանէին յղութենական և ինքնակալական ։։

3 Տես 'ի պատարագամատոյցս Յակոբայ մեծի և Ս. Մարկոսի։

Գ. Մեր ժամակարգութեան մէջ յետ երեքշաբթեան օրհնա-

բանութեան Սուրբ Աստուած, Սուրբ և հզօր յաւելումք զա-
գօլթս Թովմայի առաքելոյ ասացեալ փառաւորեալ և օրհնեալ
Փրկչ սուրբ կոյս Աստուածածին Մարիամ, յորում բովանդակի
Աստուածամօր ամենայն գերազանց ծիրքն. բայց ոչ կարացաք
տուգել թէ ուստի Թովմայի առաքելոյ ընծայի մաղթանքս.
միայն Ստեփաննոսի ուրումն Սիւնեաց եպիսկոպոսի առ Անտիո-
քայ եպիսկոպոսն գրուած թղթի մի մէջ ընթեռնումք այս ա-
ւանդութիւնս (տես վերջի գլխոյն ծանօթութեանց մէջ):

Դ. Ի վկայութեանցս երևի թէ մինչև ցութերորդ դար անընդ-
հատ Աստուածաբանք եկեղեցւոյ ամենայն ջանք 'ի գործ դրին
հաստատելու ընդդէմ աղանդաւորաց զաստուածամայրութիւն
Մարիամու և զմիշտ կուսութիւն նորա և զանարատութիւն
'ի մեղաց: Միջին դարուց մէջ ջանացին ցուցանել նորա անարա-
տութիւնն նախ 'ի թեթևագունից անգամ թերութեանց, և
հաստատեցին թէ Կոյսն ամենևին իսկ անընդունակ էր որ և է
մեղաց: Յետոյ ուրեմն 'ի վերջ ԺԳ դարուն երևեցաւ Յհ. Տունս
Սքոթ սկովտիացի փրանկիսկեան վարդապետն որ կոչեցաւ Նըր-
բիմաստ՝ որ հակառակ Թոմայականաց սկսաւ զօրաւոր փաս-
տիւք ցուցանել զանարատ յղութիւն Կուսին անդէն 'ի ծագմա-
նէն որում հետևեցան Փրանկիոյ, Գերմանիոյ և Սպանիոյ Լսա-
րանքն. որ թէպէտ 'ի սկզբան շատ հակառակութիւն կրեց, բայց
վերջապէս 1616ին Պաւղոս Ե Քահանայապետն արգիլեց որ ոչ
ոք գրով կամ բանիւ հակառակի վարդապետութեանս հրապա-
րակաւ. յետոյ 1622 ին Գրիգոր ԺԵ արգիլեց նաև առանձնական
վիճաբանութիւններն ալ. զոր և հաստատեաց կրկին Աղեք-
սանդր Է: — Յոյն և լտ. հարց վկայութիւններն բաւական
գրուած են յընթացս վարուցս, հոս կուզեմք յաւելուլ՝ ինչ որ
հարք հայոց ասացին զկնդրոյս, յորոց պարզագոյն և վսեմագոյն
են Ս. Գրիգորի Նարեկացւոյ հոգեւանդն խօսքերն՝ որոց հաւա-
սարն ոչ գտանի թերևս առ այլ ազգս: Սա ոչ միայն կոչէ զՍուրբ
Կոյսն « Հրեշտակ 'ի մարդկանէ մարմնատեսիլ քերովբէ » և
« Անճառելի մաքրութեամբ, անարատ սրբութեամբ, անաղտ,
մաքուր և անբիծ բարի » զոր և ամենայն հարք ասացին, այլ և
յաւելու « Անխառն իբրև զօդ, մաքուր որպէս լոյս. անշաղախ
ըստ նմանութեան պատկերի արուսեկին բարձրութեան, գե-
րազանց քան զբնակութիւն անկոխելին սրբութեանց. ողջա-
ցուցիչ երկանց Եւայի, լուծիչ անիծից, մահու նահանջիչ. եղծ-
ման ընդոտնիչ »: Բայց քան զսոսա առաւել ապացուցական են
այս խօսքերս. « Որ 'ի դրութենէ խառնութեան քաւից յեղա-
նակեալ տարերաց անկցորդ մնացեր 'ի մասնէ հողածնելոցս հա-
սարակաց, ոչ բերող ծանրութեան բնակակիր համաստեղծս
կարեաց. այլ քրովբէօրէն հրաբերան բղխող նշուլից: Ուստի

(վասն ազատ գոլոյ քո 'ի սկզբնական մեղաց և 'ի հասարակաց յանցուածոյ) Թեթևընթաց գտեալ երագ ընթացիւք հեռոց հեռացեալ 'ի վայրն անմատոյց՝ յարփին վերին ընծայեցար սուրբ Աստուածամայր »: Եւ յետոյ այլ աւելի պարզ խօսքով յաւելու. « Սլացեալ հասեր 'ի բարձունս երկնից իբր անընդունակ ապականութեան և մահու լուծման. մարմին՝ յորմէ պատկառեաց ամօթով պարտիքն մահու ». ասել կամելով թէ մահն պատկառեաց 'ի նմանէ՝ վասն զի չեգիտ 'ի նմա զմեղս՝ ուր վասն սահմանեալ էր դատակնիք մահու: Դարձեալ « Մեղուցելոյ կնոջն առաջնոյ՝ առանց յանցանաց զաւակ գովեցար, և ամենայն անբըծաց ընտրութեան պսակ սրբութեան դու դաւանեցար »: « Նախաստեղծին մերկացելոյ փառք անկապտելի, վշտացելոյ անիծապարտ մօրն՝ սփոփիչ քաւութեան, որդւոց նոցին խռովութեան՝ խաղաղութեան ձայնատու ». « Իբր 'ի դժնեայ փշոց խոտութեանց.. ծաղկեցար. և իբր 'ի գառն արմատոյ երկրի՝ քաղցրաճաշակ պտուղ յայտնեցար ». « Ի մարդկային զարմէ հրեշտակ երկնային, յեղծականաց սեռից՝ անմահ սերովբէ, 'ի հողային նիւթոյ՝ ոսկի սովփերայ. — Ի հաւուց նախնեացն՝ (միայնակ) ճիռ օրհնութեան »:

Արդէն Ա. Գլխոյն ծանօթութեանց մէջ (Զ) դրինք գրեթէ ամբողջ ինչ որ անարատ Կուսին վերայ զրուցուած է մեր եկեղեցական գրոց մէջ, յորոց զոմանս ևեթ յիշել բաւական է. « Տաճար անապական բանին հօր՝ բարեբանեն զքեզ հոգեղինաց »: « Անդաստան մաքուր 'ի փշոց մեղաց՝ որ զբոյսն երկնային առանց սերման ծնար ». « Դու ծաղիկ անթառամ տոհմի սեռիս մարդկութեան, և շառաւիղ օրհնութեան նախնոյ ծնողին մեր բնութեան ». « Անիծից լուծիչ և քաւիչ մեղաց սուրբ Կոյս ». « Ով գերահրաշ ծաղիկ բուրեալ յԵդեմայ, հոտ անմահութեան ծննդոցս Եւայի՝ յորմէ սփռեցաւ մահ ընդ տիեզերս ». իսկ պանծագոյն քան զայսոսիկ « Անթառամ ծաղիկ անդատապարտ շառաւիղ ». վասն զի եթէ անխառամ ծաղիկ ասելով 'ի ներգործական մեղաց ազատութիւնն ցուցանէ՝ որ ամենեցուն ընդունելի է, անդատապարտ շառաւիղ այլ ասելով 'ի սկզբնական մեղաց ազատութիւնն յայտնի երևի. վասն որոյ մեծն Վարդան մեկնելով ասէ. « Ծաղիկն մնաց անթառամ. ոչ որպէս որք ընդ առաւօտս ծաղկին, և շնչմամբ մեղացն հողմով թառամին չորանան և անկանին ընդ երեկոյս, այլ ըստ արդար գոլոյն իբրև զարմանեանս ծաղկեալ, միշտ կայ և մնայ: Իսկ անդատապարտ շառաւիղն ասել՝ թերևս զԵւայ ածեալ զմտաւ, որ յԱդամայ հատաւ կող՝ որպէս շառաւիղ յորթոյ, և մեղաց պտուղ ցուցեալ՝ դատապարտեցաւ 'ի մահ, և մայր եղև մահկանացուաց (անուանեալն մայր կենդանեաց): Այլ անարատն Իսկուհի՝ յա-

մուլ ծնողաց արդարոց շառաւիղ շնորհաց ընծիւղեալ, կենաց և փրկութեան ցուցեալ պտուղ՝ « արտաքոյ եղև Եւայի պարտեացն » պատճառ և մայր կենաց եղև և ստացաւ »: Արդ ինչպէս կարէր արտաքոյ լինել պարտեացն Եւայի Տիրամայրն՝ եթէ ընդ նորա մեղօքն գրաւեալ էր: Դիտելու բան է վկայութեանս մէջ և այն զի շարականաց մէջ Քրիստոս ինքնին Անթառամ Ծաղիկ կոչի, ըստ այնմ « Այսօր զանթառամն ծաղկեցար զծաղիկ » որպէս զմայր իւր. և յայտնի է թէ այսու չիմացուի իբր վասն Քրիստոսի իբրու անարատ և 'ի ներգործական մեղանչականութենէ միայն ազատ: Այլ ուրեմն ինչ իմաստով որ առ զՈրդւոյն Անթառամ Ծաղկի, նոյն իմաստով կիմացուի նաև իւր մօրն համար ասացեալն Անթառամ Ծաղկի, այսու ևեթ զանազանութեամբ որ Որդին 'ի բնութենէ իւրմէ իսկ է անարատ և անմեղանչական լինելով Աստուած, իսկ Մայրն աստուածային Որդւոյն շընորհօքն և յաւիտենական նախասահմանութեամբ: — Յաւելումք և զմիւս այլ պանծալի վկայութիւնն « Յղացար անարատաբար և զԱստուած վայելչապէս ծնար ». որ եթէ յղանալ բային թէ ներգործական և թէ կրաւորական իմաստ ունելուն համար՝ երկդիմի ալ սեպուի, սակայն իմաստն պարզէ այսպէս. Յղացար անարատաբար, այսինքն զերծար 'ի սկզբնական մեղաց, և վասն այնորիկ զԱստուած վայելչապէս ծնար. վասն զի եթէ յղացուրն ներգործաբար միայն առնուի՝ հետևութիւն ոչ մնայ 'ի բանին, և ոչ իսկ պատճառ, թէ ընդէ՞ր Կոյսն վայելչապէս ծընեալ միայն իցէ զԱստուած, և ոչ նոյնպէս վայելչաբար յղացեալ (տես Հիւրմիւզեան Ե. Ա. Աստուածաբանութեան [illegible] հտ. Բ. էջ 176): « Մարիամ եթէ անարատ մայր, ապա և անարատ զաւակ. եթէ յղացաւ անարատաբար ներգործապէս, և զԱստուած վայելչապէս ծնաւ, ապա և յղացաւ անարատաբար կրաւորապէս, և Աստուծոյ ծնող սահմանեցաւ վայելչապէս՝ ծննդեամբ յԱննայէ » (Աւգերեան Յօնաչեան ճառ 'ի յղութիւն անարատ էջ 9):

4 Նոյն իսկ մահմետականք խոստովանին զանարատութիւն յղութեան Կուսին, և արաբացի մեկնիչք Ղուրանին իրենց կերպովը բացատրեցին կաթողիկէ աստուածաբանից կարծիքն այս վարդապետութեանս վերայ: « Ամենայն ադամորդիք ծնանելուն պէս, ասէ Կոստադա, սատանայէն հարուած մի ընդունին իրենց կողն, 'ի բաց առեալ զՅիսուս և զմայր նորա. վասն զի Աստուած նոցա և սատանայի մէջ քօղ մի ձգելով այս հարուածէս պահեց զնոսա » (տես զծանօթ. 36 Ա. գլխոյն):

5 « Քանզի եթէ այսպէս երևէր՝ հարկ էր նախ հարցանել զիշխանութիւն առաքելական գահուն, և ոչ այնպէս գահավիժաբար և յանխորհրդս սակաւուց ևեթ ոգւոց զհետ երթալ

պարզմտութեան »: — Նմանապէս Սուրբն Թովմաս 'ի լինկատար աստուածաբանութեանն ասէ թէ Եկեղեցի զիջաւ մանաւանդ քան թէ հաւանեցաւ ընդ տօնս այս:

6 Մոնֆոքոն (Բեռնարդոս ծնեալ 1655 գրագէտ անուանի բենեդիկտեան) 1698ին յուղևորութեան իւրում յիտալիա՝ Բաւիա քաղքին մէջ Պեղերիտի բարեպաշտ ապետին գրատունն մտնելով շատ զարմացաւ՝ տե՛սնելով որ այն անբաւ հաւաքումն բովանդակ փրանկիսկեանց գրած ճառերն և գրուածք էին 'ի պաշտպանութիւն անարատ յղութեան: Այն գրոց միոյ ճակատն փորագրեալ պատկեր մի կայր՝ յորում երևէր Սուրբ Կոյսն նըստեալ 'ի վերայ ամպոց. և 'ի վերայ նորա ցանկապատ մի աշտարակօք ամրացեալ՝ յորոց փրանկիսկեանք պատերազմէին ընդդէմ հակառակորդաց անարատ յղութեան. և մատեանն գրեալ էր 'ի հօրէն Ալվա:

Ե. Անարատ յղութիւնն Մարիամու եղև 'ի քառասներորդ դարու ստեղծագործութեան աշխարհի, այսինքն յամի 3986 ըստ ժամանակագրաց 'ի քաղդե ամսեան հրէից՝ որ ըստ աւանդութեան զուգընթանայր յայնժամ դեկտեմբերի, յութերորդ աւուր նորին ամսոյ, 'ի կայսրութեան Աւգոստոսի կեսարու և 'ի թագաւորութեան Հերովդի մեծի 'ի վերայ Հրէաստանի: — Ընդհանուր կարծիք է հիմնեալ 'ի վերայ աւանդութեան որ Կոյսն ել 'ի կուսաստանէ տաճարին և ամուսնացաւ ընդ Յովսեփայ տասնուչորս կամ տասնու հինգ տարուան. դարձեալ հանրական կարծիք է թէ ամուսնութենէ չորս ամիս յետոյ ընկալաւ զաւետիս հրեշտակապետին՝ որպէս ասէ Սուրբն Իգնատիոս Աստուածազգեաց 'ի թղթին առ Եփեսացիս. վերջապէս անյաղթելի փաստիւք ցուցեալ է որ Փրկիչն մեր ծնաւ 'ի Կուսէն 'ի Բեթղեհէմ յամի աշխարհի 4002, 'ի քառասներորդ երկրորդ ամի կայսրութեան Աւգոստոսի կեսարու: Արդ Աստուածամօր գրեթէ տասնուհինգ տարուան հասակին վերայ՝ յաւելլով այն տարին ալ որ անցաւ յամուսնութենէն ընդ Յովսեփայ մինչև ցծնունդ Տեառն, և այս տասնուվեց տարիս հանելով 'ի 4002 տարեաց՝ իւր անարատ յղութիւն եղած լինի յամի աշխարհի 3986 որպէս և եդաք (տես 'ի Հ. Կէյվոլն ճառ զխորհրդոց և զամաց Քրիստոսի Ա. յօդ. 1): Իսկ թէ ընդէր մեք և յայնք տօնեմք յ9 դեկտ. ես 'ի Բ ծանօթ. գլխոյս:

7 « Ժողովս սոյնքս յայտ առնէ զի ոչ էր միտք իւրն՝ 'ի վճռոյս յայսմ՝ յորում զսկզբնական մեղաց լինին բանք, համարել զերանելին և զանարատ կոյսն Մարիամ Աստուածամայրն. այլ զի պահեսցին եւեթ սահմանքն բարեյիշատակ պապին Պիոսի ընդ պատժովք որ 'ի նոյին սահմանս բովանդակին, և զորս կրկին նորոգէ ժողովս »:

Զ Պոսիւէի մելդաց եպիսկոպոսի Յաղագս անարատ յղութեան

սրբոյ կուսին ճառ Ա։ Տես 'ի Բանաստեղծութիւնս 'ի Տիրամայրն թարգմանեալս 'ի Հ. Եդուարդայ Հիւրմիւզ յարքեպիսկոպոսէ Տիրակայ և տպագրեալ 'ի Վենետիկ 'ի վանս սրբոյն Ղազարու յամի 1879 էջ 77։ Ցորդորեմք զբանասէրս մանաւանդ զՏիրամայրասէրս ամբողջ կարդալու այս հրաշալի ճառերս որոց գրիչք առաջին ճարտարախօսք են յաշխարհի, և թարգմանիչն յառաջին կարգէ հայկաբանից։

8 Ի Սպանիա տուն մի մտնողն յառաջ քան բարի օր մաղթելն ասէ Ave Maria purissima Ողջոյն քեզ Մարիամ ամենամաքուր. և տնեցիք պատասխանեն. Sin peccado concebida Առանց մեղաց յղացեալ։

# ԳԼՈՒԽ Գ.

## Ծնունդ Մարիամայ.

Հրէից կրօնական և քաղաքական վիճակին անկման ժամանակն, և՝ի մարգարէից գուշակուած ատեն՝ երբ թագաւորական գաւազանն օտարազգւոյ ձեռքն անցած էր՝ ըստ Նախագուշակութեանն Յակոբայ, ստորին Գալիլեայի Նազարէթ քաղքին մէջ՝ որ շատ հեռի չէ 'ի Կարմելոս լեռնէ, Յովակիմ[1] անուամբ արդար մարդ մի բնակէր 'ի ցեղէ Յուդայ 'ի զարմէ Դաւթի Նաթանայ գծովն իջեալ. իւր կինն՝ զոր Ս. Աւգոստինոս[2] 'ի քահանայական ցեղէ համարի, կոչէր Աննա՝ որ եբրայեցւոց լեզուաւ շնորհազարդ թարգմանի Ա. երկուքն ալ արդարք էին առաջի Աստուծոյ և կատարեալ սրտով[3] գնային 'ի սուրբ պատուիրանս նորա։ Բայց կարծես թէ Բարձրեալն զրկել էր զիրենք 'ի լուսոյ աստուածային երեսաց իւրոց[4]. զի զուրկ էին զաւակ ունելու մխիթարութենէն և օրհնութենէն. որովհետև Իսրայելի մէջ անզաւակութիւնն անարգութիւն համարուէր Բ։

Յովակիմ որ զկողակիցն սիրէր իւր զարմանալի քաղցրութեան և գերազանց առաքինութեանցն համար՝ չուզեց նորա վիշտն յաւելուլ՝ ապահարզանի թուղթն տալով իրեն և արձակելով, որ այն օրերն շատ դիւրաւ կը տրուէր[5]. այլ միշտ իւր քովն պահեց զնա. և այնպէս այս բարեպաշտ ամուսինք խոնարհաբար հպատակելով աստուածային տեսչութեան՝ աշխատանքով աղօթքով և բարեգործութեամբք իրենց ժամանակն անցուցանէին։

Այսչափ առաքինութիւնք առանց վարձուց մնալու

չէին. քան տարի ամլութենէ ետև՝ Աննա գրեթէ հրաշիւք յղացաւ և ծնաւ այն բարեբաղդ զաւակն որ քան զամենայն սուրբս 'ի միասին առեալ՝ ամենէն աւելի սուրբ և քան զամենեսին առաւել հաճոյ եղև աչաց Տեառն։

Թշրի[6] ամսոյն սկիզբն՝ որ հրէից քաղաքական տարւոյն առաջին ամիսն է, մինչդեռ ողջակիզաց ճենճերն յերկինս վերանայր՝ 'ի քաւութիւն մեղաց ժողովրդեանն, ծնաւ նախասահմանեալ կոյսն որ զառաջին յանցանս նախամօրն պիտի լուանար արեամբն Քրիստոսի[7]։ Իւր ծնունդն ևս իւր աստուածորդւոյն ծննդեան պէս առանց աղմկի կատարեցաւ. իւր ծնողքն թէ և թագաւորական զարմէ իջեալ՝ այլ ժողովրդեան դասէն էին, և երևի թէ աննշան կեանք մի անցուցանէին. և այս խորհրդական վարդս՝ զոր յետոյ ետես Յովհաննէս զարեգակն իբրև զօթոց զինքեամբ արկեալ, պիտի բացուէր գժբաղդութեան տօթագին հողմոց փչման ատեն՝ Յեսսեայ մերկ և չորցած գաւազանէն[8]։ Հրեշտակաց թագուհւոյն օրօրոցն ոչ ոսկեզարդ էր և ոչ եգիպտական ասղնեգործ պաստառօք ծածկեալ, և ոչ հրէից իշխանաւորացն պէս նարդոսիւ և կասիայիւ քրքմացան խնկաւորեալ. այլ դիւրաթեք ծառի ճիւղերով շինուած, և խանձարուրք հաստ կտաւէ պնդէին այն փափկիկ ծղիքն՝ որ օր մի այնչափ շնորհալից կերպով պիտի գրկէին և քնացընէին զՓրկիչն աշխարհի։ Թագաւորաց երախայքն դեռ ծիրանի խանձարրովք պառկած ժամանակ՝ տէրութեան նախարարք նոցա առջև գլուխնին խոնարհեցուցանեն և Տէր կոչեն զնոսա, իսկ այս սուրբ մանկիկս որ հարսն և մայր եղև Աստուծոյ՝ իւր առաջին ժպիտն ժողովրդեան աղքատ կանանցն եցոյց, որ իրենց խեղճ և անարգ վիճակն յիշելով 'ի մէջ մարդկան՝ թերևս ողորմութեամբ ասէին. Ախաւասիկ գերի մ'ալ աւելցաւ։ Ասի թէ Կուսին սուրբ մայրն 'ի հրեշտակէ ուսեալ

Թէ ինչ մեծ և անգին գանձ է իրեն շնորհուածն՝ սըր-
տանց շնորհակալ եղև Աստուծոյ երախտագիտու-
թեան երգով մի՝ որ աւանդութեամբ մեզ հասած է,
և եռանդուն կերպով բացատրէ իւր մայրական ցըն-
ծութիւնն ասելով. « Աստուծոյ օրհնութիւններ եր-
գեմ որ ինձ այցելութեան եկն, և զիս թշնամեացս
նախատինքէն ազատեց, և արդարութեան բազմաբե-
ղուն պտուղ մի շնորհեց առաջի երեսաց իւրոց: Ո՛վ
պատմեսցէ որդւոց Ռուբենի թէ Աննա մայր եղև.
լուարուք, լուարուք ամենայն ցեղք Իսրայելի որ Աննա
մայր եղև »: « Ո՛վ գերագոյն բարութիւն, գոչէ Ս. Յով-
հան դամասկացի լի եռանդեամբ՝ զոր պէտք է զգան
նաև ամենայն բանաւոր արարածք 'ի ծննդեան Մարիա-
մու, ո՛վ անպատում շնորհք և անհանդէտ առատաձեռ-
նութիւն Աստուծոյ մերոյ. բովանդակ բնութիւնն
ցնծայ և խայտայ ընդ ծնունդ Մարեմայ, ապա թող
ուրախանան և մարդիկ յաւուր ծննդեան նորա՝ որ
առանց արատոյ պիտի ծնանի զԱրարիչն աշխարհի,
յուսալով որ պիտի ազատին յապականութենէ »:

Եկեղեցին որ Մարիամու ծնունդն յետ ծննդեանն
Քրիստոսի ամենէն մեծ և կարևոր դէպքն համարի՝ նոյն
օրն քրիստոսական եկեղեցիներն հնչեցուցանէ ուրա-
խութեան և ցնծութեան երգերով, և զմայլեալ սեպ-
տեմբերի 8ին հաստատած տօնախմբութեամբն՝ որ այ-
նոր բարեբաղդ տարեդարձն յիշատակէ « Ով Կոյս
Մայր Աստուծոյ, գոչէ, քոյ ծնունդդ ուրախութեամբ
ելից զտիեզերս. վասն զի 'ի քէն ծնաւ արեգակն ար-
դարութեան Քրիստոս Աստուած մեր, որ զազգ մարդ-
կան ազատելով յանիծից ընդ որում հեծէր՝ ելից զնա
օրհնութեամբ, և յաղթելով մահու՝ շնորհեաց մեզ
զկեանս յաւիտենից »: Ուստի և եկեղեցի հայաստա-
նեայց յուրախութիւն յորդորելով զիւր մանկունս
երգէ. « Երգեցէք որդիք Սիոնի երգ նոր 'ի ծննդեան
մօր Տեառն. քանզի որ ծնաւ զանժամանակն 'ի հօրէ

ծնեալն՝ այսօր ծնաւ յամուլ արգանդէ․ տուք օրհնութիւն տուողին մեզ զմայրն լուսոյ։ -- Ցնծացէք որդիք մարդկան այսօր ծննդեամբ սրբուհւոյ Կուսին․ քանզի որ տարաւ զանտանելին յարգանդի անսերմնապէս, այսօր բղխեաց յարմատոյն Յեսսեայ․ տուք օրհնութիւն տուողին մեզ զմայրն լուսոյ։ — Ուրախութիւն աշխարհի ծնաւ զՄարիամ ամուլն Աննա՝ աւետեօք զուարթնոյն, որ զտուողն օրինաց հնոյն՝ ծնաւ մարմնով պարգևիչ նորոյս կտակի․ տուք օրհնութիւն տուողին մեզ զմայրն լուսոյ։ — Խնդա՛ մայր Բանին 'ի Հօրէ ծնեալ նախ քան զարուսեակ, որ զլոյսն երկնային ծագեցեր մարդկան․ զլուծիչ մեղաց մթութեան․ մաղթեա՛ Բանին փրկել զմեզ 'ի մեղաց մերոց » և այլն գ։

Իսրայէլացւոց մէջ սովորութիւն էր ծնանելուն ութերորդ օրն համախմբութեամբ ազգականացն՝ անունն դնել որով պիտի կոչուէր մանուկն։ Յովակիմ իւր հայրն կոչեց զնա Մէյրէմ՝ որ ասորերէն տիկին, դշխոյ, թագուհի նշանակէ, իսկ եբրայեցերէն աստղ ծովային․ որոյ համար Սուրբն Բեռնարդոս ասէ «Թէ այլ աւելի յարմար անուն մի չէր կարող տրուիլ իր մեծվայելչութիւնն ցուցանելու համար․ վասն զի յիրաւի Մարիամ է այն գեղեցիկ և լուսապայծառ աստղն որ փայլի աշխարհիս ընդարձակ և մրրկալից ծովուն վերայ »։

Այս հրաշագեղ անունս այնչափ սիրուն և քաղցր է, որ մարդ բերանն առած ժամանակ՝ սիրտն գորովի և գրելու ատեն ոճն գեղեցկանայ։ « Անունն Մարիամու, ասէ Ս․ Անտոն պատուացի, մեղր է 'ի շըրթունս, մեղեդի յականջս և զուարթութիւն 'ի սըրտի [8] »։

Աղջիկ զաւակ ծնող կինն ութսուն օրէն ետև տաճարն երթայր մաքրուելու համար՝ իւր հետն առնլով անդրանիկ ծնունդն ալ․ և ըստ օրինացն Մովսիսի ըն-

ծայէր Աստուծոյ գառն մի կամ զոյգս տատրակաց. այս վերջինս աղքատաց ընծայն էր, ուստի և Աննա զնոսին ընծայեց. բայց այն բարեպաշտ մօր երախտագիտութիւնն սովորական ընծայովն գոհ չեղև. այլ Ելկանայի կնոջ և մօր Սամուէլի Աննայի արժանաւոր հետևող՝ ընծայեց Աստուծոյ աւելի անարատ զոհ մի, աւելի անմեղ աղաւնի մի՝ քան այն տատրակներն որ խայտալով արիւնլուայ անկան զոհագործին դանակիններքև. և չունելով ոսկեղէն պսակներ ձօնի նուիրելու տաճարին դրանդեաց[10], Ամենակալին ոտից առջև դրաւ իւր ծերութեան պսակն. այն դերանիկ մանկիկն որով օրհնել էր Աստուած իւր կեանքն, և հանդիսապէս խոստացաւ նորէն բերելու նուիրելու իւր զաւակն 'ի ծառայութիւն սուրբ տեղւոյն՝ երբ նորա բանավարութիւնն բացուի բարին և չարն ընտրելու, և այս իւր ուխտս մանկան հայրն ալ իւր հաճութեամբ վաւերացուցանելով՝ պարտաւորիչ խոստում մի եղև[11]:

Արարողութիւնն երբ աւարտեցաւ՝ երկու ամուսինք իրենց գաւառին ճանապարհն բռնեցին, գաւառ մի ուստի երևելի մարդ մի ելած չէր ամենևին, և Իսրայէլ ակնկալութիւն չունէր որ անտի մարգարէ մի ելնէ[12]. և եկին մտին իրենց անշուք տունն՝ որ միշտ բաց էր կարօտելոց և պանդխտաց: Հոն տեղ, այն օրհնեալ շնորհալի և հրաշալի մանկիկն՝ իւր առաջին հասակին մէջ ընտանեացն հրճուանքն էր, և աճեցաւ այն շուշաններուն նման զորս Յիսուս Քրիստոս գովէ, և Սուրբ Բեռնարդոսի քերթողաբար ասացածին պէս յուսոյ անուշահոտութիւն բուրեց: Անշուշտ Աննա ինքն դիեցուցած է իւր զաւակն, ինչպէս որ այն ազգին սովորութիւնն էր[13]:

Մարիամու բանավարութիւնն տղայական հասակէն շուտով բացուեցաւ, և զուարթ արշալոյս մի ունեցաւ՝ ինչպէս որ տիւն ծագի՝ արեգական սիրելի գա-

ւառներուն մէջ։ Իւր կանխահաս աստուածպաշտութիւնն, խօսուածքին մէջ ցուցած իմաստութիւնն՝ յայն հասակին յորում այլք 'ի մանկանց հազիւ բնական կեանք մի ունին, իւր ծնողաց իմացուցին՝ որ իրմէ բաժնուելու ժամանակն հասած էր. և երբ Յովակիմ իւր հայրենի փոքրիկ կալուածին հնձոց և պտղոց երրորդ երախայրիքն մատոյց Աստուծոյ, որով և զաւակնին ալ երեք տարուան եղև՝ այս երկու ամուսինք երախտագէտք և Աստուծոյ կամացն հնազանդ՝ Ճամբայ ելին Երուսաղէմ դառնալու, առ 'ի աւանդել տաճարին սրբավայրն այն գանձն՝ զոր Սուրբն Իսրայէլի տուեալ էր նոցա Գ։

---

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ Գ. ԳԼԽՈՅ

1 Քրիստափոր տէր Քամաթրոյ յիսուսեան պատմագիր վարուց Մարիամու՝ համարի զի Հայր Կուսին երկու անուն ունէր Հեղի և Յովակիմ, որպէս համարին և բազումք հրէից, այլ և Սուրբն Իլարիոն և այլք 'ի սրբոց հարց: Յայս կարծիս է և Զամչեան Հ. Միքայէլ Վ. ([illegible] էջ 59) որ Ղուկասու աւետարանչի խօսքին «Որպէս կարծիւր՝ որդի Յովսեփայ, որ Հեղեայն» էն տալ: «Հեղեաւն իմացեալ լինի Յովակիմ՝ որ եղև բնական հայր սրբոյ Կուսին: Իսկ թէ Յովսեփայ տայ՝ (այսինքն Յովսեփայ համարի հայր) այն ոչ է ըստ բնական հայրութեան, այլ ըստ օրինականին. ըստ որում անէրն՝ աւի հայր փեսային. կամ առացից՝ ոչ ըստ հայրութեանն. զի աւետարանիչն՝ ոչ ըստ բնութեան զազգահամարն կարգէ աստ, այլ ըստ օրինացն. որպէս ասէ Խորենացի 'ի Թուղթն առ Սահակ արծրունի. ըստ օրոյ ոչ ասէ՝ որդի Հեղեայ, այլ որ Հեղեայն, այսինքն թէ որ փեսայ էր Հեղեայն, և ոչ թէ ծնեալ 'ի Հեղեայ. որպէս յաւել նորա անդ որ Ադամայն որ Աստուծոյն, ոչ ցուցանէ թէ Ադամ ծնեալ իցէ յԱստուծոյ, այլ թէ յԱստուծոյ էր»: Արաբացիք և մահմետականք՝ զհայր Կուսին կոչեն Ամրամ որդի Մատթէի. այլ է ըստ նոցա և միւս Ամրամն հայր Մարիամու քեռ Մովսէսի (տես 'ի Բարթողիմէոս տ'Էրպըլօ արևելագէտ հմուտ ԺԷ. դարու, 'ի գիրսն Մատենադարան արևելեան):

2 Սուրբ Աւգոստինոս Համաձայնութեան աւետարանչաց:

Ա. Մովսէս Խորենացի առ Սահակ արծրունի ուղղեալ թղթոյն մէջ վասն վերափոխման տիրամօրն և փայտեայ պատկերին որ՚ի Հոգեաց վանս (որում համաձայնի և Դամասկացին Ը. դարու) Յովսեփայ աստուածահօր ազգաբանութիւնն այսպէս գնէ. Դաւիթ ծնաւ զՍողոմոն (զոր յիշէ Մատթէոս) և զՆաթան (զոր յիշէ Ղուկաս). 'ի Սողոմոնէ սերունդք որդւոց յորդիս մինչև ցԵղիազար՝ որ ծնաւ զՄատթան, Մատթան ծնաւ զՅակոբ, և Յակոբ զՅովսէփ զայրն Մարիամու կուսի և զԿղէոփա: իսկ 'ի Նաթանայ եղեն սերունդք որդւոց յորդիս մինչև 'ի Ղևի. որդիք Ղևեայ երեք Մեղքի, Մատաթ և Պանթեռ կամ Բար (որդի) Պանթեռ կոչեցեալ: Ի մեռանել Մատաթայ անորդի՝ Մեղքի եղբայր նորա էառ զկին նորա, և ծնաւ զՀեղի 'ի կնոջէն Մատաթայ կամ Մատթանայ, այսինքն 'ի մօրէն Յակո-

բայ. և Հեղի մեռաւ անորդի. և ըստ այսմ որպէս Մատաթ նոյնանայ ընդ Մատթանայ, նոյնպէս և Ղևի ընդ Եղիազարու: Իսկ Յակոբ որդի Մատթանայ 'ի մեռանել հօր իւրոյ՝ մնաւ 'ի տան Մեղքեայ օրինական հայր իւր կոչեցելոյ. զի և Հեղի և Յակոբ համամայր եղբարք էին յայլևայլ հօրէ, Յակոբ 'ի տանէ Սողոմոնի և Հեղի 'ի տանէ Նաթանայ: Եւ 'ի մեռանել Հեղեայ անզաւակ՝ եառ Յակոբ զկին նորա, և յարոյց զաւակ եղբօր իւրում զՅովսէփ և զԿղէովպաս. վասն որոյ սոքա կոչին նաև որդիք Հեղեայ: — Իսկ Պանթեռ որդի Ղևեայ կամ Բարպանթեռ որդի Պանթեռայ որդւոյ Ղևեայ՝ ծնաւ զՅովակիմ. Յովակիմ ծնաւ յԱննայէ զՄարիամ կոյս, յորմէ ծնաւ Յիսուս որ անուանեցաւ Քրիստոս: Այլ է Ալաբիտեի կարծիքն՝ որոյ հետևած է երանաշնորհ հայր մեր Մխիթար Աբբայ Մատթէի մեկնութեան մէջ՝ զոր տես անդ:

Բայց ըստ յայսմաւուրաց հայոց և յունաց (որոց համաձայնի Բաքեպլրոք 'ի վարս ՅՀ. Մկրտչի) Մատթան քահանայ ղևտացի ծնաւ երիս դստերս այսինքն զՄարիամ, զՍովիէ կամ զՍոբէ և զԱննա: Աննա կին Յովակիմայ ծնաւ զսուրբ կոյսն Մարիամ աստուածածին, Սովիէ ծնաւ զԵղիսաբէթ զկին Զաքարիայ և զմայրն Մկրտչին, Մարիամ ծնաւ զՍողոմէ զմայր որդւոցն Զեբեդեայ, կամ զայլ ոք Սաղոմէ միւս Մարիամ կոչեցեալ: Իսկ եղբարք և քորք Քրիստոսի կոչեցեալքն՝ էին զաւակք Կղէովպայ եղբօրն Յովսեփայ աստուածահայր կոչեցելոյ (վասն որոյ զաւակք նորա համարեցան 'ի դստերէն Մատթանայ քահանայի) որք և էին Յակովբոս եղբայր Տեառն, Սիմոն կամ Շըմաւոն ազգական Քրիստոսի, Յուդա, Յովսէս. Մարթա, Եսթեր և Սողոմէ՝ մայր Յակովբայ և Յովհաննու որդւոցն Զեբեդեայ. (տես Մ. Խորենացւոյ վերոյիշեալ թուղթն. յորում գոն և այլ կարեւոր աւանդութիւնք զվարուց Տիրամօրն):

Իսկ Պանթեռ անունն՝ որ առ յետինս անծանօթ համարի՛ յիշի յԵպիփանէ, 'ի Խորենացւոյն և 'ի Դամասկացւոյն. քանզի առաջինն 'ի Կէրս հերձուածոց գրէ (ըստ այժմեան օրինակաց) թէ Յովսէփ և Կղէովպաս ծնան 'ի Յակոբայ՝ որ մականուանեալ կոչէր Պանթեռ. Խորենացւոյն խօսքն արդէն վերն յիշեցաք, որ ճիշդ սոյնպէս ասէ. « Ասէ և Եպիփան կիպրացի մեծ վարդապետն այսպէս. Սուրբ Կոյսն Մարիամ աստուածածին դուստր էր Յովակիմայ և Աննայի. իսկ Յովակիմ որդի Բարեայ՝ որ կոչի Պանթեռ, եղբայր Մեղքեայ, որպէս կայ յաւանդութեան հրէից. որդի Ղևեայ 'ի զաւակէ Նաթանայ և Սաղմոնի (կամ Սողոմոնի) 'ի ցեղէ Դաւթի յազգէ Յուդայ »: Իսկ Դամասկացին 'ի գիրսն յաղագս ուղղափառ հաւատոյ Դ 14 գրէ այսպէս. Ղևի ծնաւ զՄեղքի և զՊանթեռ, Պանթեռ ծնաւ զԲարպանթեռ

զայսպէս մականուանեալն, և այս Բարպանթեռ ծնաւ զՅովակիմ, Յովակիմ ծնաւ զԱստուածածին սուրբ։ — Պանթեռ անուան ստուգաբանութիւնն յայտնի չէ, զոր և Կելսոս Նախատանօք յիշէր (ըստ վկայութեան Որոգինեայ) զՍուրբ Կոյս Պանդերայ կին ասելով. որպէս և պարսիկք զՔրիստոս անարգանօք Պանդուրակայ որդի կոչէին (ըստ Սրբոյն Եղիշէի վարդապետի). Հ. Մկրտիչ Վ. Աւգերեան մերձաւոր համարի զձայնս քառին փէ–րէ–դօկէր որ է հիւսն փայտի, և ղէնդէ–րէ–դօկէր որպէս թէ ևղնդէ–րէ–կէր այսինքն որդի հիւսան (տես 'ի Լէօնկոտոր վարս սրբոց 'ի վարս Յովակիմայ և Աննայի 'ի 4 ծանօթութեան)։

3 Մահմետականք ժառանգորդք աւանդութեանց արաբացւոց ճանաչեն զերանեալ մայր Ամենասուրբ Կուսին՝ զոր և կոչեն Հաննա՝ որ ըստ իւրեանց էր դուստր Նաքովրայ և կին Ամրամայ (տես տ'Էրպըլըյ Մօրէն. օրէնէլ.)։

4 Յառաջին դարուց հետէ եկեղեցին հանդիսապէս պատուէր զյիշատակ Սրբոցս Յովակիմայ և Աննայի։ Եպիփան 'ի ճառին 'ի գովեստ սրբոյ Կուսին մեծապէս դրուատէ զնոսա. Նոյնպէս Սուրբ Յովհան դամասկացին յերկս ճառսն 'ի ծնունդ Մարիամու՝ մեծամեծ գովեստներ տայ նոցա առաքինութեանցն։ Յուստինիանոս կայսր յամի 550 եկեղեցի մի կառոյց 'ի Կ. Պօլիս յանուն Սրբոյն Աննայի ուր ասի թէ փոխադրեցաւ մարմին նորա 'ի Պաղեստինէ յամի 710 (տես 'ի Յհ. Փրանկիսկոս Կոռէաքար 'ի սկիզբն ԺԸ դարուն, հտ Ե էջ 319) ուստի յետոյ 'ի բազում վայրս սփռեցան 'ի Պոլոնիա Իտալիոյ, 'ի Կողոնիա Գերմանիոյ, յԱբդ Փրանկիոյ. որ և յաւուրս մեծին Կարոլոսի հրաշիւք յայտնեցաւ, և յայլ տեղիս։ Ըստ տօնամակին յունաց Մանուէլ Կոմնենոս կայսր հրամայեց որ Սրբոյն Աննայի տօնն աւելի մեծահանդէս տօնուի քան որ յառաջն (տես Բենեդիկտոս ԺԴ Յաղագս տօնից էջ 257. տպագրութիւն վենետկեան յամի 1722)։ Նոյն ինքն Լուտեր յառաջ քան զհերեսիովտութիւն յոյժ ջերմեռանդ էր Սրբոյն Աննայի, և իրեն ուխտեց միանձնական կեանքն ընտրել՝ երբ օր մի իր աչաց առջև ընկերներէն մին կայծակնահար սպանաւ։

Բ. Ամլութիւնն առ եբրայեցիս մեծ նախատինք համարէր և իբրև աստուածային պատիժ վասն մեղաց. այնոր համար այս երկու արդարք ալ տրտմութեամբ մաշէին և լալով աղօթէին որ Աստուած իրենց զաւակ մի պարգևէ, և այս պատիժս իրենց վերայէն վերցնէ։ Ասի եւս թէ անգամ մի Յովակիմ իր ընծայն 'ի տաճարն նուիրած ատեն Իսաքար կամ Ռուփիմ անուամբ քահանայ մի մերժեց զինքն 'ի տաճարէն ասելով. ո՛ գիտէ ինչպիսի ծանր մեղաց տէր է որ Աստուած իրեն զաւակ մի ոչ տայ։ Նա երբ տուն դառնալով եղածն իւր կնոջ պատմեց՝

երկոքին եւս լալով ուխտ եդին որ եթէ Աստուած իրենց գթալով զաւակ մի շնորհէ՝ իրեն ընծայեն զայն, ինչպէս որ եղև։ Աստանօր գիտելի է զի ծնունդն Մարեմայ ոչ էր անսերմնապէս որպէս իմանան յոյնք։

5 Ապահարզանի զեղծումն փարիսեցիք մուծին յեբրայեցիս. և որոյ համար այնչափ կշտամբէ զնոսա Քրիստոս. վասն զի ուսուցանէին որ մարդ իւր կինն կարէ արձակել որ և է փուճ պատճառաց համար, օրինակ իմն եթէ կինն անհոգութեամբ երկանն ուտելու կերակուրն շատկեկ եփէ կամ երէ, կամ թէ բաւական սիրուն չերևի իր աչաց. սոյն կարծեաց հետևէր նաև իմաստնագոյնն 'ի նոսա րաբունին Հիլլէլ։

6 Բարոնիոս (Կեսար ծնեալ 'ի սահմանս Նէապօլսոյ յաղօթավանից կարգէն 'ի Տօրէֆէրրօ իւր) զծնունդ Մարիամու դնէ յամի Հռոմայ 733, քսան և մի ամօք յառաջ քան զթուական Քրիստոսի, յ8 սեպտեմբերի, յաւուր շաբաթու ընդ առաւօտս։ — Սեբաստիանոս Նանոս տը Թիլլըմօն 'ի մէջկոյս ԺԷ դարու՝ ասէ ծնեալ զկոյսն յամի Հ. 734, որ աւելի հաւանական է (տես Գլ. Բ ծանօթ Ե)։

7 Թուրք ամենասուրբ Կուսին ծննդեան համար ասեն. «Ամրամայ (Յովակիմայ) կինն երբ ծնաւ զդուստրն ասաց Աստուծոյ. Տէր իմ դուստր մի ծնայ՝ բայց ոչ որ 'ի մարդկանէ նմա պիտի համեմատի. կոչեցի ես զնա Միրյեմ (Մարիամ) և զոր յանձնեմ քեզ և զապագայ սերունդ նորա՝ ընդդէմ սատանայի քարկոծելոյ» (Սուրաթ Գ, տող 36)։

8 Եսայի մարգարէացել էր ասելով «Բղխեսցի գաւազան արմատոյն Յեսսեայ». այս գաւազան բառս՝ որ եբրայականին և անտի աւ 'ի լտ. բառն թարգմանած է՝ ըստ Սրբոյն Հերոնիմոսի նշանակէ զբուն ծառոյ անտառ և անտերև, առ 'ի ցուցանել զի աւգոստափառն Մարիամ ծնանելոց էր 'ի զարմէն Դաւթի՝ երբ այս ազգատոհմն կորուսեալ էր զպայծառութիւն իւր և բոլորովին անկեալ 'ի բարձրութենէն։

Գ. Կրկին են առ մեզ պանծալի շարականք ամբողջ պատկեր աւուրցն. մին կանոն ծննդեան սրբոյ Աստուածածնին 'ի ծնողաց իւրոց 'ի Յովակիմայ և յԱննայէ որ սկսանի «Երգեցէք որդիք Սիոնի երգ նոր», արարեալ 'ի Յակոբայ կաթողիկոսէ առաջնոյ յամի 1267. և երկրորդն կանոն Յովակիմայ և Աննայի ծնողաց Սուրբ Աստուածածնին Որ նախնեաց իմաստութեամբ 'ի Վարդան վարդապետէ Մեծէ 1245։

9 Նոյն խօսքն Սուրբ Բեռնարդոս Յիսուսի անուանն համար ասացեալ էր։

10 Ա Մակաբայեցւոց գլ. Դ 57։

11 Հրեայք երկու տեսակ ուխտս ունէին. առաջինն Նէդէր

տացեալ պարզ ուխտ էր՝ զոր յետոյ կարէին դարձուցանել Աստուծոյ նուիրածին փրկանքն տալով, այսպէս էր Մարիամու մոր Աննայի ուխտն. իսկ երկրորդն ժէրէմ անվրէպ պարտաւորիչ էր, որով խոստացեալ իրին վերայ ունեցած իրաւունքէն խոստացողն բոլորովին հրաժարէր։ Ամեն իսրայելացի այս կերպով կարող էր ամեն ունեցածն նուիրել զտունս, զհող, զանասունս, զորդիս, զգերիս և այլն, և այս ուխտիւ կապեալ իրերս կարելի չէր վաճառել կամ փրկանաւորել որ և է գնով։

12 «Միթէ մա՞րթ ինչ իցէ 'ի Նազարեթէ բարւոյ իմիք լինել», առէր Նաթանայէլ Քրիստոսի վերայ գովեստ խօսողներուն. այն տեղն աննշան և անարգ տեղ մի էր, ասէ Ոսկեբերան, ոչ միայն քաղաքն այլ և բոլոր Գալիլեա (ճառ Թ)։

15 Հրէից մէջ մարք գուն ուրեք իրենց մայրական պարտքէն պակասէին՝ դիեցուցանելոյ զորդիս իւրեանց. բոլոր Ս. Գրոց մէջ երեք անուանք համրուին Ռեբեկայ, Մեմփիբոսթէի և Յովասայ. և դիտելի է որ Ռաքէլ արդէն օտար էր, և միւս երկուքն ալ թագաւորազունք։

Դ. Մարեմայ ծննդեան տօնն առաջին դարերէ 'ի վեր կը տօնուէր եկեղեցւոյ մէջ թերևս առաքելոց ժամանակէն սկսեալ, որոյ յիշատակութիւնն ունիմք 'ի Ս. Աւգոստինոսէ և 'ի Դամասկացւոյն։ Բայց ընդհանուր հրամանն տօնելոյ զտօնս եղև յամի Տեառն 1243 Իննովկենտիոս Դ ի քահանայապետութեան ժամանակ, որ հրատարակեց թէ այս տօնս կատարուի յամենայն տեղիս. ուստի և մեր ազգին մէջ ալ նոյն ժամանակէն սկսաւ աւելի մեծահանդէս կատարուիլ տօնս. և մեծն Վարդան որ նոյն ժամանակներն ծաղկէր՝ յօրինեց վերոյգրեալ գերապանծ շարականն 'ի ծնունդ կուսին յամի Տեառն 1245. յետոյ Յակոբ կլայեցի կաթողիկոս յօրինեց և երկրորդ շարական մի 'ի նոյն խորհուրդ (տես 'ի վեր ծան. Գ)։

Անցեալ դարուն սկիզբէն 'ի վեր Մխիթարեան Միաբանութիւնս ուխտօրէիւք կատարէ զտօն ծննդեան ամենօրհնեալ կուսին. զի ճիշտ նոյն օրն հաստատուեցաւ 1701ին 'ի Պոլիս. և գրեթէ ամեն մեծամեծ յեղափոխութիւնք նորին նոյն օրերն հանդիպած են. որպէս փոխադրութիւն նորա 'ի Մոռա 'ի 1703, և անտի 'ի Վենետիկ 'ի 1717, հաստատուիլն 'ի Ս. Գահէն 'ի 1712. մեծին Նափոլէոնի յատուկ հրովարտակովն 'ի 1810 անսասան մնալն երբ կայսերական հրամանով ամեն կրօնաւորական կարգերն բարձան յիտալիոյ. նմանապէս վերջին տարիներս յիտալական կառավարութենէ 'ի 1865։

# ԳԼՈՒԽ Դ.

## Ընծայումն Մարեմայ 'ի տաճարն.

Հեղեղատն Կիսոնի [1] գիշերահաւասարի անձրեւներովն յորդելով՝ դարիւ և դարիւ թաւալէր իւր շառագոյն ջրերն, և Գալիլէայի կանաչագոյն լերինք սկսել էին ձիւնով ծածկուիլ՝ երբ ծնողք Մարիամու ճամբայ ելլին դէպ 'ի Երուսաղէմ երթալու: Ոչ գիտեմք թէ ի՞նչ պատճառաւ որոշեցին այն անձրեւային յեղանակին իրենց հայրենի գաւառն թողլու. թերեւս փափաքէին տաճարին Նաւակատեաց մեծահանդէս տօներուն ներկայ գտնուիլ, և կամ թէ այն ժամանակն որոշեցին երբ Զաքարիա քահանայապետն որ 'ի Քեբրոն կամ յԱյին (թերեւս Նային) բնակէր՝ իւր սուրբ պաշտօնն պիտի սկսէր, որուն համար որոշեալ ժամանակներ սահմանուած էին [2]:

Եւ որովհետեւ քանի մի օր պիտի տեւէր այս ճամբորդութիւնս անհարթ եղանակի մէջ՝ իրենց հետ ունելով մատղաշ մանկիկ մի, խոհեմ և բարեպաշտ ուղեւորքն թողլով այն դժուարագնաց և քարուտ ճանապարհն՝ որ Հրէաստանի և Սամարիոյ չոր ցամաք դաշտերու փրփրադէզ հեղեղատներու և խոր վիհերու ափափայից մէջէն անցանէ, ուր որ ձմերուան սաստկութիւնն ալ աւելի կիմացուի, այն ուղին բռնեցին՝ որ Կարմելոսի ծաղկաւէտ և անուշահոտ բարձունքէն իջանէ և Սահարոնի բերրի դաշտորայքն հասանէ, ուր օդն այնչափ քաղցր և բարեխառն է՝ որ նարնջենիք պանանք և արմաւենիք բաց դաշտերու մէջ աճին [3]:

Ուստի այս կողմանէս հասնելով՝ մտին յԵրուսաղէմ Եփրայիմի դռնէն, և քանի մի ծուռումուռ և մութ

փողոցներէ անցնելով՝ որոց երկու կողմն քառակուսի տգեղ տներ շինուած էին՝ առանց լուսամուտի և պատուհանի. ամենքն ալ երդիքով ծածկած և խարխալած և աւերած աւաններու նման, վերջապէս քաղքին արևելեան դին անշուք տան մի առջև կանգ առին. որոյ համար աւանդութիւնն ասէ թէ Ս. Աննայի տունն է [4]։

Հազիւ մանկիկն Մարիամ Ճանապարհի հոգնութիւնն առաւ, Յովակիմ քաղքին մէջ եղած ազգականներն ժողովելով և Աստուծոյ նուիրելի գառնն գնելով՝ [5] ել ՚ի տաճարն, և իր ետևէն իր բազմաթիւ բարեկամներն՝ տօնական զգեստներով զարդարուած։ Երբ արտաքին գաւթէն անցանէին՝ ուստի անդին ոչ կարէին անցանել հեթանոսք ընդ պատժով մահու, հոն մեծ բազմութիւն հանդիպեցան որ էին Թագաւորին սպայքն, փարիսեցիք, վարդապետք օրինաց և ազնուական մարդիկ, որ Աստուծոյ նախախնամութեան ծածուկ տեսչութեամբն՝ գրեթէ դիպուածով հոն ժողվել էին ՚ի սրահն Սողոմոնի։ Անշուշտ Աստուած այնպէս կամեցել էր որ բարեբաղդ Կոյսն՝ զոր ՚ի յաւիտենից սահմանեալ էր լինել Մայր Քրիստոսի՝ իւր բարձր պաշտաման արժանաւոր պատուով մտցէ ՚ի տաճարն աղօթից։ Բարեպաշտ մատենագիրք ոմանք [6] համարին որ հրեշտակք ևս մասնակից եղեն այս երկրաւոր հանդիսին, և տաճարին անտեսանելի պահապաններն՝ Մարիամու շուրջն բոլորելով՝ իրենց պայծառ թևօքն զնա թևասքօղէին, նորա ոտից ներքև դրախտին բազմաբուրեան ծաղկունքն սփռելով, և քաղցրանուագ երգովք նորա գալուստն տօնելով։ — Սակաւ մի ատեն կենալով չէր [7] ասացեալ գաւթին արտաքուստ պատող մարմարեայ սանդղոց վերայ՝ տեսանէին փարիսեցւոց երթալ գալն ցոյց տալով իրենց երկայն գրապանակներն [8], և իրենց գոռոզ գլուխն ծածկած ճերմակ և նրբանիւթ բրդեայ թաշկինի [9]

քղանցքովն՝ որոց վրայ ասղնեգործած էին ծիրանեգոյն նռներ՝ յակնթագոյն ժապաւէններով զարդարուած․ տեսանէին Հերովդեսի քաջ զօրավարներն իրենց հարուստ լօդիկներուն մէջ պլլուած և ոսկի ճարմանդով ուսերնէն կոճկած․ տեսանէին զդըստերս Սիոնի երկայն լաջակներու ծալքերուն մէջ ինքզինքն պարուրելով՝ առ պատկառանաց 'ի հրեշտակաց սրբարանին[10]։ Յետոյ աստուածահրաշ մանկիկն և իւր հանդիսակիցք անցին ընդ դուռն պղնձի որ զատէր զսրբավայրն յօտարաց և 'ի պղծոց։

Հիւսիսային աշխարհաց մէջ ընդարձակ եկեղեցիներ հարկաւոր են՝ ժողովուրդն օդոյ անհարթութենէն պատսպարելու համար․ վասն որոյ մեծամեծ տաճարներ շինուած են՝ որոց մէջ բազմաթիւ ժողովուրդ կարէն հաւաքիլ․ բայց հին ատեն Ասիոյ մէջ տաճարներն գրեթէ միայն պաշտօնէից համար էր, իսկ ժողովուրդն դուրս կանգնած աղօթէր։ Իսրայէլացւոց մէջ եկեղեցին կամ ժողովն հաւատացելոց՝ սովորաբար կանանց գաւիթն հաւաքուէր, որ տաճարին երկրորդ գաւիթն էր, և այսպէս կոչուելուն պատճառն այն էր որ եբրայեցի կանայք՝ որ 'ի հին օրէնս գերեաց կարգն էին, անոր անդին չէին կարող անցանել․ և իրենց արու զաւակներէն և իրենց այրերէն զատուած՝ որոնք պաշտամանց կատարուած ժամանակ գաւթին բակին մէջ և կամ կամարակապ սրահից մէջ կանգնէին, կանայք զատ վերնատանց մէջ աղօթէին՝ գլուխնին դէպ 'ի Աստուծոյ տունն դառած՝ որոյ մայր փայտէ հեծաններով և ոսկեզօծ բևեռներով երդիքն՝ սակաւ մի հեռուէն երևէր։

Ընծայման արարողութիւնն անշուշտ կանանց գաւթին մէջ կատարեցաւ, և ոչ թէ 'ի ներքս 'ի տաճարին՝ որպէս ոմանք համարեցան։ Հանդէսն զոհով մի սկսաւ․ և երբ Նիկանովրայ դուռն իր պղնձի ծխնեաց վրայ անճռինչ դառնալով բացուեցաւ՝ ուստի պիտի անցնէր

զոհն՝ Զորաբաբէլի տաճարին ներքին տեսիլն կարացին տեսանել հանդիսակիցք իւր ձօնեալ պսակներովն ոսկիապատ դռներովն և իւր յղկած սրբատաշ կճեայ պատերովն՝ որ ժամանակի հնութենէն դեղնած տերևի գոյն առած էին, ինչպէս ամենայն նախկին շինուածք Արևելից։ Ամենայն ինչ վեհ և սուրբ էր այս Ամենակալին տան մէջ. և սակայն իւր մեծվայելչութեամբն հանդերձ՝ որչափ նուազած էր այնոր պայծառութիւնն և սրբութիւնն. մինչև անգամ իւր վսեմական արարողութեանց մէջ թերութիւններ երևէին. իւր քահանայքն՝ այլ ոչ ևս էին Աստուծոյ օծեալներն, տաճարին անօթներն չունէին այն առաջին նուիրագործութիւնն, տապանակն ուխտի աներևոյթ եղած էր, և 'ընդ նմա այնոր ծածկոյթն ալ որ Փառութիւն կոչէր (եբրայեցերէն շէքինա), և քահանայապետին լանջաց վերայ կրած այն տախտակն որ բանակ կամ տախտակ դատաստանի կոչէր՝ այն գեղափայլ և գերագոյն պատգամն ևս՝ որով որ Աստուած յայտնէր որդւոցն Ահարոնի իւր կամքն, պայծառութիւնն կորուսած էր, և ալ ոչ գուշակէր ոչ զպարտութիւն և ոչ զյաղթութիւն [11]։ Սակայն փառաւոր օր մի ծագելու վերայ էր այն սրբութեան յարկին վերայ՝ որոյ արշալոյսն արդէն փայլէր յԱրևելս։

Քահանայք և ղևտացիք վերջին գաւթին մէջ ժողովեալք՝ ընկալան 'ի ձեռաց Յովակիմայ գոհութեան զոհն [12]։ Այս Աստուծոյ կենդանւոյ պաշտօնեայքս՝ դից քուրմերուն պէս դաբնիէ և նեխուրէ պսակներով պսակեալ չէին, այլ կլորիկ խոյր մի կրէին գլուխնին բարակ բեհեզէ, բադէնն ալ նոյնպէս մաքուր կտաւէ երկայն և նեղ, մէջքերնին հանդրիճած լայն գօտւով որ՝ ոսկւով յակնթիւ և ծիրանւով ասղնեգործած էր. այս էր քահանայական հագուստն՝ զոր միայն տաճարին մէջ հագնէին։ Զոհագործներէն մին բռնեց գառնուկն և գլուխն դէպ 'ի հիւսիս դարձուց և կարգա-

լով համառօտիւ զանունն Աստուծոյ Յակոբայ՝ մորթեց զայն. և զարիւնն որ պղնձի անօթի մի մէջ վազէր՝ դրաւ ՚ի մի կողմն՝ սեղանոյն չորս անկիւններն սրսկելու համար[13]: Այս առաջին արարողութիւնս կատարելէն ետև՝ քահանայն ոսկեղէն ափսէի վրայ դրաւ զոհին դեռ դողդոջուն անդամոց մի մասն հանդերձ փորոտեօքն՝ զոր ղևտացիք[14] լուացած մաքրած էին աւազանի սրահին մէջ, աղ և խունկ ցանեց, և յետոյ բոկոտն ելնելով ՚ի զնստագոյն վերելից ողջակիզաց սեղանոյն մինչև վերին ծայրն՝ դինւոյ և արեան նուիրումն արար, և արծարծեալ բոցոյն վրայ՝ որ մարդու շնչով վառած չէր[15], նաշհոյ և զուտ ձիթոյ փոխինդն արկանելով՝ որ ոսկեղէն բաժակի մի մէջ պատրաստուած էր՝ վերջապէս վառած փայտերուն վերայ դրաւ խաղաղական զոհն: Ողջակիզաց փայտն Սիւքեմայ[16] անտառներէն կը կտրուէր, զոր ստորին պաշտօնեայք տաճարին՝ խնամով ընտրէին և կեղևներն մաքրէին[17]: Իսկ զոհէն աւելցած միսն՝ բաց ՚ի երբուծէն և աջ ուսէն որ զոհագործաց մասն էր, Յովակիմայ տրուեցաւ՝ զոր իր մերձաւորագոյն ազգականացն բաժնեց, որպէս սովորութիւն էր:

Երբ քահանայական փողերուն ձայնն դեռ ևս հնչէր դաւիթներու լայնարձակ կամարակապներուն մէջ, և զոհն այրէր սեղանոյն վերայ՝ մին ՚ի քահանայից էջ կանանց դաւիթն արարողութիւնն լրացընելու համար՝ այն ատեն Աննա մանկիկն գիրկն առած՝ Յովակիմ ալ ետևէն՝ առաջ անցաւ գլուխն քողով ծածկեալ, և Աստուծոյ պաշտօնէին մօտենալով՝ նորա ոտից առաջն դրաւ զմատաղ աղաւնին Տեառն[18], որ գրեթէ անմիջապէս յորրանէ առ սեղանն անցանէր: Քահանայն ընկալաւ յանուն Աստուծոյ՝ որ բեղմնաւոր գործէ զարգանդ մարց, զայն պատուական աւանդն՝ զոր երախտագիտութիւն մօրն իրեն յանձնէր, և օրհնեց զՅովակիմ և զբարեպաշտ կողակից նորա. ինչպէս որ Հեղի նման

պարագայի մէջ՝ օրհնել էր զերկիւղածն Եղկանայ և նորա բարեբաղդ կինն. և յետոյ տարածելով իւր ձեռքն 'ի վերայ ժողովրդեան՝ որ գետին ծռած [19] նորա օրհնութիւնն ընդունէին, ասաց. «Ո՛վ Իսրայէլ, Աստուած յաւիտենական իւր երեսաց լոյսն սփռէ քոյ վերայ, ամեն գործդ յաջողէ, և քեզ խաղաղութիւն տայ»: Ցնծութեան և երախտագիտութեան ներդաշնակաւոր երգով մի և քահանայից տաւիղներուն ձայնովն՝ աւարտեցաւ ամենասուրբ Կուսին ընծայման հանդէսն ալ, որ կատարեցաւ նոյեմբեր ամսոյ վերջի օրերն Սիոնի սուրբ տաճարին մէջ:

Մարդիկ որ սովորաբար իրաց արտաքին երևոյթն միայն դիտեն՝ ուրիշ բան ոչ տեսին այս արարողութեանս մէջ՝ բայց միայն հրաշալի գեղեցկութեամբ և զարմանալի եռանդեամբ բորբոքեալ մանկիկ մի զոր Աստուծոյ նուիրէ իւր մայրն՝ զոր այնչափ պահօք և արտասուօք ընկալեալ էր իբրև զաւակ դերանիկ. բայց հրեշտակք երկնից որ սաւառնէին այն սրբարանին վերայ՝ ծանեան որ այն մատղաշ և սիրուն արարածն՝ Եսայեայ նախաձայնեալ կոյսն էր. Սողոմոնի երգոց խորհրդական հարսն, և երկնայինն Եւա որ գայր ջնջել զմեղս՝ զոր յանցաւորն Եւա չէր կարացեալ ջնջել իւր արտասուօքն [20]. որդեգրական և սիրելագոյն դուստր հզօրին Աստուծոյ, այն զոր Ադամ յառաջագոյն նկատեալ էր 'ի բարձանց դրախտին, և որ սահմանեալ էր բերել նմա զմիակ ապաւէն փրկութեան յետ նաւակոծութեան իւրոյ. և երկոքին ևս լցեալ ցնծութեամբ և տեսնելով վերջապէս որ Մեսիային գալստեան օրերուն արշալոյսն փայլի՝ 'ի հեռուստ ողջունէին այն փափուկ ծաղիկն որ պիտի աճէր առ ոտս սեղանոյն, որպէս զձիթենին խաղաղութեան և նորոյ ուխտի, և որպէս սարդենին շանթահալած ընդ մէջ մարդոյ և երկնից:

Բայց ինչ զգայր Մարիամ յայնժամ իր սրտին

մէջ՝ որ սրբարար հոգւոյն շնչմամբն իբրև ծաղիկ բացուելով՝ խաղաղութեան սուրբ սիրոյ և պայծառլուսոյ մէջ խայտայր և շողայր. որպիսի՜ ծածուկ կապանօք միանար Աստուծոյ հետ՝ որ զինքն նախամեծար ընտրել էր 'ի միջի այնչափ կուսանաց և Թագուհեաց աշխարհի։ Այս բանս իր և Աստուծոյ մէջ անհասանելի խորհուրդ մի է. և սակայն ամենայն իրաւամբ կարեմք ասել թէ ոչ երբեք եղած էր նուէր մի քան զայս աւելի հաճոյական, և եկեղեցւոյ վարդապետք առ հասարակ՝ Ս. Եւոդիոս անտիոքացւոյն, Սուրբ Եպիփանու սաղամինացւոյն և Ս. Անդրէի կըրետացւոյն հետ միաբանին ասելու թէ Սրբուհւոյ Կուսին նուիրման պէս կրօնական գործ մի եղած չէր բնաւ 'ի մարդկանէ՝ այնքան աստուածահաճոյ։

Այն քահանայն որ ընկալաւ զսուրբ Կոյսն 'ի դասս դստերաց Սիոնի՝ անուամբն անյայտ է մեզ. Սուրբ Գերմանոս պատրիարքն Կոստանդնուպօլսոյ և Գէորգ Նիկոմիդացի համարին թէ Յովհաննու Մկրտչի հայրն էր. այս կարծիքս ճշմարտանման երևի եթէ մտածեմք Զաքարիայի Յովակիմայ գերդաստանին հետ ունեցած ազգակցութիւնն, և իրեն նոյն ատեն քահանայական դասակարգութեան մէջ ունեցած իշխանութիւնն[21], և այն գորովական սէրն զոր պահեց միշտ Մարիամ առ Նա և առ Եղիսաբէթ Ա։ Որ զինչ և իցէ Յովակիմայ երջանիկ դուստրն հանդիսապէս մտաւ 'ի դասս կուսանաց կամ օրիորդաց որ հեռի յաչաց մարդկան կը պահուէին ընդ հովանեաւ սուրբ տաճարին, զորս երբայեցիք հալմա անուանէին որ կոյս նշանակէ։ — Առաքելական աւանդութենէ, սուրբ հարց գրուածներէն և Եկեղեցւոյ կարծիքէն հաստատուած և ապացուցուած է՝ որ Մարիամ իր գեղեցկագոյն տարիներն տաճարին մէջ անցուց. և գիտեմք ալ որ Եկեղեցին տարակուսական բաներն հաստատելու սովորութիւն չունի[22] Բ։ Այսու ամենայնիւ հե-

րետիկոսք ոմանք այս պարագայս առասպել կարծեցին. եղան և ուղղափառք որ մթին համարեցան այս կէտս՝ հնութեան քողովն ծածկեալ և դժուարին 'ի լուսաբանել: Առջիններուն ուրացութեան վերայ ոչ զարմանամք. բայց վերջիններուս տարակոյսն մեզ յիրաւի անտեղի երևի. վասն զի եթէ կայ հարազատ նշաններ ունեցող քրիստոնէական աւանդութիւն մի՝ անտարակոյս այս է: Սուրբն Եւոդիոս՝ որ յառաջ քան զամենեսին Սրբոյ Կուսին մանկութեան այս փառաւոր պարագայն յիշէ՝ իւր Լոյս կոչուած թղթոյն մէջ, և որ Նիկեփորոսի ձեռքով՝ առ մեզ հասած է, Եւոդիոս սուրբ առաքելոց և Տիրամօր ժամանակակից էր. ինքն Անտիոքայ ասորւոց եպիսկոպոսն էր՝ ուր յաճախէին հրեայք և քրիստոնեայք. և Երուսաղեմայ տաճարին ուր նոր հաւատացեալք խորին մեծարանօք մատչէին զկնի հետոց Որդւոյն Աստուծոյ և մօր նորա երանելւոյ՝ դեռ կանգուն կայր իւր բովանդակ փառաւորութեան մէջ: Այս աւանդութիւնս՝ որ յԵրուսաղեմայ եկեղեցւոյն եկած էր որոյ անդամք էին ոչ միայն առաքեալք և աշակերտք Յիսուսի Քրիստոսի՝ այլ և բազումք յազգականաց Սրբոյ Կուսին և Ս. Յովսեփայ, այն նախկին ժամանակներէ 'ի վեր հաստատուեցաւ կրօնական յիշատակարանով մի՝ որ ապացուցական փաստ մի է նոյն իսկ յաչս բողոքականաց [23]: Վերջապէս Ս. Հարց մեծագոյն մասն [24], և յանուանէ Ս. Հերոնիմոս որ նոյն իսկ այն աստուածակոխ տեղերն բնակէր և աւանդութիւնք դեռ կենդանի և մօտաւոր էին ժամանակաւ, այս պարագայս ճշմարիտ համարին: Ապա ուրեմն այս աւանդութիւնս տալ պատմական ստուգագոյն դիպաց կարգն կարէ համարուիլ:

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ Դ. ԳԼԽՈՅ

1 Կլիտոն փոքրիկ գետ կամ հեղեղատ մի է՝ որ ընթանայ ընդ մէջ Նազարեթի և Կարմելոս լերին, որ ամառն Պաղեստինու միւս գետերուն պէս ցամքի, իսկ անձրևային եղանակին յորդէ և ծաւալի, և հունքն դժուարանցանելի լինին. հոս էր որ կորեաւ Սիսարայի յաքինացւոց զօրավարին բանակն։

2 Դաւթի կարգադրութեամբն քահանայք 'ի քսանևչորս դասակարգութիւնս բաժնուած էին, յորոց իւրաքանչիւրն շաբաթ մի սպասաւորէին յԵրուսաղէմ. իւրաքանչիւր դասակարգութիւն ալ յեօթն խումբս բաժանէին, իւրաքանչիւրն նոյն եօթնեկին մէջ յատուկ պաշտօն վարելով զոր վիճակաւ հանէին. Զաքարիա Աբիայի դասակարգութենէն էր (Բրիտոյ Գործոնեան հրէից)։

3 Վոլնէյ փրանկիացի 'ի ճանապարհորդութեանն յարևելս տեսաւ նռնենիներն պտղալից յամսեանն յունուարի 'ի ծովեզերս Ասորեաց, 'ի բացօթեայ դաշտս անկեալ։ Մեր երկիրներուն մէջ, ասէ նա, բնութիւնն բաժնած է զեղանակս տարւոյ ամիսներով. իսկ անդ կարեմք ասել թէ միայն ժամերով բաժնուած են. եթէ Տրիպօլսոյ մէջ յուլիսի տօթէն նեղիս՝ վեց ժամ հեռի դէպ 'ի լեռներն գնա, և մարտ ամսոյ զովութիւնն գտանես. և ընդհակառակն եթէ դեկտեմբերի ցուրտ խմանաս լերանց վերայ՝ մի աւուր ճամբով 'ի ծովեզերս հասանես՝ մայիսի ծաղկամբք զարդարեալ։

4 Սրբոյն Աննայի տանս վերայ մենաստան մի շինուեցաւ՝ որ յետոյ 'ի մզկիթ փոխուեցաւ (Շաթոպրիան Ուղևորութիւն 'ի Բարիզէ յԵրուսաղէմ հտ. Բ էջ 211)։

5 Հանդիսաւոր ընծայմանց ժամանակ հրէից սովորութիւն էր միշտ զոյգ մի մատուցանել. որպէս Աննա մայր Սամուելի մատոյց՝ իր զաւակն 'ի Սելով տարած ատեն։ Հայրն Քրուազէ համարի թէ նոյնպէս զոյգ մի մատուցուած է Ամենասուրբ Կուսին ընծայման ժամանակ, որ շատ հաւանական է, որովհետև գրեթէ անտանօրինելի էր։

6 Ս. Անդրէասա կրետացի և Գէորգ Նիկոմիդացի։

7 Շէլ ասացեալ վայրն տասն կանգնաչափ տեղ մի էր՝ ընդ մէջ գաւթին հեթանոսաց և կանանց։

8 Գրապանակ և եբրայեցերէն Թեֆիլլիմ ասացեալն մագաղա-թի շերտեր էին՝ որոց վերայ մանրատառ Թանաքով Սուրբ Գրոց չորս խօսք գրուած էին, և զորս Հրեայք ձախ արմկան վերայ պլլէին կամ ճակատնուն վերայ կրէին։ Յիսուսի Քրիստոսի ժամանակ շատ յաճախեալ էր այս սովորութիւնս աւելի եր-կայն գրութիւններով մանաւանդ առ փարիսեցիս, որով կու-զէին յայլ հրէից որոշուիլ, և իբրև աւելի պատուիրանապահք պատիւ ստանալ, որոյ համար Տէրն զիրենք յանդիմանէր (Պաս-նաժ հտ. Ե, գիրք Է գլ. 17)։

9 Թոլէփ տեսակ մի քառակուսի վերարկու էր՝ զոր Հրեայք ագանէին աղօթելու համար 'ի՛տաճարն եկած ատեն, զոր ոմանք վզերնին պլլէին, և այլք գլուխնին ծածկէին՝ որ աւելի սովորա-կան էր (Պասնաժ հտ. Ե, գիրք Է)։

10 « Վասն որոյ պարտ է կնոջ շուք ունել գլխոյն վասն հրեշ-տակաց » (Ա. Կորնթ. ԺԱ. 10)։

11 « Աստուած իսրայելի պատերազմաց մէջ յաղթութիւն-ներն գուշակելու համար՝ 'ի գործ ածէր զգոհար ակունսն որ յե-ռեալ էին 'ի տախտակն քահանայապետի ասացեալ լանջապանա-կին վերայ՝ զոր կրէր քահանայապետն. վասն զի երբ յաղթու-թեամբ պիտի աւարտէր պատերազմն՝ այնմ՝ գոհարներն կարգէ դուրս փայլէին, որով ժողովուրդն իմանայր թէ Աստուած իր ամենակարողութեամբն պատրաստ էր իրենց օգնելու։ Բայց իմ այս բաները գրած ատենս՝ երկու հարիւր տարիներէ 'ի վեր էր որ այս լոյսս դադրած էր » ասէ Յովսեպոս ( Հնախօս. հրէից գիրք Գ)։

12 Յաստուծոյ շնորհք մի խնդրելու և կամ ընկալեալ շնոր-հաց համար երախտագէտ լինելու զոհն ողջակիզեան զոհ անուա-նէր։

13 Ողջակիզաց երկայն քառակուսի սեղանոյն չորս անկիւն-ներն չորս փոքրիկ սիւներ կային մի կանգուն բարձրութեամբ որ եղջերք սեղանոյ անուանէին. սոցա մէջն փորուած էր և զո-հից արիւնն այնոց մէջ հեղուին. ինչպէս շատ անգամ յիշատա-կի 'ի Ս. Գիրս (Բրիտոյ Պատմութիւն հրէից)։

14 Զոհ մի մատուցանելոյ համար բազմաթիւ քահանայք և ղևտացիք հարկաւոր էին. Պասնաժ ասէ թէ գառն մի զոհելոյ համար տասնևութ զոհագործք պէտք էին։

15 Զոհից սեղանոյն կրակն վառելոյ համար բերնով փչել կամ փուքով արծարծել օրէն չէր. այլ վառած ածխոյ վերայ իւղ թափելով բռընկցընէին (Բրիտոյ)։

16 Զոհի փայտն Պաղեստինու Նաբլուսա երկրէն գայր, զոր կեղևներէն մաքրելով ամբարէին. Սիւքեմայ երկիրն ալ ար-դէն անտառային էր ( Թողնոլկյուռնեան+ աշխարհէց հտ. Դ)։

17 Բրիտոյ Պատմութեան հրեից։

18 Ըստ մահմետական աւանդութեան երբ Աննա մայրը Ըղ-կոյսն առ քահանայս՝ ասաց նոցա զբանս զայսոսիկ. Ահաստէյ նաւէյրն վըր էս նաւէյրէմ, ինչպէս որ գրեալ է Ղուրանին մէջ, և որոյ պարսկական յարասութեանց մէջ յաւելլու. Որոնցնէ-դարգն մի է՝ վըր էր էնչ Աստուած. կամ ճիշտ եւս Որոնցնէ-դարգին տարէ գալոց է Աստուած (տ՛ Էրպլոյ Մարինապալեան տրանէյլեան)։

19 Քահանային օրհնութիւն տալու ժամանակ՝ ժողովուրդն ձեռքով երեսն ծածկէր, որովհետև արգելեալ էր հայել՚ի ձեռս նորա. Հրեայք համարէին թէ Աստուած քահանային ետևն կեցած՝ նորա ձեռաց մէջէն իրենց նայէր. ուստի ոչ համար-ձակէին իրենց աչքն ՚ի վեր առնուլ. վասն զի ողոք խորէ փեռանել զԱստուած և տալէլ (Պատնած գիրք Ի գլ. 15)։

20 Իւայի զղջման սաստկութիւնն իմացնելու համար՝ բաբբիք ասեն թէ Տիբերիոյ ծովակն նորա յարտասուացն ձևացած է։

21 Հրեայք համարէին զՅովհաննէս Մկրտիչ մեծ քան զՔրիս-տոս որդի քահանայապետի լինելուն համար (Յովհ. Ոսկեբ. ճառ ԺԲ)։

Ա. Մեր յայսմաւուրաց մէջ (՚ի Նոյեմբ. 21 և յապր. 6) գրի զի ծնողք Սրբոյ Կուսին՝ որ ուխտեալ էին Աստուծոյ նուիրել զնա «Բերին զաղջիկն ՚ի տաճարն երից ամաց. զոր առեալ քա-հանայն Զաքարիաս զսուրբ աղջիկն ՚ի գիրկս իւր. կոչեաց զանուն նորա Մարիամ, որ ասի լուսաւորեալ... օրհնեաց Զաքարիա զսուրբ աղջիկն, և մարգարէացաւ վասն նորա՝ անուանի լինել ՚ի մէջ մարդկան և երանելի յամենայն ազգաց։ Իսկ Յովակիմայ և Աննայի կատարեալ զուխտ իւրեանց՝ և առեալ զաղջիկն, դար-ձան ՚ի տուն իւրեանց. և յամենայն ամի ՚ի տարեկիցն բերէին զաղջիկն ՚ի տաճարն և տանէին։ Իբրև եղև եօթն ամաց սուրբ աղջիկն Մարիամ՝ բերին ՚ի տաճարն, և յանձնեցին Աննայի մարգարէի (դուստր Փանուէլի յազգէ Ասերայ), և այլ ոչ տա-րան. և մնաց անդէն զամս եօթն և ձնաւ սրբութեամբ ՚ի տա-ճարն, և ՚ի հրեշտակաց լինէր սպասաւորեալ և կերակրեալ»։

22 Եկեղեցին ՚ի պատիւ ընծայման Սրբոյ Կուսին հաստա-տեց զտօնախմբութիւն նորին որ կատարի ՚ի 21 Նոյեմբերի։

Բ Այս թուականս ճիշդ երևի՝ որովհետև ամենայն եկեղե-ցիք քրիստոնէից ՚ի նմին աւուր տօնեն զընծայումն Կուսին։ Բայց թէ երբ սկսաւ տօնուիլ՝ յայտնի չէ. երևի թէ յառաջին ժամանակս շատ տեղեր կը տօնուէր. բայց սահմանադրու-թիւնն և հրամանն տօնելոյ յամենայն տեղիս եղև յամի 1465 Պիոս Բ Քահանայապետի վճռովն։ Պատմէ Յովհան դամասկա-ցի զի հեթանոսք ՚ի հնումն տօն մի կատարէին ՚ի 30 յունուարի՝

յորում էգ. գաւառ մի ընծայէին խաղաղութեան չաստուածու-հւոյն, և կոչէին զայն տօնախմբութիւն մաքուր գառին. այս գառնս՝ ստուեր իմն էր Սրբոյ Կուսին որ ընծայեցաւ 'ի տաճարին վասն խաղաղութեան համօրէն ազգի մարդկան՝ ոչ 'ի յունուարի 30 այլ 'ի նոյեմբերի 21, որով և եղև օրս այս տօն ամենամաքուր գառին այսինքն Սրբոյ Կուսին (Պորփիւր փոնից էջ 110):

23 Կիպպըն անգլիացի մեծահամբաւ պատմաբանն՝ բողոքական լինելով հանդերձ և ոչ նպաստաւոր կրօնից, հաւանի ընդ հարազատութիւն կրօնական աւանդութեանց 'ի Պաղեստին ասելով « Քրիստոնեայք անընդհատապէս աւանդութեամբք հաստատեցին զամենայն դէպս արժանիս յիշատակաց » (Հա. Դ էջ 101): Եւ ըստ Շաթոպրիանի եթէ երկրիս վերայ ստուգագոյն բան մի կայ՝ Երուսաղեմի քրիստոնէական աւանդութեանց հարազատութիւնն է:

24 Սուրբքն Եպիփան, Գրիգոր Նիւսացի, Գր. Նազիանզացի, Գերմանոս պատրիարք Կ. Պօլսոյ, Յովհան դամասկացի և Գէորգ Նիկոմիդացի, և այլք:

## ԳԼՈՒԽ Ե.

### *Մարիամ 'ի տաճարին.*

Տաճարին որմափակ շրջապատին մէջ՝ ընդարձակ երկիր մի կայր, ուր կրօնական շէնք մի շինուած էր՝ Աստուծոյնուիրեալ կուսանաց բնակութեան համար սեպհականուած։ Հոն տեղն Երուսաղեմայ քրիստոնեայք մատուռ մի կանգնեցին՝ զոր յետոյ Կոփրետոսի քաջ խաչակիրքն յեկեղեցի փոխեցին ոսկէզօծ գըմբէթաւ [1], և որուն ներքին որմերն շատ անգամ տաճարական ասպետներն սարակինոսաց աւարներովն զարդարէին. և ահա այն շէնքն յանձնեց Զաքարիա իւր մանուկ աղջականն [2]։

Թէպէտ և Իսրայելացւոց մէջ կուսութիւնն առժամանակեայ ժուժկալութիւն մի էր՝ որ յետոյ տեղի կու տայր ամուսնական պարտուց, սակայն այսու ամենայնիւ իւր առանձնաշնորհութիւններն և պատիւներն ունէր։ Աստուծոյ մասնաւոր կերպով հաճոյ էին անարատ երիտասարդաց և կուսանաց աղօթքն. ուստի ոչ թէ թագուհի՝ այլ կոյս մի ընտրեց մարդկան ազգի փրկութիւնն կատարելու համար։ Այսպէս և տեսանողքն Յուդայ՝ ընտրեալ բայց միանգամայն շատ անգամ պատուհասեալ ժողովրդեան՝ իրենց թշուառութեանց կամ յաղթութեանց մարգարէական պատկերն ներկայացուցած ժամանակ, իրենց խօսից մէջ յիշէին ուրախ կամ սգաւոր կոյս մի որ Հրէաստանի գաւառներն և քաղաքներն նշանակէր։ Այն սպառասպուռ կոտորածոյ պատերազմաց մէջ երբ եբրայեցւոց երկայրի սուրն Մովաբու կանայքն և ծերերն և մանկունքն թրէ անցընէր, կուսա-

նաց խնայէին։ Նոյնպէս զոհագործ քահանայն՝ որում յօրինաց արգելեալ էր իւր սրտին պէս սիրած բարեկամին և Ժողովրդեան իշխանին անգամ Թաղման հանդիսին գտնուիլն՝ որպէս զի մի պղծեսցի, կարէր մերձ գտանիլ իւր քեռն մեռելոյ՝ եթէ կոյս էր, և այսու պղծեալ ոչ համարէր (Ղեւտ. ԻԱ 1)։

Հարսն ասացեալ օրիորդք՝ տաճարն դեռ չշինուած՝ եբրայական պաշտաման արարողութեանց մէջ՝ որոշեալ մաս մի ունէին. ինչպէս տեսանեմք զի Մովսէսի քոյրն Մարիամ նոցա գլուխն անցած՝ Թմբկօք և պարուք տօնեն Կարմիր ծովուն յաղթական անցքն։ Այսպիսի պարաւոր օրիորդաց դասք՝ որ յԵգիպտոսէ յանապատն անցին՝ եբրայեցւոց մէջ երկար ատեն տևեցին։ Սելովայ կուսանքն Դատաւորաց ժամանակ՝ որ Իսրայէլի ուրիշ օրիորդներէն զատ կերպով մի Բարձրելոյն ծառայութեանն նուիրեալ էին՝ տօնի մի ժամանակ տաւղօք և երգովք սուրբ տեղւոյն մօտ պարած ատեններին՝ Բենիամինի երիտասարդքն զնոսա հափափեցին[3]։ Եւ այնչափ արմատացեալ էր այս սովորութիւնն՝ որ և ոչ այս ծանր դէպքովս դադրեցաւ՝ մինչև այն Թշուառ ատեններն՝ յորում տապանակն աներևոյթ եղև, և առաջին տաճարն կործանեցաւ։

Հաւանական է որ ամենայն հարսնայք ալ այս նուիրական պարուց մասնակից էին՝ բաւական էր որ իրենց անունն անպարսաւ լինէր. բայց նոցա բազմութեան մէջ ընտրեալ մաս մի ալ կայր՝ որ աւելի եռանդեամբ սեղանոյն շուրջն բոլորէին։ Երբ Աստուծոյ տապանակն դեռ վրաններու տակ հանգչէր՝ այն ուխտաւոր կանայք որ և աղօթէին առ դուրս խորանին, նուիրեցին Աստուծոյ իրենց յԵգիպտոսէ բերած մետաղէ հայելիներն (Ելից ԼԸ 8)։ Անշուշտ սոքա բարեպաշտ այրիք էին հրաժարեալք 'ի նոր հարսանեաց՝ աւելի ևս երկնային բաներու զբաղելու համար. և

այս կանանց առաջնորդութեան ներքև էին այն կուսանքն կամ հաւրմայք՝ զորս իրենց ծնողքն սրբարանին սպասաւորութեան նուիրած էին. այս է Ս. Հերոնիմոսի կարծիքն ալ Ելից վերոյիշեալ տողին նկատմամբ։

Եւ որովհետև ծնողաց ուխտն սովորաբար առժամանակեայ էր և կարելի էր փրկանաւորութեամբ ազատիլ, և փրկանաւորութեան գինն ալ նուազ գումար մի էր [4], ուստի քանի մի տարի անցնելէն ետև փրկանաւորէին զնոսա [5]. որով ուխտ առժամանակեայ կամ փոխ տալ Աստուծոյ կը կոչուէր [6]. ինչպէս Աննա իւր փոքրիկ Սամուէլն 'ի Սելով տարած ատեն ասէր. Ես զնա փոխ տուի Աստուծոյ (Ա. Թագաւոր. Ա 28)։

Իսկ Բաբելոնի գերութենէն դառնալէն ետև պարսկային գաղափարք իրենց վրայ ալ տիրած լինելով՝ որոց մէջ կանանց արգիլուած էր կրօնական հանդիսից մասնակցութիւնն [7]. հաւրմայից կամ կուսանաց կենաց վերայ ալ փոփոխութիւն եղև, և կերպիւ իւիք դադրեցան ազգային մարմնոյ մասն սեպուելէն, և այլ ոչ ևս երևէին հրապարակաւ պաշտաման արարողութեանց ժամանակ։ Քահանայապետացն երապետութեան ատեն՝ կուսաստանին մէջ փակեալ կեանք մի վարէին, և այնպէս անտեսանելի և մնացեալ անցուցանէին իրենց օրերն՝ որ երբ Հեղիոդորոսի ամբարիշտ սրբապղծութեամբն բոլոր Երուսաղէմ տակնուվրայ եղև և այս կուսանքս շփոթած Ոնիա քահանայապետին քովը վազեցին՝ Իսրայէլացւոց պատմաբաններուն այնչափ անսովոր և զարմանալի երևցաւ այս բանս՝ որ իրենց տարեգրութեանց մէջ արձանագրեցին [8]։

Ուստի որչափ ուրիշներն հակառակն ասացին, սակայն յայտնի է թէ Մարիամու տաճարն ընծայուած ժամանակ՝ նոյն սուրբ տեղւոյն սպասաւորութեան

նուիրեալ կուսանք կային. և այս բանիս վկայեն նախակին քրիստոնէից սահմանադրութիններն ալ [9], և Սուրբքն Ամբրոսիոս և Հերոնիմոս զնոյն հաստատեն։ Բայց շատերն հետաքրքիր են գիտելու՝ թէ ինչ բաներ հանդիպեցան՝ երբ Կոյսն այն կուսաստանին բնակէր, ո՞յք էին իր այն ատենի զբաղմունքն, յօժարութիններն, սովորութիններն և հոգևորական պարապմունքն. որոց նկատմամբ յոյժ սակաւ են մեր ունեցած հարազատ յիշատակարանք։ Անշուշտ այս բաներուս վերայ մանրամասն տեղեկութիններ տուած էր այն Աստուածամօր աւանդական պատմութիւնն՝ զոր Ս. Եպիփան 390ի ատեններն՝ շատ հին համարէր. բայց աւա՜ղ որ հիմա կորսուած է այն գիրքն։ Իսկ այն որ կոչի Աւետարան ծննդեան Կուսին՝ անընդունելի է յեկեղեցւոյ. և Ս. Հերոնիմոս ալ որ հաստատէ Մարիամու ընդունուիլն 'ի դաս դստերաց Տեառն՝ աւելի բան մի ոչ յաւելու։ Պատմութեան այս պակասն լրացընելու համար՝ որ երևի թէ Աստուած կամեցել է մութի մէջ թողուլ, ուրիշ բան չունիմք՝ բայց եթէ քանի մի անստոյգ տողեր և Սրբոց Հարց մի քանի կցկտուր խօսք, զորս որչափ ալ ջանամք կարգի վերածել, սակայն և այնպէս գոհացուցիչ ստուերագիր մի չեմք կարող ներկայացընել։ Եւ սակայն հնդիկ անկուածագործին կամիմք նմանիլ՝ որ պատռած կերպաս մի թել առ թել հիւսելով կը միացնէ, նախ անսպառ համբերութեամբ պատռած կտորին թեզաններուն ծայրերն ծուատելով և աննշմարելի հանգուցիւք նոր թել կապելով նոցա ծայրերն, և անհաւատալի զգուշութեամբ իւր մագոգն սահեցընելով բզկտած աղբին առէջքին մէջէն՝ որ փրթելու վերայ են։ Մեք ալ նոյնպէս ձեռն հարցուք այս դժուարին գործոյս՝ Կուսին կենաց պատուական ոստայնին ցրուեալ կտորներն հաւաքելով՝ եթէ հնար է նորէն հիւսելու համար։

Մեր անխոնջ աշխատութիւնն այն պիտի չլինի որ մտացածին գործ մի յառաջ բերեմք, որովհետև այն խորին յարգութիւնն զոր ունիմք այս նիւթոյս՝ մեզ ոչ ներէ այս բանս, այլ կամիմք ստուգագոյն հեղինակաց հետևելով և եբրայեցւոց կենցաղին և սովորութեանց քննութեամբն՝ ճիշտ և որչափ հնար է ճշմարտատիպ գաղափար մի տալ՝ եթէ ներելի է ասել միակեցական կենաց Մարիամու 'ի տաճարի անդ:

Հին ատենուան բարեպաշտական վիպաց մէջ հաճար և բիւր զարմանալի հրաշք պատմին Մարիամու մանկութեան ժամանակ. մեք 'ի բաց թողումք այն ամէն հրաշալի իրերն՝ որ բաւականապէս հաստատեալ և վաւերացեալ չեն. սակայն ոչ կամիմք լռութեամբ անցանել այն սխալ կամ թէ ասեմ անընդունելի կարծեաց վերայ զոր յոյժ միամտութեամբ և առանց քննութեան աւանդեն ոմանք 'ի մատենագրաց՝ թէ և սուրբք և արք կրօնաւորք [10], որք համարին թէ Ս. Կոյսն միշտ ամենասուրբ լինելոյն համար՝ որում ոչ ոք հակառակի, տաճարին սրբագոյն տեղն դրուած էր. այսինքն Սրբութիւն սրբութեանց ասացեալ սրբավայրն, որ նիւթականապէս ալ սխալ է: Վասն զի Սրբութիւն սրբութեանցն՝ որ էր անմատոյց սրբարանն Աստուծոյ զօրութեանց՝ անմատչելի էր ևս ամենայն քահանայից, բաց 'ի գերագոյն քահանայապետէն, որ նա ալ տարին մի անգամ մտանէր անդր՝ յետ բազում պահոց և աղօթից և մաքրութեանց. և հոն մտած ժամանակ՝ խնկոց անուշից ամպ մի զինքն պատէր՝ իր և Աստուածութեան մէջ անջրրպետ մի գնելով. վասն զի մահկանացուն ոչ կարէր զնա տեսանել առանց մեռանելոյ՝ ասեն Գիրք. և հոն տեղն քանի մի վայրկեան միայն մնացած ատեն ժողովուրդն յերեսս 'ի վայր անկեալ հառաչէին՝ վախնալով որ մի՛ գուցէ քահանայապետն հոն տեղն մեռնի: Ուստի և ինքն շուտով մեծահաց կոչունս տայր

իր բարեկամացն՝ նոցա հետ ուրախակից լինելու համար՝ որ այնպիսի ահագին վտանգէ միազատեալ էր[11]: Ասոր ահա երևի թէ Սրբոյ Կուսին 'ի սրբութիւն սրբութեանց բնակիլն և դաստիարակուիլն՝ անհնարին է: — Եւ բաց ողջմտութենէ՝ նոյն իսկ Երուսաղեմայ տեղագրական աւանդութիւնք ալ այս յանդուգն կարծեաց դէմ ելանեն. վասն զի այս օրս էղ Սադրաս ասացեալն՝ որ 'ի նախնումն քրիստոսական եկեղեցի մի էր՝ կանգնեալ 'ի նմին իսկ տեղւոջ ուր էր կուսանաց բնակարանն, այժմեան Իօմէրի մզկթին մասն համարի՝ բայց անտի զատուած է, և այն շէնքին մէջ ամփոփուած չէ. և սակայն Իօմէրի մզկիթն ճիշդ տաճարին գետնոյն վրայ շինուած է:

Հայրն Քրուազէ յիսուսեան վարդապետն ևս ոչ ընդունի այս կարծիքս թէ Մարիամ Սրբութիւն սրբութեանց կոչուած խորանին մէջ բնակած լիցի, բայց իւր Հրահանգք բարեպաշտութեան կոչուած գրոց մէջ՝ բոլորովին ալ չուզելով մերժել՝ միջին ճամբայ մի հնարի ասելով թէ քահանայք տաճարին իւր գերազանց առաքինութեանց վերայ զարմանալով՝ հրաման տուեալ էին իրեն երբեմն երբեմն 'ի տաճարն երթալու աղօթելու: Բայց այս իմաստուն վարդապետս այս ասելովշատ բաներ մոռացած երևի. Նախ որ առ հրեայս կին մարդն՝ գերւոյ պէս անսուրբ համարէր, որոյ աղօթքն ևս պարտաւորեալ բան մի չէր սեպուէր[12]. այնպէս որ իրեն համար սահմանեալ գաւթէն անդին ալ չէր կարող անցնիլ. իսկ տաճարն մտնելն բոլորովին արգիլեալ էր՝ թէ և մարգարէ լինէր կամ դուստր արքայի: Երկրորդ քահանայք այս առանձնաշնորհութիւնս ոչ կարէին տալ Մարիամու, որովհետև իրենք ևս չունէին, և իրենց կարծեօքն անշուշտ մահուան վտանգի մէջ դնել էր զինքն: Վերջապէս եթէ այս նախապաշարումն և այս երկիւղս ալ ունեցած չլինէին՝ սակայն ոչ կարէին

Թողուլ զոք մտանել 'ի Սրբութիւն սրբութեանց կոչուած տեղն, որովհետեւ ոչ կամէին թէ ժողովուրդն իմանայ թէ տապանակն հոն չէր և անյայտ եղած էր՝ կորսուած կամ ծածկուած Յուդայի լեռանց մթին այրերէն միոյն մէջ Երեմիա մարգարէին ժամանակէն 'ի վեր[13]: Ապա ուրեմն մեր վերն դրած կարծիքն թէ Մարիամ ալ այլոց կուսանաց հետ 'ի կուսաստան բնակէր՝ աւելի հաւանական է:

Ուստի Մարիամ այն տեղն կատարեալ դաստիարակութիւն մի առաւ՝ որչափ որ ներէին նոյն ժամանակի գիտութիւնքն և հրէից սովորութիւնքն. այս կրթութեան գլխաւոր նիւթք էին տնական աշխատութիւնք՝ յորոց ազատ չէին և ոչ իսկ Աւգոստոս Կեսարու կինն և դուստրն կայսերական պալատան և Հռոմայ ճոխութեանց մէջ[14]: Ուրեմն Մարիամ ևս մովսիսական օրինաց ճիշդ պահպանութեան և իւր ազգին սովորութեանց համեմատ մեծնալով թռչնոց երգել սկսած ատեն արթըննար՝ երբ չար սատանայք ղաեն, և Աստուած աւելի հաճոյապէս լսէ արդարոց աղօթքն[15]: Եւ Աստուծոյ մեծվայելչութեան առջև որ ամեն տեղ է և զամենայն գործս մարդոյ տեսանէ՝ նոյն իսկ գիշերուան մթոյն մէջ, ամենայն պարկեշտութեամբ հագուելով գոհանայր զԱստուծոյ իրեն օր մի ևս պարգևելուն համար, և քնոյ ժամանակ զինքն չար ոգիներու դարաններէն պահպանելուն համար[16]: Հագուիլն կոկուիլն շուտով աւարտէր՝ առանց զարդասիրութեան, չունէր ոչ ապարանջանս ոչ մարգարտեայ մեհեանդս և ոչ ոսկի շղթայս կիտուածովք արծաթոյ, և ոչ ծիրանի պատմուճանս որպէս վայել էր և որպէս հագնէին իսկ իւր ցեղին աղջկունքն. այլ յակնթի գունով պարեգօտ մի ուստի աղուական ու քաղցր լոյս մի անդրադառնայր՝ որպէս այն դաշտային ծաղկէն, վրայէն ճերմակ պատմուճան և 'ի նոյն նիւթոյ գօտին իր մէջքն կապած և ծայրերն երկայն

ձգուած, գլխէն 'ի վայր ալ երկայն և շնորհալի լուչակ մի առանց արուեստակեալ ծալքերու, և այնպէս զետեղուած՝ որ պէտք եղած ժամանակն շուտով մի կարէր ամբողջ երեսն ծածկել, վերջապէս ոտքն զգեստին համեմատ մուճակներ. այս էր ահա Մարիամու զգեստն արևելեան սովորութեան համեմատ:

Սովորական լուացումներէն ետև՝ Կոյսն և իւր ընկերներն առաջնորդութեամբ այն բարեպաշտ կանանց որ առաջի Աստուծոյ և քահանայից այն անգին աւանդին պահապաններն էին, երթային այն վերնատունն՝ ուր հաւաքմայք իրենց պատուոյն համեմատ նստէին [18]: Երբ արեգակն սկսէր իւր նախկին ճառագայթներովն ոսկեզօծել Արաբիոյ հեռաւոր լեռինքն, և արծիւն ամպոց մէջ թևապարէր, և քահանայից փողերուն ձայնովն խաղաղական ողջակէզն այրէր սեղանոյն վերայ՝ Մարիամ գլուխն քօղին ներքև խոնարհած՝ եռանդեամբ կրկնէր Եզրասայ ութևտասն աղօթքն, և բոլոր Իսրայէլի հետ 'ի միասին խնդրէր յԱստուծոյ զՕծեալն նորա՝ որ խոստացեալ էր աշխարհի, և այնչափ ուշանար գալու, ասելով.

« Աստուած իմ, փառաւորեալ և օրհնեալ լիցի քոյ անունդ երկրիս վերայ՝ զոր ստեղծեր քոյով հաճութեամբդ, քոյ արքայութիւնդ թագաւորել տուր. Ծաղկեսցի փրկութիւնն և շուտով եկեսցէ Մեսիայն » [20]: — Ժողովուրդն ալ խմբովին պատասխանէր. Ամէն ամէն: Յետոյ երգէին այն գեղեցիկ Սաղմոսին վերջին տներն որ Անգեայ և Զաքարիա մարգարէից շարագրածն համարի (Սաղմ. ճխե):

«Տայ հաց քաղցելոց, և արձակէ զկապեալս Տէր: Տէր բանայ զաչս կուրաց, և կանգնէ զգլորեալս Տէր: Տէր սիրէ զարդարս: Տէր պահէ զպանդուխտս. զորբս և զայրիս ընդունի Տէր, և զճանապարհս ամբարշտաց կորուսանէ: Թագաւորեսցէ Տէր յաւիտեան, Աստուած քո Սիովն, ազգէ մինչև յազգ » [21]:

Արարողութիւնն աւարտէր դաւանանքի [22] ընթերցմամբն և օրհնութեամբ քահանային որ պարագլուխ էր հասարակաց աղօթից։ Եւ այսպէս նոյն կարգն նորոգէր առտու և երեկոյ։

Կրօնական պաշտամանց կատարուելէն յետոյ՝ Մարիամ և իւր ընկերքն իրենց սովորական գործոց ըզբաղէին, ոմանք իրենց շոյտ մատամբքն մայր փայտէ շինուած իլերով արագ արագ մանէին, ոմանք ծիրանի յակնթի և ոսկի թելերով տաճարին վարագոյրներն ոստայնէին, այլք սիդոնացի պաստառաձիգ (քէրկէֆ) մի առջևնին դրած՝ զանազան ձևերով ծաղկներով գեղեցիկ գործեր շինէին՝ որովք բոլոր Իսրայէլի մէջ գովելի հանդիսացած էին հանճարեղ կանայք, ինչպէս Հոմերոս ևս իր ազգին կանայքն այս բանիս համար գրուատէ [24]։ Սուրբ Կոյսն իր ազգակից աղջկանց մէջ շատ ճարտար էր այս ձեռագործոց՝ զորս նախնիք մեծապէս յարգէին. Սուրբն Եպիփան ասէ թէ իր ասղնեգործերն հրաշալի բաներ էին, և շատ վարպետ էր բրդէ բեհեզէ և ոսկեթելէ գործուածներու մէջ [25]։ Արևելից յերկիրն աւանդութեամբ պահուած է իւր աննման ճարտարութեան յիշատակն՝ պելուսեան բեհեզոյ [26] մանուածոյն կողմանէ. և քրիստոնեայք Արևմտից իւր այս յիշատակս անմահացընելու համար կուսի ոստայն անուանեցին այն սպիտակ և փայլուն և գրեթէ գոլորշիի նման թեթև ցանցն՝ որ աշնան խոնաւ առաւօտներն հովտաց խոտերուն վրայ սփռուած երևի։ Նախնիքն հաւատացելոց մէջ հաւատարիմ և անքակտելի սիրոյ կապանօք նշանած աղջկունք՝ իրենց սուրբ ամուսնութեամբ կապուելու ժամանակն որ հասնէր՝ սովորութիւն ունէին թագուհւոյն հրեշտակաց խորանն աղեկատ (էօրէքէ) մի նուիրելու՝ ծիրանի երիզօք մաքուր բուրդ փաթթած [27]։ — Երուսաղէմայ Եկեղեցին ալ Սրբոյ Կուսին յիշատակն պահելու համար 'ի վաղ

ժամանակաց իր գանձուց մէջ պահէր Մարիամու նուրբ իլերն [28]։

Այսպիսի պաշտօնատէր և միշտ զբաղեալ կենաց մէջ ալ Կոյսն ժամանակ գտանէր ուսման պարապելու, և իւր արթուն և ուղիղ հանճարն զարմանալի կերպով զարգանայր՝ 'ի գնացս ջուրց անկուած արմաւենւոյ պէս։ Սուրբն Ամբրոսիոս ասէ թէ մեծ հմտութիւն ունէր սուրբ գրոց, և Սուրբն Անսելմոս հաւատայ թէ մովսիսական լեզուն կատարեալ գիտէր, այն հին եբրայեցերէնն զոր խօսէր Յեսու երբ Եղիմայ ձորոյն մէջ հրամայէր արեգական որ կացցէ, և զոր Աստուած ինքնին գործածեց տասնաբանեայ պատուիրանքն սրատուշակաև և խիստքար տախտակաց վերայ [29] գրելու ժամանակ։ Կամ այն է որ Մարիամ իր միայնակ ոքնութեանց մէջ Աննայի (մօր Սամուէլի) և Դեբովրայի լեզուն ուսանելով՝ տեսանողաց Իսրայելի վսեմական ոգւոյն թափանցել է, կամ այն է որ սրբարար Հոգին՝ որ զինքն այնչափ ձրիւք շնորհազարդել էր, շնչեալ է 'ի նա զշունչ քերթողական՝ որպէս զսիւքն դաշնակաւոր որ ընթանայր Դաւթի հողմաշարժ տաւղին վերայ [30]. որ ինչ և իցէ՝ չեմք կարող ժխտել որ այս գեռահասակ մարգարէուհին՝ որ Նոր օրինաց ամենէն գեղեցիկ օրհնութիւնն երգեց, հանճարոյ քաղցրագոյն և ազնուագոյն ներշնչմանց անտեղեակ էր։ Սրբազան Օրհնութեանց նկատմամբ՝ նոյն իսկ մեր քրիստոնէական զգացումն 'ի բաց թողլով ևս, Մեծացուցէ երգն ամենայն ազգաց մէջ առաջին կարգի քերթողական շարագրած մի համարի։ Ուստի յայտնի է թէ Մարիամ անհանգէտ սրբութեան հետ՝ բարձրագոյն հանճար ալ ունէր. տապանակին կենդանի որ կրելոց էր յինքեան զփըրկիչն աշխարհի՝ հարկ էր ամենայն մասամբ զարդարուած լինել. վասն զի արևելցոց ասացածին պէս երբ լուսոյ ճառագայթն բիւրեղանոյ՝ կարկեհանի մէջ կ'ամփոփուի։

Քերթող մի նուաստաբար ասէր առ Աստուած՝ թէ չատ դարերու յօրինուած մի էր նա և թէ 'ի ստեղծմանէ աշխարհի բնութիւնն բովանդակ իւր ճարտարութիւնն բանեցուցեալ էր զնա յառաջ բերելու համար. այս խօսքս որ չափազանցութեան ձևոյն չափազանցն է և անտեղութիւն իսկ Կեսարու արիւնարբու քեռորդւոյն նկատմամբ՝ Սրբոյ Կուսին վերայ ճշմարտապէս յարմարի. վասն զի յիրաւի Մարիամ բնութեան հրաշակերտն է, հին սերնդոց ծաղիկն և դարուց սքանչելիքն: Աշխարհս ոչ երբեք տեսաւ և ոչ ալ պիտի տեսնէ՝ այնչափ կատարելութիւններ միացած մարդոյ զաւկի մի վերայ. ամենայն շնորհք սրբութիւն և մեծութիւն փայլէին այս ազնիւ և բարեբաղդ արարածոյս գլուխն. Աստուծոյ հետ բարեկամութեան մէջ յղացեալ յառաջ քան զծնունդն և 'ի յղութեան անդ սրբեալ՝ անծանօթ էին իրեն այն կիրք որ ամբոխեալ միրկեն զհոգիս, և այն անարգ յօժարութիւնք որ բազմաճճեաց պէս վխտան մարդուս աղմասէր սրտին մէջ: Մեր նախահօր ծանր անհնազանդութենէն ետև՝ մարդս 'ի խնամս չարին հաստատեալ է 'ի մանկութենէ. մեծամեծ սուրբք յառաջ քան զարդարանալն մեղաւորք եղեն, և նոցա առաքինութեանց ոսկին՝ միշտ անմասն չեղև 'ի կղկղանաց: Իսկ Սուրբ Կոյսն ոչ երբեք գերի եղև դժոխոց. նման պէս ծնաւ իւր արքայական թագն 'ի գլուխ՝ և իւր հոգին անդիմադարձ ձգողութեամբ առ բարին հակամէտ՝ պայծառ և լուսաւոր մթնոլորտի մէջ շողայր՝ ուստի մեղքն հալածեալ էր: Իր առաքինութեանց յիշատակն դեռ ևս կը պահուի նաև քրիստոնէութենէ օտար ազգաց մէջ. Պարսիկք պարզապէս սուրբ և փառաւորեալ անունն տան Մարիամու[31]. և Թուրք իր անունն միշտ արդար (սատորքէ) մակդրիւ յիշեն[32]. իսկ քրիստոնեայք հաստատեն թէ ինքն առաւել քան զամենայն հրեշտակս 'ի միասին առեալ՝

Աստուծոյ տաճին արդիւնք ունեցաւ։ Այսպէս Մարիամու բարեգործութիւնքն յերկնից թօթափեալ ձեան նմանի, որ լռիկ և անձայն լերանց գագաթն կը դիզուի. տաճի երեկոյէն իջածին պայծառութիւնն՝ երկրորդ օրն իջածէն նուազ չէ, պայծառութիւն պայծառութեան վերայ յաւելու, և սպիտակութիւն սպիտակութեան, մինչև որ մարդուս աչքն տանող կոհոն մի ձևանայ՝ որ արեգական լոյսն անդրադարձնելով՝ սպիտակ զմարդ աչուըններն 'ի խոնարհ դարձնել, ինչպէս դէպ 'ի արև նայած ժամանակ։ Ոչ ոք յարարածոց իրեն կենաց նման կեանք մի ներկայացուցած է գերագոյն Դատաւորին. միայն ՅիսուսՔրիստոս զնա գերազանցեց, բայց Յիսուս Քրիստոս Աստուած է և Որդի Աստուծոյ։

Մարիամ եմուտ 'ի տաճարն Երուսաղէմի՝ այն անարատ զոհերուն պէս՝ զոր հոգին Աստուծոյ ցուցել էր մարգարէին Մաղաքիայ։ Թէպէտ և իր մանկութեամբ և գեղեցկութեամբ և ցեղին ազնուականութեամբն՝ կարէր դշխոյական պատուոյն հասնիլ, ինչպէս որ Իսրայէլի մէջ շատ անգամ տեսանեմք գեղեցկութիւնն յարքունական աթոռն բարձրացած [33], սակայն ինքն սեղանոյն եղջերացն փարեցաւ կուսութեան ուխտիւ՝ զոր իր մանկական շրթունքն թոթովեց, և յետ ժամանակաց իւր սիրտն ալ զայն հաստատեց՝ բոլորովին հրաժարելով 'ի փառաց և յունայնութեանց աշխարհի։ Այս ուխտիւս որ մինչև այն ժամանակ լսուած բան չէր 'ի տարեգիրս աշխարհի, Մարիամ վերացաւ անցաւ այն ցանկէն որ զհին օրէնս 'ի նոր օրինաց անջատէր, և աւետարանական առաքինութեանց ծովուն այնչափ խորերն ընկղմէր՝ Ոսկեբերան հայրապետին ասացածին պէս, որ ինքն արդէն այնոր խորութիւնն չափել էր՝ երբ իւր աստուածային զաւակն եկն յայտնելու զայն որդւոց մարդկան։

Աստուած որ անփոփոխելի է 'ի խորհուրդս իւր՝

յաւաջագոյն ծանուցանէ և պատրաստէ զայն ամենայն մեծամեծ դէպս որ կերպարանափոխ առնելոց են զաշխարհս. երբ Մեսիային յառաջընթաց կարապետ մի հարկաւոր է՝ 'ի ձեռն առնու զՅովհաննէս Մկրրտիչ. երբ նախաշաւիղ մի պէտք է նոր օրինաց՝ առաքինութիւնք Մարիամու՝ աւետարանի նկատմամբ՝ գեղեցիկ աւուր զովագին և զուարթարար արշալոյսն լինին: — Սուրբն Եպիփան 'ի Նիկեփորոսէ յիշատակեալ, Սրբոյ Կուսին կերպարանաց գեղեցիկ նկարագրութիւն մի աւանդէ մեզ. այս կենդանագիրս՝ որ չորրորդ դարուն մէջ յօրինուած է 'ի հնագոյն աւանդութեանց առեալ որ հիմա եղծեալ են, և 'ի վաղեմի ձեռագրաց որ այժմ ոչ գտանին, մի միայն է զոր ունիմք: Ըստ Եպիփանու Սուրբ Կոյսն բարձրահասակ չէր, այլ միջահասակէն սակաւիկ ինչ աւելի. մարմնոյ գոյնն Երգ երգոցի Սոմնացւոյն պէս՝ իւր հայրենեաց արեգական ջերմութենէն թեթև մի ոսկեզօծեալ ատոք հասկաց գեղեցիկ գոյնն ունէր. խարտեաշ էին իր մազերն, վառվռուն աչքն և բիբքն սակաւ մի ձիթագոյն, յօնքն սեաւ արջնաթոյր և կցայօն աղեղնաձև (կամ Նարեկացւոյն գողտրիկ բացատրութեամբն «Յունից նրբենից 'ի մի կից կամար» (տաղ). քիթն բարեձև էր և արծռունկն, շրթունքն վարդագոյն, և կերպարանքն վայելչապէս ձուաձև, ձեռքն և մատունք նուրբ և երկայնկեկ: — Ամենայն Սուրբ Հարք միաձայն վկայեն Ամենասուրբ Կուսին հիանալի գեղեցկութեանն. Սուրբն Դիոնեսիոս արիոպագացի՝ որոյ վկայութիւնն շատ մեծ յարգ ունի՝ ինքնին ականատես եղած լինելուն Աստուածամօրն Մարիամու՝ հաստատէ թէ այլք առնող գեղեցկութիւն մի ունէր, և եթէ չգիտէի թէ Աստուած մի միայն է՝ իբրև Աստուածուհի զինքն պիտի պաշտէի:

Բայց Մարիամու հրաշազարդ գեղեցկութեան զօրութիւնն՝ բնական կատարելութեանց բարեկազ-

մութենէն յառաջ եկած չէր, այլ աւելի բարձր աղբիւրէ մի բղխէր։ Այս բանս լաւ հասկանալով բացատրէ Սուրբն Ամբրոսիոս երբ ասէ թէ այս արտաքին բարեմասնութիւնքս Թափանցիկ քօղ մի էին՝ որ նշմարել տային իւր ամէն առաքինութիւններն, և իւր նայուածքին մէջ երևէր բովանդակ իւր հոգին՝ որ Յիսուսի Քրիստոսի հոգիէն ետև ամենէն ազնիւ և մաքուր հոգին էր՝ որ բնաւ եղած են յաշխարհի։ Բնական գեղեցկութիւնն Մարիամու՝ հեռաւոր լուսոյ ցոլացուցիչ մի էր իւր անմահ մտաւորական գեղեցկութեանցն. ինքն գեղեցկագոյնն էր 'ի կանայս՝ վասն զի 'ի մէջ դստերաց Եւայի քան զամենեսին առաւել մաքուրն էր և քան զամենեսին առաւել սուրբ [34]։

Աստուած կանաչ ծովուն [35] մարգարտին համար լուսացայտ պալատ մի յօրինեց իւր խեցին. բայց գաղտակուրն կամ սատափն առանց մարգարտի ինչ յարգ ունի։ Ուստի և Հարք տեղեկագոյն գոլով այս բանիս՝ Մարիամու անձին վերայ խօսած ատեն՝ նորա բարոյական գեղեցկութեանց վերայ աւելի ճոխանան, գեղեցկութիւնք՝ որ որդանց կեր լինելու վախ չկայ։ Հաւաքեմք մեք ալ այն փոքրիկ անգին գոհարներն՝ զորս ագուցին իրենց գրուածոց մէջ, և յօրինեմք միւսիոն նկար մի որ երկրորդ կենդանագիր մի լինի իրեն՝ որ Սրբոյն Սոփրոնիոսի ասացածին պէս Աստուծոյ փափկութեան դրախտն էր [36]։

Կուսին Մարիամու ամեն գործոց մէջ գերագոյն համեստութիւն մի փայլէր. ինքն բարի հաճոյական և վշտակից բնութիւն մի ունէր. իւր մանկութեան ողորմութիւններն շատ անգամ առանց իմացուելու անկանէին այն գանձանակին մէջ՝ որ տաճարի սիւներուն միոյն վերայ հաստատեալ էր, և ուր որ ժամանակէ մի ետև տեսաւ Յիսուս այնոր մէջ ձգուած այրւոյն նաքարակիտն։ Ինքն սակաւախօս էր՝ բայց ժամանակին յարմար, ամենևին իւր շրթունքն ստու-

թեամբ չարատառորեցան, քաղցր և սրտաշարժ էր իւր ձայնն, և իւր օծեալ և սփոփական խօսքերն խաղաղութիւն շնորհէին հոգւոյ: Ինքն միշտ արթուն և ճիշդ էր աստուածային օրէնքն կատարելու. Խոնարհութեան մէջ ամենէն աւելի, և քան զամենեսին կատարեալ ամենայն տեսակ առաքինութեանց մէջ: Ոչ երբէք բարկութիւն երևեցաւ իր վերայ, ոչ զոք վշտացոյց, ոչ զոք տրտմեցոյց և ոչ զոք անգոսնեց: Պերճասիրութեան թշնամի էր, պարզ 'ի խօսս և 'ի վարմունս. թէպէտ և գեղեցիկ էր՝ բայց տեսնուիլ ոչ կամէր, թէպէտ մանկահասակ՝ բայց զարդասիրութիւն ոչ ախորժէր, և ազնուական լինելով հանդերձ՝ փառասիրութիւն չունէր, և թէպէտ աղքատ էր՝ բայց հարստանալու աչք չունէր. և զգուշութեամբ ծածկէր յայլոց իւր հանճարոյն և սրտին անգին գանձերն: Կարծես թէ իր ներկայութիւնն՝ բոլորտիքն եղած ամեն բան սրբացնէր, և միայն զինքն տեսնելն մոռցնել տայր մարդուս ամեն աշխարհային բաներն: Իւր մարդավարութիւնն սուտ խօսքերու հիւսուածք մի չէր, այլ ընդհանուր բարեսիրութեան զեղումն որ իւր սրտէն բղխէր. իր գթալից նայուածքն ևս ցուցանէր թէ ինքն էր Մայրն ողորմութեան:

Յաճախ խիստ պահեցողութեամբ օրերն անցուցանէր, սաէ Սուրբն Ամբրոսիոս, այն արևելեան պահեցողութեամբ որ մեզ սարսափ բերէ. որովհետև արևն ծագելէն մինչև աստեղաց երևելն յամենայն կերակրոց հրաժարէին [37]: Բովանդակ այս պահոց միջոցին իր յօժարութիւններէն և սրտին ուզածներէն հրաժարէր, ծանր աշխատանաց տայր զինքն, և բնութեան զզուումն բերող գործերն յօժարութեամբ կատարէր. աղքատիկ զգեստներ հագնէր, չոր գետնի վերայ պառկէր, և այս տապաշխարանաց և ողբոց օրերն՝ որ շաբաթներ տևէին, թեթև ճաշիկ մի

առնոյր՝ մոխրի վերայ եփած նկանակով և դառն բանջարովք. և Սելովայ աղբերէն դաւաթ մի ջրով[38]։ Ստէպ և երկայն էին իւր աղօթքն, և այնչափ պարկեշտութեամբ և մտադրութեամբ՝ որ Յաւիտենականին առջև երկրպագելու ժամանակ՝ կարծես թէ իւր հոգին նորա դիմացն հալէր։ Որոտմանց գոչիւնն և կայծականց շառաչիւնքն՝ յորոց Կեսար սահմուռկած իր պալատին ստորերկրեայ նկուղներն ապաւինէր[39], Կուսին յականջս անգամ ոչ հասանէին. բոլորովին ընկղմեալ իւր կրօնական պարտուց մէջ՝ իւր հոգին կայր առաջի Արարչին տիեզերաց՝ աշխարհիս սահմաններէն դուրս ելած և հեռի փոթորկաց պարունակներէն։« Ոչ ոք իրեն չափ ստացած է, ասէ Սուրբն Ամբրոսիոս, ներանձնական խոկման գերազանց շնորհքն. իւր միտքն միշտ սրտին հետ միացած՝ ոչ երբեք իր աչքէն վրիպէր Այն՝ զոր ինքն քան զամենայն սերովբէս 'ի միասին առեալ՝ սիրէր և պաշտէր։ Բոլոր իւր կենաց ընթացքն հանապազօրեայ կրթութիւն մի էր ամենամաքուր սիրոյն առ Աստուած, և երբ քունն իր թարթիչքն ծանրացնէր՝ իւր սիրտն տակաւին արթուն էր և դեռ աղօթէր[40] »։

Այսպէսիկ էին առաքինութիւնք և պարապմունք Մարեմայ 'ի տաճարին. ինքն իր մանկահասակ ընկերաց մէջ փայլէր որպէս զադամանդ 'ի մէջ գոհարաց, և իւր անկեղծութիւնն և համեստութիւնն այլ աւելի սիրելի առնէին իւր գերազանց ձիրքն որովք ճոխացեալ էր[41]։ Վասն որոյ և քահանայական պաշտամանց մէջ ալեորած ծերունիք՝ իր առջևէն անցած ատեն զինքն օրհնէին, այն սուրբ բնակութեան ամենէն գեղեցիկ զարդն զնա համարելով։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ Ե. ԳԼԽՈՅ

1 Ըստ քրիստոնէական աւանդութեանց Էօմէրի մզկիթն Ջէմիի էլ սախրա՝ Սողոմոնի տաճարին տեղն է. իսկ էլ աքսա ուր էր Ընծայման եկեղեցին՝ այն տեղն է ուր եկեաց Մարիամ երեք տարուան եղած ժամանակէն մինչև Յովսեփայ հետ ամուսնացած ատեն։ Հին ատեն այս տեղս սողոմոնեան տաճարին վերաբերեալ շէնք մի էր. ինչպէս նաև հիմա էլ աքսա տացեալն Էօմէրի մզկիթին վերաբերի։ Խաչակրաց ժամանակէն յառաջ էլ սախրա պարզ մատուռ մի էր՝ որում յետոյ Ֆրանկք յաւելին եկեղեցի մի ոսկեզօծ գմբեթով՝ որոյ վերայ եղած մեծ և փայլուն խաչն երբ կործանեցին տաճկինոց յաղթողք՝ այնչափ մեծ եղև սուգ ուրախութեան ձայներն և քրիստոնէից ցաւոց աղաղակն՝ որ կարծես թէ երկիրս անդնդոց մէջ գահավիժէր, ասէ արաբացի պատմագիրն (Թըղ Նուճում-Բեանէ տըւարիխ հտ. Ե)։

2 Որպէս նախընթաց գլխոյն Ա. ծանօթութեան մէջ յիշեցինք. Սուրբն Գերմանոս պատրիարգ Կ. Պօլսոյ ևս հաստատէ թէ զՍուրբ Կոյսն տաճարին կուսաստանն զետեղողն եղև Զաքարիա քահանայապետն հայր Յովհ. Մկրտչի։ — Առաքելոց աւանդութիւնք ևս ասեն թէ Աստուած զՍուրբ Կոյսն յանձնեց ՚ի պահպանութիւն Զաքարիայի։ Ղուրանն Ամրանայ այսինքն Յովակիմայ գերդաստանին վերայ խօսած ժամանակ՝ գողտրիկ վէպ մի յաւելու՝ զոր արաբացի քրիստոնեայ ցեղերէն լսեալ էր. այսինքն թէ ամէն անգամ որ Զաքարիա իր մանուկ աղջկանն տեսնելու երթայր՝ տեսանէր նորա մօտն Սուրբ երկրի ամէնէն գեղեցիկ պտուղներն իրենց եղանակէն դուրս. և օր մի հետաքրքրութեամբ հարցուց թէ ուստի էին այն պտուղներն, որում պատասխանեց Կոյսն. «Այդ տեսած պտուղներդ Աստուած ինձ ղրկէ՝ որ իր սիրելեաց ամէն պէտքն հոգայ առատապէս» (տ՛ Էրպըլօ Մադրէն. օրիանթալ)։

3 Տես ՚ի գիրս Դատ. ԻԱ. 20։

4 Մովսէս մանկաւոր օրինօք փրկանաւորութեան գինն սահմանած էր՝ որ էր առ առաւելն յիսուն սիկղ արծաթոյ (75 ֆր.)։

5 Աստուծոյ ապաստաւորութեան նուիրեալ որդիք՝ իրենց հայրենի ժառանգութեան վերայ ունեցած իրաւունքն պահէին, և

եթէ ծնողք զիրենք ոչ ազատէին՝ կարէին իրենք զիրենք փրկա-
նաւորել (Երեւն Կենե): Յովսեպոս ցուցանէ թէ արք և կանայք՝
որ կամովին պաշտաման նուիրէին զանձինս, երբ ուզէին ազատ
լինել յուխտիցն՝ որոշեալ գումար մի տային քահանային, և ով
որ չէր կարող հատուցանել՝ քահանայից թաղուին զչափն որո-
շել (Հնախօս. հրէից գիրք Դ):

6 Հայրն Քրուազէ:

7 Կրակապաշտ պարսիկք հրոյ նուիրեալ տաճար մի ունին 'ի Պոմպէյ. ուր արեւու ելած և մտած ժամանակ՝ իրենց սպիտակ զգեստովն և գունագոյն արտախուրակօք զարդարեալ՝ ծոմեզերքն հաւաքին և խոնարհ երկրպագութեամբ այնոր առաջին և վերջին ճառագայթներն ողջունեն: Այն պաշտամանս ատեն իրենց կանայքն ոչ երեւին՝ այլ տներնին ջուր կրելու զբաղին (Պըքինկէմ Պօրչեր հնդկաց):

8 Բ. Մակաբ:

9 Յայտնի է նախկին քրիստոնեայք՝ մանաւանդ թէ որ յԵրուսաղէմ էին և ծննդեամբ եբրայեցիք՝ հին օրինաց քանի մի սահմանադրութիւններն պահեցին, յորս էր նաև կուսանաց և այրեաց դասն՝ որ նախկին եկեղեցեաց մէջ զանազան պաշտօնս վարէին իրենց համասեռից մէջ (Ֆլէօրի Կենցաղ Իսրայէլացւոց և քրիստոնէից):

10 Սուրբ Անդրէաս կրետացի, Գէորգ Նիկոմիդացի, Հայրն Ժիպիէօ, են:

11 Բրիտոյ. Պասնաժ Պատմութիւն հրէից գիրք Ե գլ. 15:

12 Ըստ րաբունեաց անմաքրութիւն կնոջ յառաջ եկն 'ի պատրանաց Եւայի յօձէն, որ գալստեամբ ևեթ Մեսիայի պիտի բժշկի: Կինն աղօթելու պարտաւորութիւն չունի որպէս այրն, և գրեթէ հասարակական աղօթքներն ևս պահելու պարտաւորեալ չէ. ուստի հրեայք իրենց առաւօտեան աղօթից մէջ ասեն. Օրհնեալ լիցիս Տէր թագաւոր տիեզերաց որ զիս կին ոչ ստեղծեր: Կինն ալ տրտում յանձնառութեամբ ասէ խոնարհաբար. Օրհնեալ լիցիս Տէր որ զիս ըստ հաճոյից քոց ստեղծեր (Պորմ. հրէից հտ. Ե էջ 169):

13 Առաջին տաճարին կործանմանէն ետև տապանակին ինչ լինելուն վերայ՝ հրեայք միաբան չեն. ոմանք համարին թէ Երեմիա ծածկեր է զայն լերանց այրի մի մէջ որոյ մուտքն չեն կարողացած գտանել. և այլք ասեն թէ Յովսիա թագաւորն սուրբ իմանալով յՈղդայ մարգարէուհւոյ որ իւր մահուանէն ետև տաճարն պիտի կործանէր, տեղաւորեց զտապանակն ստորերկրեայ նկուղի մի մէջ զոր Սողոմոն շինած էր (Դ. Թագաւոր. ԻԲ 14):

21 Լեոն մոտենացի. — Մովսէս Մայմոնիտ:

22 Լեոն մոտենացի գլ. ԺԱ: Գռատոնանտ (Եբր. չըմա) ասելով կ'իմացուի Թուոց և Երկրորդման օրինաց երեք զանազան հատուածներն՝ զոր առաւօտ և երեկոյ ընթեռնուին դաւանութեան ձևով յորում ցուցանի միութիւն աստուածութեան որ փհան զժողովուրդն յԵգիպտոսէ:

23 Աւանդ է որ Սուրբ Կոյսն պարապեալ էր յառաւօտու և յերեկոյի ներկայ գտանիլ հասարակաց աղօթից, որ քան զայլս աւելի ազդու համարէին. մինչև եղեն բաբունիք որ ասեն թէ Աստուած այս աղօթիցս միայն լսէ:

24 Տես Հոմերոսի Իլիականին Չ գիրքն:

23 Միջին դարու մէջ 'ի յիշատակ ճարտարութեան Սրբոյ կուսին 'ի բեհեզեայ անկուածս՝ ոստայնանկք ընդ պաշտպանութեամբ Աւետման կային. կերպասագործք և ոսկեթել դիպակագործք պաշտպան ունէին զՏիրամայրն նոյն որոյ պատկերն գեղեցիկ և հարուստ ասղնագործ նկարեալ էր իրենց խաչվառին վերայ (Ալեքս. Մոնթէյլ Պատմ. ֆրանկաց զանազան ծառայից):

26 Գլխաւոր զոհագործ քահանայից առաւօտեան զգեստն բաղէն մի էր, ասէ Միշնահ, 'ի նրբանիւթ բեհեզոյ Պելուսիոյ քաղաքին Եգիպտոսի որոյ քթանն անուանի էր. Et pelusiaco filum componere lino; Ի բեհեզ պելուսեան զթելն յօրինել. Վիրգիլ:

27 Այս սովորութիւնս դեռ ևս պահի 'ի հիւսիսային և յարևմտեան տեղիս ինչ Փրանկիոյ:

28 Այս իլերս յետ ժամանակաց յղեցան առ կայսրուհին Բուլքերիա՝ զորս եդ յեկեղեցւոջ ուրեք 'ի Կ. Պօլիս:

29 Աւանդութիւն հրէական. — Տես 'ի Պատմաժ: — Ըստ արևելեան մատենագրաց ոմանց տախտակք օրինացն էին 'ի կարմիր յակնթէ կամ 'ի կարկեհանէ. բայց առ արաբացիս և առ մահմետականս աւելի սովորական կարծիք է թէ էին 'ի զըմրըխտոյ՝ որոյ մէջ գրերն այնպէս փորագրեալ էին որ յերկու երեսաց ալ կարդացուէին (տ'Էրպըլօ Մատէն. արևել. հտ. Բ):

30 Ըստ հին աւանդութեան եբր. Դաւիթ տաւիղ մի ունէր որ գիշերն արոշեալ հով մի փչած ատեն ձայն հանէր, որոյ վերայ Պատմաժ ծիծաղելով արհամարհէ անմտութեան խօսք համարելով, և սակայն հողմաշարժ տաւղաց գիւտն կամ վերանորոգութիւնն որոց դիւթական ձայնն կը լսուի անգլիական դաստանաց մէջ՝ բաբունեաց ասացածն ճշմարտէ:

31 Տ'Էրպըլօ Մատէն. արևել:

32 Նոյն:

33 Դաւիթ, Սողոմոն և այլ թագաւորք Յուդայ շատ անգամ հասարակ վիճակէ կանանց հետ ամուսնացան. Սողոմոնի հաշակաւոր Սոմնացին ասի թէ գեղջուկ օրիորդ մի էր 'ի Սու-

լամ փոքրիկ գեղջէ՝ մօտ յԵրուսաղէմ։ Սրբոյ Կուսին ժամանակն Հերովդէս Մեծն էած 'ի կին զՄարիամնեա Հասարակ զըհագործի մի աղջիկն վասն գեղեցկութեան նորա։

34 Պեռնարտէն տը Սէն Բիէր ասէ.[«Ոչ բաժինք երկրի ոչ անունք. և ոչ մարգք մարմնոյ շնորհեն մարդոյ զբարեձևն գեղեցկութիւն, այլ բարոյական զգացումն առաքինութեան՝ որ չկարէ կալ առանց կրօնից։ Գեղեցկութիւն կերպարանաց՝ ճշմարիտ պատկեր է հոգւոյն» (Զննութիւնք հանդիսութեան. գլխ. Ժ)։

35 Պարսկային ծոցին անուններէն մին է (տ՛ Էրպլօյ)։

36 « Արդարև գրախտ փափկութեան էր Կոյսն՝ յորում գտանին ամենայն ազգի ազգի ծաղկունք և բուրմունք անուշից առաքինութեանց » (Սոփրոնիոս ճառ Վերափոխման)։

37 Հրեայք (որպէս և արևելեայք առ հասարակ) համարին թէ ծոմապահք ոչ համարին եթէ ոք յառաջ քան զմուտս արեւ ճաշակէ ինչ։

38 Պատմած գիրք Է գլ. ԺԸ։ – Յակօբի Կենդանագրութիւն։

39 Եթէ Սուետոնիոսի խօսիցն հաւատամք՝ Օգոստոս այնչափ երկնչէր յորոտմանց և 'ի շանթից՝ որ փոթորկի նշան մի տեսանէին պէս արքունեաց ստորերկրեայ նկուղներն իջնելով ծածկուէր, ուր չէր կարող լսել որոտմանց ձայնն և տեսնել փայլատականց լոյսն, որ և կանացի տկարութեան համար եւ ամօթ համարի։

40 Սուրբն Ամբրոսիոս Յաղագս կուսութեան գիրք Բ։

41 Նմանութիւն Սրբոյն Հերոնիմեայ։

---

# ԳԼՈՒԽ Զ

## *Մարիամու որբ մնալն.*

*Այս տեղս հարկ է խոստովանիմք որ Ամենասուրբ Կուսին վարուց պատմութիւնն շատ անգամ ցամաք է ըստ նիւթոյ, և շատ տեղերն ալ դատարկ մնացած են, որ մեզ ալ զարմանալի երևի. կարծես թէ անապատի հինաւուրց քաղաքի մի վսեմ աւերակներ են. ուր տեռանես աստ հսկայաձև սիւներ լերանց պէս հաստատ և անշարժ խարսխաց վերայ բարձրացած. անդ կամարակապ սրահներ՝ զորս հրաշապատում վիպեր սիրող արաբացին՝ աներևոյթ ոգիներէ կանգնած համարի. այլ աւելի հեռուն աւազի մէջ թաղուած տաճարներ՝ զորս պատկերողութիւն մտաց կարեն վերականգնել, և յետոյ տեղ տեղ մերկ և անբեր աւազուտ՝ որ սէզ մի անգամ ոչ բուսուցանէ պանդուխտ պէտէվիին ուղտին սնունդ։ Անշուշտ ինչպէս որ երևի առաքեալք աւելի զբաղած լինելով Յիսուսի Քրիստոսի գերագոյն անձին պատմութիւնն աւանդելու՝ նորա երկրաւոր գերդաստանին վիպացն մտադիր եղած չեն. իսկ Ս. Հարք բաւական տեղեկութիւն տուած են մեզ Ս. Աննայի առաքինութեանց վերայ. մեք ևս նոցա հետոցն հետևելով՝ մտաք նորա անշուք տունն, ականատես եղաք նորա բաղձանացն և եռանդագին աղօթից, տեսաք նորա ուրախութիւնն երբ վերջապէս մայր եղև, և թէ որպէս երախտագէտ սրտիւ ընկալաւ այս անգին պարգևս։ Բայց յետ այսօրինակ աւանդութեան թելն բրդի և կորնչի, և Աննայի մնացած վարքն գրեթէ ենթադրութեամբ հաստա-*

տի. և ինքն որ այնչափ պահօք և արտասուօք ընկալեալ էր իր միածին զաւակն և Եսայեայ գուշակած կոյսն, և որոյ մանկութիւնն այնչափ գորովագութ խնամքով և սիրով մեծցուցած էր, և իւր գլուխն բառնալով Աստուծոյ նուիրած էր, և գորովալից արտասուօք աւանդել էր զինքն այն սուրբ տեղն, ոչ ևս այլ երևի մինչև մեռնելու ժամանակն: Եւ սակայն հաւատալի բան չէ որ Յովակիմայ ամուսինն մինչև ինն տարի առանց իւր սիրասուն զաւակն տեսնելու մնացած լինի: Տաճարին արտաքին շէնքն յորում դաստիարակէին մանկունք նուիրեալք Աստուծոյ Իսրայելի նոցա մարց առջևն փակեալ և արգելեալ տեղ մի չէր. և մայր մի այնպիսի սրբազան և կրօնական իրաւունս ունի իւր զաւկին վերայ՝ որ ամենայն ազգք զնոսին աննախագրելի համարած են. մանաւանդ որ Ս. Գիրք իսկ մեզ ցուցանեն թէ նախկինն Աննա կին Եղկանայ հանդիսաւոր օրերն ազատութեամբ գայր ՚ի Սելովա իւր զաւակն զՍամուէլ տեսնելու համար, և ամեն անգամ իւր ձեռօքն գործած փոքրիկ կրկնոց մի բերէր մանուկ մարգարէին՝ զոր Աստուծոյ փոխ տուած էր: Այն Աննա զՍամուէլ ծնանելէն ետև ուրիշ շատ զաւակներ ալ ունեցաւ՝ որք իր աչաց առջև նորաբոյս ձիթենիներու պէս աճէին, որոց և վրայ ալ նոյն մայրական խնամքն ցուցանէր՝ ինչ որ տաճարին սպասաւորութեան նուիրեալ զաւկին: Իսկ այս Աննա Մարիամէն զատ ուրիշ զաւակ չունէր[1]. և այն էր իր միակ երջանկութիւնն, զառամութեան յոյսն և երկրիս վերայ իւր ցնծութեան աղբիւրն: Ապա ուրեմն անտարակոյս երբեմն երբեմն իր ամուսնոյն հետ միատեղ տաճարն եկած ժամանակ՝ իր զաւակն ալ տեսնելու երթայր, և անական կանթեղին լուսոյն կամ լուսնին արծաթի ճառագայթից[2] առջևն նըստած՝ իւր աղջկան կուսական զգեստներն մանէր:

Կարծուի թէ Սուրբքն Յովակիմ և Աննա զՄա-

րիամ տաճարին ընծայելէն ետև՝ իրենց տունն դարձած են և հոն քանի մի տարի նստած՝ իրենց բնակութիւնն Երուսաղեմայ մէջ հաստատելէն յառաջ։ Յովակիմ որ Յովսեփայ պէս արուեստաւոր չէր՝ իր հօրենական փոքրիկ արտերն մշակէր, և վայելէր այն բարեբաղդ միջակային վիճակն՝ որ այնչափ սիրելի և ցանկալի է իմաստնոց մեծատանց և քերթողաց՝ երբ բաղդին դէմ դժկամակութիւն մի զգան[3]։ Այս իր հայրենական կալուածոց մէջ որ էին 'ի Սեփովր 'ի Նազարէթ և յԵրուսաղէմ յետոյ եկեղեցիներ շինուեցան. բայց այգին կամ իր հարց արտավարն Սեփովրի մօտ եղած երևի, և այնոր համար էր որ դարձան 'ի ստորինն Գալիլէա։ Յովակիմ արդարև այր իսրայէլացի եռանդագին սիրող էր օրինացն Մովսիսի. ամեն հանդիսաւոր տօներուն՝ իւր ամուսնոյն հետ միատեղ և ընդ այլ ազգականաց՝ որպէս սովորութիւն էր եբրայեցւոց, երթայր 'ի տաճարն, և հաւանական է որ իւր դուստրն տեսնելու բաղձանքն՝ կրօնական արարողութիւններն տեսնելու բնական յօժարութիւնն ալ աւելցուցած էր։ Արդեօք ո՛րչափ ուրախութեամբ և շտապելով առնոյր Աննա բարի և բարեպաշտ կողակիցն՝ իւր ճամբու լաչակն 'ի սուրբ քաղաքն երթալու համար. ո՛հ ո՛րչափ երկար երևէին իրեն այն 'ի հեռուստ տեսած բազմապտոյտ ճամբայներն որ լեռներն և դաշտերն կտրէին. աչքն իրմէ յառաջ վազէին, և միտքն շատ անգամ իրմէ յառաջ անցանէր՝ դեռ իրական կերպով չհասած այն թզենեաց անտառներուն և վարդեսարդի մացառներուն, և կանաչ կաղնեաց կամ մոլար թզենեաց պուրակներուն՝ որ տեղ տեղ իւր ճամբուն վերայ շարուած էին. որովհետև այս ամեն իւրաքանչիւր կէտերէն անցնելով՝ իւր զաւկին այլ աւելի մօտենար, այն զաւկին զոր Աստուած հրաշիւք պարգևել էր իրեն և որոյ համար հրեշտակն ասացեալ էր թէ Իսրայելի

փառք պիտի լինի։ Արդեօք որպիսի՜ զգացմամբ հովուին մէջէն ողջունէր այն Անտոնեան աշտարակն՝ որ պայծառ և սպառնալից բարձրանայր իւր սրբատաշ և յղկեալ կճեայ հիման վրայ՝[4] զտաճարն զտունն աղօթից պաշտպանելու համար։ Հապա տաճարին տեսքն յորում էր իւր Աստուածն և իւր զաւակն՝ արդեօք ո՜րչափ բաբախել տայր իւր գորովալիր և սուրբ սիրտն։

Երբ յերեկոյին քահանայից փողերն զժողովուրդն հանդիսին կոչէին[5], Աննա վազէր երթայր երկրպագելու Աստուծոյ և տեսնելու իր դուստրն՝ զոր ամիսներէ 'ի վեր տեսած չէր։ Բաց գաւիթն որոյ կամարն երկինքն էր՝ և որոյ վերայ աստեղաց մթնշաղ լոյսն ցոլայր՝ աշտանակաց[6] պայծառ ճառագայթներովն փայլէր. բիւրաւոր ջահեր զիրար կտրէին կամարակապ սրահներուն մէջ՝ որ կանաչ պսակօք[7] զարդարեալ էին. և բազմութեան մէջ անցանէին դառնային քահանայապետներն՝ իրենց շողշողուն զգեստներովն՝ զորս Պալմիրայի[8] կարաւանքն 'ի Հնդկաց բերէին։ Մերթ ընդ մերթ տաւղաց ներդաշնակութիւնն ընկերանայր խուռն բազմութեան աղօթից ձայներուն հետ՝ որ ծովու ալեաց պէս գոռայր[9]. սոքա 'ի հեռաւոր աշխարհաց եկեալ հրեայներ էին՝ որ գային յափանց Նեղոսի, Եփրատայ և Տիբերի՝ իրենց հարց Աստուծոյն մի միայն սեղանոյն առջին երկրպագելու համար[10]։ Այս ազգային և օտարական (եկք) հաւատացելոց բազմութեան մէջ՝ Աննա եռանդագին աղօթելու ժամանակ՝ աչքն վեր վերցուց և տեսաւ զՄարիամ և զընկերակիցս Նորին՝ որ սպիտակազգեստ և սքօղեալ իր առջևէն անցանէին ձեռուընին լապտեր բռնած՝ Աւետարանի իմաստուն կուսանաց պէս։

Երբ հանդէսն աւարտեցաւ՝ Աննա իւր դուստրն համբուրելով և օրհնելով Յովակիմայ հետ ճամբայ ելաւ՝ լեռնակողման ուղին բռնելով. և կարեմք ասել թէ ոտքն յառաջ ոչ երթային, և ոչ համարձակէր

գլուխն յետս դարձնելու, և բոլոր ճամբորդութեան մէջ ուրիշ բան ոչ մտածէր՝ բայց եթէ մինչև միւս մերձաւոր հանդիսութեանց յիշատակն՝ յորում նորէն կարող պիտի լինէր իւր զաւակն տեսնելու։

Երբոր Յովակիմ ծերանալով ուժէ անկաւ՝ և այլ չէր կարող հայրենական տուն իւրքնին մշակելու՝ մտածեց իւր բնակութիւնն փոխել, որով և զաւկին մօտ լինէր. ուստի բոլորովին թողուցին ստորին Գալիլեայի մէջ ունեցած երկիրն, և եկին բնակեցան յԵրուսաղէմ, տաճարին մօտ փողոց մի։ Ա՛լ Աննայի ուրախութեան չափ չկար. վասն զի այսու կարէր աւելի սաեպ Աստուծոյ տաճարին այց ելնելու և իւր զաւակն ալ աւելի յաճախ տեսնելու։ Արդեօք որչափ անգամ ամառուան երեկոյներն տանն առջև եղած դաշտագետնին վերայ նստած մնալու ժամանակն՝ իլն սահած է իր անշարժ մատերքն, բոլոր միտքն զաւկին վերայ յափշտակուած, և աչքն յառեալ տաճարին 'ի մայր փայտէ շինեալ և ոսկեզօծ երդին վերայ. վասն զի Սուրբ Գիրքն ալ ասէն թէ Ուր գանձք ձեր են՝ անդ և սիրտք ձեր եղիցին. և Աննայի գանձն իւր մէկ հատիկ զաւակն էր՝ յորմէ բաժնուած էր։

Այս վշտագին բացակայութիւնս և անջատումս կարճեցնելն Աննայի ձեռքն էր, վասն զի մովսիսական օրէնքն թոյլ տայր փրկանաւորել Աստուծոյ ընծայեալ զաւակն՝ սակաւ դրամ մի հատուցանելով տաճարին, բայց ինքն չուզեց այս իւր իրաւունքս գործածել։ Առ Աստուած ունեցած երախտագիտութիւնն այլ աւելի հզօր էր իր սրտին մէջ՝ քան զգորով մայրենի, և երբ կրօնից ձայնն լսէր՝ բնութեան աղաղակն հանդարտէր և լռէր։

Գրեթէ ինն տարի էր որ Կոյսն 'ի տաճարին առանձնացած ապրէր՝ [11] երբ իր մանկութեան անամպ և քաղցր օրերն մթագնիլ սկսան. իւր սիրելի հայրն արդարն Յովակիմ ծանր հիւանդացաւ, և շուտ մի

մահուան երևոյթներ սկսան երևիլ: Բարեկամք և մերձաւորք ահուդողով պաշարուած վազեցին եկին իրենց սէրն և բարեկամութիւնն յայտնելու. վասն զի հրէից գերդաստաններու մէջ այս գովելի սովորութիւնս տիրէր: Հոգեվարքն քաղցրութեամբ ժպտեցաւ իւր ազգականներն և մերձաւորներն տեսնելով. Յակոբ նահապետին պէս իր պանդխտութիւնն ալ շատ երկայն տևել էր երկրիս վերայ, և հոգ չէր թէ մահուան շունչն սակաւ ժամանակէն իւր տաղաւարն պիտի կործանէր. վասն զի այս տղմաշաղախ աշխարհէս անդին՝ հոգւոյ աչօքն տեսանէր այն երջանիկ դաւառներն՝ ուր պիտի հանգչէր 'ի գոգն Աբրահամու:

Երբ երթալով ոյժն պակասէր՝ իմացաւ սուրբ ծերունին որ կեանքն աւարտելու մօտ էր, ուստի բարձրաձայն առաջի ամենեցուն խոստովանեցաւ իր մեղքն՝ ինչպէս որ սովորութիւն էր եբրայեցւոց, և իր մահն գերագոյն դատաւորին նուիրեց՝ իբրև 'ի քաւութիւն յանցանացն որ յարակից են մեր բնութեանն, և արդարագոյնքն անգամ 'ի մարդկանէ ազատ չեն[12]: Այս պարտքս կատարելէն ետև՝ ուզեց որ զաւակն տեսնէ և օրհնէ: Փութաց վազեց Մարիամ[13]. իր հօր կենաց օրերուն պահպանութեան համար մատուցած եռանդագին աղօթքն լսելի եղած չէին. և Աստուածային Նախախնամութիւն կամէր սակաւ առ սակաւ իւր ընտրեալ հարսին երկրաւոր կապանքն քակել, որպէս զի երկրիս վերայ յիւրմէ զատ այլ ապաւէն չունիցի:

Երկիւղած մատենագիրք ոմանք՝ համարեցան թէ երբ Յովակիմ ձեռքն տարածեց իւր զաւակն օրհնելու համար՝ երկնային յայտնութիւն մի յանկարծ եցոյց նմա այն փառաւոր վիճակն՝ որում իւր դուստրն նախասահմանեալ էր 'ի յերկնից: Ընտրելոց ուրախութիւնն իւր յարգելի դիմաց վերայ փայլեցաւ, ձեռքն

'ի վայր անկան, գլուխն խոնարհեցոյց և հոգին աւանդեց։

Մեռելոյն սենեակն ողբով և լացով համակեցաւ, կանայք իրենց կուրծքն ծեծելով մազերնին փետտէին[14]. արք գլուխնին մոխիր ցանած՝ պատմուճաննին պատռէին. անմիջապէս պատուհաններն բացին[15], բազմաստեղն պղնձէ կանթեղ մի վառեցին դիակին քովն դրին, որ իր տխուր լոյսն տարածէր արդարոյն դեղնցած բայց զուարթ երեսին վերայ. և թողին մարմինն պատանողաց ձեռքն որ լուանան և թաղեն[16]։

Հետևեալ օրն բազմութիւն լալականաց և փողարաց[17] սգաւոր տանն առջև ժողովեալ էին՝ բազմաթիւ յուղարկաւորաց հետ միատեղ. ազգականք ելին 'ի վերնայարկն ուր մեռելն դրուած էր ըստ սովորութեան, և բարձին զդիակն 'ի վերայ ուսոց իւրեանց, և սկսան Երուսաղեմի փողոցներէն անցընել տխուր շարականներով հանդերձ սրնգաց քաղցր և տրտում ձայնակցութեամբն և լալական կանանց ողբական ճիչերով. Աննա և Մարիամ ևս յուղարկաւորաց հետ էին գլխակոր և սգաւոր՝ իրենց գերդաստանին տիկնայց հետ միատեղ որք աղբիւրի պէս արտասուս թափէին[18]։

Մեռելն Խաչանց ասացեալ դռնէն դուրս հանեցին՝ զոր յետոյ քրիստոնեայք Դուռն Կուսին անուանեցին։ Թաղման տեղն երբ հասին՝ փողարքն և լալականք առ վայր մի լռեցին, և այն որ մեռելաթաղին գլխաւորն էր սկսաւ այսպէս խօսիլ առ դիակն. «Օրհնեալ լիցի Աստուած որ զքեզ ստեղծ սնոյց պահեց և կեանքդ առաւ։ Ո՜վ մեռեալդ՝ Աստուած գիտէ ձեր թիւն և օր մի ձեզ յարութիւն պիտի տայ։ Օրհնեալ լիցի Նա որ բառնայ զկեանս և միւսանգամ շնորհէ[19]»։

Փոքրիկ պարկով մի հող դրին մեռելոյն գլխոյն վերայ, և գագաղն գամեցին. յետոյ մութ քարայր մի

բացին որ տունն կենդանեաց[20] կոչէր ուր Նահապետն պիտի ննջէր զքուն արդարոց՝ սպասելով իւր գերդաստանին՝ միացորդացն։ Նոյն ատեն բարձրաձայն ճիչեր և սրտաճմլիկ աղաղակներ բարձրացան ամէն կողմանէ. անկաւ Աննա դագաղին վերայ իւր ամուսնոյն վերջին ողջոյնն տալու՝ և հոն մարեցաւ մնաց։ Արդարոյն մարմինն թաղելէն ետև այրին բերանն թաւալեցուցին վէմ մի մեծ՝ զոր շարժողն բանադրանաց պատժով պատուհասէր։ Նորոգեցան եղերամարց ջայլերն և ողբերն, և յուղարկաւորք երեք անգամ ափ մի խոտ բրցնելով և դէպ 'ի ետևնին նետելով տրամագին ձայնիւ ասէին. Ծաղկեսցին որպէս խոտ երկրի։ Այս արարողութեամբքս կատարեցաւ արդարոյն Յովակիմայ թաղման հանդէսն՝ որ սերունդ էր Թագաւորացն Յուդայ, հայր Մարեմայ և պապ Յիսուսի Քրիստոսի ըստ մարմնոյ[21]։

Սրբոյ Կուսին սիրտն այս առաջին ցաւով սաստիկ վիրաւորեցաւ՝ որ ուրիշ շատ ցաւերու սկիզբն և իւր վշտաց առաջին դասն էր։ Անգէն առաջին մանկութենէն թշուառութիւնն իւր ձեռքն նմա կարկառէր. բայց աղնուական մանուկն իւր ճամբէն ետ չգարձաւ. լացաւ այո՛ վասն զի իւր սիրտն ալ իւր աստուածորդւոյն սրտին պէս բուղխ և զգայուն էր. սակայն այն դառն բաժակն խմեց ասելով առ Աստուած Եղիցին կամք քո։ Մայրն ու զաւակն 'ի սուգ մտին ըստ սովորութեան եբրայեցւոց. հագան խոշորնեղ և առանց ծալքի խորգն՝ որ քուրձ անուանէր, գլուխնին բաց և ոտքն մերկ երեսնին ձորձին քղանցքովն ծածկած՝ խիստ լռութեամբ և ծոմապահութեամբ եօթն օր գետնի վերայ նստան՝ իրենց ազգականաց հետ ողբակցելով և մեռելոյն հոգւոյն համար աղօթելով[22]։ Եօթն օրն անցնելէն ետև՝ Աննա ժողովարանին լապտերներն վառել տալով՝ իւր ամուսնոյն համար աղօթք ապսպարեց, և իւր վիճակին համեմատ

ողորմութիւն բաշխեց։ Իսկ Մարիամ ամէն շաբաթուայն օրն որ որբ մնացել էր՝ ծոմապահութեամբ անցուցանէր՝ առաւօտ և երեկոյ իր հօր հոգւոյն համար աղօթելով. և այս աղօթքս և ծոմապահութիւնս տասն և մի ամիս տևեցին[23]։

Այս առաջին թշուառութեան վերայ հասաւ ուրիշ մի այլ աւելի սրտակեզ, և նոր սուգ մ'ալ Յովակիմայ սուգին հետ խառնուեցաւ։ Հազիւ թէ մարել էր Աննայի սգաւոր տան մէջ մեռելոց կանթեղն՝ հարկ եղև նորէն վառել, և Կոյսն որ իր ծնողաց միոյն վերայ դեռ վերջի արցունքն չէր սրբած՝ միւսն ալ ողբալու դժբաղդութիւնն ունեցաւ[24]։ Իրիկուն մի Մարիամ իւր ազգակցաց միոյն հետ տաճարէն վար իջնելով՝ նեղ և մութ փողոց մի մտաւ՝ ուր իր մայրն բնակէր. կանթեղ մի պլլպլար տան վերնայարկն, և բակին մէջ տխրադէմ լալականներն շարուած կեցել էին, լուռ և մունջ սպասելով։

Աննա իւր տկար ոյժն ժողվեց զաւակն օրհնելու համար. յանձնեց զինքն տխրութեամբ իւր ազգականացն՝ բայց առաւել Աստուծոյ՝ որ հայր է որբոց, և ննջեաց զքունն արդարոց[25]։ Լաց մի էր բրցուց Մարիամ և անկաւ իւր մօրն պաղած երեսաց վերայ. իւր խարտեաշ մազերն խառնուեցան մեռելոյն ճերմկած հերաց հետ, և կարծես թէ իւր հեկեկանօքն մայրն արթնցնել ջանայր. բայց Աստուծոյ շունչն միայն կարէ կենդանացնել զմեռեալս։ Երբոր արգարացի ցաւոյն առաջին սաստկութիւնն սակաւ մի մեղմացաւ՝ իւր ձեռօքն գոցեց այն սուրբ կնոջ թարթիչներն, երկայն և տխուր համբոյր մի տալով՝ որ էր յետին ողջոյն ըստ սովորութեան իւր ազգին[26]։

Լռութեամբ և ազնուականութեամբ կրեց Կոյսն իր խորին ցաւն. Նախախնամութենէ զատ ապաւէն մի չունենալով երկրիս վերայ՝ Աստուծոյ ծոցն դիմեց, և անտի լսէր իբրև՝ ի խաղաղ նաւահանգստէ՝ աշխար-

հային մրրկաց հեռաւոր գոչիւնն, և իմացաւ մարդ-կային կենաց ամենայն բանի ունայնութիւնն, ու-նայնութիւն պատուոյ և մեծութեանց, ունայնու-թիւն ճոխութեան և գեղեցկութեան, որ ամէնն ալ ձմերնային հեղեղի վերայ երևցած պղպջակի մի պէս փայլելն և անդէն աներևոյթ լինելն, այն հեղեղին հետ միասեղ՝ որ ձմեռն անցածին պէս ցամքի։ Այս միայ-նութեան և առանձին խոհմանց ատենն էր՝ աւէ պատ-մագիր մի, որ Մարիամ մշտնջենաւոր կուսութեան ուխտ գրաւ 27։ Եւ յիրաւի տեղ մինչանակուած ոչ գտանեմք թէ այս ուխտիս ծանօթ եղած լինին Աննա և Յովակիմ, որ առանց իրենց հաւանութեանն վաւեր ոչ համարէր առաջի քաղաքական և կրօնական օրի-նաց։ Իսկ իրենց մահուանէն ետև՝ Մարիամ թէպէտև խնամակալի իշխանութեան ներքև էր, սակայն զինքն աւելի ազատ կարէր համարել այս ուխտս անելու. ուստի այն ատեն ընտրեց զԱստուած 'ի ժառանգու-թիւն իւր, և նորա սեղանոյն սպասաւորութեանն նուիրեց զինքն անսահման ժամանակաւ, և միտքն դնելով ոչ ևս ելանել արտաքս այն սրբարանէն։ Ս. Կոյսն ալ իւր ցեղին գլուխ եղող թագաւորին պէս համարէր թէ լաւ է մի օր 'ի գաւիթս տանն Տեառն քան զհազարս, և աւելի նախադասէր յետին լինել այն սուրբ տեղւոյն մէջ՝ քան թէ առաջին 'ի խո-րանս Կեդարու Ա։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ Զ. ԳԼԽՈՅ

1 Եղև ոք որ համարեցաւ թէ Աննա այլ համանուն դուստր մի ևս ունեցած է՝ քան տարի յառաջ ծնեալ քան զկոյսն. սակայն Եկեղեցին ոչ ընդունի զայս կարծիս։

2 Կանայք երբայեցիք ամառն ժողովեալ լուսնի լուսով մանելու սովորութիւն ունելն անտի յայտնի է՝ որ օրէնսգէտք իրաւունս տային արանց արձակելու զկանայս՝ որ լուսնակին մանելու ատեն չարախօսէին զարանց իւրեանց (Սոտահ գլ. Զ)։ Այս սովորութիւնս մինչև ցարդ տևէ 'ի Քորսիքա կղզին՝ որ ուրիշ շատ արևելեան սովորութիւններ ալ ունին։

3 Ըստ Սրբոյն Գրիգորի Նիւսացւոյ հայրն Կուսին պատուաւոր ժողովոյ մի էր՝ բարեպաշտութեամբ և երկիւղածութեամբ անուանի։ Ուրիշ մ'ալ հաստատէ թէ բաւական ունևոր լինելով Յովակիմ և Աննա՝ տաճարին և աղքատաց առատ ողորմութիւնս տային (տես 'ի Վարս Սրբոց Հ. Աւգերեանի հտ. Ե 5)։

4 Աշտարակն անտոնեան՝ տաճարին միջնաբերդն կարէր համարուիլ, որ երբեմն ասմոնեան իշխանաց պալատն էր. և ժայռն որոյ վերայ բարձրանայր անմատչելի է յամենայն կողմանց, յիսուն կանգուն բարձրութեամբ։ Հերովդէս այս աշտարակս դրսէն մարմարիոնով պատեց՝ որպէս զի մարդ չկարասցէ ելնել և իջնել։

5 Եբրայեցւոց որպէս նաև այլոց ազգաց արևելից կրօնական տօներն նախընթաց յերեկոյէն սկսին որպէս յայտնի է։

6 Այս ոսկեղէն աշտանակներս յիսուն կանգուն բարձրութիւն ունէին, և պոռոտախօս րաբունիք ասեն թէ իրենց լոյսն Երուսաղեմէն շատ հեռուէն երևէր, և քաղաքն ևս այնչափ լուսաւորէր որ խոհարարք կանթեղի պէտք չունէին ապրոյ բըրինձ ատկելու (տես 'ի Թալմուտն, և գործի եկող րաբունեայ մի Գ Թուղթն)։

7 Այս աղարթոց գրանսանդն տաղաւարահարաց տօնին դրուէին (Պատմած գիրք Է գլ. 16)։

8 Ջոհագործից հանդիսաւոր տօներուն երեկոյներն հագած բագէնն՝ 'ի Հնդկաց գայլին, և շատ սուղ բաներ էին (Պատմած գիրք Է գլ. 15)։

9 Հրեայք և արաբացիք բարձրաձայն աղօթեն։

10 Քանի որ տաճարն կանգուն կայր՝ Հրեայք պարտ համարէին այց ելնելու. Տիտոսի ժամանակ Երուսաղեմայ կործանման ատեն միլիոն մի և հարիւրհազար մարդէն աւելի կորեան՝ որ եկեալ էին զատկի տօնն կատարելու՝ երբ քաղաքն պաշարեցաւ (Պատմած գիրք Է գլ. 11):

11 Հայրն Քրուազէ Հրահանգք քարեպաշտութեան գլ. ԺԸ: —

12 Պատմած գիրք Է գլ. 24:

13 Նահապետաց ժամանակէն սովորութիւն էր որ հարք մեռած ատեննին իրենց զաւկներն օրհնէին. ուստի Մարիամ ալ այս սովորութեանս հետևեցաւ, որովհետև կուսաստանն մենաստանաց պէս փակարան չէր, և հայրն յԵրուսաղէմ բնակէր:

14 Սուրբ Հերոնիմոս ցուցանէ որ իր ժամանակն ալ երբայեցիք ցտելու և մազերնին փետելով մեռնողին նուիրելու սովորութիւն ունէին:

15 Առ հրեայս ով որ մեռելոյ դպչէր՝ պղծեալ համարէր. և երբ դուռն փակէր՝ տունն գերեզման համարէր և պղծեալ, իսկ երբ բացուէր՝ պղծութիւնն ալ վերնայ (Մայմոնիտ):

16 Պատմած գիրք Է գլ. 24:

17 Յիսուս Քրիստոս իշխանի մի դուստրն յարուցանելու համար տունն մտած ատեն՝ ետես զփողարսն որ մեծ աղաղակս առնէին: — Մայմոնիտ ասէ թէ ամենէն աղքատն ալ երկու փողար և մի լալական վարձելու է իւր կնոջ թաղման, հարուստներն այլ աւելի (Ֆլէօրի Կենցաղ Իսրայելացւոց):

18 Կանայք և որդիք իրենց արանց և հարց թաղմանն ընկերէին. Նայինի այրին իր որդւոյն դագաղին ետևէն երթայր. Յովսէփ իւր հօրն Յակոբայ թաղման ժամանակ յառաջընթաց լինէր տխուր հանդիսին: Այս սովորութիւնս մինչև ցայժմ առէ 'ի Հրէաստանի:

19 Լեոն մոտենացի Սովորոյթք հրէից. Պուքստորֆ Բառարան եբր. թալմ.:

20 Գերեզմանն փոխանակ տուն մեռելոց կոչուելու տուն կենդանեաց կոչէր, ցուցանելու համար թէ անմահ հոգին 'ի մարմնոյ բաժնուելէն ետև ևս կեայր. այս անուանս երևի թէ փարիսեցիք հնարած են (Պատմած գիրք Է գլ. 24):

21 Տես 'ի Ֆլէօրի Կենցաղ Իսրայէլի. Լեոն մոտենացի Սովորոյթք հրէից. Պատմած գիրք Է. Թղթակցութիւն արևելից հտ. Ե:

22 Քառասուն և իններորդ սաղմոսն երգէին. — Լայթֆութ 'ի Յհ: Լեոն մոտենացի: Հ. Միքայէլ Չամչեան:

23 Պատմած գիրք Է:

24 Հայրն Քրուազէ համարի թէ Յովակիմ և Աննա իրարմէ ետև մեռան 'ի սակաւ ժամանակի: — Իսկ Հ. Մկրտիչ Աւգերեան համարի թէ Ս. Աննա յերկարեաց 'ի կեանս մինչև ան-

առնել և գգուել զթոռն իւր զՔրիստոս (տես 'ի վարս Սրբոյ. տես և 'ի Ճենթիլուչչի 'ի վարս Տեառնօրն)։

25 Հաւանական է որ Ս. Կոյսն աղընթեր գտաւ և 'ի մահու մօրն ըստ սովորութեան Հրէից։

26 Ցոյժ հնագոյն է սովորութիւնս. Փիլոն եբրայեցի յիշէ զողբս Յակոբայ 'ի վերայ որդւոյն իւրոյ, յորում ասէ թէ գոնեայ այս մխիթարութիւնս ալ չունեցաւ փակելոյ զաչս նորա և տալոյ նմա զյետին համբոյր, և յաւելու « Որդիք եբրայեցւոց ընդունէին զօրհնութիւն հարց իւրեանց, փակէին զաչս նոցա, և յուղարկաւորք գնային 'ի գերեզման հանգստեան յաւանդելն զնոսին 'ի յոսկերս նախահարցն (Պատմութիւն օրէնսդրութեանց Մովսէսի և ազգին Եբրայեցւոց հտ. Բ)։

27 Տեքութիւր Վարք Սրբոյ Կուսին։

Ս. Վասն գերեզմանի Յովակիմայ և Աննայի, որպէս և Սրբոյ Կուսին և Յովսեփայ՝ հաստատակաց աւանդութիւն է թէ էր 'ի ձորն Յովսափատու մերձ 'ի պարտէզն Գեթսեմանի, զոր և ստորագրէ Փրանկիսկոս Կուարեսմիոս ոմն 'ի Ջննութեան սրբոյ Երկրին հտ. Բ գիրք Դ գլ. 2 (տես 'ի Լիպոմանոս վարս սրբոյ Աւգերեանի հտ. Ե էջ 20)։ Սրբոց գերեզմանացս նորագոյն խուզարկութիւնն և ստորագրութիւնն տես Գործոյս վերջերն Աստուածամօր ննջման և Թաղման գլխոյն ծանօթութեանց մէջ։

# ԳԼՈՒԽ Է.

## Հարսնութիւն Մարեմայ.

Երբեւ թէ Յովակիմ մեռանելու ժամանակ՝ քահանայից միաբանաւոր խնամոցն յանձնեց իւր զաւակն, կամ թէ իշխանք որ որբոց հոգ տանէին՝ իրեն խնամակալ կարգեցին զոմանս 'ի ցեղէն Ահարոնի՝ մօր կողմանէ ցեղակից լինելուն համար, և կամ տաճարին սպասաւորութեան նուիրեալ աղջկանց խնամքն իրաւամբ ղեւտական ցեղին անկանէր. այս սոյգ է որ իւր բարեպաշտ ծնողաց վախճանելէն ետև՝ Մարիամ քահանայական ցեղէն խնամակալներ ունեցաւ. և եթէ յանդգնութիւն չսեպուի այս ենթադրութեանս՝ մեզ հաւանական երևի ասել թէ այս խնամակալութիւնս Եղիսաբեթի երկիւղած էրկանն Զաքարիայի վստահացան, որ թէ մօտ ազգական լինելով Սրբոյ Կուսին և թէ առաքինութեամբքն պատկառելի՝ շատ յարմար էր այս պաշտօնիս։ Նոյն իսկ Մարիամու փոյթն՝ երթալու ուրախակից լինելու Յովհաննու Մկրտչի մօրն՝ երկու երեք տարի յետոյ, և իւր երկայն ատեն բնակութիւնն 'ի Քեբրոն 'ի տան Զաքարիայի՝ այս բանս հաւաստարմացնեն, և ցուցանեն թէ պարզ ազգականութենէ աւելի՝ մտերիմ յարաբերութիւն մի ունէին իրարու հետ. հրէից մէջ խստիւ պահուած պատշաճողութեանց օրինաց նայելով՝ այն տունն յորում երկայն ատեն բնակեցաւ Մարիամ՝ իւր հօրենական տան պէս ապահով պէտք էր լինել։

Բայց քահանայից մէջ ո՞ք աւ եղած իցեն Սրբոյն Աննայի երանեալ զաւկին խնամակալութեան պանծալի պաշտօնն ունեցողներն՝ խղճի մտօք և անվրէպ կա-

տարեցին իրենց պարտքն՝ որ այս պաշտօնս պահանջէր. այնպէս որ երբ Կոյսն տասնուհինգ տարուան եղև՝ մտածեցին որ արժանաւոր փեսայ մի տան իրեն։ Հարսնութեան այս խորհուրդս մեծ տագնապի մէջ ձգեց զՄարիամ. իւր բարձր անարատ ներանձնական և հայեցողական հոգին՝ գուշակել էր աստուածական կատարելութիւնն, և իրեն երևէր թէ կուսական վիճակն կին մարդու համար քան զամենայն պայմանս կենաց կատարելագոյն սրբագոյնն և պատուաւորն էր։ Ըստ վկայութեան Սրբոյն Գրիգորի Նիւսացւոյ՝ հնագոյն հեղինակ մի պատմէ թէ Մարիամ երկար ատեն համեստութեամբ դէմ կեցաւ՝ և հաւանութիւն ոչ տայր իւր խնամակալաց թախանձանացն, և խոնարհութեամբ խնդրեց իւր ազգականներէն որ թողուն զինքն տաճարին մէջ անմեղ անյայտ կեանք մի անցնելու՝ ազատ յամենայն կապանաց բաց 'ի կապանաց Տեառն իւրոյ։ Իր վերայ խնամք ունեցողներն շատ զարմացան այս խնդրուածոյս վերայ. վասն զի այն բանն զոր ինքն իբրև շնորհ խնդրէր 'ի նոցանէ՝ ամլութիւն էր և անզաւակութիւն, որով և նախատինք, և այնպիսի վիճակ մի զոր Մովսիսի օրէնքն ընդ անիծիւք դատապարտեալ էին [2]. և վերջապէս ամուրի կեանքն էր ուզածն՝ որ է ատել հայրական տունն և անունն ջնջուցանել բոլորովին, որ առ եբրայեցիս գրեթէ ամբարիշտ խորհուրդ մի համարէր, և մեծ թշուառութիւն սեպէին երբ ոչ կարէին մշտնջենաւորել իրենց անունն Իսրայելի մէջ։ Եւ ոչ ալ կուսութեան ուխտիւ զինքն պարտաւանդած լինելն կարէր իրեն օգնել. վասն զի այս ուխտըս հրապարակեալ և վաւերացեալ չլինելուն համար՝ նոյն իսկ գերդաստանին կամքն ոչինչ համարէր։ Կին մարդ իւր բոլոր կենաց մէջ անտիական կամ անչափահաս կը սեպուէր հին ատեն, և ըստ այնմ ալ իրեն հետ կը վարուէին, մինչև որ հրատա-

րակեցաւ աւետարանի անմահական օրէնսգիրքն՝ որ զայր ազատ և զկին և զգերի իրարու եղբայր կարգեց մի ժողովուրդ կազմելով։

Քահանայից դասէն ալ ոչ ոք պաշտպան եկաց Կուսին Թախանձանացն. վասն զի դեռ այսպիսի վսեմ առաքինութեանց բարձրութեան հասու չէին, և որչափ այլ իմաստուն և խորախորհուրդ մարդիկ էին՝ սակայն Մարիամու հրեշտակային և սուրբ հոգին՝ իրենց համար եօթն կնքով կնքեալ մատեան մի էր։ Իր մտաց որոշումն՝ որ իւր դարէն շատ բարձր էր և իր ազգին նախապաշարմանց հակառակ՝ իրենց համար անհասկանալի բան մի էր. ուստի ինչ առարկութիւն որ յառաջ բերաւ՝ իր սիրելի ուխտին հակառակ վիճակ մի ընտրելու՝ անօգուտ եղև։ Եւ ինչպէս կարէր ինքն համոզել զնոսա՝ երբ Աստուած ինքնին հակառակ էր իրեն խորհրդոցն. որովհետև աստուածային Նախախնամութեան անքննելի խորհրդովը սահմանուած էր նորա ամուսնութիւնն արդար մարդու մի հետ՝ որ վկայ լինելոց էր անարատութեան կենաց նորա, ազատելոց էր զնա իր ազգակից երիտասարդաց Թախանձանքէն՝ որք նոյն իսկ տաճարին մէջ եղած ատենէն՝ իրեն հետ կ՚ուզէին նշանուիլ [3], և պաշտպան կալոց էր նմա և իւր Աստուածորդւոյն զանազան դժբաղդութեանց ժամանակ։ Բաց յայսցանէ այս էր մի միայն միջոցն Մարդեղութեան խորհուրդն ազատելու ապականեալ աշխարհի 'ի վայրախուզութեանց և յաչաղանաց. որ այն հրաշալի յղութիւնն իրեն գործի առնլով ամբարիշտ կասկածներ կարէր տարածել, և մինչև անգամ յայն աստիճան նախանձայուզութեան հասնիլ մինչև քարկոծել ևս զմայր Մեսիային իբրև վատահամբաւ աղջիկ մի [4]. վասն զի գթութիւն ասացեալ առաքինութիւնն շատ ծանօթ չէր եբրայեցւոց, ինչպէս որ Աստուած ալ շատ անգամ մարգարէին ձեռօքն երեսնին զարնէր իրենց խստասրտութիւնն։

Այս զօրաւոր պատճառներուս վերայ՝ որ Աստուածոյ խորհրդոց անհասանելի խորոց մէջ ծածկեալ են, ուրիշ պատճառ մի ալ կայր՝ որոյ սկիզբն Նախըրհեղեղեան աւանդութեանց ծագմանէն և ազգային փառասիրութենէ յառաջ գայր, որ ինքնին միայնակ բաւական էր տկարացնել Մարիամու խոնարհ ընդդիմութեամբ յաղթելու յոյսն։ Աշտնջենաւոր կուսութիւնն՝ զոր քրիստոնեայք Թագուհի առաքինութեանց համարեցան՝ Մովսիսի օրինաց հետևողացն առջև անտեղութիւն մի էր, որք այնչափ դարերէ 'ի վեր անձկանօք սպասէին Արքայ-Մեսիային գալըստեանն։ Յեսսէի գաւազանին նորածիլ ծաղիկն և Դաւթի դուստրն ազատ չէր ամուսնական լուծն մերժելու. այլ պարտաւոր էր զաւակ մի տալ իւր գերդաստանին փառասէր բարեպաշտութեանն, որ բոլոր Թագաւորական գանձուց հետ ոչ փոխէր այն ակնկալութիւնն որ ունէր՝ օր մի իր գերդաստանին մէջէն ելած համարելու զփրկողն Իսրայէլի։ Այս ակնկալութիւնս որ քաջալերէր զհրեայն՝ երբ ասորեստանցին զինքն գերի վարեց և տարաւ բնակեցուց Եփրատայ ափունքն, այլ աւելի զօրացած էր 'ի յետին ժամանակս որ և վրէժխնդրութեան դաժան փափաքանաց փոխուեցաւ՝ երբ հռոմայեցիք Ասիոյ տիրեցին. և եբրայեցիք յուսային թէ մօտ էր այն օրն՝ յորում Թշնամեաց արծուէնշաններն պիտի հալածուէին իրենց կանաչ դրօշակին [5] առջև, և մակաբայեցւոյ նշանաբանն [6] պիտի ծածանէր հռոմէական ծերակուտին չորս գրերուն վերի դին։ Մեսիայի նկատմամբ եղած գուշակութեանց լրումն ալ՝ ամենուն մտաց մէջ մօտ ատեններն պիտի կատարուէին. ուստի և Մարիամու խնդրածն ալ իրեն շնորհելու համար՝ ժամանակն յարմար ոչ երևէր։

Ուստի Սրբոյ Կուսին խնամակալքն նորա դժկամակութեան և առարկութեանց ականջ չտալով ժո-

ղով մի կազմեցին մերձաւոր ազգականներու՝ որ ամենքն 'ի սերնդոց Դաւթի էին և 'ի ցեղէ Յուդայ, որպէս և ինքն [7], իրեն յարմար փեսայ մի ընտրելու համար։ Ջինքն հարս ուզողներուն մէջ կային շատ երիտասարդներ, ոմանք գեղեցիկ և կորիճ, և այլք տեարք բարեբեր անդաստանաց, այգեաց, հօտից և ձիթաստանաց։ Զօրավարք Իսրայելի օժտէն զատ կարէին տալ Մարեմայ՝ պատերազմաց մէջ աւար առած հարստութեանց և գերեաց մի մասն. Մեծատունք տոհմիւ կարէին զարդարել զնա Հնդկաց ոսկեթել դիպակներով և Տիւրոսի կրկնաներկ ծիրանիներով. իսկ վաճառականաց զաւկներն որ Եգիպտոսի հետ զմրուխտի, Պարսից հետ պերոզակի և Պարսից ծոցին հետ մարգարտի առուտուր ունէին՝ կարէին իրեն առջև դնել անգին գոհարաց քառամանեակներ, թանկագին ապարանջաններ, ծանրագին գինդեր՝ որոց գնովն կարելի էր իշխանի մի կեանքն փրկանաւորել. վերջապէս այն ամէն շքեղ և փայլուն զարդերն և մեհեւանդներն՝ որ տկար սեռին գերութեան նշաններն են։ Բայց գերդաստանին ժողովքն տարփաւորաց այս ամէն բարեմասնութիւններս կշռելով բաւական չհամարեցաւ. և երիտասարդութեան, ազնուականութեան, հարստութեան և քաջութեան առաւելութիւններն արհամարհելով ամենեքեան միաբան քահանայք և խնամակալք և տան նահապետք՝ իրենց ընտրութիւնն աղքատ և հասակաւոր մարդու [8] մի տուան ժողովրդեան մէջէն՝ որ միշտ ամուրի [9] կեանք անցուցեր էր, և իւր հացն ճակտին քրտինքովն վաստըկէր. և այս մարդն էր Նազարէթ քաղքէն Յովսէփ անունով հիւսն։

Մարիամու չնաշխարհիկ գեղեցկութեան նայելով, և իւր տաճարին մէջ ընդունած դաստիարակութեան, իւր գերդաստանին ազնուականութեանն և իւր հայրենական ժառանգութեան համար՝ շատերուն փափաք

գայր զինքն իրենց հարսնացնելու, որովհետև հրէից մէջ սովորութիւն էր որ արք իրենց կնոջէն բանի մի ոչ սպասէին [10], այլ մանաւանդ թէ իրենք տային նոցա օժիտ, այս ամէն բան նկատելով թերևս զարմանան ոմանք այս ընտանեկան ժողովքին ընտրութեան վերայ. բայց պէտք է գիտել թէ Ս. Հարք մեզ ցուցանեն որ Յովսեփայ ընտրութիւնն վիճակարկութեամբ կատարեցաւ և որոշ յայտնութեամբ աստուածային կամաց [11]: Սրբոյն Հերոնիմոսի ձեռօք պահուած հին աւանդութիւն մի՝ զոր Կարմելոս լերին պատմութիւնն ալ հաւաստէ, ասէ թէ Մարեմայ տարփաւոր երիտասարդք Աստուծոյ օգնութիւնն հայցելէն ետև յորմէ Պատրաստի կին առնէ իւրաքանչիւրն առաջին երեկոյէն տաճարն աւանդեցին իրենց նշենի գաւազանները, և առաւօտուն տեսին որ Մատթանայ որդւոյն Յակոբայ, Յակոբայ որդւոյն Յովսեփայ գաւազանն՝ որ այլոց պէս չոր և ցամքած փայտ մի էր՝ ծլել ծաղկել է, ինչպէս որ հին ատեն նոյն կերպով հաստատեցաւ քահանայութիւնն 'ի տանն Ահարոնի: Եւ վերոյիշեալ պատմութիւնն յաւելու՝ որ այն երիտասարդներէն մին որ ազնուական տնէ էր և Հրէաստանի զօրաւոր գերդաստանաց ազգական և հարուստ ժառանգութեան տէր, այս հրաշքս տեսնելով՝ մեծ տրտմութենէն իւր գաւազանն ջախջախեց և չոգաւ առանձնացաւ Կարմելոս լերին այրերուն մէջ Եղիայի աշակերտաց քովը [12]:

Այս կերպով եղած ընտրութիւնն՝ խնամակալներն Մարիամու ծանուցին, և այն հրաշալի օրիորդն՝ որ ազնիւ աշխատութեանց վարժած էր, անուշահոտ բուրմանց և քաղցրանուագ երգոց մէջ մեծցած և սուրբ օթևանին հեշտացուցիչ մեծվայելչութեանց մէջ սնած՝ տաճարէն վարանելու սիրով ընդունեց անշուք կեանք մի, հասարակ աշխատութիւններ և ծանր հո-

դեր՝ այն խոնարհ և ծերուկ արուեստաւորին հետ՝ զոր իւր ազգականք իրեն սահմանել էին։ Կարծուի թէ աստուածային ազդեցութիւն մի իրեն իմացուցել է՝ որ այս արդար մարդս իրեն համար պաշտպան մի և հայր և պահապան պիտի լինէր իւր ողջախոհութեան [13]. ինքն ալ աւելի բան մի ոչ փափաքէր։ Աստուած իր աղօթքն ընդունել էր՝ որ իւր դրած ուխտին հաւատարիմ մնալու թոյլ տալէն զատ՝ յաւելոյր նաև հնազանդութեան արդիւնքն։

Անտարակոյս Յովսեփայ և Մարեմայ զիրար առնելոյ լուրն իմացուելուն պէս՝ Նազարէթի և Երուսաղեմայ մէջ շատերն զարմացան այս բանիս, որովհետև խօսեցեալներուն տարիքն հարստութիւնն և վիճակն իրարմէ շատ տարբեր էին։ Բայց մեք մեծապէս սխալիմք եթէ համարիմք թէ այս միութիւնս որչափ որ մեզ ամէն կողմանէ անհամեմատ երևի՝ նոյնպէս անյարմար երևցած լինի նաև հրէից. որովհետև դեռ այն ազգին մէջ պահուած էր նախկին բարուց պարզութիւնն։ Արուեստաւորի վիճակն՝ թէպէտ տէրութեան մէջ բարձր աստիճան ոչ համարէր՝ սակայն առ իսրայելացիս անարգ և անպատիւ վիճակ մի չէր [14]. Յուդայի ցեղին ազգաբանութեան մէջ տեսանեմք բեհեզագործ ընտանիք մի, ուրիշ մի բրուտ խեցեղէն անօթոց որ պատուով կը յիշատակուին. և Սուրբ Գիրք ապագայից աւանդեցին Բեսելիելի և Քիրամայ անուանքն. յայտնի է դարձեալ որ Պաւղոս առաքեալ որ օրէնսգիտութեան աշակերտեալ էր, և անուանի րաբունապետն Հիլլէլ՝ այնպիսի ձեռնարուեստս ունէին՝ որ շատ նշանաւոր բան մի չէր, և սակայն իրենց արուեստն բանելու ոչ ամաչէին։ Բաց աստի ամէն իսրայելացի արուեստաւոր էր, և ամէն տանուտէր թէ հարուստ թէ աղքատ պարտաւոր էր արուեստ մի ուսուցանել իւր որդւոյն՝ եթէ ոչ կամիք որ գող լինի զաւակնիդ՝ ասէր օրէնքն [15]։

Այն հրեայք որ աղքատութեամբ կամ անանկութեամբ պարտական անկանելով՝ իրենց հայրենի կալուածքն օտարի վրայ դարձուցանէին իբրև գրաւ՝ ուրիշ բան չէին կարող առնել՝ բայց եթէ կամ բոլորովին իրենց հայրենեաց հեռանալ, և կամ կարօտութեամբ իրենց ձեռաց աշխատութեամբն աղքատօրէն ապրիլ իրենց ծնած երկրին մէջ՝ մինչև որ հասնէր յոբելեան տարին, որ իւրաքանչիւր ոք նորէն իւր կալուածոց տէր կարասցէ լինել: Ուստի նոքա որ հայրենասիրութեամբ այս վերջին վիճակս ընտրէին՝ իրենց իրաւունքէն բան մի ոչ կորուսանէին և ամէն պաշտամանց յարմար սեպուէին: Իսրայելացիք՝ հնդկաստանցւոց և եգիպտացւոց պէս զանազան աստիճան ոչ բաժանէին. իրենց բովանդակ պարծանքն կրօնական հաւատքէն և նահապետաց յաջորդ լինելէն յառաջ գայր. և Պոսիւէի ասացածին պէս «Ըստ մարմնոյ Աբրահամէն իջած լինելն այնպիսի պարծանք մի էր՝ որ քան զամէն պատիւ գերազանցէր». և յիրաւի իրենց մէջ ամենէն յետինն ալ ինքզինք իշխան համարէր օտարաց համեմատութեամբ [16]:

Սակայն իրենց մէջ ալ կային՝ որպէս առ արաբացիս, առաւել անուանի ցեղեր և քան զայլս աւելի ազնուական տներ. ցեղն Յուդայի՝ որ 'ի գլուխ հազարաւորաց Իսրայէլի պատերազմներու ժամանակ ազգին դրօշակիրն էր, և որոյ ձեռքէն իշխանութեան գաւազանն պիտի չպակսէր մինչև 'ի գալուստ Մեսիային, միշտ առաջնութիւն ունեցաւ. և Յուդայի ցեղին գերդաստանաց մէջ ալ Դաւթի տունն ամենէն յառաջ և քան զամենեսին պատուաւորն էր: Իսկ արդ Յովսէփ թէ և աղքատ՝ բայց Դաւթի սերունդ էր, և իւր երակաց մէջ քսան թագաւորաց արիւնն ընթանայր, և Զօրաբաբէլ որ զժողովուրդն Աստուծոյ գերութենէ դարձուցել էր իր նախահայրն էր: Թէպէտ այն ժամանակէն 'ի վեր իւր տունն սակաւ

առ սակաւ. իւր փայլն կորուսած էր, և իւր գերդաստանն ռամկին հետ խառնուած՝ ինչպէս նաև Մովսիսի և Սամուէլի, բայց տակաւին ամենքն ճանաչէին իւր փառաւոր ծագումն: Ահաւասիկ այսօր իսկ աբասեան ցեղին մնացորդքն Հէճազի մէջ խեղճ կեանք մի վարեն, և սակայն Հարուն էլ Ռաշիտի յաջորդքն ալ զիրենք մեծարեն, և արաբացի ճոխ գերդաստան մի չկայ՝ որ նոցա հետ խնամութիւն առնելն իրեն անպատուութիւն համարի:

Ապա ուրեմն Յովակիմայ դստեր նուաստութիւն չէր՝ ինչպէս որ կարծուի՝ հիւսան հետ ամուսնութիւնն: Իսկ եթէ այլ աւելի բարձրէն նկատեմք այս միութիւնս՝ որ զառաջինն այնչափ անյարմար երևի մեզ՝ տեսանեմք որ յիրաւի ազնուական խնամութիւն մի էր. Աստուած՝ նոյն իսկ երկնից տարփալի Կուսին ոչ կամեցաւ տալ 'ի փեսայութիւն այնպիսի մարդ մի՝ որոյ արդիւնքն լիցի միայն ունել արտս և այգիս, ոսկի և արծաթ, որք այնպիսի բաներ են որ ձեռաց 'ի ձեռս անցանեն, և հարուստ մարդու այնչափ սեպհական են՝ որչափ իրեն հագած զգեստներն՝ յորոց երեկոյ եղածին պէս մերկանայ, այլ տուաւ իրեն արդար մարդ մի իր ձեռակերտաց մէջ կատարելագոյնն. վասն զի ինքն սնոտի համարի զայնս՝ որ ռամկին մեծայարգ երևին. իւր աչաց առջև ամէն վիճակ հաւասար է 'ի մէջ խեղճ արարածոց՝ որ սակաւ մի ժամանակ քարշ գալով ընդ հող և ընդ փոշի՝ վերջապէս որդանց կերակուր լինին: Մարդ հայի յերեսս այլ Աստուած հայի 'ի սիրտս ասեն Գիրք: Զխոնարհն և զարդարն Յովսէփ հրեշտակաց Թագուհւոյն փեսայ և Մեսիայի հայրագիր ընտրելոյն պատճառ այն էր, որովհետև շնորհաց և սրբութեան գանձերով ճոխացած էր՝ երկնային հոգեղինաց անգամ նախանձելի, և զի առաքինութիւնք՝ առաջին կացուցեալ էին զնա յազգին իւրում, և կենացգրոց մէջ որ յաւիտենա-

կան կենաց ազնուականութեան տարեգիրքն են՝ Կե-սարէն աւելի բարձրագոյն էր իւր տեղն։ Աստուած զԿոյսն հզօրագունին չյանձնեց՝ այլ արժանագունին. որպէս և տապանակն ուխտի՝ որում ոչ համարձակէին մերձենալ իշխանք և հզօրք Իսրայէլի՝ վախնալով որ միգուցէ մեռանիցին, պարզամիտ գեթացւոյ մի տունն իջաւ և երկնային օրհնութեամբ ճոխացոյց զայն։

Մարեմայ հարսնախօսութիւնն նախկին ժամանակաց պարզութեամբն կատարեցաւ. Յովսէփ 'ի ներկայութեան խնամակալաց նորա և վկայից ոմանց մատոյց նմա փոքրիկ արծաթի դրամ մի կամ ոսկի օղակ պարզ մատանի մի ասելով. Եթէ հաւանիս լինել իմ հարսն՝ ընդունէ զայս գրաւս։ Մարիամ մատանին ընդունելով հանդիսապէս կապուեցաւ, և այն օրէն իւր ազատութիւնն չէր կարող նորէն ստանալ՝ բայց եթէ ապահարզանի վճռով։ Դպիրք դաշնագիրն գրեցին, որ համառօտ գիր մի էր առանց դիւանագրական ձևերու [17], յորում փեսայն խոստանայր՝ իւր կինն պատուելու, և ըստ սովորութեան հրէից նորա ապրուստըն և հագուստն հոգալու, վարձանս կարգելով նմա երկուհարիւր զուզի (որ է գրեթէ 300 Ֆր. Փրանկիոյ). այս տուայրս ամենեցուն հաւասար էր թէ իշխանաւորաց և թէ ռամիկ մարդկանց դստերացն, սակայն իւրաքանչիւր ոք իր վիճակին համեմատ կարող էր բան մի յաւելուլ 'ի վարձանս հարսինն։ Արարողութիւնն կատարեցաւ համառօտ օրհնութեամբ առ Աստուած որ ամուսնութեան օրէնքն սահմանեալ էր. և զայս օրհնութիւնս կարգաց մին 'ի խնամակալաց՝ որ հարսին հօր տեղն բռնած էր։ Այն ատեն դեռ ամուսնութիւնն խորհրդոյ կարգ չէր՝ յոր բարձրացոյց յետոյ Քրիստոս Տէրն մեր. ուստի և առ եբրայեցիս պարզ քաղաքական արարողութիւն մի էր։

Նշանտուքէն մինչև ցհարսանիս՝ ըստ սովորու-

թեան քանի մի ամիսք անցին. և այն միջոցին խօսեցելոց ազգականքն և բարեկամք պէտք եղածն պատրաստեցին հարսանեաց մէջ վայելչապէս երևելոյ համար։ Արևելեայց մէջ հարսանիքն միշտ շքեղութեամբ կատարի, ևս առաւել եբրայեցւոց մէջ որ բաց 'ի կրօնական հանդիսութեանց ուրիշ հանդէսներ չունելով, որովհետև անծանօթ էին առ նոսա ըմբշամարտութիւնք, կառարշաւք, հասարակաց խաղք, նաւամարտութիւնք և թատերական հանդէսք և այլն՝ բոլոր քաղաքացիք անհամբեր սպասէին հարսանեաց հանդէսներուն։ Այսոր համար է որ մարգարէք ալ Յուդայի երկրին ապականութիւնն և 'ի թշնամեաց ոտնակոխ լինելով Սիոնի բարձր աշտարակին վերայ գերութեան դրօշակն պարզուած ցուցած ժամանակ՝ գուշէին. « Ով Երուսաղէմ, քու ճանապարհներդ անապատի պէս լուռ և գերութեան պէս մունչ պիտի դառնան, և քու աւերակ դարձած փողոցներուդ մէջ սրնգի և տաւղի ձայներն պիտի լռեն. և Տէրն պիտի դադրեցընէ զուրախարար ձայն փեսայի և զձայն հարսի »։ Աւետարանի մէջ ալ ստէպ յիշատակին հարսանեաց հանդէսներ՝ զոր Քրիստոս Տէրն մեր ոչ միայն չպախարակեց, այլ և երբեմն իւր ներկայութեամբն ալ պատուեց և սրբացոյց։

Ամենասուրբ Կուսին հարսանիքն յԵրուսաղէմ կատարեցաւ, և գերդաստանին երևելի անձինքն յօժարութեամբ ներկայ գտան արևելեան սեպհական ճոխութեամբ՝ ընդ որ արևմտեայք յոյժ հիանան։ Մեծ անարգանք կը համարուի բովանդակ ազգականներն ալ չհրաւիրելն. այնպէս որ յետին աղքատութիւնն ևս այս անհոգութիւնս ոչ արդարացուցանէ. որովհետև եթէ ամուսնացեալք չքաւոր են՝ նոյն իսկ հրաւիրեալ ազգականներն պէտք եղած ծախքն հոգան։

Թէպէտ Յովսեփայ և Մարիամու սուրբ հարսա-

նեաց մէջ աշխարհային ունայն զուարճութիւնք և երկրաւոր ուրախութիւնք չկային, և քան զուրիշներն առաւել այս երկու սուրբ ամուսինք այն բաներուն ոչնչութիւնն և ունայնութիւնն ճանաչէին, սակայն և այնպէս հարկադրեցան սովորութեան հետևել, և 'ի պատիւ վաղեմի կարգաց նախնեաց իւրեանց՝ յանձն առին այս վայրկենական հանդէսն՝ որ փայլական ամպոց մէջէն անցնելուն արագութեամբն իրենց կենաց մէջէն ալ անցանէր։

Ձմերուան գեղեցիկ օր մի [18] երբ նոր լուսինն հանդարտաքայլ բարձրանայր լերանց ետևէն [19] հարուստ լաթեր հագուած կանանց երկայն շարք մի երեցաւ՝ որ դէպ 'ի Մարեմայ տունն երթային. բազմաթիւ ծառայից ձեռքն եղած եղևին ծառոյ խիժոտ ջահերուն լուսովը շողշողային նոցա ոսկեճարմանդ կշտապանակներն, մարգարտէ ծամակալներն, ճակատնին դրած ականակուռ մաշիկներն, և պարսկական ապարօշներուն ադամանդներն [20]։ Սիոնի օրիորդք դեռ ևս պահած էին սնգուրիւ շպարելու սովորութիւնն, և Յեզաբելի ժամանակէն 'ի վեր ծանօթ էր իրենց յօնքն և արտևանունք ծարրով ներկելու 'ի սև արջնաթոյր, և մատանց ծայրերն հինայիւ կարմրացնելու՝ անմիջակ վարդի հատապտղոց պէս [21]։ Դունէն 'ի ներքս մտանելով՝ ուր էր հարսն սուրբ և նորահաս՝ իր ազգական բարեպաշտ տիկնայց մէջ, օրհնեցին զԱստուած որ հարսին պաշտպան փեսայ մի տայր, և իրեն ալ բարեմաղթութիւններ առնելով իւր հարսնութեան համար՝ որոյ ուրախութեան եկած էին մասնակից լինելու։

Մարիամ շնորհալի խոնարհութեամբ և պարզամիտ վսեմութեամբ ընկալաւ այս բարեմաղթութիւններս իւր հիւրերէն՝ որ զմայլած հիանային նորա ազնուական կերպին վերայ. պատշաճից և մարդավարութեան զգացմունքն վերջի աստիճան փայլէին իր

վերայ, ինչպէս ասէ Սուրբն Ամբրոսիոս, և Թագաւորի աղջկան մի պէս շնորհազարդ էր իւր վարմունքն։ Իսկ գալովն իր հարսանեկան զգեստուցն՝ զորս ընթադրութեամբ միայն կարեմք նկարագրել՝ պարզ և միանգամայն վայելուչ էին, որովհետև գեղեցկին ճաշակն ալ լաւ գիտէր, և թերևս քան զինքն աւելի գիտցող մի չկար թէ իր վիճակի կնոջ ինչ պատշաճի. ուստի այս հանդիսաւոր պարագայիս մէջ յիշեց իրեն Յովսեփայ հարսն և Դաւթի դուստր լինելն, այնոր համար չուզեց անհոգ երևել իր զգեստուց կողմանէ՝ որ կարէր ոչ հաճութիւն պատճառել իւր ազգականացն և առ այլս ունեցած յարգանքէն պակսիլ, աշխարհի վայելուչ պատշաճութիւնն պարզութեան հետ միացնելով՝ որպէս և պահանջէր իւր ամուսնոյն խոնարհ և չափաւոր վիճակն։ Իւր կօշկէն պարեգօտն՝ Յուդայի աղջկանց հանդիսաւոր օրեր հագածին պէս՝ հաւանականաբար տիւրացի ծիրանիէ էր. 'ի յիշատակ նախկին ժամանակաց և նահապետական սովորութեանց նախահարց իւրոց՝ Ռեբեկայի պէս օղեր դրած էր յականջսն և պարզ ոսկի ապարանջաններ 'ի բազուկս՝ զորս Յովսէփ ընծայել էր իրեն հարսանիքէն քանի մի օր յառաջ, ինչպէս որ անվրէպ պարտք էր փեսային [22] եբրայեցւոց մէջ՝ հարուստներն մարգրտէ քառամանեակներ և ականակապ զարդեր և մեհեանդներ ալ յաւելուին. գլուխն մեծատուն տիկնանց աշտարակաձև [23] ոսկեզէն թագին տեղ՝ կուսանաց թագուհւոյն խարտեաշ և գանգուր [24] մազերուն վերայ դրած էր պարզ մըրտենի պսակ մի. եթէ գարուն լինէր եղանակն՝ քանի մի վարդ [25] ալ կը դրուէր. ոսկեթել և արծաթով բանուած սիգոնացի քօղ մի գլխէն մինչև ոտքն իջանէր ծալ 'ի ծալ ծածանելով թեթև ամպոյ նման [26]։

Զորս իսրայելացի կարիճներ ծանրագին կերպասէ պաղպաջուն հովանեակ մի բանած՝ դրան առջև [27]

տաճարին՝ որուն ներքև եկն եկաց Մարիամ՝ երկու պատուաւոր տիկնայք ալ երկու կողմն. աջակողմն կեցողն հարսին մայրն զՍուրբն Աննան ներկայացընէր, իսկ ձախ կողմն Թերևս Մարիամ Կղէովպայ էր՝ Սըրբոյ Կուսին ներն և սրտոտ բարեկամն՝ որ յետոյ ընկերացաւ նմա մինչև 'ի Գողգոթա, որք զիրար շատ սիրելուն համար՝ ոմանք կարծեցին թէ քոյր էին 28: Իրենց ետևէն գային տաւղի սրնգի և թմբկի ձայնեով բոլոր հարսնեւորներն, յուրախութեան նշան օդին մէջ ճօճելով ձեռուընին բռնած մրտենւոյ և արմաւենւոյ ճիւղերն: Իսկ փեսայն գլուխն բիւրեղի պէս փայլուն նորատեսիլ պսակ մի գրած՝ որ այն ազգին յատուկ էր 29, նոցա ետևէն երթայր՝ շուրջ պատեալ 'ի բարեկամաց՝ որ իրենց ուրախութիւնն յայտնէին մերթ երգելով մերթ պարելով և երբեմն ալ երկայն աղաղակներ արձակելով: Վերջերս եւրոպացի ճամբորդ մի Ասորւոց երկրին մէջ այսպիսի հանդիսի մը հանդիպելով ասէ՝ թէ այս ձայներս նմանին Փրանկիոյ մէջ հնձոց և այգեկթոց ժամանակ հնձողաց և կթողաց աղաղակներուն:

Հարսին ու փեսին անցած ճամբայներուն վերայ կանայք և մանկունք շարուած՝ նորա ոտից առջև սըփռէին արմաւենւոյ ճիւղեր, և տեղ տեղ հարսն կանգնեցնելով վարդեջուր սրսկէին զգեստուց վերայ 30: Այսպէս Մարիամ ալ ունեցաւ իր յաղթական օրն Երուսաղեմայ մէջ:

Երբ հարսանեաց տունն հասին՝ փեսաւէրք և հարսնաւէրք միաբարբառ աղաղակեցին Օրհնեալ լիցի եկաւորն: Այն ատեն Յովսէփ իր տալէգումն կամ կըրկնոցումն և Մարիամ իր լաչակումն ծածկուած՝ իրարու քովնստան հովանեակին ներքև, և փեսայն մատանի մը հանելով՝ անցոյց օրիորդին մատն ասելով. « Այսուհետև դու իմ կին ես ըստ օրինացն Մովսիսի և Իսրայելի. և իւր վերարկուին քղանցքն հարսին

վերայ տարածեց. ինչպէս որ արար Բոոս՝ Հռութն իրեն կին առած ժամանակ: Մերձաւոր ազգականներէն մին՝ բաժակի մէջ գինի լեցուց և նախ համտես առնելով փեսին և հարսին տուաւ՝ օրհնելով զԱստուած զայր և զկին ստեղծելուն և ամուսնութեան օրէնքն սահմանելուն համար: Նոյն ատեն ափ մի ցորեան ցանեցին ընդ օդս, և մանուկ մի բաժակն գետին զարկաւ խորտակեց [31]:

Բոլոր հրաւիրեալք որ լապտեր 'ի ձեռին կանգնած էին՝ օրհնեցին զԱստուած և խնջոյից սրահն մտին: Ոտք ելին նոյնպէս Յովսէփ և Մարիամ, բայց հրաւիրելոց քովէն չհասած՝ առաջի երկնից և աստեղաց որ պատմեն զփառս Աստուծոյ, իրարու ականջէն բան մի քսքսացին [32]: Ես զքեզ մօրս տեղ պիտի դնեմ, ասաց Նահապետն առ Կոյսն, և զքեզ Ամենակալին սեղանոյն պէս պիտի պատուեմ. այս խօսքէս ետև՝ առաջի կրօնական օրինաց՝ նոքա յամուսնութեան անդ իրարու եղբօր և քրոջ պէս էին, թէպէտ իրենց միութիւնն ամբողջապէս պահուած [33]:

Հարսանեաց հանդէսն եօթն օր տևեց՝ որպէս նահապետաց ժամանակն. և երբ եօթնեակն աւարտեցաւ՝ Յովսէփ և Մարիամ ընկերակցութեամբ խուռըն ազգականաց՝ յորոց շատերն պալարակապ երիվարաց վերայ հեծեալ էին՝ դէպ 'ի Գալիլեայ ճամբայ ելին. և այն փոքրիկ կարաւանն դափերու և թմբկաց գոփմամբ մինչև Անաթովթայ աղբիւրն [34] 'ի միասին երթային: Հոն որ հասին երուսաղեմացիք բաժնուեցան 'ի փեսայէն և հարսէն արտասուալից աչօք օրհնութիւններ և բարեմաղթութիւններ առնելով նոցա, զձեռս իւրեանց բարեպաշտաբար կրծոց վերայ դնելով: Իսկ Նազովրեցիք իրենց ճամբայն յառաջ տանելով՝ անցին Սամարիայի լեռներէն՝ ուր արծիւն օդապար բարձրէն տեսանէր անհոգաբար նոցա անցնիլն: Ուղևորք նախ և յառաջ հասին 'ի Սիւքեմ

պուրակագեղ և կանաչազարդ. իր յստակաջուր առուակներովը և ծառոց մէջ կէս մի ծածկեալ փառահեղ շէնքերով անուանի։ Իրենց ետին Թողին Գարիզին լեառն իր կարմրագոյն կողերովը՝ ուր երևէին սամարացւոց տաճարին աւերակներն՝ ամօթապարտ նախանձորդ տանն Աստուծոյ՝ զոր Յովհաննէս Հիւրկանոս վրէժխնդիր բոցերու մատնելով մոխիր դարձոյց. յետոյ Գեբաղու լերանց բարձունքն, և ապա զՍեբաստէ որ Աւգոստոսի պաշտպանութեամբ իւր նորանոր ապարանքն կառուցանէր, և զոր Հերովդէս սորկաբար զարդարել ջանայր՝ իբրև միակ բագին պատկանաւոր զոհագործելու հռոմէական ոգւոյն։

Ուղևորութեան երկրորդ աւուր կիսուն՝ երևեցաւ Թափոր լեառն՝ որ իւր կանաչազարդ գլուխն 'ի վեր ամբառնայր Գալիլեայի մութ արծաթագոյն երկնից վերայ. անտի նշմարէին Լիբանանու գագաթունքն՝ որ իրենց մշտնջենաւոր ձիւներն ամպոց մէջ ծածկեն։ Հերմոնի անտառախիտ եմակներէն անցնելով ուր այծք արածէին Թփերու մատղաշ ճիւղերն, իջին վերջապէս հեշտալի դաշտ մի՝ որ ծաղկանց ընդարձակ զամբիւղի պէս կը տարածուէր մրտենեօք այգեօք և ձիթաստանեօք կանաչացեալ բլրոց մէջ։ Գարւոյ ցորենոյ և առւոյտի արտերն բոլորովին կանաչացած՝ գարնան Թեթև հողմոյ ջերմին շնչովը գողդողէին ծածանէին, հիւսիսային երկիրներէն աւելի կանխահաս և տաք լինելուն համար։ Յստակ և ոսկեզօծեալ լոյս մի այս բերրի հողերս դգուէր՝ ուր բոյսք և տունկք ուժով կ'ուռճանային և հեղեղատք կապուտակ ջրոց՝ որ յետոյ ամառն ցամքին, իրենց ալեօքն առոգէին այս նոր դրախտս։ Աստ և անդ երևէին ճոխ գիւղեր՝ արմաւենեաց վսեմ կամարներովն ներքև, և մերթ ընդ մերթ ժայռի մի ապառաժ դարևանդին վերայ՝ մենաւոր գղեակ մի՝ ուր բնակէին դեռ

Եւ ազգային զօրականք՝ որ պահանորդք դրուած էին միայն ուղևորաց ապահովութեանն համար, և իրենց դամասկացի սուրերն գիշերուան հուղկահարաց և անապատի արաբացւոց դէմ միայն գործածէին։ Այս զուարճալի և զովարար հովիտս զոր բարձր լեռներ պատելով հովանաւորեն՝ Եսդրելոն կոչեցեալ հովիտն է, որոյ 'ի ծայրն երևէր փոքրիկ քաղաք մի նկարակերտ յօրինեալ և յեցեալ 'ի զառ 'ի վայր գեղահրաշ բլրոյ միոյ՝ որ իբրև զծաղիկ փայլէ մերձաւոր տաղաւարաց մէջէն. այս գեղածիծաղ և տարփալի քաղաքս էր Նազարէթ, երկիր ծննդեան Կուսին և խանձարուրք Քրիստոսի [35]։

Անտարակոյս յոյժ ուրախացաւ Մարիամ տեսնելով այն քաղաքն՝ յորում առաջին անգամ 'ի լոյս եբաց զաչս իւր, և որոյ յիշատակն թէպէտ տկարացեալ էր 'ի միտսն՝ բայց չէր ջնջուած, շատ անգամ երազներուն մէջ զայն տեսնելով։ Ինքն առաջին անգամ թողեալ էր զայն իւր մանկութեան ժամանակն, և գնացեալ բնակեալ էր տաճարի շքեղ պարսպաց մէջ. և հիմա նորէն հոն դառնայր նոյնպէս գեղեցիկ մանկահասակ և կոյս՝ ինչպէս իրեն բաժնուած ատենն։

Վերջապէս մեր ուղևորքն մտին 'ի տուն Սրբոյն Աննայի՝ որ հին և խորհրդաւոր բնակարան մի էր՝ մասամբ ժայռի մէջ փորուած՝ որպէս զմարգարէական անձաւս հին ժամանակաց [36]. և որ սակաւ մի յետոյ Երուսաղեմայ տաճարէն և Ամենակալին տնէն աւելի գերազանցէր պիտի սրբութեամբ։ Նազովրեցի կանայք օրհնութեամբ ողջունեցին զգալուստ նորահաս հարսին՝ որ պարկեշտութեամբ սքօղած յառաջ երթայր՝ որպէս զՌեբեկայն Իսահակայ. Մարիամ նոցա բարեմաղթութիւններն ընդունելով որ իր ծնունդն տեսեալ էին, բնակեցաւ այն խաղաղ հայրենի տան մէջ՝ որ տակաւին բուրէր զանուշահոտութիւն վարուց և առաքինութեանց Աննայի և Յովակիմայ։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ Է. ԳԼԽՈՅ

1 Հրեայք, որպէս և Կելսոս, Պորփիւր և Փաւստոս այս աղագակցութեամբս համարեցան թէ Կոյսն էր 'ի ցեղէն Ղեւեայ, բայց ուղղափառ վարդապետք այս կարծիքս հերքեն՝ հաստատելով թէ Մարիամ էր 'ի ցեղէն Յուդայ և 'ի տանէ Դաւթի: Մատթէոս աւետարանիչ ասէ զի Յիսուս Քրիստոս կոչի որդի Դաւթի ըստ մարմնոյ. իսկ արդ ըստ մարդկութեան հայր ոչ ունելով մօր կողմանէ միայն էր որդի Դաւթի: Բայց եթէ հարցընէ ոք թէ Յուդայի ցեղէն լինելով՝ որպէս ազգական կարէր լինել Եղիսաբեթի՝ որ էր 'ի ցեղէն Ղեւեայ, սուրբ Օգոստինոս պատասխանէ թէ անկարելի բան մի չէր՝ որ Յուդայի ցեղէն այր մի՝ 'ի ցեղէն Ղեւեայ կին առած լիցի, որով և Սուրբ Կոյսն այսպիսի ամուսնութենէ յառաջ եկեալ՝ կարէր ազգական լինել Եղիսաբեթի իւր մօր կողմանէ: Արդէն ուրիշ ցեղի հետ խնամութիւն չառնելու պատուէրն՝ միայն այն որբ աղջկանց համար էր՝ որ հայրենական ժառանգութեան տէր էին:

2 Որոգինէս ցուցանէ թէ ամլութիւնն անիծապարտութիւն համարէր, որովհետև գրեալ էր թէ Անիծեալ լիցի որ ոչ խօ-ղոցու զաւակ Իսրայելի 'ի ցեղէ Եուդայ:

3 Սուրբն Օգոստինոս Յաղագս որբոյ կուսին գլ. Գ:

4 Տես յ'Գ ճառի Ս. Յովհաննու Ոսկեբերանի. և 'ի Հ. Լիկլի 'ի վարս Յիսուսի Քրիստոսի:

5 Յուդա Մակաբէի դրօշն կանաչ էր մակագրութեամբս Ո՛ իցէ նման քեզ յաստուածս տէր: Իսկ հռովմայեցւոց դրօշակին վերայ այս գրերս կային S. P. Q. R. որ է ասել Senatus populusque romanus այս ինքն Ծերակոյտն և ժողովուրդ հռովմէական:

7 Ոչ եթէ ամենայն աղջկանց արգելեալ էր ուրիշ ցեղէ մարդու հետ չամուսնանալ, այլ միայն նոցա որ հայրենական ստացուածոց ժառանգ էին. վասն զի սոքա պարտաւորէին իւրեանց ցեղէն և ազգատոհմէն ընտրել իւրեանց այր ( և ոչ թէ որպէս Մոնթէսքիէօ ասէ՝ իրենց մօտագոյն ազգականն) որպէս զի ժառանգութիւնք և ստացուածք 'ի միոյ ցեղէ 'ի միւս չփոխադրին:

8 Ս. Եպիփան ութսուն ամաց համարի զՅովսէփ ամուսնացած ժամանակ. Հայրն Բեզլոն յիսուն. առաջինն անտեղի է, որովհետև նոյն իսկ եբրայական օրէնք արգելլան զամուսնու-

թիւն ծերոյ ընդ մատաղ օրիորդի. (տես 'ի Պատմած Հաւն. գիրք Է) և յայտնի է թէ ոչ քահանայք և ոչ իսկ Սուրբն Յովսէփ կամէին հակառակ օրինացն գործել. ուստի հաւանական համարի Բէզըռնի կարծիքն: Խորենացի առ Սահակ արծրունի գրած թղթոյն մէջ ասէ թէ «Յովսէփ քառասնամեայ էր մինչ կոյսն յանձնեցաւ նմա, և յերեսուն և մի ամի կենարարին հանգեաւ 'ի Նազարէթ 'ի տան իւրում»:

9 Ոմանք 'ի հարց համարեցան թէ Ս. Յովսէփ այրի էր՝ յորժամ ամուսնացաւ ընդ Սրբոյ Կուսին, զոր և հաստատեն Նախաւետարան Սրբոյն Յակոբայ և Աւետարան Կուսին տարածեալ մատեանքն անկանոնականք. Սուրբն Եպիփան ասէ թէ Սուրբն Յովսէփ ունէր չորս ուստերս և երկուս դստերս. Սուրբն Հիպողիտոս թեբացի ասէ թէ անուն առաջնոյ կնոջն Յովսեփայ էր Սաղոմէ. 'ի նոյն կարծիս եղեն և Որոգինէս, Եւսեբիոս, Սուրբն Ամբրոսիոս, և 'ի մերոց Խորենացի, և այլ բազում հարք: Սակայն այս կարծիքս ընդունելի եղած չէ, և ընդհանրապէս համարի թէ Սուրբն Յովսէփ ամուրի պահեցաւ. զոր և պաշտպանէ Սուրբն Հերոնիմոս գրելով ընդդէմ Եղւիդիոսի այսպէս. «Ոչ ուրեք ընթեռնումք թէ այլ ոք կին լեալ իցէ նորա՝ բաց 'ի Մարեմայ»: Սուրբն Աւգոստինոս անորոշ թողու զխնդիրն, իսկ Սուրբն Պետրոս Դամիանոս հաստատէ թէ բովանդակ եկեղեցի հաւատայ թէ Սուրբն Յովսէփ հայրն համարեալ Փրկչին կոյս եկեաց միշտ որպէս զՄարիամ:

10 Ի դաշնագիրս ամուսնութեան կինն ոչ այլ ինչ ընդունէր 'ի ծնողացն բաց 'ի զգեստուց. իսկ զօժիտն այրն տայր նմա (Օրէնսդիր Մովսէս. հտ. Բ գլ. Ա):

11 Գրիգոր Նիւսացի ճառ. 'ի ծնունդն. — Նիկեփորոս գիրք Բ գլ. Է:

12 Երիտասարդս այս կոչեցեալ Ագաբոս՝ երևելի եղև յետոյ սրբութեամբ՝ ընկալեալ զքրիստոնէութիւն. և համարեալ 'ի թիւս եօթանասունև երկու աշակերտաց (Պտմ. Նորդէ գլ. ԺԲ):

13 Վարք սրբոյ Կուսին գրեալ 'ի Տէքսւթիւրէ էջ 49 — Վարք Յիսուսի Քրիստոսի 'ի Վալվէրտէէ հտ. Ա:

14 Մինչև ցայսօր արուեստաւորք յոյժ պատուաւոր համարին 'ի Հրէաստան: Պուրքարտ ասէ թէ Պաղեստինու և Ասորւոց մէջ արուեստաւորաց դասն նոյն պատիւ ունին այսօր՝ ինչ որ 'ի միջին դարս ունէին Փրանկիոյ և Գերմանիոյ մէջ, և երկրորդ կարգի վաճառականաց հետ հաւասար համարին, և քանզի նոսա առաւել ազդեցութիւն ունին իրենց ժողովոց մէջ թէ և նոցա հարստութիւնն ոչ ունիցին, և կարեն քաղքին ազնուական տանց հետ աղ խնամենալ (Ուղևորութիւն յԱրաբիա հտ. Բ):

15 Թուրքք ևս այս իմաստուն օրինաց հետևին, և թագաւորք անգամ պարտաւորին արուեստ մի ուսանելու։

16 Հրեայք իրենց ազգութիւնն կորուսանելով ևս՝ յայս կարծեաց հեռացած չեն։

17 Այս դաշնագրիս ձեռն շատ հին է առ եբրայեցիս, և հաւանական է որ նոյն էր նաև Յովսեփայ և Մարեմայ համար գրուածն։ — Իտալիոյ Բերուճիա քաղաքն Սուրբ Լաւրենտիոսի եկեղեցւոյն մէջ աւանդութեամբ պահի մատանի հարսնախօսութեան Կուսին։

18 Վեշտասաներորդ դարու մէջերն եկեղեցին թոյլ ետ այս տօնս կատարելու որ հանդիպի 'ի 23 յունուարի՝ որ համարի օր պսակման Սրբոյն Յովսեփայ ընդ Մարիամու առ լաւ։

19 Առ եբրայեցիս ամուսնութիւնք ամեն օր անխտիր ոչ կատարէին, սովորաբար նոր լուսնի ատեն և չորեքշաբթի օր մի աւելի նախապատիւ համարէր։

20 Կանանց զարդուց վերայ տես Եսայի գլ. Գ։ — Փրանկլիացի ճանապարհորդ մի որ ժէրամով իր Ռոխօֆինցոլին յԵրուսաղէմ գրոց մէջ ասէ թէ եւրոպացիք ամենեին գաղափար մի չունին՝ արևելեայց ճոխութեան և շքեղութեան վերայ այսպիսի հանդիսից մէջ. հարսնևոր կանանց գրեթէ ամենեցուն ըզգեստն ոսկւով ասղնեգործեալ թաւշէ է՝ որոց վերայ շողան ադամանդեայ և մարգարտեայ զարդեր, և այլն։ Նոյնպէս խօսի և Լամարթին տաշած այն ականակուռ և մարգարտայեռ շքեղ գլխոց վերայ՝ որով կը զարդարուին կանայք Ասորեաց իրենց ազգականաց հարսանեաց ժամանակ։ Անտարակոյս Մարիամու հարսնութեան ժամանակ այլ աւելի ճոխութիւն կայր, զոր և ակնարկէ Յովհաննէս աւետարանիչ Յայտնութեան գրոց մէջ ասելով. «Եւ զքաղաքն սուրբ զնորն Երուսաղէմ տեսի զի իջանէր յԱստուծոյ և յերկնից՝ զարդարեալ և պատրաստեալ որպէս հարսն առն իւրոյ» (գլ. ԻԱ. 2)։

21 Արևելեան ազգաց մէջ սովորութիւն է կանանց հինայիւ ներկել զծայրս մատանցն, որպէս յայտ է։

22 Քրիստոնեայք յԱրևելս դեռ այս սովորութիւնս պահած են. հարսանեաց քանի մի օր մնացած՝ փեսայն հարսին ընծայ ղրկէ ըստ իւր կարողութեան ոսկի կամ ականակուռ ապարանջանս, և ոսկեթել դիպակէ գլխոց մի և հարիւր վաթսուն դահեկան 'ի ծախս բաղանեաց (Թղթակցութիւն Արևելից 147)։

23 Հարսին պսակն սովորաբար ոսկի էր աշտարակաձև՝ որ 'ի պարսից մտած էր առ հրեայս, և որ Տիտոսի պաշարման ատեն արգիլուեցաւ 'ի նշան սգոյ։ Ոմանք 'ի րաբունեաց հրաման տան հարսանց կրել պսակս 'ի մրտենեաց և վարդից (Պատմած գիրք Ե գլ. 21)։ — Միշնա Սոթահ գլ. Թ յօդ 4։

24 Առ Եբրայեցիս՝ կանանց հաղուադէպ անգամ աւանդական օրինօք սահմանեալ էր. հարսին մազերն գանգրելու համար մասնաւոր հերայարդար կանայք կային, որովհետև բաբելք ասէին թէ Աստուած ինքնին յօրինեց զխոպոպիս Եւայի յածել զնա առ Ադամ 'ի դրախտին (Պասնած գլ. ԻԶ)։

25 Պասնած ։

26 Այս ոսկեթել և արծաթով բանուած քօղերն դեռ ևս 'ի գործածութեան են յԱսորիս և յընդհանուր Արևելս ։

27 Հարսանեկան հանդիսին այս կարգս 'ի հնուց 'ի վեր մինչև այսօր պահի յԵգիպտոս, զոր Նայպուհր այսպէս նկարագրէ. « Հարսն քօղազգեստ յատից մինչև ցգլուխ, յաջմէ և յահեկէ երկու տիկնայք՝ ծանրաքայլ յառաջ երթայ՝ առպհովանիի մի ներքև զոր չորս մարդիկ կրեն. առջևէն երթան գերիք գափեր զարնելով, և ճանճեր վանելու գործեօք, այլք ևս հոտաւէտ ջրեր կը սրսկեն, ետևէն գան բազմութիւն կանանց, և էշերու վերայ հեծած երաժիշտներ. թափօրս սովորաբար գիշերն լինի, և գերիներն ալ վառած ջահերով հանգէսն լուսաւորեն » (Նայպուհր Ռողերոսբէյն յԱրաբիա հա. Ա)։

28 Բէնեդ պատմագիրն շատ քննութեամբ հաստատէ թէ կինս այս էր Սրբոյն Յովսեփայ եղբօր Կղէովպայի կինն՝ որ է Ներ Սրբոյ Կուսին ։

29 Պասկս այս փեսային՝ որ ըստ բաբունեաց խորհրդաւորնշանակութիւն մի ունէր, շինուած էր աղուճակէ. աղն բիւրեղի պէս թափանցիկ լինելով՝ վերան զանազան ձևեր գծէին ծծմբով (տես 'ի Միշնա գլ. Թ 14)։

30 Այս սովորութիւնքս յեգիպտացւոց մտեալ էին առ նոսա, որպէս և ուրիշ շատեր ալ որ պահին մինչև ցայսօր. տե՛ս փառօս։

31 Պասնած գիրք Է գլ. 21. — Սահմանագր. մովս գիրք Է գլ. 1 ։

32 Սուրբն Թովմաս համարի թէ ամուսնանալէն անմիջապէս ետև Սուրբն Յովսէփ և ամենասուրբ Կոյսն իրարու հաւանութեամբ՝ ուխտ դրին կուսութիւն պահելով։

33 Եբրայեցւոց մէջ անլուր բան չէր ժուժկալութեան ուխտն յամուսնութեան, բայց առ նոսա 'ի բարկութենէ և 'ի դժկամակութենէ յառաջ գայր, մինչդեռ այս օրքանեալ ամուսնոց մէջ եղածն 'ի բարեպաշտութենէ էր։ Առ Եբրայեցիս եթէ այրն ասէր իւր կնոջ թէ ղ+եղ էբբր‑ էմ մոյրո հոմոբէմ՝ ալ այնուհետև այրական իրաւունքն չէր կարող գործածել, մանաւանդ եթէ Աստուծոյ տաճարին կամ սեղանոյն վերայ երդնուր. զնոյն առնէին երբեմն նաև կանայք. և թէպէտ այս երդումն շատ անգամ ոչ հաստատուէր 'ի կքից և 'ի բարկութենէ յառաջ եկած լինելուն համար, սակայն պարտաւորէին պահելու զայն (Պասնած գլ. ԺԹ. — Լևոն մատենացի գլ. Դ)։

34 Բոլոր ազգականք ծխաւորեալ յուղարկաւոր լինէին հարսին մինչև 'ի տունն փեսային, եթէ շատ հեռու չէր. այս սովորութիւնս մինչև հիմա կը պահուի արաբացւոց մէջ: Մեք այնպէս համարեցաք թէ յուղարկաւորք բաժնուեցան երբ Անաթովթ քաղաքն հասին՝ որ յԵրուսաղեմէ հինգ փարսախ հեռի է, և առաջին օթևան:

35 Անցեալ դարու իմաստասէրք ամենայն կերպով ջանացին ցուցընել թէ Պաղեստինու երկիրն անբեր և անպտուղ երկիր մի էր, և թէպէտ իրենց աստուածին հաւանին անմտադիր ընթերցողք՝ ոչ յիշելով թէ այս աղքատութեան և անմարդաբնակութեան պատճառն ուրիշ բան չէ՝ բայց եթէ ծանր գերութեան ներքև ընկճած լինելն ընդ սրովայլազգեաց: Բայց անտարակոյս բաց 'ի Երուսաղեմայ շրջակայից որ յիրաւի անբեր և ամայի է՝ ուրիշ կողմերն մանաւանդ որք քանանացւոց վերաբերէին՝ Մովսիսի ստորագրածին պէս աւետեաց երկրի գեղեցկութիւնն ունին: Հոս դնեմք երկու զանազան նկարագրութիւն նոյն երկրին՝ ութևտասան դար իրարմէ հեռի ժամանակագրեալ, մին 'ի Յովսեպոսէ Փլաւիոսէ և միւսն յարդի ճանապարհորդէ. « Գալիլեա յերկուս բաժանի, ասէ Յովսեպոս, 'ի բարձր և 'ի ստորին, և երկուքն ալ յոյժ բարեբեր են. հողն միանգամայն պարարտ է և թեթև, մարգերն ընդարձակ ամէն տեսակ մշակութեան յարմար, և ամէն ցեղ ծառերով զարդարեալ. մանաւանդ բազմութեամբ այգեաց և ձիթենեաց. լեռներէ իջած հեղեղք զայն ոռոգանեն, և ակունք և առուակք առատ ջուր կը հասցընեն՝ երբ հեղեղատներն ամառուան տաքութենէ կը ցամքին: Երկիրն այնչափ պտղաբեր է՝ որ աշխատութենէն փախչողներն ալ կը յորդորուին մշակութեան ետևէ լինելու. այնպէս որ ամէն կողմ մշակուած է և անպտուղ երկիր չկայ: Բնակիչքն ուժեղ և պատերազմող են, քաղաքներն ու գեղերն բազմամարդ, այնպէս որ ամենէն փոքր քաղաքն տասն հազարէն աւելի բնակիչ ունի » (Յովսեպոս պատերազմին հրէից գիրք Գ գլ. 2):

« Գալիլեայի և Նազարեթի շրջակայից վերայ գաղափար մի կարէ առնուլ մարդ՝ Հռոմայու շրջակայքն և հռոմէոլեան ոգտրոն միտքն բերելով, որովհետև երկրին դիրքն և կերպարանքն շատ նմանութիւն ունի այնոր: Հոն բնութիւնն վսեմ է, որպէս զԱւետարանն. Գալիլեայ գաւառն բոլոր Սուրբ երկրին մի փոքրիկ պատկերն կարէ համարիլ, և տուընջեան և գիշերոյ կերպարանօքն որ նկատուի՝ դիւրաւ մարդ կարէ 'ի միտ առնուլ թէ ինչ դրից մէջ էր Յիսուսի Քրիստոսի ժամանակ: Պատկերհանին համար Գալիլեայն Եդեմական դրախտ մի է՝ յորում կը տեսնուին Յուդայի երկրին եղևէջներն, Պաղեստինու լուսաւոր միայնու-

*թիւններն և Սամարիայի յուռթի և կանաչազարդ արգասաւորութիւնն: Գալիլէին և Ջիթեննեաց լեռներէն պակաս վսեմութիւն չունին Թափոր և Հերմոն լեռները. և Ասկաղոնի կապուտակ ծովափունքն աւելի շքեղ չեն քան զծաղկահոտ եզերս ծովակին Տիբերեայ՝ ուր օդն բոլոր 'ի լոյս փոխարկեալ է: Գալիլեայ գաւառին ամեն կողմն ներկայացնէ հրաշալի վէպեր, դիւցազանց հետք և գլխաւորս Աստուծոյ. երբ Թափորի բարձրէն զնա դիտես՝ կիմանաս որ այն երկիրն է ուր բնակեցաւ Աստուածն մարդացեալ, որովհետև հոն միանան կրօնական յիշատակք, երկնից և երկրի սքանչելիք ընդ անհնոյն » (Թղթակցութիւն Արևելից հատ. Ե):*

36 *Նազարէթի մէջ դեռ ևս գտանին քանի մի տունք նման տան Ս. Յովսեփայ, փոքրիկ ցածունք և լերանց կողն փորուած այրի մի հետ կից (տես Ժէրամպ Ուխտագնացութիւն յԵրուսաղէմ):*

## ԳԼՈՒԽ Ը.

### Ուսուցումն.

Արդեօք ո՛րչափ քաղցր և օրհնեալ եղած պիտի լի-
նի երկուց ամուսնաց կեանքն իրենց սուրբ միաւո-
րութեան առաջին ամիսներն. խաղաղութիւն Աս-
տուծոյ տիրած էր այն անշուք բնակարանին մէջ, և
իրենց ժամանակն անցանէր աշխատութեամբ և ա-
ղօթքով՝ որ իրենց վաստակն սրբացնէր և թեթևացու-
ցանէր։ Հին սովորութեան համեմատ՝ որ մինչև ցայ-
սօր Արևելից մեծ մասին և արաբացւոց մէջ տիրէ,
Յովսեփայ գործատունն [1] Մարիամու նստած այս տը-
նէս զատ էր. գործատունն ուր աշխատեցաւ նաև Յի-
սուս Քրիստոս՝ գետնայարկ սրահ մի էր գրեթէ տա-
սուերկու քայլ երկայն և նոյնչափ լայնութեամբ.
կրպակէն դուրս քարէ նստարան մի կայր՝ արեգական
տօթակէզ ճառագայթներէն պաշտպանուելու հա-
մար՝ արմաւենւոյ փսիաթէ շինուած հովանեկաւ
ծածկուած, ուր անցորդք և ուղևորք հոգնութիւն
առնուին [2]։ Հոն աշխատասէր արուեստաւորն զբա-
ղէր արօրներ, եզանց լուծեր և գիւղական սայլեր շի-
նելու. երբեմն ալ իր առաջնորդութեամբն հովտին
մէջ տնակներ շինել տայր պէտք եղողին, իր ուժեղ
թևօքն հատանելով բարձր մոլաթզենին և Կարմելոս
լերին հնցած սեցած բևեկնիներն [3]։ Եւ սակայն այս-
չափ աշխատութեամբ վաստկածն ալ շատ բան մի չէր.
այսու ամենայնիւ այն սակաւէն ալ աղքատաց մասն
հանէր։

Իր քաղցրահամբոյր և սուրբ ընկերն ալ պարապ

ոչ նստէր. լուսաւոր սուր և իմաստուն միտք ունելով՝ իւր ներկայ վիճակին առանց դժուարութիւն կըրելու վարժեցաւ, առանց անցեալ կենաց վերայ ցաւելու և ապագային սուտ յոյսեր ունելու. զաշխարհ իր իսկական վիճակին մէջ ըմբռնելով և իւր կենաց պայմանն ալ ճիշդ իմանալով՝ ուզեց այնոր ամէն նուիրական պարտքն կրօնական ճշդութեամբ կատարելու: Իւր մայրենի տունն մտածին պէս՝ աղքատութեան զգեստն հագաւ՝ որպէս յԱստուծոյ իրեն տուեալ պատուաւոր հանդերձ մի, և եղև հասարակ ժողովրդեան յաղջկանց մին՝ որովհետև աստուածային նախախնամութիւնն այն անշուք վիճակն սահմանել էր իրեն: Ի բաց թողուց այն ամէն ազնիւ և գեղեցիկ ձեռագործներն՝ որոց մինչև այն ատեն վարժած էր և որ ազնուական և իշխանական կենաց յարմարէին, և փոխանակ այնոցիկ ինքզինքն տուաւ ծանր հոգերու և տնական միօրինակ աշխատութեանց՝ զորս պէտք է կատարել աղքատ տանտիկին մի՝ որ ծառայներ և գերիներ չունի հրամայելու:

Աստի Մարիամու փափուկ ձեռքն որ գողտրիկ կերպասներ յարդարելու վարժած էին՝ հիւսել սովորեցան արմաւենւոյ սիրայէ և Յորդանանու ափունքն բուսած սէզերէ՝ գեղջուկ նաճայներ՝ գետինն փռելու համար, իր աղեկատին վերայ փաթթած խըծուծն՝ այն առջի բարակ բեհեզն չէր. ինքն պէտք էր աղալ տանն համար պէտք եղած ցորենն ու գարին և այլ արմտիքն [4], և այն խոշոր ու դեղնաշորդ ալիւրէն բարակ կլորակ բլիթներ շինել. իւր մաքուր լաչակովն ծածկուած և հին ատենուան սափոր մի գըլուխն՝ [5] ջրուորներու պէս երթայր մօտակայ աղբիւրէն [6] պէտք եղած ջուրն բերելու, ինչպէս առնէին կանայք նահապետաց, կամ իրենց կապուտակ ձորձերն լուալու 'ի գնացս ջուրց վտակաց՝ Հոմերոսի յիշատակած իշխանուհեաց պէս: Յիսուս Քրիստոս

ականատես վկայ լինելով այս ազնուագոյն արարածոյն աշխատասէր սովորութեանցն՝ իւր առակաց մէջ երբեմն զնա ակնարկէր. ըստ Մարիամու այս պարզ զբաղմանցս յիշատակն՝ աւետարանի պատմութեան մէջ հիւսուած կը պահուի, ինչպէս որ երբեմն սաթի մէջ երևին ծովային ծաղկանց հետքն։ Հոն ընթեռնումք թէ ինչպէս նախահոգ կին մի՝ զխմորն ծածկէ երեք գրիւ ալրոյ մէջ [7]. իւր տանն ստէպ աւել անէ՝ կորսուած բան մի գտնելու համար [8]. պատառատուն խեղճ զգեստ մի խնամօք և խնայութեամբ կարկատէ [9]։ Նմանապէս երբ Քրիստոս սրտի մաքրութիւն պատուիրած ժամանակ կամի օրինակ մի բերել՝ միտքն կուգայ իւր մօր մաքրութիւնն՝ որ բաժակիններուն ու գուրուն մաքրէր փայլեցնէր [10], և աղքատ այրին գովելու ատեն՝ որ չէ թէ աւելորդէն՝ այլ բոլոր իրեն պէտք եղածն տայր Աստուծոյ՝ երևի թէ Մարիամու աղքատաց վերայ ունեցած սէրն մըտածէր [11]։ Ո՞չ ապաքէն քիացի երգիչն ալ (Հոմերոս?) արդարութիւնն նկարագրէ իւր մօր կերպարանօքն՝ որ աղքատ և ժամիկ կին մի լինելով ևս՝ զինքն և զաւակն կերակրելու համար՝ մանելի բուրդն ճըշդութեամբ կշռէ, իւր խեղճութեան մէջ ալ արդարութեամբ և անբծութեամբ հարուստին իրաւունքն պահելով։

Երբ երեկոյ լինէր և մութն կոխէր [12], և թռչունք ծառոց սաղարթներուն մէջ իրենց բոյնն քաշուէին՝ Մարիամ փայլուն և մաքուր սեղանոյ վերայ՝ որ Յովսեփայ ձեռագործն էր, գարեղէն կամ ուրիշ արմըտիքէ շինուած բլիթներն շարէր՝ դնելով միանգամայն անոյշ արմաւներ կթեղէններ չոր պտուղներ և ընդեղէններ՝ որ Իսրայէլի թագաւորաց սերնդոցն սակաւապէտ ճաշիկն էին։ Այս պարզ կերպով պատրաստուած կերակուրներն էին նախկին եբրայեցւոց գլխաւոր ուտեստն ալ, որ այնչափ պարկեշտ էին ՚ի

կերակուրս՝ որ պէտք եղած ատեն հացիւ և ջրով գոհանային [13]։ Իսկ Կոյսն այնչափ սակաւակեր էր՝ որ հիներն հրաշալեաց հակամէտք, համարեցան թէ հրեշտակք կերակրէին զնա։

Երբ Յովսէփ աւուր աշխատութենէն հոգնած՝ արևու մարն մտած ատեն 'ի տուն դառնայր և գետնայարկ սենեակն մտանէր՝ իւր մանկամարդ ամուսինն պատրաստած տաք ջուրն բերէր ոտքն լուանալու համար, և յետոյ մաքուր և ջինջ ամանով [14] աղբիւրին զով և յստակ ջուրն՝ ճաշէն յառաջ լուացուելու համար։ Այս ծանրագլուխ և պարզ մարդս որ նահապետական երևոյթ մի ունէր, և մարդկային կիրք ոչ երևէին իր վերայ, այս հրեշտակային և մանկամարդ կինս՝ որ զաւկի վայել ծնողասիրութեամբ և փութով ծառայէր նմա՝ ոսկեդարու արժանի տուն մի ձևացնէին [15]։

Արդէն չորս ամիս [16] անցել էր՝ քանի որ այս ողջախոհ ամուսինք քաղցր և խաղաղ կեանք մի վարէին, և ահա հասաւ օրն և ժամն զոր Յաւիտենականն իւր աստուածային անքննելի խորհրդոց մէջ սահմանեալ էր իւր Օծելոյն մարմնաւորութեան համար։ Ուստի հրեշտակապետն Գաբրիէլ առաքեցաւ 'ի Գալիլեա՝ որ երևեցաւ Կուսին՝ երբ նա 'ի զգալեաց դուրս ելած և խորին խոկմանց մէջ ընկղմեալ և զգլուխն դարձուցեալ և խոնարհեալ 'ի կողմն տաճարին [17] մատուցանէր զերեկոյին աղօթս իւր առ Աստուած Յակոբայ։ Հրեշտակն որ մի էր յեօթանց անտի ոգեղինաց որ կան միշտ առաջի Աստուծոյ՝ խոնարհեցաւ առաջի անարատ Կուսին [18], և նկատելով զնա արդէն բազմեալ յաթոռ գերազանց՝ վերագոյն քան զամենայն սուրբս և հրեշտակական էութիւնս, իւր ճառագայթարձակ գլուխն խոնարհեցնելով ասաց «Ուրախ լեր, բերկրեալդ, Տէր ընդ քեզ [19]»։

Մարիամու վերայ վախ եկն այս լուսապայծառ եր-

կնոյին գեսպանն տեսնելով՝ որ Յաւիտենականին հրամանն բերէր իրեն։ Թերևս ինքն ալ Մովսէսի պէս կարծեց թէ պիտի մեռնի զԱստուած տեսնելուն համար. կամ որպէս համարեցաւ Ս. Ամբրոսիոս իր կուսական ամօթխածութիւնն կասկած մի ունեցաւ այն երկնային պատանւոյն երևման վերայ՝ որ արեգական ճառագայթից պէս թափանցել էր իր մենաւոր սենեակն՝ յոր ոչ ոք 'ի մարդկանէ համարձակէր մտանել. և կամ թէ զուարթնոյն աղերսաւոր կերպարանքն և նմա տուած գովեստն՝ իւր խոնարհութիւնն խռովեց։ Արդ ինչ պատճառաւ և իցէ՝ Աւետարանն ասէ թէ Կոյսն խռովեցաւ և 'ի զուր որոճայր մտաց մէջ թէ ինչ էր արդեօք այս հրաշալի այցելութեանս պատճառն, և ինչ էր այս խորհրդաւոր ողջունին իմաստն։

Հրեշտակն նորա խռովին տեսնելով՝ քաղցրութեամբ վերայ բերաւ. « Մի երկնչիր Մարիամ, զի գտեր շնորհս յԱստուծոյ. զի ահա պիտի յղանաս, և զաւակ մի պիտի ծնանիս, որոյ անունն Յիսուս պիտի դնես։ Նա մեծ պիտի լինի և որդի Աստուծոյ պիտի կոչուի [20]։ Աստուած իրեն պիտի տայ իր հօր Դաւթի աթոռն, և պիտի թագաւորէ 'ի վերայ տանն Յակոբայ, և նորա թագաւորութիւնն վախճան պիտի չունենայ »։ Այս խօսիցս վերայ Մարիամ այլ աւելի զարմացած՝ իւր սրտին մէջ ոչ կարենալով միաբանել մայրութեան գաղափարն և յատկութիւնն ընդ ուխտին կուսութեան զոր արարեալ էր 'ի տաճարին, ասաց ցհրեշտակն իւր բնածին պարզութեամբն. « Եւ ինչպէս կարելի է այդ բանդ լինել՝ մինչդեռ ես զայր ոչ գիտեմ [21]։ — « Հոգին սուրբ եկեսցէ 'ի քեզ, և զօրութիւն Բարձրելոյն հովանի լիցի 'ի վերայ քոյ, պատասխանեց հրեշտակն, և ահա այսոր համար է որ այն սուրբ պտուղն ալ որ 'ի քէն պիտի ծնանի սուրբ է և Որդի Աստուծոյ պիտի կոչուի »։ Այն ատենն

Աստուծոյ պատգամաւորաց սովորութեանն համեմատ՝ ուզեց նշան մի տալ որ իր խօսից ճշմարտութիւնն հաստատուի, ուստի ասաց. «Ահա Եղիսաբէթ ազգական քոյ և նա յղի է 'ի ծերութեան իւրում, և այս վեցերորդ ամիսն է իր յղութեանն՝ որ ամուլն կոչեցեալ էր. զի ոչ տկարասցի առ Աստուծոյ ամենայն բան »:

Հնազանդեցաւ Մարիամ աստուածային հրամանացն և խորին և անկեղծ խոնարհութեամբ տայ երկնային պատգամաբերին. « Ահաւասիկ կամ աղախին Տեառն, եղիցի ինձ ըստ բանի քում ». և գնաց 'ի նմանէ հրեշտակն, և Բանն մարմին եղև և բնակեցաւ 'ի մեզ [22]: Ահա այս կերպով կատարեց լուսեղէն զուարթունն իւր պատգամաւորութիւնն վասն փրկութեան մերոյ ընդ նորոյս Եւայի, որով և յանցանք մեղապարտ նախամօրն Եւայի որ դաշնակցել էր ընդ խաւարային հրեշտակին վասն կորստեան մերոյ՝ փառաւորապէս դարմանեցաւ: Այսկերպով զարդ մնհկանացու մի ամբարձաւ 'ի գերագոյն և յանհաս մեծամատ պատիւ Աստուածամայրութեան, կոյս միանգամայն և մայր, նորահրաշ եղանակաւ միացնելով յինքեան իւր սեռին երկու ներհական և գերապանծ վիճակներն: « Ոչ ևս այլ յառաջ երթամք այս անհասանելի խորհրդոյս մէջ, ասէ Ոսկեբերան, և չքննեմք թէ որպէս Հոգին սուրբ կարաց հրաշագործել զայս անքնին խորհուրդս յանձին սրբոյ Կուսին. վասն զի այս աստուածային ծնունդս անյատակ անդունդ մի է անհետազօտելի մարդկեղէն ընդվայրախոյզ աչաց [23] »:

Մեք վարդապետաց և աստուածաբանից կարծեացն հետևիմք՝ որ հաստատեն թէ Յովսէփ օրինաւոր այր էր Մարեմու՝ Բանին մարմնաւորութեան ժամանակ. և սակայն այս կարծեացս վերայ շատ վէճեր եղեն՝ ոմանց ասելով թէ յայնժամ Մարիամ դեռ չէր ա-

մուսնացեալ այլ խօսեցեալ միայն Յովսեփայ. և այս կարծեաց պաշտպաններուն մէջ նախ գտանեմք զնոյն ինքն զմեծն Ոսկեբերան [24]. թէպէտ և ինքն ևս ասէ թէ Մարիամ Յովսեփայ տունն բնակէր՝ երբ երևեցաւ նմա հրեշտակն. « վասն զի, ասէ, հին սովորութիւն էր խօսեցեալ օրիորդաց երթալ 'ի տուն իրենց նշանածին. որ ցարդ ևս կը պահուի երբեմն. ինչպէս տեսանեմք որ Ղովտայ փեսայացուներն իրենց աներոջ տունն բնակէին իրենց խօսեցելոց հետ 'ի միասին [25] »: — Բայց որչափ մեծ է Ոսկեբերանի պէս սուրբ և պերճաբան ճարտարախօսի նկատմամբ մեր յարգութիւնն, սակայն Եկեղեցին այս նիւթոյս մէջ իւր կարծիքն ոչ ընդունի: Գալով Ղովտայ փեսայացուաց օրինակին՝ զոր իր կարծիքն պաշտպանելու համար մէջ բերէ՝ համարձակիմք ասելու թէ յարմար օրինակ մի չէ. վասն զի Ս. Գիրք ոչ ուրեք ասեն թէ դոքա 'ի տան Ղովտայ բնակէին. մանաւանդ թէ բոլորովին հակառակն մեզ հաւատացնել ցուցանեն, որովհետև այն տագնապողական ժամուն՝ մինչդեռ սարսափելի աղմուկ մի հնչէր բոլոր քաղքին մէջ՝ նահապետն ստիպի իր տունէն դուրս ելնելու և իմացնելու իր փեսայացուաց որ Սոդոմէն փախչին երթան: Դարձեալ ենթադրելով ալ թէ Ղովտայ աղջկանց խօսեցեալ երիտասարդքն՝ նահապետին տանն և դերդաստանին մասն եղած լինէին՝ որոյ խաշինքն այնչափ բազմաթիւ էին որ բովանդակ գաւառին բլուրներն ու ձորերն ծածկէին, այն ատենի սովորութեան համեմատ այս երիտասարդաց վիճակն ալ առ եզերս Յորդանանու՝ տարբեր չէր կարող լինել Յակոբայ Միջագետաց մէջ ունեցած վիճակէն, այսինքն որպէս գործունեայ և արթուն ծառայս և հովիւս՝ բացօթեայ դաշտօրէից մէջ զցերեկ այրեալ լինելով 'ի տօթոյ և զցայգ 'ի ցրտոյ [26]: Արդ ոչ ուրեք ընթեռնումք թէ իրենց նշանածներն նոցա վրաններն բնակէին, այլ իրենց հօր նահապե-

տին հայրական պաշտպանութեաններըքն՝ որոյ գլխա-
ւոր հովիւներն էին իրենց խօսեցեալ կարիճներն, որ
հակառակ ոչ ելանէ Ասիոյ նախկին սովորութեանց։ —
Իսկ Մարիամու համար որովհետև որբ էր և անտե-
րունչ՝ առանց ամուսնացեալ լինելոյ իր նշանածին
տունն բնակիլն՝ շատ անտեղի բան մի կը սեպուէր և
անպատեհ սրբոյ Կուսին նկատմամբ։ Միայն հրէից
մէջ եղած ընդհանուր սովորութիւնն թերևս՝ կարէր
այս կարծեաց հաստատութիւն մի տալ. և սակայն
այս կողմանէս ալ տեսանեմք որ իրենց Օրէնսգրոց մէջ
մասնաւոր պատուիրանաւ այս բանս արգիլեալ էր՝
խօսեցելոց իրարու տուն բնակիլն [27]։ Ոսկեբերան
հայրապետն այլոց աստուածաբանից հետ միաձայն
ուսուցանէ մեզ՝ թէ Աստուած երկար ժամանակ մը-
թին քօղով մի ծածկեց Մարեմայ աստուածամայրու-
թիւնն՝ առ 'ի պահել զնա յամենայն նախատալից
կասկածանաց. և ուրիշ Հայր մի յաւելու թէ Յի-
սուս Քրիստոս լաւագոյն համարեցաւ Յովսեփայ
հիւսան զաւակ սեպուելու 'ի մարդկանէ՝ քան յայտ-
նելու զճշմարտութիւն մարմնաւորութեան իւրոյ՝
վնասու պատուոյ մօրն։ Արդ ո՞չ ապաքէն այս կաս-
կածս և անպատուութիւնս յառաջ գայր՝ եթէ այն
ենթադրութիւնն ընդունիմք։ Եթէ Յովսէփ և Մա-
րիամ խօսեցեալք միայն էին 'ի ժամու մարմնաւորու-
թեան Բանին՝ 'ի նմին վիճակի գտանելոց էին անշուշտ
նաև չորս ամիս յետոյ, որովհետև Աւետարանն ասէ
թէ Մարիամ յետ Աւետման փութապէս գնաց յայ-
ցելութիւն Եղիսաբեթի, և միայն յետ դառնալոյն 'ի
Քեբրոնէ ուր երեք ամիս կացեալ էր՝ յղի լինելն ի-
մացուցեալ, որ ասել կամի թէ ամենեքեան յայտնի
տեսանէին իրեն այն վիճակն։ Այս ամուսնութիւնն
Մարեմու այն ատեն կատարուած պիտի լինէր՝ երբ
արդէն իւր մայրութիւնն յայտ յանդիման ստոյգ
և անժխտելի եղած էր։ Եթէ այսպէս եղած չլինէր

զինչ պիտի տեսէին երկուց կողմանց ընտանիքն. ինչ պիտի տեսէր բոլոր Նազարէթ քաղաքն՝ որ հարսանիքն տեսնելու եկել էին։ Ո՛րչափ նախատական բարբանջանաց նշաւակ պիտի չլինէր այն մաքրակենցաղ Կոյսն՝ 'ի մէջ այնպիսի ազգի՝ յորում պատիւն կանանց սրբազան բան մի էր, և որոյ նախատինքն և ակարութիւն արեան վրէժխնդրութեամբ լուծանէր։ Ո՞չ ապաքէն այսու Մեսիայի ծնունդն ալվատահամբաւեալ պիտի լինէր 'ի չարախօսաց՝ այն ծնունդն որ Դաւթի քերթողական բացատրութեամբ պիտի լինէր որպէս ցօղ զի ցօղէ յերկիր։ Եւ հրեայք բովանդակ և մանաւանդ Նազարէթի բնակիչք որ այնչափ հակառակ էին Յիսուսի Քրիստոսի և արհամարհանօք որդի հիւսան կոչէին զնա, երեոն պիտի չզարնէի՞ն իրեն անկանոն ծնունդն. և եթէ չարարին այս բան՝ պատճառն այն էր որ փաստ մի չունէին այս չարախօսութիւնս հաւատալի առնելու։

Ահա այսոքիկ են այն պատճառներն որոց համար շատ երևելի աստուածաբանք ընդունած են Մարիամու ամուսնութեան կարծիքն յառաջքան զաւետումն և զմարմնաւորութիւն Բանին. Թէպէտ և հակառակ կողմն իր կարծեաց հաստատութիւն բերէ Մատթէոսի այն խօսքն որ կարծես թէ աւելի իրենց կարծեաց հաստատութիւն կուտայ. և սակայն բաւական պարզ չէ այն խօսից իմաստն՝ դժուարութիւնն բովանդակ բառնալու համար [28]։ Այս ալ գիտնալու է որ վէճն գլխաւոր կէտին վերայ չէ, որովհետև եթէ կին համարիս թէ խօսեցեալ՝ սակայն ոչ ոք 'ի քրիստոնէից յանդգնած է տարակուսիլ Աստուածամօր միշտ կոյս և միշտ մաքուր լինելուն վերայ. այս բանիս նոյն իսկ մահմէտականք մեզ հետ համաձայն են [29]։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ Ը. ԳԼԽՈՅ

1 Տունս այս սրբոյն Յովսեփայ հարիւր քառասուն քայլ հե-ռի է 'ի տանէ Սրբոյն Աննայի, և մինչև հիմա այնոր տեղն ցու-ցանեն նշղոյն սրբոյն Յովսեփայ անուամբ, որ բաւական ընդար-ձակ եկեղեցի մի դարձած էր, և Թուրք մի մասն աւերեցին. Հի-մա նոյն տեղն մատուռ մի կայ, ուր ամէն օր պատարագ մա-տուցանեն (տը Ժէրամպ):

2 Այս կրպակներս մինչև ցայժմ նոյն ձևն պահած են բոլոր արևելք (Պուրքարտ Ուղևորութիւն յԱրաբիա հատ. Ա):

3 Յուստինոս վկայ Տրամախօսութեան ընդ Տրիփոնի գրոց մէջ յիշէ Թէ Յիսուս օգնէր իւր հայրագրին լուծեր և արօրներ շի-նելու համար: Սուրբն Ամբրոսիոս 'ի Մեկնութեան Ղուկայ գիրք Գ, 2 ասէ Թէ Յովսէփ վաստակէր ծառեր կտրելու, տներ շինելու են:

4 Այսպիսի մանր ու ձեռքով շարժելու աղօրիք երբայեցւոց և արաբացւոց և արևելցոց ամէն տներն կային. Մէքքէի մէջ գեղեցիկ տուն մի որ Հատիճէի կարծուի՝ փորուած այր մի կայ ուր Մահմէտի դուստրն և Ալիի կինն Ֆաթիմէ աղալ տայր իւր ցորենն (Պուրքարտ). արաբացի չէյխերուն կանայքն մինչև ցայսօր այս ծանր աշխատութիւնս կրեն: Քլոտովէոսի որդւոց Թագաւորութեան ժամանակ Սրբուհին Ռադեկոնդա Թագու-հին Փրանկիոյ՝ մեծ պահոց մէջ պէտք եղած ցորենն իր ձեռօքն աղայր Սրբուհւոյ Կուսին նմանելու համար (Լը կրանտ տ' Աւսի Առանձին կենցաղութեան ֆրանկաց):

5 Այս խեցեղէն սափորներս մեծ և բարձր են, և Նազովրեցի կանայք գլուխնուն վերայ կրեն, և սակայն այս ծանրութեամբ ալ զարմանալի Թեթևութեամբ ընթանան՝ շատ անգամ տղայն ալ գրկած (տը Ժէրամպ հատ. Բ):

6 Այս աղբիւրս Մարիամու աղբիւր կոչեն տեղացիք, և աւանդութեամբ ասի Թէ Աստուածամայրն շատ անգամ հոն եր-Թայր պէտք եղած ջուրն բերելու համար, և հաւանական երևի վասն զի Նազարէթի մէջ ջուրն նուազ է. Ճամբուն երկու կողմն հնդիկ Թզենիներով և պտղատու ծառերով գոցուած է. Կոստանդիանոսի մայրն Հեղինէ հոն մեծամեծ աւազաններ և ջրամ-բարներ շինել տուած էր (տը Ժէրամպ):

7 Ղուկաս գլ. ԺԳ 21: — Մատթ. ԺԳ 33:

8 Ղուկաս Ե 36։

9 Նոյնն ԺԵ 8։

10 Նոյնն ԺԱ 39. — Մատթ. ԻԲ 25։

11 Ղուկաս ԻԱ 1։

12 Կարգաւորեալ մարդիկ ուշ առեն ճաշելին երբ աշխատանքըն դադրեին (չէնտայով խուրդայիլըյորլար)։ Յովսէփ և Մարիամ ճաշէին երեկոյեան ժամն վեցին։

13 Ֆլէօրի չէնտայով խուրդայիլըյորլար։

14 Շատ մեծ զգուշութիւններ առնելու էին երբայեցիք կերակրոյ և ջրոյ անօթոց մաքրութեանն, որ մի գուցէ օտարք նոյնն գործածած լեցին. որովհետև շատ դիպաց մէջ պիղծ և անմաքուր համարուէին (Միշնա հուրք մոզրոքիանոյ)։

15 Ուշ անտրզան համարեի պատրաստել և մոտակայարել Յովսեփոս պլսոր... առել տայ Սրբոյ Կուսին հին մատենագիր մի, և որ արդի եբրայեցւոց սովորութեանց ալ շատ յարմար գայ։

16 Հայրն Քրուազէ Հրահանգ+ Քարեկայ. հտ. ԺԸ։

17 Արևելեան ազգք աղօթելու համար երկնից մաաւոր մի կէտն գիտեն որ դէպ ան ուղղեալ աղօթեն. Հրեայք դէպ 'ի տաճարն Երուսաղեմի կը դառնան. մահմետականք դէպ 'ի Մէքքէ, Սաբայեցիք դէպ 'ի հարաւ, և մոգք դէպ 'ի արևելք, որպէս նաև նախկին քրիստոնեայք և մինչև ցայսօր արևելեան հաւատացեալք։

18 Սովորաբար կարծուի թէ հրեշտակին երևելն արևու մըտնելու ժամանակն հանդիպեցաւ։

19 Հրեշտակային ողջունատրութիւնն որ հայերէնի մէջ թարգմանուած է Ողջոյն ըեր բերկրեալ՝ յոյնին մէջ սակաւ մի տարբերութեամբ առի Ողջոյն +եղ. ընորհօ+. —խայրէ քէխարիթօմէնէ— շնորհք և խաղաղութիւն բառից զանազան նշանակութեամբն. յոյնք և լատինք ողջունատրութեանս մէջ յաւելուն նաև օրհնեալ դու 'ի կանայս որ հայերէնի մէջ միայն Եղիսաբեթի ողջոյնին մէջ յիշատակի։

20 Եբրայական ոճով կոչէին ըննել ալ նշանակէ, որպէս սակաւ մի յետոյ առի վասն Եղիսաբեթի Որ ամուլն կոչեցեալ էր. փոխանակ ասելու որ ամուլ էր։

21 Սրբոյ Կուսին հարցումն 'ի տարակուսէ և 'ի չհաւատալոյ յառաջ ոչ գայ, ասեն վարդապետք ընդ սրբոյն Աւգոստինոսի, այլ կամի ուսանել թէ այս հրաշալիքս ինչ եղանակաւ պիտի կատարի. և Ոսկեբերան յաւելու թէ իւր հարցումն յառաջ գայ 'ի խորին և յարգամեծար զարմացմանէ և ոչ 'ի վայրապար հետազօտութենէ։

22 Այս անճառելի խորհուրդս կատարեցաւ 'ի 25 մարտի, և ուրբաթ աւուր երեկոյ մի։

23 Յովհան Ոսկեբերան ճառ. Դ։

Ա. Թերևս այս կարծեաց հաստատութիւն տալու համար է որ մեր Թարգմանութեան մէջ յաւելու այս հատուածիս վերայ Յա-կոբ ծնաւ զՅովսէփ զայրն Մարիամու՝ իբրև մեկնութիւն այս ի-մաստիս որում խօսեցեալ զՄարիամ կոյս որ 'ի յոյնն և 'ի լատին չկայ։

24 Տէքութիւր սխալմամբ համարի թէ Ոսկեբերան եւս կար-ծէ զԿոյսն ամուսնացեալ ընդ Յովսեփայ 'ի ժամանակի աւետ-ման, որ այնպէս չէ սուրբ վարդապետիս կարծիքն՝ այլ խօսե-ցեալ միայն համարի յայնժամ զսուրբ Կոյսն Յովսեփայ, թէ և բնակէր 'ի տան նորա՝ երբ հրեշտակն ետ նմա զաւետիս. այլ մեք վարդապետաց և աստուածաբանից մեծագոյն մասին հե-տևելով ասեմք թէ սուրբ Կոյսն յայնժամ օրինաւորապէս ա-մուսնացեալ էր ընդ Յովսեփայ

25 Ոսկեբերան ճառ. Դ։

26 Ծննդոց գլ. ԻԱ 40։

27 Միշնա հտ. Գ Յաղագս հարսնախօսութեանց. — Պարթե-նորա, Մայմոնիտ, Սուրենուսիոս, Սելտեն։

28 Վարդապետաց տարաձայնութեան պատճառ տուող հա-տուածն Մատթէոսի աւետարանին այս խօսքս է. Յիսուսի Քրիստոսի ծնունդն էր այսպէս. խօսեցեալ զմայր նորա Մարիամ Յովսեփու. մինչչև եկեալ առ միմեանս գտաւ յղացեալ 'ի հոգւոյն սրբոյ։ Նոքա որ բառից զօրութեանն միտք դնեն՝ ասեն թէ Կոյսն միայն խօսեցեալ էր, որովհետև Մատթէոսի եբրայական բնագիրն բացատրող յունական բառն՝ նշանակէ խօսեցեալ կամ խոստացեալ, մինչդեռ ամուսնացեալ նշանակելու բառն ոչ գոր-ծածէ. այնպէս որ Յովսէփ տակաւին իր տունն անգամ առած չէր զԿոյսն, զոր և ցուցանեն հետագայ բառերս Մի երկնչիր առնուլ առ քեզ զՄարիամ կին քոյ. զանզի որ 'ի նմայն ծնեալ է 'ի հոգւոյն սրբոյ է. զորս և մեկնեն այսպէս. Անկասկած առ զՄարիամ 'ի կին քոյ. քանզի որ 'ի նմա ծնեալ է 'ի հոգւոյն սրբոյ է։ Բայց այսպէս Թարգմանելու համար՝ հարկ էր որ բնագիրն ասէր 'ի կին քոյ, որ այնպէս չէ, այլ պարզապէս զՄա-րիամ կին քոյ։ — Իսկ հակառակ կողմն զոր պաշտպանեն սուրբ հարք և անուանի մեկնիչք և գրեթէ բովանդակ աստուածա-բանք՝ Ղուկասու աւետարանին Բ գլխոյն խօսքն ընդդիմադրեն ի-րենց ախոյանից. որովք աւետարանիչն՝ զԿոյսն ամուսնացեալ ընդ Յովսեփայ, նոյն խօսեալ բառով կոչէ ասելով Մտանել յա-շխարհագիր Մարիամու հանդերձ զոր խօսեալ էր նմա և էր յղի. նոյնպէս Մատթէոսի Ա գլխոյն 19 համարին մէջ սրբոյն Յով-սեփայ համար ասի այր նորա և ոչ խօսեցեալ նորա։ Ուստի երբ Մատթէոս սրբոյ Կուսին համար խօսեցեալ ասէ՝ ոչ կամի ասել

թէ ամուսնացեալ չէր՝ այլ զի ներքին յարաբերութիւն չէր ունեցած ընդ սան իւրոյ, որպէս թէ խօսեցեալ միայն լինէր, որպէս ասէ ոմն 'ի սուրբ Հարց։

29 Անարատութիւն Մարեմայ ծանուցեալ է և 'ի մահմետականաց, այնպէս զի արևելեան կայսերաց դուռն եղող խալիֆայի մի դեսպանն Էլ-Ֆիրուզապատի՝ յոյն պատրիարքին և եպիսկոպոսաց հետ կրօնական նիւթոց վերայ վիճելու ժամանակ՝ Մարիամու Յիսուսի մօրն համար ասէ՝ թէ կարէ կոչիլ աղբիւր և բովք ամենայն մաքրութեան ճէնաղըխամէր մ-ըլ-թէհարըթ-ֆէր (տ՛ Էրպելյ Մօրէնտորրան որևէլ. հտ. Բ)։

## ԳԼՈՒԽ Թ.

### Այցելութիւն Մարեմայ.

Ուրեմն Մարիամ լսելով 'ի հրեշտակէն Եղիսաբեթի հրաշալի յղութիւնն՝ որոշեց երթալ առ նա և իւր սիրալիր բարեմաղթութիւններն մատուցանել պատուական ազգակցին: Ոչ թէ իւր աչօքն ստուգելու համար իրին ճշմարտութիւնն՝ որ անստոյգ երեւէր, որպէս յանդգնեցան ասել ոմանք 'ի քննաբանից, որովհետև լաւ գիտէր նա թէ ամենայն ինչ հնարաւոր է առ Աստուծոյ և իրեն համար անկարելի բան չկայ, և թէ անհնարին էր որ երկնից պատգամաւորն Ամենակալին կողմանէ իրեն խաբէական և սուտ լուրեր բերէր. դարձեալ ասեմ, իր երթալն իրն ստուգելու համար չէր, այլ մանաւանդ թէ ստոյգ լինելն գիտելուն համար երթայր: Ուստի անյապաղ ել 'ի ճանապարհ. վասն զի սէրն ասէ Սուրբն Ամբրոսիոս յապաղումն կամ դանդաղութիւն ոչ գիտէ. և դարձեալ ինքն բնութեամբ բարի և բարեսէր լինելուն՝ փափաքէր որ իր ազգականացն ալ հաղորդէ այն սրբութիւնն և երկնային շնորհքն՝ որ յիւր հոգւոյն զեղեալ բղխէին որպէս մշտաբուխ աղբիւրք ջըրոց կենդանութեան, յորմէ հետէ կրէր յողջախոհ արգանդին զարարիչն տիեզերաց. ուստի կամէր զնոսա ալ մասնակից առնել՝ որք զինքն պաշտպանել էին 'ի մանկութեան և իրենց զաւկին տեղ դրած էին զինքն:

Յովսէփ՝ որոյ պարզ և անմեղ միանգամայն առ Աստուած բարձրացեալ հոգին՝ նոյն զգացմունքն ունէր ինչ որ Մարիամ, որով երկուքն ալ մի սիրտ և մի

կամք ունէին, յօժարութեամբ հաւանեցաւ նորա առաջարկութեան. և Մարիամ մեկնեցաւ 'ի Նազարէթէ առ 'ի երթալ վարդից եղանակին մէջ 'ի լեռնակողմն Յուդայ ուր էր բնակութիւնն Զաքարիայ 'ի ցեղէն Ահարոնի: Ս. Գիրք որ մասնական պարագաներն զանց առնելով՝ դէպքն և իրեն էական մասունքն հաստատեն, չասեն ինչ՝ թէ Կոյսն ուղեկից ունէ՞ր թէ չէ այս ճանապարհորդութեանս մէջ. ոմանք այս լռութենէս համարեցան թէ ինքն միայնակ գնացած է, որ ճշմարիտ ոչ երևի. վասն զի Նազարէթէ մինչև Ային քաղաքն [1] հինգ աւուր ճանապարհ է, և հարկ է անցանել Գալիլեայի մի մասն, Սամարիայի պէս թշնամեաց երկրին մէջէն և գրեթէ բովանդակ Յուդայի վիճակն. բոլոր երկիրն ալ դժուարակոխ լեռներով և անապատներով լի է [2]: Ետքի ատեններն հռոմայեցւոց այս ճամբայներս շտկելէն յառաջ՝ բոլորն ալ աւերեալ և խորտուբորտ եղած էին ուղտուց երամակաց ծանր քայլերէն, և այնպէս քարուտ որ ուղևորն ամէն մի քայլին վտանգի մէջ էր անկանելոյ և ջախջախելոյ: Եւ երբ երեկոյ լինէր՝ հարկ էր իջեվան մի իջնել պառկելու համար, որ կարաւաններու խեղճ օթևաններ էին՝ և ուրիշ բան չկար բայց եթէ նեղ անձուկ տեղ մի՝ ուր կերակուր և պէտքի բան ոչ գտանէր՝ բայց եթէ 'ի սիղոյ շինուած փսիաթ կամ նաճայ մի [3]. որովհետև քանի որ քաղաքականութիւնն յառաջ երթայր հրէից մէջ՝ նախկին ժամանակաց հիւրընկալութիւնն ալ երթալով պակսէր: Ուստի այս այսպէս լինելուն անկարելի է կարծել թէ Յովսեփայ պէս հաստակաւոր և փորձառու մարդն՝ հանդարտ սրտով թողյր՝ իւր մանկամարդ գեղեցիկ փափկիկ ամուսինն, որ և աշխարհէս հեռի դաստիարակուելուն համար ալ՝ որպէս ինքն իսկ Անմեղութիւնն ամենայնի վստահէր, այնչափ վտանգաց և այնչափ նեղութեանց մէջ՝ որ միայնակ ճանապարհորդու-

թեան ժամանակ կարէին իրեն հանդիպիլ։ Նոյն իսկ ժողովրդեանն Աստուծոյ պատմութիւնն և ասխական սովորոյթք [4] այս միայնակ ուղևորութեան ենթադրութիւնս սուտ հանեն. երբայեցի կին 'մի առանց բազմաթիւ ուղեկցաց ոչ յանդգնէր իր տնէն այնչափ հեռի տեղ երթալու։

Եթէ Սուրբն Յովսէփ չկարաց ուղեկից լինել Կուսին այս ճանապարհորդութեանս մէջ՝ որպէս կարծէ Հայրն Քրուազէ, և որ հաւանական իսկ է՝ որովհետև իւր աղքատ վիճակն ոչ ներէր նմա այնչափ ժամանակ իւր գործն և արուեստն թողուլ՝ որով հազիւ թէ աւուր ապրուստ ճարէր, հարկ է ասել թէ Աստուածամայրն կարաց իրեն ընկերակիցներ գտնել իւր ազգականներէն՝ որ բարեպաշտութեան համար 'ի սուրբ քաղաքն երթային՝ հանդերձ արամբք իւրեանց և սպասաւորաց, որոց հետ միանալով մինչև այն տեղն՝ յետոյ յառաջ վարած է իւր ընթացքն ապահով ուղեկիցներով։ Եւ այս բանս անտի ալ յայտնի է՝ որ իւր ամէն ճանապարհորդութեանց մէջ թէ Երուսաղեմայ մեծահանդէս տօնից ներկայ գտնուելու համար, թէ Քրիստոսի քարոզութեանց ժամանակ՝ որ այն ատեն տարիքն աւելի առած էր, միշտ ընկերացեալ գտանեմք զինքն այն սուրբ կանանց հետ, նոյն իսկ 'ի Գողգոթա ելած ատենն։

Վերջապէս հասնելով 'ի քահանայական քաղաքն՝ յորում բնակէր ղևտացւոյն գերդաստանն, առանց տեղ մի հանգչելու չիտակ Զաքարիայի տունն իջաւ. և Եղիսաբէթ 'ի միոյ 'ի ծառայից իւրոց լսելով այս անակնկալ այցելութիւնս՝ սաստիկ ուրախացած ընդառաջ գնաց. զոր տեսեալ մանկամարդ Կուսին խոնարհեցաւ և ձեռքն կրծոց վերայ դնելով փութացաւ ինքն նախ ողջունել զնա ասելով. Խաղաղութիւն ընդ քեզ [5]։ Եղիսաբէթ ետ ետ քաշուեցաւ. վասն զի նորա մտերմական խօսից և հրաշափայլ դիմաց վե-

բայ այնպիսի բան մի նշմարեց՝ որ յարգութիւն և պատկառանս ազդէին. իւր դիմաց գծագրութիւնն երթալով լուսաւորէր և իմանայր յանձին թէ անսովոր և հրաշալի բան մի հանդիպէր իրեն: Կուսին մարդավարական պարզ ողջոյնն՝ զոր հանդարտ և քաղցր ձայնիւ արտաբերէր՝ իւր ազգականին խռովութիւն մի պատճառեց. և ահա յանկարծ մարգարէական հոգին Եղիսաբեթի վերայ իջնելով՝ 'ի ձայն բարձր աղաղակեաց և ասէ. Օրհնեալ ես դու 'ի կանայս, և օրհնեալ է պտուղ որովայնի քո. և ուստի՞ է ինձ այս երջանկութիւնս որ Տիրոջս մայրն ինձ գայ. վասն զի հազիւ թէ քո ողջունիդ ձայնն յականջս իմ հասաւ՝ ուրախութեան կայթ մի տուաւ մանուկս որովայնիս մէջ. և երանի՜ քեզ որ հաւատացերդ թէ պիտի կատարուի ինչ որ Տէրն ասաց քեզ»:

Այս խօսքիս Մարիամ պատասխանեց այն վսեմ քերթող և ական յանպատրաստից օրհնութեամբն Մեծացուցէ՝ որ Նոր Կտակարանաց մէջ առաջին երգն է, և բովանդակ Ս. Գրոց մէջ քան զամենն հրաշալին:— « Մեծացուցէ անձն իմ զՏէր, և ցնծացաւ հոգի իմ յԱստուած փրկիչ իմ. զի հայեցաւ 'ի խոնարհութիւն աղախնոյ իւրոյ. զի ահա յայսմ հետէ երանեսցեն ինձ ամենայն ազգք: Զի արար ինձ մեծամեծս հզօրն, և սուրբ է անուն նորա: Եւ ողորմութիւն նորա ազգաց յազգս երկիւղածաց իւրոց: Արար զօրութիւն բազկաւ իւրով. ցրուեաց զամբարտաւանս մտօք սրտից իւրեանց: Քակեաց զհզօրս յաթոռոց, և բարձրացոյց զխոնարհս: Զքաղցեալս լցոյց բարութեամբ, և զմեծատունս արձակեաց ունայնս: Պաշտպանեաց Իսրայելի ծառայի իւրում, յիշելով զողորմութիւնս: Որպէս խօսեցաւ առ հարս մեր՝ Աբրահամու և զաւակի նորա յաւիտեան »:

Այս կերպով սուրբ Կոյսն գերբնական լուսով լուսաւորեալ՝ ետես յանկարծ զբովանդակ նախկին մար-

գարէութիւնս և զանթերի կատարումն նոցին, հազարիցս և բիւրիցս անգամ առաւել լուսաւորեալ և շնորհազարդեալ քան զամենայն մարգարէս միանգամայն. մինչև ասել Սրբոյն Ամբրոսիոսի « Այս գերազանց խօսակցութեանս և հրաշալի բանակցութեանս մէջ Մարիամ և Եղիսաբէթ երկոքին ևս ազդմամբ Հոգւոյն սրբոյ մարգարէացան՝ որով լցեալ էին որդեամբք զաւակաց իւրեանց[6] »:

Սուրբ Կոյսն երեք ամիս մնաց յերկրէն քետացւոց, և այս երկայն այցելութեանս ժամանակ բնակեցաւ մերձ 'ի քաղաքն Ային (որ է Քեբրոն) հովանաւոր և բարեբեր հովտի մի մէջ՝ ուր էր Զաքարիայի ամարաստունն[7]: Ինքն դուստր գոլով Դաւթի և իւր ցեղապետին և հաւուն պէս մարգարէ և հաւասար հանճարով ճոխացեալ, այն երկայն միջոցին դիտէր աստեղազարդ երկնից կամարն, սօսափաձայն անտառներն, այն լայնածաւալ ծովն որ մերթ փոթորկալից ալեօք խռովէր, և մերթ մեղմընթաց մկանամբք Ասորւոց երկրին շառաչաձայն եղերքն համբուրէր: Բնութեան այս դեղեցիկ տեսարանին վերայ՝ որ այնչափ կատարեալ է իր մասանց մէջ, և այնչափ ճարտարութեամբ ներդաշնակեալ յամբողջութեան իւրում, ուր ամենայն ինչ հրաշալի է 'ի ծաղկանց մանրաթելից և միջատաց թևոցն սկսեալ՝ մինչև յայն թափանցիկ գնտերն որ տիեզերաց մէջ փայլին՝ գիշերուան սոսկումն փարատելու համար, այնչափ հիացուցանէին զԿոյսն որ երբեմն յարտասուս լուծանէր ասելով. Ո՜հ որչափ մեծ է Նա որ առաւօտեան արուսեկին հրամայէ, և արշալուսոյն սահմանէ այն կէտն ուստի պիտի ծագի, որ հրաման տայ փայլականց և որում կայծակն փութայ հնազանդիլ կոչելով. Ահաւասիկ եմ: Սակայն որչափ մեծ է՝ նոյնչափ իւր բարութիւնն զօրութեանն հաւասարի. ինքն տուաւ մարդոյ զհանճար և անասնոց զբնազդումն,

ինքն նախախնամէ իւր ամեն արարածոց մշտնջենաւոր պէտքն. աւազոյ մէջ տաքցնէ զձու ջայլամին, և բեհմոթին (ձիագետի) վերայ հսկէ նորա մրափած ատենն՝ երբ ննջէ 'ի շամբս եղեգանց և ընդ հովանեաւ ուռենեաց հեղեղատին. ինքն պատրաստէ զկերակուր ձագուց ագռաւուց որ կորդան առ նա և քաղցեալ Թափառին դաշտօրէից մէջ: Այս ասելով սաղմոսերգուին պէս ինքն ալ յորդորէր բոլոր զհամագոյս իւրեն հետ 'ի միասին օրհնելու զԱրարիչն:

Լեռներու ծործորներու մէջ շրջագայած ժամանակ՝ ինքն Մարգարիտ ծաղիկն ինչպէս որ այս քաղցրիկ անուամբ կոչեն զնա ոմանք, մեծ հաճութիւն իմանայր այն դաշտաց պարզ և սիրուն ծաղկներն դիտելէն՝ որոց նմանցնէ զինքն Սողոմոն իր խորհըրդաւոր երգոց մէջ Շուշանն հովտաց, ծաղիկ դաշտաց կոչելով զնա: Պարսից իմաստունք աւանդեն թէ օր մի փառաւորեալ Կոյսն Մարիամ՝ ծաղկի մի ծլօտին դպչելով զոր Արաբացիք Արբենիտա անուանեն՝ իւր կուսական մատամբքն՝ այնպիսի քաղցրահոտութիւն մի պարգևեց այնոր՝ զոր մինչև ցարդ պահէ[8]: Արևելեան քրիստոնէից մէջ պահուած աւանդութիւնն ցուցանէ մինչև ցայսօր այն աղբիւրն՝ ուր երթայր երբեմն Մայրն Յիսուսի՝ այնոր ցայտող ջրերուն խխուր դղչիւնն լսելու համար[9]:

Քահանայապետին ամարաստանին ետևի դին կը տարածուէր պարսկական պարտէզ մի դրախտ կոչուած, և որոյ օրինակն առնլով երբայեցիք 'ի ժողովրդոցն Կիւրոսի և Շամիրամայ՝ հետերնին բերած էին գերութենէ դարձած ատեն. հոն տեսնուէին Պաղեստինու գեղեցկագոյն ծառերն, ծաղկալից Թփեր աստ անդ ցրուած, նարնջենեաց քաղցրահոտութիւնն, ուռենեաց հակեալ սաղարթուց ներքև վտակաց դըղչալոյն՝ ախորժ հովանի մի ձևանար այս տեղս: Հոն Մարիամու քաղցր խնամօքն մոռանայր Եղիսաբեթ

այն երկիւղն զոր զգայր երբեմն գալիքն մտածելով, որոյ յոյսն որչափ ղինքն ուրախացնէր՝ սակայն տարիքն առած լինելուն պատճառաւ՝ կարէր վտանգ բերել իր կենացն։ Ո՛հ որչափ կրօնական եռանդեամբ լի էր արդեօք այն երկու սուրբ կանանց խօսակցութիւնն. յորոց մին դեռ աղջիկ կոյս պարզ և անգէտ չարի որպէս Եւայն այն ինչ ելեալ յաստուածային ձեռաց, իսկ միւսն տարեց և աշխարհիս ամեն վտանգացն փորձառու. բայց երկուքն ալ բարեպաշտօնք և հաճոյք Աստուծոյ բարձրելոյ. մին կրելով 'ի ծոցի՝ որ այնչափ ժամանակ ամուլ էր, մանուկ մի որ լինելոց էր մարգարէ և առաւել եւս քան զմարգարէ, իսկ միւսն զօրհնեալ որդի Բարձրելոյն՝ զառաջնորդ և զաղատիչն Իսրայելի։

Ամառուան գեղեցիկ և պարզ երեկոյին՝ երբ լուսնոյ սպիտակափառ լոյսն ծառոց ճիւղերն լուսաւորէր՝ այն ճոխ գերդաստանին սեղանն կը պատրաստուէր թզենւոյ լայնատարած ճիւղերուն կամ սաղարթաւոր որթոյ բարունակաց ներքև[10]. Հոն բերէին սպասաւորք խորոված գառնն՝ լերանց խնկահոտ խոտերովը գիրացած, այծու երբուծ մի, Սիդոնացի ձկնորսաց բռնած ձկներէն, հինաւուրց կաղնի ծառոյ խոռոչէն ժողովեալ վայրի մեղր պաննւ յետոյ արմաւենւոյ Թարմ սերոյէ ճարտարահիւս սփռոցներով Երիքովի արմաւներ՝ որ մինչև կայսերաց սեղանն երևելու պատիւն ունէին, Հայաստանի ծիրաններ, Բերիոյ և Դամասկոսի պիստակներ և Եգիպտոսի սիսեր։ Իսկ Ենգադեայ բլուրներուն գինին՝ զոր քահանայապետին տաճարապետն կճեայ Թակոյկներու[11] մէջ պահէր՝ աշխոյժ մատռուակներ մատուցանէին զայն կոչնականաց շողշողուն բաժակներով։ Մարիամ որ միշտ սակաւակեր էր թէ առատութեան մէջ և թէ նուազութեան՝ սոսկ պաղով և սակաւ մի կաթնեղինով կշտանայր, վրայէն բաժակ

մի Նեփթովայ աղբիւրին յստակ ջրէն խմելով. այս սակաւապիտութիւնս ոչ եթէ տեղւոյն և պարագային պատշաճութեանց համար էր, այլ իր յօժարութեամբն ստացած սովորութիւն, որ իւր կուսական նազելի փափկութեանն ալ յոյժ յարմար գայր։

Ոմանք Սրբոյ Կուսին խոնարհութիւնն այլ աւելի յերևան հանելու համար որում ամենևին կարօտութիւն չունի, համարեցան թէ ինքն Եղիսաբեթի տան մէջ աղախնեայց և գերեաց ծառայութիւններէն ալ ոչ փախչէր։ Այս կարծիքս նախընթաց անցից հետ ամենևին յարմարութիւն չունի. վասն զի Եղիսաբէթ ոչ կարէր հաւանիլ որ այն փափկիկ օրիորդն զոր սակաւ մի յառաջ ինքն իսկ բարձրաձայն խոստովանել էր իբրև մայր Տեառն իւրոյ, և քան զամենայն դստերս Սիոնի գերազանց պատուոյ հասեալ, իրեն առջին այն ստորիճան խոնարհի և նուաստանայ։ Մանաւանդ որ Զաքարիայի սուրբ ամուսնոյն ոչ պակասէին նաժիշտք և աղախնայք. որովհետև ինչպէս խոստովանին քրիստոնեայք և հրեայք՝ ինքն Եղիսաբէթ ազնուական գերդաստանէ էր, և Յովհաննու Մկրտչի շքեղ ծնունդն կերպով մի նսեմացնէր Յիսուսի Քրիստոսի ծնունդն՝ որոյ ծնողքն անծանօթ մարդիկ էին և աղքատաբար ապրէին հասարակ ժողովրդեան պէս [12]։ Ուստի այն խնամքն զոր ցուցանէր տիրուն և քաղցրիկ կոյսն առ Եղիսաբէթ՝ ծանր և ծառայական սպասաւորութիւն չէր, այլ այնպիսի հաճելի և փափուկ հոգեր՝ զորս պիտի առնէր անշուշտ իւր մօրն իսկ՝ եթէ Երկինք տակաւին իրեն թողած լինէին զնա։ Անտարակոյս շատ անգամ այն գորովալիր և յարգելի ամուսիններուն վերայ նայելով՝ որ զինքն ալ իրենց զաւկին պէս սիրէին՝ կարծէր տեսանել իւր իսկ ծնողքն. որովհետև սոքա ևս զինքն տեսածնուն պէս՝ իմանալով իւր գերազանց մեծութիւնն յարգութեամբ և զարմացմամբ հայէին իր

վերայ, զոր Թէպէտ Մարիամ խոնարհութեամբ ջանայր յանձնէն հեռացնել, բայց չէր կարող բոլորովին նոցա մաքէն ալ հանել։

Զաքարիա որ նոյն իսկ հրեշտակին խօսից վերայ տարակուսած էր՝ ոչ բնաւ կասկած մի ունեցաւ Մարիամու անբիծ մաքրութեան վերայ. և եթէ հաւատամք արևելեան աւանդութեան՝ զոր և հարք անուանիք ընդունած են [13] քանի մի ամիս յետոյ ինքն իսկ հրապարակաւ տաճարին մէջ պաշտպանել է Աստուածամօր կուսական մաքրութիւնն, և իւր արեամբն կնքել է այս համարձակ վկայութիւնս։

Հարք սուրբք ասեն թէ դժուարին բան մի չէ ըմբռնելն թէ որչափ օրհնութիւններ բերաւ Կոյսն իր այցելութեամբն այն քահանայական գերդաստանին վերայ՝ որ զինքն այնչափ սիրով հիւրընկալեալ էր։ Վասն զի եթէ Աստուած օրհնեց զտունն և զամենայն ինչ Աբեդդարայ՝ ուխտի տապանակին երեք ամիս իւր տունն մնալուն պատճառաւ, մինչև 'ի նախանձ գրգռել զԴաւիթ արքայ, որչափ աւելի գերագոյն շնորհք իջած չեն Զաքարիայի և բոլոր իր տան վերայ՝ այն երեք ամսոց մէջ՝ յորում իր տան մէջ բնակեցաւ Մարիամ՝ որուն օրինակ էր միայն տապանակն հնոյ օրինաց՝ որչափ ալ սուրբ և ահաւոր եղած լիցի։ Այն մաքրութիւնն յորում ապրեցաւ միշտ Յովհաննէս Մկրտիչ՝ ասէ Սուրբն Ամբրոսիոս՝ Սրբոյ Կուսին ներկայութեան արդիւնքն էր՝ որ իւր հոգին այնչափ օծութեամբ և շնորհօք ճոխացոյց։

Ստուգութեամբ չեմք կարող ասել թէ արդեօք Աստուածամայրն ներկայ գտա՞ւ 'ի ծնանելն Եղիսաբեթի զՅովհաննէս։ Որոգինէս, Սուրբն Ամբրոսիոս և այլ անուանի գրիչք 'ի հնոց և յարդեաց հաստատեն, և իրենց կարծիքն հաւանական և ճշմարտանման երևի՝ գոնէ այս պատճառիս համար որ շատ անպատեհ բան էր Սրբոյ Կուսին՝ այնչափ երկար ժա-

մանակ իր ազգականին տունն մնալէն յետոյ՝ նոյն իսկ նորա վտանգաւոր ժամուն՝ յանկարծակի զինքն թողլով մեկնէր երթայր՝ առանց բանաւոր պատճառ մի ունենալու այս իր տարաժամ և շտապողական երթին։

Իսկ այն աստուածաբանք և մեկնիչք որ Որոգինեսի և Սրբոյն Ամբրոսիոսի կարծեաց հակառակ կողմն բռնեն՝ գլխաւորապէս Ս. Ղուկաս աւետարանչի պատմածին յենուն՝ որ Եղիսաբեթի ծնանելն՝ Կուսին 'ի Գալիլեայ դառնալէն ետև յիշէ։ Մեզ այնպէս երևեցաւ որ այս պարագայս բաւականապէս արժանի էր մտադիր քննութեան. ուստի խնամով մեծաւ քննելով այս սուրբ աւետարանչիս գրածն՝ բաւական համոզուեցանք, եթէ կարծիքնիս սխալ չէ, որ այս պատճառս այսինքն աւետարանչին խօսքն բաւական չէ՝ եղած տարակուսն լուծելու. վասն զի Ս. Ղուկաս սովորեալ է այսպիսի յետևառաջութիւններ առնել իւր գրոց մէջ, որոց նման տեղափոխութիւններէն երկուքն միայն հոս յիշեմք. օրինակ իմն ինքն Յովհաննու Մկրտչի քարոզութիւնն և բանտարկութիւնն պատմելէն ետև, յետագայ հատուածին մէջ պատմէ Յիսուսի Քրիստոսի մկրտութիւնն՝ որ անտարակոյս յառաջ եղած է յառաջընթաց կարապետին բանտարկութենէն և եղերական մահուանէն։ Նմանապէս հովուաց երկրպագութեան վերայ խօսելով՝ Ս. Ղուկաս ճոխաբար կարգէ հովուաց այս զարմանալի դէպքս պատմելէն այսինքն 'ի Բեթղեհեմ այլն երթալնին և այս բաներս լսողներուն զարմանքն, և յետոյ նորէն ածելով զմեզ առաջին տեսարանին տեղն՝ ուր պատմութիւնն ընդհատել էր՝ հովուաց ետ դառնալն զրուցէ 'ի մսրոյ անտի։ Աւետարանչին այս ոճն տեսնելով՝ հաստատուիմք Սրբոյն Ամբրոսիոսի կարծեաց վերայ, որոյ հաւանականութիւնն ալ արդէն ակն յայտնի տեսանի։

Մարիամու Մկրտչին ծնանելէն յառաջ մեկնած լինելը պաշտպանողներն՝ Որբոյն Ղուկայ այս հատուածէն զատ պաշտաճողութեան պատճառներ ալ բերեն նորա երթալը արդարացուցանելու համար. ասելով թէ կուսանք այս պարագայիցս առեն մօտ ոչ գտանէին, որ ըստ ինքեան յայտնի է։ Նուտակայն Մարիամ յաչս ազգականաց իւրոց արդէն ամուսնացեալ էր, մանաւանդ թէ յղի ևս. և կուսութիւնն այնպիսի գաղտնիք էր որ ինքն միայն գիտէր. ուստի և իրեն չքմեղութեան տեղ ոչ ծառայէր։ Նմանապէս կարծեմք թէ բաւական պատճառ չէ նաև այլոց ասացածն թէ՝ Մարիամ յառաջագոյն գիտելով թէ կարապետին ծննդեան ժամանակ ուրախութեան հանդէսներ պիտի կատարուին՝ որք իր առանձին և միայնակեր սովորութեանց հակառակ էին՝ այն պատճառաւ անմեղ և երկչոտ աղաւնոյ պէս թողել փախել է։ Այս բանիս ալ պատասխանեմք որ Մարիամ արդէն շատ լաւ գիտէր միացնել զխորշուածն իւր յաշխարհային զբօսանաց՝ պաշտաճողութեանց նրբին զգայութեան հետ զոր ունէր՝ որպէս վկայեն Հարք, և այն գողարիկ փութոյն հետ զոր ըղձայր 'ի սրտին առ ազգական մօրն իւրոյ Աննայի որ էր Եղիսաբէթ։ Ուստի դարձեալ ասեմք թէ ինքն այն առեն թողած մեկնած է քահանայապետին տնէն՝ երբ Եղիսաբէթ բոլորովին վտանգն անցոյց. և ամենեցուն զարմանքէն և գովեստներէն ինքզինքն ճողոպրելու համար՝ Յուդայի այն լեռնակողմանքն թողուց՝ Նոր Եղիայն այսինքն զՅովհաննէս Մկրտիչ գրկելէն գգուելէն պագնելէն և օրհնելէն ետև[14]։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ Թ. ԳԼԽՈՅ

1 Զաքարիա քահանայ բնակէր յԱյին յԵրուսաղեմէ երկու փարսախ հեռի դէպ 'ի հարաւ. Թագուհին Հեղինէ եկեղեցի մի շինեց նոյն տան գետնին վերայ։

2 Թէ և նոյն ատեն Հրէաստան հիմակուընէ աւելի բազմամարդ էր, սակայն այնպիսի չոր ցամաք երկիրներ կային՝ որ անմշակ թողուած էին։ Աւետարանն քաղաքաց մօտ անապատներ յիշատակէ՝ ուր Քրիստոս միայնանայր աղօթելու համար։

3 Վոլնէյ ասէ թէ Ասորեաց և Պաղեստինու մէջ օթևաններ չկան, այլ քաղաքաց և գիւղից մէջ ընդարձակ իջևաններ կառաւանատեղի անուամբ ամեն ուղևորաց համար. այս իջևաններս քառակուսի շէնք մի է մէջ տեղն գաւիթ կենդանեաց համար, ուր ոչ ուտելու կերակուր կայ և ոչ պէտք եղած կահկարասիք։

4 Ասորեաց մէջ ոչ ոք առանձին ճանապարհորդէ, այլ հարկ է կարաւանի սպասել՝ որ մի և նոյն կողմն գնացող ուղևորներէ կազմի. այս զգուշութիւնս հարկաւոր է Ասորեաց և Պաղեստինու մէջ աւազակաց վախին համար (Վոլնէյ Ուղևորութիւն յԱսորիս)։

5 Խաղաղութիւն ընդ ձեզ ողջունատրութեան ձևն՝ զոր Քրիստոս շատ անգամ գործածեր՝ բոլոր արևելեայց մէջ նոյնպէս գործածուի։

6 Եղիսաբեթի ողջունին մէջ ուր հայերէնն ասէ Երանի որ հաւատացեր իբրև եղիցի են՝ յունին և լտ. մէջ սա է Երանի է որ հաւատացեր են։

7 Այս գիւղի տունս սակաւ մի հեռի է յԱյինէ բարեբեր և զուարճալի հովտի մի ծայրն՝ որ հիմա Ս. Յովհաննու գիւղին պարտէզն է. հոն 'ի պատիւ Այցելութեան նուիրեալ եկեղեցի մի շինուած էր՝ որ հիմա աւերակ է (Ճանապարհորդութիւնք Յէսուսի Քրիստոսի)։

8 Այս թուփս ըստ բուսաբանից կոչի cyclamen odoriferasns (Հերպլոյ Մատենադարան արևել. հտ. Բ)։

9 Այնչափ առատահոս է աղբիւրս որ բոլոր հովիտն ոռոգանէ և պարարտացնէ. և աւանդութեամբ ասի թէ Մարիամ ըստէպ այց ելանէր աղբերս՝ որ Յեսուայ տան Նեփտովա անուանէր, իսկ հիմա Աղբիւր Կուսին կոչի

10 Երբայեցիք շատ ախորժէին պարտէզներու մէջ և ծառերու և սարփինայից ներքև իրենց կերակուրն ուտել, որ յոյժ բնական է ջերմ աշխարհներու մէջ օդին զովութիւնն վայելելու համար ( Ֆլէօրի. Կէնցող Իսրայէլացոց )։

11 Եմեն բնակող հրեայք մինչև ցայժմ նոյն կճեայ թակոյկներն գործածեն ( Նայպուհր, Ուղևորութիւն յԱրաբիա )։

12 Զաքարիա իջանէր 'ի տանէն Աբդեայ ութերորդ քահանայական գերդաստանին նահապետ այս հին ազգատոհմերէս սակաւք մնացել էին, որովհետև գերութենէ ետև շատերն Պարսկաստան հաստատուեցան։ Իսկ Եղիսաբէթ յԱհարոնէ և 'ի Դաւթայ իջանէր ( Հ. Վալվէրտէ Վարք Յիսուսի Քրիստոսի հտ. Ա )։ Հրեայք զՅովհաննէս Մկրտիչ վերագասէին քան ըզՔրիստոս՝ նախ բոլոր կեանքն անապատի մէջ անցուցանելուն համար, և երկրորդ զի մեծ քահանայի մի զաւակ էր. ընդհակառակն զՔրիստոս յաղքատ մօրէ ծնանելուն՝ հասարակ մարդ մի համարէին ( Ոսկեբերան Ճռ. Մատթ. ճառ ժԲ )։ — Մահմետականք ալ մեծապէս պատուեն զՅովհաննէս Մկրտիչ զոր կոչեն որդի Զաքարիայ հողջէբի Եահեա պէն Զաքարիա. Սաադի պարսիկ բանաստեղծն իր Կիւլիստան քերթուածոյն մէջ յիշատակէ զգերեզման Յհ. Մկրտչի որ Դամասկոսի մզկիթին մէջ կը պատուէր, և ուր որ ինքն ալ աղօթել է, և յիշէ թէ Արաբացւոց թագաւոր մի հոն ուխտի եկել է։ Աբտալմէլէք խալիֆայն այս եկեղեցին՝ 'ի քրիստոնէից գնել ուզելով, երբոր չեն ուզած տալ 4000 դենարի՝ բռնի յափշտակել է ( Հէրպլօ )։

13 Որոգինեսի և սուրբ Բարսղի, Գրիգորի Նիւսացւոյ և Կիւրղի վկայութեամբ հաստատեալ աւանդութիւն մի ասէ՝ թէ Մարիամ յետ ծնանելոյ զՓրկիչն՝ տաճարին մէջ կուսանաց կարգն անցնելով քահանայք ուզել են զինքն դուրս հանել. բայց Զաքարիա դէմ դնելով նորա միշտ կոյս լինելն ցուցանելուն համար՝ քահանայք սպանել են զինքն։ Այլ որչափ ալ յարգի են այս վկայութիւնքս, սակայն իրն մեզ տարակուսական երևի, և կարծեմք թէ Յհ. Մկրտչի հայրն Զաքարիա՝ շփոթած են ուրիշ մի հետ որ է Զաքարիա որդւոյ Բարաքեայ զորմէ ասէ աւետարանն սպանեալ ընդ մէջ տաճարին և սեղանոյ։ Այսու ամենայնիւ արաբացիք այս աւանդութիւնս ալ պահած են, և յաւելուն թէ զԶաքարիա հին բևեկնի ծառոյ բունին մէջ գնելով ծառին հետ միասին սղոցել են ( Հէրպլօ հտ. Բ )։

14 Հայրն Վալվէրտէ ևս յայս կարծիս է թէ Սուրբ կոյսն մնաց 'ի տան Զաքարիայ մինչև ցծնունդ Յհ. Մկրտչի, և Մեսիային նախընթաց կարապետն գրկելէն և օրհնելէն ետև՝ թողուց իւր ազգականներն և դարձաւ 'ի տուն իւր։

# ԳԼՈՒԽ Ժ.

## Կուսամայրն

Մարիամ դարձ արարեալ 'ի Նազարէթ առանց դժուարութեան՝ Նորէն ժողովրդական կենաց ձեռն էարկ՝ իւր առաջի գործերն յառաջ տանելով՝ զորս առ վայր մի ստիպեալ էր թողուլ, այն աշնուական տունն եղած ժամանակ՝ ուստի սակաւ մի յառաջ մեկնեալ էր։ Նորէն դարձաւ եղև ինքն իր աղքատիկ տան մանկամարդ ուղղիչն արթուն և փութաջան, բաւական ժամանակ ալ գտանելով աշխատութեանց, աղօթից, սուրբ գրոց ընթերցման, բոլոր իր կենցաղավարութիւնն երկնից հետ լինելով, այնպէս որ ճիշտ իրեն համար զրուցուած երևին սաղմոսերգուին այն գեղեցիկ և իմաստուն խօսքերն. «Ամենայն փառք դստեր թագաւորի 'ի ներքոյ»։ Եւ սակայն 'ի միոյ կողմանէ իւր կուսական յղութիւնն յառաջանալով՝ Յովսէփ մեծ մտատանջութեան մէջ անկաւ. խայթիչ տարակոյս ցաւագին տագնապ նահապետին վսեմ և արդար հոգին տանջէին։ Զառաջինն ինքն իր աչաց ոչ հաւատայր, և այլ աւելի արդար համարէր իւր զգայարանաց վկայութեան վերայ տարակուսիլ՝ քան թէ իւր հարսին մաքրութեանն, որ անբծութեան և սրբութեան ազանչելիք թուէր իրեն. և անձամբ անձին հարցանէր թէ կարելի՞ է արդեօք որ այսպիսի պարկեշտ ներանձնացեալ բարեպաշտ կին մի՝ որոյ գեղեցկութիւնն անդամ ողջախոհ ևեթ խորհուրդս ազդէր, և որոյ սովորական իսկ գործերուն վերայ երկնային կնիք մի դըրոշմեալ երևէր, ապականութեան տեղիք տուած լի-

ցի և կեղտ բերած իր անուանն և կենաց՝ որ զինքն իբրև սուրբ և անարատ ընկալեալ էր իւր տունն։ Այս բանս կարելի չէ, ասէր Յովսէփ, սատանայի թելադրութիւն է, և ջանայր հայհոյութեան պէս մտքէն դուրս հանել։ Բայց Մարիամու վիճակն երթալով յայտնի լինէր, և ինչպէս ասէ Աւետարանն գտաւ յղացեալ այսինքն թէ բոլոր Նազարէթ իմացաւ նորա ծոցւոր լինելն. և Յովսեփայ ազգականներն որ իրին էութիւնն ոչ գիտէին, և թէ որպիսի սուրբ կապանօք միացեալ էին այն երկու ամուսինք՝ միամտաբար և պարզմտութեամբ բարեմաղթութիւններ առնէին նմա և ուրախակից լինէին. և խեղճ մարդն ալ պարտաւորէր այս անգութ ուրախակցութիւններս ընդունելու առանց այլայլութեան. և ոչքին եղեն պատճառ որ փայլական պէս յանկարծ իր միտքն ալ լուսաւորեցաւ՝ թէ ապա իր տեսածն ալ խաբէական երևոյթ մի չէր։ Ուրեմն ինչ պէտք էր առնել. շնացեալ կին մի իւր քովն պահելն՝ օրինաց դէմ մեղանչել էր և իր անձին անարգութիւն, որովհետև Սողոմոն ալ ասէր «Ով որ շնացեալ կինն իր քովն պահէ՝ յիմար է և անմիտ»։ Արդեօք արձակելո՞ւ էր զնա՝ առանց ճշմարիտ պատճառն յառաջ բերելու. բայց նոյն իսկ արձակումն միայն՝ մեծ նախատինք լինէր Մարիամու որ յղի էր, և ոչ ոք պիտի հաւատայր՝ թէ Յովսեփայ պէս պարկեշտ երկիւղած և խստակրօն մարդ մի առանց ծանր պատճառ ունելու արձկած լիցի իր կինն՝ յարգանդի կրած զաւակին հետ։ Ապա ո՞րն էր աս բաւղէս ելնելու ճարն՝ ուր ամեն դիէ ընդառաջ ելանէին խայտառակութիւն և մահ։ Յովսէփ ոչ գիտէր թէ ո՞ր կողմն դառնայ, և վերջին վհատութեան մէջ անկեալ մնացել էր։

Անշուշտ սոյն ատենս Սուրբ Կոյսն ինքզինք բարեբաղդ համարած է՝ աղքատ արուեստաւորի մի հետ ամուսնանալուն համար. վասն զի եթէ ուրիշ մի լինէր

իւր այլոն՝ անտարակոյս եղերական մահուամբ մեռա-
նէր և յիշատակն անարգուէր. որովհետև հրեայք
մոլեգին վրէժխնդիր էին իրենց պատուոյն և նա-
խանձու զայրոյթն սարսափելի էր, որպէս ցուցա-
նեն Դինայի, Թամարայ և վերջերն անուանի Մա-
րիամնայի դէպքն. «Խիստ իբրև զդժոխս նախանձ,
ասէր Սողոմոն՝ որ լաւ ճանաչէր իր հպատակ ժողո-
վուրդն, և չի է նախանձու սիրտ առն նորա»։ Ցիրաւի
Յովսէփ եղբայրական զօդիւ միացած լինելուն համար
իւր մանկամարդ ամուսնոյն հետ՝ կրից զայրոյթն և
նախանձու մոլեգնութիւնն հեռի էին 'ի նմանէ, բայց
ուր թողումք իսրայելացւոյ մի պատիւն և հօր մի
կսկիծանքն և անգութ կերպով խաբուած լինելու ըզ-
գացմունքն՝ որ գանձ կարծածն անարգ քան մի լի-
նելն տեսանէ. ուր թողումք մանաւանդ Աստուծոյ
բարձրելոյ սաստկապահանջ հրամանն որ օրէնսդիր
մարգարէին բերնովը գոչէր. Կինն չնացեալ մահու
մեռցի։ Ահա այսոր համար է որ Յովսէփ հազար տե-
սակ կարծեաց մէջ ծփեալ տատանէր. և բիւր ան-
գամ իր կեանքն զոհելու պատրաստ էր՝ եթէ Դա-
նիէլ մի ելնէր և ասէր իրեն «կին քոյ այդ անբիծ է
և սուրբ». բայց մարգարէ մի ոչ գոյր այս բանս ի-
րեն վստահացնող, և Մարիամ ալ ևս բան մի ոչ ա-
սէր նմա։

Իսկ Յաւիտենականն յիւր աստեղազարդ գահոյ-
ից՝ հաճութեամբ հայէր այս արդարոյս վերայ՝ զոր
ինքն իսկ այն խիստ փորձին մէջ ձգել էր՝ յառաջ քան
զբարձրացուցանելն զնա յանճառելի պատիւ իւր
ներկայացուցիչն լինելու 'ի վերայ երկրի. և հրեշ-
տակք ակնկառոյց 'ի վերայ տանն Նազարէթայ ան-
համբեր սպասէին տեսանել զվախճան այս ներքին
կռուոյս՝ յորում պարտք և վսեմագոյն զգացմունք
հոգւոյն մրցէին ընդ միմեանս։ Վերջապէս նահա-
պետն այնպիսի վսեմ և դիւցազնական որոշում մի

տրար իր մտաց մէջ՝ որ զինքն գրեթէ հրեշտակաց թա-
գուհւոյն բարձրութեանն հաւասարեց։ Միտքն դրու-
զոհելու իւր պատիւն, իւր անարատ քաղաքավարու-
թեան ստացած համարումն, իւր ձեռքն ունեցած
միջոցներն՝ որովք իւր հոգէպահիկ առօրեայ հացն
ճարէր, և իւր ծննդեան գաւառին օդն՝ որ այնչափ
քաղցր է մանաւանդ երբ երթալով գերեզմանի մօտի
մարդս, զոհելու տեսեմ այս ամեն բան՝ որպէս զի պա-
հէ իւր ամուսնոյն համբաւն՝ որ զինքն արդարացնե-
լու խօսք մի անգամ ոչ հանէր իր բերնէն՝ երբ ար-
տաքին երևոյթքն այնպէս անգթաբար զինքն դա-
տապարտէին։ Յովսեփայ մի միայն ճամբայ մնայր
թողլու զՄարիամ առանց մատնելու զնա՝ իւր ընտա-
նեաց դատաքննութենէն ալ աղատելով զինքն որոյ
վերջն կարէր մահաբեր լինել նմա. և այս ճամբայս էր
թողուլ հայրենիքն և ինքզինքն տարագրելով երթալ
մեռանիլ 'ի տար աշխարհ, և իւր վերայ առնուլ ազ-
գականաց ատելութիւնն՝ այնպիսի ամուսին մի երե-
սի վերայ թողլուն համար։ Պարտութիւններ կան որ
քան զյայլթութիւն փառաւոր են, և կան այնպիսի
ցաւեր՝ որ եթէ մարդ համբերութեամբ կրէ՝ Աս-
տուած մարտիրոսաց հաւասար պսակօք վարձատրէ
զնոսին. Կուսին փեսին գաղանի զոհն ալ սոցա կար-
գէն էր։ Իւր պարտքն խոնարհութեան հետ միացնե-
լու համար՝ յանձն առաւ յառաջագոյն այն Նախա-
տինքն զորս պիտի ընդունէր յիւր ազգականներէն
իբրև վատ և դաժան մարդ առ կին իւր, իբրև հայր
անգութ առ որդին, իբրև մարդ անխիղճ և անհա-
ւատ. յանձին կալաւ իւր մերձաւորաց անարգանքն
և Մարեմայ ազգականաց մահուչափ ատելութիւնն.
և որոշեց իւր իսկ ձեռօքն իւր բարի համբաւոյն պը-
սակն իւր գլխէն խլել և արկանել յոտս Այնորիկ՝
զոր թեթև յանդիմանութեամբ մի եւս ոչ ուզէր վըշ-
տացնել՝ հայրական գորովալից սիրով զնա սիրելուն
համար։

Ոսկեբերան ոչ յոգի ոչ կշտանայ Սրբոյն Յովսեփայ այս գեղեցիկ և ազնուական վարմունքին վերայ զարմանալէն և հիանալով ասէ. « Հարկ իսկ էր որ Փըրկչին շնորհքն մերձեցած ժամանակ՝ աշխարհիս վերայ մինչև այն ատեն երևցած կատարելութեանց՝ աւելի ևս կատարելագունին նշաններն տեսնուէին։ Ինչպէս որ արևն ելած ժամանակ արևելք պայծառ լուսով լուսաւորին մինչդեռ տակաւին նորա ճառագայթներն հորիզոնին վերայ երևցած չեն, այսպէս ևս Յիսուս Քրիստոս 'ի կուսական արգանդէ ծագելէն յառաջ՝ դեռ չծնած զաշխարհս լուսաւորէր։ Եւ ահա այսոր համար էր որ իր աստուածային ծննդենէն յառաջ՝ մարգարէք ուրախութեամբ ցնծային յարգանդի մօր իւրեանց, կանայք մարգարէանան, և Յովսէփ գերմարդկային առաքինութիւն ցուցանէ »։

Մեք այս մասին մէջ աւելի Ոսկեբերան հայրապետի մտաց հետևիմք՝ քան թէ Սրբոյն Բեռնարդոսի՝ որ համարի թէ Յովսէփ անձամբ անձին հասու լինելով Յիսուսի Քրիստոսի ծննդեան խորհրդոյն, և տեսանելով զՄարիամ յղի, իր առ նա ունեցած խորին յարգութեամբն՝ ամենևին ոչ տարակուսեցաւ թէ նա ինքն էր յԵսայիայ նախաձայնեալ հրաշալի կոյսն։ « Այս այսպէս հաւատալով ասէ նոյն Սուրբ վարդապետն, ուզեց հեռանալ 'ի Կուսէն 'ի խոնարհութենէ ստիպեալ, որպէս երբեմն 'ի նոյն պատճառէ յորդորեալ ասաց Պետրոս առ Տէրն մեր. Ի բաց գնա յինէն Տէր, զի այր մեղաւոր եմ ես. ուստի և Սուրբ Յովսէփ որ Պետրոսի պէս խոնարհ էր՝ ուզեց թողուլ զնա և հեռանալ, հաստատապէս հաւատալով թէ նորա յարգանդի կրածն ինքն իսկ Փրկիչն էր աշխարհի »։

Այս մեկնաբանութիւնս՝ որ յոյժ բարեպաշտական է և արժանաւոր այն հռչակաւոր վարդապետին եկեղեցւոյ՝ որ իրեն առ Տիրամայրն ունեցած սիրոյն

և եռանդեանն համար Անձնանուէր սպասաւոր Մարիամու անուանն սատացաւ, աւելի յարմար է միջին դարու ներանձնական գաղափարաց՝ քան թէ եբրայական սովորութեանց. որ և Աւետարանի խօսքն ճիշդ քննութեան առնելով անյարմար լինելն յայտնի երևի: Վասն զի Աւետարանի այս հատուածս այնչափ պարզ է՝ որ շատ հնարք պէտք է ՚ի գործ ածել զայն մթագնելու համար: Յովսեփայ զՄարիամ թողլու խորհուրդն՝ այն ՚ի մեզ եղած բնական երկիւղի զգացմունքէն յառաջ ոչ գայր՝ որ յետս մղէ զմեզ սրբազան նիւթոյ մի մօտեցած ատեննիս, այլ պատճառէր կարեկցութեան և պարտուց գաղափարէն: Իւր խիղճն ոչ ներէ նմա իւր ձորձովն ծածկելու զյանցանս կնոջն՝ զոր ինքն յանցաւոր հաւատայ, զյանցանս ասեմ որ արժանի էր մահուան պատուհասի առ եբրայեցիս. բայց ինքն արդար բարի և գթած լինելով ոչ կամի առակել զնա:

Եթէ Սրբոյն Բեռնարդոսի մտօքն առնումք՝ հրեշտակին խօսքն անիմաստ և պատրողական լինէր՝ որ անկարելի է. « Մի՛ երկնչիր առնուլ առ քեզ զՄարիամ կին քո, ասէ բանբերն Յաւիտենականին, զոր ոչ բնաւ բծաւորեաց արատ մարդկային. քանզի որ ՚ի նմայն ծնեալ է ՚ի Հոգւոյն սրբոյ է: Այս լսելով Յովսէփ՝ աւելի ևս իր անարժանութիւնն պէտք չէր ցուցանել, ստուգապէս իմանալով որ Մարիամ յերաւի կրէր յարգանդին զԱրարիչ համագոյից: Պէտք չէր այլ առաւել բացատրել իւր խիղճն, որ այն խօսքն լսելով աւելի ևս զօրանալոց էր: Պէտք չէր խնդրել որ երկնային պատգամաւորն առ ինքն մատուցած փառաւոր բաժակն՝ քան զինքն աւելի արժանաւորագոյն մահացուի մի տայ. Այլ ոչ, բնաւ այսպիսի բան մի ոչ խնդրէ. այլ մանաւանդ անդէն և անդ իւր մտաց մրրիկն դադարի, իւր հոգին խաղաղի, և իւր անձին մէջ տիրէ այն քաղցր և անխռով անդորրութիւնն որ յաջորդէ սաստիկ մրրկաց:

Այս մեր կարծեացս տարակուսութիւն բերեն ոմանք ասելով թէ Մեսիայի համար եղած գուշակութիւնները ծանօթ լինելով Յովսեփայ՝ որպէս և ամենայն հրէից, ինքն պէտք էր գիտել թէ Մեսիայի գալու ժամանակն մօտ է. և Սրբոյ Կուսին անբծութեան ալ տեղեակ գոլով՝ զինքն այն վիճակին մէջ տեսնելուն պէս՝ պէտք էր իմանալ թէ նա յարգանդի իւրում կրէ զՓրկիչն աշխարհի։ — Սակայն գիտելու է որ փրկագործութեան խորհրդոյն վերայ եղած մարգարէութիւններին հասկնալն այնչափ դիւրին բան չէր՝ ինչպէս կարծուի։ Վասն զի ժողովրդին հրէից՝ կամ այն է որ Եսայեայ՝ Էմմանուէլի փառաւոր թագաւորութեան վրայ գրած այլաբանական նկարագրութիւնն ծուռ իմանալով, և կամ իրենց շահասէր խորհուրդներէն խաբուած՝ այն ամէն գուշակութիւններն ժամանակաւոր և աշխարհային մեծութեանց վերայ մեկնէր. որով և ժողովուրդն ալ որ արդէն խստապարանոց ազգ մի էր՝ սխալ ճամբու մի մէջ մտած լինելով՝ ոչ ևս անտի յետս դառնալ ախորժէր. որով և իրենց մտօքն Աստուծոյ օծեալն կամ առաքեալն և կամ պարզապէս խօսելով Մեսիայն՝ ցանկալին ամենայն ազանց՝ պիտի լինէր օրէնսդիր, զօրաւոր հզօր բանակաց և հզօր և ահարկու թագաւոր մի որպէս զՍողոմոն։ Նոյն իսկ առաքեալք երկար ժամանակ այս սխալ կարծեաց մէջ էին, և իրենց մտաց հակառակ երևէր տեսանել թագաւոր մի խոնարհ և անփառունակ՝ աննշան և խաղաղ իշխանութեամբ միայն պերճացեալ. և նոյն իսկ աստուածասպան քաղաքն մըտած ատեն ևս՝ ուր իրենց տէրն մտանէր 'ի մահ երթալու համար՝ իրենք դեռ մեծապայծառ թագաւորութեան յուսով և նշուլագեղ ոսկեղինիկ երազներով իրենք զիրենք խաբէին, և նորա յաջ և յահեակ կողմն նստելու փառքն իրարու ձեռքէն յափշտակել ջանային. և Տէրն մեր սակաւ աշխատանք չկրեց նոցա

այս ախտալ կարծիքն ուղղելու և պատրողական միայն բժշկելու՝ որ միշտ հակամէտ երևութական և աշխարհային իրաց անձուկ սահմանին մէջ Թարթափին՝ որոց վարժած էին դպրաց և փարիսեցւոց փառաւոր երազատեսութիւններովն և վարդապետութիւններովն որ անմիտ աւանդութեանց վերայ հիմնեալ էին։

Արդ եթէ առաքեալք՝ այն երկնազգեցիկ մարդիկն՝ որ հիմունք պիտի լինէին քրիստոնէութեան, և դիշեր ցերեկ Մեսիային հետ լինելով նորա այնչափ հրաշագործութիւններն տեսնելով հանդերձ այնչափ դժուարութիւն կրէին իրենց 'ի մանկութենէ առած նախապաշարմունքն 'ի բաց թողլու, ինչպէս կարելի էր Յովսեփայ ինքն իրեն և առանց երկնային օժանդակութեան այս մտածմունքս իր մտքէն հանել։ Արուեստաւորին հագած խոշոր ըղգեստն ամենևին նմանութիւն չունէր Յուդայի թագաւորին ծիրանեացն. և մտքէն անգամ ոչ անցանէր թէ Մեսիայն հասարակ ժողովրդեան դասէն պիտի ծնանի. իսկ Գալիլեայի գալով քան զամենեսին առաւել յետին գաւառն էր, և ոչ ոք այնոր վերայ մտածէր. « Քննեա՛ և տե՛ս, զի մարգարէ 'ի Գալիլեէ ոչ յառնէ » ասէին օրինաց վարդապետք առ աշակերտս Քրիստոսի։ Իրաւ մարգարէք ևս յանուանէ զԲեթղեհէմ Յուդայ նշանակէին Մեսիայի ծննդեան տեղն որ Տուն հացի նշանակէ. և րաբունիք մեկնիչք գրոց քան զմարգարէս աւելի յառաջ երթալով նոյն իսկ այն քաղքին թաղն ևս նշանակէին՝ ուր պիտի ծնանէր [1], բայց Յովսէփ այնչափ խոնարհ էր որ և ոչ մտքէն անցուցանէր թէ այս բարեբաղդութիւնս իրեն պիտի հանդիպի, և իր խեղճ տնակն պիտի լինի այն գերապանծ Թագաւորին պալատն. Մարեմայ խորհրդական լռութենէն ալ բան մի ոչ կարէր գուշակել [2]։

Իսկ Յովսեփայ այն խորհուրդն որ մտածէր Կոյան

իւր ընտանեաց քովը գործուցանել՝ պարզապէս իր ունեցած յարգանաց համար՝ որպէս ասեն ոմանք յիմաստուն աստուածաբանից Սրբոյն Բեռնարդոսի կարծեացն հետեւելով, անկարելի բան էր հրէից ազգին նկատմամբ՝ որ սաստիկ կասկածոտ էր կանանց պատուոյն վերայ։ Մանաւանդ որ Մարիամ որբ լինելով անմիջական հայր և մայր չունէր, այլ իր մերձաւոր ազգականաց իշխանութեան ներքև էր՝ որք ամենքն ալ խաղաղասէր մարդիկ չէին, և շատերն ալ արդէն տհաճած էին իրենց մանկահասակ ազգականին՝ անծանօթ նազովրացւոյ մի հետ ամուսնանալուն համար. որով հաւանական էր թէ գոհ պիտի չլինէին Յովսէփայ բերած պատճառներուն, և դիւրաւ պիտի չհաւատային թէ յարգանդի կուսին յղացեալն ինքն իսկ Մեսիա Թագաւորն է, և շատ ապացոյցեր պիտի բնտռէին այս խօսքիս ճշմարտութեանը հաւատալու համար։ Եւ այս պատճառաւ խեղճ Յովսէփն եկակոչ պիտի ամէնէն ծերոց ատեանին առջևն ելնելու՝ որպէս զի զինքն ստիպեն այսօրինակ վարմանց բուն պատճառն ցուցանելու. որովհետև պարզ ապահարզանի կամ կինն արձակելու խնդիր մի չէր իրն, այլ մէջտեղն զաւակ մի ալ կայր որ մօտ էր ծնանելու 'ի Մարեմայ՝ որ ազնուական տոհմէ էր և անյարմար կերպով ամուսնացած, ինչպէս որ մտածէին նոքա որք ըստ Սրբոյն Հերոնիմոսի հետամուտ լեալ էին ամուսնանալ Յովակիմայ ժառանգ գեղեցիկ և մատաղ օրիորդին հետ։

Այս ամէն հարցափորձէս երկու հետևանք պիտի ելնէր. կամ այն էր որ Յովսէփ պիտի լռէր և իւր երկիւղածութեան պատճառն պիտի չյայտնէր՝ և այն ատեն վճիռ պիտի ելնէր իրեն նորէն իւր կինն առնելու, և յետ այնորիկ ոչ ևս բաժնուելու [3]. և կամ պիտի ստիպուէր երդմամբ հաստատելու թէ այն զաւակն յինքնէ չէ. և այնու ծնանելու մանուկն իւր

հօրէն չճանաչուելուն համար՝ անյարմար լինէր որ և է պաշտօնի, և իւր ծնունդն անհարազատ սեպուելով ա՛լ ևս չկարէր մտանել ոչ յազգային ժողովս, ոչ 'ի հասարակաց ուսումնարանս, ոչ 'ի տաճարն և ոչ 'ի ժողովարանն։ Եւ նոյն իսկ իւր յաջորդներն ալ չկարէին վայելել զառանձնաշնորհութիւնս հրէից՝ մինչև 'ի տասներորդ սերունդն՝ այն իրենց վերայ գրոշմեալ նախատանաց պատճառաւ. և ինքն հնդիկ փարիայի մի պէս՝ որ պիղծ ցեղ մի համարի առ նոսա՝ տուն և տեղի և իրաւունք ոչ կարէր ունել, և իւր մօրն տուեալ դատակնիքն իր և իր յաջորդաց ճակտին վերայ զարնուած խարանադրոշմ մի լինէր՝ կայենի նման։ Բայց ա՛լ աւելի հաւանական է՝ որ այս ասացածներէս և ոչ մին պիտի հանդիպէր. վասն զի իր ազգատոհմն Դաւթի վայրագ յաջորդներն՝ ա՛լ լաւագոյն պիտի սեպէին իրենց ձեռօքն իսկ դաշոյնի հարուածով մի զկոյսն սպանանել քան թէ այնպիսի նախատալից անարգանօք իրենց ցեղին ազնուականութիւնն արատաւորել։ Այսօրինակ վրէժխնդրութեան օրինակներ ստէպ հանդիպած են, և այսօր իսկ հանդիպին Հրէաստանի նաև Արաբիոյ մէջ [4]։

Ուստի Յովսէփ զգօն և գթասիրտ լինելով այս երկու սրոց մէջ չձգեց զինքն՝ տեսնելով որ վեհանձնութիւնն լաւագոյն ճանապարհն էր։ Այսոր համար միտքն դրաւ թողուլ լքանել զհայրենիս և զամուսինն սիրելի բայց կասկածելի, որ իրենց սուրբ հարսանեացմէ ետև՝ իրեն այնչափ քաղցր և երջանիկ ընծայել էր զկեանս աշխարհի։ Երբ բաժնուելու վրայ էր՝ և իւր մնացեալ սենեակն առանձնացած՝ անհանգիստ քուն մի ննջէր՝ հրեշտակ Տեառն երևեցաւ նմա և ասաց. « Յովսէփ որդի Դաւթի մի երկնչիր առնուլ առ քեզ զՄարիամ կին քո, քանզի որ 'ի նմայն ծնեալ է 'ի Հոգւոյն սրբոյ է։ Ծնցի որդի, և կոչեսցես զանուն նորա Յիսուս. զի նա փրկեսցէ զժողովուրդ իւր 'ի մեղաց իւրեանց »։

Եւ զարթուցեալ Յովսէփ 'ի քնոյ անտի՝ երկիր եպագ անհասանելի խորհրդոց աստուածային տեսչութեանն. քանզի հրեշտակական տեսիլն փարատել էր 'ի մտաց նորա զամենայն խէթ կասկածանաց և զամենայն տարակոյս. և այնուհետև հայէր 'ի Մարիամ որպէս 'ի Մայր հանդերձելոյ Փրկչին որ ծնանելոց էր 'ի նմանէ, և առեալ յինքն զկինն՝ ոչ ևս այլ խորհեցաւ մեկնիլ 'ի նմանէ:

Սուրբ Յովհան Ոսկեբերան հարցանէ թէ ինչ պատճառաւ հրեշտակ Ամենակալի 'ի տեսլեան մանաւանդ երևեցաւ Յովսեփայ յերազի, քան թէ յայտնապէս յարթնութեան նորա՝ որպէս երևեցաւ հովուաց, Զաքարիայի և Կուսին, և պատասխանէ ասելով. « Վասն զի Յովսեփայ հաւատքն մեծ էր և չունէր պէտս այլ աւելի պայծառ յայտնութեան. Կուսին յայտնապէս երևելուն պատճառն այն էր՝ որ առ Զաքարիա զրուցածներէն աւելի մեծ և անհաւատալի լուրեր ունելով իրեն տալու՝ հարկ էր որ կատարուելէն յառաջ ինքն իմանայր զնոսին աւելի հանդիսաւոր աւետեօք և շքեղ յայտնութեամբ: Իսկ հովիւք այլ աւելի պայծառ յայտնութեան կարօտէին՝ վասն զի տգէտ և ախմար մարդիկ էին: Գալով Յովսեփայ՝ որ Մարիամու յղի լինելն տեսնելով սրտամաշուք հոգերու և կասկածանաց մէջ անկեալ էր, և փափաքէր որ ձեռք առուող մի գտանիցի իրեն տըրտմութիւնն յուրախութիւն փոխարկելու, այնոր համար հրեշտակին յայտնութիւնն ցնծութեամբ ընկալաւ...: Նախախնամութեան այս բռնած ճամբայն կարի իմաստութեամբ էր. վասն զի այսու Յովսեփայ առաքինութեան գերազանցութիւնն յայտնի եղև, և աւետարանապատում վիպաց ստուգութիւնն այլ աւելի պայծառ երևեցաւ և հաւատալի ընծայեցաւ՝ որք ցուցանեն մեզ զայրն զայն արդար՝ 'ի նոյն յուզմունս պաշարեալ՝ զորս պիտի զգայր որ և իցէ մարդ 'ի նմանօրինակ դէպս [Ծ]:

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ Ժ. ԳԼԽՈՅ

1 Ուստի՞ գայ Մեսիայն. — Ցարքայական քաղաքէ Բեթղե-հեմի Յուդայ. — Ո՞ւր են ծնողք նորա. — Բեթղեհեմի Պերճ-Արքայ կոչուած թաղին մէջ (Թագաւոր Երուսաղէմ):

2 Բայց թէ ինչու համար Մարիամ այլ բան մի ոչ ասէր Յովսե-փայ տարակուսոյն լուծելու համար. տես 'ի Մեկնութեան Մատ-թէի Մխիթարայ Աբբահօր էջ 19:

3 Սահմանադրութիւնք Մովս. հտ Բ. գիրք Է:

4 Պատմէ Նայպուհր թէ Եմենի արձանոցի մի մէջ արաբացի մի իր աղջկան գանկին վերայ թեթև կասկածի խօսք մի լսելով տուն դառնալն և իր զաւակն զարնել սպաննելն մի տարր: — Նոյնպիսի դիպուած մի պատմէ Ժերամպ Բեթղեհեմացի այրի կնոջ մի վերայ զոր իր հայրն և եղբարքն բռնի դուրս քաշելով եկեղեցիէն հրապարակին մէջ սպանին ծանր կասկածի մի համար:

5 Ոսկեբերան ճառ Դ. տես եւս 'ի վարս Յիսուսի Քրիստոսի 'ի Վալժէրանէ, հտ Ա:

# ԳԼՈՒԽ ԺԱ.

## Մարիամ 'ի Բեթղեհեմ.

Սակայն արդէն նոյն ժամանակ ամբարիշտ պետութիւնն [1] իւր արծուէգրօշներն տնկեալ էր աշխարհիս մինչև վերջին սահմաններն, և հռոմայեցիք բոլոր արևելից երկիրն իբրև 'ի ցանցի բռնած էին. սարմատացիք իրենց անապատներուն մէջ դողային, և Ասիոյ հեռաւորագոյն ժողովուրդք՝ ինչպէս խաղաղասէր սինէացիք՝ հանդիսաւոր դեսպաններ ղրկէին Կեսարու՝ նորա հզօր բարեկամութիւնն հայցելով։ Արդէն Եգիպտոս և Ասորիք հռոմէական գաւառներ սեպուած էին, և Հրէից Թագաւորն՝ ոսկւոյ գնով նոցա դիւրափոփոխ պաշտպանութիւնն գնելով, ուրիշ բան չէր՝ բայց Թագազարդ գերի մի. Ժամանակն հասած էր, Մեսիայի նկատմամբ եղած գուշակութիւններն կատարուելու վերայ էին. հռովմէական զօրութիւնն 'ի վերջին ծայր բարձրութեան հասած էր, և ըստ հռչակաւոր մարգարէութեան Յակոբայ՝ գաւազանն իշխանութեան Յուդայի ձեռքէն ելած էր, որովհետև այն Թագաւորութեան ստուերն ալ որ տակաւին տևէր 'ի քաղաքն սուրբ՝ ազգին ձեռքն չէր։ Եւ ահա այն ատենն էր որ ել հրաման յԱւգոստոս կայսերէ աշխարհագիր առնել ընդ ամենայն տիեզերս՝ այն ժողովրդոց որ իրեն տէրութեան ներքև էին։ Այս աշխարհահամարս որ աւելի կատարեալ էր քան զայն որ եղած էր 'ի վեցերորդ հիւպատոսութեան քեռորդւոյն Յուլիոսի կեսարու [2], ոչ միայն պիտի բովանդակէր մարդկանց թիւն, այլ և նոցա ստացուածքն, և երկիրներուն զանազան որակութիւններն. որ և պիտի լինէր հիմն նոր հարկապահանջութեանց և ըստ այնմ պիտի դրուէր հպատակութեան տուրքն [3]։

Հռոմէական գերահիւպատոսից վերայ պարտք դրուեցաւ՝ որ իւրաքանչիւրն իր գաւառին մէջ գործադրել տայ կայսերական հրամանն [4]։ Սեստիոս Սատուռնինոս Ասորեաց գերահիւպատոսն սկսաւ նախ 'ի Փիւնիկիոյ և 'ի Կելեսիրիոյ՝ որ ճոխ և մարդաշատ նահանգներ լինելուն՝ երկայն ժամանակաւ և ծանր աշխատութեամբ աւարտեցաւ. այս գործոյս գաղափար մի կարէ տալ մեզ՝ այն անգլիացւոց ծանօթագոյն գիրքն որ Doomesday-book կամ Արձանագրութիւն կալուածոց անուանի՝ զոր Աշխարհակալն Գուլիէլմոս առնել տուաւ Եւրոպիոյ մէջ բոլոր իւր պետութիւնն ստորագրել տալով, հռոմէական աշխարհագրէն հազար տարի ետքը։ Հռոմէական գաւառին հպատակ թագաւորութեանց՝ և 'ի նոցանէ կախեալ չորրորդապետութեանց աշխարհամարն՝ Կեսարու հրամանէն մինչ երեք տարի յետոյ աւարտեցաւ [5], և վերջապէս կարգն Բեթլեհեմի եկն՝ մինչ այն անմոռանալի ժամանակին ծննդեան Փրկչին. այնպէս որ Կեսար և իւր հրամանաց գործադիրք՝ առանց գիտելոյ հլու և կոյր գործիք եղեն աստուածային տեսչութեան, և հռոմայեցւոց ամբարտաւանութիւնն և ընչաքաղցութիւնն ձեռնտու լինէր կատարման մարգարէութեանց. վասն զի մարդիկ շարժին՝ բայց Աստուած է որ առաջնորդէ։

Երևի թէ ըստ հին սովորութեան՝ հրէայք իրենց անուանքն արձանագրէին տաճարին ըստ տանց և ըստ ցեղից։ Դաւիթ 'ի Բեթլեհէմ ծնեալ գոլով իր սերունդն իրենց ծննդեան քաղաքն համարէին զայն և խանձարուրք իրենց գերդաստանին, ուստի իրենց անունն և իրենց կալուածոց վիճակն ծանուցանելու համար՝ ըստ հրամանի կայսերական հրովարտակին, ամենքն հոն ժողովեցան։

Աշունն աւարտելու վերայ էր. հեղեղատք մեծ շառաչմամբ գահավիժէին ի խորս հովտաց, հիւսիսայ-

ին հովն փչէր բարձրաբերձ բեւեկնեաց մէջ, և երկինք մոխրագոյն ամպերով ծածկած՝ մօտերս ձիւն գուշակէին։ Հռոմայ թուականին 748ին 6-ամսուր և մութ առաւօտուն՝ Նազարեթացի մարդ մի ուղևորութեան պատրաստութեանց զբաղած երևէր՝ զոր ուշացնելն անշուշտ իր ձեռքն չէր, թէպէտ և ժամանակն ճամբորդութեան յարմար չէր, և իւր մանկամարդ ամուսինն ալ շատոնց 'ի վեր ծոցւոր էր, և զոր զգուշութեամբ զետեղեց հանգարտիկ և հեզուկ իշուն վերայ, որով ախորժին ճանապարհորդել սովորաբար կանայք յԱրևելս 7։ Թամբին մի կողմէն կախուած էր սիրայէ հիւսուած զամբիւղ մի՝ որոյ մէջն էր իրենց ճամբու պաշարն՝ արմաւ, պաղատիտ թզոյ, չամիչ և գարեղէն բլիթներ, և Ռամլայի հողէ փարչ մի աղբիւրէն կամ հորէն ջուր առնլոյ համար, իսկ միւս կողմէն եգիպտական տիկ մի։ Ուղևորն յուսն զարկաւ պայուսակ մի՝ որոյ մէջ քանի մի կտոր լաթեր կային, մէջքն գօտևորեց, այծենիէ չինուած վերարկուին մէջ պլլուեցաւ, և մի ձեռքն կոր ցուպ մի և միւսովն իշուկին պախուրցն բռնած՝ որոյ վերայ ալ մանկամարդ կինն հեծել էր՝ անկան ճամբայ, աղքատիկ տունն առանց պահապանի թողլով և Նազարէթի նեղ ճամբայներէն սկսան վար իջնել, և ամեն ծանօթք և դրացիք բարի ճանապարհ և յաջող դարձ մաղթէին և ասէին Երթայք խաղաղութեամբ։ Ձմերուան մշուշ առաւօտուն այսպէս ճամբայ ելնողներն Յուդայի թագաւորաց զարմէն և յաջորդներէն էին, Յովսէփ և Մարիամ՝ որ հեթանոս և օտարոտի իշխանի հրամանաւ երթային իրենց անծանօթ անունն գրել տալ՝ տէրութեան մէջ եղած փառաւորագոյն անուանց կարգն։

Այն խիստ եղանակին, մանաւանդ Պաղեստինու մէջ՝ այս ճանապարհորդութիւնս շատ նեղութիւն պատճառած է անշուշտ ուղևորաց, մանաւանդ Սըր-

բոյ Կուսին իր մինձակին նայելով, և սակայն ձեռք մի գանգատ մը չհանեց իր բերնէն. այս անգամ և փափկիկ մանկամարդս՝ կարիճ արտասու և վառեմ հագիր մի ունէր. Մեծութեան մէջ ոչ հպարտանայր, ուրախութեան մէջ իր չափն ապահէր, և դժբաղդութեան ալ լու-թեամբ համբերէր. Աղնիւ Մարթամ: Իսկ Յովսէփ որ խաղին խորհրդոյ մէջ ընկղմեալ նորա քովէն քալէր՝ հին պատգամաց վերայ մտածէր՝ որ չորս հազար տարիներէ 'ի վեր Փրկիչ մի խոստանային աշխարհի, և Բեթլեհեմի ճամբուն վերայ ուր երթային համայեց նոյն հրամանաւն՝ Միքեայի խօսքերն կարդար. «Եւ դու Բեթլեհեմ տուն Եփրաթայ սակաւաւոր, իցես լինել 'ի հազարաւորս Յուդայ. 'ի քէն ելցէ ինձ լինել իշխան Իսրայելի, և ելք նորա 'ի սկզբանէ աւուրց աշխարհի [8] »: Յետոյ դարձուցանելով զաչս իւր իր աղքատին ազնիւն վերայ և իւր պարկեշտ ամուսնոյն՝ որ իւր մինձակին համեմատ պարզ և վայելուչ հագուած էր, յիշէր Եսայեայ հռչակաւոր մարգարէութիւնն. «Իբրև զարմատ 'ի ծարաւուտ երկրէ՝ ոչ գոյր նորա տեսիլ և ոչ փառք... այլ տեսիլ նորա անարգ՝ նուազեալ քան զամենայն որդւոց մարդկան [9] ». և հոս սկսէր նախահայեան իմանալ Աստուծոյ խորհուրդներն իւր Որդւոյն վերայ:

Հինգ օր վաստակաբեկ ուղևորութենէն ետև՝ վերջապէս տեսին հեռուանց զԲեթլեհեմ գիւղաքաղաքն թագաւորաց՝ որ բարձր գրից վերայ շինուած էր՝ շուրջ պատեալ զուարթ բլուրներէ՝ որ այգեօք ձիթաստանեօք և կանաչ կաղնեաց պուրակօք զարդարեալ էին: Հոն երևեցան ազատաբարձ ժայռաւորներու մէջ նստած կանայք՝ ծիրանի վերարկուներու պլլուած և գլուխնին ճերմակ քօղերով ծածկած, երիտասարդ ձիաւորներ հագուած սպառազէն և սանձարձակ արաբացի նժոյգներու վերայ աշտանակեալ, ծերոց խումբ մի ալևոր և գեղեցիկ ջորիներու վերայ հե-

ծառ՝ որ ծանր իրարու հետ խօսելով՝ որպէս զհին դատաւորս Իսրայէլի՝ եղանէին 'ի քաղաքն Դուլթի, ուր արդէն օրերով յառաջ հասած էին խուռն բազմութիւն հրէից: Քաղաքորմէն դուրս քառակուսի չէնք մի երևէր՝ որոյ ձերմակ պատերն բլուրն ծածկող ձիթենեաց գունաթափ կանաչին մէջէն դուրս ցայտէին, որ Պարսկաստանէն եկած կարաւաններուն իջեւանն ըլլալոյ էր. փեռեկեալ դռնէն ներս նայելով տեսնուէին ընդարձակ դարպասին մէջ բազմութիւն գերեաց և ծառայից որ երթային և գային. և յիրաւի այս չէնքս ուղևորաց իջևանն էր: Յովսէփ իշուկն դրդելով յառաջ մղեց յորոյ վերայ նստած էր Կոյսն՝ և դէպ 'ի հոն սկսաւ երթալ՝ յուսալով որ ժամանակին հասնելով՝ կարասցէ փոքրիկ սենեակ մի բռնել՝ որ առաջին հասնողին իրաւունքն էր և ոչ ումեք գլխաւորին [10]: Բայց պանդոկն լի էր ուղևորօք և վաճառականներով, և պարապ տեղ մի չկար: Թերևս ծանր վարձք մի տալով գտնուէր, որովհետև պանդոկապետին հիւսոյ էր և հրեայ բեթլեհեմացի. բայց եկ տես որ Յովսեփայ քսակն ալ շատ նիհար էր:

Ուստի արտասուք ոտուր դարձաւ Մարեմայ քովն՝ որ համակերպութեան անոյշ ծիծաղով ժպտեցաւ, և նորէն բռնելով խեղճ իշուն պախուրցէն՝ որ հոգնածութենէն անկանելու վերայ էր՝ փոքրիկ քաղքին փողոցներն և հրապարակներն թափառիլ սկսաւ՝ յուսալով որ գթասիրտ քաղաքացի մի գտնէ՝ որ Աստուծոյ սիրոյն համար իրենց ապաւինելու տեղ մի շնորհէ. բայց 'ի զուր, մարդու մի հոգն չեղև: Երեկոյին աւուր և ցուրտ հովէն Կոյսն սաստիկ նեղէր, և Թէպէտ բան մի ոչ խօսէր, բայց երեսին գոյնն նետել էր և հազիւ ինքզինք բռնէր: Յովսէփ կարի վշտացած՝ պարապ տեղ ապաւէն մի խնդրէր. և տեսաւ որ այն դուռն որ իր երեսն 'ի վեր անարգութեամբ փակել

ձին՝ աւելի հարուստ օտարականներու առջև կը բա-
ցուէր։ Ճահասիրութիւնն որ հրէից գլխաւոր ախտն
է՝ որչափ խստացուցած պիտի լինի իրենց սիրտն՝ որ
Մարեմայ վիճակն ալ տեսնելով՝ գութ մի ոչ զգացին
իր վերայ այն իւր ընչաքաղց հայրենակիցներն։ Գի-
շերն մօտ էր, մութն կոխէր, և այն երկու ամուսինք
տեսնելով որ իրենց վերայ խղճացող մի չկայ, և իրենց
նախահաւուց քաղքին մէջ ապաւէն մի գտնելէն
յոյսն կտրած՝ Բեթլեհեմէն դուրս ելնելու հարկա-
դրեցան, երթալու տեղերնին ոչ գիտելով, և իրենց
առջև եղած առաջին ճանապարհն բռնելով դաշտն
հասան՝ որ վերջալուսոյն տկար լուսովն դեռ սակաւ
մի կը նշմարուէր։

Հիւրատեաց քաղքէն սակաւ մի հեռի հարաւային
դին ժայռի մէջ փորուած մութ այր մի տեսին՝ մուտ-
քըն դէպ 'ի հիւսիս, որ երթալով նեղնար և բեթլե-
հեմացւոց խաշանցն հասարակաց փարախն համարէր՝
ուր երբեմն նաև հովիւներն ալ ապաւինէին մրրկա-
լից գիշերներն. ուստի գոհանալով զԱստուծոյ որ
ղիրենք այս վայրի ապաստանարանս առաջնորդելէր՝
Մարիամ վար իջաւ և Յովսեփայ թևն մտած գնաց
նստաւ մերկ քարի մի վերայ՝ որ նեղ և անհանգիստ
նստարանի ձև մի ունէր՝ այրին ներսերն։

Հոն այն ցուրտ քարին վերայ՝ երբ աստղերն կէս
գիշեր ցուցանէին՝ անմեղ և անբիծ Կոյսն առանց ցա-
ւոց և երկանց և առանց ուրուք օգնութեան՝ ծնաւ
մանուկ մի իրեն նման փափկիկ համբերող գթասիրտ,
և որպէս Աստուած ամենիմաստ հզօր զօրաւոր և յա-
ւիտենական, Ակնկալութիւնն նախաձայնեալ 'ի Յա-
կոբայ, Մեսիայն մարգարէական գուշակութեանց,
Օծեալն քրիստոնէից, և զոր Դաւիթ իւր Տէրն կոչեց,
զորև պաշտեն հրեշտակք 'ի բարձունս երկնից թևա-
քողելով զերեսս իւրեանց, Փրկիչն ազգի մարդկան՝ որ
գոնէ Մովսէսի պէս կնիւնէ պրտուեայ որրան մ՚ալ

չունելով՝ Թաց յարդով լի մսուրն գրաւ մայրն, զոր նախախնամութեամբն Աստուծոյ հոն մոռացեր էին Եգիպտոսի կամ Ասորեաց ուղտապաններն՝ վաղ քաջ յառաւօտուն երթալու փութալով. Աստուած ինչպէս որ պատրաստէ երկնից Թռչնոց բոյնն՝ նոյնպէս պատրաստեր էր նաև իւր Միածին Որդւոյն անկողնիկն. որոյ համար գոչէ Սուրբն Բեռնարդոս. « Ա՜հ Մարիամ ծածկէ՛ ծածկէ այս նոր արեգական ճառագայթներն, դիր զինքն մսրոյն մէջ, փաթթէ այս աստուածային մանկիկն աղքատիկ ցնցոտեացդ մէջ. այս ձորձիկներն մեր ճոխութիւնքն են, Փրկչիս ցնցոտիքն քան զծիրանիս առաւել պատուական են, և մսուրս այս փառաւորագոյն է քան զաթոռս թագաւորաց. և աղքատութիւնն Յիսուսի Քրիստոսի քան զամենայն գանձս մեծագին »: — Եւ Սուրբն Բասիլիոս Աստուածամօր սրտին մէջ եղած եռանդեան և զմայլման խորհրդոցն Թափանցելով, նկարագրէ զնա իբրև մայր որդեսէր և իբրև զսուրբ երկրպագու խօսելով առ որդին իւր այսպէս. « Ի՞նչ անուն տամ ես քեզ, գոչէ դուստրն նախահարց՝ խոնարհելով առ մանկիկն իւր Յիսուս, ի՞նչ անուն տամ ես քեզ — մանկանացո՞ւ — բայց ես զքեզ աստուածային զօրութեամբ յղացայ: — Աստուա՞ծ — բայց դու մարդկային մարմին մի ունիս. — արդեօք խնկո՞վք անուշիւք քեզ մերձենամ, թէ իմ կաթս քեզ ջամբեմ. արդեօք գորովագութ մօր խնամքն քեզ մատուցանեմ, թէ 'ի հո՞գ խոնարհեալ պաշտօն քեզ հարկանեմ »:

Ահա այսպէս Կոյսն նախասահմանեալ՝ Եսայեայ մարգարէութիւնն կատարելով 'ի լոյս ընծայեց իւր Անդրանիկն, և Բանն մարմին եղև՝ ամեն բան զարմանելու և զամենայն ինչ կրելու համար:

« Եւ հովիւքն էին 'ի տեղւոջն յայնմիկ բացօթեագք, որ պահէին զպահպանութիւնս գիշերոյ հօտից իւրեանց: Եւ հրեշտակ Տեառն երևեցաւ նոցա, և

փառք Տեառն ծառայեցին առ Նոսա, և երկեան երկիւղ մեծ։ Եւ ասէ ցնոսա հրեշտակն. Մի՛ երկնչիք, զի ահաւասիկ աւետարանեմ ձեզ ուրախութիւն մեծ, որ եղիցի ամենայն ժողովրդեանն. զի ծնաւ ձեզ այսօր Փրկիչ, որ է օծեալ Տէր, 'ի քաղաքի Դաւթի. և այս նշանակ ձեզ, գտանիցէք մանուկ պատեալ 'ի խանձարուրս, և եդեալ 'ի մսուր։ Եւ յանկարծակի եղև ընդ հրեշտակին ընդ այնմիկ բազմութիւն զօրաց երկնաւորաց, որ օրհնէին զԱստուած և ասէին. փառք 'ի բարձունս Աստուծոյ, և յերկիր խաղաղութիւն, 'ի մարդիկ հաճութիւն [11] »։

Արդէն այն սքանչելի տեսիլն աներևոյթ եղեալ էր, և երգերն դադրած՝ տակաւին հովիւք իրենց փառակաւոր ցուպերուն վերայ յեցած ունկն դնէին։ Իսկ երբ ամեն ձայն դադրեցաւ, և հովտին մէջ գիշերուան զով քամիէն զատ ուրիշ բան ոչ լսուէր, և երկինքն ալ սպիտակ և լուսաւոր հետք մի ոչ երևէր՝ որ հրեշտակ կարծուէր՝ հովիւք խորհուրդ արարին իրարու հետ և ասեն. « Եկա՛յք երթիցուք մինչև ցԲեթղեհէմ և տեսցուք զի՛նչ է բանս այս որ եղև »։ Ուստի կողովի մէջ աղքատիկ ընծայներ գնելով ինչ որ գտանէր իրենց հիւղն, և խաշանց պահպանութիւնն միայնութեան հրեշտակաց յանձնելով՝ աստեղաց լուսովը դէպ 'ի Դաւթի քաղաքն սկսան երթալ. և 'ի Ճանապարհին երկնային ազդեցութեամբ մտին այն գոմ՝ ուր Փրկիչն սակաւ մի յառաջ ծնած էր, և գտին անդ զՄեսիայն եդեալ 'ի մսուր. Կոյսն իւր նորածին զաւկին վերայ խոնարհեալ՝ խորին խոնարհութեամբ և խանդաղատանօք երկիր պագանէր, և Յովսէփ նոցա գլխոյն վերայ՝ պատկառելի գլուխն 'ի խոնարհ՝ հայէր իւր որդեգրեալ զաւկին վերայ որ Աստուած էր. լուսնոյ քաղցրիկ լոյսն սիւն գործեալ յայրին լուսաւորէր այն գերահրաշ անձինքն՝ որոց շրջանակ կազմէին այրին կարմրորակ պատերն։ Իսկ քարան-

ձաւէն պուրաստին բան խաղաղ հանդարտութեան և քնոյ մէջ էր այն աստեղազարդ գիշերն [12]: — Հո՛ս է, հո՛ս է, կանչեցին փրարու հովիւներն, և պատկառանօք 'ի գետին խոնարհեալ առաջի մսրոյ Թագաւորին Թագաւորաց՝ մատուցին աղքատացելոյն և Նորածին Աստուծոյ զլումայն և զընծայն աղքատին:

Յետոյ սկսան պատմել հրեշտակաց երևելն, Նոցա քաղցրաձայն երգերն, և յուսոյ խաղաղութեան և սիրոյ խօսքերն. որոց վերայ Յովսէփ զարմացած ունկն դնէր, և Մարիամ լռութեամբ լսելով Նոցա պարզմտութեամբ պատմածներն՝ ամէն խօսքն սրտին մէջ դրոշմէր: Իրենց պարտքն աւարտելով և պաշտօնն կատարելով՝ Յուդայի հովիւներն զԱստուած փառաւորելով ետ դարձան, և այն լեռնակողմերն հրատարակեցին այն սուրբ գիշերուան մէջ հանդիպած սքանչելիքն. և լսողներն զարմացած և ահաբեկած սսէին մինթէ կարելի՞ է այս բանս, մինթէ Աբրահամու տեէննե՞րն եմք որ հրեշտակք երևին հովուաց:

Թերևս այս հովուաց պատմութիւնն եղած է պատճառ՝ զոր Նոյն իրիկուն մերձակայ անտառին և խոր հովտին մէջ խօսէին ընդ միմեանս ուղտուց ջուր խըմած ատենն այն մննաւոր աղբիւրէն, որ անապատին արաբացւոց ցեղ մի զՄարիամ և զՄանուկն աստուածացոյց, և Փասպայի սիւներէն միոյն վերայ քանդակեցին զանուշակ պատկեր Կուսին Աստուածորդւոյն 'ի գրկին, որ և երից մասանց Արաբիոյ երեքհարիւր վաթսուն աստուածոց մին համարուեցաւ: Այս քանդակս մինչև Մահմէտի ժամանակն դեռ երևէր՝ որպէս վկայէն արաբացի մատենագիրք [13]: Եւ անմեղ մանկանց կոտորածէն ետև այս կարիճ ցեղն բոլորն միաբան ոտք ելին, և վրէժխնդրութեան աղաղակայարձակեցան Հերովդեսի որդւոց վերայ՝ Նոցա թագմութենէն չվախնալով թէ և հռովմայեցւոց հարկատու էին և 'ի Նոցանէ պաշտպանեալք [14]:

Պատմութեան այս հարազատ և մասնական անցքը՝ որ շատ հետաքրքրական բան է և ընդհանրապէս անծանօթ մնացած է, Սրբոյն Ղուկայ պատմած գերբնականանցից հաստատութիւն մին է՝ զոր ընջահաւատ Վոլթէրի աշակերտքն անգոսնիչ իմաստասէրք և նոցա հետեւողքն քան զկուապաշտս անգամ ամբարիշտք՝ առասպելեաց կարգն համարին։ Արաբացւոց այն նորանշան եռանդն՝ որ աւետարանի քարոզութենէն յառաջ զդիցապաշտութիւն Ճշմարտին Աստուծոյ պաշտաման հետ խառնէին՝ ուրիշ բանէ յառաջ եկած չէր կարող լինել՝ բայց եթէ 'ի ծանօթութենէ սքանչելեաց որ եղեն Ծննդեան սուրբ գիշերն։

Ծննդեան ութերորդ օրն Որդին Աստուծոյ Թլփատեցաւ և կոչեցաւ Յիսուս ըստ հրամանի Հօրն յաւիտենականի. հարկաւ կնքահայր մի եղած է այս արարողութեանս մէջ, որպէս և ունէին ամենայն հըրեայք, բայց թէ որու եղած է այս հրաշափառ վիՃակս յայտնի չէ. իսկ արարողութիւնն կատարուեցաւ նոյն իսկ յայրի անդ ուր ծնաւ՝ ըստ Սրբոյն Եպիփանու, և Սուրբն Բեռնարդոս յոյժ հաւանական համարի թէ ինքն իսկ Յովսէփ կատարած է այս պաշտօնս՝ որ միշտ Եղիայի պաշտպանութիւնն հայցելով կատարուէր, և հրեայք համարէին թէ մարգարէն անտեսանելի կերպով միշտ ներկայ գտանէր [18]։ — Հասարակ ժողովրդէն շատերն՝ հրեշտակաց հրաւիրանացն ունկնդիր՝ եկին և երկիր պագին Յիսուսի մանկացելոյ խեղՃուկ մսրոյն մէջ, և իրենց սև հացէն և այծերուն կաթէն մասն հանեցին. բայց սակաւ մի յետոյ գերապանծ և մեծահրաշ սքանչելեօք՝ նոյն տեղն հասին հեթանոսութենէ դարձողաց նախախայրիքն։ հովիւք առաջին եղեն եկողաց մէջ, բայց յետ նոցա գալոց էին իմաստունք և թագաւորք։

Յիսուսի Քրիստոսի ծննդեան տօնններն՝ քաղդէա-

ցի մոգերէն ոմանք՝ որ միշտ աստեղաց շարժմունքն դիտէին՝ աստղ մի տեսին առաջին կարգի մեծութեամբ՝ և այնոր տարօրինակ շարժմունքէն և այլ 'ի սորոյ երևոյթից՝ ծանեան որ Բաղաամայ երկայն ժամանակ յառաջագոյն գուշակած Յակոբայ աստղն էր՝ որ լուսապայծառ պիտի երևէր Կուսին ծննդեան ատենն: Ապուլ Ֆէրաճի հաւաքած պարսից աւանդութեանց համեմատ՝ Զրադաշտ մոգութեան վերանորոգողն՝ այր իմաստուն և աստեղագէտ, և միանգամայն հմուտ եբրայական աստուածաբանութեան [16], Կիւրոսի առաջին յաջորդաց ժամանակ և տաճարին երկրորդ շինութենէն սակաւ մի յետոյ՝ ծանոյց որ Ասիոյ արևմտեան կողմն (Բաբելոնի նըկատմամբ) աստուածահրաշ մանուկ մի պիտի ծնանի 'ի սուրբ և յանարատ կուսէ՝ որ աշխարհս կերպարանափոխ պիտի առնէ. այս ալ յաւելլով որ նորանշան և մինչև այն ատեն անծանօթ աստղ մի այս անմոռանալի դէպքս պիտի իմացնէ. և այս աստեղ երևցածին պէս նոյն իսկ մոգերն պիտի երթան ընծայիւք պատուելու զարքայն նորածին: Ուստի երեք անուանի իմաստունք Բաբելոնի [17] հաւատարիմ և եռանդուն կատարողք կտակացն Զրադաշտայ՝ այն աստղն տեսածնուն պէս՝ Թմբկօք և դափօք ճամբայ ելնելու նշանն տուին: Արմաւենւոյ փայտէ շինուած [18] և գեղեցիկ շէնքով զարդարուած Սելևկեանց քաղաքն իրենց ետին թողլով, և ելնելով 'ի Բաբելոնէ՝ ուր անապատի հողմն անբաւ աւերակաց մէջ հեծելով՝ կարծես թէ այն լուռ դերբկաց կրկնէր Ամովսածնին (Եսայեայ) չարագուշակ պատգամներն, մեկնեցան արմաւենեաց երկրէն և Պաղեստինու աւազուտ ճամբայն բռնեցին: Իրենց առջևէն ընթանայր Մեսիայի աստղն, որպէս երբեմն սիւնն լուսեղէն ուղեցոյց իսրայէլեան գումարտակաց փախստէից՝ դէպ աւազածիր եզերս Կարմիր ծովուն: Այս նորա-

տեսիլ աստղս՝ որ ոչ հպատակէր այն անփոփոխ օրինաց՝ որ վարեն գլուսափայլ գունտս երկնից՝ իրեն սեպհական կանոնաւոր շարժումն մի չունէր, այլ մերթ կարաւանին առջևէն երթայր միշտ ուղիղ գծով դէպ 'ի արևմուտք, և մերթ կանգ առնոյր գիշերն օթելու համար կանգնուած վրաններուն վերայ, և կարծես թևատարած սաւառնեալ կայր ամպոց մէջ իբրև զասիդ կամ ալպաքրոս թռչունն համատարած օդոյ մէջ օրօրելով մրափած ժամանակ: Առաւօտներն նշան տայր չուոյ, որպէս և յերեկոյին ընդնշան բանակ հարկանելոյ [19]:

Վերջապէս Երուսաղեմայ բարձրաբերձ աշտարակներն հեռուէն երևիլ սկսան լերանց լերկ և վէս գագաթներուն հետ միատեղ. և մինչդեռ ուղտք և գրաստք իրենց ծարաւն անցուցանէին Ճամբուն վերայ եղած աւազանէն, մոգերն զարմացմամբ և երկիւղիւ իրար անցան, վասն զի այն աստղն աներևոյթ լինելով 'ի բարձունս երկնից ծածկեալ էր, ինչպէս բանաւոր արարած մի որ մօտ վտանգ մի տեսանէ և փախչի [20]:

Մոգերն խռոված և շփոթած՝ հին ժամանակին նաւորդաց պէս որք սև ամպ մի բևեռային աստղն իրենց աչքէն գողցածին պէս առնելիքնին ոչ գիտէին, սակաւ մի ժամանակ մէջերնին խորհեցան թէ ինչ նշանակէր իրենց լուսապայծառ ուղեցուցին յանկարծակի աներևոյթ լինելը. արդեօք իրենց ուղևորութեան վերջն հասած էին, արդեօք վրաններն հարկանելո՞ց էին նոյն տեղն օթելու համար: Եւ յիրաւի կարելի մանաւանդ թէ հաւանական իսկ էր՝ որ նորածին Թագաւորն որում երկրպագելու համար մինչև Տիգրիսի յափանցն եկեալ էին՝ Երուսաղեմայ մէջ էր: Երկնից Աստուածն ասէին անօգուտ տեղ հրաշքն ոչ երկարէ, և հոն դադրին անտարակոյս ուր մարդկային հնարք բաւական են: Հոգ չէ աստեղ 'ի մէնջ

ծածկուիլն և զմեզ թողուլն, մեք առանց նորա օգնութեանն ալ կարեմք այսուհետև դիւրաւ գտանել մեր բնտռածն իւր պետութեան մայրաքաղաքին մէջ: Նորածին Մեսիա թագաւորին որրանն գտնելու համար՝ ուրիշ բան պէտք չէ մեզ՝ բայց եթէ մտնել այն առաջին փողոցն՝ որոյ յատակն կանաչ ոստեր սփռուած, վարդի ջրերով ոռոգուած և ոսկեթել հարուստ կերպասներով զարդարուած է. եբրայեցւոց տաւիղներուն ձայնն, պարերգուաց զուարթութիւնն և ցնծութեան աղաղակներն բաւական ցուցցեն մեզ թէ ուր կողմն դառնալու եմք: Այսպէս մտածելով մտրակեցին իրենց երիվարներն, և մտին քաղքին այն դռնէններս որ բարձր և անառիկ համարեալ աշտարակով պատսպարեալ էր, և երկու կարգ շարուած բարբարոս զօրաց մէջէն անցնելով՝ ելին ի նախկինն Սիոն:

Տխուր էր Երուսաղեմայ տեսքն՝ և ժողովուրդն լռութեամբ իւր բանին գործին զբաղած՝ ուրախութեան և ցնծութեան նշան մի ոչ երևէր. միայն թէ սաս անդ խումբ խումբ մարդիկ ժողոված՝ այս ուղեւորներս դիտէին՝ որ իրենց երկայն սպիտակ և հանդրիձեալ հագուստներէն, մէջքի վարդագոյն հարուստ գօտիներէն, իրենց բազկաց անգին գոհարներով զարդարուած բահուանդներէն [21], և մանաւանդ իրենց դիմացն այրական գեղեցկութեան գծագրութենէն՝ երևէր թէ արքայից արքային նախարարներէն էին: Ճամբուն վերայ այս արևելքէն եկած ուղևորներս մերթ ընդ մերթ ուղտերուն երկայն ձիտէն վար ծռելով՝ իրենց ճամբուն վերայ դիզուած բազմամբոխ ժողովրդեան հարցանէին թէ ուր էր արդեւք հրէից նորածին թագաւորն՝ որոյ աստղն տեսել էին 'ի Բաբելոն: Բայց ժողովուրդն Երուսաղեմի ապուշ ապուշ նոցա երեսն 'ի վեր նայելով՝ ոչ գիտէին թէ ինչ պատասխան տան այս հարցմանս... Թագաւոր հրէից...

և ով էր այս Թագաւորս։ Իրենք Հերովդեսէն զատ ուրիշ մի ոչ ճանաչէին՝ զոր և սրտանց ատէին, և մօտերս նմա զաւակ եղած չէր։ Մոգերն ևս զարմանալով որ իրենց հարցմանց պատասխան տուող և գիցող մի չկայ, և ոչ ալ հանգիսի և ուրախութեան նշան մի՝ տրտում տխուր այն բազմամբոխ ճամբայն բռնեցին՝ որ Դաւթի հին և խաթարեալ պալատն հանէր, և նորա անշուք և աւերակ դարձած դաւթին մէջ իրենց վրանն կանգնեցին։

Սակայն մոգուց տարօրինակ խօսքերէն լուռ շշնկոց մի բրդաւ քաղքին մէջ զոր շուտով Թագաւորին ականջն հասուցին այն կամակատար և արծաթով որսացեալ սորուկներն՝ որ այս բանիս համար կարգեալ էին, և որ երկրաքարշ զեռուններու պէս ամեն մեծամեծաց քովէն վխտան։ Խռովեցաւ Հերովդէս, և իր չարագուշակ խորհուրդներով կնճռեալ և խորշոմեալ ճակատն սև ամպ մի պատեց՝ փոթորկալից երկնից նման. « Իբրև լուաւ արքայ Հերովդէս խռովեցաւ, և ամենայն Երուսաղէմ ընդ նմա »։

Հրէից Թագաւորին խռովելուն պատճառն յայտնի է. որովհետև ինքն Հերովդէս՝ չէր ոչ օծեալ 'ի Տեառնէ և ոչ ընտրեալ 'ի ժողովրդենէ. կռապարիշտ և գիւցընկեց Կամպիտոլիոնի շրջափակէն քաղուած դափնիոնէն պսակեալ՝ այն ստրկութեան հարկատութագն ալ փշերով հիւսած էր, այն թագն որոյ մէն մի տերևներն լերանց ծանրութեամբ ոսկւով գնած էր՝ հարուստներու խնայութենէն և աղքատաց կարօտութենէն յափշտակելով։ Այնոր համար ատելի էր մեծամեծաց՝ որոց գլուխն կարել տայր փոքր կասկածի մի համար, զարհուրելի իրեններուն՝ որոց դիակովքն գերեզմաններն լցուցանէր, քստմնելի քահանայից՝ որոց իրաւունքն ոտնակոխ արարեալ էր, արհամարհ ժողովրդեան՝ իւր կրօնից երկբայական և ծննդեամբ օտարազգի լինելուն համար. և այս ամե-

նոյն հակառակորդաց դէմ ուրիշ զօրութիւն չունէր՝ բայց իր շողոքորդ դրանիկներն, իր արիւնկզակ սրիկայներն իր հացկատակներն և սակաւաթիւ հերովդիանոսաց հարուստ աղանդն՝ որք իր ճոխութեամբն շլացեալ էին. սոքա էին միայն իր ձեռնտուներն բոլոր ազգին գործունեայ եռանդուն և համարձակ ատելութեան դէմ։ Նա անգամ իւր յամառ հպատակներն իր երեսն զարնէին իւր անօրէնութիւններն՝ որ զինքն Կեսարու բարեկամ համարէր. Նենգամիտ և հզօր աղանդն փարիսեցւոց՝ արհամարհական ծիծաղով մերժել էր հաւատարմութեան երդումն զոր նա պահանջէր, եսսեանք ալ որ պատերազմաց մէջ կարիճ և զարհուրելի էին՝ փարիսեցւոց օրինակին հետևեցան, և օրէնսուսոյց վարդապետաց եռանդուն և նախանձայոյզ աշակերտներն՝ սակաւ մի յառաջ կէսօր ատեն իրենց վրէժխնդիր տապարներով ջարդել ջախջախել էին այն ոսկեղէն արծիւն՝ զոր տաճարին գլխաւոր դրան վերայ դնել տուած էր։ Ամէն գիշեր դաւաճանութիւններ լինէին իրեն կենաց դէմ, և ամէն անգամ որ ըստ դիպաց կամ կամօք սուտ համբաւներ իր մահուան վերայ հեռաւոր գաւառներու մէջ ելլէր՝ ժողովուրդն անդէն և անդ իր ատելութեան նիւթ գտնելով հրավառութեան հանդէսներ կատարէր, զորս Հերովդէս իրենց արեամբն մարել ջանայր։

Այս քաղաքական տարաձայնութեանց մէջ՝ երբ ապստամբութեան հոգին զօրաց մէջ ալ ճարակել էր, և խռովարարաց այնպէս երևէր թէ ժամանակն հասած և պտուղն հասունցած է իրենց վախճանին հասնելու՝ և ահա հասանէին յԵրուսաղէմ այն իշխանազուն օտարականներն՝ որ բոլոր պարսկային ճոխութեամբ գային և համարձակ հարցանէին հրէից նորածին Թագաւորն՝ որոյ աստղն տեսած էին։ Հերովդէս ապշած զարմացած մեծ մտածման մէջ անկաւ,

և անցած յիշատակներն միտքն բերել ջանայր, իւր տանն համար եղած չարագուշակ նախաձայնութիւններն միտքն գային՝ զորս փարիսեցիք կամաւ ազգին մէջ սփռած էին, և տեսանողաց պատգամներն զորս մինչև այն ատեն բանի տեղ չէր դրած՝ իր միտքն գանային: Այն քաջամարտիկ Մեսիայն և Դաւթի սերնդէն յառաջ եկած մարգարէն՝ որ իւր յաղթանակներն պիտի տանէր յԱրևմտից յԱրևելս՝ սկսաւ իրեն մտատանջ անհանգստութիւններ տալ, իւր միտքն խռովողն ծնեալ Աստուածն չէր՝ այլ Նորածին իշխանն: Եւ որչափ որ մտածէր այնչափ աւելի համոզուէր՝ որ այս խորհրդաւոր դէպքս կապակցութիւն մի ունին այն ընդարձակ դաւաճանութեան հետ՝ որոյ վախճանն ուրիշ բան չէր՝ բայց եթէ իր թագաւորութեան աւերակաց վերայ ծածուկ և նախանձընդդէմ իշխանութիւն մի կանգնել: Եւ միթէ 'ի զո՞ւր իբրև զջուր հեղեալ էր Մակաբայեցւոց արիւնն՝ առանց կնոջն և զաւակացն սրտատրոփ ողոքանացն ևս ունկնդիր լինելու. պարապ տե՞ղ ուրեմն այնչափ երևելի մարդկանց գլուխն կտրել տուել էր, և իւր բռնաւորութեան երկաթի անուոց ներքև ջախջախել էր զնոսա որք իրեն դէմ հակառակէին. միթէ Դաւթի տանն առջև 22 թագաւորական գահն ելնելու ճամբայն դիւրացնելու համա՞ր էր՝ իւր հոգին և պատիւն զոհելն, որով գիշերուան քնոյ հանգիստն անգամ կորուսել էր՝ որով իր սպաննել տուած մարդկանց արիւնաշաղախ ուրուականներն զինքն ահաւոր երազներով խռովէին... Եւ միթէ այն իշխանութեան գաւազանն որ այնչափ սուղի նստած էր իրեն և դեռ ևս արիւն ծխէր՝ ջախջախ և անիծեալ եղէ՞գ մի պիտի լինէր իր ձեռքն, և մահն զայն պիտի փշրէր իւր գերեզմանին վերայ... Արդեօք իւր անցքն մրրկալից գիշերոյ օդերևութի մի պէս պիտի անցնէ՞ր անհետանա՞ր այն երկրին վերայ որուն նախկին

փառքն նորէն պիտի պայծառանար իր մահուանէն ետև։ Եւ այն ժողովուրդն որ զինքն այնչափ ատէին և իր բարերարութիւններն անգամ մերժէին՝ արդեօք որչափ սիրով պիտի ընդգրկէին և բարեյօժար պիտի ծառայէին այն նորածին արքային որ իրենց նախկին թագաւորաց սերնդէն յառաջ գայր։ Այս վերջի մտածութիւնս դառն օշինդրի պէս կաթիլ կաթիլ կաթկթէր այն յուսահատ և դառնացեալ ծերոյն սիրտն. որովհետև նոյն իսկ իր անգթութեանց մէջ ալ՝ սիրելի լինելոյ պէտք և փափաք մի զգայր, որ որչափ տարօրինակ երևի՝ սակայն այսպիսի բնութեան տէր մարդկանց բնական է, որ կարծես թէ հակառակամարտ կրիւք թրծած խմորած էր, և որ իր ամենէն աւելի բռնաւորագոյն կրից հետ որ էր իւր ամբարհաւաճութիւնն՝ որ մարդուս հոգին կեղեքող քան զամենայն կիրս անգութն է, ունէր նաև քանի մի ազնուական յատկութիւններ։

« Ոք և իցէ մանուկս իշխան աշխարհի և թէ մարգարէ Բարձրելոյն հարկ է նմա մեռանել... և մեռցի » գոչեց Հերովդէս այս խորհրդածութիւններէս ետև, գոնէ այսու ապահովապէս չիջուցանեմ այս արկար կայծիս հետ ՝ի միասին՝ այն ամեն երազայոյս փառքն զոր յերազեցին տեսանողքն Իսրայելի վասն ապագային. ինձ ի՞նչ փոյթ է որ իմ մեռնելէս ետև երբայեցիք գերի և խեղճ պիտի լինին. որովհետև արհամարհեցին իմ փառքս, անուանս նսեմացուցին և քաղաքագիտութիւնս ոչ ընկալան։ Այս ապերախտ ժողովուրդս յի՞շէ արդեօք որ իրեն համար քանի պատերազմաց մէջ արիւնս թափեցի, սովու ժամանակ զիրենք կերակրեցի, շքեղ ապարաններով քաղաքս զարդարեցի, և Բարձրելոյն տաճարն նորոգեցի։ Բայց այս բաներս իրենց աչաց առջև բան մի չեն. հրէից առջին ես միշտ օտարազգի Հերովդէսն եմ, Հերովդէս նորագարձ, Հերովդէս անագորոյն։ Եւ ես

թողո՛ւմ որ ուրիշ մի գայ ու զիրենք մեծացնելով և երջանկացնելով իմ յիշատակս ընդէ վերցնէ. ոչ. առեղի եմ բայց անփառունակ լինել ոչ կամիմ, և եթէ թագաւորութեանս աստղն անյաջող եղև, գոնէ պիտի ջանամ որ իրենց համար ալ երկնից վերջին աստղն լիցի... Բայց թերևս այս Դաւթի որդին դեռ մատաղ և անմեղ մանկիկ մի է... Բայց ուստի՞ է ինձ այս վատ գթութիւնս։ Գոթողիա այն հանճարեղ կինն որ թագաւորելու կերպն լաւ գիտէր՝ Յուդայի առն կոտորածին ժամանակ՝ մի միայն մանկիկ մի մոռցաւ՝ որ տակաւին յօրրանս էր... և սակայն այն եղև իր արքայութիւնն և կեանքն վերցնողն. ուստի ամենայն ջանքս գործածելու եմ որ մին անգամ չազատի... Բայց ո՞ւր արդեօք ծածկուած է հրէից այս նորածին թագաւորն՝ զոր աստեղք հռչակեն, և այս լիրբ և աներես նախարարներս գան որոնել զնա մինչև անգամ պալատիս դուռն... արդեօք յիրաւի Յակոբայ նախաձայնած Ակնկալութիւնն է... Թէ աստեղաբաշխից սուտ և նանիր երազներ... Ինչ և իցէ հարկ է ստուգիւ տեղեկանալ։

Այս ասելէն քանի մի ժամ ետև՝ օրինաց վարդապետք և քահանայապետք Հերովդէսի դահերիցութեամբն 'ի ժողով կոչեցան, և շատ զարմացան երբ այնպիսի անհաւատ իշխանի մի բերնէն այս հարցումն լսեցին թէ Մեսիայն ո՞ւր պիտի ծնանի, Ո՞ւր ծնանիցի Քրիստոսն։

Անդէն և անդ ամենքն միաբերան պատասխանեցին ի Բեթլէհեմ Յուդայի. և այն չարաճճի ծերերն՝ հռոմայեցւոց բարեկամն աւելի կծելու և անհանգիստ առնելու համար՝ 'ի վերայ բերին թէ Դանիէլի եօթներորդաց վերջին եօթներորդն ալ աւարտելու վերայ էր, ուստի և Մեսիայի ժամանակն ալ մօտ էր։ Բայց Հերովդէս այս տարտամ ծանօթութիւններով գոհ չեղև, վասն զի կամէր գիտել թէ ո՞ւր պիտի կըշ-

ռէր իւր հարուածներն. ուստի որոշեց որ եթէ կարելի էր նոյն իսկ մոգերէն հարցանէ տեղեկանալ մանկան ծնած միջոց ժամանակն որ աստեղ երևելուն հետ հաւասար էր։ Եւ խորագէտ քաղաքագիտութեամբ փոխանակ հրապարակաւ ունկնդրութիւն տալու այն պարսից իմաստնոցն՝ որ կերպիւ իւիք հաստատութիւն տալ էր այն շշնկոցին՝ զոր հարկ էր մանաւանդ լռեցնել, թագաւորն գաղտ կոչեաց զնոսա և ստուգեաց 'ի նոցանէ շատ հարցափորձիւ զժամանակ աստեղն երևելոյ. ուր Ոսկեբերան յաւելու. «Մանրամասն տեղեկութիւնն զոր խնդրէ մանկան վերայ չէ, այլ աստեղն, որպէս զի ամենայն շրջահայեցութիւն բանեցնէ իր գործելու դաւադրութեան մէջ»։ Եւ գիտել ուզածն իմանալով արիւնարբու գազանն մարդավարութեամբ և հաճոյական կերպով օտարականներն ճամբայ դրաւ ասելով. «Երթայք 'ի Բեթղեհէմ, գնացէք ստուգեցէք վասն մանկանն, և յորժամ գտանիցէք տղդ. արասջիք ինձ, զի և ես եկեալ երկիր պագից նմա»։

Ուստի մոգերն որ՝ որպէս ամենայն արք վսեմամիտք 'ի խորհուրդս և 'ի գիտութիւնս թարթափեալք, բարի և անկեղծ մարդիկ էին և ոչ բնաւ հակամէտք չարիս կասկածելու ուրիշի վերայ, որչափ ալ տեսանէին թագաւորին անձնիշխան կերպն և անգթութիւնն՝ բայց ստութիւն և նենգութիւն ոչ կասկածէին, վասն զի թագաւորք պարսից տղայութեան ժամանակ առջի սորված բանն ճշմարտախօսութիւնն էր, Եդոմայեցւոյն խօսքին հաւատացին, և անցանելով ապարանից շքեղ գաւիթներէն՝ որ արքայից արքայի պալատան հետ իր պերճութեամբն մրցէր, թէպէտ այն կամարակապ սրահներուն մէջ ոչ երևէր այն ոսկի զանգակն՝ որ աղերսարկուաց զանգակ[23] կոչէր, թողին քաղքին Բէթզէթա[24] կոչուած Նոր թաղն, և իրենց վրաններն բառնալով միւսանգամ կարեցին ան-

ցան այն սուրբ քաղաքն՝ երթալու համար այն տեղն՝ ուր կարծուէր թէ Մեսիայն ծնած է. և նոր շրջաբոլոր Թաբորին ճոխ յաղթանակներով զարդարուած պատին քովէն անցնելու ժամանակ, որոյ անսովոր շքեղութիւնն փարիսեցւոց երգիծաբանութեանց անսպառ նիւթ եղած էր, հանդիպեցան Հերովդեսի որ Թրակացի և գերմանացի տիգաւորներէ պահեալ պաշարեալ Երիքով քաղաքն երթայր [25]: — Իսկ իրենք Դամասկոսի դռնէն դուրս ելին, և յետոյ ձախ դին դառնալով մտին 'ի խոր անդնդոց պաշարեալ ճամբու մի մէջ յորում տեղ տեղ բլուրներ կային անցնելու: Գրեթէ ժամու մի ճանապարհ հեռացել էին մայրաքաղքէն, և այն տեղի ջրհորէն ջուր արբուցանէին իրենց ուղտուցն, յանկարծ իրենց եղած տեղւոյն գագաթնակէտէն լուսաւոր կէտ մի տեսին երկինքն որ ուղղակի և շեշտակի իրենց վերայ իջանէր ասուպի մի պէս: Ահա ա՛ստղն է, մեր ա՛ստղն է գոչեցին սպասաւորներն ուրախութեամբ. իրաւ այն աստղըն է կրկնեցին տէրերն՝ նոյնպէս զարմացմամբ. և այս անգամ ապահով լինելով թէ բռնած ճամբայն ուղիղ է՝ նոր եռանդեամբ յառաջ երթալ սկսան:

Այն ինչ պատրաստուէին մտանել 'ի քաղաքն Դաւթի՝ և ահա աստղն դէպ 'ի հարաւ շեղելով կանգ առաւ ամայի քարայրի մի վերայ՝ որ գիւղական գոմ մի երևէր, և վայր իջնելով գրեթէ Աստուածային մանկան գլխոյն վերայ հանգեաւ: Այն ատեն անշարժ դիրքն առնելով որոյ քաղցր ճառագայթներն լուսեղէն սիւն գործելով այն ժայռի մէջ փորուած այրին վերայ բոլոր շրջակայքն լուսաւորէր, մոգերն մեծ վստահութիւն առին, և այլ ուրիշ նշանի կարօտ չեղեն ճանաչելու որ այն մերկիկ և աղքատիկ մանկիկն էր Թագաւորն Մեսիա՝ խեղճ մսրոյ մէջ պառկած, և մայրն առընթեր նմին, որ որչափ ալ գեղեցիկ էր և շնորհալի՝ սակայն յայտնի երևէր իր վիճա-

կին աղքատութիւնն։ Եւ Աստուած որ կամէր յամօթ առնել զխստասրտութիւն Հրէից՝ հեթանոսաց պաշտօնասէր փոյթն և հլու հաւատքն նոցա ընդդէմ կարգելով, Թոյլ չտուաւ որ մոգուց հաստատ հաւատքն դեդևի՝ այն սուրբ ընտանեաց նորանշան նուաստութիւնն տեսնելով։

Արևապաշտ հեթանոսներն՝ զորս պիտի փրկէր խաչն Քրիստոսի՝ աւետեաց զաւկներուն հետ միատեղ, նոյն յարգութեամբ մտին Յիսուսի աղքատիկ տունն՝ ինչ յարգութեամբ որ մտանէին իրենց կրակատուններն որ սարերկրեայ հնոցներու վերայ շինուած էին, և յորս շրջէին աստեղազարդ գունտեր[26]. և իրենց երկրին արարողութեանն համեմատ՝ ոտկաւ մի հող առնլով նոյն գետնէն Ճակատնին դըրին, և ոտից հարուստ սանդալներն մերկանալով՝ երկիր պագին նորածնելոյն, ինչպէս որ այն տեղն բոլոր արևելցիք իրենց աստուածոց և տերանց երկիր պագանէին։ Եւ յետոյ բանալով իրենց անուշ խնկոց գանձերն՝ ուր պահած էին Մեսիայի համար բերած ընծայներն. հանին անտի զուտ ոսկի՝ որ մեծին Նինուէի մօտերէն ելանէր, և անուշահոտ խնկեղէններ զորս Եմենի արաբացիներէն առնուին՝ զանազան պտղոց և մարգրտի հետ փոխանակելով։ Այս խորհըրդաւոր ընծայներուն մէջ՝ մարմնեղէն բան մի չըկար՝ ինչպէս Հրէից ընծայներն. Քրիստոսի ննջարանն՝ որ Հրէից ժողովարանին զոհերն ջնջելու գայր՝ գառանց արեամբն պիտի չբծաւորէր. ուստի և մոգերն ալ ոչ անբիծ գառներ կտրեցին և ոչ սպիտակ երինջներ. այլ մատուցին նմա ոսկի որպէս տէր և իշխան աշխարհի, և կնդրուկ և զմուռս որպէս Աստուծոյ կենդանւոյ։

Այս դէպքս Սրբոյ Կուսին համար փառաց և պայծառութեան վերջին տեսարանն եղև։ Իր կենաց առաջին շրջանն՝ Ճիլճիլիսքանի[27] բնակչաց անոյշ երա-

զոյց պէս՝ տաճարին եղևնեայ և ոսկեղեձեղուն յարկաց մէջ անցայ՝ շուրջ պատեալ յանուշահոտ բուրմանց, վսեմ երգոց, և տաւղի և քնարի միաձայնութեանց. երկրորդն լի սքանչելեօք և խորհրդովք՝ երկնաբնակաց և Ասիոյ իշխանաց հետ զինքն ծանօթացոյց. իսկ երրորդ շրջանին ուրիշ ապագայներ պահուած էին, որ էր ժամանակ հալածանաց, ներքին տագնապներու և անբացատրելի ցաւոց։

Վերջապէս Մոգերն որ այլ ուրիշ բան չունէին առնելու Հրէաստանի մէջ, և ցանկային ժամ մի յառաջ իրենց հայրենիքն դառնալ, և քարոզել իրենց ունեցած յաջողութիւնն և բարեբաստ հանդիպումն՝ որոյ համար եկեալ էին, պատրաստուեցան մեկնել 'ի Բեթլեհեմէ. և երբ իրենց խոստմանն համեմատ կամէին նորէն տեսանել զարքայն Հերովդէս յԵրիքով իւր պալատն, ծանուցանելու համար թէ ուր գտել էին զՄեսիայն, ահա հրեշտակն Ամենակալէ ազդեց նոցա յերազի՝ այն նենգաւորին անագորոյն խորհուրդն. և հրամայեց որ ճանապարհնին փոխեն։ Ուստի փոխանակ անիծեալ լճին (Մեռեալ ծովուն) ամուլ և վտանգաւոր եզերքէն անցնելու՝ որոյ պղտոր և լճացեալ ջրոց երեսն երևի երկնասաստ պատուհասի կործանեալ քաղաքաց ստուերն. դարձուցին իրենց ուղտերամակն դէպ 'ի ծովն մեծ (Միջերկրական), և Ասորեաց 'ի գեղեցիկ ծովափանց անցած ատեն՝ կարծէին թէ իրենց երկրին կամ Շիրազու վարդաստան դաշտերն էին՝ զորս ոռոգէն Եփրատ և գետն մեծ կամ Պէնտ-էմիր (Քուր)։



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ԺԱ. ԳԼԽՈՅ

1 Երբայեցիք այս անուամբ կոչէին զտէրութիւն Հռովմայեցւոց՝ որ իրենց միշտ ատելի էր։

2 Աւգոստոս երեք անգամ աշխարհագիր հանել տուաւ պետութեան բոլոր գաւառներուն մէջ. առաջինն իր վեցերորդ հիւպատոսութեան ատեն ընդ Մ. Ագրիպպայ 28 տարի Քրիստոսի թուականէն յառաջ, երկրորդն Կ. Մարիոս Կենսորինոսի և Կ. Ասինիոս Կալլոսի հիւպատոսութեան ատեն 9 տարի Քրիստոսէ յառաջ, երրորդն և վերջինն առ հիւպատոսութեամբ Սեստոս Պոմպէոս Նեպոսի և Սեստոս Ապուլէոս Նեպոսի Քրիստոսի թուականին 17դ տարին։ Սրբոյն Ղուկայ յիշածն երկրորդն է, և հրամանագրին թուականն է իններորդ տարի Քրիստոսի թուականէն յառաջ (Սուետոն յՕկտաւիանոս 27)։

3 Աւգոստոս նոյն ատենն բովանդակ հռովմէական պետութեան վիճակագրութիւն մի յօրինել տայր իրեն իշխանութեան ներքև եղած գաւառաց ճշգրիտ ստորագրութեամբ. այս գրոց և զանազան գաւառաց մէջ եղած մասնական նկարագրութեանց վերայ՝ յիշատակութիւն անեն Տակիտոս, Սուետոնիոս, և Դիոն Կասսիոս. և իրենց խօսուածքէն այնպէս երևի, ինչպէս բնագրին մէջ ալ ըսինք, թէ անգղիացւոց Doomesday-book կամ Վէճօխօգրօ–Բէօն ասացեալ գրոց պէս բան մի եղած պիտի լինի՝ որ բովանդակ Անգղիոյ կալուածոց արձանագրութիւն է՝ զոր ետ յօրինել Գուլիելմոս աշխարհակալ։

4 Տերտուլիանոս հաստատէ զայն վասն Սեստոսի Սատուրնինոսի որ Ասորւոց երկրին գահերէց էր։

5 Զարմանք չէ որ այս հրովարտակիս կատարումն երեք տարուան մէջ լրացած լիցի, որովհետև բոլոր Ասորեաց, Կիլիկիոյ, Փիւնիկիոյ և Հրէաստանի վիճակագրութիւնն անկէ սակաւ ժամանակի մէջ չէր կարող լինել. գիտեմք որ Յովաբ գրեթէ տասն տարուան մէջ կարաց միայն թուել զէնք կրելու յարմար մարդիկն ՚ի տասն ցեղս Իսրայելի, ուր Քրիստոսի ծննդեան ժամանակ Աւգոստոսի հրամայած աշխարհագրին մէջ՝ ոչ միայն մարդկանց թիւն կը պահանջուէր, այլ նաև զանազան գաւառաց երկրին յատկութիւններն։ Վերն յիշուած Գուլիելմոսի վիճակագրութիւնն աւարտելու համար երեք տարի պէտք

եղև, թէ և Սկովտիա, Իրլանտա, Կալլեսի գաւառն և Նորմանտեան կղզիք մէջն չէին։

6 Յիսուսի Քրիստոսի ծննդեան թուականն շատ վիճաբանութեանց նիւթ եղած է. մեք քան զամենեսին աւելի ստոյգ համարիմք Ալեսսանդրօ Ճիֆֆրեդի ըննաոխնա տուացեալ գրոց հեղինակաց կարծիքն՝ որ հաստատեն զնոյն 'ի 25 դեկտ 748 ամին Հռոմայ՝ որ անկանի վեց տարի յառաջ քան այժմեան սովորական թուականն, զոր ոմանք երեք տարի միայն յառաջ համարին ըստ կարծեաց Բարոնիոսի ուրբաթ օր հանդիպեալ է Տեառն մերոյ ծննդեան։

7 Պաղեստինու էշերն գեղեցկութեամբ անուանի են։

8 Միքիա Ե 2։

9 Եսայի ԾԳ 2։

10 Հիմա այս հիւղերուս չորս պատերն միայն մնացած են փոշւով և կարիճներով լի. պահապանն ճամբորդին ձեռքն բանալին և նաճա մի տայ, իսկ ուրիշ պիտոյքն ուղևորն ինքն հոգալու է. ուստի պէտք է հետն ունենայ անկողինն և պաշարն (Վոլնէյ Ուղևոր. յԱսորիս)։

11 Հովուաց հանգրուանն կամ գիւղն զուարճալի դաշտի մի մէջ է Բեթլեհեմի քաղքէն քառորդ փարսախաւ հեռի դէպ 'ի հիւսիս, և հովտի մի խորն որոյ առջև տարածի այն դաշտն ուր արածէին զխաշինս իւրեանց 'ի գիշերին ծննդոց։ Սրբազան և արտաքին իմաստուն պատմագրաց խօսքին նայելով՝ միայն հրեշտակաց երևելն չեղև հրաշալի՝ առ 'ի ցուցանել զծնունդ Աստուածորդւոյն. այլ ասի նաև թէ այն սուրբ գիշերն Ենգադեայ այգիքն ծաղկեցան, և Հռոմայ մէջ Խաղաղութեան տաճարն յանկարծ գետնատարած եղև, և դիւաց պատգամքն բոլորովին լռեցին. և միայն ծննդեամբ Տեառն մերոյ հալածական եղեն հեթանոսաց չաստուածներն՝ որոց մինչև այն ատեն ներեալ էր տալ պատգամս սնոտիս, զոր և վառվռուն երևակայութեամբ քերթողաբար նկարագրէ Միլտոն։

12 Պարսիկք զգիշեր Ծննդեան կոչեն ֆէլէր պայծառ և լուսաւոր սակս իջման և երևման հրեշտակաց (տ' Էրպըլոյ Մատենադարան արևելեան)։

13 Պուրքարտ ասէ թէ էլ Ազրաքի անուամբ արաբացի մատենագիրն բազում ականատես վկայից խօսքովն հաստատէ թէ Քաապայի դրան ամենէն մօտ սեան վերայ քանդակուած է կոյսն Մարիամ Հուրբէբի հետ կամ Յիսուս մանուկն 'ի գրկին (Պուրքարտ Ուղևորութիւն յԱսորիս հտ. Ա)։

14 Արաբացի պատմչին յիշատակած այս մասնաւոր դէպս գըտանեմք նաև հրէից Թոլտոթ ասացեալ գրոց մէջ որ շատ հին գրուած մի է՝ քրիստոնէութեան դէմ կատաղի ատելութեամբ

լի։ Հոն կը պատմուի թէ Հերովդէս մեծն և իւր որդին մեծ պա-
տերազմ մի ունեցան անապատի ցեղի մի դէմ որ պոլշոյեէն ըղ-
ղոփլէր Ցէստոսէ և Մոբշմա Ժօր Նորա։ Այս արաբացի ցեղս
ուզեց նաև դաշնակից լինել Պաղեստինու շատ քաղաքաց հետ,
և մանաւորապէս այն քաղքին հետ որ Հայի կոչէր։ Արդ որով-
հետև հրեայք ալ յիշեն այս անցքս Հերովդեսի վարուց մէջ՝ ա-
պա պէտք էր որ Անմեղ մանկանց ջարդէն յառաջ եկած լինէր,
որովհետև այն ծեր թագաւորն տարի մի միայն ապրեցաւ Փրրկ-
չին ծնանելէն ետև։

15 Տես Պատմած գիրք Է գլ. 10։

16 Ոմանք համարեցան զնա աշակերտ Երեմիայի, բայց ժա-
մանակն ոչ յարմարի. աւելի հաւանական է ասելն թէ աշակեր-
տեալ էր Դանիէլի։

17 Մոգուց աշխարհին վերայ ամեն մատենագիրք ոչ միաբա-
նին. ոմանք համարին զնոսա եկեալ յԵրջանիկն Արաբիոյ խո-
րերէն, այլք 'ի Հընդկաց՝ որ հաւանական ոչ երևի. հաւանա-
կանն այն է որ եկած լիցին 'ի Պարսից. Գասպար, Մելքոն և
Բաղդասար անուններն որ կը տրուին իրենց բաբելոնական ա-
նուններ են։ Եւ յիրաւի Բաբելոն և այնոր կործանելէն ետև
Սելևկիա՝ որ իրարմէ շատ հեռի չեն, հին ժամանակ երևելի աս-
տեղագիտաց դաւաճներ էին. և Երուսաղեմի արևելեան կողմն
անկանին, և Եփրատայ եզերքէն մինչև ցԲեթլեհէմ քան օր
քշէ։ Որոգինէս հմուտ և տեղեակ լինելով ասէ թէ մոգք աստե-
ղագիտութեան զբաղեալ էին։ Նաև ս՝ Եփրեմ հմուտ արևելա-
գէտն ստոյգ համարի թէ Մոգք 'ի Պարսից եկան։ — Մեր Հ.
Ղուկաս Ինճիճեան վարդապետն իւր Հնախօսութիւն Հայաստանի
գրոց մէջ բաւական փաստերով ապացուցանէ թէ Մոգքս այսո-
քիկ էին 'ի Մոկաց աշխարհէն Հայոց։

18 Ստրաբոն գիրք ԺԸ։

19. Ս. Յոհան Ոսկեբերան ճառ Զ'ի Ս. Մատթ. — Կաղկի-
դիոս հեթանոս իմաստասէր 'ի վերջ կոյս Դ դարու յիշատակէ
զաստղն որ առաջնորդեց արևելեան իմաստնոց առ խանձարուրս
Քրիստոսի։ Իսկ վարդապետն վարդապետաց Ս. Աւգոստինոս
ասէ. «Նա որ 'ի մահուն իւրում խաւարեցուցանելոց էր զարե-
գակն հին՝ 'ի ծննդեան իւրում երևեցուցանէ աստղ մի նոր։
Ո՞ր էր ապա աստղն այն որ չէր բնաւ երևեալ 'ի հաստատու-
թեան, և զոր ոչ ոք կարաց գտանել ապա յերկինս։ Ո՞չ ապա-
քէն հրաշաճառ բարբառ իմն էր երկնից 'ի պատմել զփառս Աս-
տուծոյ և զծնունդ կուսի որդւոյ»։

20 Այս ջրհորս որ 'ի վերայ ճանապարհին Երուսաղեմի՝ մին-
չև ցայսօր կոչի Ջրհոր Էրէյ Նադասարրոյ կամ Ջրհոր աստեղ 'ի
յիշատակ անցիցս (Ճանապարհ. Յէստուէ Քրէստուէ)։

21 Այս ապրանջաններս ('ի պրս. բազուպէնտ) առ հինս ար-

քունական ցեղի նախարարք Թեւերնին կրէին. զնոյն կրեն մինչեւ ցայսօր թագաւորք Պարսից եւ որդիք նոցա (Մորիեր Ուղեւորութիւն ի Պարս եւ 'ի Հայս):

22 Պէտք չէ զարմանալ Հերովդեսի երկիւղին եւ կասկածանաց վերայ Դաւթի ցեղի սերունդէն՝ գիտելով այն ցեղին հնութիւնն եւ ազնուականութիւնն, որ անցեալն մէջ ունեցած թագաւորական իրաւունքովը՝ ապագային համար ալ մեծ յոյս եւ ակնկալութիւն էր բովանդակ հրէից՝ որ զինքն իբրեւ օտար եւ յափշտակող ատէին: Այս երկիւղս միայն Հերովդէս չունեցաւ, վասն զի Եւսեբիոս՝ Եգեսիպպոսի վկայութեամբ հաստատէ թէ նաեւ Վեսպասիանոս Երուսաղեմայ առնելէն ետեւ՝ հրամայեց որ Դաւթի յաջորդներն որոնեն եւ զամենքն թրէ անցնեն. այս հալածանքս Տրայիանոսի ժամանակ ալ շարունակեր. վերջապէս Դոմետիանոս այս անուանի տան երկու շառաւիղներն Հռոմ բերել տուաւ՝ որոց պապն էր Ս. Յուդայ առաքեալ. եւ հարցփորձ ընելէն ետեւ երբ իմացաւ թէ բոլոր հարստութիւննին երեսունեւինն արտավար հող է՝ զոր իրենք մշակէին, նոցա աղքատութեան վերայ վստահացած որով իշխանութեան ակնկալութիւն ունել չէին կարող՝ զիրենք յետս դարձոյց իրենց հայրենիքն:

23 Թագաւորք պարսից նահապետական կերպով իրենց ժողովրդեան դատերն տեսանէին. իրենց գահուն վերեւն ոսկի զանգակ մի կախուած էր՝ որոյ շղթային ծայրն մինչեւ արքունեաց պարտզին դուռն հասանէր. ամեն անգամ որ զանգակն զարնուէր՝ պաշտօնեայք փութային զաղերսարկուն թագաւորին առջեւ հանելու՝ որ ուղղակի իրմէ խնդրէին զարդարութիւն, որ եւ անյապաղ կատարուէր (Անթար Առանդուռնեան+):

24 Բեթղեթա կոչեցեալ քաղաքն կամ նոր թաղն զոր Հերովդէս միացուց Երուսաղեմայ հետ՝ տաճարին հիւսիսային դին անկանէր, հոն էր ստորին աւազանն, Պրոբատիկէ կամ ոչխարաց աւազանն եւ Հերովդեսի պալատն:

25 Պատմութեանս շարքին մէջ այն մատենագրաց հետեւեցաք՝ որ համարին թէ Հերովդէս՝ մոգուց Բեթլեհէմ երթալու ժամանակ՝ Երիքով երթալու համար ճամբայ ելած էր հիւանդութեան պատճառաւ, եւ ուր ժամանակ մի մնաց. այս կարծիքս Աւետարանի պատմածին հետ կատարեալ համաձայնի. վասն զի եթէ Հերովդէս յԵրուսաղէմ գտնուէր՝ մոգուց դարձին ժամանակ՝ հաւանականաբար նոքա զինքն հրեշտակին ազդեցութենէն յառաջ պիտի տեսած լինէին, եւ սակայն նորա խորամանգութիւնն ճամբուն առաջին հանգուցին իմացան 'ի հրեշտակէն. Հերովդեսի խելքն իր հիւանդութեան երթալով մոռցաւ մոգերն եւ նորածին մանուկն, որով նոքա ազատութեամբ

իրենց հայրենիքն դարձան, և սուրբ գերդաստանն ալ ժամանակ ունեցաւ Նազարեթի ճամբայն բռնելու, և յետոյ նաև փախչելու։

26 Այս ոսկեղէն շրջանակօք գնտերն մեր մանեկաւոր գնտերուն նմանէին՝ որք արևուն ելած ատեն շառաչմամբ թռուչէին. ինչպէս որ տակաւին երևին Ուլամ անուանեալ տեղն՝ ուր կ'եղը տացեալ ադամանդաւորք տաճար մի ունէին (Ռաբբի Բենիամին)։

27 Մոգք ասեն թէ 'ի ստորոտս Կովկասու լերանց և յեզերս Կասպից ծովուն՝ տեսակ մի արարածք կային Տեվ և Բէրի (Դև և Պարիկ) կոչեցեալ, Տեվք սարսափելի հսկայներ էին, իսկ Բէրիք խաղաղասէր իմաստունք. սոքա այժմ երկրիս վերայ իշխեցող մարդկանցմէ յառաջ ստեղծան։ Տեվք եօթն հազար տարի իշխեցին աշխարհիս, իսկ նոցա յաջորդքն Բէրիք երկու հազար տարի. արաբացիք բոլորին միասեռ ճին անունն տան որ է հոգի. ըստ մոգուց Բէրիներու բնակած երկիրն Ճինիստան կոչի՝ որ յոյժ գեղեցիկ երկինք մի ունի, և բաղդք և ճակատագիրք բնակեն հոն։ Այս հզօր էակներս հրամայէին համագոյից, կարգադրէին զտարերս և ինչ որ ուզէին ստեղծէին։ Բաղդք անդամանդ շատ սիրելուն՝ Ճինիստանի մայրաքաղաքն բոլոր անդամանդէ շինուած էր, և դիւթական գաւազանի մի զարնուածքով անդամանդք, յակինթք, ոսկի, կիճք և բիւրեղք պատուականք ինքն իրենց կտրուելով կոկուելով կամարներ ձևանային, և ականակիտ ջուրք մշտադալար խոտոց և յարագուարճ ստուերաց մէջ ընթանային. որ բոլորն ալ արևելեան երևակայութեան ըստեղծաբանութիւններ են։

## ԳԼՈՒԽ ԺԲ.

### *Տեառն ընդ առաջ, Մաքրութիւն Մարեմայ.*

Փրկչին ծնանելէն քառասուն օր ետև՝ Կոյսն եկն 'ի տաճարն Երուսաղէմի, հնազանդելով պատուիրանի գրոցն Ղևտացւոց՝ որ հրամայէր զսրբութիւն մարց և զփրկանաւորութիւն անդրանկաց։ Անտարակոյս այս օրէնքս ոչ պարտաւորէր զՄարիամ որովհետև Հոգւոյն Սրբոյ մաքուր հարսն՝ անկարօտ էր մաքրութեան. բայց սակայն ինքն իւր խորին իմաստութեամբն հանդերձ՝ մովսիսական օրէնքն ոչ դատէր այլ կատարէր։ Եւ ոչ միայն ոչ յայտնէր աշխարհի զգերահրաշ եղանակ կուսական մայրութեանն՝ այլ նաև երբեակ քօղով զայն ծածկելով՝ ուզեց խոնարհութեամբ հասարակ կանանց կարգն անցնիլ, յիշեց իւր պարտքն իբրև դուստր Սիոնի, և զնոսին կատարելու համար՝ մոռացաւ առ վայր մի աստուածամայրութեան առանձնաշնորհութիւններն. «*Շնորհք զՄարիամ գեր 'ի վերոյ օրինացն կարգեցին*, ասէ Սուրբն Աւգոստինոս, *իսկ խոնարհութիւն ընդ] օրինօք դասեաց զնա*»։

Երբ Յովսէփ և Մարիամ այն նուիրական շրջապատն մտնելու վրայ էին՝ փրկանաւորութեան արծաթի դրամն 'ի ձեռս զոհի աղաւնեաց հետ միատեղ, սուրբ ծերունի մի Սիմէոն [1] անուամբ՝ որուն Աստուած յայտնել էր որ զՕծեալ Տեառն չտեսած պիտի չմեռնի՝ ազդմամբ հոգւոյն Աստուծոյ գաւթէն ներս մտանէր, և այն սուրբ գերդաստանն տեսածին պէս՝ արդարոյն աչքն լուսաւորեցան և ծանեաւ որ այն ցնցոտեաց մէջ խանձարրուած աղքատ մանկիկն՝ ինքն իսկ Մեսիա Թագաւորն էր. ուստի մօրն գրկէն առնը-

լով՝ մինչև իւր աչքն բարձրացոյց, և սիրոյն եղած սկըսաւ դիտել զնա՝ ուրախութեան առատ արցունք թափելով իւր պատկառելի այտերէն վար, և արտասուաթոր աչքն յերկինս դարձնելով եռանդեամբ գոչեց. « Արդ արձակեա զծառայս քո, Տէր, ըստ բանի քում 'ի խաղաղութիւն, զի տեսին աչք իմ զփրըկութիւն քո՝ զոր պատրաստեցեր առաջի ամենայն ժողովրդոց: Լոյս 'ի յայտնութիւն հեթանոսաց, և փառք ժողովրդեան քում Իսրայելի »: Զայս ասելով օրհնեաց Սիմէոն այն ամուսիններն, և առ Մարիամ դառնալով՝ ծանր և տխուր լռութենէ մի ետև ասաց՝ թէ մանուկն այն ծնեալ էր 'ի կանգնումն և 'ի գլըրումն բազմաց, և մարդկանց ապիրատութեանն նըպատակ պիտի լինէր, և ցաւն սայրասուր սուսերի պէս մօրն սիրտն պիտի թափանցէր:

Այս անակնկալ գուշակութիւնս փայլակի պէս Քրիստոսի ազգական կենաց վերայ տխրագին լոյս մի ձգեց, և նախատինքն, չարչարանքն և խաչին վերայ քաշած հոգեվարքն Սրբոյ Կուսին աչաց առջեն նկարուեցան, որ ծերունւոյն մահաբեր խօսքերն լսելով՝ իբրև մրրկալից հովի դիմաց ծռեց իւր գլուխն, և իւր սիրտն՝ յորում անձայն մարտիրոսութեան տեսարան մի կը կատարուէր, նոյն զգացումն ունեցաւ՝ որպէս թէ կրակ կտրած երկաթ մի յուշիկ մըտնէր ողջ և արիւնոտ մարմնոյն մէջ [2]: Եւ սակայն Մարիամ ինչ որ յԱստուծոյ գայր իրեն՝ առանց գանգատանաց ընդունէր. դեղնցած շրթունքն բացաւ և քամեց մինչև ցմրուրն այն դառն բաժակն լեղւոյ և օշնդրի, և արցունքն սրբելով ասաց քաղցրութեամբ. Եղիցին կամք քո, Տէր: « Եթէ կարելի լինէր, ասէ Սուրբն Բոնավէնտուրա, ինքն իր յանձին ընդունէր զչարչարանս և զմահ Քրիստոսի. բայց Աստուծոյ հնազանդելու համար՝ այլ աւելի մեծ ընծայ մի նուիրեց իրեն՝ իւր երկրպագելի որդւոյն կեանքն, մե-

ծագոյն ևս ցաւով տխրելով և յաղթելով այն կաթողին սիրոյն՝ զոր ունէր առ որդին իւր »: — Նոյն ատեն վերայ հասաւ և կին մարգարէ մի Աննա անուամբ որ Ասերայ ցեղէն Փանուէլի աղջիկն էր. և այրի մնալէն 'ի վեր ոչ երբէք մեկնէր 'ի տաճարէն, այլ պահօք և աղօթիւք պաշտէր զցայգ և զցերեկ, որ և տեսնելով այն աստուածային մանկիկն՝ ուրախութեամբ սկսաւ օրհնել զԱստուած, և խօսէր զնմանէ ընդ ամենեսին որ ակն ունէին փրկութեանն Իսրայէլի: Ուստի շատ յարմարապէս այսպէս խօսի Սուրբն Ամբրոսիոս. « Ծնունդ Քրիստոսի քարոզէն ոչ միայն հրեշտակք և մարգարէք և հովիւք, այլ և արդարք և հինաւուրցքն Իսրայէլի զնոյն ճշմարտութիւն հռչակեն. երիտասարդք և ծերք արք և կանայք տան վկայութիւն հաւատոյս հաստատելոյ այնքան սքանչելեօք. կոյսն ծնանի, ամուլն 'ի լոյս ընծայէ զորդի, համրն բարբառի, Եղիսաբէթ մարգարէանայ, Մոգքն երկիր պագանեն. և մանուկն տակաւին յարգանդի մօրն փակեալ՝ տայ զնշան ցնծութեան. կինն այրի խոստովանի զգէպս զայս հրաշալիս, և ծերունին արդար ակնկալէ նմին »:

Որովհետև 'ի վերջին գաւիթ տաճարին՝ կանայք չէին կարող մտանել՝ որով և Մարեմայ ալ արգիլուած էր, և մանուկն մանչ լինելուն համար Աստուծոյ նուիրուելու էր, ուստի Յովսէփ իր գիրկն առնելով տարաւ անդրանկաց սրահն, միտքն դնելով թէ տաճարին մտած ատեն Սիմէոն ծերունւոյն հանդիպելով ինչ զարմանալիք որ եղել էին՝ նոյնն պիտի հանդիպէր նաև Յիսուսի այն սրբավայրն մտած ժամանակ՝ երբ հանէին քահանայապետից սրտէն. բայց մանուկն աստուածային սքանչելիք մի չյայտնեց, և Արեգակն արդարութեան իւր նորանշոյլ ճառագայթներն հոն տեղն սփռած ժամանակ՝ ամեն բան իր նախկին ցրտութեան և մթութեան մէջ մնաց: Անծանօթ

զրհագործ մի առանց մտադրութեան ընկալաւ խեղճ արուեստաւորին փապարեալ ձեռքէն օրինաց հրամայած երկչոտ աղանիններն՝ զինքն անարգ մարդ մի համարելով, իսկ Քրիստոսի վերայ և ոչ աչք մի դարձուց: Արծաթսիրութիւնն՝ այն անամօթ կռապաշտութիւն՝ որ զինքն ծածկէ եթէ սակաւ մի ամօթ մնացած է իր վերայ, ընչաքաղցութիւնն ասեմ՝ գայլախազ քարերու պէս պնդացուցել էր հրէից ժողովրդապետաց շատերուն՝ չար անձնասէր և անգութ սրտերն [3]: Առաքինութեան գործադրութիւնն և չքաւորութիւնն՝ հասարակ ղևտացւոյ [4] սեպհական համարելով՝ իրենք առանց ակնարկ մի և ս տալու անցանէին՝ իրենց տանց կճեայ սեմոց վերայ անկեալ աղքատաց քովէն և կամ ոյք աւազակաց ձեռքէն մահացու վէրք առած հեծէին, և երեսնին միւս դին դարձուցած ճամբայն յառաջ տանէին՝ առանց գութ զգալու այն խեղճերուն վերայ. վերջապէս ոչ աստուածսիրութիւն ունէին և ոչ մարդասիրութիւն: Եւ ահա այս բանս էր որ Տէրն մեր՝ գթութեան և սիրոյ քահանայութեան կարգն հաստատողն, նոցա երեսն զարնելով սուր և սուրբ երգիծանօք յանդիմանէր Սամարացւոյն գերազանց առակովս: Եւ այս բանիս համար ալ Մաղաքիա մարգարէին ասացածին պէս Աստուած զիրենս անիծանէր մինչդեռ նոքա զնա օրհնէին, և իւր երեսն դարձուցել էր իր տաճարէն՝ զոր սակաւ ժամանակէն հռոմայեցւոց սրոյն և հրոյն պիտի մատնէր:

Այն եռանդն որ Մեսիայի Ներկայութենէն բորբոքէր իր երկու աշակերտաց սիրտն Եմմաուսի ճամբուն վերայ՝ յառաջ քան իրենց Տէրն ճանաչելն 'ի բեկանել հացին՝ ամենևին ազդեցութիւն մի չունեցաւ Ահարոնի սերնդոց սրտին մէջ, ինչպէս գարնանային արեգական ճառագայթներն Արարատայ գագաթան մշտնջենաւոր սառոյցներուն վերայ. և այն վայրկեանն որ հրեշտակք շուրջ զանթառով Անմահին լաե-

ցընելով իրենց աւելուխ երգերն՝ աչքերն յառած հայէին տիեզերաց մէջ կէտի մի վերայ, այն վայրկեանն զոր Անգէոս գուշակած էր թէ երկրորդ տաճարին փառքն քան զառաջինն պիտի գերազանցէր, այն վայրկեանն ասեմ առանց իմացուելու անցաթռաւ ըմբռնացւոց և օրէնսուսոյց վարդապետաց աչքէն. Ոչ ոք ծանեաւ Մաղաքիայ գուշակած անբիծ և անարատ պատարագն: Անկալութիւնն հեթանոսաց՝ որում առջևէն հանդերձեալ պատրաստեալ էին հրեշտակք զճանապարհ նորա, խոստացեալ և ցանկացեալ Փրկիչն եկեալ հասեալ էր անդր մարմնաւորապէս 'ի տաճար իւր սուրբ. և ոչ ումեք փոյթ էր ընդունել զնա ստոյգ արմաւենեօք գոչելով 'ի ձայն ցնծութեան յաղթարակաց և 'ի տանեաց Երուսաղէմի Ովսաննա որդւոյ Դաւթի: Վասն զի այս ազգ մարդիկ իրենց անձնական շահուն յարմար Աստուած մի կամէին; Աստուած մի որ գերի լինէր Սինհեդրիոնին [5] (Խորհրդարանին), Աստուած մի ծածկեալ 'ի ձորձս ներկեալս յարիւն Աղեքսանդրի:

Իսկ աստուածային մանուկն նոյն ատեն քաղքին մէջէն անցած ժամանակ՝ տեսանէր իւր չարչարանաց և փրկագործութեան տեղերն, և այն քահանայից ամբոխին մէջ լռութեամբ համրէր զնոսա որ իրեն դահիճներն պիտի լինէին, և այն տաճարին պաշտօնէից առ Յաւիտենականն երգած սաղմաց և քնարից ձայներուն մէջ՝ լսէր այն յանդուգն և չարագուշակ աղաղակներն որ քանի մի տարիէն ետև վայրագութեամբ պիտի գոչէին 'ի խաչ հան, 'ի խաչ հան:

Տուն Աճարանի ո՞ւր ես հիմա: Խաչեցելոյն վրէժխնդիր շունչն՝ իբրև զմղեղ յարդի ցանեց ցրուեց ըզքեզ ընդ չորս կողմանս երկրի. և դու որ ազգիդ ուրիշ ցեղերն արհամարհէիր՝ նոյն իսկ քու տարագրութեանդ ընկերներն զքեզ ոչ ճանաչեն և յայլ ցեղէց ոչ որոշեն: Բայց նոյն ատենն՝ այս ապագայ թշուա-

ռուլթեանց վերայ մտածող չկար՝ որ արդէն իրենց գլխոյն վերայ սև ամպերու պէս սկսել էր գումարիլ. և զոհագործք երրայեցիք մատուցանէին Աստուծոյ մեծամեծաց և ռամկին այն ընտիր զոհերն՝ զորս Աստուած մերժէր: Ուստի մինն 'ի նոցանէ առաւ Յովսեփայ ձեռքէն աղաւնիներն և բոպիկ ոտքով ելնելով ողջակիզաց սեղանին զնստագոյն վերելիցն 'ի վեր մատոյց Աստուծոյ այն աղքատիկ և պարզիկ զոհն:

Յովսէփ և Մարիամ Աստուծոյ այս պատուէրս կատարելէն ետև, ասէ Սուրբն Ղուկաս աւետարանիչ, դարձան 'ի Գալիլեա 'ի քաղաքն իւրեանց Նազարէթ [6]:

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ԺԲ. ԳԼԽՈՅ

1 Արաբացիք տան Սիմէոնի զմակդիրս Սոփբէ որ է հաւատա-րիմ և հաւատարմացնող, որովհետև վկայեաց ճշմարիտ Մե-սիայի գալստեանն յանձին Յիսուսի որդւոյ Մարիամու, զոր ա-մենայն հաւատացեալք պարտին այնպէս ընդունել (տե՛ս Էրպլյ Մատենադարան արևել. հտ Գ.)։

2 Այս նիւթոյս վերայ ասէ Սուրբն Անսելմոս. Ո՜վ իմս Թա-գուհի, ես չեմ կարող հաւատալ թէ դուն վայրկեան մի ևս կա-րէիր ապրել այս ցաւօքս՝ եթէ Աստուած որ տուիչ է կենաց՝ չը-տայր քեզ նաև զօրութիւն տանելոյ այնմ։

3 Ռաբունիք հրէից միշտ այս սկզբան վերայ եղած են՝ թէ ով որ իր ոխակալութեան վրէժն չառնու՝ անարժան է ռաբբի կո-չուելու ( Պատմած գիրք Ը )։

4 Անհաւատալի բան էր Երուսաղեմայ քահանայապետաց շը-քեղութիւնն և ագահութիւնն. տէրք գիւղօրէից տասանորդն բո-լորովին իրենց սեպհականելով՝ թողուին որ հասարակ քա-հանայք թզով և ընկուզով միայն կերակրին. և թէ որ գանգատ մի առնէին՝ հռոմայեցւոց ձեռքն մատնէին զնոսա՝ որպէս խռո-վարար և ապստամբ։ Փելիքս դատաւորն 'ի նոցանէ քառասուն հոգի բանտարկեց ժողովրդեան իշխաններուն հաճելի լինելու համար (տես Յովսեպոս և Պատմած գիրք Ա գլ. 4)։

5 Պատմած գիրք Զ գլ. 25։

6 Կուսին մաքրութենէն և Տեառն մերոյ 'ի տաճարն բերուե-լէն ետև դրինք սուրբ գերդաստանին 'ի Նազարէթ երթալն՝ ըստ մտաց Սրբոյն Ղուկայ և Ոսկեբերանի և այլոց երևելի մեկ-նիչաց. որովհետև այսպէսով միայն կարեմք համաձայնել զՍուրբն Մատթէոս՝ որ 'ի տաճարն ընծայուելուն վերայ բան մի ոչ ասէ, Սրբոյն Ղուկասու հետ՝ որ անմեղ մանկանց կոտորածին և յեգիպտոս փախչելուն նկատմամբ ոչ խօսի ամենևին։ Սուրբ Ոսկեբերանի խօսքն այսպիսի են. « Եւ զինչ ասասցուք առ 'ի միաբանելոյ զերկոսին աւետարանագիրսն, բայց զի դարձն 'ի Նա-զարէթ յառաջ էր քան զփախուստն յեգիպտոս։ Եւ զի Ա-ստուած ոչ յառաջ քան զսրբութիւնն հրամայեաց Յովսեփայ և Մարեմայ գնալ յեգիպտոս, զի մի իւիք օրէնքն այն լուծցին։ Այլ իբրև կատարեցին զօրէնսն դարձան 'ի Նազարէթ ինքնա-յօրդօրք, ուր և ընկալան զհրաման փախստեամբ երթալ յԵ-գիպտոս »։

# ԳԼՈՒԽ ԺԳ.

## Փախուստ յԵգիպտոս.

Յովսէփ և Մարիամ հաղիւ հասեալ էին 'ի սառրինն Գալիլեա՛ ստիպուեցան այլ աւելի երկայն և վըտանգաւոր ուղևորութեան մի ձեռք զարնել, որոյ վախճանն լինելոց էր երկիրն աքսորանաց։ Գիշեր մի հրեշտակ Տեառն քնոյն մէջ երևեցաւ Յովսեփայ և ասէ. « Արի առ զմանուկդ և զմայր իւր՝ և փախիր յԵգիպտոս, և անդ լինիջիր ցորժամ ասացից քեզ. քանզի 'ի խնդիր է Հերովդէս կորուսանել զմանուկդ »։ Այս խօսքէս Յովսէփ զարհուրած շուտ յարեաւ և երկիր պագանելով կամաց բարձրելոյն՝ վազեց գնաց զարթուցանելու զՄարիամ որ նինջէր զքաղցր և զթեթև քուն հրեշտակաց իւր զաւկին որրանին քով։ Նորահաս մայրն անմիջապէս հասկացաւ այս անյապաղ և գաղտ փախստեան պատճառն։ Տագնապալից ակնարկ մի տուաւ որդւոյն, արտորնօք ժողվեց հաւքեց սակաւ մի ճամբու պաշար, տղուն խանձարուրքն, իրեն հարկաւոր հագուստն, և զաւակն գիրկն առած սկսաւ Յովսեփայ ետևէն երթալ իւր ծննդեան քաղքէն հեռանալով՝ ուր ամենքն դեռ քուն էին՝ աստղալից գիշերոյ լռութեան։

Սիմէոնի նախագուշակութիւնքն յոյժ կանուխ սկսան ստուգուիլ. ծնած չծնած բռնաւորին հալածանքն հասանէր Յիսուսի որրանին վերայ, և իւր այն անբիծ մանկամարդ և սուրբ մայրն ստիպուէր գիշերանց փախչիլ յանցաւորի մի պէս, ուրիշ օգնական չունելով բաց 'ի այն ծերուկէն՝ որ լերանց կրճից մէջ պահուըտած արաբացւոյն տէգին նիզակին դէմ դնելու քաջութենէ և աղաչանքէ զատ ուրիշ բան

չուներ, նոյնպէս նաև թերևս Հերովդեսի արիւնարբու զօրաց դէմ՝ որ անշուշտ իրենց ետևէն պիտի անկանէին: Եւ կարծես թէ Աստուած ինքնին այս սուրբ ընտանիքս ճակատագրին ձեռքն մատնած էր. որովհետև հրեշտակն փախչելու հրամանն տալու ատեն Յովսեփայ՝ չխոստացաւ ճամբուն մէջ զիրենք պաշտպանելու, ուստի իմացաւ որ դեռ Քրիստոսի զինքն յայտնելու ժամանակն հասած չէր, և Աստուած միայն պարզ հնարքով և մարդկային խոհեմութեամբ կամէր զինքն ազատել Հերովդեսի դարաններէն: Ուստի բոլոր այս դժուար ձեռնարկութեանս հոգն ու խնամքն Յովսեփայ յանձնուած էր, և իրեն պէս աղքատ և անծանօթ ծերու մի անկաներ՝ այն բռնաւորին չար խորհուրդներն ցրուել, դարաններէն զգուշանալ, և պարապ հանել կասկածոտ բռնաւորին արթուն հսկողութիւններն, որ իւր կամքը կատարել տալու հազարաւոր սրիկայներ ունէր ձեռքն: Եթէ Երուսաղէմայ ճամբուն վերայ այս չարագործներէն ոմանց հանդիպէին ինչ կարէին առնել: Մոգերու լռիկ մնջիկ և աճապարանօք մեկնելովն Հերովդէս այլ աւելի անձնապահ և զգուշաւոր եղած էր, և իւր կասկածներն աւելցած էին Սիմէոնի և Աննայի խօսքերովն. արդէն ծածուկ լրտեսներ դըրուած էին ամեն տեղ և գաղտնի խուզարկութիւններ լինէին. և ո՛ գիտէ մինչև ո՛ւր կարէր հասնել այն արիւնախանձ իշխանին չարութիւնն՝ որ մարդասպանաց ձեռքն ոսկւով լցուցանէր: Յովսէփ որչափ որ մտածէր այս բանս՝ այնչափ աւելի վախ գայր իրեն սարսափելի դաւաճանութենէ մի, և այն անստոյգ կասկածանաց երկիւղն՝ արիւնն երակաց մէջ սառեցընէր: Մարիամ ալ գոյնն նետած և անխօս մեռելոյ պէս իւր երկչոտ աչքն դարձուցանէր հովիտներու խորերն անտառացներսերն և այն ապառաժ և դըժուարագնալի ճանապարհներուն լուռ և ամայի անց-

քերն՝ զորս ծերունին՝ ո՛չ լաւ և ապահով համարե-լով բանել էր՝ մարդկանց բնակութենէն մէջա հեռու փախչելով։ Լուսինն իւր քաղցր և մթնշաղ լուսովը լուսաւորէր իրենց անձայն և սուսիկ փուսիկ ուղևո-րութիւնն՝ զոր արևելից գեղեցիկ և զմայլելի երկինն իւր կապտագոյն քօղովը ծածկէր։

« Եղանակն դեռ ցուրտ էր [1], և Պաղեստինն կըտ-րելու անցնելու համար՝ սուրբ գերդաստանն ստի-պել էր՝ ամայի և դժուարակոխ ճամբայներէն անց-նիլ. հապա գիշերն ուր պիտի գտանէին ապահով տեղ սակաւ մի հոգնութիւն առնլու համար, և ուր պիտի գտանէին կերակուր զօրանալու համար [2] »։

Աւանդութիւնն այս սրտաշարժ և վտանգաւոր ճամբորդութեան շատ պարագայներն լռէ. բայց տա-րակոյս չկայ որ այն սուրբ ուղևորներն շատ դժուա-րութիւն քաշած են այն լերանց կիրճերէն անցած ժամանակ, կանուխ մութն 'ի լուսուն ճամբայ ելնե-լով, և շատ անգամ լուսնին ելնելուն սպասելով որ ճամբայնին յառաջ տանին։ Քանի որ Գալիլեայի մէջ էին՝ հոն յաճախ գտնուող խոր և ծամածուռ քա-րայրներուն մէջ՝ ուր դիւրին էր մարդկանց աչքէն ծածկուիլ՝ իրենց բաւական հանգստեան և ապաս-տանի տեղ գտանէին. Թէպէտ և հոն ալ վտանգներն պակաս չէին. վասն զի բազմաթիւ հուղկահարներ՝ որ երկայն ատեն տէրութեան զօրաց հետ կռուե-լով և Հերովդեսի հիւանդութեամբ նորէն սիրտ առնլով դարձեալ երևան ելել էին [3], այն քարայր-ներն ընտրած էին իրենց ապաստան. և անշուշտ շատ անգամ Յովսէփ վախցած է այն տեղերն մտնելու և ապաւէն մի բռնելու այն այրերուն մէջ՝ գիտելով որ շատերն աւազակաց բնակարան էին։

Վերջապէս հազար վտանգներով և բիւր նեղու-թեամբ այն սուրբ ընտանիքն անցաւ Երուսաղեմայ մօտերէն. բայց զգուշութիւններն և անհանգստու-

Թիւններն ալ աւելցան՝ որովհետեւ վտանգներն ալ աւելի շատ էին. ուղեւորներն ոչ համարձակէին քաղաքներու և մարդաշատ աւաններու մօտենալ՝ ուր որ լրտեսից և մատնչաց խուժերն վխտային, և օտարականներն յաչաց նոցա ոչ վրիպէին. ուստի հարկ եղև որ ցամքած հեղեղատներու մէջէն անցնին, անանց և ամայի ճամբաներ բռնեն կամ անտառաց թաց և խոնաւ անցից մէջ մոլորին, և ոչ իսկ սակաւ մի պաշար ճարելու համար կարենալով հեռանալ այն տեղերէն՝ վախէ ցրտէ և սովէ ալ տանջէին: Արդէն Անաթոլիա քաղաքն անցել էին և իրենց ընթացքն դէպ 'ի Իտալիա ուղղէին՝ Ասորեաց դաշտավայրն իջնելու համար, և որպէս զի ժամ մի յառաջ ազատին այն վըտանգաւոր տեղերէն՝ գիշերոյ ժամերն ալ գողնային, և ահա մութ անդունդէ զինեալ մարդիկ դուրս ելին և ճամբայն արգիլելով ոչ թողուին յառաջ երթալու. և այն որ աւազակաց գլխաւորն երևէր իւր ընկերներէն զատուելով յառաջ անցաւ տեսնելու թէ ո՛ էին այն ուղևորներն. Յովսէփ և Մարիամ զարհուրած իրարու երես նայէին. իսկ Յիսուս իւր մօր գիրկն 'ի քուն լինէր: Աւազակապետն որ գայր նոցա կեանքն կամ ոսկին առնլու՝ զարմացմամբ նայեցաւ այն անզէն ծերուն վերայ՝ որ ճիշդ նահապետաց նմանէր, և այն սքողեալ կնոջ դառնալով՝ որ այնչափ ցաւագին կերպով իր գրկաց մէջ սեղմէր զաւակն՝ որ կարծես թէ իր սրտին մէջ կամէր ծածկել զնա, սոքա աղքատ մարդիկ են, ասաց ինքն իրեն, և փախըստեան պէս գիշերանց ուղևորին:... Ո՞ գիտէ թերևս ինքն ալ զաւկի տէր էր, թերևս Յիսուսի և Մարեմայ վերայ տեսած քաղցրութիւնն և մորմոքն իւր անագորոյն սրտին գթութիւն ազդեց. ուստի իր տեգին սայրն գետին ծռելով՝ ալ խաղաղութեան մատոյց Յովսեփայ, և այն գիշերն հիւրընկալեց զերենք իր դղեակն՝ որ գիշատիչ թռչնոց բոյնին պէս ժայռի

մի դուրս ցցուած անկիւնն չինուած էր։ Ուղեւորներն անմեղ վստահութեամբ նորա հիւրասիրութիւնն ընկալան, և աւազա՛նին բնակարանն արաբացւոց հիւրընկալ վրանին պէս ժողովեց զիրենք այն գիշերն [4]։ Հետեւեալ օրն այն սուրբ ընտանիքն արմաւենեաց և ժանտաթզենեաց ընդարձակ անտառի մի մէջ՝ կէս օր ժամանակ սակաւ մի հանգիստ առին՝ Իսամլայէն [5] սակաւիկ ինչ հեռու, և տէրն երկնի և երկրի անոյշ քուն մի քաշեց մրտենօք նարկիսենօք և հողմավարդիւք զարդարեալ գետնոյն վերայ․ որովհետև օդին ջերմութիւնն, թռչնոց դայլայլիկն, խոտոց անուշահոտութիւնն, թզենեաց շուքն և հեռի աղբիւրի մի դըղչիւնն մանկան քուն բերաւ։ Սակաւ մի յոգնութիւն առնըլէն ետև՝ որոյ վայրկեաններն համրէին՝ նորէն ճամբայ ելին, ոչ գիտեմք ինչ պատճառի համար ստիպուեցան Բեթլեհէմ քաղաքն մտնելու, և սակայն աւանդութիւնն այսօր յիշատակն պահած է, և քրիստոնեայք սեղա՛ն մի կանգնեցին այն այրին մէջ՝ ուր պատսպարեցաւ Մարիամ իր զաւկով [6], երբ Յովսէփ բաժնուելով եմուտ 'ի քաղաքն․ կամ իմանալու համար թէ երբ էր կարաւանին ելնելու ժամանակն, և կամ Աստուածամօր հեծած գանգաղ էշըն ուղտի մի հետ փոխելու որ անապատն անցնելու համար յոյժ կարեւոր էր։ Բեթլեհէմ քաղաքն ամենէն վտանգաւոր տեղն էր, կամ թէ ասեմք հրաբըղխին խառնարանն, ուստի սակաւ մի ժամանակ միայն մնալով հոն՝ աճապարեցին հասան փղշտացւոց ծովեզերեայ քաղաք մի, որպէս զի Եգիպտոս գնացող առաջին կարաւանին հասնին որ ճամբայ ելնելու վերայ էր։

Եթէ ժամանակագրաց ճիշդ և հմուտ հաշուոցն հետեւիմք՝ որ ասեն թէ այս երկոյն ուղեւորութեան մէջ տեղ մի կեցած չեն՝ անշուշտ Ասորեաց ծովեզերքն գնացող կարաւանի մի հանդիպած պիտի ըլլին։ Եւ

այնչափ աւելի հաւանական է այս կարծիքս՝ որովհետև՝ գարնանային գիշերահաւասարն մօտ էր, և ամեն մարդ փութայր յառաջագոյն իւր տեղն հասնիլ՝ քանի որ չէր սկսած փչել սիմուն կամ սամ կոչուած խորշակն որ զանապատն տակնուվերայ առնէ՝ որով և այն աւազոյ ծովն՝ նոյն իսկ Ովկիանոսի ալեաց հաւասար վտանգաւոր և անգութ է[7]: Թէպէտ և Հերովդեսի կատաղի հալածանաց մահաբեր երկիւղէն և կասկածէն սակաւ մի հանգարտեցան այն խեղճ ուղեւորներն, սակայն ճամբորդութեան երկրորդ մասին հոգնութիւնն, վիշտերն և երկիւղն առջինէն պակաս չէին: Երբ Գազայէն դուրս ելլին՝ որուն փլած փլփըլկած աշտարակներն ծովուն ալեաց ահարկու արձագանքն կրկնէին՝ իրենց առջին ուրիշ բան չտեսին՝ բայց եթէ աւազոյ անեզր անապատ մի տխուր և ահարկու մերկութեամբ՝ որուն մէջ խորշակին փչելովըն ակօսներ բացուէին՝ տօթակէզ երկնից ներքև. բոյս ասացեալ բանն ամենևին ոչ երևէր՝ բաց 'ի ցախի վտիտ ճիւղերէն որ աւազուտ բլրակներու վերայ աստիս անդին բուսնէին. Ջուրն ալ աւազոյ ցած տեղերն ժողոված աղի ջուրն էր, և որովհետև Մարիամ և Յովսէփ աղքատ մարդիկ էին և պաշտպան մի չունէին՝ այն ջրէն ալ մի առնլոյ և զովանալու համար՝ հարկ էր սպասէին որ հարուստ վաճառականներն և իրենց գերիներն և ուղտերն կշտանային, որով իրենց ուրիշ բան ոչ մնայր՝ բայց եթէ պղտոր և աղմալից ջուր մի, և այն այնչափ սակաւ՝ որ ափ մի հազիւ լեցնէր: Որչափ որ Ասորեաց սահմաններէն հեռանային՝ ծարաւն ալ այնչափ սաստկանայր, և առուակներն ալ նոյնչափ նուազէին: Երբեմն հեռուէն ընդարձակ դաշտի մի մէջ Տիբերիոյ ծովակին պէս պայծառ և կապուտակ լիճ մի տեսանէին. և այն վճիտ ջրերուն վերայ երկինքն հայելւոյ պէս երևէր՝ մօտն ալ արմաւենի մի մենաւոր. ուղևորներն երբ

տեսանէին զայն՝ ցնծութեան աղաղակներով իրենց ուղտերուն դէպ 'ի հոն վազէին. Մարիամ ալ իւր նուաղեալ թալացեալ գլուխն վեր վերցընէր՝ երկայն երաշտէ և խորշակէ թուլցած Սահարոնի վարդի մի պէս։ Երբ զիրենք հասած կարծէին այն երանեալ լըճին մօտ՝ մտքերնին դնելով որ հիմա պիտի ըմպեն զօրանան, ով թշուառութեանս կարծես թէ չարաճճի սատանան այն լիճն ապարէզ մի ևս անդին տանէր՝ իւր տեղն ուրիշ բան չթողլով բայց եթէ բոցակէզ աւազ մի[8]։

Երեկոյին կարաւանն հանգչէր, ուղտուց բեռներն վար առնլով՝ զիրենք կլորակ շարուած կապէին՝ աւազին մէջ ցիցեր զարնելով. վաճառականներն ալ կաթով և արմաւով ճաշելէն ետև՝ իրենց թաղեայ վրաններուն ներքև 'ի քուն լինէին՝ մինչև լուսնին ելնելն։ Իսկ գերիներն և աղքատ ուղևորներն՝ յորոց միջի էին նաև Աստուածորդին, Աստուածամայրն և Յովսէփ, գետին փռած փսիաթին վերայ նստէին, և իրենց վրանն երկինքն էր, և գիշերուան ցուրտ հողմէն տաքէն և աշխատանքէն տկարացած մարմիններին դողայր և սարսէր[9]։ Շատ անգամ ալ վայնասուն և իրար անցում մի բրդէր. վասն զի անապատին արաբացիքն կարաւանին քուն եղած ժամանակ՝ աստեղաց մթնշաղ լուսովն աւարելու յարձըկէին, և կարկտի նըմաններած նետերն՝ որով շատ մարդ վիրաւորուելով ցաւագին կանչուըռտէին՝ իրենց ետ դառնալու նշանն էր։ Մատաղ Կոյսն որ իւր մարմնով ծածկէր և պատըսպարէր իւր պաշտելի զաւակն՝ արտասուալից աչքն և ահուդողով դեղնցած ճակատն դէպ 'ի յերկինս վերցընէր. վասն զի լաւ գիտէր թէ իւր Յիսուսն ալ կարէր մեռանել որպէս յետինն յորդիս մարդկան։

Իսկ երբ լուսինն տարածէր իւր աղխատակ լոյսն այն անձայն և անստուեր անապատին վերայ՝ ուր միայնութեան հողմիկն և ոչ խոտի ծղօտ մի գտանէր այլ

մը հանելու, վրաններն ժողվէին ծալէին, և նորէն սկսանէին այն ոգեսպառ ճամբայն՝ այն ամեն նեղութիւններով և վախերով զորս առջի օրն կրել կամ կասկածել էին։

Վերջապէս հասան այն նշանաւոր և խորհրդաւոր երկիրն որ էր Եգիպտոս, որ ամեն գիտութեանց և ամեն ազդ դիցապաշտութեանց բոյնն էր, վարդագոյն կրանիթեայ կոթողներով, արծնած պողպատէ[10] գագաթներ ունեցող մեհեաններով և հսկայաշէն բուրգերով զարդարուած՝ որ ուղեւորաց զարմանք բերէին. իր գիւղերն ալ կղզեաց նմանէին՝ որոց մէջէն անցանէր իր հրաշալի գետն շամբերով պատած և նաւակներով ծածկուած։ Իրաւ քան զՀրէաստան աւելի հարուստ բազմամարդ և վաճառաշահ երևէր, բայց ինչ օգուտ, ոչ ապաքէն այն չէ՞ որ աքսորանաց երկիր էր, մինչդեռ հայրենիքն անապատին անդին կողմն էր, ուր թողել էին իրենց սիրուն Իսրայելի աքսորականքն։

Հարիւր քառասուն փարսախ[11] ճամբորդութիւն առնելէն ետև՝ մեր փախստականներն հասին յԵլիոպօլիս (Արեգ. քաղաք) որ Մովսիսի ծնած քաղաքն[12] էր, և ուր իրենց ազգէն գաղթական մի բնակէր. հոն տաճար մի ալ կար Աստուծոյ կենդանւոյ՝ զոր Ոնիա շինել տուել էր Երուսաղեմայ տաճարին ձևովն, և նոյն իսկ զարդերն ալ անոր նման էին. միայն ստորնագոյն լինելուն նշան եօթնաստեղն աշտանակին տեղ՝ կամարէն ձոյլ ոսկի կանթեղ մի կախած էր։ Այն քաղքին դրանն առջև՝ որոյ բնակչաց մեծագոյն մասն եգիպտացի և կռապաշտ արաբացիք էին, մեծապանծ ծառ մի կար պատկառուկի ցեղէն՝ որուն Նեղոսի ափունքն բնակող Եմենի արաբացիք՝ պաշտօն մատուցանէին[13]. երբ սուրբ ընտանիքն անոր մօտէն անցնելու վրայ էր այն նուիրական ծառն իր տերևալից ճիւղերն խոնարհեցուց՝ որպէս թէ ողջոյն տալով հա

մադոյից մանկիկ Տիրոջն որ Մարեմայ գիրկն էր[14] : Եւ եթէ հաւատամք Պալլադէս պատմագրի՝ երբ աստուածարեալ ուղեւորքն անցանէին Հելիոպօլսոյ գլխաւոր դրան կրանիթեայ կամարներուն տակէն՝ մերձաւոր մեհենի մի մէջ եղած ամեն դրօշեալքն բե-րանախիվայր անկան գլորեցան[15] :

Յովսէփ և Մարիամ արեգական քաղաքն չմնա-ցին, այլ անցին գնացին 'ի Մաթարիէ՝ որ գեղեցիկ գիւղ մի է, ժանտաթզենիներով հովանաւոր, ուր գտանի մի միայն անոյշ ջրոյ աղբիւրն բովանդակ Ե-գիպտոսի մէջ. հոն վերջապէս փոքրիկ տան մի մէջ՝ որ աղաւնեաց բոյներով լի էր՝ հանգիստ շունչ մի ա-ռին այն խեղճ ընտանիքն՝ Հերովդեսի վախէն ազա-տելով, որ ճիշդ նոյն ատեն դիւահարեալ և մոլեգ-նեալ՝ 'ի գործ դնէր իւր անագորոյն խորհուրդն՝ ան-մեղ մանկունքն կոտորելով[16] :

Արժանահաւատ և ծանրագլուխ մատենագրաց[17] շատերուն խօսիցն նայելով՝ որոց վկայեն նաև աւան-դութիւնն և ճշմարտանմանութիւնն, սուրբ ընտա-նիքն եօթն տարի բնակեցան յԵգիպտոս, որոյ և հետքն ալ մինչև ցայսօր երևին. այն վտակն ուր Մա-րիամ երթայր Յիսուսի մանկան զգեստներն լուա-նալու[18], այն ծառազարդ բլրակն ուր յարեւու փռե-լով չորացընէր, այն մոլաթզենին որոյ հովանւոյն ներ-քև ախորժէր նստել Տիրամայր կոյսն Աստուածոր-դւովն 'ի գրկին[19] դեռ մինչև հիմա կեցած են բնե-տաան դարերէ 'ի վեր. և ծանօթ են Եւրոպիոյ և Ա-սիոյ ուխտաւորաց, զորս Փարաւոնի յաջորդքն պա-տուով և մեծարանօք յարգեն. և իւրաքանչիւր տեղերն իրենց սեպհական աւանդական վէպերն ու-նին անցած ժամանակաց վերայ, ինչպէս որբաղան շէնքի մի աւերակներն իրենց խոնաւ և մամռապատ պատերուն վերայ՝ իւր յատուկ յիշատակարանն ու-նի[20] :

Մարիամ Նազարէթ եղած ատեն՝ անծանօթ աշխատասէր և չարքաշ կեանք մի ունէր, բայց ոչ գիտէր թէ ինչ են ատագնապողական քննադատութիւնն, տհաճելի երկիւղներն և ոչ աղքատութեան հետեւանք եղող խիստ և անընդհատ զրկմունքն. իսկ հոս Եգիպտոս յիրաւի տնանկութեան հնոցն անկաւ և խեղճութեան ամեն տեսակն կրեց։ Մոգուց ընծայ տուած ոսկին[21] հատնելով՝ հարկ եղև նոր աշխատանք բռնաւելու աւուր հացն ճարելու համար, զոր հեռի 'ի հայրենեաց գտնելն դիւրին չէ, և մանաւանդ այն ժողովրդեան մէջ որ ազգային և ժառանգական արուեստները բաժնուած լինելով՝ օտարազգեաց հաց ոչ թողուլին, և անարգութեամբ մերժէին զնոսա։ Ուստի Յովսէփ որդի Դաւթի և Զօրաբաբէլի՝ աւուրչէքով բանող հասարակ գործաւոր մի եղև. և Մարիամ դուստր թագաւորաց գիշերն ցերեկուան խառնէր իւր ամուսնոյն վաստկած նուաղ և անբաւական վաստակն լրացընելու համար։ Եւ աղքատ լինելուն համար, ասէ Սուրբն Բասիլիոս, յայտնի է թէ ծանր աշխատանաց զիրենք տուած են հարկաւոր պէտքն ունելու համար։ Այլ աւա՜ղ. արդեօք ունեցա՞ն մեչտ այն հարկաւոր եղածն ալ, արդեօք որչափ անգամ մանուկն Յիսուս անօթի եմ, հաց կ'ուզեմ ասացած ժամանակ իւր մօրն, այն խեղճն ուրիշ բան չունէր տալու իրեն՝ բայց եթէ իւր աչաց արցունքն և շրթանց համբոյրն և գգուանքն՝ տղուն անօթութիւնն մոռացընել տալու համար։

Բայց հրեշտակն Ամենակալի վերջապէս եկն վերջ տալու այս տառապանաց՝ զոր այնչափ քաջութեամբ և համբերութեամբ կրել էին. Յովսէփ երազին մէջ իմացաւ թէ Հերովդէս մեռել է. «Արի, ասաց նըմա հրեշտակն, առ զմանուկդ և զմայր իւր, և գնա յերկիրն Իսրայելի. զի մեռան որ խնդրէին զանձն մանկանդ». — Այս խօսքիս վերայ Յովսէփ ելնելով՝

առաւ տղայն և նորա մայրն, և նորէն անկաւ 'ի Ճանապարհ Իսրայելի երկիրն երթալու համար։ «Եւ իբրև լուաւ եթէ Արքեղայոս Թագաւորեաց Հրէաստանի փոխանակ Հերովդի հօրն իւրոյ, երկեաւ երթալ անդր. և հրաման առեալ 'ի տեսլեան՝ գնաց 'ի կողմանս Գալիլեացւոց»։ — Եւ այսպէս կատարեցաւ մարգարէին բերնով ասացեալ պատգամն «յԵգիպտոսէ կոչեցի[22] զորդի իմ»։

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ԺԳ. ԳԼԽՈՑ

1 Փետրուար ամսոյ կէսին ատեններն՝ յորում լեռնային կողմանք դեռ ցուրտ են, և բարեխառնութիւնն գրեթէ հաւասար է Փրանկիոյ ըստ Վոլնէյի. ուր ընդհակառակն Ասորեաց դաշտերն ամառնային տաքութիւնն տիրել սկսի (տես Դ գլխոյն 3 ծանօթութիւնն)։

2 Սուրբն Բոնավենտուրա Յաղագս կարգաց Փրկչական։

3 Այս զինեալ արեւմտեան խմբերն երբեմն մինչև երկու երեք հազարի հասնէին՝ կորիճ և փոքր մարդիկ իրենց առաջնորդ ունելով, շատ աշխատութիւն հասուցանէին Հերովդեսի զօրականաց և Հռովմայեցւոց. ոմանք քաղաքական նպատակաւ՝ ազդիս անդին զինուորաց հետ զարնուէին. իսկ այլք բոլորովին աւազակութեան համար միացեալ հրոսակներ էին, և իրենց զգեստուց ներքև ծածկեալ երկայն դաշոյններով մինչև Երուսաղեմայ փողոցներուն մէջ ևս ուզածնին զարնէին և սպաննէին (Յովսեպոս Յաղագս պատերազմին հրէից գիրք Բ)։

4 Այն տեղն ուր կատարուած է այս աւանդական դէպքս՝ մինչև ցայսօր ցոյց տան ուղևորաց՝ ուր երևին դեռ ևս աւազակին ամրոցին աւերակներն՝ որ տակաւին վախնալու տեղեր են։ Խաչակրաց ժամանակ փրանկք որ այս աւանդութեանս տեղեակ էին՝ համարէին թէ այն հուղկահարն կալուածատէր մի էր։ Ոմանք ալ այս վիպացս վերայ աւելի դիպուած մ'ալ յաւելլուն որ որչափ հարազատ ալ լիցի՝ մեք սակայն ոչ համարիմք, այսինքն ասի թէ այս հիւրընկալ հուղկահարն էր Քրիստոսի աջակողմն խաչուած բարի աւազակն Դիսմաս անուամբ՝ զոր յիշատակեն լատինք 'ի 25 մարտի։

5 Զուարճալի դիրք մի ունի այս տեղս՝ ուր աւանդութիւնն ասէ թէ սուրբ գերդաստանս հոն հանգչած լիցին։ Հիմա հոն երևին վանքի մի աւերակներն (Ողոմբ. 'ի Բորէղոյ յԵրուսաղէմ, հտ. Բ)։

6 Այս քարայրս Թօբայր Խոբի Կոսոբն կոչի, համարելով թէ Տիրամօր կուսական կաթէն կաթկթած է այն քարին վերայ՝ իւր Աստուածորդին գիեցուցած ատեն։

7 Արաբացիք անապատին մէջ փչած տաք հովն սիմում կամ սամ կոչեն որ թոյն ասել է, և հաց եփելու վառած փռէն դուրս

նկած տաքութեան պէս ազդէ մարդուս վերայ ։ Այս հովս շատ անգամ գիշերահաւասարներու ժամանակ փչէ յիսուն օր անընդհատ (Վոլնէյի Ուղևորութիւնն յԱսորիս) ։

8 Բնախօսք այս երևութիս կըներեւոյն անունն տան որ սաստիկ տաքութեամբ օդին անօսրանալէն յառաջ գայ . 1798 փռանկաց յԵգիպտոս արշաւած ատեն խեղճ զօրականք այն աւազակէզ անապատներէն ծարուած պապակած անցնելու ժամանակ՝ ստէպ խաբուէին այս պատրողական երևութէս՝ հեռու ջրի լճեր և ամբարներ տեսնելով . և երբ շունչերնին կտրած հասնէին հոն տեղն՝ լիճն աւելի հեռի փոխագրուած երևէր (տես 'ի Ֆելլէնս փռանկերէն mirage բառն յօդ . Ջ) ։

9 Այս եղանակիս մէջ օրն որչափ որ սարսափելի տաք է անապատին մէջ գիշերն ալ ընդհակառակն սաստիկ ցուրտ լինի ։

10 Հելիոպօլսոյ գլխաւոր տաճարին գագաթն փայլուն պողպատէ մեծ հայելի մի կար՝ որ արեգական ճառագայթներն անդրադարձնէր . նոյնպիսի հայելի մի ալ կար Աղեքսանդրիոյ փարոսին ծայրն՝ որոյ մէջ երևէին գեռ հորիզոնէն վեր չելած նաւուց պատկերքն ( Թղթակցութիւնք արևելից հտ . Ն . — Նամականի Սավարիի ) ։

11 Տես 'ի Պարա հտ . Ա գլ Ը . Ճանապարհորդութիւն Յիսուսի Քրիստոսի գրոց հեղինակն հարիւր փարսախ դնէ՝ անշուշտ ճամբուն գարձերն մոռնալով ։

12 « Որպէս ուսայ 'ի ծերոց եգիպտացւոց՝ 'ի Հելիոպօլսոյ էր Մովսէս » սաէ Յովսեպոս 'ի Բ գիրս ընդդէմ Ապպիոնի ։

13 Արաբացիք հետ զհետէ մոռանալով զԱստուածն Աբրահամու՝ նոյն ատեններն զանազան այլանդակ գրօշեալս պաշտէին . Իւլ Ազրաքի սաէ թէ Քողուա ցեղն պաշտէր զարմաւենի , Պէնի-Թէքիֆ ասացեալն զժայռ ինչ , ուրիշ ցեղ մի ծառի տեսակ մի . վասն որոյ պարսիկ զարաբացիս երկրպագուս քարանց կոչէին ։

14 Այս դէպքս Մողոմենոս պատմէ՝ որոյ վերայ Թերևս ծիծաղին մեր ժամանակի անհաւատ մարդիկ , և զոր մեք և ոչ զարմանալի բան մի համարիմք . վասն զի յիրաւի Արաբիոյ մէջ տեսակ մի ծառ կայ Թմողայի կամ պատկառուկի ցեղէն՝ որում մարդ մօտեցածին պէս ճիւղերն խոնարհին ։ Նայպաուհր որ դիւրահաւան մարդ չէր՝ Եմենի մէջ տեսաւ այս ծառս՝ զոր աբաբացիք այնչափ պատուեն՝ որ տերև մի ալ փրցնելու ոչ Թողուն , և հիւրամեծար անունն տան այնոր ։ Արդ եԹէ այս միմոզա ծառս մարդ մօտեցածին պէս բնական երևութով իւր ճիւղերն հակէ , ևս առաւել խոնարհած պիտի լինի Աստուածորդւոյն մօտեցած ատեն ։

15 Միայն Պալլադես չէ այս հրաշքս յիշատակողն , այլ նոյն-

պէս վկայեն Դորոթէոս վկայ, Սոզոմենոս, Ս. Անսելմոս, Ս. Բոնավենտուրա, Լիրա, Դիոնեսիոս կարգուսեան, Թեսմա, Լոռուֆոյ, Բարրադիոս և այլք:

16 Աւետարանի յիշատակած այս անցքս ոչ միայն 'ի Սուրբ գրոց հաստատի, այլ նաև հրէից և հեթանոսաց վկայութեամբ. տես 'ի Մակրոբիոս գիրք Բ գլ. Դ յաղագս սատուրնական տօնից. — Որոգինէս ընդդէմ Կելսոսի գիրք Բ գլ. ԾԸ. — Թուլտոս Հուլտոր. տես նաև Ճէյմս երիցու Նոր կտակարանի պարափրազն:

17 Թրոմպելլի 'ի վարս Աստուածամօր. Զաքարիա 'ի ճառս եկեղեց. պատմ. — Անսելմոս կանդուաղ. — Եւսեբիոս. — Սուրբ Թովմաս:

18 Այս աղբիւրս մինչև ցայսօր Աղբիւր Մարիամու կոչի, և հին աւանդութիւն մի ասէ թէ Կոյսն հոն լուանայր զմանկիկն Յիսուս. 'ի նախկին ժամանակս քրիստոնէութեան հաւատացեալք հոն եկեղեցի մի շինեցին, յետոյ մահմետականք ալ մզկիթ մի, և յերկուց կողմանց ալ Մարիամու աղբեր դիմէին իրենց ցաւոց բժշկութիւն գտնելոյ համար: Աղբիւրն մինչև ցայսօր կայ. ուխտաւորք ալ նոյնպէս յաճախեն, բայց եկեղեցին և մզկիթն աւերած և հետքն անգամ ոչ երևին (Սավարի հտ. Ա. — Թղթակցութիւնք օտարելէց հտ. Զ):

19 Աղբիւրէն սակաւ մի հեռի ծառոց ցանկապատ մի մտաք, և մահմետական առաջնորդնիս մոլաթզենի մի ցուցանելով ասաց. « Ահաւասիկ Յիսուսի և Մարեմայ ծառն »: Վանոլէպ անուն քահանայն որ ժողովրդապետ էր 'ի Ֆոնթէնբլօյ մերձ 'ի Բարիզ, իր ճամբորդութեան մէջ 'ի սուրբ Երկիրն՝ պատմէ թէ 1056ին արդէն այն նախկին մոլաթզենին ծերանալով անկած էր, և Գայիրէի փրանկիսկեանք այնոր կտորուանքն բարեպաշտութեամբ պահէին իրենց վանաց աւանդատունն. և այն պարտէզին մէջ կոճղն մի միայն մնացած էր՝ ուսկից ծլած էր մեր տեսած ծառն: Զօրավարն Քլէպէր՝ Հելիոպոլսոյ յաղթութենէն ետև՝ ուխտի գնաց այս ծառիս, և իւր անունն սոտոյ մի կեղևին վերայ գրեց. բայց այս անունս հիմա աներևոյթ եղած է կամ ժամանակ անցնելուն և կամ 'ի նախանձէ (Թղթակցութիւնք օտարելէց հտ. Զ, նամակ 141):

Անցեալ տարի 1883 յունիսի 1 թուականով 'ի Հռոմ տպուած Journal de Rome օրագրին մէջ յետագայ յօդուածս հրատարակեցաւ այս ծառիս վերայ.

« Գրեն 'ի Գայիրէէ. Ընթեռնումք յեգիպտական օրաթերթին զի արճանոց-ճաշարան Մաթարիէէ որ գտանի մերձ առ ծառ կուսին վաճառեցաւ 'ի գին 720 լ. ս. որ է գրեթէ 18000 ֆր. ընկերութեան Յիսուսի: Ծառս այս հռչակաւոր՝ զոր փոխաբերայն

նախկին նուիրեալ էր կայսրուհւոյն Եւգինեայ 'ի գնալն նորա յԵգիպտոս 'ի նաւակատիս բացման ջրանցիցն Սուէզի, պարգեւեցաւ 'ի Թագուհւոյն Հարց յիսուսեանց, որք և հաստատեն զի 'ի յետին ժամանակս երևեցաւ կոյսն առ ծառովս, և զի մերձակայ առուակն անցանէ ընդ Երուսաղէմ: Ասի ևս զի հարքս խորհին կանգնել մատուռն մի և մենաստան 'ի նոր կալուածի անդ: — Մըրրի խօսելով զծառոյս ասէ. Չև հասեալ 'ի Մաթարիէ՝ սակաւ մի հեռի յուղւոյն յաջմէ կողմանէ գոյ պարտէզ՝ յորում ցուցանեն զմոլաթզենին՝ ընդ որոյ հովանեաւ հանգեան ըստ աւանդութեան գերդաստանն սուրբ 'ի փախստեանն յԵգիպտոս: Եւ է սա ծառ գեղեցիկ՝ բերելով տակաւին զնշմարանս կենդանութեան, այլ կարի ոստաքանց յեռանդուն պաշտօնասիրաց և յայլոց. յորոց և երկաքանչիւրն մոռացեալ զբարեպաշտութիւն և կամ զվարանական աղանդոյն՝ անձնատէր իմն պանծանօք քաղեան 'ի բաց զկեղևանս նորա (առ 'ի գրոշմել զանուանս իւրեանց) և թողուլ զյիշատակ անցից իւրեանց: Այժմեան տէր երկրին յազգէ ղպտոց՝ երկուցեալ զի մի գուցէ անընդհատ աւարառութեամբ անցաւորացն 'ի սպառ եղծեալ անհետասցի ծառն՝ որմափակ ա[illegible]շուրջ զնովաւ՝ որով զերծան ոստք նորա յաւարառութենէ այցելուաց, թողեալ զմասն մի բնոյն արտաքոյ առ 'ի արձանագրել այցելուաց զանուանս իւրեանց 'ի յիշատակ՝ քանդակելով զմելինսն՝ զոր պարտիզպանն ինքնին մատուցանէ որոց խնդրեն »:

20 Այս մանրավէպերէս մին ալ փրանկիացի պարոն տ՝ Անկլիւրի յիշատականն է՝ զոր իր հին պարզ ոճովը հոս դնեմք. « Երբ Տիրամայրն մեր Աստուածածին անապատներն անցնելով վերոյասացեալ տեղն հասաւ՝ գետին դնելով զՏէրն մեր՝ ջուր փնտռելու գնաց մօտի դաշտերն, բայց չգտաւ, և տրտում տըխուր դարձաւ իր սիրելի մանկիկին քովը՝ որ աւազին վերայ պառկած տեղւոյն ոտքովը զարնելով անուշ և բարեհամ ջրոյ աղբիւր մի բղխեցուցեր էր. որոյ վերայ շատ ուրախացաւ մեր Տիրամայրն և շնորհակալութիւն մատոյց Տեառն մերոյ. յետոյ Տիրամայրն մեր նորէն պառկեցուց իւր սիրուն զաւակն, և նոյն աղբեր ջրովը Տեառն մերոյ լաթիկներն լուաց, և գետնին վերայ փռեց որ չորնան, և այն լաթերէն կաթած ջրոյ կաթիլներէն մի մի թուփեր բուսանէին և այն թուփերն բալասան կը բղխեն, են »:

21 Հայրն Ժիպլիէօֆ համարի թէ մօգուց Մեսիայի ընծայած ոսկին՝ սակաւ բան մի էր, և նմանեցուցանէ զայն վարձակալաց իրենց կալուածատերանց մատուցած ընծային՝ որ աւելի նոցա տիրութիւնն ճանաչելու նշան է և ոչ թէ զնոսա հարստացնելու համար:

22 Ովսէէ գլ. Բ 1: — Ս. Մատթէոս գլ. Բ 15:

# ԳԼՈՒԽ ԺԴ.

## Դարձ յԵգիպտոսէ.

Ո՜հ, ո՛րչափ տխուր է աքսորն, և ո՛րչափ անուշիկ հայրենեաց օդն։ Օտարաց հացն ալ անօրինին հացին պէս ուտողին բերանն խճով լեցնէ, սիրտն ալ դառնութեամբ. որովհետև իր առուակներն՝ մեր տղայութեան խաղերն ոչ յիշեցնեն, Թռչնոց գայլայլիկին մէջ ներդաշնակութիւն մի պակասի, իր շրջագայելու տեղերն չունին այն քաղցր հրապոյրքն և յանկուցիչ և սիրտ քաշող գեղեցկութիւնն՝ ինչ որ ունին հայրենեաց գիւղային տեսարաններն։

Արդեօք ինչ ուրախութիւն զգացին 'ի տեսանել անդ զերկիրն Քանանու՝ որոյ վսեմ հորիզոնն, քաղցրիկ շրջակայքն, լերանց և դաշտաց իրարու հետ ունեցած դաշնակաւորութիւնն և զանազան դրից և տեղեաց պէսպիսութիւնքն՝ երջանիկ և զմայլելի փոփոխութիւն և ներհակութիւն մի գործէին Եգիպտոսի միօրինակ մեծագործութեանց հետ։ Աստ երևէր ժողովուրդ մի քաջասիրտ և վայրագ լի պատերազմական աշխուժիւ և միանգամայն անկեղծ և հաւատարիմ, մեծարոյ և սուրբ կրօնից պաշտօնասէր. իսկ անդ զանազան ցեղ բաժնուած սարկաց խումբ մի աւազակաբարոյ՝ իրենց անմիտ կրօնից մէջ վատահամբաւ արարողութիւններ խառնած, մինչ զբաղած մեհեաններ կանգնելու Ապիս կովու, տիառանց (կոկորդիլոս) և սոխից ծովայնոց։ Յովսեփայ և Մարիամու պէս եռանդագին պաշտօնասէր լինելու է մարդ, և այնպէս հայրենասէր որպէս էին երբայեցիք՝ ըմբռնելու համար այն բարեպաշտ և քաղցր ու-

պաւորութիւններն զոր ունեցան այն գալիլեացի ամուսինքն 'ի տեսանել անդ զերկիրն որ իրենց պարգեւեալ էր յԱմենակալէն, և երբ մտին 'ի զուարթագին քաղաքն իւրեանց Նազարէթ՝ որ համանուն նեղ և զովագին հովտին ծայրն կանգնեալ էր՝ դաշտային ծաղկի պարզ և բնական գեղեցկութեամբն [1]:

Այսչափ երկայն բացակայութենէն ետև՝ սուրբ ընտանիքն մտին իրենց անշուք բնակարանն. եկին խռնեցան ազգականք և ծանօթք աչքի լուսոյ բարեմաղթութիւններով, զանազան հարցումներով և լըսած բաներուն վերայ զարմանալով, և իրենց ուրախութիւնն և ցնծութիւնն յայտնելով, որ շուտով տեղիք տուին խեղճութիւններու և մտատանջ հոգերու: Աղքատիկ ընտանեաց տնակն այնչափ ատեն երեսի վերայ մնացած լինելուն՝ գրեթէ անբնակելի եղած էր, երդիքն շատ տեղ փլած փլփլկած՝ հողմն և գիշերահաւասարի [2] անձրևներն համարձակ ներս լեցուած էին, ամեն դին մոլախոտեր բուսած, գետնայարկ սրահն ցուրտ խոնաւ և մամռապատ. վայրի աղաւնիներ իրենց բոյներն շինել էին այն խորհրդաւոր և նուիրական սենեկին մէջ՝ ուր Բանն յաւիտենական մարմին եղեալ բնակել էր. փոքրիկ գաւթին մէջ դժնիկն համարձակ տարածել էր իւր փշալից և մթնագոյն ճիւղերն, վերջապէս ամեն բան փոքրիկ տան մէջ այն աւերեալ և տխուր կերպարանքն առել էր՝ որ երեսի վերայ թողեալ շէնքերու մէջ երևի, և իւր տիրոջ բացակայութեան անջնջելի կնիքն է: Ուստի հարկ եղև շուտով ձեռն արկանել այս անհրաժեշտ նորոգութիւններուս, պէտք եղև խոհակերոցի պտուկներն ու տան կահկարասիքն կարգի դընել յորոց ոմանք կորսուած էին և այլք բոլորովին հինցած և կոտրտած. այս ծախքէս զատ հարկ եղև թերևս հատուցանել յԵգիպտոսէ եկած ատեն փոխառած ստակն. և անշուշտ այն ատեն վաճառած են

իրենց հայրենի կալուածն՝ մինչև յոբելեան տարին․ ուստի Յովսեփայ և Մարեմայ այն երկայն ճամբորդութենէն յառաջ ունեցածէն՝ ուրիշ բան չմնաց իրենց ձեռքն՝ բայց եթէ Նազարէթի կիսաւեր տունն, Յովսեփայ կրպակն և իրենց աշխատաւոր ձեռքն։ Բայց Յիսուսն ալ չմոռնամք, որ դեռ մանուկ գոլով կացինն ուսն զարկած ծերունի հայրագրին հետ մօտ գիւղերն երթայր՝ ուր որ գործ և աշխատանք գտանէին[3]. իսկ մայրն արդէն իւր աշխատանքն ունէր և անգործ ոչ մնայր իւր հասակին և ուժոյն համեմատ։ Արդէն շատոնց տան լիութիւնն աներևոյթ եղած էր․ բայց իրենք զիրենք շատ բանէ զրկելով, գիշերն ցերեկի խառնելով և քաջութեամբ աշխատելով առաջին կարգի հարկաւոր պիտոյքն հոգային։ Յիսուս, Մարիամ և Յովսէփ խիստ աշխատանաց տուին զիրենք, և այն ազնուական սրտերն որ հրեշտակաց խմբերու կարէին հրամայել՝ յԱստուծոյ ուրիշ բան ոչ խնդրէին՝ բայց եթէ զհաց հանապազորդ և օրըստօրէն։

Այս բարեբաղդ և միանգամայն վշտահար գերդաստանիս տնական կեանքն՝ որ Երրորդութիւն յերկրի կոչեցաւ՝ շատերուն ծանօթ չէ. առուակ մի է խոտերու ներքև ծածկած, Սրբութիւն սրբոցն է ամպոց և խնկոց ծխոյն իբրև կրկին վարագուրօք ծածկեալ, և սակայն ուշի ուշով հետազօտելով և մի առ մի քննելով աւետարանապատում անցքն ըստ ամենայն երևութից, և այն որ անծանօթ է՝ մինչև առ վայր մի մակաբերելով՝ Յիսուսի Քրիստոսի ապագայ հրապարակական կեանքն պայծառ և գեղեցիկ լոյս մի սփռէ իւր և Տիրամօր տնական և գաղտնի կենաց վերայ։ Մեք ևս ջանամք այս Թերթիս լրացուցանել այն ամեն զգուշութիւն և խղճամիտ շրջահայեցութիւն ձեռք առնլով՝ զորս պահանջէ այսպիսի ծանր նիւթ մի։

Յիսուս որ տէր և աղբիւր էր ամենայն գիտութեանց՝ մարդկային ուսմանց կարօտ չէր, բայց իւր սքանչելապայծառ լոյսն հոգեղէն քօղին ներքև ծածկել հաճելով, և յամենայնի ուրիշ մարդկանց նմանիլ ուզելով՝ իւր առաջին մանկութեան մէջ ոչ անարժան համարեցաւ իւր առաջին դասերն 'ի բարեպաշտ Մօրէն ուսանիլ. ուստի ընդհանրապէս կարծուի թէ իւր առաջին դաստիարակութիւնն 'ի Մարեմայ ընդունած է. Նա և ոմանք յաստուածաբանից համարին թէ ուրիշ վարպետ ունեցած չէ։ Հրեայք որ այս կարծիքս ոչ ընդունին՝ ընդհակառակն հաստատեն թէ անուանի րաբբի[4] մի՝ որ այն ատեն Նազարեթի մէջ դպրոց մի ունէր՝ ինքն յառաջ տարած է Սրբոյ Կուսին սկսած դասերն։ Բայց հրեայք ինչ որ ալ ասեն՝ յայտնի է որ Յիսուսի դաստիարակութիւնն րաբունեաց ձեռքով ոչ եղև. որովհետև գիտեմք որ Յիսուս Քրիստոս ոչ նախանձայոյզ էր և ոչ ծերոց աւանդութեանցն պաշտպան, այլ մանաւանդ թէ յայտնապէս պախարակէր ժողովարանին ապականեալ ոգին, սաստկապահանջ խստութիւնն անձնասիրութիւնն և բծախնդրութիւններն։ Արդէն Սուրբ Յովհաննէս այս վիճաբանութիւնս լուծէ ասելով իւր աւետարանին մէջ թէ հրեայք զՅիսուս անուս մարդու մի տեղ դրած էին[5]։ Եւ նա որ եկեալ էր աշխարհիս հաւատացածներն փոխելու՝ 'ի մարդկանէ ուսանելու բան մի չունէր։

Յիսուս վսեմական և խորախորհուրդ հոգւով ճոխացեալ՝ ընդարձակ ասպարէզ խնդրէր ծաւալելու համար. յառաւօտէ մինչև երեկոյ նիւթական աշխատութեանց հետ լինելով՝ գիշերներն իր ձեռագործէն դադրած ատեն՝ աստեղազարդ երկնից դիմացն զգենոյր իր օրէնսգրական և մարգարէական մեծվայելչութիւնն։ Ուղիղ ոտքի վերայ կանգնած այն բլրին վերայ՝ ուսկի երևէին բոլոր Քանանու երկրին

չերինքն և ընդարձակ անտառներն՝ իւր վեհ հոգին ընդարձակեր տիեզերաց Արարչին առջև, որոյ ինքն առաքեալն և որդին և հաւասարն էր։ Այս Աստուծոյ հետ առանձին տեսակցութիւններս գիշերոյ անապատի և խորհրդոց լռութեան մէջ՝ Յիսուսի Քրիստոսի ցանկալի սովորութիւններէն մին եղև, որոյ քանի մի օրինակներն ընթեռնումք Աւետարանին մէջ։ Նախատիպ մարդն Բանն մարմնացեալ՝ անշուշտ այսու կամէր իրեններուն ուսուցանել թէ ինչպէս զատելու է աղօթից զուտ ոսկին՝ յանձնացոյց պարծանաց և կեղծաւորութեան այլանդակ խառնուրդէն, զոր իւր ժամանակի փարիսեցիք այնչափ ճարտար էին իրարու հետ խառնելու։

Իսկ Կոյսն որ պահանջող և զուրիշն անհանգիստ առնող բնութիւն չունէր ամենևին՝ ոչ բնաւ հակառակէր իւր որդւոյն միայնասէր յօժարութեանցն. ինքն գիտէր որ այն առեններն Յիսուս չափելու հետ էր այն անյատակ անդունդն որ բացուած էր մարդկան ազգի ոտից ներքև, և այն լուռ խորհըրդածութիւններէն պիտի ծագէր աշխարհիս փրկագործութիւնն։ Ուստի այն հզօր ոգւոյն վարմունքն յարգելով՝ որ ինքն իր վերայ անդրադառնայր, և իւր կուսական լուսացայտ աչքն յառելով այն փառահեղ ապագային վերայ որ երթալով մօտենայր՝ արդէն տեսանէր Մարիամ զերկինս բացեալ, զմահ յաղթահարեալ, և զամենայն ազգս աշխարհի համահաւաքեալ ընդ դրօշու Մեսիային։ Բայց նոյն ատենն՝ տաճարին մէջ ծերունւոյն մարգարէութիւնն ալ իբրև տխուր դագաղ մի մեռելոյ երևելով այս զմայլական տեսարանիս եզերքն, սարսուռ մի ընթանայր յերակունս խեղճ մօրն, և իւր սիրտն՝ որոյ մեծագոյն մասն գրաւած էր Յիսուսի սէրն, անհնարին տագնապներով այլայլէր. և ծածուկ ձայն մի լսէր որ գոչէր. Արեան քաւութիւն մի հարկաւոր է,

հարկ է որ Քրիստոս մեռնի։ Այս լսածին պէս ձեռ-քի գործն թողուր՝ որում դատապարտած էր զինքն աղքատութիւնն [6], և գուստրն Դաւթի իր զաւակն բնտռելու ելանէր. վասն զի պէտք մի զգայր տեսա-նելու զնա, և մայրական տագնապն հանդարտեցնե-լու, և ստուգելու թէ զաւակն դեռ ողջ էր և իր մօտն գտանէր։

Յիսուս ալ զինքն տեսածին պէս իւր գէպ 'ի յեր-կինս յառած և խորհրդոց մէջ ընկղմած աչքն 'ի վայր խոնարհեցուցանէր, և իւր բոլոր աշխարհիս մտածութեամբ յոգնած ճակատն՝ մանկական զուար-թութեան կը փոխուէր. և Մարիամ իւր սրտին մէջ զգացած մահագոյժ երկիւղներն յետս մղելով՝ յոր-դորէր զաւակն որ երթայ հանգչի, որպէս զի եր-կրորդ աւուր ոյժ առնու աշխատելու՝ երթալու տեղն հեռու լինելով և գործն ծանր և դժուարին... Աս-տուածորդին լռութեամբ հնազանդելով մահկանա-ցու ծնողին եւեէն տունն մտանէր, վասն զի սիրէր զնա և էր նմա հնազանդ։

Հաւաստարապէս հիանայ Սուրբն Բեռնարդոս որ-դւոյն հնազանդութեանն և կուսամօր մեծվայել-չութեան վերայ ասելով. «Աստուած էր սա, որում հպատակին հրեշտակք և հնազանդին իշխանք և դա-տաւորք երկրի, և սակայն հլու հպատակ էր մօր իւրում։ Դուք զարմացէք որում և կամիք՝ հիանալի խոնարհութեան որդւոյն կամ գերազանց վսեմու-թեան մօրն. իսկ ես երկոցուն վերայ ալ հիանամ, և յաչս իմ երկուքն ալ մեծամեծ սքանչելիք են։ Աս-տուծոյ՝ կնոջ միոյ ակնարկութեան հնազանդիլն ան-օրինակ խոնարհութիւն է, իսկ կնոջ՝ Աստուծոյ հրա-մայելն անհամեմատ աստիճան փառաց»։

Յիսուսի պատանեկութեան տարիքն մտած ատեն՝ տարօրինակ դէպք մի պատահեցաւ որ Սրբոյ Կուսին սիրտն կարի յոյժ վրդովեց։ Յովսէփ և Մարիամ ի-

րենց հայրենատուր օրինաց եռանդուն օրինապահք՝ սովորութիւն ունէին ամեն տարի զատկի տօնին Երուսաղէմ երթալու։ Այս ճամբորդութիւնս որնախընթաց տարիներն ծածուկ և բազմութեան հետ խառնուած կատարէին՝ քանի որ Աստուծոյ Թշնամւոյն (Հերովդէսի) որդին Թագաւորէր մակաբայեցւոց աթոռոյն վերայ, Արքելայոսի աքսորուելէն և հռոմայեցւոց տիրապետելէն ետև՝ վախու բան մի մնացած չէր, որով և աւելի դիւրացած էր։ Երբոր Յիսուս երկոտասանամեայ եղև, իւր ծնողքն ալ Հերովդէսի արքանեակներէն կասկած մի չունելով՝ զինքն ալ իրենց հետ առին Երուսաղէմ երթալու համար, և մեծ բազմութեամբ Նազարեթէն ճամբայ ելին. բայց սակաւ մի յառաջ երթալով ուխտաւորներն փոքրիկ խմբերու բաժնուեցան, ընտանեկան յարաբերութեանց և մտերմութեան համեմատ, տղայք տղայոց հետ, կանայք առանձինն, և արք ալ նոցա ետևէն [7]։ — Կուսին հետ էին Մարիամ Կղէովպայ՝ իւր տալն Յովսեփայ քոյրն, ուրիշ Մարիամ անունով ծանօթ մի՝ որ Աւետարանին մէջ միշտ այս պարզ անուամբ կոչի Միւս Մարիամ, Զեբեդէոսի կինն Սալոմէ՝ որ Բեդսայիդայէն եկեր էր իր տղոց և էրկանն հետ 'ի միասին, Յովաննա Քուզայի կինն, և ուրիշ շատ մի կանայք Նազարեթացիք որ իրեն ազգականներն և ծանօթներն էին։ Սակաւ մի հեռուէն գային Յովսէփ և Զեբեդէոս ձկնորսն և ցեղին ծերերն ծանր ծանր իրարու հետ խօսելով։ Տղայք ալ ինչպէս սովորութիւն է մանկանց՝ իրենք իրենց խումբ մի ձևացուցեր էին, և Յիսուս ալ այն գալիլեացի մանչիկներուն հետ էր զորս Աւետարանն եբրայեցւոց լեզուին և սովորութեան համեմատ՝ նորա եղբայրներն կոչէ՝ այսինքն իր մօտաւոր ազգականներն։ Այս տղայոց երամին մէջ՝ որ ուրիշ խումբերէն յառաջ քայլէին, որոշուէին Զեբեդէոսի երկու տղայքն Յակոբոս

որ Տիբերեայ ծովակին ալեաց պէս՝ անհանդարտ տղայ մի էր, և Յովհաննէս որ տարւոյ Յիսուսէն կրտսեր էր՝ սիրուն և անոյշ դէմքով տղայ մի, որ իր կրակոտ եղբօր քով եղած ատեն՝ կարծես թէ Եսայեայ գառնուկին նմանէր՝ որ Յորդանանու առիւծին հետ աներկիւղ ճարակի։ Բեդսայիդացի ձկնորսին տղոցմէ զատ՝ որոց յետոյ Քրիստոս Բանէրեգէս անունն տուաւ՝ որ որդիք որոտման նշանակէ, Յիսուսի հետ էին նաև Ալփէոսի Յովսեփայ եղբօր չորս տղայքն, յորոց առաջինն Յակոբոս որ Երուսաղեմայ առաջին եպիսկոպոսն եղև՝ ծանրակաց և խստակրօն պատանի մի էր երկայն մազերով, դեղնած երեսով, ցուրտ և ճգնաւորի կերպարանքով տղայ մի, որ նազովրեցի սեպուելուն համար Յիսուսի վերայ բարձրէն նայէր և դոռոզանայր՝ խեղճ հիւսան զաւակ մի համարելով զնա. և այս իր բնութեան մէջ երևէին առաքինութեանց հետ միատեղ մարդկային թերութիւններ, անշարժ հաստատութիւն, ուղիղ և կրօնական նախանձ, բայց միանգամայն արհամարհութիւն այն ամեն բանի որ Աբրահամ նահապետէն յառաջ եկած չէր, և ինքն իր վերայ մեծ համարումն։ Իսկ Ալփէոսի միւս զաւկներն ալ որ էին Յուդա, Սիմոն և Յովսէս, սոքա ալ բիրտ պարզ և կռուասէր տղայք էին, որ բաւական մեծկակ ալ լինելով՝ խոնարհ Մարիամու զաւակն քան զինքեանս շատ վար համարէին, և Աւետարանէն ալ երևի որ այս կարծիքս շատ դըժուարաւ 'ի բաց թողել են [8]։ Հապա Յիսուս ինչպիսի տղայ էր. Յիսուս ամենևին ցուցամոլութիւն չունէր, ոչ կարգէ դուրս բարեպաշտութիւն ցուցանէր, և ոչ նախանձայոյզ խստակրօնութիւն, ոչ իւր գիտութեան և իմաստութեան վերայ պարծէր՝ ինքն որ ամեն իմաստութեան լրումն էր, որովհետև սովորաբար մարդիկ չունեցածնին կուզեն ցուցանել։

Իրեն պարզ հագուստովը՝ որ Եսեանց ձևովը էր,

իր ոսկեգոյն խարտեաշ գունով երկայն մազերովն՝ որ թուխ ճակտին վրայէն երկու բաժնուած՝ ուսերուն վերայ սիրուն ծածանէին, Դաւթի տղայութեան նմանէր՝ երբ վախկոտ ամչկոտ Սամուէլի առջևն ելաւ հովուի պարզ զգեստով, և սուրբ իւղով օծուեցաւ. բայց Քրիստոսի թուխ և բնական մրայօն աչաց [9] մէջ՝ իր պապուն վառվռուն և քերթողական աչքէն աւելի ազդեցութիւն և քաղցրութիւն մի երևէր, թափանցող և աստուածային զօրութիւն մի տեսնուէր իր բբաց մէջ՝ որ մարդկանց մտքէն անցածն ալ իմանայր և մինչև սրտին ներքին խորերն թափանցէր. սակայն Յիսուս այն ատեն իւր ականողեաց փայլն քողարկէր, ինչպէս Մովսէս իւր պայծառադէմ երեսն՝ երբ խորանէն դուրս ելանէր: Հանդարտիկ քայլելով ընկերաց հետ խօսակցէր՝ իւր հասակին համեմատ խօսքն կշռելով՝ այն ըստ մարմնոյ ազգակից մանկանց հետ՝ զորս յետոյ իրեն պիտի աշակերտէր, տեսնելով նոցա բիրտ կճեպին ներքև ծածկուած ադամանդին կշիռքն և արժէքն՝ որ օր մի այնչափ շողշողուն պիտի փայլէին. ուստի Քրիստոս իրենց ապագայ վիճակն տեսնելով սիրէր զնոսա: Եւ իր ակնկալութեան մէջ չխաբուեցաւ. վասն զի տղքա ալ որ իրենց ազգակցաց պէս Մեսիայի վերայ ճոխութեան հարստութեան և իշխանութեան գաղափարներ ունէին՝ երբ իր ձայնն լսեցին 'ի բաց թողլն բովանդակ իրենց ազգային և կրօնական նախապաշարմունքն, և սիրով յօժարութեամբ ընկալան յամենեցուն դատապարտեալ վարդապետութիւնն Քըրիստոսի, որոյ սկզբունքն և խոստմունքն՝ հին օրէնաց անիծից պէս ուրիշ բան չէին բայց եթէ վիշտք չարչարանք նեղութիւնք և հալածանք՝ զորս կրելոց էին վասն նորա: Եւ այնչափ հզօր կապանօք կապեցան ընդ նմա՝ որ ոչ իշխանք աշխարհի, ոչ ցուրտ, ոչ մերկութիւն, ոչ քաղց և ոչ սուր՝ չկարացին ան-

ջատել զնոսա 'ի սիրոյ նորա. և որոյ հետոցն հետևե-
ցին քաջութեամբ կոխելով այն փուշերն և տատասկ-
ներն զորս աշխարհ նոցա ստից ներքև արկաներ, և
ինքզինքնին մատնելով ամենայն ազգ տանջանաց՝ խո-
տանս և արհամարհս համարեցին զանձինս քան զա-
մենայն որդիս մարդկան. ոչ ամօթ համարեցան ոչ
զՍրդին մարդոյ և ոչ զԱւետարան նորա, և ոչ ըզ.
յիմարութիւն խաչին: Եւ ինչո՞ւ պիտի ամաչէին. ա-
մօթն խաբեբայից համար է. իսկ առաքեալք կատա-
րեալ հաւանութեամբ և համոզմամբ քարոզէին. ի-
րենց ուղիղ և պարզ սրտին վկայութիւնն մարդ-
կանց առջև նուիրական և արժանահաւատ ցուցանե-
լոյ համար՝ ամենայն բան զոհեցին, ամենայն ինչ
թողին, ամենայն չարչարանք կրեցին, ամենեցուն
ներեցին, և արեամբ իւրեանց կնքեցին զԱւետարան
աստուածային Վարդապետին իւրեանց [10]: Բայց այն
ժամանակն զորմէ խօսիմք՝ այս դիւցազնական առա-
քինութիւններս դեռ ծլած չէին, և այն գալիլիա-
ցիներուն մաքէն անգամ ոչ անցանէր թէ օր պիտի
գար որ իրենց ուղեկցին աստուածութիւնն պաշտ-
պանելու համար իրենց կեանքն ևս պիտի տային:

Զորս օրէն մեր ուխտաւորքն 'ի սուրբ քաղաքն
հասին՝ ուր յառաջագոյն եկած էին հեռաւոր աշ-
խարհներէ խուռն բազմութիւն հրէից: Յովսեփայ
և Մարեմայ ընտանիքն ժողովեցան զատկական գառն
ուտելու՝ զոր քահանայք զենած էին տաճարին գաւ-
թին մէջ երկու երեկոյին պաշտամանց միջոցն [11],
հետն ալ բաղարջ հաց և եղէգ կամ լեղի հազար
վայրի՝ ինչպէս որ սովորութիւն էր: Երբոր անոր օ-
րերն աւարտեցան՝ Քրիստոսի ազգականքն ժողովե-
ցան նորէն իրենց տեղն դառնալու, և նոյն կարգն
բռնելով ինչպէս որ եկել էին, Յիսուսի ծնողքն 'ի
սկզբան չանդրադարձան թէ մանուկն հետերնին
էր. Մարիամ կարծեց թէ Յովսեփայ կամ երկու

Յակոբներու հետն է. Յովսէփ ալ համարէր թէ
կամ մօրն հետն է և կամ ուրիշ ազգական տղոց հետ։
Առաջին հանգստի տեղն որ հասին՝ բաժնուած խում-
բերն միացան, և Կոյսն ետևէ ետև պանդոկին հասած
ուղևորներուն մէջ բնտռելով զՅիսուս չգտաւ, մարդ
մի ալ չկար որ կարէր ըսել թէ ինչ եղաւ։ Ալ ով
կարէ պատմել ծնողաց տագնապն ու ցաւն. «Նա
երկնից աւանդ մի էր ինձ յանձնուած, ասէր Յով-
սէփ ինքնիրեն տրտմութեամբ»։ – Զաւակս տեսնող մի
չեղա՞, զաւակս ո՞ւր է գոչէր խեղճ մարիկն արտա-
սուելով։ Բոլոր գիշերն բոլոր ցերեկն բնտռեցին, ա-
նունն տալով կոչէին անտառներու մէջ, և գահա-
վէժներու մէջ զարհուրանօք նայէին. վախէին որ մի
գուցէ վտանգ մի հանդիպած ըլլայ իր կենաց կամ ա-
զատութեան, և ոչ գիտէին թէ ո՞ւր գտնեն զինքն՝
եթէ ճամբայն մոլորած և տեղ մի մնացած էր։ Վեր-
ջապէս յուսահատած նորէն Երուսաղէմ դարձան և
դռնէ դուռ շրջելով բարեկամաց տներն հարցնէին,
բայց գիտցող մի չկար. հոգնած դադրած այն ըն-
դարձակ քաղքին ամեն դին շրջելէն ետև՝ հուսկ յե-
տոյ տաճարն մտին։ Կամարակապ գաւիթներէն
միոյն մէջ ուր օրինաց վարդապետներն ժողովէին՝
մանուկ մի կանգնած խօսէր, և Իսրայէլի ծերերն ըզ-
մայլած հիանային նորա նրբամտութեանն և գժուա-
րին խնդրոց տուած պատասխաններուն ճշդութեան
և պայծառութեան վերայ, և բոլորն շարուած նո-
րա վաղահաս հանճարոյն և սխրալի իմաստու-
թեան վերայ ապշած ունկն դնէին. և մին 'ի նոցանէ
որ Սուրբ կուսէն սակաւ մի հեռու կեցել էր ասաց.
Սա տղայս կամ Դանիէլն է և կամ յերկնից իջեալ
հրեշտակ մի։ Նա ինքն է, Յիսուսն է, ասաց մանկա-
մարդ մայրն և դէպ 'ի վարդապետաց մօտեցաւ, և
մերձենալով Մեսիային՝ վերջէն գորովանաց ձայնով
յորում իւր յետին տագնապն ալ երևէր, քաղցրու-

թեամբ ասաց. «Որդեակ զի՞նչ գործ գործեցեր դու ընդ մեզ, ահաւասիկ հայր քո և ես տառապեալք խնդրեաք զքեզ»: -- Իսկ մանուկն բոլորովին առ Աստուած յափշտակեալ լինելով՝ թերևս սակաւ մի խստութեամբ խորհրդական կերպով պատասխանեց. «Զի՞ խնդրէիք զիս, ո՞չ գիտէիք եթէ 'ի տան հօր իմոյ պարտ էր ինձ լինել»: Յովսէփ և Մարիամ 'ի սկզբան չհասկնալով Մեսիային տուած պատասխանն լուեցին: Ու ելնելով նոցա հետ միատեղ եկն 'ի Նազարէթ, և ամեն բանի մէջ նոցա կամաց կատարեալ հլութեամբն՝ այս թեթև ամպս ալ փարատեցաւ: «Եւ Մայրն նորա պահէր զամենայն զբանսն 'ի սրտի իւրում: Եւ Յիսուս զարգանայր իմաստութեամբ և հասակաւ, և շնորհօք յԱստուծոյ և 'ի մարդկանէ»:

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ԺԴ. ԳԼԽՈՅ

1 Նազովրէն եբրայականին մէջ ծաղիկ նշանակէ ըստ Քլարքի։

2 Հրէաստանի մէջ անձրեւային եղանակն գիշերահաւասար- ներուն սկսանի, մանաւանդ աշնան գիշերահաւասարին որոտ- մունք հոսանք անձրեւաց և կարկուտ անպակաս են (Վոլնէյ Ու- ղեւորութիւն յԱսորիս)։

3 Ս. Յուստինոս վկայ ('ի Տրամախօսութեանն ընդ Տրիփոնի) պատմէ թէ Յիսուս Քրիստոս իր հայրագրին օգնէր լուծեր և արօրներ շինելու աշխատած ատեն. զնոյն ասէ և Կոստեքարա 'ի վերջ Սրբոց Ղուկասին հա. ԺԴ. այլ և յաւելու թէ հնագոյն մատենագիր մի հաստատէ թէ իր ժամանակներին դեռ եւս ցու- ցանէին քանի մի լուծեր որպէս թէ շինեալ ձեռամբ նորա։

4 Հրեայք Յիսուսի վարժապետ եղած համարին զՅեսու որ- դի Բարաքիայ՝ որ ինքն ալ Ակիբայայ աշակերտ եղած էր. բայց այս կարծիքս բոլորովին սխալ է, որովհետեւ Ակիբա՝ որ հրէից մէջ շատ անուանի էր՝ Ադրիանոսի կայսերութեան ատենն էր՝ Հերովդեսի և Յիսուսի Քրիստոսի մահուանէն հարիւր տարիէն աւելի յետոյ ժամանակաւ։

5 Հրեայք Քրիստոսի համար ասէին. «Զիա՞րդ գիրս գիտէ սա, զի ուսեալ բնաւ չէր» (Աւետ. ըստ Յովհաննու գլ. Է, 15)։

6 Տերտուղիանոս յերրորդ դարու Մարիամու համար ասէ թէ իր աշխատութեամբն ապրէր. և յառաջ քան զնա Կելսոս եր- կրորդ դարուն մէջ քրիստոնէից երեւան հանէր Մարիամու իւր ձեռագործ աշխատութեամբ ապրիլն։

7 Սուրբ Եպիփան և Սուրբն Բեռնարդոս ծանուցանեն որ այսպիսի ուղեւորութեանց մէջ արք զատ խումբ կազմէին և կա- նայք զատ, ուստի Յովսէփ և Կոյսն զատ խմբից մէջ լինելով Յիսուսի աներեւոյթ լինելուն վերայ հոգ չարարին, և երբ երե- կոյ եղեւ և իւրաքանչիւր գերդաստան միացաւ՝ այն ատեն ան- դրադարձան թէ Յիսուս իրենց հետ չէր։

8 Յոհան Ոսկեբերան ճառ. ԽԴ։

9 Նիկեփորոս Պատմութեան Եկեղեց. հա. Ա, յորում աւանդու- թեան հետեւելով Տեառն մերոյ դիմացնկարագրութիւնն ամե- նեն հարազատն է։ — Վոշ անգղիացի վերջերս գիրք մի հրատա- րակած է քրիստոնէութեան առաջին ժամանակաց ասկաւ- գիւս և անծանօթ յիշատակարանաց վերայ, յորում յայտ հե-

տաքրբքրական մետալի մի վերայ խօսի՝ որ արդէն Հնդեստանե-որդ. դարուն ծանօթ էր։ Այս մետալին վերայ Տեառն մերոյ Յիսուսի դէմքն դրոշմած է քօշենի գիրքով. մազերն ըստ օրինի նազովրեցւոց երկու բաժնուած մինչև ականջներն Հասանեն և անոր ուսոց վերայ ծածանին. մօրուքն (թէեւ ոչ այնչափ երկայն և երկու ճիւղ բաժնուած. դէմքն և իրանն գեղեցիկ՝ որոյ վերայ իշխանեն պատմուճանին ոսկրուն ծալքն։

10 Պասքալ ասաց «Կամակար Հաւանիմ պատմութեանց որոց վկայք 'ի մահ տան զանձինս»։

11 Աւել է 'ի միջօրէէն կամ ժամն մէկէն մինչև արեւ մըտնելու ատեն (Պատմած Հա. Ն, գիրք Է. գլ. 11)։

## ԳԼՈՒԽ ԺԵ.

*Մարիամ 'ի ժամանակս քարոզութեանցն Յիսուսի.*

Պատմագրութեան մէջ աշխարհս երկու մասամբ նկատի՝ ասաց մեր ժամանակի երեւելի հանճարեղ մարդ մի, մի մասն խաչէն յառաջ և միւսն ըզկնի: Յիսուսի Քրիստոսի վերածնող առաքելութեան ժամանակ՝ նախկին աշխարհն զառամութեան վիճակի հասած՝ այլանդակ կերպարանք մի ներկայացնէր՝ ծաղրականն ահաւորին հետ միացած: Արաբացիք և Գաղղիացիք երկայն դարեր Աստուծոյ միութեան նախկին գաղափարն պահելէն ետև՝ այնչափ անմտութեան հասել էին որ զակասիա և զկաղնի պաշտէին [1]. Հնդիկ զԳանգէս աստուածացընելով՝ մարդազոհեր առնէին Սաքախս աստուած մահու աստուածուհւոյն [2]. Եգիպտացիք պաշտօն մատուցանէին սոխի, խստորի, լուտասի և ամեն կապարուսոց [3]. անծանօթ ժողովուրդք նորագիւտ Ամերիկոյ պաշտէին զվագր, զանգղ, զորտուն և զջրվէժս խոխոջաձայնս [4]. իսկ Յոյնք և Հռովմայեցիք ըստ իւրեանց իսկ ասելոյ ըզմեհեանս դիւօք լցուցանէին [5], և այն հանճարեղ և կիրթ ազգերն՝ որոց մէջ վսեմ հանճարներ ալ պակաս չէին՝ աստուածոց կարգն անցուցել էին զախտս նաև զայլանդակագոյնս և զանագործոյնս անգամ 'ի կրից, և զՈլիմպոս լցուցել էին աւազակներով շնացողներով և մարդասպաններով: — Իրենց հաւատոց համեմատ էր նաև իրենց վարքն ալ. ապականութիւնն լայնարձակ գետոյ մի պէս՝ կայսերական եօթն բլրոց բարձունքէն իջնելով՝ ամեն գաւառներն ողողէր: Նոյն ինքն Հռէտառան՝ որ այս ախտից գարշութենէն

բոլորովին ազատ չէր՝ սարսափելի արագութեամբ ապականէր. իւր կրօնքն միայն հիմնական վարդապետութեանց վերայ հաստատեալ չէր՝ այլ անթիւ աւելորդապաշտ սովորութեանց, և րաբունեաց ցնորական աւանդութիւնք Մովսէսի աթոռոյն վերայ բազմէին [6]։

Այս ամեն մտաց մոլորութեանց մէջ ինչ բանի գայր խելքն կամ մտաց ամբարհաւաճ զօրութիւնն որ գլխոյ և թագուհի համարի հանճարոյ, որ իւր անձուկ կարկնովն չափել կամի զաւիեզերս, և աստուածներն իր չափաւորութեան յարմարցնել ջանայ՝ Պրոքրոստի տառապելեալ մահճին վերայ զնոսա չափելով [7]. ո՞ւր էր բանականութեան ոյժն՝ որոյ վերայ պարծենայր և ուր անկած էր իր դրօշակներն, մինչդեռ իւր պատուարներն ամեն դիէն փլել փլփլեկել էին. եթէ ինքն բաւական ոյժ ունէր կորուսածն ձեռք ձգելու՝ ինչո՞ւ չջանայց տանելու... Եթէ ոչ վասն զի գիտէր որ հեղեղն իր կարկառած թումբերն նորէն պիտի պատռէր, և յորձանքին դէմ դընելու զօրութիւն չունենալով՝ բաւական սեպեց այնոր ալեաներն իմաց տալու։ Ինքն իմաստասիրութեան յենած՝ ընկերական մարմնոյ անզգայ մոխրոյն վրայ հառաչէր. հարկ էր ուրեմն որ քրիստոնէութիւնն գայր և ասէր այս գիակիս. Արի և կանգնեաց. և յիրաւի այս հրամանս լսածին պէս ընկերութեան դիակնացեալ մարմինն ոտք ել և կենդանացաւ։ Եւ այն օրէն 'ի վեր նոր սերունդ մի իւր ամեն ախտերէն բըժշկուած, և իւր ամեն աղտերն սուրբ աւազանին մէջ լուալով՝ հաւաքեցաւ այն խաչին բոլորտիքն զոր որդին Մարեմայ տնկեց նորածնեալ աշխարհիս վերայ, որպէս յաղթանակ Աստուծոյ 'ի վերայ դժոխոց։

Այս փառաւոր յեղափոխութիւնն՝ որ զսէր յաթոռ բարձրութեան բազմեցոյց, և ամենայն առաքի-

նութիւններն իրեն արբանեակ կարգեց. այս հրաշալի դէպքս որ բոլոր աշխարհք կերպարանափոխ արար, և որ մինչև 'ի վախճան դարուց պիտի հռչակուի' 'ի Նազարեթէ իւր ծագումն ունեցաւ։ Այն անանուն քարածայռէն բղխեց խոնարհ քրիստոնէութիւնն որ Լամարթինի ասացածին պէս « Անծանօթ առուակ մի և կաթիլ մի ջուր էր՝ որ հազիւ թէ երկուց ճընճըղկանց ծարաւն կարէր անցուցանել, և զոր արեւու ճառագայթ մի բաւական էր բոլորովին ցամքեցընել. հիմա այն կաթիլն ոգեղէն ովկիանոսի մի պէս մարդկային իմաստութեան ամեն անդունդներն լեցուց, և իր անսպառ յորդութեամբն ողողեց զանցեալն զներկայն և զապագայն » [8]։

Լաւ գիտեմք թէ ինչ տկար միջոցներ գործածուեցան այս մեծ գործոյս սկզբնաւորութեանն համար՝ որ արդի ժամանակաց պատմութեան վերայ բոլոր իւր բարձրութեամբն տիրէ։ Տաճարին մէջ զինքն յայտնելէն ետև՝ Որդին Աստուծոյ անծանօթ և խորախորհուրդ կեանք մի անցուցանէր իւր հայրագրին և մօրն հետ 'ի միասին։ Այս ժամանակս զոր աշխարհս կորսուած համարի՝ անշուշտ Սրբոյ կուսին համար ամենէն պայծառ և խաղաղ ժամանակն էր. վասն զի մարդուս կեանքն ոչ եթէ այն ատեն երջանիկ է՝ երբ ձմերային հեղեղի պէս աղմկալից թաւալի, այլ մանաւանդ երբ վճիտ յստակ և լռիկ առուակի մի պէս մարգագետնոց խոտերուն ներքև ծաւալի։ Մարիամ այն ատեն երջանկագոյն էր քան զամենայն մարս՝ երբ ճոխութեան ամեն վայելքէն զուրկ, և լիութեան քաղցրութենէն մերկացեալ՝ իր որդւոյն մօտն ապրէր՝ նորա համար աշխատելով, նորա հաճոյքն կատարելով, և զինքն ամեն ատեն իւր քովը տեսնելով, և ինքզինք սուրբ հնձոց երախայրեաց պէս իրեն նուիրելով, նորա աշակերտաց մէջ առաջին քան զամենեսին և խոնարհ և հլու լինելով.

իւր կատարելագործեալ դատողութիւնն գերագոյն բանին և որդւոյն աստուածութեանն հաստատելով։ Իրաւ է որ երբ Յիսուս յայտնէր իրեն մարգարէութեանց խորին իմաստն՝ որոց մէջ յիշատակուէին իր քաշելու չարչարանքն՝ Մարիամու կուսական ճակատն սև ամպ մի իջանէր, բայց շուտ դարձեալ իւր պարզութեան դառնայր այն քաղցր և շնորհալից դէմքն. փոթորիկն դեռ շատ հեռու էր, և իրենց նաւակն անքոյթ նաւահանգստի մէջ էր։ Հոն մօտ էր որդին; և իր աչքն նորա աչքէն ոչ բաժանէր, նորա շրթանց խօսքէն կախուած և ամեն փոքր շարժմանցն մտադիր, ամեն ակնարկութեանցն պատրաստ, և ամեն ծառայութեանցն փութաջան։ Ո՜հ որչափ երջանիկ համարէր զինքն նորա սպասաւորութեան մէջ, որչափ գոհ սրտիւ անցուցանէր այն գիշերոյ երկայն ժամերն՝ մանելով հիւսելով նորա աշխատութեան ժամանակ հագնելու շապիկներն, տօնական զգեստներն և այն անկար պատմուճանն՝ որ ճարտարութեան և երկայնմտութեան հրաշալիք մի էր. աւա՜ղ որ ժամանակէ մի ետև... Բայց դեռ նոյն ատեն Աստուած իւղով ուրախութեան միայն օծել էր իւր Քրիստոսն. և փեսաւերն՝ իմաստուն կոյսն Աւետարանին թողոյր որ վաղիւն վասն իւր հոգասցի. և «Խաղաղութիւնն Աստուծոյ որ 'ի վեր է քան զամենայն միտս՝ պահէր զսիրտ նորա և զմիտս»։

Յիսուս իմաստութեան և գիտութեան բոլոր գանձերն բովանդակապէս ունէր, և լրումն աստուածութեանն մարմնապէս բնակէր 'ի նմա, ինքն էր ճառագայթ փառաց հօր իւրոյ երկնաւորի. բայց իբրև մարդ 'ի Մարեմայ ուսաւ անդստին 'ի մանկութենէն այն խոնարհ առաքինութիւններն որ յարակից են մարդկութեանս, և այն պարզ և խանդաղատելի կերպերն զոր բոլոր կենաց մէջ պահեց. այն երկայնամիտ և անխռով քաղցրութիւնն՝ զոր այնչափ լաւ

միացնէր օրէնսդրի և մարգարէի վայել հաստատամտութեանն հետ, այն գորովագութ ողորմութիւնն որ բարեխառնէր Աստուծոյ զայրացելոյ բարկութիւնն, և նախատիպ մարդն և կատարեալ արդարն օրինակ և նեցուկ կարգէր մեղաւորին, այն սրտանց խանդաղատանքն զոր ունէր տղայոց վերայ՝ զորս գրգուէր և օրհնէր իւր աստուածային քարոզութեանց ատեն. միով բանիւ Յիսուսի Քրիստոսի մանկանացու կեանքն կազմող լուսեղէն գնտին մէջ ընկղմած շատ մի ճառագայթներ և բիւրաւոր աննշմարելի երանգներ կան՝ որոց վերայ յայտնի երևի Մարիամու ազդեցութիւնն. ո՞չ ապաքէն երկինք ևս ծաղկանց անուշահոտութեամբն բերկրին՝ թէպէտ և ծաղկունք երկրիս ծնունդ են:

Տարակոյս չկայ որ Յիսուս առ իւր մօրն խանդաղատանաց խանդաղատանք և գգուանաց գգուանք փոխարինած է: Վասն զի առաջին բարիքն որ է կեանքն ըստ մարդկութեան 'ի նմանէ առած էր, և այն արիւնն որ խաղայր յերակունս իւր և զոր պիտի նուիրէր յօղջակէզ 'ի վերայ խաչին առ 'ի լուանալ զմեղս աշխարհի, այն արիւնն Մարիամ տուած էր իրեն: Այն ամեն նուիրական զգացմունք զորս Տէրն բնութեան շնչէ 'ի հոգիս որդւոց մարդկան առ ծնողս իւրեանց՝ 'ի սրտին Յիսուսի՝ միայն Մարիամու անձին վերայ հաւաքած էր. ինքն երկրիս հետ միայն այս կնոջ միջնորդութեամբն կապուած էր՝ զոր և նա սիրէր որպէս որդի և որպէս Աստուած, որ է աւել յանհուն աստիճանի սիրով: Աստուածութեան համար՝ որ զամենայն բարիս շնորհէ և ոչ երբէք ընդունի, այս առաջին անգամն էր որ պարտաւորէր առ արարած ոք ցուցանել այն վեհանձն սրտից առաքինութիւնն՝ որ է երախտագիտութիւն, և Յիսուսի երախտագիտութիւնն առ Մարիամ այնչափ ևս աւելցաւ՝ որչափ որ այս սուրբ և ազնուական կինս

իւր զոհերն իւր զրկմունքն իւր աշխատանքն աւելցուց վասն սիրոյ նորա։ Ուստի եթէ Աւետարանի մէջ երբեմն ընթեռնումք Քրիստոսի աւելի իբրև տէր քան թէ իբրև որդի խօսելն առ աստուածային մայրն իւր՝ այս բանս իւր կողմանէ ոչ 'ի նուազութենէ սիրոյ յառաջ գայր և ոչ յանտարբերութենէ, այլ 'ի կամացն որով կամէր անջատել յամենայն երկրաւորաց առ 'ի լաւ ևս փառաւորել զՀայր իւր երկնաւոր, որոյ շահն ամէն բանէ յառաջ պէտք էր դասել, և որոյ մեծութեանն առջև ամենայն ինչ ոչնչանայր Յիսուսի մտաց մէջ։ Եւ Կոյսն որ շատ լաւ տեղեակ էր իւր որդւոյն առաքելութեանն՝ ամենևին ոչ խռովէր նորա խօսքէն որ երբեմն խիստ թուէին օտարաց։

Երբ Յիսուս քսանևինն տարուան եղև՝ սուրբ ընտանեաց մի անդամն մահն առաւ տարաւ. Յովսէփ այն նախկին սովորութեանց հետևող նահապետն՝ որոյ խոնարհ հաւատքն և սրտին պարզութիւնն զԱբրահամ և իւր ժամանակն յիշեցնել կուտային, Յովսէփ՝ զոր Հոգին սուրբ արդար անունով պատուեց, քաղցրութեամբ ննջեաց 'ի Տէր զքունն արդարոց՝ իւր որդեգրին և անարատ ամուսնոյն ձեռքն. Յիսուս և Մարիամ ողբացին նորա վերայ, և արտմութեամբ հսկեցին իւր պաղած մարմնոյն քովը. բաց 'ի գիշերուան մեղմիկ հովէն՝ ողբատիկ ընտանիքն ուրիշ ողբակից մի չունեցաւ. Գալիլեայի նաբաղներն (մեծատունքն) աւելի հանդիսապէս մեռանէին, թէպէտ և գերեզմանին ցածագոյն դռնէն անցնելու համար գլուխնին խոնարհած ատեն՝ նազարեթացի հիւսան վսեմ ակնկալութիւններն չունէին։ -- Իր վիճակին համեմատ՝ Դաւթի որդւոյն յուղարկաւորութիւնն աղ խեղճուկ կերպիւ կատարեցաւ. և սակայն Մարիամ շատ արցունք թափեց մահուան անկողնոյն վերայ, և Աստուածորդին կատարեց նորա թաղման հանդէսն՝ որ ոչ ոք 'ի կայսերաց այս պատիւս ընդունած չէ։

Հուսկ ուրեմն մօտեցաւ Աւետարանն քարոզելու ժամանակն, և Նա որ 'ի յաւիտենից նախասահմանեալ էր յԱստուծոյ լինել քահանայ և առաքեալ՝ Թողուց զՆազարէթ և եկն յեզերս Յորդանանու՝ ուր մկրտէր Յովհաննէս: Արդեօք ինչ սրտաշարժ տեսարան եղև Մօր և Որդւոյն յիրերաց բաժանուելու ժամանակ՝ երբ վերջին ողջոյնն իրարու տային: Յիսուս իր հրապարակական կեանքն պիտի սկսանէր, միայնակ և աղքատ, յաննշան գաւառ ժողովրդեան յառաջ եկեալ՝ ուրիշ միջոց չունէր՝ բայց եթէ իւր քաջութիւնն և երկայնամիտ համբերութիւնն, և այն հրաշագործութեան ձիրքն՝ զոր ոչ երբէք իւր անձնական շահուն համար բանեցուց. ինքն դիմագրաւ ելանէր այնպիսի արգելից որ թէ և բաւական ոյժ չունէին իրեն դէմ դնելու, բայց բաւական զօրաւոր էին զինքն 'ի մահ մատնելու [1]: Կոյսն ակամայ երկիւղ մի ունեցաւ տեսնելով զՅիսուս որ կը նետուէր այն հրէական ամբոխին մէջ՝ յորում շատ երևելի մարգարէներ իրենց կեանքն կորուսել էին. ինքն քաջ ճանաչէր փարիսեցւոց անյաղթելի հըպարտութիւնն, ժողովարանին խիստ և մախացող նախանձայուզութիւնն, Անտիպաս Հերովդի արիւնախանձ բարքն. գիտէր՝ նաև Մեսիայի համար եղած գուշակութիւններն որ զչարչարանս և զանարգանս նախաձայնէին... Յուդայի Թագաւորաց դուստրն Թէպէտ և քաջասիրտ էր և գիտէր իւր որդւոյն աստուածութիւնն, սակայն և այնպէս սիրտն խոցեցաւ այս առաջին բաժանման ատեն՝ որ իրեն այնպէս երևէր Թէ աւելի ևս անգութ բաժանման մի նախերգանքն և պատկերն էր: Յիսուսի իրմէ մեկնելու ժամանակ իր սիրտն ալ 'ի միասին բաժնուեցաւ, և երբ նա երԹալով հեռանայր և ալ ոտից ձայնն ոչ լըսուէր՝ ինքն միայն միայնիկ մնալով այն տան մէջ յորում այնչափ քաղցր ժամեր անցուցել էր իր որդ-

ւոյն և իր ամուսնոյն հետ, լաչակովն գլուխն ծածկեց և մնաց լուռ և մնչիկ տխուր մտածութեանց մէջ ընկղմեալ՝ ինչպէս ցաւոց արձան մի կճեայ չիրմի մի վերայ։

Քրիստոսի մեկնելէն ետև շատ ժամանակ անցել էր. և Կոյսն լսեց որ Նա Երիքովի մօտ եղած ամայի և բարձր լերանց ներսերն քաշուել է պահօք աղօթիւք և խոկմամբ աշխարհիս փրկագործութեան մեծ գործոյն պատրաստուելու համար։ Արդեօք որչափ նեղութիւն քաշած է Մարիամ՝ մտածելով որ Յիսուս թափառէր այն վայրենի և ամայի երկիրներուն մէջ՝ ուր արծիւն հազիւ գտանէր չիւղ մի խոտոյ իր բոյնն շինելու համար, և ուր ճամբայներն խորին և սարսափելի խորխորատներու մօտէն անցանէին և անդնդախոր ձորերով պատած էին. ինչպէս տագնապէր երբ լսէր մրրկաց գոռալն. արդեօք ուր գտանէր յայնժամ Յիսուս, և զինչ առնէր միայնակ և անապաւէն լերանց ծայրն. եթէ անդունդի մի եզերքն ոտքն սահէր ամեն բան լրացած էր, և եթէ այն խիստ և երկայն ծոմապահութենէն որ իր բնական ուժէն վեր էր հիւանդանար և անկանէր՝ մարդ մի չունէր իրեն օգնելու։ Այն քառասուն օրերն Մարիամու համար քառասուն տարեր եղան, և իւրաքանչիւր վայրկեանն որ անցանէր՝ իւր մայրական տագնապներուն մի մի յաւիտենականութիւն երևէին։... Բայց վերջապէս դարձաւ Յիսուս 'ի Նազարէթ իւր աշակերտօքն, և Մարեմայ խռովեալ սիրտն ալ հանդարտեցաւ։

Նոյն ատեններն հանդիպեցաւ Կանա գալիլեացւոց հարսանիքն. խօսեցեալքն Սրբոյ Կուսին ազգականներն լինելով [10] հրաւիրեցին նաև զՄարիամ, զՅիսուս և իւր աշակերտներն. զոր շնորհակալեօք ընդունելով Կոյսն բարեսիրտ և հաճոյական՝ իրեններէն յառաջ ել և գնաց որպէս զի հանդիսին պատ-

րաստութեանցն օգնէ՝ որ ազգին սովորութեան համեմատ շքեղութեամբ կատարուելու էր։ Հրաւիրեալքն շատուոր էին, ընտանիքն ալ աղքատ. փեսայն ալ իւր հաշուին մէջ սխալել էր, այնպէս որ երբ Քրիստոս եկն եմուտ խնճոյից սրահն՝ արդէն գինւոյ տիկերն գրեթէ պարպել էին. Յիսուս որ իր ներկայութեամբն ամուսնութիւնն սրբացնելով խորհրդոյ բարձրութեան կամէր հասցնել՝ հասաւ հոն տեղն չորս գալիլեացի ձկնորսաց հետ միատեղ որ էին Պետրոս, Անդրէաս, Փիլիպպոս և Նաթանայէլ որոց իմացուցել էր իւր առաքելութիւնն և իւր հոգին շնչել էր նոցա։ Խնճոյից միջոցն յանկարծ գինին բոլորովին հատաւ, և Մարիամ տեսնելով հարսին և փեսին տագնապն՝ Յիսուսի դարձաւ որ իր քովը նստած էր և նշանաւոր կերպով մի ասաց Գինի ոչ ունին. Յիսուս ալ ծանր և հանդարտ ձայնով պատասխանեց. «Զի՞ կայ իմ և քոյ, կին դու, չև է հասեալ ժամանակ իմ» [11]։

Կոյսն որ իւր ազգականաց ամօթով մնալն ոչ կամէր՝ որով իրենց սիրտն ալ կարէր կոտրիլ, իմացաւ որ Քրիստոս իւր խնդրած շնորհքն չմերժեց, և թէպէտ դեռ ժամանակն չէր հասած որ Յիսուս իւր փառքն յայտնէ՝ բայց գիտէր որ իր սիրոյն համար պէտի կատարէր ուզածն՝ թէպէտ և խօսքին մէջ խստութիւն մի երևէր. ուստի այն հաւատքով՝ որ լերինս տեղէ տեղ փոխադրէ, ասաց ծառայներուն Որ ինչ ասիցէ ձեզ արասջիք։ Գիտելու է որ հոն տեղն քարէ վեց հատ մեծամեծ թակոյկներ կային՝ լուացուելու սրբուելու համար որպէս հրէից սովորութիւն էր. ուստի Յիսուս հրամայեց որ մօտ աղբիւրին ջրովը մինչև բերանն լեցնեն, և լեցուցածնուն պէս անոյշ գինի դարձաւ։ Այս կերպով սուրբ Կոյսն առաջինն եղև որ իւր Աստուածորդւոյն հրաշից նախախայրիքն ընկալաւ, և իւր գործակցութ

բարեխօսութիւնն Ամենակալին տուած վճիռն անգամ փոխել տուաւ։

Կանայի զքանչելիքէն ետև՝ ալ հրաշքներն ետեւէ ետև յաջորդեցին և աստուածային կնքով հաստատեցին ՓՐԿՉԻՆ երկնային աննախախնամական առաքելութիւնն. վասն զի իր ձայնն միայն լսելով մրրիկներն լռէին, մարդկանց ախտերն աներևոյթ լինէին, դևք հալածեալ ՚ի մարմնոց իրենց տխուր դժոխոց բանտն դառնային, մեռեալք ՚ի գերեզմանաց յառնէին, և իւր սուրբ ոտից հետքն ուր որ հասանէր՝ հոգւոյ և մարմնոյ ցաւերն բժշկէին [12]։ Առ ոտս նորա դիմէին սիդոնացիք և տիւրացիք, եդոմայեցիք և արաբացիք. և բազմութիւն ժողովրդեան իւր անցնելու ճամբուն վերայ շարուած՝ նորա զգեստուց քղանցքն համբուրէին, խոնարհութեամբ խնդրելով ՚ի նմանէ զառողջութիւն և զկեանս, զոր Աստուած միայն կարող է տալ այնոցիկ՝ որ բաւական հաւատք ունին բժշկուելու։

ՏԷՐՆ ՄԵՐ դեռ պատշաճ չէր սեպած որ իւր մայրն իրեն հետ շրջի այն դժուարին ճամբորդութեանց մէջ. ուստի Մարիամ իւր տան մէջ նստած լսէր այս տարօրինակ լուրերս խռովայոյզ ուրախութեամբ և անհանգիստ զարմացմամբ. և իւր խռովութիւնն և տագնապն անհիմն չէր. վասն զի ժողովուրդն զինքն օրհնելով և մեծացուցանելով ետևէն երթալու ժամանակ՝ փարիսեցիք դպիրք և իշխանք ժողովրդեան սկսել էին իրենց չար մտօքն գայթակղիլ և նախանձիլ Աստուածորդւոյն յաջողութեան վերայ։ Եթէ մեղաց թողութիւն տար՝ հայհոյէ դա ասէին. եթէ մեղաւորներն յորդորէր և դարձի բերէր՝ վատութիւն համարէին. շաբաթ օր հիւանդ բժշկէր՝ անօրէն է զօրէնս ոչ պահէ ասէին։ Իւր վարդապետութիւններն իբրև բարերար ցող իջանէին իւր շրթունքէն, և ոչ թէ վնասակար հեղեղի պէս, ուրեմն

նախկին մարգարէից ամենևքն ոչ նման, այլ յԱստուծոյ չէ իւր վարդապետութիւնն ասէին: Եթէ խոնարհութիւն, անյիշաչարութիւն, կամաւոր աղքատութիւն, վասն Աստուծոյ եւեթ և 'ի մարդկանէ ծածուկ ողորմութիւն և ընդհանուր գթութիւն քարոզէր՝ այս ամենայն վտանգաւոր նորութիւն մի է ասէին ծերքը ժողովարանին: Կեղծաւորութեան դէմ խօսած ատեն՝ փարիսեցիքն զչարէին. արծաթսիրութեան և վաշխառութեան դէմ քարոզելովը օրինաց վարդապետներն յիւրմէ խորշէին. սադուկեցիք ալ ոչ կամէին որ հանդերձեալ կենաց վերայ քարոզէ: Ու սոքա ամենեքեան որ զանազան նկատմամբ դաւանութեամբ և քաղաքական շահերով իրարմէ զատուած միշտ իրարու հետ կռուէին՝ իրենց անսիրելութիւններին մոռանային երբ խօսքն զԳալիլեացին ատելու կու գար, և այն ատեն ամենքն ալ միաբանէին վնասելու և կորուսանելու զնա. մէն մի խօսքերնին մի մի դարան էին, մէն մի ծիծաղնին մատնութիւն, և ամեն գովեստնին սպառնիք և նախատինք: Ոմանք յայտնապէս համարէին զնա խաբեբայ հերետիկոս և սամարացի. ոմանք ալ մեղմով համոզէին զժողովուրդն թէ մոլեգնեալ է. բայց մեծագոյն մասն իւր հակառակորդաց այն վատ նախանձոտներն էին՝ որ իրենց ձեռքէն լաւ և գեղեցիկ բան մի չգալուն՝ կատաղութեամբ յարձակէին իւր անունն կոտրելու իւր պատիւն աւրելու և աղարտելու. վասն զի իրենց խաւարասէր աչաց համար խոստոց ներքև ծածկեալ փոսսուռայի նուաղ լոյսն անգամ անբերելի էր. ուստի ժողովրդեան Յիսուսի համար տուած գովեստներէն 'ի նախանձ գրգռեալ, և չկարելով ևս եղած սքանչելիքն ուրանալ՝ սատանայի գործ համարէին զնոսին ասելով «Բէեղզեբուղաւ իշխանաւն դիւաց հանէ դա զդևս» [13]: Այս ծածուկ քրթմընջիւնս Մարիամու սիրտն վախցընէր, և իր

բոլորտիքն եղողներն ալ չարութեամբ Թողուին զինքն որ այս տագնապներուս մէջ ալեկոծի։ Գալիլեայի քաղաքաց մէջ ամենէն անհաւանն և ամենէն աւելի խստապարանոցն ընդունելու զբանն կենաց՝ Նազարէթ քաղաքն էր, և այնոր բնակիչներէն ալ ամենէն աւելի ընդդիմակացք զինքն իբրև Թագաւոր և Մեսիա ընդունելու՝ նոյն իսկ Քրիստոսի ազգականներն էին։ Եւ որովհետև սոքա Կուսին հրաշալի ծնունդն ոչ գիտէին, և նորա ծննդեան և տղայութեան ժամանակի սքանչելիքն՝ հեռու տեղուանք եղած էին՝ ուստի իրենց առջին Յովսեփայ համարեալ զաւակն՝ անոնց աղայ մի էր, իրենց տղոց պէս մեծցած և սնած, մանաւանդ թէ աւելի ալ աղքատ տան մէջ բնակեալ, և ծանր աշխատութեամբ իր օրըստօրեայ ապրուստն ճարելով, որով և ընկերներն ալ միշտ հասարակ մարդիկ եղած էին։ Քրիստոս որ զաղքատութիւնն մեծարել ուզելով իրեն բաժին և ժառանգութիւն ընտրեց զայն՝ համբերութեամբ կրեց այն վիճակին հետևանքն զոր ընտրել էր և որ ձեռնտու ոչ երևէր իր դիտմանն. «Նաև եղբարք իւր չէին հաւատացեալ 'ի նա» 14 ասէ Յովհաննէս աւետարանիչ։ Իրաւ այն կամակոր Նազարեթացիք զարմանային այն հրաշից վերայ՝ որ Աւետարանի քարոզութեան ժամանակ ամեն տեղ գործուէին, սակայն ոչ կարէին համոզուիլ. և գիտելով ալ թէ բոլոր Գալիլիա որդի Դաւթի անուամբ ողջունէին ըզՅիսուս, և միշտ երկու երեք հազար հոգի պակաս չէին նորա բոլորտիքն իւր խօսքն լսելու համար, ուստի վախէին որ մի գուցէ այս բազմաթիւ ամբոխս Հերովդէս Ագրիպպասի կասկած պատճառէ, և իրենք Յուդայի Թագաւորաց յաջորդներն՝ նեղութիւն կրեն այն նոր մարգարէին պատճառաւ։ Այսպէս խորհելով անուն հանեցին թէ Յիսուս խելագարեալ է, և երդուան զինքն բռնութեամբ և զինու

զօրութեամբ 'ի Նազարէթ դարձնելու. և այս իրենց դաւակցութիւնն 'ի Մարեմայ ծածկելով՝ զինքն առ հետերնին առած եկին 'ի Կափառնաում, որպէս զի մօրն անուամբն աւելի դիւրաւ կարող լլցին մօտել Յիսուսի [13]։

Նոյն ատեն Մեսիայն ժողովարանին մէջ ուսուցանէր, և բազմութիւն ժողովրդոց մտադրութեամբ և յարգանօք ունկն դնէին։ Նազարեթացիք հասնելով, և ժողովրդեան աչաց իշխանութիւն ցուցանել ուզելով, որպէս ասէ Ոսկեբերան, Փրկչին իմաց տուին թէ մայրն և եղբարքն 'ի դուրս կեցած իրեն հետ խօսել կամէին։ Բայց Յիսուս իր մարմնաւոր ազգականաց միտքն իմանալով, և այս պատեհս ձեռք առնլով հին օրինաց անձուկ սահմաններն ընդարձակելու՝ ուրով առանց խտրութեան բովանդակ աշխարհիս մարդիկն մի մարդկային գերդաստան պիտի կազմէր՝ այս հիանալի պատասխանն տուաւ իւր ազգականաց կողմանէ եկող գեսպանին. Ո՛ է իմ մայր կամ ո՛վ են իմ եղբարք. յետոյ իւր աչքն դարձնելով իւր բազմախուռն աշակերտաց վերայ՝ բարձրաձայն աւելցուց. Մայր իմ և եղբարք իմ սոքա են որ զբանն Աստուծոյ լսեն և առնեն։ Այս խիստ յանդիմանութենէս ետև՝ զոր որդիք Ալփէոսի լաւ հասկցան՝ Աստուածորդին շոյտ մի դուրս ել, ասէ Ոսկեբերան, առ 'ի մատուցանել Մօր իւրում զամենայն պատիւ՝ զոր պատշաճութիւնն իւրն պահանջէր։

Մայրն ողջունելէն և սակաւ մի հետն տեսնուելէն ետև ծովուն եզերքն՝ Փրկիչն նաւակ մի մտնելով սկսաւ նորէն ժողովուրդն ուսուցանել։ Կոյսն ալ ամբոխին մէջ խառնուելով բարեպաշտ մտադրութեամբ ուշ դնէր սերմանացանին առակին։ Իսկ Նազարեթացիք Յիսուսի Քրիստոսի անդիմադրելի ճարտարխօսութեան և գերմարդկային վսեմութեան վերայ զարմացած՝ ապշութեամբ իրարու հարցանէին

Թէ արդեօք յիրաւի Մարեմայ զաւակն էր նա. Նման այն ամերիկեան ափանց քարբին որ երբ անտառներու խորէն երաժշտութեան ձայն մի լսէ՝ ընդարմացած թոված մնայ։ Իրենք եկել հասել էին վախի և երկիւղի արագութեամբ. անձնասէր պերճախօսութեամբ և ամբարհաւաճ իշխանութեամբ զՔրիստոս յիւր առաքելութենէն ետ դարձնելու համար, համարելով թէ իրենց վնասակար և վտանգաւոր է. և սակայն Նորա մի հայեցուածովն այնչափ թուլացան՝ որ առջևն բերան անգամ ոչ կարէին բանալ։ Եւ այս բանս յայտնապէս իմացընէ մեզ Սուրբն Մարկոս՝ որ նոցա թշնամական միտքն մեզ յայտնելէն ետև՝ ամենևին բան մի ոչ ասէ թէ համարձակած լինէին խօսելու ընդ Տեառն մերոյ։

Ժամանակէ մի ետև դարձաւ Յիսուս 'ի Նազարէթ. ա՛լ Կուսին ուրախութիւնն ո՞վ կարէ պատմել՝ երբ տեսանէր զնա նոյն փսիաթին վերայ բազմեալ ուր երբեմն նստէր իւր մանկութեան ատենն, ուտելով այն հացն զոր օրհնելով բեկանէր. Մարիամ բարեսրտութեամբ 'ի գութ շարժեալ առնոյր ածէր զնա երբեմն աղքատ հիւանդի մի տուն, և բժշկութիւն պարգևելով՝ ապսպարէր որ եղածն ծածուկ պահեն. զմայլէր հիանայր երբ տեսանէր զնա զօրաւոր 'ի խօսս և 'ի գործ, նա որ երկայն ժամանակ լռութեամբ և աշխատանքով անցուցել էր իւր կեանքըն. ո՜հ յիրաւի իւր ուրախութեան չափ չկար. սակայն Աստուած ուզեց դառնութիւն խառնել այս ցնծութեան հետ։ Շաբաթ օր մի Որդին և Մայրն 'ի միասին ելին գնացին 'ի ժողովարանն՝ ուր մեծ բազմութիւն ժողովեալ էին տեսնելու համար զՅիսուս և իւր խօսքն լսելու. բայց Նազովրացիք նոյն վստահութիւնն և նոյն յարգելի մտադրութիւնն ոչ ցուցանէին իւր խօսից՝ ինչ որ տեսած էր ուրիշ տեղեր։ Իրենք յառաջագոյն նախապաշարուած էին Որդւոյ

մարդոյ խօսիցն և գործոց վերայ, և պատրաստ էին առիթ մի առնլով զինքն քարի բռնելու։ Ցիրաւի կան երկիրներ որ իրենց պարծանք սեպուելու անձին թշնամի դառնան, և մինչև որ իրենց նախանձն շարժող մարդուն գերեզմանին վերայ խոտ չբուսնի՝ հակառակութիւնն ձեռքէ ոչ թողուն։

Ինչ և իցէ մինն յերիցանց յառաջ մատեաւ և Եսայի մարգարէի գիրքն տուաւ Փրկչին ձեռքն որ կարդայ։ Յիսուս յարեաւ և մագաղաթն պարզելով շնորհալի պարզութեամբ և հիանալի վսեմութեամբ սկսաւ կարդալ այս հատուածս. «Հոգի Տեառն 'ի վերայ իմ, վասն որոյ և եօծ իսկ զիս, աւետարանել աղքատաց առաքեաց զիս, բժշկել զբեկեալս սրտիւ, քարոզել գերեաց զթողութիւն և կուրաց տեսանել, արձակել զվիրաւորս 'ի թողութիւն, քարոզել զտարեկան Տեառն ընդունելի»։ Յետոյ գիրքն խփելով պաշտօնէին տուաւ ու նստաւ, և ժողովարանին մէջ աչք ամենեցուն իր վերայ դարձան։ Այն ատեն Աստուածամարդն սկսաւ խօսիլ այն կենդանի և բնական ճարտարխօսութեամբն որ ամենեցուն սիրտն իրեն քաշէր, և այն պատգամն իրեն համար գրուցած լինելն ցուցանելով՝ գերազանց կերպով վարդապետէր, ոչ որպէս աշակերտ ժողովարանին՝ այլ իբրև տէր նորին և իշխան։ Լուռ շշընկոց մի փրթաւ բազմութեան մէջ. ոմանք հիանային նորա խօսից զօրութեանն և գեղեցկութեան վերայ, իսկ այլք միշտ յամառեալ իրենց սկզբամբն զինքն արհամարհ և նուաստ ցուցանելու՝ յայտնապէս ասէին. «Ո՞չ սա է որդին Յովսեփայ»։ Եւ Յիսուս նոցա միտքն թափանցելով, և բաց գրոց պէս նոցա թիւր և նախանձոտ սրտերն կարդալով պատասխանեց այս ճշմարիտ խօսքս՝ որ և առակ դարձած է. «Չէ մարգարէ անարգ եթէ ոչ 'ի քաղաքի և յազգատոհմի և 'ի տան իւրում»։ Եւ որովհետև

գիտէր թէ նոքա 'ի Կափառնաում գործած հրաշից պէս նշան պիտի խնդրէին, յայտնապէս ասաց նոցա թէ իրենց անհաւանութիւնն անարժան արարեալ է զիրենք այս շնորհէս, և հրաշք ընդունելու համար՝ հաւատով խնդրելու է զնոսին: Յետոյ Աւետարանի ծաւալումն իմացընելու համար, և զայն վայրենի ձիթենւոյն պատուաստին նմանեցնելով ժողովարանի հնցած բնոյն վերայ՝ ասաց. «Արդարև ասեմ ձեզ, զի բազում այրիք էին յաւուրս Եղիայի 'ի մէջ Իսրայէլի, յորժամ փակեցանն երկինք զերիս ամս և զվեց ամիս, և եղև սով մեծ ընդ ամենայն երկիր. և ոչ առ մի 'ի նոցանէ առաքեցաւ Եղիա, բայց միայն 'ի Սարեփթա սիդոնացւոց առ կին մի այրի: Եւ բազում բորոտք էին յԻսրայէլի առ Եղիսէիւ մարգարէիւ. և ոչ ոք 'ի նոցանէ սրբեցաւ, բայց միայն Նեեման ասորի»: — Այս վերջի խօսքս՝ խծուծի մէջ նետուած խանձողի մի պէս զամենքն վառեց բորբոքեց, և իրենց ազգային հպարտութիւնն վիրաւորելով, և ժառանգական ատելութիւնն յիշելով, և աւանդական ակնկալութիւնն զայրանալով՝ բոլոր ժողովարանին մէջ եղողներն մոլեգնեցան կրակ կտրեցան. «Եւ յարուցեալ հանին զնա արտաքոյ քաղաքին, և ածին զնա մինչև յարտևան լերինն՝ յորոյ վերայ քաղաքն նոցա շինեալ էր, գահավէժ առնել զնա»:

Կոյսն հասարակ կանանց մէջ նստած՝ անհանգըստութեամբ և երկիւղիւ գիտէր այն մրրիկն որ երթալով զայրանայր, և նազովրացւոց կատաղի աչքէն և մոլեգին շարժմունքէն իմանալով նոցա անօրէն դիտմունքն՝ առանց դանդաղելու վտանգին դէմ վազեց մինչև իւր որդւոյն քովը հասնելու համար. բայց իւր ոյժն քաջութեանն չհաւասարեցաւ: Այն հրեայք որոց ոտք միշտ երագունք են հեղուլ զարիւն ետևէ ետև վազէին, և Մարիամ տերևի պէս դողդղալով և հազիւ թէ ոտից վերայ կանգնելու ոյժ ունելով՝ հե-

ռուանց նոցա ետևէն ընթանայր՝ քունն գլուխն մարդու մի պէս։ Տեսաւ զՅիսուս այն ժայռին ծայրն որուն մօտ ահագին վիհ մի կար. լսէր հեռուէն մահուան և վրէժխնդրութեան կատաղի աղաղակներն. նոյն տեղն ծունկերն կտրեցան աչքն մթնցան, ցաւալի հառաչանք մի հանեց, անկաւ մարեցաւ բլրին վերայ [16]։ Սակայն այն անօթի գայլերն որ գառին ետևէն անկած հալածէին՝ իրենց վախճանին չհասին և յոյսն պարապ ելաւ. Որդւոյ մարդոյ զոհ լինելու ժամն դեռ հասած չէր, և նորա արիւնն իրենց իշխաններն պիտի խմէին։ Յիսուս զարկաւ կուրացոյց այն մարդախողող գազաններն, և իւր թշնամեաց մէջէն անցաւ գնաց առանց ճանչցուելու, Կափառնաումի ճամբայն բռնելով՝ ուր հասին յետոյ իւր մայրն և Մարիամ Կղէովպայ և որդիք Ալփէոսի։

Այս ատենս էր որ Սուրբ Կոյսն իր որդւոյն Յիսուսի ձեռօքն մկրտուելով Յորդանանու եզերքն, ինչպէս որ աւանդէ Եւտիմիոս [17], ալ ևս չուզեց միայնակ տունն նստիլ, և իր որդւոյն հետ միատեղ էր ուր որ երթայր իւր քարոզութեանց մէջ, հակառակ իւր նախկին միայնասիրութեանն։ Ինքն ամբողջ երեսուն տարի կրօնասէր հոգւով հոգ և խնամք ունեցել էր իր որդւոյն վերայ թէ յօտարութեան և թէ 'ի հայրենիս նախահարց իւրոց, իրեն համար աշխատել իրեն համար արցունք թափել իրեն համար այնչափ վիշտ կրել էր. և մինչ դեռ մանուկ երախայ էր նորա որրանին քովն էր գիշեր ցերեկ և անտի ոչ բաժանէր։ Ապա բնական էր որ նորա հալածական կենացն ալ վիճակակից լինելով թողոյր իւր խաղաղիկ տունն յորում ծնեալ էր, և նորա օրհնեալ հետոց ետևէն երթալ՝ հրէից քարոզած ատեն։ Կոյսն ինչպէս ամեն ատեն՝ այսպէս ալ այս փոթորկալից և երկիւղալից կենաց խռովութեանց մէջ հրաշալի զարմունք մի ունեցաւ։ Սիրելով զՅիսուս այնպիսի սի-

րով մի՝ որ ոչ ոք 'ի մարց սիրած է իւր զաւակն, և ինքն միայն հաստուցանելով զայն անհուն սէրն մինչև երկրպագութեան աստիճանն, ամենևին չուզեց որ որդին իւր մայրական խանդաղատանաց նուիրէ այն պատուական ժամուց մի ևեթ վայրկեանն ալ՝ որ նուիրեալ էին նորա առաքելութեանն 'ի վերածնութիւն աշխարհի. ոչ ևս խօսք մի արար իւր հոգնութեանց, երկիւղներուն և կասկածանաց վերայ, նաև իւր առանձինն պիտոյից: Մարիամ ոչ միայն աղաւնի մի էր ծածկեալ 'ի ծերպս վիմաց, և անարատ կոյս մի անուցանելու որոշուած զԱստուածորդին կաթամբն և բառնալոյ զնա 'ի գիրկս իւր զհիւրն երկնային, այլ էր միանգամայն կին մի զօրաւոր՝ զոր Աստուած հաճէր կարգել 'ի զանազան վիճակս մարդկային կենաց, որպէս զի ինքն օրինակ լիցի դըստերաց Եւայի իրեն հետևելու, և նախատիպ իրեն նմանելու:

Բայց պատշաճ չէր որ Աստուածամայրն միայնակ հետևէր Յիսուսի և առաքելոց նորա յուղևորութիւնսն 'ի Հրէաստանի, ուստի իրեն ընկեր եղեն Մարիամ Կղէովպայ՝ որ էր մայր Յակոբայ, Սիմէոնի, Յուդայի և Յովսեսի՝ որ ռամկօրէն եղբարք Տեառն անուանէին, Սաղոմէ մայր որդւոցն Զեբեդեայ՝ զորս Փրկիչն առանձինն իմն սիրով սիրէր, Շուշան կին Քուզայ հազարապետին Հերովդի, և այլ հարուստ կանայք գալիլեացիք որ վասն սիրոյ Յիսուսի Քրիստոսի աղքատացել էին: Սոցա հետ էր նաև մանկամարդ հարուստ ազնուական և յոյժ գեղեցիկ կին մի՝ որ սաստիկ գորովանօք ծառայէր Տիրամօր Տեառն իւրոյ: Կինս այս որ հրաբորբոք սիրտ մի ունէր, և Եգեան ծովուն ալեաց պէս մրրկայոյզ՝ ատենօք հազար և բիւր յայրատ բոցերով վառեալ յաչս աշխարհի՝ վատանունութիւնն և անուանարկութիւնն ևս արհամարհէր, և հասարակաց մեղադրանքէն ալ

ոչ ամաչէր, վերջապէս զղջալով իւր անառակ կենաց վերայ՝ և իւր հպարտ գլուխն Քրիստոսի ոտից ներքև խոնարհեցընելով՝ խնդրել էր 'ի նմանէ իւր հոգւոյն ախտից բժշկութիւնն յայնմանէ զոր Աստուած դաւանէր: Ուստի և ամենասուրբ սէր Տեառն մերոյ իւր անբաւ գթութեան մէջ ընկղմել էր Մագդաղենայ տիկնոջ ամեն խօլական սիրահարութիւններն և աշխարհային ցանկութիւններն: Ինքն ալ այս գըթութեան փոխարէն՝ հանեց 'ի բաց ընկեց իւր մարգարտեայ քայռամանեակներն, ոսկեղէն և ականակուռ զարդերն և շղթայներն, և վաճառելով իւր Գալիլեայի ծովակին մօտ ունեցած վարդաստանի ծառերով չուրջ պատեալ դղեակն, և հագնելով հաստ ու խոշոր խարազն մի, իւր հիանալի սեաւ մազերէն զատ ուրիշ զարդ մի չունենալով, որովք զոտս Տեառն իւրոյ սրբել ջնջել էր՝ հետևեցաւ Մարիամու, և այն մանկամարդ քնքուշ բամբիշն՝ հարուստ իւր առատաձեռնած ողորմութիւններովն և նորանոր առաքինութիւններով զարդարեալ՝ իւր զղջացեալ սրտին արտասուքն թափէր Կուսամօր ամենագութ և անբիծ ծոցն. զոր և նա իւր բազկաց մէջ ընդունելով և իւր սրտին մէջ հանգուցանելով այն մեծ մեղաւորն՝ երկար ժամանակ անմշակ և անդարման մնացեալ բարեբեր երկրին մէջ մշակէր երկնից համար պատրաստեալ ծաղիկներն:

Հոս չուզելով խօսքս երկարել Աստուածամօր ամեն քաշած վշտերուն և վախերուն վերայ՝ որոց վէպն յոյժ երկայն է, վերջապէս տեսանեմք զինքն որ մտանէ յԵրուսաղէմ այն մահագոյժ քաղաքն, ուր գայր Քրիստոս Տէրն մեր վերջին զատիկն կատարելու իւր աշակերտացն հետ միատեղ: Ինքն ալ տեսաւ այն թագաւորեալ քաղքին բնակչաց խումբ խումբ ընդառաջ ելնելն որդւոյ Դաւթի՝ որ հեզութեամբ հոն մտանէր հեծեալ յէշ ըստ օրինի ազա-

որդւոց իւրոյ տոհմին, մարդասիրութեամբ ընդունելով այն բարեսրտութեան պատիւներն զոր ժողովուրդն կամակար յօժարութեամբ մատուցանէր՝ անհամբերութեամբ սպասելով տեսնելու իւր մարգարէն: Եւ Յիսուս որ ոչ երբեք մերժէր երախտագիտութեան և սիրոյ խոնարհ ցոյցերն զոր մատուցանէին նմա արարածք, որչափ փոքր և դոյզն ալ լինէին այս գործոց և շնորհակալեաց կրաւականքն երբ 'ի սրտէ յառաջ գային՝ միշտ աստուածային բարեսիրութեամբ ընդունէր զնոսա:

Մագդաղինէ մերձ 'ի վերայ Տեառն իւրոյ դարձընելով իւր աչքն և մերձ 'ի վերայ ամբոխին որ Ովսաննա՛ երգերով օդն թնդացուցանէին՝ քաղցր արտասուս հեղոյր՝ իւր քօղին ներքև ծածկուած. արտասուալից էին և աչք Մարեմայ՝ բայց յառեալ անվրէպ 'ի հիւսիս արևմտեան դին՝ 'ի կողմն Գողգոթային:

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ԺԵ. ԳԼԽՈՅ

1 Հին գաղղիացիք վեցերորդ և եօթներորդ դարուն մէջ դեռ հեթանոսք՝ կաղնի ծառերն աստուածացընելով նոցա առջևն ջահեր վառէին, և աղօթս մատուցանէին. նոյն պատիւն մատուցանէին մօտ եղած մեծամեծ քարանց։ — Հայք մանաւոր պաշտօն մատուցանէին սօսի և բարտի ծառոց, որոց նուիրական անտառին նուիրէին իրենց զաւակներն, որպէս «Անուշաւան սօսանուէր, քանզի ձօնեալ էր ըստ պաշտամանց 'ի սօսիսն Արմենակայ որ յԱրմաւիր» (Խորենացի Պատմութիւն Ա. 11)։ Շնորհալի ևս ասէ «Ծառ որ բարտի անուանի 'ի կռապաշտութեան ժամանակն 'ի պաշտօն առեալ էր»։

2 Պըքինկէյմ Պալէս Լոնտոյ։

3 Ծանօթ է ամենեցուն Ցովենալի կամ Ցոբնալի երգիծանքն «Ով սուրբ ազանց յորոց պարտէզ-բուսեալ աճին աստուածք այսպէս» (Երգիծ ԺԵ, 10)։

4 Տես 'ի Կարչիլ գիրք Ա գլ. Բ և ԺԲ։

5 Պորփիւր որ բազմաստուածութեան գաղափարքն լաւ գիտէր՝ խոստովանի թէ հեթանոսք 'ի պաշտօն առնուին զդևս, վասն զի ասէ «Են ոգիք պիղծք և ստապատիրք և չարարուեստք՝ որք կամին զի մարդիկ աստուածս համարեսցին զինքեանս և պաշտօն 'ի նոցանէ առնուցուն. և հարկ է հաշտ առնել զնոսա զի մի մեղիցեն։ Ոմանք 'ի նոցանէ զուարթք և ուրախք հաճին ընդ տեսլարանս և ընդ խաղս, իսկ այլք տխուրք և թաղծեալք կամին հոտոտիլ 'ի ճենճեր զոհից և արիւնաուշտ պատարագաց»։

6 Հրեայք այս սկզբան վերայ հաստատեալ են՝ որ Սինայ լերին վերայ Աստուծոյ իրենց հետ դրած ուխտն ոչ էր ըստ գրաւոր օրինաց՝ այլ բերանացի աւանդեալ օրինաց. որով առաջինն ջնջեն՝ երկրորդն հաստատելու համար, առով բոլոր կրօնքն աւանդութեան վերայ հաստատեն։ Այս ապականութիւնս այն աստիճան հասած էր իրենց մէջ առ ժամանակօք Քրիստոսի՝ որ Տէրն մեր շատ անգամ յանդիմանէ զնոսա՝ իրենց աւանդութիւններովն Աստուծոյ խօսքն և օրէնքն ջնջելնուն համար։ Իսկ այժմ այլ աւելի վատթարանալով սուրբ գիրքն ջրոյ, իսկ Միշնայն և Թալմուտն անապակ գինւոյ նմանեցուցանեն. ոմանք առ առաջինն աղ և երկրորդն համեմ համարին։

7 Յունաստանի մէջ բանաւոր կամ աւազակ մի էր՝ որ ձեռքն

*անկած ուղեւորներն երկաթ անկողնոյ վերայ պառկեցընելով կարճերն քաշելով քաշքշելով իսկ երկայններն ծայրատելով սպանանէր, որ ինքն ալ վերջապէս սպանաւ 'ի Թեսէոսէ։*

8 *Լամարթին* Ուղեւորութիւն յԱրեւելս։

*Ա. Խորենացի Ս. Յովսեփայ մահն դնէ յերեսուն և մի ամի կենաց Քրիստոսի զի ասէ «Յովսէփ քառասնամեայ էր՝ մինչ Կոյսն յանձնեցաւ նմա, և յերեսուն և մի ամի կենարարին հանգեաւ 'ի Նազարէթ 'ի տան իւրում· և սպասաւորէր Սրբոյ Կուսին Յակոբ արդարն 'ի Յովսեփայ յանձնեալ, զի և առ Յովսեփաւ նա հոգայր ծառայապէս հեզն և արդարն, մինչև 'ի Քրիստոսէ Յովհաննու յանձնեցաւ»* (Թուղթ առ Սահակ արծրունի)։

9 *Լամարթին 'ի նմին տեղւոջ։*

*Բ Խորենացի յաւելու 'ի մկրտութեան Տեառն և զյետագայս. «Յաւուր մկրտութեան Տեառն՝ խաժամուժ ամբոխ հրէից գնացեալ հրոսակք 'ի Յորդանան ըմբռնել զՏիրամայրն և զՅովհաննէս. իսկ հրեշտակ Աստուծոյ եդ զնոսա յայնկոյս գետոյն. և հրեայքն անցանել կամեցեալ՝ արս քսան 'ի նոցանէ կորոյս Յորդանան»* (Թուղթ)։

10 *Ոմանք համարին թէ հարսն և փեսայն ազգականք էին Կուսին (Բարոնիոս, Մալդոն)։*

11 *Մեզ երևի թէ Տէրն մեր այս պատասխանս առանձինն ետ առ Մայր իւր, որպէս և աւետարանի պատմութենէն իմանամք. վասն զի հաւանական ոչ երևի թէ Քրիստոս այս խորհրդաւոր պատասխանն բարձրաձայն տուած լիցի, զոր կոչնականք կարէին ծանր համարել Մարեմայ համար՝ իրին տեղեակ չլինելով. և այս անտի ալ յայտ է որ ծառայք անդէտ լինելով Փրկչին ժըխտողական պատասխանւոյն՝ Սրբոյ Կուսին իրենց ասացածն անվրէպ կատարեցին։ Բայց ինչ ալ լիցի՝ Տեառն մերոյ խօսից մէջ յանդիմանութեան կերպ մի չկայ, հապա պարզապէս ասել կամի ինձ և քեզ ինչ փոյթ է թէ գինի չունին. իսկ կին անունն տալ մօր այն ատենի սովորութիւն էր առ հրեայս։ Մանաւանդ Տեառն մերոյ առ Մայրն ունեցած սէրն անտի ալ երևեցաւ՝ որ դեռ ժամանակն ալ հասած չլինելով հրաշագործութեան՝ նորա աղաչանաց չկարաց դէմ դնել։*

12 *Տ'Էրպըլօ արաբացի կամ մահմետական բանաստեղծի մի քերթուածն յիշէ՝ որ գեղեցիկ բացատրէ Յիսուսի Քրիստոսի հոգւոյ ցաւոց վերայ ունեցած ազդեցութիւնն, և զոր իր թարգմանութենէն թարգմանելով հոս տեղս դնեմք. «Ի քոց բանից սիրտ տխրազգեաց ընդունի զիւր ըսփոփանս. Ի լուր ևեթ անուան քոյին՝ հոգի զգենու կեանս և կորով։ Եւ թէ երբեք միտք մարդկային յաստուածայնոց սլացան խորհուրդս՝ Ի քէն ըղըյան ընկալան խելամտել անհաս գաղտնեաց։ Եւ որ 'ի նմայն կորով մտաց 'ի քէն նմին ընձեռեցաւ»։*

Հմուտ արեւելագէտն գիտել տայ թէ նոյն իսկ քրիստոնեայ մի չէր կարող աւելի ուժով բացատրել։

13 Հիւսէին Վաիզ պարսիկ մատենագիրն իւր Մէսնէվէ Մա-նէվէ գրոց մէջ հրէից Յիսուսի Քրիստոսի դէմ ունեցած անզօր և նախանձոտ կատաղութեան վերայ խօսելով ցուցանէ թէ ա-մեն հեռ և նախանձ զոր ցուցանեն մարդիկ յաջող կատարած ունեցած գործոյ մի վերայ, ուրիշի վնաս ոչ ածեն՝ բայց եթէ իրենք իրենց. և յաւելու՝ Շունն հաջէ պայծառափայլ լուսնին դէմ, բայց շան հաջիւնն արգելք ոչ լինի այնոր պայծառու-թեանն. որընթաց գետին մէջ աւլուք և աղտեղութիւնք կը թափին՝ բայց նորա ընթացքն ոչ խափանեն և ոչ պղտորեն, այլ երեսին վերայ լողան անցանեն։ Մինչդեռ Մեսիայն զմե-ռեալս յարուցանէ՝ հրեայք նախանձու մաշեալք՝ մատուըներն խածատեն և զմօրուս փետեն (տե. տ'Էրպըլօյի)։

14 Աւետարան ըստ Յհ. գլ. է 5։

15 Աւետարան ըստ Մարկ. գլ. գ 13, 21, 32, 33, 34 և 35։

16 Հայրն Ճէրամիզ ասէ թէ Նազարէթ քաղքին և այն ա-պառաժ ժայռին մէջտեղն եղած ճամբուն կիսուն՝ ուստի որ հրեայք զՔրիստոս գահավէժ ածելոց էին՝ մենաստանի մի ա-ւերակներն երևին՝ հանդերձ գեղեցիկ եկեղեցւով զոր Հեղինէ թագուհին շինել տալով նուիրեց Տիրամօրն ընդ անուամբ Սա-սանեալ Կուսի։ Ըստ ոմանց Մարիամ հոն հասած ժամանակ տեսաւ որ հրեայք իւր Աստուածորդին լերին ծայրն հանէին առ 'ի գահավէժ ածել զնա. իսկ ըստ այլոց ասի թէ երբ Տիրա-մայրն լսեց այն կատաղեաց խորհուրդն շնչասպառ մինչև այն տեղն վազեց՝ բայց յերկիւղէ սասանեալ ոչ կարաց յառաջ եր-թալ։

17 Այս մատենագրիս խօսից նայելով Տէրն մեր բաց 'ի Սուրբ Կուսէն և Պետրոս առաքեալէն՝ զուրիշն մկրտած չէ։

# ԳԼՈՒԽ ԺԶ.

## Մարիամ 'ի Գողգոթա.

Այն արմաւենեաց ոստերն զորս մանկունք եբրայեցւոց սփռել էին Յիսուսի Քրիստոսի ոտից ներքև՝ դեռ ծածկէին Բեթանիայի առապար ճամբաներն, և այն ցնծութեան և յաղթանակի հեռաւոր աղաղակներն՝ որովք դուստրն Սիոնի ողջունել էր իւր Հեզ թագաւորն դեռ արձագանս տային կեդրոնեան ձորոյն մէջ [1], և ահա Երուսաղէմ 'ի հիմանց դղրդեցաւ տխուր և ցաւալի անցքով մի:

Վերջապէս քահանայապետք ծերք և փարիսեցիք ձեռք անցուցել էին գնով ոսկւոյ և ընտանեկան մատնութեամբ այն մեծ յանցաւորն որ իրենց ասացածինն նայելով վտանգի մէջ ձգէր իրենց կրօնքն և տէրութիւնն: Եւ յիրաւի շատ վտանգաւոր անձ մի եղած պիտի լինի այն մարդն, որովհետև իրեն հակառակորդ պատուաւոր մարդիկն՝ տարօրինակ և սովորականէ դուրս ծոմապահութիւն մի ապսպրել էին [2] զինքն ձեռք բերելու համար, և փարիսեցիք մնափառութեամբ և փողերու ձայնով ողորմութիւն մի բաշխելէն ետև քաղքին մէջ՝ բարեպաշտութեամբ տաճարն ելել էին շնորհակալ լինելու Աստուծոյ այս կարևոր ձերբակալութեանս յաջողելուն համար, Աստուծոյ որ յայտնապէս ասաց. Պիղծ է ինձ ամբարիշտն որ հեղու զարիւն արդար: Այն ատեններն քահանայապետք և փարիսեցւոց վարդապետք առաջին պատիւն և պաշտօններն ունէին՝ հռոմէական դատաւորի իշխանութեան ներքև՝ որ իր տրցակներուն և իշխանութեան գաւազանին ոյժն շատ անգամ իրենց ցու-

ցանէր և այնոր համար իրենք ալ սրտանց ատէին զնա։ Այս կեղծաւոր փարիսեցիներն էին՝ որ հրաման տային որդւոց անիծանել զհայր իւրեանց՝ միայն թէ օրհնելոյն աւուրն չյիշեն իրենց անիծից մէջ. և այնչափ երկիւղած էին որ շաբաթ օր ձգէին իրենց ծանօթն մեռանել անկած հորին մէջ՝ քան թէ ձեռն տալ դուրս հանելու համար. այնչափ արդար որ անթըլփատներէն բան գողնալն մեղք ոչ համարէին, և այնչափ սուրբ որ տօնից նախընթաց օրն կռապաշտ դատաւորին ապարանքն ոտք ոչ կոխէին, և սակայն անօրէն վճիռ մի հանել տալն մեղք ոչ համարէին՝ բաւական սեպելով ամենայն զգուշութիւն առնելու որ մի՛ գուցէ հռոմէական պատմուճանին քսուելով պղծին։ Հարկ էր որ այն յանցաւորն որոյ մահն բարձրաձայն պահանջէին միանգամայն և նենգութեամբ, Աստուծոյ և մարդկան թշնամի դատապարտուէր, որ վասն վատութեամբ ժողովուրդն գրգռելու համար ամեն ցածութիւն յանձն առնուին, մինչդեռ սովորաբար ժողովուրդն իրենց աչքին միշտ արհամարհելի էր, և հռոմէական զօրքն վաստկել ջանային՝ իրենց անմեղին դէմ ունեցած ատելութիւնն աւելի լաւ 'ի գործ դնելու համար, մինչդեռ այն զօրքն իրենց համար միշտ գարշելի սեպուած էր։ Եւ որպէս զի աւելի շուտ ազատեն իրենց երկիրն այս մեծ յանցաւորէս յանդգնութեամբ Իսրայէլի օրինաց կարգն և սովորութիւնն ալ աւրեցին՝ ինքեանք լինելով միանգամայն դատախազք քննիչք և դատաւորք ամբաստանելոյն։ Անշուշտ յօժարութեամբ նորա դահիճներն ևս լինէին՝ եթէ այլ լաւ համարած չլինէին զինքն անարգական մահուան մի մատնել՝ որ նոր մըտած էր իրենց մէջ՝ ամենէն մեծեղեռն յանցաւորաց համար սահմանեալ, որպէս զի նորա յիշատակին վերայ անարգութեան կեղտ մի տպաւորեն, և նորա պատիւն ալ կենացն հետ 'ի միասին 'ի բաց բառնան։

Իրենց գրգռութեամբ էր դարձեալ որ զինքն չարչարելու այնչափ նորահնար և բարբարոսական տանջանք մտածեցին՝ զոր ոչ ոք կրած էր մինչև այն ատեն, և նախատինքն և կատաղութիւնն աւելի անդին չէր կարող անցնիլ՝ քան ինչ որ կրել տուին խեղճ դատապարտելոյն, որ ողջակիզի համար պատրաստեալ զոհի մի նմանէր և այնչափ անօրէնութեանց դէմ բերանն անգամ ոչ բանայր։ Գամեցին 'ի գլուխ նորա սայրասուր փշեղէն պսակ մի, որոյ մի մի սայրերն անտանելի ցաւոց խորունկ վէրքեր բանային. և զինքն գերւոյ պէս մերկացնելէն ետև՝ ուսոց վերայ արկին հին ծիրանի մի, և գաւազանի տեղ ձեռքն եղէգ մի տուին, և դառն երգիծանօք և ծաղրալից ծընրադրութեամբ ողջունէին՝ նորա ծիծաղելի արքայական մեծութիւնն այպանելով. բովանդակ մարմինն 'ի հարուածոց գանահարութեան արիւնաշաղախ վէրք մի դարձել էր... Եւ քահանայապետք և փարիսեցիք նստեալ հաճութեամբ և խստասրտութեամբ հայէին այս ահարկու տեսարանիս վերայ, իրենց մեծութեամբն զգթութիւն վատութիւն հոգւոյ համարելով [3]։

Բայց տեսցուք թէ ո՞վ էր այս դժբաղդ մարդս 'ի ներքոյ անկեալ այսչափ տանջանաց և լլկանաց։ Արդեօք հրընկէց մի էր որ տաճարին կրակ տալու ժամանակ բռնուած էր, թէ հուղկահար աւազակ մի՝ որ իր քարայրէն գիշերանց դուրս ելած ատեն՝ ձեռք անկած էր, կամ թէ խռովարար մի որ բոլոր Ասիայն ապստամբութեան յորդորէր և ժողովուրդն կեսարու դէմ գրգռէր։ — Եւ սակայն ինքն ոչ աւազակ էր և ոչ խռովարար. այլ իր յանցանքն աւելի եղեռնաւոր էին և աններելի. վասն զի կամէր բոլոր մարդիկ իրարու եղբայր կազմել, և զամենեսին կոչել յանմահական փառս. ինքն հրամայէր մեծամեծ առաքինութիւնս զորս անձամբ իսկ կատարէր, և բո-

լոր Հրէաստան իւր բարեգործութեամբքն լցեր էր։ Այս ամբաստանեալն՝ որոյ վերայ կիրքն և մոլեգնութիւնն իրենց զայրոյթն թափէին՝ որդի էր Դաւթի, Սողոմոնի և Եզեկիայ, այն որ սակաւ մի յառաջ յաղթանակաւ մտեալ յԵրուսաղէմ ժողովրդեան ցնծալից աղաղակներովն՝ այժմ 'ի Գողգոթա տարուէր՝ ինքն իսկ էր Յիսուս մեծ մարգարէն գալիլեացի։

Երբ քահանայք և փարիսեցիք այսպէս անարգեցին զՅիսուս յաչս ժողովրդեան՝ նոցա մտքէն ջնջելու համար նորա աստուածութեան գաղափարն, շաբաթ օրն մօտ լինելուն՝ դժկամակութեամբ առին դատաւորին ձեռքէն իրենց կամաց և իշխանութեան մատնուած զոհն՝ զոր հռոմայեցի դատաւորն իրենց յանձներ, և խաչին սարսափելի ծանրութիւնն իւր արիւնազանգ և պատառոտեալ ուսոց վերայ բառնալով՝ մղեցին զինքն աքացօք և նիզակօք Գողգոթայի ցաւալից ճամբուն վերայ՝ հոն տեղն զինքն խաչելու համար։

Անբաւ բազմութիւն հանդիսատեսաց խռնեալ էին հրապարակներն և հասարակաց ճամբայներն, ոմանք կատաղի ուրախութեամբ անէծք կարդային Աստուածորդւոյն, և այլք մորմոքէին երիտասարդ մարգարէին թշուառ վիճակին վերայ՝ որ մարդկանց բարիքէն զատ ուրիշ բան գործած չունէր, և մարդիկ ընդհակառակն զինքն թողել և մատնել էին։ Բայց այս անօգուտ կարեկցութիւնս սակաւուց ոմանց վերայ յայտնի երևէր, բարեսիրտներն ծածուկ լային, հոն էին անշուշտ և նոքա զորս հինգ հացով անապատին մէջ կերակրել էր, նոքա զորս բժշկել էր և որոց զանազան բարիք ցուցել էր. բայց ոչ ոք համարձակ բողոքէր իրեն չարակրութեանց համար. իր քան զամենեսին սիրելագոյն աշակերտն վատութեամբ զինքն ուրացել էր, իսկ այլք բաց 'ի միոյն թողել փախչել էին։

Մինչդեռ ինքն այն երկար և ցաւալից Ճանապարհէն յառաջ երթայր դէպ 'ի Աստնական դուռն՝ ահաւասիկ կին մի ամբոխն պատռելով նմա խնդրէր մօտենալ. հիանալի գեղեցկութեամբ կին մի էր, համեստութիւնն երեսին վերայ փայլէր, և իւր ոսկեգոյն դէմքէն և նուաղեալ կերպարանքէն ստանուէր իւր սրտին անբացատրելի ցաւն. աչքն արտասուաց վերջի կաթիլն թափած՝ այնպէս արտամագին և ցաւալից հայեցուած մի ձգէր Փրկչին պատառոտեալ և քստմնելի վիրաց վերայ՝ որ երուսաղէմացի կանանց ալ սիրտն շարժելով ծածուկ լային և ասէին Խեղճ մայր: Իսկ նա լուռ և անձայն մնաց ամբոխին մէջ՝ որ գթութեան և կարեկցութեան աղղամամբն տեղի տայր: Նոյն ատեն քարասիրտ փարիսեցիներէն մին նախատանօք և թշնամանօք ծաղր առնէր զՅիսուս՝ որ արիւն քրտինք մնած և խաչին ահագին ծանրութեան ներքև շունչն կտրած հազիւ քայլէր. բայց կինն չլսեց նորա խօսքն: Որդւոյն բոլորն եղած զօրքն սպառնային նմա, բայց նա զնոսա ևս չանսաց. և երբ տիգաց և նիզակաց սայրերն իրեն դէմ դարձան և զՅիսուս իրմէ բաժնեցին՝ իր յառեալ և պիշ պիշ աչքէն այնպիսի փայլակ մի ցատքեց՝ որ Դաւթի արիւնն ցուցանէր, և գեղեցիկ դէմքն ցաւոց և մահու ցուրտ արհամարհանաց այնպիսի կերպարանք մի առաւ՝ որ զինուորներն յաղթուելով տէգերնին վար ծռեցին այն դիւցազն և սուրբ կնոջ առջին. որչափ որ պատերազմական կեանքն զիրենք խստացուցել էր՝ սակայն նոյն ատեն յիշեցին թէ իրենք ալ մայր մի ունին:

Այն ատեն Մարիամ դողդոջուն քայլերով Փրկչին մօտեցաւ, իր վհատեալ աչքն տնկեց այն հիւծեալ մարմնոյն վերայ՝ որ արիւնաշանգ քարշ գայր ծանր բեռան ներքև, նայեցաւ այն պատկառելի և միանգամայն քաղցր և բազմագութ դիմաց վերայ

որում իւր անարատ շրթունքն իսկ մերձեցընելու վախէր, և այժմ տեսանէր ուռուցեալ և կապուտակեալ խուխով և արեամբ ծածկեալ, այնպէս որ Արարչին պատկերին և նախատիպ գեղեցկութիւնն ամենևին մնացած չէր: Տրտմութեամբ ձեռքն ճակտին տարաւ՝ որպէս թէ ստուգելու համար որ տեսածն երազ չէր. իւր ճնշեալ և հեղձամղձուկ սրտէն ճիչ մի չելաւ, և մօտ եղողներն յուսահատութեան երևոյթ մի չտեսին այն հոգեվարք մօր վերայ. կարծեցին միայն թէ մեռանի. և յիրաւի բիւր անգամ մեռած էր այն գժնդակ տեղն՝ եթէ Նա որ ոչխարին բրդին համեմատ կշռէ զհողմն՝ զինքն պահած չէր իւրով աստուածային կարողութեամբ: Յիսուս հազիւ թէ տեսնելով իւր մօրն այս անշարժ և անձայն կերպարանքն՝ ճակատն երկնցուց առ Նա՝ որ խաչին ծանրութենէն վար կախուած էր, և միայն կարաց ասել Մայր իմ ողջ լեր [4]: Կոյսն այս ձայնս լսածին պէս՝ որ մահաբեր հնչիւն մի եկաւ իրեն՝ սայրասուր ցաւ մի սիրտն ծակեց անցաւ, դողդղաց, աչքն մթագնեցան, ինքզինք կորսնցուց և բերանս 'ի վայր ինկաւ այն քարուտ ճամբուն վերայ որ Յիսուսի արեամբն ոռոգուած էր...

Հոն անդէն գալիլեացի տխրադէմ երիտասարդ մի՝ և արտասուաթոր աչօք մանկամարդ մի ամբոխն ճեղքելով Մարիամու քովը հասին, և շատ խնամքով նորա խելքն գլուխն բերին. Կոյսն ցաւագին յանձին զգալով իմացաւ այն բնական և բարոյական տանջանաց սաստկութիւնն որ ըստ սուրբ հարց ոչ ոք 'ի մարտիրոսաց նոյն ցաւն իմացած է: Անտարակոյս Յովհաննէս և Մագդաղինէ՝ որ զԿոյսն իրենց մօր պէս սիրէին և յարգէին՝ ամենայն ջանք արարին որ զինքն հեռացնեն այն արեան և մահու տեսարանէն որ Գողգոթայի ծայրն պիտի կատարուէր. բայց իրենց աղաչանքն պարապ եղև. վասն զի Մարիամ շատ

նեղութեամբ ոտք ելնելով ուղեց երթալ Գողգոթայ մինչև այն ցաւալից բարձրութիւնն որ ամենէն կարճ ճամբայն էր՝ ուստի որ զՅիսուս քարշելով տարել էին[5]։

Հասին վերջապէս այն տխուր ճամբուն ծայրն, և այն մահառիթ և նուիրական տեղն՝ ուր որ գառնն անմեղ՝ Աստուծոյ զայրացելոյ արդարութեանն հատուցումն պիտի առնէր, ամեն զոհից տեղն զինքն նուիրելով, և մեր ամեն ցաւերն իր վերայ առնլով։ Հոն պիտի կատարուէր այն մեծ ողջակէզն՝ որոյ ազդեցութիւնն 'ի միոյ կողմանէ մինչև 'ի սկզբնական մեղքն բարձրանայ, և 'ի միւս կողմանէ տարածի ապագայից գիշերուան մէջ՝ մինչև 'ի վախճան դարուց։ Այն քարուտ տափարակն նորոգեալ սեղան մի էր՝ ուստի արիւնն Յիսուսի հեղեղօրէն պիտի վազէր առ 'ի լուանալ զմեղս աշխարհի, և առ 'ի մշտընջենապէս ջնջել և ոչնչացընել մահուան և կորստեան դատակնիքն՝ որ զմեզ անդէն 'ի ծննդենէ մատնել էր 'ի հեռս դժոխային դիւաց։ Բայց սուրբ զոհն մէջ տեղ ոչ երևէր, ո՛ւր արդեօք տարել էին զնա, և ո՛ւր պահէին զինքն դահիճներն՝ իւր յուսահատ մօրն աչքէն ծածկելով։ Մարիամ իւր տագնապալից աչքն դարձուց այն լերկ ու մերկ լերին վերայ, տեսաւ ժողովուրդն որ կեցել սպասէին, խաչերն գետինն դրուած, և մարդիկ որ անտարբեր կերպով զբաղած էին խորունկ ծակեր փորելու՝ ուր պիտի անկուէին այն երեք տանջանարաններն։ Ո՛ւր էր ուրեմն Յիսուս։

Ահաւասիկ բերեն զինքն, բայց ի՜նչ խե՜ղճ վիճակ. մինչև վերջին հագուստներն վրայէն հանած, և ոչ քուրջ մի ունէր ծածկելու իւր տրորեալ մարմինն և արիւնալից վէրքն, ինքն որ այնչափ սուրբ էր և այնչափ մաքուր։ Դահիճներն անարգաբար զինքն քաշկռտելով՝ սակաւ մի ժամանակ ժողովրդեան առջև

կեցուցին զինքն ծաղրելու համար, յետոյ տարածեցին խաչին վերայ՝ այն պատուական մահճին՝ որ նորա անհուն սիրոյն փոխարէն մատուցանէր մարդկանց ապերախտութիւնն։ Այս տեսարանս այնպէս տարաժելի էր որ իրեն սիրելիներն ոչ համարձակէին տեսանել. ուստի Մարիամ քանի մի քայլ ետ ետ երթալով կանգնեցաւ եկաց բնական այրին դուռն՝ գոյնն բոլորովին նետած և քարի պէս պաղած [6], ուստի լսուէր ժողովրդեան խժլտուքն՝ Ենգադդեայ մեղուաց բզզիւնին պէս՝ երբ հովիւն երբայեցի վանէ զնոսա կաղնեաց խոռոչներէն. երբեմն երբեմն ալ այն լռու շշնչման մէջէն սուլից շշմոնց հայհոյութեանց և սարսափ բերող ծաղրերու և խնդալներու աղաղակներ լսուէին. իրաւ ամեն ազգաց ռամկին խառնիճաղանճն ալ կատաղութեան բերուած մի ունի, բայց հրէից սինլքորաց այս արկածից մէջ ցոյց տուած մոլեգնութիւնն ամենեցուն յաղթէր։

Յանկարծ խոր լռութիւն մի պատեց և ամենքն լռեցին՝ որ անտարակոյս նոր բարբարոսութեան մի նշան էր՝ որ ամենեցուն մտադրութիւնն իրեն քաշէր. և ահա ուրագի հարուած մի լսուեցաւ, հարուած մի խիստ փայտի և տրորեալ մարմնոյ վերայ. Մագդաղինէ ահուդողով Մարիամու պլլուեցաւ, և սիրելի աշակերտն բնական աղդմամբ քարայրին պատին կռթնեցաւ։ Երկրորդ հարուած մ'ալ զարնուեցաւ առջինէն աւելի խուլ և ստուար և մահագոյժ. յետոյ այլ ևս երկու երեք հարուածներ որ մէջ ընդ մէջ լսուէին. եղածն յայտնի էր։ Ահաւասիկ խաչին գամեն, ասաց հռոմայեցի զինուոր մի իւր ընկերոջն դառնալով։ Յովհաննէս և Մագդաղինէ վախէն սահմռկեցան, և նոյն զգացմունքն ունեցան՝ ինչ որ մարդ իմանայ գիշերային մրրկի ատեն՝ երբ նաւակոծելոց ձայնն հեռուէն լսէ և չկարէ օգնութեան համնիլ, և որ մերթ ալեաց վերայ ելնելով և մերթ

ջորն իջնելով՝ մի առ մի անյայտ լինին և կորնչին և աղաղակն դադարի։ Հապա Մարիամ... պաղ քըրտինք մի բոլոր մարմնէն վազէր և ջղային դող մի բոլոր անդամներն սարսէր. Նոյն ատեն ինքն խեղճ մայրն ալ խաչին դամուած էր, տանջանարանի վերայ տարածեալ խոստովանող մի և բոցերու մէջ շրջապատեալ մարտիրոս մի՝ Մարիամու ՚ի հոգի և ՚ի մարմին կրած սարսափելի տանջանքն ընաւ զգացած չէին։

Սակաւ մի ժամանակէն պարաններու ձախարակներու վերայ շփուելով դառնալուն ձայնն լսուեցաւ, և ահա խաչն կամաց կամաց բարձրանար և Որդին մարդոյ դիտելով ընդ հարաւ և ընդ արևմուտըս՝ որոց ժողովուրդքն ՚ի վաղուց հետէ լուսոյ սպասէին, բարձրանայր ՚ի քառաթևին որպէս նշան և դրօշակ յաչս ազգաց անհաւատից, որպէս և գրեալ էր։ Այն ատեն անարգեալ ժողովուրդն՝ ուրախութեան խուլ և երկայն մռնչիւնով պոռալ սկսաւ. Ո՛ղջ լեր թագաւոր հրէից, Ապրեցո՛ զքեզ, եթէ որդի ես Աստուծոյ էջ ՚ի խաչէդ. Զայլս ապրեցոյց, ապրեցուսցէ և զանձն, Եթէ յուսացաւ յԱստուած՝ փրկեսցէ այժմ զդա՝ եթէ կամի զդա։ Նոյնպէս ձախակողմն խաչուած աւազակն ալ հոգեվարաց վերջի ջղաձգութեանց և դողդոջմանց մէջ անգամ զնա հայհոյէր։ Իսկ Յիսուս անխռով խաղաղութեամբ և վսեմական մեծանձնութեամբ զանձն գերագոյն ՚ի մարգարէս և Աստուած և Փրկիչ ցուցանելով՝ իւրով արեամբն լռութեամբ կնքէր զգերազանց վարդապետութիւնս նորոյ օրինաց։ Գանգատ և յանդիմանութիւն մի ոչ ել իր բերնէն այն անարգ չարչարանաց և տանջանաց ատենն՝ զոր կրէր առաջի աչաց բովանդակ քաղաքին. մանաւանդ թէ այն մոլորեալ ժողովրդեան վերայ գթութեան աչքն դարձնելով՝ ջանայր աստուածային արդար վրէժխնդրութիւնն

հաշտեցնելու՝ որք զինքն խաչէին մեռած ձայնիւ ասելով. Հայր թող դոցա՝ զի ոչ գիտեն զինչ գործեն։ — « Եւ սակայն ութեւտասն դարերէ 'ի վեր դեռ Հայրն երկնաւոր ոչ ներեց նոցա. և իրենց պատուհասն հետերնին կրեն երկրիս ամեն կողմերն, և աշխարհիս ամեն գին գերին անգամ սախպուսի ծռելու նայելու՝ զիրենք տեսնելու համար[7] »։

Կոյսն թողլով իւր ապաստանարանն՝ ուր սակաւ մի ատեն ծածկեալ էր՝ կորագլուխ երթայր դէպ 'ի պատուհասի տեղն. Նախատանաց փայտէն քիչ հեռու վայրագ զօրականներ վիճակ արկանէին այն անկար պատմուճանին վերայ՝ զոր ինքն իր ձեռքով մանել հիւսել էր[8], և պատառէին ու իրենց մէջ բաժնէին այն սուրբ հագուստներն՝ որ այնչափ հրաշս գործեալ էին։ Մարեմայ երեսաց ջղերն թեթեւ մի ցնցեցան. միտքն եկին այն ատեններն՝ որ միայն Յիսուսի սիրոյն հարուստ, և մերձաւոր երկիւղէ և 'ի կասկածանաց ազատ՝ երեկոյներն նստէր և այն տնական զգեստուն աշխատէր՝ որդին ալ իւր քովն. այս մտածութիւնս նոյն ցաւն տուաւ իրեն՝ ինչ որ դաշոյն մի որ վիրաց մէջ յամր յամր դառնայ. վասն զի այն փայլակն որ անցեալ ժամանակի մէջ անցուցած երջանիկ օրերն իրեն ցուցանէր՝ նոյնն հիմա իւր թշուառութեան սուսերնին թանձրացընէր։ Աչքն դէպ 'ի երկինք վերուց՝ ոյժ և զօրութիւն խնդրելու համար, և իւր հայեցուածքն խաչելեալ Աստուծոյ ականողեացն հանդիպեցան. այն խեղճև ահարկու տեսարանին թուլցած ոտքն գետին գամուեցան, և ահռելի երեւութէն և սրտին անգութ տագնապէն պապանձեցաւ քար կտրեցաւ, և մինչև այն ատեն կրածն տխուր երազ մի թուէր իրեն և ահարկու տեսիլ որ աներեւոյթ լինելու վերայ էր. իւր բոլոր զգացմունքն խաչին վերայ, և բաց յայնմանէ ուրիշ բան ոչ տեսանէր[9]։

Յիսուս խորհրդական և քաղցր հայեցուած մի ձգելով Կուսին վերայ՝ կարծես թէ կամէր ասել նմա ինչ որ ասաց նախընթաց երեկոյն իր աշակերտաց. Մայր, ժամանակս հասած է։ Ո՞ր ժամն արդեօք. ամենէն անմոռաց և տարօրինակ դիպաց բիւրաբեղուն ժամն. ժամն յորում որդին Աստուծոյ պիտի յաղթէր աշխարհի, մահու, դժոխոց և նոյն իսկ աստուածային արդարութեան. ժամն որ լրումն էր գուշակութեանց, ջնջումն զոհագործութեանց, ազատութիւն գերեաց և մեր յաւիտենական փրկութեան։ Եւ Կոյսն կարծես թէ իր աչաց առջին շարուած տեսանէր հին նահապետներն, արդար թագաւորներն, Աստուծոյ հոգւովն լցեալ մարգարէներն որ Քրիստոսի առջին խոնարհէին՝ իբրև զօրայս որդւոցն Յակոբայ՝ առաջի խորհրդաւոր որային Յովսեփայ։ Նմա այնպէս երևէր թէ տեսանէ զՄովսէս և զԱհարոն որ դնէին առ ոտս Նորոյ ծառոյն կենաց զտապանակն ուխտի, զեփուդն, զտախտակն դատաստանի, զԹիթեղն ոսկի և զծաղկեալ գաւազանն Նշենի՝ նշան եբրայական քահանայութեան՝ որոյ պաշտաման ժամանակն լրացեալ էր և պիտի դադարէր. յետոյ Դաւիթ որ իւր մարգարէական սաղմոսարանն դնէր առ սրոյն Փենեհեզի և Նուիրական սրոյն Աբրահամու և օձին պղնձի։ Քահանայք և պատարագք, ծէսք և սահմանադրութիւնք, օրինակք և նշանակք՝ խաչին բոլորն ժողովեալք՝ սպասէին լըրման իւրեանց, և մատեանն եօթնակնքեան պղնձի բացուած կայր առ ոտս մեծի Քահանայապետին ըստ կարգին Մելքիսեդեկի՝ որ յաջորդէր քահանայից 'ի ցեղէն Ահարոնի։ Նախկին աշխարհն որ յետս ընկըրկէր՝ ծովեզերաց ետ քաշուող յամրընթաց ալեաց պէս, նորանոր տեսարաններ յանդիման առնէր. և Մարիամ կարծէր թէ տեսանէր զամենայն ազգս աշխարհի առ ոտս խաչին ժողովեալ՝ զԱւետարանն ըն-

գտնելու համար. Եթովպիա և կղզիք հեռաւորք առ Մեսիայն տարածէին զձեռս իւրեանց, և անապատն ծաղկէր իբրև զվարդ և հրճուէր, և գիտութեամբ Տեառն լնոյր երկիր իբրև զջուրս բազումս որ ծածկեն զծովս, և բիւրաւոր ձայնք 'ի զանազան անլուր բարբառս կրկնէին. Յաղթեաց Քրիստոս օրհնեալն: Եւ ազնուական և վսեմամիտ կինն 'ի բաց թողեալ զայրասուր ցաւսն որ զսիրտն կեղեքէին՝ հիանայր ընդ յաղթութիւն օրինացն շնորհաց և ընդ մեծ վերածնութիւն մարդկային ընկերութեան: Բայց այս փառաւոր տեսիլքն շատ չտևեց աներևութացաւ, և ամեն դիէն ցաւն փոխանակեց. Հռաքելը պէս Մարիամ ալ ողբայր իւր անդրանիկն և ոչ կամէր մխիթարել:

Եւ սակայն նոյն առեն բոլոր բնութեան վերայ տագնապ մի երևէր՝ և կարծես թէ ողբակից լինէր Մարեմայ. արեգակն կամաց կամաց խաւարէր և օրն մթնէր, և լոյսն նուաղելով տխրագին գունով մի գունաւորէր այն ընդարձակ և ամայի երկիրն՝ զոր շատ յարմարութեամբ ընտրել էին զայն աստուածասպանութեան եղեռն կատարելու համար: Վայրկեանէ վայրկեան խաւարն թանձրանայր, և ջերմութեան յանկարծ խափանուելէն՝ գիշերոյ պէս ցող իջնել սկսէր, արծուիք կարկաչելով իրենց բոյներն որոնէին, չաքաղք Կեդրոնի եզերքն կոանային, և Գողգոթայի արդէն տխուր տեսքն՝ սեաւ կճէ փինուած մեծ մահարձանի մի կերպարանք առնոյր: Ժողովուրդն այս անակնկալ արկածէս սարսած՝ երկիւղի լռութեան մէջ ընկղմէր. միայն փարիսեցւոց ոմանց և ժողովրդապետաց ձայնն դեռ լսուէր՝ որ ոչ դադարէին անիծանել և այպանել զՔրիստոս:

Սակաւ առենէ երկնից երեսն ծածկող մութ վարագուրին տակէն՝ դագաղի բոլորտիքն վառող մահագուշակ ջահերու պէս՝ աստղերն երևել սկսան՝ առ-

տուածասպանից երեսն կանաչկեկ և մահատիպ լոյս մի սփռելով, և Գեհոնի զաւ. 'ի վայրին վերայ աստ անդ խմբեալ հանդիսատեսից դէմքերն այնպիսի դիակնային գունով մի գունաւորեց՝ որ կարծես թէ դիւաց և ուրուականաց խումբեր էին. իրենք ևս իրարու երես նայելով զարհուրեցան և պատ կորեցան։ Պարապ տեղ դալիրք և փարիսեցիք այս սքանչելիքս բնական պատճառներով կամէին բացատրել և ժողովրդեան սիրտ տալ, որովհետև իրենք անօրէնութեան հեղեղին մէջ յոյժ շատ յառաջ գնացել էին՝ ցամաքն ելնելէ յուսահատ. որչափ լուսոյն նորէն երևելն ուշանայր՝ այնչափ առաւել իրենց բերած պատճառներուն ստութիւնն յայտնի լինէր. ծերերն իրենց ալևոր գլուխն շարժելով ասէին թէ այսպիսի խաւարում մի երբեք տեսած չէին, միւս կողմանէ ալ քաղդէական գիտութեանց հմուտ եղողներն պնդէին թէ ամենևին խաւարման գուշակութիւն մի եղած չէր, և ոչ ալ կարէր լինել լուսնի դրից նայելով [10]։

Այն ժամանակն որ բոլոր ժողովուրդն արհաւրօք սարսափած տագնապէին՝ Յիսուս իր հաւատարիմ սիրելիքն մտածէր՝ որ այն անարգական հոգեվարքին ժամանակ իր խաչին բոլորտիքն ժողվել էին. և խանդաղատելով Յովհաննու արիութեան վերայ, և տեսնելով այն երիտասարդին և եռանդուն առաքելոյն ցաւն ու մորմոքն զոր չէր կարող ծածկել, ուզեց տալ նմա զգրաւական սիրոյն իւրոյ. ինքն որ քար մի անգամ չունէր իւր գլուխն դնելու՝ չէր կարող երկրաւոր ստացուածոց ժառանգ զնա կացուցանել, ինքն որ իւր թաղուելու գերեզմանն ևս երախտագիտութեամբ պիտի ընդունէր ուրիշ աշակերտի մի գթութենէն, աշխարհիս վերայ ուրիշ բան չունէր՝ բայց եթէ իւր մայրն. իւր մայրն որ ոչ երբեք թողեալ էր զինքն, և որոյ խօսուն աչքն յառեալ

'ի նա՝ կարծես թէ ասէր. «Դու ինձ ամեն բանի տեղ ես որդեակ իմ, դու ես իմ հայրս, դու ես իմ մայրս, դու իմ ամուսինս, դու իմ զաւակս, իմ Աստուածս, իմ կեանքս, իմ գանձս. զքեզ կորուսանելով ամեն բան կորուսի, և այլ ոչ հայր ունիմ, ոչ ամուսին և ոչ որդի ...» Այժմ որբացայ 'ի հօրէ, այրիացայ յամուսնոյ, անզաւակեցայ և զամենայն ինչ կորուսի. ուստի Յիսուս հանդիսապէս իւր սիրելւոյ աշակերտին յանձնեց զնա՝ որպէս գրաւական երկնային բարեաց՝ զորս պահեալ էր նմա յարքայութեան Հօր իւրոյ։ Եւ գիտելով թէ որչափ սիրէին զինքն այս երկու սուրբ հոգիներս, և թէ որպիսի յուսահատութեան մէջ պիտի մնային իւր մահուանէն ետև, իւր երկրպագելի գթութեամբն ուզեց այս երկու անձնեցուկ բաղեղներս զօրացընել՝ բաժանեալ ճիւղերնին իրարու պատատելով։

Այս կարգադրութենէս որ նոր և սիրելի արժէք մի տայր իր կենացն՝ իմացաւ Կոյսն որ Որդւոյն հետ միատեղ գերեզման իջանելն իրեն շնորհուած չէր տակաւին, և դեռ երկրիս վերայ պանդխտութիւնն 'ի վախճան հասած չէր։ Ուստի գլուխ ծռեց աստուածային հրամանաց վասն սիրոյ մերոյ, զմեզ յանձըն սրբոյ աշակերտին իրեն որդեգրելով։ Նոյն ատեն Մարեմայ զոհն՝ մարդկօրէն խօսելով Յիսուսի Քրիստոսի զոհին հաւասարեցաւ. վասն զի սա յօժարութեամբ մեռնիլ յանձն առնոյր վասն մեր, և նա կեալ և ապրիլ... Սոքա երկու վառեալ սրտեր էին բորբոքեալ սիրով վասն մարդկան, զոր ինքեանք միայն կատարելապէս իմանային. որովհետև իրենց խորհուրդներն մերիններէն շատ տարբեր էին, և իրենց առաքինութեան ոսկին զուտ և անխառն էր։ — Յիսուս ինչպէս իր մանկանացու կենաց ամեն գործերն՝ այսպէս ալ իւր մայրն Բեթսայիդայի ձըկնորսին յանձնելն պարզ և վսեմ կերպով բացատրեց

ասելով. Կին դու ահա որդի քո, և սիրելի աշակերտին Ահա մայր քո։ — Եթէ առ Մարիամ խօսած ատեն՝ աւելի գողտրական բառ մի չգործածեց և մայր անունն չյիշեց՝ պատճառն այն էր որ գիտէր թէ այն անունն տալով ինչ սաստիկ կսկիծ պիտի տայր, ուստի ոչ կամէր նորա արիւնալից վէրքն նորէն բանալ՝ որոց ցաւն այնչափ սաստիկ և 'ի խորոց սրտի զգայր սիրամայր Կոյսն։

« Յետ այսորիկ իբրև գիտաց Յիսուս եթէ ահա ամենայն ինչ կատարեալ է, զի կատարեսցի գիրն՝ ասէ. Ծարաւի եմ։ Եւ անդ կայր աման ինչ լի քացախով. և նոցա սպունգ լցեալ քացախով ընդ լեղւոյ՝ շուրջ եդեալ զմշտկաւ զոպայի, մատուցին 'ի բերան նորա . . . » Անգո՛ւթք և անօրէ՛նք մինչև ցյետին վայրկեանն . . . « Իբրև առ Յիսուս զքացախն հանդերձ լեղւովն՝ ասէ. Ամենայն ինչ կատարեալ է »։ Յետոյ կամելով ցուցանել աշխարհի որ ինքն մահուան բռնութեամբն ոչ մեռանէր՝ այլ ինքնայօժար կամաց ներգործութեամբն՝ գոչեաց մեծաձայն, խոնարհեցոյց զգլուխն, և աւանդեաց զհոգին։

Նոյն վայրկեանին հեթանոսութեան կուռքերն սարսեցան անկան իրենց մարմարեայ պատուանդաններուն վրայէն. Մովսիսի աստղն՝ որոյ փայլն աշխարհիս մի կէտին վերայ եւեթ ծանուցեալ էր, և որ առժամանակ մի միայն պիտի փայլէր՝ խոնարհեցաւ հովտաց հորիզոնն, և Աւետարանի արեգակն որ սահմանեալ էր լուսաւորել զաշխարհս բովանդակ ծագաց 'ի ծագս երկրի և տևել մինչև 'ի վերջ աշխարհի՝ ել և լուսապայծառ բարձրացաւ արշալուսոյն դիէն։ Բայց Աստուած իւր Որդւոյն փառաց արհամարհութիւնն հրաշիւք պիտի ցուցանէր, ուստի և շոյտ 'ի վերայ հասին զայրացեալ երկնից նշաններն։ Այն գերբնական խաւարէն ետև՝ որ սկսել էր կամաց կամաց լուսաւորիլ, երկրաշարժից սարսափելի

տառապանմունք յաջորդեցին՝ որ Ասիոյ մէջ քաղաք քաղաք կործանեցին [11]։ Նոյն ատեն տաճարին վարագոյրն ալ պատառեցաւ, քարերն ճաթռտեցան [12], և բազում մարմինք ննջեցելոց սրբոց որ ննջէին զքուն մահու յարեան կանգնեցան, և սուրբ քաղաքն մըտնելով՝ արդէն տագնապեալ ժողովուրդն նոր երկիւղիւ սարսափեցուցին։

Այն ատեն նորանշան և հակադարձ ազդեցութիւն մի խաչեցելոյն աստուածութիւնն յայտնեց. հարիւրապետն և իր զօրականքն որ ձեռնտու և գլուխ եղել էին իր եղերական մահուանն՝ միաձայն գոչեցին որ Նազովրեցի մարգարէն՝ մարդէ աւելի գերագոյն էակ մի էր անշուշտ, և այն ժողովրդեան բազմութիւնն որ հոգեվարքութիւն քաշող Քրիստոսի այնչափ նախատինք և անէծք և դառն կատականս արարեալ էին՝ այն մահահոտ լեռնէն վար իջանէին իրենց կուրծքն ծեծելով, և ահիւ և դողութեամբ գոչելով. «Արդարև որդի Աստուծոյ էր սա»։

Ժողովրդեան սարսափմամբ կանչուըռտելու ատեն՝ որ զիրար մղելով փախչող փախչողի լինէին, և երբ Գողգոթայի ժայռուտ կողերն 'ի հիմանց սասանեալ պատռտէին, և այն մթնշաղ լուսոյն մէջ որ այս ահաւոր տեսարանիս վերայ տխրագին լոյս մի ձգէր՝ հոն երևէր կին մի շիտակ ոտից վերայ կանգնած. բոլոր համագոյից կործանման և աւերածոյն մէջ ինքն միայն անսասան՝ կործանեալ և փլած տաճարի անկործան սեանն մի պէս, և որոյ վերայ ազդեցութիւն մի ոչ առնէր ընդհանուր և ամենուն վերայ տիրող սարսափն. այլ ձեռնամած աղաչաւորի կերպով երևէր բոլորովին ընկղմած խաչեցեալ մարգարէին ցաւագին խոկման մէջ. ուստի դստերք Երուսաղէմի նորէն սկսան արտասուել և ցաւակցելով գոչէին. Եղո՛ւկ քեզ, խե՛ղճ մայր, ցաւագի՛ն մայր։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ԺԷ. ԳԼԽՈՅ

1 Կեդրոնեան ձոր կոչէր 'ի հնումն Յովսափատու ձորն:

2 Այս պատմութիւնս յիշատակի Թոբլերոյ մէջ զոր հրատարակեց Հիւլորիք էջ 56 և 60:

3 Սալվատոր անուամբ հրեայն որ Օրէնսդրութեան Մովսէսի գրոց հեղինակն է, իւր կրօնակիցներն անմեղադիր առնել ջանայ՝ հռոմայեցի զօրականին վերայ նետելով այն տանջանքն զոր ետուն Քրիստոսի 'ի գաւթի անդ. բայց յայտնի է թէ հռոմայեցիք 'ի գրգռելոյ Թշնամեացն Յիսուսի գործէին: Այս նիւթոյս վերայ այսպէս գրէ Ոսկեբերան. «Նոքին իսկ հրեայք են որ դատապարտեն զՔրիստոս 'ի մահ՝ թէ և ընդ անուամբ Պիղատոսի ծածկիցեն. և կամին զի արիւն նորա լիցի 'ի վերայ իւրեանց և որդւոց: Նոքին են որ այպանեն զնա, կապեն և տանին առ Պիղատոս, և անագորոյն տանջանօք կոտեն 'ի ձեռն զօրականին, զոր Պիղատոսի չէր հրամայեալ առնել (Մեկն Մատթ. ճառ Հէ):

4 Սրբոյն Վոնիփակիոսի և Անսելմոսի վկայութեամբ հաստատեալ աւանդութիւն է որ Յիսուս Քրիստոս ողջունեց զկոյսն առնելով Ողջ լեր մայր. և որովհետև գտանեմք զՏիրամայրն առ ոտս խաչին՝ այս հարց աւանդութիւնն հաւանական երևի. ուստի և Շաթօպրիան ասէ. «Հաւատք ոչ ընդդէմ ելանեն աւանդութեանցս, այլ մանաւանդ ցուցանեն թէ որչափ անջինջ տպաւորեալ են 'ի միտս մարդկան հրաշապատում վէպք չարչարանաց փրկչին: Դարք ութևտասն անցեալ սրացեալ և հալածանք անդադար և յեղափոխութիւնք անթիւ չկարացին ջնջել և կամ հետախաղաղ ծածկել զհետս մօր որ ընթանայ առ 'ի ողբալ զորդին»: Տիրամօր մարելումն և նուաղեալ անկանելումն յիշատակ՝ եկեղեցի մի կանգնուեցաւ նոյն տեղն նուիրական անուամբս Տիրամայր նուաղեալ. ուր որ ըստ ձեռամպի զօրականք 'ի բաց վանեցին զՄարիամ՝ երբ հանդիպեցաւ իւր որդւոյն, որ զանարգական փայտ պատուհասին ուսով բարձեալ դժուարաքայլ ընթացիւք երթայր 'ի խաչ ելանել: Այս տարւոյն 1883 յունիս 22ի Missions catholiques ամսաթերթին 333 թուոյն մէջ կարդացի որ տասնուհինգ տարի առաջ այս եկեղեցւոյս աւերակն գնել է կաթոլիկէ հայ քահանայ մի:

5 Այս ճանապարհս որ հայէր երբեմն 'ի Գողգոթա, և ուս-

տի անցաւ փրկիչն՝ հիմա ոչ ևս երևի՝ տներ շինուած լինելուն, որոց մէջ հաստ սիւն մի տնկած է՝ որ իններորդ դարդարն ցուցանէ. այլադենք այլ աւելի անմատոյց առնելու համար նոյն տեղն՝ ամեն տեսակ աղտեղութեամբ լեցուցած են, որպէս զի քրիստոնեայք չմօտին (տը Ճերամպ հտ. Ա)։

6 Մերձ 'ի տեղին ուր դահիճք խաչին վերայ բևեռեցին զՏէրն մեր՝ մատուռ մի երևի նուիրեալ Ցաւոգին Տիրամօրն. հոն առանձնացաւ Կոյսն երբ իւր որդւոյն տանջանաց արիւնռուշտ պատրաստութիւններն տեսանուէին (տը Ճերամպ հտ. Ա)։

Ա. Աջակողմեան աւազակին յիշատակն առնեն լատինք 'ի 25 մարտի անուամբ Ս. Դիմոս։

7 Լամընէ։

8 Հին աւանդութիւն է որ զպատմուճանն Քրիստոսի յօրինեալ էր նոյն ինքն Տիրամայր Կոյսն իւրով ձեռամբ։— Այս տարւոյս 1883 փետր. 27 այսպիսի ծանօթութիւն մի ընթերցաք կրօնական օրագրի մի մէջ. « Անկար պատմուճան Տեառն մերոյ պահի 'ի քաղաքին Արժանթէօյլ 'ի Փրանկիա, տուեալ 'ի պարգև 'ի մեծէն Կարոլոսէ յ'Թ դարու. ըստ վերջին քննութեանց եպիսկոպոսի Թեմին 'ի հերուն 'ի չորս մասունս բաժանեալ է այժմ պատմուճանս. 'ի վերայ մեծագոյն կտորին երևին ընդարձակ բիծք արեան 'ի պարանոցէն մինչև ցուսն և ցկողս, որով և այն մասունք խիստ են և ոչ մեղկաշօշափ որպէս մնացորդքն. թուի յօրինեալ 'ի գորշագոյն ստեայ ուղտու կակղագոյն և անօսր ոստայնանկեալ»։

9 Հարք և վարդապետք եկեղեցւոյ կուսամօր Գողգոթայի վերայ քաշած ցաւն և տանջանքն յոյժ առաւել համարին քան զտանջանս բովանդակ մարտիրոսաց։ — Սուրբն Բասիլիոս ասէ. « Կոյսն այնչափ գերազանցէ քան զբովանդակ մարտիրոսս, որչափ արեգակն քան զայլ աստեղս ». և Սուրբն Անսելմոս յաւելու. « Որ ինչ կտտանք տանջանաց տուան մարմնոց վկայից՝ թեթև նա մանաւանդ ոչինչ են առ քոյովքդ »։

10 Փլեգոն աւանդէ թէ յերկուհարիւրորդի երկրորդի ոլիմպիադին որ մեր թուականին 33 տարւոյն համապատասխանէ՝ այնպիսի մեծ խաւարում մի եղև արեգական՝ որոյ նմանն ամենևին չէր տեսնուած, մինչև կէս օր աստեղերն երևէին. և որովհետև աստեղաբաշխութիւնն նոյն տարին խաւարմունք ոչ նշանակէր՝ հարկ է համարել թէ այս չլսուած խաւարն գերբնական ինչ էր » (Բոզէլլի Քրիստոս յանդիման ուխտորդին)։ Դիարձեալ Սուրբն Դիոնեսիոս արիոպագացի որ նոյն ատեն 'ի Հելիոպոլիս գտանէր ասէ. « Տեսաք որ լուսինն յանկարծ եկն և արեգական և երկրիս մէջ անկաւ՝ թէ և ըստ բնական կարգի օրինաց շարժման աստեղաց զուգընթացութեան ժամանակ չէր՝ և այլն » (եօթներորդ թուղթ առ Պոլիկարպոս)։

11 Պլինիոս և Ստրաբոն ալ խօսին այս երկրաշարժիս վերայ՝ որ այնչափ սաստիկ էր որ մինչև յԻտալիա իմացուեցաւ ասեն։

12 Էտիքըն պատմէ թէ աստուածեան աղանդաւոր անգղիացի ճանապարհորդ մի՝ Երուսաղէմ եղած ժամանակ ուզեց ծաղրական ցուցանել քրիստոնէից սուրբ երկրին վերայ տուած մեկնութիւններն. բայց պատառեալ ժայռն տեսնելով սկսաւ տարակուսիլ, և մտադրութեամբ քննելէն ետև՝ դարձաւ իր բարեկամ ուղեկցին և ասաց. « Ես ալ կամաց կամաց քրիստոնեայ պիտի լինիմ. որովհետև երկայն ատեն բնաբանութեան և ուսողութեան վարժած լինելով՝ ապահով եմ որ ժայռ մի սովորական և բնական երկրաշարժով այսպէս չկարէ ջախջախիլ. և պատառուածքն բոլորովին տարբեր ուղղութիւն մի ունին սովորական երկրաշարժի պատառուածքէն՝ զորս ուրիշ տեղեր դիտել եմ։ Ուստի յայտնի տեսանեմ որ այս բանս հրաշիւք ինչ յառաջ եկած է՝ զոր ոչ արուեստ և ոչ բնութիւն՝ չեն կարող յառաջ բերել։ Արդ շնորհ ունիմ Աստուծոյ որ զիս հոս տեղս առաջնորդեց տեսնելու համար իր հրաշալի կարողութեան յիշատակարանն, որ և Յիսուսի Քրիստոսի աստուածութիւնն ալ յայտնի ցուցանէ » ( Յաղագս երկրաբանական նշանից երկրորդ տպագրութիւն հտ. Բ )։

## ԳԼՈՒԽ ԺԷ.

*Մարեմայ կեանքն յետ յարութեան և համբարձման Աստուածորդւոյն.*

*Հանգարտութիւնն սկսել էր տիրել, և երկնային բարկութեան սարսափելի նշաններն ալ դադրել էին երկիւղիւ խռովելու Փրկչին արիւնն թափող հրեայներն, գազանաբարոյ դահիճներն ալ սակաւ մի 'ի բաց թողել էին իրենց վայրագ անգթութիւնն՝ գործած անօրէնութենէն զարհուրելով և վախնալով որ մի գուցէ Գողգոթայի սասանեալ ժայռերն իրենց վերայ ալ փլչին և զիրենք ջախջախեն, կամ երկիրն պատռելով ողջ ողջ կլլէ զիրենք։ Բայց սակաւ մի յետոյ հրէից երկիւղն փարատեցաւ և խիղճն հանդարտեցաւ. այնպէս որ կամաց կամաց նորէն իրենց ատելութիւնն և չարութիւնն ձեռք առին, մանաւանդ քանի որ տեսանէին թէ երկինքն ալ պարզէր և պայծառանար։*

*Եւ որովհետև ոչ կարէին ուրանալ այն նորասքանչ հրաշքն՝ զորս բոլոր ժողովուրդն իրեն աչօքն տեսած էր, և որոց վկայ էին լերանց հերձեալ ժայռերն, կիսաբաց և թափուր գերեզմաններն, և տաճարին վերուստ 'ի վայր պատառեալ վարագոյրն, այնոր համար այս եղած բաներս սկսան դիւթութեան տալ և ասել թէ Քրիստոս՝ որ միով ակնարկութեամբ բոլոր տիեզերաց հրամայէր, որդի էր Բելիարայ՝ որ ժողովրդեան աչքն խաբել էր, և տարերաց վերայ իշխէր զօրութեամբ անճառելի անուան Աստուծոյ խորայելի՝ զոր ծածուկ գողցել էր տաճարին սրբութիւն սրբոց խորանէն[1]։*

Միամիտ ժողովուրդն ալ այս ծաղրական ստու-թեան հաւատայր՝ զոր իշխաններն զինքենք համոզելու համար հնարել էին. որովհետև չկայ այլանդակ և անտեղի չարախօսութիւն մի՝ որ չգտնէ դիւրահա-ւան ականջներ զայն ընդունելու, և խաբեբայ լե-զուներ զայն հրատարակելու: Քահանայապետք այս խաբէական չարախօսութիւնս և յիմարական զըր-պարտութիւնս հաստատելու համար՝ իրենց արքա-նեկաց մէջէն ընտրեցին արթուն և զինեալ պահա-պաններ՝ գերեզմանն զգուշութեամբ պահպանելու համար. որովհետև Յիսուս յառաջագոյն ծանուցել էր որ մեռնելէն երեք օր ետև փառաւորապէս յա-րութիւն պիտի առնուր. ուստի ժողովարանին իշ-խաններն վախնալ ձևանային՝ որ մի գուցէ աշա-կերտներն գան և գիշերանց մարմինն գողնան և ժո-ղովուրդն համոզեն թէ յարեաւ:

Երրորդ օրն որ էր միաշաբաթի այսինքն կիրակի՝ սկսել էր ծագիլ, և արևելեան գին արշալուսոյ կարմրութեամբն գունաւորիլ՝ երբ գալիլեացի բա-րեպաշտ կանայք անուշահոտ խունկերով եկին խնկել զմարմին Տեառն ըստ սովորութեան թագաւորաց հրէից[2], և տանջանաց լեռնէն անցնելով բազմահոգ-տրտմութեամբ յառաջ երթային դէպ 'ի այն պար-տէզն՝ ուր էր գերեզման Փրկչին: Ըստ աւանդու-թեան ոմանց այս սուրբ կանանց հետ էր նաև Մա-րիամ մայրն Յիսուսի[3], որոյ տրտմագին անձն և հասակն նման էր գեղեցիկ շուշանի՝ զոր դժբաղ-դութեանց մրրկալից հողմունք ծռած խոնարհած էին. սակայն իւր զուարթ աչաց մէջ ոչ այնչափ ցաւ՝ որչափ յոյս և ակնկալութիւն փայլէր: Իսկ այլք ա-սեն թէ Տիրամայրն իւր հաստատ և անշարժ հա-ւատքովն իւր Միածնին խոստման վերայ թէ յիրաւի յարութիւն պիտի առնու և նախ և առաջ իրեն պի-տի երևի, էր տեղէն չէր շարժած, և այն իւղաբեր

կանանց չէր ընկերացած. և այնպէս յառաջ քան զսոսա տեսաւ իւր Միածինն յարուցեալ 'ի մեռելոց. և որովհետև այս առաջին տեսութիւնս միայն իրեն համար էր, ուստի և աւետարանիչք զանց առին զայն նշանակելու. որովհետև պատշաճութիւնն ալ արդէն բոլորովին ստոյգ և աներկբայ համարեալ էր Ա։ Իսկ իւղաբերք իրենց ճամբայն յառաջ վարէին՝ երբ Երուսաղէմ դեռ առաւօտեան միգին մէջ թաղեալ էր. ծաղկունք իրենց ցօղալից թերթերն բանային, թռչունք մոլաթզենեաց թաց ճիւղերուն վերայ ճռուողէին, և բոլոր բնութիւնն նոր ոյժ մի առած երևէր., և այն ամայի տեղուանքն զուարթ կերպարանք մի առեալ էին, և կարծես թէ խորհրդական աւետիս մի տալ ուզած ժամանակ՝ գաղանեքըն ալ պահել կամէին։ — Այս զուարթատեսիլ երևութիւս առեն՝ յանկարծ ահագին ցնցում մի իմացան, և այն մեծ քարն որ կափարիչ էր գերեզմանին՝ աներևոյթ զօրութեամբ մի մղեալ 'ի բաց թաւալեցաւ. մօտ եղած պահապանքն յերեսս 'ի վայր գետինն ինկան, և կանայք որ Յիսուսի խաչուած առեն աներկիւղ խաչին քովէն չէին բաժնուած՝ դահճաց և զինուորաց սպառնալեքն բանի տեղ չդնելով, հիմա գոյներնին նետած ահուդողով ետ ետ քաշուիլ սկսան՝ կարծելով թէ նոյն սարսափելի նշաններն պիտի նորոգէին՝ ինչ որ Որդւոյ մարդոյ մեռնելու առեն հանդիպել էին։ Բայց ահա ձեան պէս սպիտակ պայծառազգեստ և փայլակնաձև հրեշտակ մի՝ եկն նստաւ գերեզմանին քարին վերայ, և Յիսուսի աշակերտներն քաջալերելով ձայնեց առ նասա. «Մի երկնչիք դուք. գիտեմ զի զՅիսուս զխաչեալ խնդրէք. չէ աստ քանզի յարեաւ՝ որպէս ասաց. եկայք տեսէք զտեղին ուր կայր»։ Մինչդեռ բարեպաշտօն գալիլէուհիք ահիւ և դողութեամբ 'ի գերեզմանն խոնարհած՝ զարմացմամբ տեսանէին

զվարշամակն և զխնկեալ պատանն որ գերեզմանին եզերքն թողուած էին, Մարիամ ուրախութենէն և զարմանքէն այլ յայլմէ լեալ՝ տակաւ մի հեռի ձիթենւոյ մի յենած կեցել էր, հոն յառաջ քան զամենեսին երևեցաւ իրեն Տէրն մեր գեղեցիկ երիտասարդի կերպարանօք՝ անդրանիկն 'ի մեռելոց և հզօր յաղթողն դժոխոց Յիսուս Քրիստոս[1], ապա Մագդաղինէին յանկարծական և անակնկալ խնդութիւն մի պատճառեց՝ նախ պարտիզպանի կերպարանօք երևելով՝ և յետոյ զինքն յայտնելով. և ապսպրեց որ երթան աւետիս տան եղբարց իւրոց այսինքն առաքելոց, զի երթիցեն 'ի Գալիլեա և անդ տեսցեն զնա. յորմէ հաստատ գործեալ թէ իւր Մօրն յառաջագոյն երևցել էր. վասն զի եթէ երևցած չլինէր՝ նոյն աւետիսն ամենէն յառաջ իրեն ղրկելու էր։ Ուստի Մարիամ որչափ որ խաչելութեան ատեն անտանելի ցաւ մի կրած էր սրտին մէջ, նոյնչափ և աւելի անճառելի ուրախութիւն զգաց իր Միածինն յարուցեալ տեսնելով։

Տէրն մեր յարութենէն ետև քառասուն օր շատ անգամ երևեցաւ իւր աշակերտացն, և աւանդէր նոցա այն խորհուրդներն որ պատկանէին Աստուծոյ արքայութեանն և քրիստոնէական կրօնից և մարդկան վերածնութեանն՝ որ պիտի կատարուէր 'ի ձեռն մկրտութեան։ Բարեպաշտ մատենագիրք իրաւապէս համարին թէ այս մխիթարական այցելութիւններս այլ աւելի յաճախ ունեցած է սուրբ Կոյսն՝ ընտրելոց երջանկութեան համն երկրիս վրայ ալ առնլով. որով իւր տրտմութեան դառն արտասուքն փոխեցան յուղխս փափկութեան և յաղբիւրս մխիթարութեան։

Բայց վերջապէս եհաս ժամն որ Յիսուս ըստ աստուածային պատգամաց պիտի դառնայր 'ի յերկինս. արդէն իւր փրկական առաքելութիւնն և ա֊

ռաքելութիւնն կատարեալ էր երկրիս վերայ, և առաքեալք յարութեան սքանչելեօք լիովին հաւանեալ էին նորա աստուածութեան, և ընկալեալ էին 'ի նմանէ զամենայն կարևոր հրահանգս՝ առ 'ի դարձուցանել զաշխարհ ամենայն 'ի հնազանդութիւն աւետարանին: Ուստի քառասներորդ աւուր միջօրէին՝ նոցա հետ միատեղ ել յԵրուսաղեմէ, և սկըսան դէպ 'ի Բեթանիոյ բարձունքն ելնել. ոչ ըստ դիպաց այս ճամբայս բռնելով. այլ վասն զի հոն էր այն ձիթենեօք պսակեալ լեառն՝ ուր Փրկիչն մեկնելով յամբոխէ շատ անգամ ելանէր անդր աղօթելու առ Հայր իւր, հոն էր նաև այն պարտէզն ուր ինքն այնքան ցաւօք հոգեվարաց առաջին տագնապներն զգացել էր տրտմելով մինչև ցմահ և արիւն քրտինք մտնելովը, հոն էր ուր անագորոյն թշնամիք եկել էին զինքն կապելու կաշկանդելու. ուստի վայելէր որ իւր փառքն ալ նոյն տեղէն սկսէր ուր սկսել էին իւր անարգութիւնն և տանջանք. որպէս զի այն արտերն և հովանաւոր անտառաց միայնութիւնն ալ՝ որ շատ անգամ վկայ եղել էին իւր խոկմանց և աղօթից՝ ընդունէին իւր քայլերուն վերջին հետքն յառաջ քան զվերանալն 'ի յերկինս[5] :

Սակայն հոս սրտաշարժ հանդէս մի ներկայանայ մեր առջև 'ի մէջ խանդակաթ Մօր և սիրելի Որդւոյ՝ որ բաժանին 'ի միմեանց հրաժարական ողջունիւ, զոր և այսպէս նկարագրէ Թ. դարուն մէջ Զաքարիա կաթողիկոս 'ի ճառն Յաղագս Անչման Կուսին՝ ըստ հին աւանդութեանց. «Յորժամ եկաւորեալ լինէր քաւչապետն Քրիստոս 'ի լեառն ձիթենեաց, և հանդերձեալ էր համբառնալ 'ի փառս անճառս աստուածութեան իւրոյ, կացեալ առաջի փառաց թագաւորին ամեներջանիկն 'ի կանայս թախանձեալ և մորմոքեալ սրտիւ ասէ ցփրկագործն բոլորից. «Տէր իմ և Աստուած իմ և արարիչ իմ և որդի իմ,

զինչ հրամայես վասն իմ՝ յորժամ համբառնաս 'ի հայրական փառսն քո. և հեմ բացալքեալ թողուս զիս անայցելու և անտերունչ շրջել յայսմ կենցաղի. քանզի 'ի մէջ հեթանոսաց ոչ գոյ ինձ հանգիստ, և զհրէից զապիրատութիւն և զկատաղեալ ապերասանութիւն Տէր դու քաջ գիտես, որ գաղանեաց գիտակ ես և յայտնեաց· արդ ա՛ռ ո՛վ յապահովեալ ապաւինիմ »: Ասէ ցնա փրկագործն բոլորից. « Մայր իմ և տաճար և առագաստ անձառ մարդեղութեան իմոյ, և խորան բանաւոր անհասանելի, ոչ եթէ արհամարհելով անտես առնեմ զքեզ. այլ որպէս յանձն արարի զքեզ սիրելւոյ և հաւատարիմ աշակերտիս իմոյ, առ ժամանակ մի թողում զքեզ յաշխարհիս 'ի մէջ ընտրելոց իմոց աշակերտաց. որպէս զի նկատեալ օր ըստ օրէ սփոփեալ մխիթարեսցին. և դու նկատեալ վերատեսցես զարուեստս նշանացն և սքանչելեաց՝ որ յանուն իմ կատարի 'ի ձեռս նոցա 'ի զարմանս և 'ի հիացումն բոլոր տիեզերաց... Եւ 'ի լրման կէտի կենաց քոց՝ ըստ կամաց իմոց սահմանեալ 'ի վերայ քո, ո՛չ հրեշտակ առաքեցից առ քեզ, և ո՛չ հրեշտակապետ, և ո՛չ զմի ոք 'ի գերագունից զօրաց վերնական իշխանութեանցն. այլ ես եկեալ պատուով զարդափայլեալ և հրաշալի փառօք առեալ վերափոխեցից զքեզ 'ի տենչալի գեղապանծ դրախտն »[6]:

Հասեալք ուրեմն այն լերին գագաթն՝ ուստի երևին Մեռեալ ծովն և Յորդանանու խորափոս եզերքն և Երիքովի դաշտին հսկայաձև արմաւենիներն՝ Փրկիչն կանգ առաւ բաց տափարակ գետնոյն վերայ՝ սակաւ մի հեռի այն ձիթաստանէն զոր յետոյ հռոմայեցիք Երուսաղեմի պաշարման ժամանակ բոլորովին կտրեցին. անդ վերջին հայեցուած մի ձգելով իւր Մօրն և առաքելոց և աշակերտաց վերայ՝ որ հարիւր քսան հոգի էին, և վկայք լինելոց էին այն

հանդիսաւոր ժամուն գերահրաշ տեսլեանն՝ «ամբարձեալ զձեռս իւր օրհնեաց զնոսա. և եղև յօրհնելն նորա զնոսա՝ մեկնեցաւ 'ի նոցանէ և վերանայր յերկինս»։

Այս վերջին անցքս Փրկչին մերոյ աստուածային տապքեղութեան արժանաւոր կնիք մի եղև. իր մարմնաւոր կենաց ժամանակ շրջեցաւ բարի առնել ամենեցուն. խաչին վերայ իր դահճաց համար աղօթեց, և 'ի վերանալն յերկինս՝ օրհնէր իւր հաւատարիմ բարեկամներն՝ զորս թողուր յաշխարհի, և դեռ բազկատարած երևէր ինքն՝ երկրպագած 'ի գետին խոնարհեալ աշակերտաց վերայ՝ երբ լուսաւոր ամպ մի ծածկեաց զնա յաչաց նոցա։ Ի համբարձման Տեառն մերոյ ոչ երևեցան այնպիսի ահաւոր նշաններ որ հին ժամանակ սարսափեցընէին զմարդիկ. մովսիսական օրէնքն հրատարակեալ էր 'ի ձայն աւագափող փողոց, որոտմանց և փայլատականց ահարկու ճայթմանց մէջ. Եղիա հրեղէն կառօք յերկինս յափշտակէր. իսկ Փրկիչն աշխարհի հեզիկ համբարձաւ թեթև ամպոց վերայ, այնպիսի պարզ և խաղաղ մեծվայելչութեամբ՝ որ վայել էր Աւետարանի և սրտաշարժ սիրոյն Յիսուսի որ աւանդեաց զնա[7]։ Հրեշտակք և երկնային ոգիք որ ուրախանան մարդուս երջանկութեան վերայ՝ հանդիսակից էին այս շքեղ տեսարանիս՝ յորում պարզէր և աւարտէր փրկագործութեան մեծ արարուածն՝ որ 'ի ստեղծմանէ մարդոյ սկսած էր. նոքա որ իրենց երկնային երգերովը աւետել էին հովուաց զծնունդ Մեսիային և հռչակել էին զյարութիւն նորա 'ի մեռելոց՝ յոյժ վայել էր որ վկայ լինէին նաև իւր փառաւոր համբարձմանն ալ։ — Ուստի մինչդեռ աշակերտք հիացմամբ դիտէին զՅիսուս որ երթալով երթայր և բարձրանայր օդուն մէջ, յանկարծ երևեցան նոցա արք երկու 'ի հանդերձս լուսաւորս և ասեն. «Արք գալի-

լնացիք, զի՞ կայք հայեցեալ ընդ երկինս. այս Յիսուս որ վերացաւն 'ի ձէնջ յերկինս սոյնպէս եկեսցէ զոր օրինակ տեսէք զնա երթեալ յերկինս» ։ — Այս հրաշալի դիպուածէս տասն օր յետոյ՝ որ պատեքին կամ զատկին սկիզբըէն յիսներորդ. որն անկանէր՝ գտանեմք զՄայրն Աստուծոյ 'ի վերնատան Սիոնի՝ ուր առաքելոց հետ 'ի միասին ընկալաւ զՀոգին սուրբ[8] ։

Նորածին եկեղեցւոյ առաջին տարիներն՝ Մարիամ լուսեղէն սիւն մի էր առաջնորդ հաւատացելոց. Նմա ընծայէին առաքեալք այն բազմաթիւ հասկերն՝ զոր քաղէին հրէից ժողովարանին անդաստաններէն՝ առ 'ի շտեմարանել զնոսա 'ի շտեմարանս Տանուտեառնն, և ինքն այս ընծայներս խոնարհութեամբ և լի շնորհօք ընդունէր յանուն Որդւոյն իւրոյ ։ Աղքատներն խեղճերն մեղաւորներն իրմէ ոչ բաժանէին, որովհետև ինքն ալ մասնաւոր գութ և սէր ցուցանէր նոցա և մխիթարէր. աւետարանիչք իրմէ ընդունէին լոյս և տեղեկութիւն Քրիստոսի մանկութեան և առաջին ծածկեալ կենաց վերայ. առաքեալք՝ արիութիւն և հաստատութիւն. հիւանդք հոգւով և մարմնով՝ բժշկութիւն և առողջութիւն. տրտմեալք՝ հոգևոր մխիթարութիւն. Նորադարձք զօրութիւն կրելոյ զխաչն զկնի հետոց Քրիստոսի 'ի վիշտս և 'ի հալածանս. և ամենքն իրմէ բաժնուած ատեն օրհնէին զնա և ընդունէին զօրհնութիւն նորա ։ Ու թէպէտ Արեգակն արդարութեան խոնարհեալ 'ի մուտս իւր Գողգոթայի արիւնաշաղանգ հորիզոնին վերայ՝ երթեալ էր լուսաւորել զաշխարհս ստորայնոց, սակայն Արուսեակն զուարթարար տակաւին սփռէր զճառագայթս իւր՝ 'ի վերայ նորաստեղծեալ աշխարհիս, և հեզոյր զբարերար հոսանս շնորհաց 'ի վերայ որրանաց քրիստոսական կրօնից ։

Ամենուն հետաքրքրութիւնն գայ գիտել թէ ար-

դեօք Տիրամայրն ուր և ինչպէս անցոյց իւր վերջին տարիներն երկրիս վերայ՝ Աստուածորդւոյն յերկինս համբառնալէն ետև։ — Նախ և առաջ պէտք է գիտել՝ որ եկեղեցւոյ վաղեմի հաստատուն աւանդութիւն է՝ հաստատեալ գրեթէ միաձայնութեամբ հարց և պատմագրաց թէ սուրբ Կոյսն յետ համբարձման Քրիստոսի միշտ յԵրուսաղէմ բնակեցաւ մերձ 'ի Սիոն և ոչ հեռի 'ի գերեզմանէ Տեառն. որպէս գրեն Խորենացի, Սոփրոնիմոս, Նիկեփորոս, Մետափրաստէս, Անդրէաս կրետացի և այլք. այն վերնատուն մօտ ուր հաստատեց Քրիստոս վերջին ընթրեաց ժամանակ զխորհուրդ մարմնոյ և արեան իւրոյ, և յորում երևեցաւ բազում անգամ յետ յարութեանն աշակերտաց իւրոց դրօք փակելովք, և ուր էջ Հոգին սուրբ 'ի վերայ առաքելոց։ Եւ որովհետև՝ որպէս աւանդէ Խորենացի, Ս. Յովսէփ 'ի մեռանելն յանձնեալ էր զԿոյսն Յակոբայ արդարոյ՝ որ եղև առաջին եպիսկոպոս Երուսաղեմի, և յետոյ Տէրն մեր յանձն արար զնա Յովհաննու սիրելոյ աշակերտին, ուստի և Աւետարանիչս ոչ երբեք մեկնեցաւ 'ի նմանէ՝ քանի որ Կոյսն կենդանի էր, այլ որդիաբար ծառայէր նմա, որում ազնական եղև երբեմն և Ս. Ղուկաս աւետարանիչ՝ բժիշկ ճարտար և նկարիչ. և երկոքին սոքա Մարեմայ հետ ունեցած ընտանութենէն՝ բազում ինչ ուսան 'ի նմանէ Քրիստոսի աստուածութեանն և նորա մարդանալոյն, և մանկութեան ժամանակ անցած դիպուածոց վերայ, զորս և 'ի դիր անցուցին. Յովհաննէս անճառելի կերպով խօսելով յաւիտենական Բանին աստուածութեան վերայ՝ օրով և Աստուածամայրն անունն ժառանգեց. իսկ Ղուկաս նորա մանկութեան և անյայտ կենաց պարագայներն աւանդելով զորս ոչ ոք կարէր գիտել եթէ ոչ Կուսամայրն. ինչպէս որ ինքն ալ խոստովանի իւր աւետարանին սկիզբն ասելով.

«Որպէս աւանդեցին մեզ՝ որ 'ի սկզբանէ ականատեսք և սպասաւորք եղեն Բանին» 9 ։— Եւ որովհետև սոյն Ղուկաս ճարտար նկարիչ ալ էր՝ որպէս ասացաք, նկարեց զպատկեր սրբոյ Կուսին զանազան դիրքով թէ առանձինն և թէ Աստուածորդւովն 'ի գրկին, որք սովորաբար վեց հատ համարին, և ոմանք պահին մինչև ցայսօր 'ի Հռոմ, մին Վիա-Լաթա ասացեալ փողոցի Աստուածամօր եկեղեցւոյն մէջ՝ ուր նկարած էր նոյն եկեղեցւոյն ներքև ստորերկրեայ տան որմին վերայ, որ և Ս. Պաւղոսի և այլ առաքելոց բնակարանն եղած է, և միւսն Աւագ Մարիամ ասացեալ եկեղեցւոյն Պորկէզեան կոչեցեալ մատրան մէջ Աստուածորդւովն 'ի գիրկս. զատ 'ի սոցանէ Հռոմայու մէջ կան նաև քանի մի նկարներ Տիրամօրն զորս բարեպաշտ ժողովուրդն Ս. Ղուկասու նկարած համարի, և հոկտեմբերի 18ին ըստ լտ. Ս. Ղուկասու տօնին օրն զամենքն ալ դնեն 'ի յարգութիւն հաւատացելոց. կայ նաև Ս. Ղուկայ նկարած միւս այլ պատկեր 'ի Վենետիկ Ս. Մարկոսի հռչակաւոր եկեղեցւոյն մէջ որ 'ի Կոստանդնուպօլսոյ բերուած է, որպէս նաև 'ի Սպանիա Մատրիտ քաղաքին մօտ Ադոջայի եկեղեցւոյն մէջ՝ որ մեծ ուխտատեղի է 10 ։

Ս. Ղուկայ նկարած պատկերներէն զատ՝ սիրելի աշակերտն և Աստուածամօր որդեգիրն ալ փորագրած կամ նկարած էր Տիրամօր պատկերն 'ի վերայ կիպարիս կամ նոճի տախտակի, զոր յետոյ Բարթողիմէոս առաքեալ բերաւ 'ի Հայաստան և դրաւ Հոգեաց վանք ասացեալ եկեղեցին արծրունեաց երկրին մէջ, որոյ պատմութիւնն գրած է Խորենացի առ Սահակ արծրունի իշխանն, զոր համառօտելով այս տեղս դնեմք 11 ։ Երբ սուրբ Կոյսն հրաժարեցաւ փոխադրիլ 'ի յերկինս և յայտնեց զայն Յովհաննու՝ սիրուն աշակերտին շատ տրտմելով այս լրոյս վերայ, վասն զի պիտի բաժնուէր իր սիրելի Մօրէն՝ կիպա-

րեն փայտ մի առաւ՝ յորմէ շինուած էր նաև Յիսուսի խաչն, և Թախանձելով զՏիրամայրն՝ մեծ աշխատութեամբ նորա պատկերն ձևացուց, որպէս զի յիշատակն մնայ 'ի մխիթարութիւն սրտին, և իւր կարօտ այնով լեցընէ: Որովհետև, ասէ հեղինակն, Տեառն մերոյ համբառնալէն ետև՝ առաքելոց միակ մխիթարութիւնն Տիրամայրն էր, և զինքն տեսնելով իւր Որդւոյն կարօտն առնուին. այսոր համար Պետրոս և Պաւղոս (որպէս և այլ առաքեալք աշակերտք և հաւատացեալք) ամէն ելանէին յԵրուսաղէմ՝ տեսանել զսուրբ անօրինական տեղին և առանձինն զերանելի Կոյսն: Արդ երբ Յովհաննէս աւարտեց իր ձեռակերտն՝ առաքելոց հետ խորհեցաւ որ աղաչեն զՏիրամայրն իւրեանց՝ որ այն փայտեղէն պատկերն իւր աստուածային երեսաց վերայ դնելով օրհնէ, և բժշկութեան զօրութիւն շնորհէ այնոր. վասն զի այն ատեններն բորոտութեան ախտն ամէն տեղ եռայր՝ մանաւանդ յԵրուսաղէմ: Ուստի Պաւղոս և Յովհաննէս բոլոր հոն եղեալ առաքելոց հետ գնացին աղաչելու զՏիրամայրն, և Պաւղոս առաջնորդ բանին ասէ ցամենօրհնեալ սուրբ Կոյսն. «Անարատ առագաստ Աստուծոյ Բանին՝ աղաչեմ զքեզ, ընկալ զփայտեղէն պատկերս զայս զնկարեալս 'ի Յովհաննէ 'ի սուրբ ձեռս քո, և օրհնեա՛ զսա, և տուր զսա նշան կենաց աշխարհի, և աղաչեմ զՈրդին քո և զԱստուած մեր՝ բառնալ 'ի ձեռն պատկերիս զբորոտութիւն յորդւոց 'ի մարդկանէ, որք ապաւինին 'ի քո բարեխօսութիւնդ»: — Պատասխանի ետ ամենօրհնեալ սուրբ Կոյսն և ասէ. «Դուք որ աշակերտք էք արարչին մերոյ Քրիստոսի՝ ձեզ տուաւ իշխանութիւն հալածելոյ զդևս և բժշկելոյ զախտս և զհիւանդութիւնս.. ուստի աղաչեցէք զՏէր ձեր և զԱստուած, և լինիցի ձեզ. զի թէ զերկինս փակել իշխանութիւն առէք յերկրի.. ոչ ինչ անհնարին

լինիցի ձեզ» : — Ասէ Պաւղոս. «Կոյս սուրբ և Մայր Աստուծոյ, մեք ծառայք անպիտանք եմք.. իսկ դու տիրամայր գոլով մեր.. աղաչեմք զքեզ արա մեզ նշան զպատկերս զայս, որպէս և միածին որդին քո, որ զփայտ մահու իւրոյ անմահութեան գործարան ետ աշխարհի, և զանձ կենաց» : — Այն ատեն ամենօրհնեալ սրբուհին նկարած պատկերն առնլով՝ ձեռան յերկինս բարձրացոյց և օրհնեց, և յետոյ իւր երեսաց վերայ դնելով՝ արցունքովը թրջեց զայն. և լոյս ամպեղէն խաչանման կաթեաց 'ի սուրբ պատկերն : Իսկ Պետրոս և Պաւղոս առնլով զայն 'ի ձեռաց սրբուհւոյն՝ ամենեքեան երկրպագեցին :... Եւ բորոտք որ էին 'ի քաղաքին՝ գային առ առաքեալսն և օծանէին իւղով, և տեառնագրէին սուրբ պատկերաւն, և առժամայն բժշկէին յախտիցն.. մինչ զի և համբաւն ընդ ամենայն Հրէաստան ընթանայր : — Ահա այս պատկերս էր զոր յետոյ առաքեալք շնորհեցին Բարթողիմեայ՝ որ 'ի ննջման Կուսին ուշ հասնելով՝ չէր կարացեալ վերջին անգամ տեսանել զնա. և նա բերելով զայն 'ի Հայաստան, կուսաստան և եկեղեցի մի կանգնեց յանուն Տիրամօրն, և հոն դրաւ հրաշագործ պատկերն, և կոչեցաւ տեղին Հոգւոց կամ Հոգեաց վանք՝ որ է Անձևացեաց գաւառին մէջ, որ և մեծ ուխտատեղի եղև՝ շատ զարմանալի բժշկութիւններ լինելուն համար. զոր և յետ ժամանակաց Ս. Հայրն մեր Լուսաւորիչ առաւել ևս պայծառացոյց սոյն տեղս, և Ս. Կոյսն եղև պաշտպան ազգիս :

Իսկ Աստուածամօր Յովհաննու աւետարանչի հետ յԵփեսոս երթալն և մանաւանդ հոն վախճանելն ընդունելի չէ, թէպէտ և ոմանք զնոյն պաշտպանեն. որովհետև աւելի հաւանական երևի թէ Յովհաննէս յամի տեառն 66ին թողած է զՀրէաստան և գնացեալ յԵփեսոս. իսկ արդ ստոյգ է որ նոյն թուա-

կանխին արդէն Աստուածամայրն երկրաւոր պանդխտութեան ժամանակն աւարտել էր և վերափոխեալ 'ի յերկինս։ Վասն զի եթէ համարիմք զնա հնգետասան ամաց յղացեալ զբանն Աստուած, որպէս ընդհանուր կարծիք է, ութսուն և մի տարուան եղած պիտի լինէր՝ Յովհաննու հետ յԵփեսոս գնացած ատեն. ուր հաստատուն աւանդութիւնն համարի թէ Կոյսն ննջեաց ընդ մէջ 63 և 73 ամաց հասակին։ Ապա ուրեմն սխալին նոքա որ զննջումն Տիրամօր յԵփեսոս եղեալ համարին. և իրենց այս վրիպակ կարծիքս հաստատելու համար՝ ուրիշ ապացոյց չունին՝ բայց եթէ Նեստորի դէմ յամի 431ին գումարեալ Եփեսոսի ընդհանուր ժողովոյն առ վիճակաւորս Կոստանդնուպոլսոյ ուղղեալ թղթոյն մի կրճատ յօդուածն՝ որ նոյն քաղքին վերայ խօսելով առէ ճիշդ այս բառերովս «յորում Յովհաննէս Աստուածաբան և Աստուածածին կոյսն սրբուհի Մարիամ». խօսից միացորդն բնագրին մէջ պակաս է, և իմաստն լրացընող բայ չգտուելուն՝ ոմանք համարեցան լրացընել զայն բայիւս մեռան, և այլք իմանան բնակեցան. զոր շատերն համարին պարզապէս թէ պակած մասն լինելոյ է ուռեկին տաճարս, որ աւելի հաւանական է. այսինքն թէ այս թերի խօսքս ոչ ցուցանէ ամենևին թէ Ս. Կոյսն և Յովհաննէս հոն բնակած են, այլ թէ երկոցուն անուամբ ալ եկեղեցիներ կային այն քաղքին մէջ՝ մին նուիրեալ Տիրամօրն ուր ժողովն գումարեցաւ, և միւսն նուիրեալ Աստուածաբան Յովհաննու աւետարանչի։ Հակախօսաց այս մեկնութիւնս յայտնապէս մերժէ նաև Երուսաղեմի պատրիարքն Յոբնաղ որ նոյն ժողովոյն հայրապետներէն էր. վասն զի երբ դշխոյն Պուլքերիա՝ քոյր Թէոդոսի կրտսերոյ և կին Մարկիանոսի կայսեր, անգիտութեամբ խնդրեր 'ի նմանէ մասն ինչ 'ի նշխարաց Կուսամօրն, պատասխան տայ նմա թէ գերեզման Կուսին

գատարկ կայ 'ի Գեթսեմանի, զի մարմին նորա վերափոխեալ է 'ի յերկինս. ուստի յղէ առ նա 'ի պատուական կտաւոցն որ գտան 'ի գերեզմանի նորա: — Այս աներկբայ վկայութիւնս հաստատի նաև յայն փառաւոր եկեղեցւոյն՝ որ շինուած է 'ի ձորն Յովսափատու 'ի վերայ գերեզմանի Տիրամօրն, որ յառաջին դարէ 'ի վեր ուխտատեղի եղած է հաւատացելոց:

Այս պատճառներէս զատ՝ նաև անհաւատալի երևի մեզ թէ Ս. Կոյսն թողուր իր Աստուածորդւոյն տնօրինական տեղուանքն՝ որ միակ մխիթարութիւն էին իրեն, և օտար երկիր երթար պանդխտէր՝ հեռի իր Միածնին յիշատակներէն: — Իսկ այն առարկուածն զոր առնեն ընդդիմախօսք թէ ինչո՞ւ ուրեմն սուրբքն Եպիփան և Հերոնիմոս տնօրինական տեղեաց վերայ խօսած ատեն՝ ոչ յիշատակեն սրբոյ Կուսին գերեզմանն, մանաւանդ թէ առաջինն տարակուսի ևս Մարիամու իսկապէս մեռած լինելուն վերայ, Բարոնիոսի հետ պատասխանեմք՝ որ երբ Տիտոսի ձեռօք Երուսաղէմ քաղաքն կործանեցաւ՝ Աստուածամօր գերեզմանն ալ մօտ շէնքերու փլատակներովն ծածկուեցաւ. այնպէս որ հիմա ալ գետնին երեսէն քառասուն և վեց աստիճան ստորերկրեայ սանդուղով վար իջնելու է գերեզմանին հանելու համար: Ուստի շատ դարեր ծածկուած մնալէն յետոյ՝ Ե. դարուն մէջ երբ հոն դիզուած աւերակներն 'ի բաց առին՝ այն սուրբ տեղն ալ յայտնուեցաւ՝ երբ վերոյգրեալ սուրբ հարք արդէն վախճանեալ էին: — Վերջապէս նոյն իսկ հրեայք որ քրիստոնէական աւանդութեանց այնչափ հակառակ և ատեցող են՝ իրենց Թալմուտին մէջ խոստովանին թէ առաջին դարու քրիստոնեայք աղօթարան մի շինած էին Յիսուսի մօր գերեզմանին վերայ՝ Երուսաղեմի կործանմանէն յառաջ, և հոն կանթեղներ վառելով պաշտօն կատարէին, զոր ժողովարանն ար-

դիւել ուզելով՝ հաւատացեալներէն շատ մարդ ջարդեց[12] ։

Այսպէս հաստատելէն ետև՝ թէ երանեալ Կոյսն միշտ յԵրուսաղէմ բնակած է՝ հիմա տեսնեմք թէ ինչպէս անցուց իւր վերջին տարիներն երկրիս վերայ։ Մարիամ զայն մայրութիւնն զոր ընկալաւ առ ոտս խաչին վասն ամենայն հաւատացելոց, ոչ երբեք մոռացաւ. այլ ամենայն խնամօք 'ի գործ դրաւ բոլոր այն տարիներուն մէջ՝ որչափ որ մնաց երկրիս վերայ. ինչպէս նաև հիմա ալ շարունակէ անդադար յերկինս յօգուտ և յօժանդակութիւն հաւատացելոց։ Ուստի տարակոյս չկայ որ յաճախ առաքելոց և հաւատացելոց հետ էր, և իրենց հետ խօսէր իւր Միածին որդւոյն վերայ. և թէպէտ աւետարանիչք և նախկին մատենագիրք բան մի ոչ յիշատակեն իր կենացն կատարմամբ՝ սակայն դիւրին է գուշակել զայն. ինքն ինչպէս յառաջ նոյնպէս և այժմ ներանձնական և միանգամայն գործունեայ կեանք մի անցուց. առէպ յայց ելանէր այն սուրբ տեղեաց որ Աստուածորդւոյն կեանքն և մահն իրեն յիշեցընէին. և թէ աշխատելու և թէ սակաւ ինչ կերակրով և հանգստեամբ դադարած ժամանակն ալ միշտ նորա կրածներն մտածէր՝ որ իր սրտին մէջ անջնջելի տպաւորած էին, և 'ի հրէից կրած նեղութիւններն ալ միշտ նորոգէին զնոսա. վասն զի ինչպէս գիտեմք յաւանդութեանց՝ զորս յիշէ և Խորենացի «Բազում չարչարանս կրեաց 'ի Կայիափայ, և հալածանս 'ի Հրէից. զի ոչ տային նմա գնալ 'ի գերեզմանն կալ յաղօթս. կամ 'ի Գեթսեմանի յայտնապէս կամ յայլ տեղիս տնօրինականս փրկչին, բայց միայն գաղտնի։ Եւ հալածեալ զեղբայր Տեառն զՅակոբ, երթեալ հուր հարին 'ի տունն՝ յորում կայր Սրբուհին. և շրջապատեալ հուրն զհրեայսն՝ կիզեաց արս եօթն, զԿայիափա և զԱննա և զՂևի քահանայապետս, ոչ ինչ

փլասեալ տանն ։ Եւ յաւուր համբարձման Տեառն 'ի լեառն Ձիթենեաց՝ յախուռն քարամիք հասեալ հրեայքն 'ի վերայ Արքուհւոյն՝ սատակեցին յեն-քեանց արս յիսուն քարավրէժս » ։

Ըստ աւանդելոյ այլոց երանեալ Կուսին հետ էին միշտ քանի մի բարեպաշտօն կանայք և կուսանք՝ որոց պարագլուխ էր Մագդաղինէ անբաժան ընկեր Տի-րամօրն՝ որ զինքն բոլորովին իրեն սպասաւորու-թեան նուիրած էր. որոց հետ երկնային բաններու վերայ խօսելով Կոյսն՝ ոչ միայն մխիթարէր զնոսա՝ այլ և առաքինական կենաց վարժեցընէր հոգևոր խրատներով և ընթերցմամբ սուրբ գրոց ։ Շատ ան-գամ ալ մտօքն յափշտակեալ յաղօթս՝ հոգւովն վե-րանայր յերկինս՝ իւր Որդւոյն տեսութեան կարօտն առնլով. սակայն այս կարօտս ոչ նեղէր զնա, այլ քաղցրութեամբ սպասէր աւետաբեր հրաւիրանաց, և ժամանակն անցուցանէր 'ի քաջալերութիւն առաքելոց և աշակերտաց և այլ հաւատացելոց, որք նեղութիւն մի ունեցածնուն պէս՝ հեռի տեղերէ ևս առ նա դիմէին իբրև 'ի գանձարան մխիթարութեան ։ Եւ նոյն իսկ զինքն չճանչցողներուն և իր աստուածա-մայրութեան գերագոյն փառքն չգիտողներն՝ զինքն տեսնելով և անոյշ ձայնն լսելով՝ այնպիսի քաղցրու-թիւն մի զգային որ զիրենք յափշտակէր ։ Եւ այս ասացածս մեր առ նա ունեցած սիրոյն և յարգանաց առաւելութեան կեղծիք չեն. վասն զի եթէ այլ ապացոյց ալ չունէաք՝ բաւական էր Դիոնեսիոսի արիոպագացւոյ վկայութիւնն՝ որ Յունաստանի ծայ-րէն ել և եկաւ միայն զինքն տեսնելու համար, ճամ-բուն երկայնութիւնն և դժուարութիւնն բանի տեղ չդնելով՝ և որչափ որ իր իմաստասէր մտաց մէջ մեծ գաղափար ունէր Տիրամօր վսեմութեան և գեղեց-կութեան վերայ, սակայն ինքն անձամբ վկայէ առ Տիմոթէոս գրած թղթոյն մէջ՝ որ երբ Յովհաննէս

զինքն Աստուածամօր առջև հանեց՝ այնպիսի պայծառ լուսով զնա շրջապատած տեսաւ և այնչափ անուշահոտութիւն զգաց՝ որ աչքն խոտորելով և 'ի հիացմանէն ինքն յիրմէ դուրս ելնելով՝ երեսս 'ի վայր գետինն անկաւ և ասաց. «Ո՛վ ամենասուրբ Կոյս՝ եթէ ես չհաւատայի քո որդւոյդ՝ իբրև աստուածուհի պիտի պաշտէի զքեզ[13]»։ Սակայն միայն Դիոնեսիոս չէր որ հեռի տեղէ եկն զԱստուածամայրն տեսնելու. Լուկիոս Դեքստեր վկայէ[14] որ շատերն մինչև 'ի Սպանիոյ գային յԵրուսաղէմ իրենց աչօք զերանեալ Կոյսն տեսնելու համար. ապա որչափ առաւել նոքա որ Պաղեստինու մէջ էին և լսէին միշտ Տիրամօր գովեստներն, իւր հրաշալի գեղեցկութիւնն, ազնիւ և բարեգութ սիրտն. որ և իրենց երկիրն դառնալով՝ հռչակէին զնոսա իրենց հայրենակցաց մէջ, և նոցա սիրտն ալ վառէին երթալու տեսնելու այս հրաշագեղ Կոյսս՝ որ ամենեցուն սիրտն յափշտակէր, և միայն նայուածքն բաւական էր սուրբ սիրով զիրենք լեցընելու։

Թէպէտ յիշատակութիւն մի ոչ գտանեմք Տիրամօր կենդանութեան ատեն գործած հրաշից վերայ. սակայն ո՞վ կարէ տարակուսիլ այս բանիս. ինքն որ լի էր գթութեամբ և ողորմութեամբ մարդուս ամեն կարօտութեանց և նեղձութեանց վերայ։ Միթէ հրաշագործութիւնն ալ Հոգւոյն սրբոյ պարգևներէն չէ՞ զորս աստուածաբանք ձրի շնորհեալս անուանեն. և ինքն ալ առաքելոց հետ ընդունած չէ՞ր այն պարգևաց առատութիւնն, և պէտք չունէ՞ր նոցա ձեռնտուութեանն՝ առ ինքն դիմողներու հաւատքն հաստատելու համար. ուստի յոյժ հաւանական է որ շատ հրաշս ալ գործած է՝ խոնարհութեան քողով ծածկելով զնոսա, որպէս առնէր երբեմն իւր Միածին որդին։

Իսկ իր գործունեայ կեանքն կամ թէ մերձաւո-

բաց օգտակար լինելու իղձն այնչափ էր՝ որ ինքն էր
յուշարար առաքելոց, զօրացուցիչ մարտիրոսաց,
ջինջ և մաքուր հայելի կուսանաց, խրատիչ այրեաց
և արամբեաց, յորդորիչ մոլորելոց, մխիթար վշտա-
ցելոց և պաշտպան աղքատաց և տկարաց: Զամե-
նեսին քաղցրութեամբ ընդունէր, ամենեցուն փրկա-
րար խորհուրդներ տայր, և եռանդուն բորբոքեալ
խօսքով յորդորէր յառաքինութիւն. այնպէս որ
իրեն քան զիւր որդին աւելի երկայն ապրիլն՝ ոչ մի-
այն օգտակար եղև նորածին եկեղեցւոյ, այլ և յոյժ
հարկաւոր. մանաւանդ երբ սակաւ մի յետոյ յան-
կարծ սաստիկ հալածանք մի ելաւ Երուսաղեմի մէջ
և դրսերն ընդդէմ հաւատացելոց՝ սրբոյն Ստեփա-
նոսի քարկոծուելէն ետև: Հալածչաց գլուխն կե-
ցած էր Սաւուղ նախանձայոյզ և կատաղի երիտա-
սարդն՝ որ բռնի քրիստոնէից տներն մտնելով՝ քար-
շէր զարս և զկանայս և մատնէր 'ի բանտ. որով եկե-
ղեցին մեծ նեղութեան մէջ անկանելով՝ շատերն թո-
ղին զտունս և զստացուածս իւրեանց և փախեան 'ի
զանազան կողմանս Հրէաստանի և 'ի Սամարիա, որ
և աւետարանի տարածուելուն մեծ պատճառ եղև:
Իսկ առաքեալք այն դառն հալածանաց ժամանակ
ալ յԵրուսաղէմ մնացին, Քրիստոսի անուանն համար
տանջանք և մահ աչք առնլով. որոց հետ էր նաև Տի-
րամայրն՝ որ իր բորբոքեալ սիրովն յոյժ տրտմէր
հաւատացելոց կրած նեղութեանց վերայ, և վախէր
որ մի գուցէ ոմանք այն ծանր փորձանաց չդիմանա-
լով թուլնան 'ի հաւատոց. միանգամայն իր աղգին
հրէից վերայ ալ սուգ առնոյր՝ տեսնելով որ իր Որ-
դւոյն այնչափ խրատներովն և յորդորներովն ալ, և
այնչափ յայտնի և լուսաւոր ապացոյցերու դէմ, և
այնքան բարիք տեսնելէն ետև ալ՝ դեռ իրենց չա-
րութեան մէջ յամառէին, և Աստուծոյ բարկու-
թիւնն իրենց վերայ գրգռէին: Անշուշտ հալածչաց

գլուխ կեցողին Աւետաւորայ դարձն ա՛լ միայն Ս. Ստեփանոսի աղօթից արդիւնքն չէր, այլ և Մարեմայ ամենագութ սրտին արտասուագին պաղատանաց և եռանդուն բարեխօսութեան պտուղն, որով այն մոլեգին հալածիչն դարձաւ եղև Առաքեալ հեթանոսաց և անօթ ընտրութեան. որ և այնուհետև այնչափ ռաւել եռանդեամբ սկսաւ քարոզել և աշխատիլ 'ի պաշտպանութիւն հաւատոց Յիսուսի Քրիստոսի՝ որչափ որ յառաջ կատաղութեամբ զայն ջնջելու աշխատէր։ Այս հրաշալի դարձս Նախավկային մահուանէն հնգետասան ամիս յետոյ հանդիպած երևի ըստ Բարոնիոսի, կամ Քրիստոսի համբարձմանէն երկու տարի ետև։

Երբ Ագրիպպաս Հերովդեսի յարուցած երկրորդ հալածանաց փոթորիկն ալ դադրեցաւ՝ այլ առաքելոց ժամանակն եկել հասել էր իրենց պաշտօնն կատարելու, և աւետարանի լոյսն աշխարհիս ամեն դին սփռելու։ Անտարակոյս յիրերաց զատուելէն յառաջ ամենքն Կուսամօր բոլորն ժողվեցան, և իրմէ լոյս և խորհուրդ հարցընելով՝ յանձնեցին զիրենք նորա աղօթիցն և բարեխօսութեան. գիւրաւ կարեմք գուշակել նաև թէ Տիրամայրն ալ ինչ զգացմամբ լցաւ՝ այս սիրելի և հաւատարիմ գնդէս բաժնուելու ժամանակ, օրհնելով զնոսա և քաջալերելով և Աստուածորդւոյն պատուէրներն յիշեցընելով։ — Իսկ թէ արդեօք Յովհաննէս աւետարանիչ ալ միւս առաքելոց պէս՝ հեռացա՞ւ թէ մնաց յԵրուսաղէմ Տիրամօրն քովը՝ վերն ասացածներէս աւելի որոշ բան մի չեմք կարող յաւելուլ, բայց եթէ ծանուցանել որ երկու կարծիքն ալ պաշտպանողներ եղած են. և այս խնդիրս որոշելու համար՝ նախ հարկաւոր է հաստատել թէ երբ եղև առաքելոց 'ի Հրէաստանէ ելնելն 'ի քարոզել զաւետարանն [15]։ Եթէ նոցա կարծիքն ընդունիմք որ Քրիստոսի յարութենէն

տասուերկու տարի յետոյ եղած համարին այս բանս, յորում ժամանակի ոմանք դնեն նաև Տիրամօր Ննջումն, այն տեղն գրեթէ ստուգապէս կարեմք հաստատել թէ սիրելի աշակերտն՝ գրեթէ ոչ բնաւ թողած է զԿոյսն՝ այլ միշտ բնակած է յԵրուսաղէմ։ Ուստի հիմա մնայ մեզ այս խնդիրս լուսաբանել թէ արդեօք քանի՞ տարուան էր Կոյսն վախճանած և 'ի յերկինս վերափոխած ժամանակ, որով և ննջման թուականն ալ ճշդրտի։

Արդ երանուհի Կոյսն հրաշալի յարատևութեամբ համնելով առաքինութեանց գերագոյն կատարն՝ զոր մարդուս միտքն չէ կարող ըմբռնել, հարկ էր որ անցանէր յաքսորանաց 'ի հայրենիս, 'ի վշտաց յուրախութիւն, յանարգանաց 'ի փառս, և վերջապէս յերկրէ 'ի յերկինս։ Անտարակոյս կուսամայրն յառաջագոյն իմացաւ՝ ոչ միայն աւելի եռանդուն փափաքէն՝ որ իւր սիրտն բորբոքէր, որով կենաց իւրաքանչիւր վայրկեանն ալ հազարաւոր դարեր թուէին իրեն, այլ նաև ըստ բազմաց մասնաւոր յայտնութեամբ հրեշտակապետին Գաբրիելի որ այս երկրորդ աւետիսս ալ բերաւ իրեն՝ լուծանելու 'ի մօտոյ 'ի կապանաց մարմնոյն և ազատ թռչելու առ ցանկալին իւր։ Վաստակաբեկ և յոգնած ուղևոր մի՝ որ վտանգալից ճանապարհորդութեան ծայրն հասանէ, վշտահար նաւորդ մի՝ որ մրրկալից ծովեր կտրելով ցանկալի նաւահանգստին մօտենայ, վատուժ և տկար կալանաւոր մի որ շատ տարիներ մութ բանտի մէջ մնալէն յետոյ՝ վերջապէս իմանայ իր շղթայից քակուիլն և ազատութեան դռներուն բացուիլն, տկար և անզօր օրինակներ են այն խնդութեան՝ զոր զգաց Մարիամ՝ երբ իմացաւ թէ սակաւ ատենէն իր պանդխտութիւնն պիտի աւարտէր և հասանէր իւր ցանկացեալ վախճանին։ Նորահրաշ ուրախութիւն մի փայլեցաւ իւր կուսական ամօթխած երեսաց վերայ,

հրեշտակային ժպիտ մի ծաւալեցաւ իր անուշիկ շրթանց վերայ. այնպէս որ իր սրտին ցնծութիւնն իր դիմաց վերայ նկարած երևէր, և ուրախ զուարթ այն աւուր սպասէր։ Բայց իւր կենաց այս վերջին արարուածս պատմելէն յառաջ՝ ամենուս բնական հետաքրքրութիւն մի գայ գիտել թէ արդեօք քանի տարուան էր Կոյսն նոյն ատեն։ Անշուշտ եթէ մեր սրտին և սիրոյն զգացմանն հարցանեմք՝ սրբոյն Եպիփանու [16] և թերևս սրբոյն Նարեկացւոյ [17] ալ կարծիքն նախամեծար պիտի համարիմք, որք երկմտին Աստուածամօր մահուան վերայ, ազատ համարելով զինքն այն հանրական դատակնքոյն՝ որ 'ի մահ դատապարտեաց զամենայն մարդ հողածին. և թէպէտ մարդուս կենաց պայմանն Քրիստոսի արդեամբ բոլորովին փոխուեցաւ՝ սակայն այն վճիռն ոչ ջնջեցաւ, և զոր կամաւոր զոհի պէս ամենքս ալ պարտական եմք մատուցանելու առ Աստուած՝ որ տուողն է կենաց և կենդանութեան։ Ուստի բաւական պատճառ չէ Կուսամօր անմահ մնալն ցուցանելու համար՝ բարեպաշտ դիմախօսից ասելն թէ որովհետև Մարիամ ազատ էր 'ի սկզբնական մեղաց և յանիծից նախահօրն, ապա և ոչ ներքոյ անկեալ այն մեղաց պատժոյն որ է մահն։ Վասն զի այս առարկութիւնս նախ կարեմք լուծաբանել սուրբ վարդապետաց մանաւանդ սրբոյն Աւգոստինոսի խօսքովն որ ուսուցանէ թէ նոյն ինքն Յիսուս Քրիստոս միայն մեղաւորի կերպարանք առնլուն համար՝ կամեցաւ 'ի մանկութենէ իւրմէ մարդկային բնութեան ամեն թշուառութիւններն կրել, որպէս նաև զզարգացումն և զփոփոխմունս հասակին, այնպէս որ եթէ յերիտասարդական հասակին մեզ համար իւր սուրբ արիւնն չթափէր խաչին վերայ՝ հաւանական էր որ ծերանալով մեռնէր։ Գեղեցիկ է նաև Կիւրղի երուսաղեմացւոյ խորհրդածութիւնն՝ զոր այսպէս պարզաբանէ Զամ-

չեան Միքայէլ վարդապետ. «Նախ մա՛հ սրբոյ Կուսին ոչ էր յանիծից Ադամայ կամ 'ի մեղանաց նորա, այլ 'ի հանգամանաց մարդկային բնութեան, որ բաղադրեալ գոլով 'ի տարերաց՝ ըստ ինքեան է մահկանացու։ Ուստի նաև առաջին մարդն ըստ ինքեան առեալ՝ նաև ըստ շնորհաց, ոչ էր անմահ, այլ ըստ բնութեան իւրում՝ մահկանացու. իսկ անմահութիւնն զոր ունէր՝ էր 'ի մասնաւոր զօրութենէ սկզբնական արդարութեան, որում նպաստէր նաև իբրև զօրացուցիչ բնութեան՝ պտուղն ծառոյն կենաց։ Ըստ այսմ և սուրբ Կոյսն ունելով զբնութիւն մարդկային բաղադրեալ 'ի տարերաց՝ ըստ այսմ էր մահկանացու, և ոչ եթէ սակս ենթարկեալ լինելոյ մեղացն Ադամայ[18]»։ Կարեմք յաւելուլ նաև որ Կուսին մեռանելն՝ ոչ էր ըստ հարկի, այլ ըստ պատշաճի, իրեք պատճառաց համար. նախ առ 'ի նմանել որդւոյն իւրոյ՝ որ անպարտական իսկ լինելով մահու՝ սակայն մեռաւ իսկապէս. երկրորդ առ 'ի արդիւնաւորել չարչարանօք և մահուամբ՝ զոր իբրև Մայր Աստուծոյ արդէն ունէր զիրաւունս ժառանգելոյ՝ որպէս և Քրիստոս, որ նոյն իսկ իւր անձին համար ասաց. «Ո՞չ զնոյնս պարտ էր չարչարել Քրիստոսի և մտանել 'ի փառս իւր». ուստի և Տիրամայրն յօժարութեամբ յանձն առ ոչ միայն չարչարել ընդ Միածնին, այլ և մեռանել ընդ նմա. երրորդ պատճառն մեռանելոյ սրբուհւոյն էր առ 'ի զօրացուցանել զմեզ ընդդէմ մահու՝ որ բնականաբար երկիւղալի է մեզ, և թէպէտ գիտեմք որ Քրիստոս այս երկիւղս արհամարհեց, սակայն կարեմք ասել թէ իրեն համար դիւրին բան մի էր՝ որովհետև ինքն է տէր կենաց և մահու, և կարէ զանձն իւր դնել և միւսանգամ առնուլ զայն. իսկ երբ տեսանեմք որ երանեալ Կոյսն ալ զնոյն յօժարակամ յանձն առնու՝ նորա օրինակովն աւելի յորդորիմք և խրախուսիմք այս զոհս կամակար նուիրելու Աստուծոյ։

Արդ այս ապացոյցերովս կարծեմ բաւական հաստատի թէ Տիրամայրն ալ յիրաւի և անտարակոյս մարդկային բնութեան այս անհրաժեշտ պարտքս հատոյց Աստուծոյ, և մեռաւ իսկապէս՝ որպէս հաստատուն կարծիք է եկեղեցւոյ. Նախ հոգին բաժանելով 'ի մարմնոյն՝ անմիջապէս հասաւ երանական տեսութեանն Աստուծոյ, իսկ մարմինն եդաւ 'ի գերեզմանի, և անապական մնալով՝ յետ երից աւուրց դարձեալ միացաւ ընդ հոգւոյն, և հոգւով և մարմնով վերափոխեցաւ 'ի յերկինս: Որով և այս տօնս ալ կրկին նշանակութիւն ունի. առաջինն մահ Կուսին՝ որ ըստ հարց յունաց մեր մէջ ալ Հանգիստ կամ Ննջումն ասի. իսկ երկրորդն հոգւով և մարմնով փոխադրութիւնն 'ի յերկինս:

Գալով Աստուածամօր հասակին և թուականին յորում մեռաւ՝ զանազան կարծիք եղած են՝ իրարմէ այլ և այլ աստիճան հաւանականութեամբ, այսինքն ոմանք համարեցան թէ Աստուածամայրն իւր Միածնին համբառնալէն ետև տարի մի և քանի մի ամիս միայն ապրեցաւ. իսկ այլք թէ մինչև առաքելոց քարոզութեան համար ցրուելու ատենն՝ կամ թէ ասել տասուերկու տարի յետ համբարձմանն Քրիստոսի. որոց հետ համաձայնի Հիպպողիտոս Թեբացի (յիշատակեալ յԵպիփանէ երիցուէ եկեղեցւոյն Կոստանդնուպօլսոյ). թէ և ինքն Եպիփան համարի զԿոյսն կեցեալ ամս եօթանասուն և երկու: — Եւսեբիոս և Խորենացի համարին թէ ապրած է տասնուչորս կամ տասուերկու տարի յետ համբարձման. որոց հետևին նաև Զամչեան և Աւգերեան վարդապետք սակաւ զանազանութեամբ, որ և Պաւղոսի առաքելոյ առ գաղատացիս գրածն թէ «Յետ ամաց չորեքտասանից միւսանգամ ելի յԵրուսաղէմ... ըստ յայտնութեանն՝» Կուսին վերափոխման ատեն առաքելոց հաւաքելոյն համար ասացեալ ենթադրեն՝

զկնի չորեքտասան ամաց համբարձման Տեառն և դարձին Պաւղոսի. բայց Աւետիքեան Գաբրիէլ Վ. ոչ յիշատակէ այս դէպքս 'ի մեկնութեան Թղթոց առաքելոյն: — Եւոդիոս յիշատակեալ 'ի Նիկեփորոսէ (որ այլ է կարծեմ յԵւոդիոսէ յաջորդէ առաքելապետին յաթոռն Անտիոքայ) համարի թէ բովանդակ կեանք Կուսին եղած է յիսունևինն տարի որ է ասել գրեթէ տասուերկու տարի յետ համբարձման: — Եթէ ստոյգ և հարազատ են Դիոնեսիոսի արիոպագացւոյն անուամբ Թղթերն, և իւր ներկայ գտանիլն ննջման Տիրամօրն՝ պէտք է որ գոնէ տասնևութ տարի ապրած լինի յետ համբարձման Քրիստոսի, զոր այլք աւելի ևս դնեն: — Կեդրենոս, Սուարէզ, Բարոնիոս համարին զնա կեցեալ քսանևչորս տարի յետ համբարձման՝ և ննջեալ 'ի հասակի եօթանասուն ամաց վճարելոց: — Բենեդիկտոս ԺԴ քահանայապետ յետ բազում քննութեանց նախընթաց կարծեաց՝ համարի զնա կեցեալ բովանդակ եօթանասունևերկու տարի: — Անդրէաս կրետացի համարի զնա վախճանեալ 'ի զառամեալ հասակի, և ոմանք տան նմա մինչև ամս ութսունևերկու: — **Արուեստ ճշգրտելոյ զթուականս** ասացեալ անուանի գրոց հրատարակիչք համարին զնա կեցեալ եօթևտասան տարի յետ համբարձման: — Իսկ նոր ատեններս Տիրամօր վարքն գրողներն ալ իրարմէ զանազանին, բայց ընդհանրապէս կարծեն թէ տասնևհինգ կամ տասնևութ տարի ապրած է յետ համբարձման[19]: Այս զանազան կարծեաց տարբերութենէ երևի թէ ամենէն աւելի երկարակեաց համարողներն ենթադրեն 63 էն մինչև 73 տարի Կուսամօր կեանքն, սակայն այսչափ զառամեալ հասակին մէջ ալ՝ ամենքն միաձայնին ընդ Դիոնեսիոսի՝ թէ կուսական գեղեցկութիւնն կորուսած չէր, մանաւանդ թէ որչափ մահն մօտենար՝ այնչափ աւելի

աստուածահրաշ պայծառութիւն և քաղցրութիւն մի փայլէր իր վերայ, և զամենեսին 'ի սէր և յարգութիւն յորդորէր, և այլ աւելի իր կերպարանաց գծագրութեամբն՝ որ շատ նմանութիւն ունէր Քրիստոսի Տեառն մերոյ։

Մինչև հիմա գրածներէս տեսանեմք թէ Հոգւոյն սրբոյ գալստենէն ետև՝ յորում վերջին անգամ յիշատակի Մարեմայ անունն, առաքեալք և աւետարանիչք քարոզութեանց զբաղեալք՝ բան մի գրած չեն Աստուածամօր վարուց վերայ. և թէպէտ կայ յիշատակութիւն և յազգիս մերում (Յայսմաւուրք օգոստ. ԺԵ) թէ Յովհաննէս սիրելի աշակերտն գրած էր զպատմութիւն ննջման և վերափոխման Կուսին, զոր և յետոյ Ս. Հերոնիմոս ալ թարգմանեց, սակայն և այս անհարազատ գրոց կարգն համարի։ — Նոյնպէս նաև որոշ ոչ գիտեմք թէ առաջին դարուց մէջ առաքելական հայրք գրա՞ծ էին թէ չէ այս նիւթոյս վերայ. վասն զի նոյն իսկ Դիոնեսիոսի արիոպագացւոյ առ Տիմոթէոս և Տիտոս գրած թղթոց հարազատութիւնն երկբայական և խնդրոյ ներքև է առ քննաբանս, որք առաջին գրաւոր արձանագիրք համարին այս նիւթոյս, և ուստի առած է նաև Խորենացի իր ծանօթութիւններն առ Սահակ արծրունի գրած թղթոյն մէջ, զոր բազում անգամ յիշեցաք 'ի կարգ պատմութեանս։ Իսկ այլ մատենագիրք որք Կուսամօր վարուց վերայ գրեցին՝ յետոյ են ժամանակաւ քան զԽորենացի, բաց 'ի Յոբնաղէ պատրիարքէ Երուսաղեմի որ ժամանակակից կարէ համարուիլ. այսպիսի են Գրիգոր տուրոնեցի, Զ դարուն մէջ, Մոդեստոս պատրիարք Երուսաղեմի, Անդրէաս կրետացի և Իդելֆոնսոս տոլեդացի Է դարուն. Գերմանոս պատրիարք Կոստանդնուպօլսոյ, Յովհաննէս դամասկացի և Փոտ Ը դարուն մէջ և այլն։ — Բայց այսու ոչ կամիմք ասել թէ վերոյիշեալ մատենագրաց

պատմածներն անհիմն են, կամ կասկածաւոր գրուածոց հետեւութեամբ շինուած, և կամ ևս առաւել 'ի սուտանուն Մելիտոսի դատապարտեալ գրուածքէն քաղուած, որ երևի թէ երկրորդ դարուն մէջ 'ի հրէամիտ թշնամեաց քրիստոնէութեան շարադրեալ պատմութիւն մի է սակս մահուան և յարութեան Մարեմայ, և Մելիտոս սարդիացւոց եպիսկոպոսին անուամբն քողարկած, որ քրիստոնէից ճշմարիտ աւանդութեանց վերայ՝ շատ մի առասպելներ կարկտած է։ Այլ մեզ հաւանական երևի որ թէ և առաջին հարք գրով բան մի թողած չեն Կուսամօր կենաց և ննջման վերայ, սակայն շատ բնական է որ նմա վերաբերեալ անցք և դէպք բերնէ բերան աւանդութեամբ տարածուած էին Պաղեստինու հաւատացելոց մէջ՝ յառաջ քան զաւանդեալսն 'ի սուտանուն Մելիտոսէ, զորս թշնամիք նորանոր յաւելուածներով այլանդակած էին. վասն զի ստութիւնն ալ ճշմարտութեան կեղծ պատկերն է, ինչպէս սուտ ստակն արդոյ դրամին նմանցընելու ջանքէն յառաջ գայ։ Սակայն բարեպաշտ անձինք նախկին աւանդութիւններն ստուգելով 'ի գիր անցուցին 'ի յիշատակ ապագայից, ուստի և մեք այս աւանդութեանց և գրուածոց վերայ հիմնեալ՝ Տիրամօր ննջումն և վերափոխումն. թէպէտ և վերջի տարիներս եղեն նաև ոմանք որ համարեցան թէ Աստուածամայրն առանց բնական մահուան՝ 'ի կենդանութեան իւրում փոխեցաւ 'ի յերկինս։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ԺԷ. ԳԼԽՈՅ

1 Պատնաժ գիրք Զ. Գլ. ԻԷ և ԻԸ։

2 Յայտնի է որ իւղաբեր կանանց միտքն աւելի պատիւ մի տալ էր Քրիստոսի մարմնոյն՝ զոր արդէն Յովսէփ և Նիկոդիմոս զմռսեալ և պատեալ էին սուրբ կտաւովք։

Ա. Այս պատճառաւ է որ աւետարանիչք բաց 'ի Յովհաննէ՝ խաչին մօտ եղած կանայքն յանուանէ ևս յիշած ժամանակ՝ Աստուածամօր անունն լռեն. որովհետև շատ յայտնի բան էր և ծանօթ ամենեցուն։

3 Յարութեան շարականաց զանազան հատուածներէն ալ երևի այս կարծիքս։

4 Ս. Ամբրոսիոս 'ի Դ դարու ասէ թէ յառաջ քան զայլս սուրբ Կոյսն տեսեր զՔրիստոս յարուցեալ'ի մեռելոց և մխիթարեցաւ։ Սեդուլիոս անուամբ ժամանակակից քրիստոնեայ քերթող մի ալ նոյն աւանդութիւնը յիշէ 'ի տաղս իւր, ասելով թէ բոլոր քրիստոնեայք այնպէս հաւատան։ Իսկ աւետարանչաց՝ Աստուածամօր երևելուն համար լռելն՝ աստի յառաջ գայ՝ որ շատ յայտնի բան սեպած են, և յիշատակութիւնն աւելորդ։

5 Ս. Ներսէս Լամբրոնացի 'ի Ճառն համբարձման։

6 Նոյնն գտանեմք ասացեալ'ի Շնորհալւոյն 'ի գանձն վերափոխման, և Արևել ք գերարփին շարականին մէջ. սովին մօտք խօսին և այլ հին հարք։

7 Կարդա Լամբր. համբարձման ճառն որ Ռափայելի այլակերպութեան պատկերին նման նկարագրութիւն մի է։

8 Սիոնի վերնատան վերայ գաղափար մի ունենալու համար՝ պէտք է գիտել որ Հրեայք սովորաբար իրենց տան վերի յարկն աւելի ընդարձակ դահլիճ կամ սրահ մի ունէին՝ ուր կատարէին իրենց ընտանեկան հանդէսներն, և հոն ուտէին զատկական գառն։ Ըստ աւանդութեան այն վերնատունն ուր հաստատեց Քրիստոս ամենասուրբ հաղորդութեան խորհուրդն Յովհաննու Մարկոսի տան պատկանէր որ քեռորդի էր Բառնաբայ և աշակերտ Պաւղոսի. այս տեղս յետոյ Աստուածամօր և առաքելոց ժողովարան մի ձևացաւ, և ետքը նոյն գետնոյն վերայ փառաւոր եկեղեցի մի շինուեցաւ՝ զոր Մահմետականք դարձուցին ի-

բրև Դուլթի գերեզմանին տեղն: (Տես 'ի Վանտէլայրուկ Հտ. Ա, էջ 236):

9 Աւետարան Ըստ Ղուկասու Գլ. Ա, 2: Առաքեալք շատ բան ուսան 'ի Տիրամօրէն Յիսուսի Քրիստոսի մանկութեան և առանձնական կենաց վերայ. իսկ ինչ որ իր հրապարակաւ կենաց և հաւատոյ խորհրդոց վերաբերեր ուսան զայնս իւր կենակցութեան մէջ և 'ի նոյն ինքն յաստուածային վարդապետէն և 'ի Հոգւոյն սրբոյ:

10 Քննաբանից մէջ մեծ վիճաբանութեան նիւթ եղած է՝ թէ արդեօք յիրաւի սրբոյն Ղուկասու նկարածներն են այն Աստուածամօր պատկերներն՝ որ իր անուամբ յիշատակին. վասն զի Նոր Կտակարանին մէջ (Թուղթ առ Կողոսացիս) բժիշկ կոչի. բայց նկարիչ ալ լինել ոչ յիշատակի. իւր նկարուց վերայ առաջին խօսողն եղած է Թէոդորոս ընթերցող վեցերորդ դարու մէջ՝ որ գրէ թէ Եւդոքսիա յԵրուսաղեմէ ղրկեց առ Պուլքերիա զպատկեր Կուսին Մարիամու զնկարեալն 'ի Ղուկայ աւետարանչէ, որ եդաւ 'ի Նորաշէն եկեղեցին Կոստանդնուպօլսոյ ընդ պատկերի Յիսուսի Քրիստոսի: Քննաբանք շատ հմուտ գրուածներ հրատարակած են երկու հակառակ կողմանց, որոց վերայ երկայն լինի խօսել. միայն գիտելու է որ սրբոյն Ղուկայ համարեալ Տիրամօր պատկերներն ամենքն ալ հաւասար վաւերականութիւն չունին:

11 Տես 'ի մատենագրութիւնս Մ. Խորենացւոյ, Թուղթ առ Սահակ իշխան արծրունի:

12 Տես 'ի Վանտէլայրուկ Սփորթէրու–Բէ–ն Պաղէրփէնս տպագրեալ 'ի 1883 Հտ. Ա, 242:

13 Թէպէտ ոմանք անհարազատ համարին Դիոնեսիոսի Արիսպագացւոյ գրուածներն կամ յօտարաց ձեռք խառնուած, սակայն և այնպէս միշտ իբրև հնագիր աւանդութիւն իր յարգըն ունի ա՛ ոք լեցի կրողն:

14 Լուկիոս Դեքստեր 'ի ժամանակագիրան ամ Տեառն 37:

15 Դիւրին բան չէ ճշդիւ սահմանել թէ արդեօք առաքեալք հաւատոյ հանգանակն այսինքն հաւատամքն շարադրելէն ետև որ տարին իրարմէ բաժնուեցան երթալու 'ի զանազան կողմանս աշխարհի: Ոմանք ասեն թէ երբ Ս. Պետրոս գնաց հաստատելու զաթոռ իւր յԱնտիոք, Յակոբոս Զեբեդեայ մեկնեցաւ 'ի Սպանիա. յայս կարծիս են Ալափիտէ և Սիլվէիրա: Թիրինոս համարի թէ այս բանս եղած է Փրկչին համբարձմանէն տասուերկու տարի յետոյ 'ի ժամանակս երկրորդ հալածանաց Հերովդեսի Ագրիպպայ, յայս կարծիս է և Բարոնիոս: Իսկ այլք համարին հանդիպեալ 'ի քառասուն և չորրորդ ամի Քրիստոսի՝ որ համապատասխանէ երկրորդ ամի կայսերութեան Կլաւդիոսի՝

յորում ամի Ս. Պետրոս հաստատեաց զաթոռ իւր 'ի Հռոմ եօ-թըն ամբ յԱնտիոք նստելէն ետև:

16 Ս. Եպիփան այսպէս խօսի վասն վախճանի Տիրամօրն. «Թող հետազօտեսցէ ոք 'ի Սուրբ գիրս, այլ ոչ գտցէ 'ի նոսին յիշատակ ինչ յաղագս վախճանին Մարիամու, մեռաւ՞ ար-դեօք եթէ ոչ մեռաւ, կամ թէ թաղեցաւ՞ եթէ ոչ թաղեցաւ... ոչ սահմանեմ եթէ անմահ եկաց մնաց գլխովին, և ոչ ունիմ ասել եթէ մեռաւ. քանզի Սուրբ գիրն 'ի կախ եթող զիրսն' որ յաղագս անգին և գերազանց անօթոյն» և այլն:

17 Այն օրինակ տարակոյս ցուցանէ նաև Նարեկացի յասելն. «Որ սլացեալ հասեր 'ի բարձունս երկնից' իբր անընդունակ ա-պականութեան և մահու լուծման. մարմին յորմէ պատկա-ռեաց ամօթով պարտիքն մահու». վասն զի ազատ ըննելով 'ի յանցուածոց նախաստեղծիցն անկցորդ 'ի մահն հողածնելոյս հա-սարակոյ' վասն որոյ և ոչ պարտաւոր էր մահու կամ հողադար-ձութեան:

18 Տես 'ի Պարփէր տօնից ծառա վերափոխման:

19 Այս զանազան կարծիքս դիւրիմաց առնելու համար' յա-ւելումք յետագայ ցուցակս սակս ամաց կենաց Տիրամօրն և թուականի ննջման նորա.

| ՄԱՏԵՆԱԳԻՐՔ | ԾՆԱՒ ԶՔՐԻՍՏՈՍ Ի ՀԱՍԱԿԻ | ԵԿԵԱՑ ԸՆԴ ՔՐԻՍՏՈՍԻ ՄԻՆՉ Ի ԽԱՉԵԼՈՒԹԻՒՆ | ՅԵՏ ՀԱՄԲԱՐՁՄԱՆ ԱՊՐԵՑԱՒ | ՆՆՋԵԱՑ ՅԱՄԻ | ԵԿԵԱՑ ԸՆԴ ԱՄՍ |
|---|---|---|---|---|---|
| Հիպպողիտոս Թեբացի . . . . . . . . . . | 16 | 34 | 11 կամ 12 | 45 | 61 |
| Եպիփան . . . . . . . . . . . . . . . . | | | | | 72 |
| Եւսեբիոս որում հետեւի Զամչեան Վ. . . . . . | 15 | 34 | 14 | 48 | 63 |
| Խորենացի և Յայսմ. որոց հետեւի Աւգերեան Վ. | 15 | 33 | 12 | 45 | 60 |
| Եւոդիոս յիշատակեալ 'ի Նիկեփորոսէ. . . . . | 14 | 33 | 12 | 45 | 60 կամ 61 |
| Կեդրենոս, Սուարէզ, Բարոնիոս . . . . . . . | 14 | 33 | 24 | 57 | 71 |
| Բենեդիկտոս ԺԴ. . . . . . . . . . . . . | 15 | 34 | 23 | 57 | 72 |
| Անդրէաս Կրետացի . . . . . . . . . . . | 16 | 34 | 20 կամ 25 | 54 կամ 59 | 70 կամ 75 |
| Գիրք Արուեստի ճշգրտելոյ զԹուականս. . . . | 15 | 34 | 17 | 50 | 66 |
| Յետին գրոց զվարս Կուսին . . . . . . . . . | 15 | 33 | 15 | 48 | 63 |

## ԳԼՈՒԽ ԺԸ.

### *Ննջումն և թաղումն Աստուածամօր.*

*Արդ որչափ որ մօտենար այն ցանկալի ժամն՝ նոյնչափ ալ Տիրամօր փափաքն երթալով սաստկանայր՝ երթալու տեսնելու իւր Միածինն արքայութեան փառաց մէջ. ուստի ա՛լ այնուհետև զինքն ոչ սփոփէին Գողգոթա լեռն՝ ուր տեսաւ զինքն բևեռեալ 'ի խաչին, ոչ Գեթսեմանի պարտէզն՝ ուր թաղեցաւ և յարեաւ փառօք, ոչ վերնատունն Սիոնի՝ ուր բազում անգամ երևցաւ իրեն յետ յարութեան, և ոչ Ձիթենեաց բլուրն՝ ուստի համբարձաւ աստուածապէս: Ոչ ևս մխիթարէին զինքն առաքելոց ընծայած պատիւն իբրև Մօր Աստուծոյ, և ոչ հրեշտակաց կենակցութիւնն՝ որ մեծարէին զնա որպէս Դշխոյ երկնից և երկրի. այլ իւր սիրտն բորբոքեալ հնոցի պէս վառէր և բոցի նման յերկինս սլանայր: Նոյն ատեն բան մի ալ չկար որ իւր հոգին այլայլէր. ոչ սէր երկրաւորաց՝ յորոց միշտ հրաժարեալ ապրեցաւ իւր բովանդակ կենաց մէջ, ոչ սէր ազգականաց՝ յորոց տղայական հասակէն 'ի վեր բաժնուած էր, ոչ փափաք ստացուածոց՝ զորս միշտ արհամարհելով աղքատութիւնն մեծարած էր, ոչ փառք և պատիւ՝ յորոց միշտ փախչել էր անծանօթ և խոնարհ ապրելով՝ որչափ որ Աստուած զինքն քան զամենայն արարածս գերագոյն դասեց և փառաւորեց: Չէր կարող տրտմեցընել զինքն ոչ մեղաց յիշատակութիւն. վասն զի միշտ անբիծ և անարատ մնացել էր՝ ոչ միայն 'ի սկզբնական մեղաց՝ այլ և 'ի ներգործական թեթե-*

ւագոյն անգամ թերութեանց, և բոլոր կենաց մէջ իւր մտածութիւնն սէրն փափաքն խօսքն և գործք միայն Աստուծոյ վերայ էր՝ յամենայնի նորա կամացն հպատակ. որով և չունէր ամենևին կասկած ինչ և երկիւղ յարդարութենէն Աստուծոյ՝ որում արդէն միակ սիրելին և տենչալին էր, և երկնային յաւիտենական փառքն իրեն համար պատրաստ էր։

Այսպէս պատրաստ ակնարկութեան կամաց Բարձրելոյն՝ վերջապէս հասաւ այն ցանկալի օրն՝ որ երբ 'ի Զիթենեաց լեառն աղօթից հետ էր՝ երևեցաւ նմա հրեշտակապետն Գաբրիէլ՝ որ բերելով նմա զբրաբիոն յաղթութեան՝ ծանոյց նմա այն երկրորդ ցանկալի աւետիսն թէ անձկացեալ ժամն հասած էր, և ինքն իսկ իւր Միածինն ըստ խոստմանն պիտի գայր ընդունելու զինքն 'ի փառս իւր, որպէս գրէ Շնորհալի հայրապետն 'ի Գանձն վերափոխման։

Այս աւետիսս առածին պէս՝ դարձաւ 'ի վերնատունն Սիոնի՝ ուր նոյն ատեն աստուածային ազդեցութեամբ եկեալ հասեալ էին առաքեալք և աշակերտք 'ի զանազան կողմանց աշխարհի [1]. որոց մէջ էին նաև Դիոնեսիոս արիոպագացի և վարժապետ նորա Յռեթէոս՝ աշակերտք սրբոյն Պաւղոսի, որք և դիմեցին առ հասարակ 'ի սենեակ սրբոյ Կուսին, որ և սիրով ընկալեալ զնոսա՝ ծանոյց որ ա՛լ մերձ էր ժամանակն բաժնուելու 'ի նոցանէ. և տեսնելով նոցա տրտմութիւնն՝ սկսաւ մխիթարել զնոսա և քաջալերել։

Երբ մութն կոխեց և առաստաղէն կախուած թևաւոր կանթեղներն վառեցան՝ խորհրդաւոր լոյս մի սփռեցաւ այն լուռ և անձայն ժողովոյն վերայ՝ որ ամենեցուն սիրտն եռած՝ արտասուալից շուրջ պատէին նորա անկողնոյն բոլորտիքն՝ ամեն ակնարկութեանցն պատրաստ։ Առաքելապետն որ այնչափ եռանդեամբ սիրել էր զԱստուածորդին իւր մանկա-

նացու կենաց տանն ցաւալից սրտիւ անթարթ աչօք հայէր 'ի Կոյսն, և կարծես թէ տեսէր առ Յակոբոս եղբայր Տեառն առաջին եպիսկոպոս Երուսաղեմի. ո՜հ որչափ նման է Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. և յիրաւի զարմանալի էր նմանութիւնն Մարիամու ընդ որդւոյն իւրոյ Յիսուսի, այնպէս որ երբ գլուխն սակաւ մի 'ի վայր խոնարհէր՝ կարծես թէ զնոյն ինքն զՅիսուս տեսանէիր նոյն դրից մէջ վերջին ընթրեաց ժամանակ: Եւ Յակոբոս Արդար կոչեցեալն նաև 'ի հրէից՝ որ իւր զգացմանց վերայ կատարեալ իշխեցող մարդ մի էր՝ հազիւ արցունքն զսպէր. նոյնպէս նաև Յովհաննէս սիրուն աշակերտն որ իւր լօդիկն գլուխն քաշած հեծութիւնն չկարէր ծածկել իւր սիրելի մօրէն բաժնուելուն համար. այսպէս նաև միւս առաքեալք և աշակերտք: Իսկ Կոյսն սակաւ մի ամփոփուելով դարձոյց իւր աչքն այն հաւատարիմ փոքրիկ հօտին վերայ՝ որ սիրովն Յիսուսի իրարու հետ կապեալ էին. ինչպէս որ սակաւ մի յետոյ պիտի ցուցանէին զայն 'ի մեծ զարմանս բոլոր աշխարհի և նոյն իսկ իրենց թշնամեաց: Երբ իւր սիրտն ալ ելած սկսաւ խօսիլ՝ ձայնն այնպէս անոյշ հնչէր որ կարծես թէ առ վայր մի ամենուն ցաւն դադրեցաւ, և մխիթարական խօսքով զիրենք սփոփելով՝ խոստացաւ միշտ իրենց բարեխօս և օգնական լինելու, և երկնային փառաց մէջ ալ ամենեւին զիրենք չմոռնալու. և այնպիսի գերազանց խորհրդածութեանց բարձրացաւ՝ որ բոլոր հոն ներկայ եղողներն ապշած և զմայլած՝ դրեթէ մոռցան որ այն վերջին անգամն էր որ լսէին Տիրամօր անուշիկ ձայնն:

Իւր բարի յորդորներն աւարտելէն ետև՝ ապսպրեց կուսանաց՝ որ մնացած լապտերներն և ջահերն ալ վառեն, և Յովհաննու ալ հրամայեց որ սուրբ խորհուրդն մատուցանէ և զինքն ալ հաղորդէ (Յայսմ. ԺԵ և Ի օգոստոս.) յետոյ տարածելով իւր պաշտ-

պանողական ձեռքն 'ի վերայ որդւոց իւրոց՝ զորս որք թողոյր յաշխարհի, օրհնեաց զնոսա դարձեալ և ասէ. «Որդեակք իմ, չէ ձեզ արժան այդպէս մորմոքել զսիրտ իմ. գնամ ես այժմ, եկեսջիք և դուք յետ սակաւուց զհետ իմ. գնամ ես և լինիմ բարեխօս վասն ձեր. և արդ պատուիրեմ ձեզ զոր պատուիրեաց որդին իմ. յայսմ ծանիցեն ամենեքին՝ թէ իմ որդիք էք՝ եթէ սիրիցէք զմիմեանս»:

Այս բաներս խօսելու ատեն՝ անմահական պայծառութիւն մի փայլեցաւ իր երեսաց վերայ, և հրեշտակական երաժշտութիւն լսէին օդոյն մէջ՝ որ հրաւիրեալ փութացուցանէին զԿոյսն՝ որ բոլորովին յափշտակեալ էր մտօք, որպէս թէ հրաշալի տեսիլք մի տեսնէր. վարդի գոյն մի սփռեցաւ իր այտից վերայ և հրճուողական ցնծութիւն մի դիմաց վերայ փայլեալ ծաւալէր: Մինչդեռ ամենքն ապշած հիացած էին այս հրաշալի երևութիս՝ յանկարծ սաստիկ լոյս ծագեցաւ վերնատան մէջ, և տեսին զԱրեգակն արդարութեան զՄիածին որդին՝ որ պարառեալ 'ի զուարթնոց հրեշտակաց անդր հասանէր: Իսկ սրբուհի Կոյսն բոլորովին յափշտակեալ տեսլեամբ Աստուածորդւոյն՝ այսչափ միայն կարաց ասել. «Որդեակ իմ և Աստուած» և անդէն հոգին աւանդեց. որով և Կուսին մահն ոչ այլ ինչ էր՝ բայց նուաղումն յառաւելութենէ սիրոյն առ որդին, որպէս առհասարակ աւանդութիւն է եկեղեցւոյ՝ թէ սուրբ Կոյսն ոչ մեռաւ բնական մահուամբ տկարութեան, այլ սիրոյն սաստկութենէն սպառեցաւ. ուստի և սովորութիւն եղած է հարց Ննջումն կամ հանգիստ կոչել զնոյն քան թէ մահ[2]:

Հրեշտակաց հիանալի ներդաշնակութիւններէն, այն պայծառ լուսոյն շողալէն՝ որով բոլոր տունն ողողէր, և օդոյն մէջ սփռեալ զմայլելի անուշահոտութենէն՝ մերձակայք որ մինչև այն ատեն արտասուագին

աչօք 'ի նա յառած կացեալ էին՝ սկսան իրենց մայրն և Թադուհին ձայնել արթնցընելու համար, բայց պատասխան մի չլսելով՝ երբ մանչին մօտեցան՝ տեսին որ այս անբիծ աղաւնիս կենաց կապանքն լուծանելով թռուցեալ էր յերկինս. բայց իւր դէմքն այնպէս խաղաղ էր որ կարծես թէ հանդարտ քնոյ մէջ ընկղմեալ էր, այնչափ քաղցր և անոյշ՝ որ մահն իսկ գեղեցիկ երևէր իր շնորհալի դիմաց վերայ: — Յայսմաւուրաց մէջ կարդամք որ Աստուածամօր ննջման ժամանակ՝ իւր հոգին արեգական պայծառութեամբ երևելով՝ առաքելաց զարմացմամբ իրարու հայէին, և Պետրոս համարձակեալ հարցանէր առ Տէրն, և լսէր 'ի նմանէ թէ Աստուած մարդու հոգին այնպէս պայծառ ստեղծած էր 'ի սկզբանէ՝ որ յետոյ մեղօք նսեմացաւ. սակայն Աստուածամօր հոգին իր առաջին պայծառութիւնն միշտ պահած էր՝ ամենևին անշաղախ յառաջին մեղաց նախամօրն, ուստի այնոր համար այնպէս պայծառ փայլէր:

Անմիջապէս մահու կանթեղն վառեցաւ, պատուհանններն բացուեցան, և կուսանք ամփոփելով այն սուրբ և անարատ մարմինն մաքուր կտաւոց մէջ հանգուցին իր անկողնոյն վերայ. և առաքեալք և աշակերտք սկսան արտասուախառն խնդութեամբ շարականներ և օրհնութիւններ երգել, հանդերձ ներբողական գովեստներով, որոց մէջ յոյժ սրտաշարժ էր՝ ըստ վկայութեան Դիոնեսիոսի, Յեռոթէոսի ներբողն որ զամենեսին հիացոյց. «Յետ աստուածաբանիցն հզօրագոյն ցուցաւ աստուածաբանութիւնն Յեռոթէոսի. զի բոլորովիմբ սարսելով, բոլորովիմբ զարմացմամբ յինքեան՝ յամենեցունց որք անդ էին... աստուածընկալ և աստուածային օրհնաբանող կոչիւր»: — Ըստ աւանդութեան ազգիս յիշատակեալ 'ի Ստեփաննոսէ սիւնեաց եպիսկոպոսէ, և 'ի Յակոբայ սրճեցւոյ ասի թէ նոյն ատեն յօրինեց և Թովմաս

առաքեալ զերգն փառաւորեալ և օրհնեալ միշտ սուրբ կոյս Աստուածածին Մարիամ, յորում Տիրամօր ամեն գերապանց մակդիրներն ամփոփած են:

Հետևեալ օրն հաւատացեալք եկին հասին ծանրագին նրբանիւթ քեհեզներով և անուշահոտ խնկերով առ 'ի թաղել զԹագուհին կուսանաց, և դնելով զսուրբ մարմինն բաց դագաղի մի մէջ՝ առաքեալք բարձին զայն պանծանօք 'ի վերայ ուսոց իւրեանց և բերին մինչև 'ի ձորն Յովսափատու, և անտի 'ի պարտէզն Գեթսեմանի, և քրիստոնեայք Երուսաղեմի՝ վառեալ լապտերներով և սաղմոսներ երգելով ետևէն երթային:

Ասի աւանդութեամբ թէ երբ իջանէին Սիոն լերին արևելեան կողէն վար՝ հրեայք որ անհնարին ատելութիւն ունէին սրբուհւոյ Կուսին, որպէս երբեմն իւր անմեղ որդւոյն դէմ, երբ տեսին որ մեծահանդէս թափորով տանէին զմարմին նորա՝ կատաղութեամբ դագաղին վերայ յարձակեցան, և Սոփոնիա անուամբ քահանայն յանդգնեցաւ ձեռք երկնցընել 'ի տապանակն Աստուծոյ կենդանւոյ, և ուզեց զայն վայր քաշել և գետին ձգել. բայց անդէն ձեռքն չորացան, կամ ըստ այլոց թևերն կտրած դագաղէն վար կախուեցան, մինչև յետոյ զղջալով գործած անօրէնութեան վերայ՝ բարեխօսութեամբ Տիրամօրն առողջացաւ. շատերն ալ այս հրաշքս տեսնելով սարսափեցան, և Պետրոսի և Պաւղոսի քարոզութեամբն դարձան 'ի հաւատս: Ուստի և առաքեալք աներկիւղ և անկասկած յառաջ տարին յուղարկաւորութիւնն, և թաղման տեղն հասնելով՝ տեսին որ արդէն բարեպաշտ կանայք այնպէս զարդարել էին գերեզմանն[3] և քարայրն՝ որ ծաղկանց պարտէզ մի դարձել էր, ուր և լացով և ողբով զետեղեցին Կուսամօր անարատ մարմինն. և ամբողջ երեք օր երեք գիշեր հսկմամբ և աղօթիւք անցուցին՝ գերեզմանին

մօտէն չհեռանալով. ուր և հրեշտակաց դաշնակաւոր երաժշտութիւնն ալ կարծես թէ Մարիամու վերջին քունն քաղցրացընէին. իսկ երբ երկնային երգերն դադրեցան՝ իրենք ալ լռելով իրենց տեղն դարձան, ամենեքին իրենց մտքէն չանցնելով թէ այլ աւելի հրաշալի և գերազանց սքանչելեաց պիտի աւարտէր սրբոյ Կուսին երկրաւոր կեանքն։

---

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ԺԸ. ԳԼԽՈՅ

1 Այս աւանդութիւնս հաստատի վկայութեամբք սրբոց Դիոնեսիոսի Արիոպագացւոյ, Մ. Խորենացւոյ, Յովհաննու դամասկացւոյ, Գերմանոսի պատրիարքին Կոստանդնուպօլսոյ, Անդրէասայ կրետացւոյ, Նիկեփորոսի, Մետափրաստեսի, Յոբնաղայ երուսաղեմացւոյ և այլոց. սակայն պարագայից վերայ ամենքն ոչ միաբանին. ոմանք ասեն թէ Սրբոյ Կուսին փափաքանաց համեմատ՝ աստուածային հրաշքով և աներևոյթ ձևօք նոյն ատեն դեռ կենդանի եղած առաքեալներն փոխադրեցան յԵրուսաղէմ. իսկ այլք թէ աստուածային տնօրէնութեամբ այնպէս կարգադրեցաւ՝ որ բնական կերպով ամենքն ալ նոյն ժամանակ յԵրուսաղէմ գտուէին, որպէս զի վերջին անգամ կարողացեն տեսանել զՏիրամայրն։ — Դիոնեսիոս՝ յետոյ հասեալ առաքելոյն անունն որոշ ոչ յիշէ. աւստի յոյնք և լատինք համարեցան թէ Թովմաս էր, որովհետև Տեառն մերոյ յարութեան ատենն ալ ինքն էր յետոյ հասնողն. բայց մեր ազգին հնագոյն աւանդութեան նայելով սկսեալ 'ի Խորենացւոյ, Բարթողիմէոս լինելն հաստատի. մանաւանդ որ լատինք ալ առաքելոյս տօնն անմիջապէս վերափոխմանէն ետև կատարեն։

2 Խնդիր է առ քննաբանս թէ արդեօք քրիստոսական կրօնից մի խորհուրդներն ընկալեալ էր Սուրբ Կոյսն. Տերտուղիանոս և Ոսկեբերան համարին թէ Տիրամայրն չէր ընկալեալ զմկրտութիւն, պատճառ բերելով թէ մկրտութիւնն 'ի Նոր օրէնքս սահմանեալ էր առ 'ի ջնջել զսկզբնական մեղս, և առ 'ի գործնական շնորհիւ զօրացընել զմարդիկ 'ի կատարումն պատուիրանացն Քրիստոսի. իսկ արդ այս երկոցուն ալ անկարօտ էր Տիրամայրն ոչ ունելով զսկզբնական մեղս, և լցուած լինելով աստուածային շնորհօք և ամենայն կատարելութեամբ։ Սակայն աւելի հաւանական է ասել՝ որ թէպէտ Մարիամ կարօտ չէր սուրբ խորհրդոց օգնականութեան, բայց ընկալաւ զոմանս 'ի նոցանէ առ 'ի տալ օրինակ խոնարհութեան, որով և հին օրինաց հրամայածին ևս հնազանդեցաւ գալովն 'ի տաճարն 'ի սրբիլ, փրկանաւորելով ևս զմիածին որդին իւր՝ որ ամենևին սուրբ էր և անկարօտ մաքրութեանց. ապա ուրեմն ևս առաւել ընկալաւ զխորհուրդս հաստատեալս յԱստուածորդւոյն իւրոյ.

դարձեալ առ 'ի լինել օրինակ պահպանութեան օրինացն Աստուծոյ և 'ի խրախոյս հաւատացելոց և առանձինն մեղաւորաց. որպէս և առ առաւելուլ զարդիւնաւորութիւն իւր, քանզի և ինքն ուղևոր էր այսինքն 'ի վիճակի և 'ի պայմանի ստանալոյ առաւել ևս արդիւնս աստուածային օրինաց պահպանութեամբ: Ուստի նախ ընկալաւ անշուշտ զմկրտութիւն ոչ զՅովհաննու այլ զՔրիստոսին, թէ և ժամանակն և երբ ընդունիլն յայտնի չէ, սակայն հաւանօրէն շատ ալ ուշացուցած չէ: Ըստ հնագոյն կարծեաց Տէրն մեր մկրտեաց միայն զՊետրոս, և սա զայլ առաքեալս, և գործակցութեամբ Յովհաննու աւետարանչի զՏիրամայրն: — Երկրորդ զխորհուրդ դրոշմին ընկալաւ՝ ոչ ըստ սովորական ձևոյ խորհրդոյն՝ այլ ուղղակի իջմամբ Հոգւոյն սրբոյ, որպէս և առաքեալքն 'ի վերնատան: — Երրորդ զսուրբ խորհուրդ հաղորդութեան ընդունէր յաճախ ձեռամբ առաքելոց, և մասնաւորապէս Յովհաննու աւետարանչի, մանաւանդ թէ թերևս ամէն օր, որպէս սովորութիւն էր նախկին հաւատացելոց: — Չորրորդ ապաշխարութեան խորհուրդն ընդունած չէ. զի չունէր զնիւթ խորհրդոյն ազատ գոլով 'ի ստուերէ անգամ մեղաց, և ամենևին սուրբ և անարատ: — Հինգերորդ նոյնպէս և ոչ վերջին օծումն՝ որ կարգեալ է ջնջել զմնացուածս մեղաց և առ 'ի զօրացուցանել զհոգեվարն ընդդէմ հնարից սատանայի, զի Կոյսն չախչախեալ էր արդէն զգլուխ նորա: — Վեցերորդ և ոչ զխորհուրդ պսակին. վասն զի թէ և ճշմարտիւ ամուսնացաւ ընդ Յովսեփայ, սակայն տակաւին խորհուրդս հաստատեալ չէր, զի յառաջ էր քան զՔրիստոս. և երբ Կանա Գալիլեայ հարսանեօքն հաստատեաց զայն Տէրն մեր՝ Յովսէփ արդէն վախճանեալ էր:

3 Աստուածամօր գերեզմանին եկեղեցին 'ի Գեթսեմանի մերձ 'ի ձորն Յովսափատու՝ հիմա հողուն տակն է՝ ուր քառասուն և վեց աստիճան մարմարեայ սանդխով կ'իջնուի եօթն մետր լայնութեամբ. այս սանդուխին վարերն որ հասնիս՝ պատին հաստութեան մէջ երկու մատուռներ շինուած են, աջակողման մատրան մէջ են Յովակիմայ և Աննայի գերեզմանները, իսկ ձախակողմին մէջ սրբոյն Յովսեփայ աստուածահօր: Սանդխոց ծայրն նոյն շտկութեան վերայ խաչաձև՝ բոլորովին գետնափոր սրահ մի կամ եկեղեցւոյ խմբարանն մտանես՝ արևմուտքէն դէպ 'ի արևելք՝ որ կամարին վերայ եղած լուսամուտէ մի միայն լոյս առնու. այս սրահին երկու ծայրերն կիսաբոլոր խորաններ են. և երկայնութիւնն է 30 մետր և լայնքն 6. սանդխին անմիջապէս դիմացն ալ խորանաձև տեղ մի կայ: Սրբոյ Կուսին գերեզմանն այս խմբարանիս մէջն է՝ իր երկայնութեան երկու երրորդ մասին վերայ շինուած՝ դէպ 'ի արևելքի կողմն. Տեսան մե-

քոյ գերեզմանին պէտ՝ ժայռի մի մէջ փորուած է և բոլորտիքն տապանակի ձևով պատ քաշուած է, և երկու մուտք ունի դէպ 'ի Հիւսիս և արևմուտք։ Գերեզմանին մարմարիոն կափարիչն որոյ վերայ յոյնք միայն պատարագ մատուցանեն վարդեջրով միշտ լուանան, և տասնուվեց կանթեղ միշտ անշէջ վառին։ Գերեզմանի պատնշին երկու կողմերն ուրիշ խորաններ ալ կան որոց երկուքն մեր ազգին ձեռքն է և մին խափշիկներու. ինչպէս նաև մահմետականք ալ մէհրապ մի ունին նոյն տեղն (տես 'ի Վանատեղայուրկ Պողչոփին Հտ. Ա, էջ 312)։

# ԳԼՈՒԽ ԺԹ.

## Վերափոխումն Տիրամօր.

Աստուածամօր ննջման ժամանակ և թաղման հանդիսին սուրբն Բարթողիմէոս առաքեալ ներկայ չէր գտուած, որպէս պատմէ Խորենացի, վասն զի Թոմայի հետ 'ի Հնդկաստան գնացեալ էր քարոզելու, թէպէտ և այլք նոյն իսկ Թովմասու համար ասեն այս դէպքս. իսկ Դիոնեսիոս արիոպագացի առաջին պատմիչ իրացս յանուանէ ոչ յիշատակէ՝ թէ ո՛ր առաքեալն էր յետոյ հասնողն. ուստի մեզ ալ հաւանական երևի Խորենացւոյն վկայութիւնն՝ 'ի հնուց ազգային աւանդութեան վերայ հաստատեալ: Սակայն այս դէպքս ալ աստուածային նախախնամութեամբ անօրինուած էր՝ որպէս զի այս միջոցով հռչակուի այնպիսի սքանչելի խորհուրդ մի, այսինքն Աստուածամօր յարութիւնն և 'ի յերկինս վերափոխիլն հոգւով և մարմնով, որ այս կերպով յայտնուեցաւ: Թաղմանէն երեք օր ետև՝ երբ հրեշտակաց երգերն դադրելով՝ հաւատացելոց օրհնութիւններն ալ լռեցին, և առաքեալք իրենց քարոզութեանց զբաղած էին՝ եկն եհաս սուրբն Բարթողիմէոս առաքեալ՝ որ նոյն ինքն է Նաթանայել 'ի Կանայ գալիլեացւոց. հայաստանեայց հայր հոգևոր՝ առաջին լուսաւորիչ ազգիս, և եղածներն լսելով՝ սկսաւ լալ և ողբալ թէ ինչպէս ինքն զրկուած էր ներկայ գտանելու Կուսամօր ննջմանն, և իր վերջին օրհնութիւնն ուրիշներուն պէս ընդունելու: Եւ թէպէտ այլ ա-

առաքեալքն զինքն մխիթարէին ասելով թէ Տիրամայրն իւր օրհնութիւնն մերձաւորաց և հեռաւորաց համար առ հասարակ աւանդած էր, սակայն ինքն ոչ դադարէր յողբալոյ։ Հուսկ ապա շատ աղաչեց պաղատեց որ գերեզմանն բանան, որպէս զի գոնէ ինքն ալ տեսնէ այն սուրբ մարմինն և կարօտն առնու։ Առաքեալքն չդիմանալով նորա թախանձանացն եկին 'ի միասին և բացին զգերեզմանն. բայց զարմացած ապշած մնացին՝ երբ տեսին որ մարմինն հոն չէր, այլ միայն այն մաքուր կտաւներն որոցմով թաղուած էր, որ և այնպիսի անուշահոտութիւն մի բուրէին՝ որ զամենքն զմայլեցընէր. նոյն իսկ այն ծաղկներն որով զարդարեալ էր գերեզմանն իրենց գոյնն և գեղեցկութիւնն չէին կորուսած։ Այս անսովոր դիպաց վերայ առաքեալքն զարմացած՝ ոչ գիտէին ինչ մեկնութիւն տան այս բանիս. որովհետև իրենց միտքէն ոչ անցանէր՝ թէ յանդուգն ձեռք մի անտի գողցած տարած լիցի մարմինն. վասն զի ինչպէս որ ասացաք այն երեք օրերն թէ իրենք և թէ անթիւ հաւատացեալք գերեզմանին մօտէն չէին հեռացած։ Վերջապէս երկնային լուսով յանկարծ իրենց միտքն լուսաւորելով՝ իմացան թէ մեղք ապականեալ երկիրս անարժան սեպուած էր ընդունելու այն կուսական և անապական մարմինն՝ որ տաճար և բնակարան եղած լինելով Բանին Աստուծոյ՝ գերեզմանի որդանց կեր ոչ կարէր լինել. ուստի այն կտաւիքն և անթառամ ծաղկներն ձեռքէ ձեռք տալով և եռանդեամբ համբուրելով՝ չհամարձակեցան իրենց մէջ բաժնել, այլ դարձեալ դրին ամեն բան նոյն գերեզմանին մէջ և զգուշութեամբ ծածկեցին, և նոյն տեղն աղօթարան մի շինեցին։ Իսկ զսուրբն Բարթողիմէոս մխիթարելու համար՝ ետուն նմա զպատկեր Կուսին զձեռագործ Յովհաննու աւետարանչի, զոր յետոյ բերաւ 'ի Հայաստան։ — Սակաւ ժամանա-

հէն այս հրաշալի դէպքս տարածուեցաւ ոչ միայն Երուսաղէմայ և Պաղեստինու սահմաններն, այլ և աւանդութեամբ բերնէ բերան անցնելով հռչակեցաւ աշխարհիս ամէն կողմ եղող հաւատացելոց մէջ, և նոյն հաստատուն վկայութեամբ հասաւ մինչև առ մեզ: Եւ թէպէտ մինչև հիմա սուրբ եկեղեցին դեռ իր վճիռն տուած չէ, և զվերափոխումն Կուսին չէ անցուցած հաւատոյ մասանց մէջ, խոհեմութիւն համարելով իմաստուն աստուածաբանից քննութեանն յանձնել՝ աւելի բացայայտ ցուցանելու համար խորհրդոյս պատշաճութիւնն և ստուգութիւնն, սակայն հրամայէ և հրաւիրէ զամենայն հաւատացեալս մեծահանդէս տօնելու և հռչակելու այս առանձնաշնորհութիւնս սրբոյ Կուսին՝ որ որչափ փառք ու պարծանք է Մարիամու՝ նոյնչափ ալ պատիւ մարդկային բնութեանս, և մեր յարութեանն ալ առհաւատչեայ:

Արդ վերափոխումն ասելով իմանամք որ երանուհի Կոյսն* յետ հատուցանելոյ մահուամբ մարդկային բնութեանս պարտքն՝ իւր անբիծ հոգին տարօրինակ հրաշքով նորէն դարձաւ միացաւ ընդ մարմնոյն՝ որ երեք օր գերեզմանին մէջ անապական մնացել էր, և այնպէս հոգւով և մարմնով վերացաւ յերկինս ընկերակցութեամբ հրեշտակաց, որոյ ամէն պարագայներն այնպէս ճոխաբար և գեղեցիկ նկարագրած են սուրբ Մովսէս Խորենացի այս տօնախմբութեանս առաջին աւուր շարականաց մէջ հետևողութեամբ Դիոնեսիոսի գրուածոց, և յետոյ Շնորհալի հայրապետն հետևեալ աւուրց պատկերաց մէջ: — Տիրամօր այս փառաւոր փոխադրութիւնս 'ի յերկինս՝ այսու զանազանի Փրկչին մերոյ համբարձմանէն 'ի յերկինս՝ որ Տէրն մեր արարիչ և բացարձակ տէր գոլով ամենայնի՝ իւրով զօրութեամբ վերացաւ 'ի յերկինս՝ որուն շուրջ պատէին հրեշ-

տակք 'ի պատիւ և ոչ թէ յօգնութիւն. իսկ սուրբ Կոյսն վերացաւ շնորհօք Աստուծոյ և ոչ թէ իւրով կարողութեամբ, ուստի և հրեշտակք ուղեկից և օգնական եղեն նմա իւր երկնաւոր ճանապարհորդութեան մէջ:

Մինչև ցարդ տեսածէս դիւրաւ իմանամք թէ որչափ պատշաճ էր որ անարատ և ամենասուրբ Կոյսն այնպէս փառաւորուէր և գերազանցէր հոգւով և մարմնով. վասն զի այս բանս պահանջէր նախ իւր Աստուածամայրութեան պատիւն՝ որով գերազանց գտաւ քան զայլ ամենայն արարածս, և նոյն իսկ քան զհրեշտակական երկնային ոգիս. երկրորդ այն ներքին կապակցութիւնն զոր ունէր ընդ ամենասուրբ Որդւոյ իւրոյ. վասն զի մարմինն Փրկչին՝ զոր պաշտեն հրեշտակք և հոգիք երանելեաց 'ի յերկինս՝ նոյն մարմին է անարատ Կուսին՝ որ յղացաւ զնա միայն զօրութեամբ Հոգւոյն սրբոյ. երրորդ այն գործակցութիւնն զոր եցոյց Կոյսն՝ Աստուծոյ իրեն տուած անբաւ շնորհացն, որով և սրբութեամբ այնպիսի մեծ փառաց արժանացաւ՝ որ արքայութեան մէջ եղած բովանդակ սրբոց միանգամայն առեալ փառքէն և արդիւնքէն ալ գերազանց է. վերջապէս նոյնն պահանջէր այն տարապայման խանդակաթ սէրն զոր ունէր Աստուածորդին իւր Մօր վերայ՝ որ ոչ միայն զինքն ծնել և սնուցել էր, այլ և բոլոր կրած նեղութեանց և չարչարանաց ընկեր եղած էր 'ի ծննդենէն մինչև ցմահ խաչին: Ուստի եթէ երկրիս վերայ իւր մայրն այնչափ պատուեց և մեծարեց՝ որչափ ևս առաւել փառաւորած է զինքն յերկինս. և եթէ անդէն 'ի յղութեան պահեց զինքն յարատոյ սկզբնական մեղաց և զկուսութիւն նորա անխախտ 'ի ծնանել իւրում՝ ինչո՞ւ չպահեր նորա մարմինն յապականութենէ գերեզմանին՝ որ սեպհական է որդւոց Ադամայ՝ որ դատապարտեալ են դառնալ 'ի

հող ուստի ստեղծան։ — Դարձեալ եթէ ոմանք 'ի որոց յառաջ քան զՔրիստոս և յետ Քրիստոսի յարութիւն առնլով՝ ըստ ոմանց աստուածաբանից հոգւով և մարմնով իրեն հետ յերկինս վերացան համբարձման օրն՝ կարծեմք տարակուսիլ որ նոյն շնորհքն առած չլիցի իւր ամենասուրբ և քան զամենայն սուրբս առաւել սիրելի Մօրն։

Այս դրած պատճառներուս զօրութիւնն բաւական է Աստուածամօր վերափոխման ճշմարտութիւնն ստուգելու, զոր և հաչակած և քարոզած են հայոց յունաց և լատինաց հարց և վարդապետաց շատերն. որք թէպէտ և ճշմարիտն ասելով առաջին դարուց մէջ աւելի հոգւով վերափոխելն իմացած են քան թէ մարմնով ևս, սակայն յետոյ այս վերջին մաօքս ալ այնչափ հաստատութեամբ խօսին՝ որ տարակուսի տեղ ոչ թողուն Աստուածամօր այս առանձնաշնորհութեանս վրայ. մինչև ոմանք այլ աւելի յառաջ անցնելով տարակուսին իւր բնական մահուան վրայ։ Իսկ թէ ինչո՞ւ առաջին դարուց մէջ աւելի բացայայտ յիշատակութիւն ոչ գտանեմք այս գերազանց խորհրդոյս վրայ՝ պատճառն յայտնի է. վասն զի նախ և առաջ պէտք էր որ առաքեալք հեթանոսաց միտքն տպաւորէին Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի յարութիւնն՝ որ մեր յարութեանն ալ հաստատութիւնն է, և մարդկային մտաց անհասանելի և գրեթէ անկարելի համարեալ. այնպէս որ այնչափ քարոզութիւններէ և հրաշագործութիւններէ ետև ալ՝ դեռ հեթանոսք դժուարութիւն կըրէին հաւատալու այս ճշմարտութեանս։ Արդ ինչպէս կարելի էր որ ախտիւք և տգիտութեամբ կուրացեալ հեթանոսք՝ հաւատային որ աննշան և անծանօթ կոյս մի այնչափ փառաց հասնի՝ որ հոգւով և մարմնով ալ յերկինս վերանայ, մինչդեռ նոյն իսկ Որդւոյն Աստուծոյ յարութեան վրայ տարակուսէին,

այնմ որոյ բովանդակ կեանքն և մահն սքանչելի և տիեզերալուր հրաշիւք պայծառացած էր, և ոչ կարէին ըմբռնել թէ ինչպէս մեռնելէն ետև կենդանանալով իր զօրութեամբ վերացել էր յերկինս։ Այս էր ահա գլխաւոր պատճառն որ առաքեալք և առաջին հարք եկեղեցւոյ՝ դժուարութիւն դժուարութեան վերայ չբարդելու համար՝ լռէին Աստուածամօր վերափոխման խորհուրդն ալ հեթանոսաց յայտնելու և քարոզելու. թէ և հաւատացելոց մէջ աներկբայելի էր 'ի սկզբանէ, և տօնն ևս հաստատեալ. իսկ յետոյ յաջորդող հայրապետք ամենայն եկեղեցեաց պանծանօք հռչակեցին զայն'ի գիրս իւրեանց ճառերով ներբողներով շարականներով և գանձերով. որպէս և 'ի մեզ 'ի հինգերորդ դարէ սկսեալ Ս. Մովսէս Խորենացի, Թէոդորոս քռթենաւոր, Զաքարիա կաթողիկոս, Ս. Գրիգոր Նարեկացի, Ն. Շնորհալի, Ն. Լամբրոնացի, Վարդան մեծն, Կիրակոս և այլք. թող վերջի երկու դարուց մէջ երևեալ հռչակաւոր վարդապետք Մխիթար աբբայ, Զամչեան, Աւետիքեան և Աւգերեան հարք։

Աստուածամօր մարմնով ևս վերափոխելուն մեծ ապացոյցերէն մին ալ այն է՝ որ երկրիս վերայ իր նշխարներէն ոչ գտանի։ Ամենուն յայտնի է թէ քրիստոնէութեան սկզբնաւորութենէն 'ի վեր հաւատացեալք ո՛րչափ եռանդեամբ հաւաքէին և զգուշութեամբ պահէին սրբոց մարմինքն, շատ անգամ անբաւ գանձ ալ տալով դահճաց և զօրականաց՝ որպէս զի այն սուրբ նշխարքն իրենց շնորհուի. ասով է որ մինչև ցայսօր գրեթէ երկու հազար տարիներէ 'ի վեր անհամար սրբոց մարմինքն պահուած են 'ի զանազան աշխարհս, և մանաւանդ 'ի քաղաքիս Հռոմայ։ Յայտնի է դարձեալ որ Աստուած զանազան ժամանակ յայտնած է սրբոց մարմինքն որ այլ և այլ տեղուանք ծածկեալ էին և գրեթէ կորուսեալ, ինչ-

ղէս վերջերս ալ Սպանիոյ Կոմպոստելլա քաղքին մէջ գտուեցան Յակոբայ մեծի առաքելոյն որդւոյն Զեբեդէայ նշխարքն, և շատ քննութիւններով հաստատուեցան: Արդ եթէ սրբոյ Կուսին մարմինն ալ երկրիս վերայ մնացած լինէր՝ անշուշտ քան զայլ սրբոց նշխարս աւելի զգուշութեամբ պիտի պահէին զնա հաւատացեալք, և թէ ծածկուած էր՝ Աստուած պիտի յայտնէր զայն 'ի մխիթարութիւն և 'ի ջերմեռանդութիւն բարեպաշտից, որովհետև քան զայլ ամենայն սուրբս արժանի է մեծարանաց: Իսկ արդ բովանդակ տիեզերաց մէջ տեղ մի չկայ՝ ուր Տիրամօր նշխարաց մասն մի գտնուի, որպէս ասէր հինգերորդ դարուն սկիզբէն Յոբնաղ Երուսաղէմի պատրիարքն առ Բուլքերիա Թագուհին՝ որ Կոստանդնուպօլսոյ մէջ յանուն Աստուածամօր փառաւոր եկեղեցի մի շինելով՝ պարզմտութեամբ խնդրած էր իրմէ մասն մի 'ի նշխարաց նորա. որում պատասխանէ հայրապետն որ թէպէտ գերեզման Աստուածածնի է 'ի միջի մերում 'ի Գեթսեմանի, այլ մարմին նորա ոչ է անդ՝ այլ յերկինս: — Միայն 'ի զանազան տեղիս գտանին 'ի հանդերձից սրբոյ Կուսին և յայն կտաւեաց որ գտան իր գերեզմանին մէջ յետ վերափոխման. կան նաև իւր մազերէն՝ զոր հաւանականաբար կտրած և պահած էին իւր անձնանուէր աղախինն և անբաժան ընկերն Մագդաղենէ և իւր որդեգիրն Յովհաննէս աւետարանիչ:

Այս հրաշափառ անցից հաստատութիւն կարեմք համարել նաև վերափոխման տօնն ալ՝ որ ինչպէս ամեն ազգաց՝ այսպէս ալ մեր ազգին մէջ առաքելական աւանդութեամբ սահմանուած համարի 'ի Ս. Բարթողիմեայ սկսեալ և հաստատեալ 'ի Ս. Լուսաւորչէ. որովհետև Խորենացի ալ որ դարուկէս յետոյ է ենթադրէ թէ այն տօնն 'ի վաղուց կայր ազգիս մէջ. ուստի գրէ առ իշխանն Սահակ որ հրաւիրէր

զնա գալ առ ինքն. «Այժմ ոչ ժամանեմ առ հզօր իշխանդ 'ի տեսութիւն, մինչև կատարեսցի տօն Խու-կուճուղյն». որոյ 'ի պատիւ յօրինեց նաև զառաջին պատկեր վերափոխման: Նոյնպէս Զաքարիա կաթողիկոս վերափոխման ճառին մէջ հաստատէ թէ յառաջելոց սահմանուած էր տօնս. «Եւ կարգեալ արձանացուցին զյիշատակ նորա յօգոստոս ամսոյ տասնևհինգն». Թերևս ինքն է յօրինած Աւրաւուն ծաղիկ գեղեցիկ և վսեմ ճաշու շարականն' 'ի պատիւ վերափոխման Կուսին:

Յունաց և լատինաց մէջ ալ շատ հին է վերափոխման տօնախմբութիւնն անյայտ ժամանակէ սկսեալ. որով քննիչք համարին թէ առաքելոց ատենէն սահմանեալ է, թէ և այլք ասեն յԵփեսոսի ժողովքէն, ոմանք ալ կարծեն վեցերորդ դարուն սկսած. աւելի հաւանական է որ 'ի սկզբանէ հետէ տօնէին զայն անուամբ ննջման կամ հանգստեան Կուսին, իսկ մարմնով ալ վերափոխելն ոչ գիտէին մինչև 'ի վեցերորդ դար. ինչպէս նաև տօնին օրն ալ որոշ սահմանեալ չէր. զի յոյնք առաջ ասորւոց հետ 'ի միասին յունուարի 18ին տօնէին, յետոյ վեցերորդ դարուն' Մօրիկ կայսր հայկազն փոխեց զայն և օգոստոսի 15ին հաստատեց: — Իսկ առ լատինս թէպէտ և յայտնի չէ թէ յառաջ երբ և որպէս տօնէին, սակայն ստոյգ է որ յամի 847 Լեւոն Դ քահանայապետ սահմանեց որ ութօրէիւք տօնուի' 'ի յիշատակ հրաշալի ազատութեան քաղաքին Հռոմայ թունաւոր վիշապի մի վնասներէն որ շատ մարդիկ սպանանէր:

Վերափոխման տօնէն զատ ըստ յայսմաւուրաց հայոց և յունաց օգոստոսի 31ին յիշատակի նաև Գիւտ պատուական գօտւոյ Աստուածամօրն' որ իր զգեստուց հետ միատեղ հնուց 'ի վեր պահուէր յԵրուսաղէմ քաղաքն, որ մեծին Թէոդոսի որդւոյն Արկադիոս կայսեր ժամանակ 'ի Կոստանդնուպօլիս

փոխադրուեցաւ, և փառաւոր գզրոցի մէջ գրուած և Թագաւորական կնքով կնքուած կայսերական գանձուն մէջ պահուէր, և հիմա գտանի Դոսքանայի Բրաթոյ կոչեցեալ քաղաքին մէջ։ — Բաց աստի յուլիսի երկրորդ օրն յիշատակի ըստ մեզ Գիւտ տփոյ Աստուածածնին՝ որոյ մէջ գրուած էր Տիրամօր լաչակն. որ ըստ յունաց ասի Փոխադրութիւն զգեստուց ամենասուրբ Կուսին, որոյ վերայ այսպէս պատմեն թէ Լեւոն կայսեր ժամանակ այսինքն 457ին երկու իշխանազուն եղբարք շնորհօք ամենօրհնեալ Կուսին արիոսեան աղանդէն յուղղափառութիւն դառնալով՝ ուխտի գնացին յԵրուսաղէմ. և երբ Գալիլեայի մէջ շրջէին հրեայ այրի կնոջ տանն առջև բազմութիւն մի տեսանեն հիւանդաց և ախտաժետաց. տան ներսի դին ալ խորան մի որոյ վերայ տապանակ մի կար, և առջեն մոմեր վառէին անուշահոտ խունկեր ծխելով. և հարցընելով իմացան թէ այն տապանակին մէջ պահուէր Յիսուսի մօր գլխոյն ծածկոյթն և զգեստներն, որոց զօրութեամբն շատ հրաշալի բժշկութիւններ լինէին 'ի վերայ հիւանդաց։ Այս լսելով իշխաններն նոյն տան մէջ բնակիլ ուզեցին՝ որպէս 'ի պանդօկի, և քանի մի օրէն նոյն տապանակին ճիշդ նմանն շինելով՝ առջինին տեղն դրին, և միւսն վերցընելով բերին 'ի Կոստանդնուպօլիս, զոր և մեծ հանդիսով ընդունեցան Թագաւորն և պատրիարքն, և տարին զետեղեցին Վլաքեռնա անուանեալ Աստուածամօր եկեղեցւոյն մէջ՝ տօնն ալ կատարելով 'ի յուլիսի երկու։ Այս պատուական գանձս յետոյ լատինաց Պօլիս առած ժամանակ՝ բոլորովին կամ մասամբ հռոմայեցւոց ձեռքն անցաւ, և աստի են այն մասունք զգեստուց կամ լաչակի Կուսին՝ որ գտանին 'ի զանազան տեղիս. որպէս և մասն մի 'ի հերաց նորա պահեալ 'ի ժամանակէ անտի ննջմանն 'ի բարեպաշտ հաւատացելոց. իսկ ամբողջ

մազերն երկրիս վերայ չեն՝ այլ յերկինս ընդ փառաւորեալ մարմնոյն. և փոխանակ նոցա բոլոր աշխարհիս վերայ սփռեալ ծաւալին սուրբ Աստուածամօր շնորհաց և գթութեան գանձերն, հանդերձ օրինակաւ գերահրաշ վարուցն և առաքինութեանց, և զօրաւոր հովանաւորութեամբ պաշտպանութեան նորա 'ի վերայ ջերմեռանդն պաշտօնէից իւրոց. որով և մեք ալ յուսամք արժանի լինել տեսանել յերկինս զՏիրամայրն զսուրբ Կոյս Աստուածածին Մարիամ, և փառաւորել զնա յաւէժաբար ընդ Միածնի Որդւոյ իւրոյ:

## ԳԼՈՒԽ Ի.

### Փառք Տիրամօրն յերկինս, և պաշտպանութիւն նորա յերկրի 'ի վերայ հաւատացելոց .

Թագաւորաց մէջ իմաստնագոյնն Սողոմոն իւր որդիական սէրն և յարգութիւնն ցուցանելու համար առ մայրն իւր՝ իւր յաջակողմն նստոյց զնա արքունական աթոռի վերայ , խոստանալով նորա խնդիրքն անյապաղ կատարելու ։ Այս անցք օրինակ և գուշակութիւն մի էր այն գերագոյն փառաց Կուսին՝ որ երբ սերովբէից սպասարկութեամբ եմուտ յերկինս՝ իւր Միածին որդին բազմեցնելով զնա 'ի գահ արքայական և պսակելով զնա անմահական պսակով՝ կարգեաց զնա Թագուհի երկնից և երկրի . այնչափ գերազանց քան զփառս Բերսաբեայ՝ որչափ որ սա երկրաւոր թագաւորի մի մայր էր , իսկ նա երկնաւոր և յաւիտենական թագաւորին ։ Ցիրաւի մեք կարող չեմք ոչ բացատրել և ոչ 'ի միտ առնուլ զանճառելի փառս Մարեմայ յերկինս . վասն զի այս բանիս համար հարկաւոր էր գիտել նորա արժանեաց և առաքինութեանց չափն , սակայն այսու ամենայնիւ յարգական համարձակութեամբ մատիցուք առաջի աթոռոյ շնորհաց նորա . որովհետև ինքն ալ որչափ գերազանց է 'ի փառս՝ նոյնչափ ալ բազմազեղ 'ի գթութիւն ։

Արքայութեան մէջ երանելեաց փառաց չափն՝ իրենց երկրիս վերայ ունեցած արդեանց համեմատ է, և այնչափ աւելի գերազանց՝ որչափ գերագոյն վախճանի մի համար ստեղծած և գործածած է զիրենք Աստուած. իսկ արդ Աստուծոյ մայր լինելէն աւելի գերագոյն վախճան և գործ կարէ՞ լինել մարդկային բնութեանս համար: Մարիամ 'ի յաւիտենից սահմանեալ այս աստուածամայրութեան պատուոյն, և ընդունելով յԱստուծոյ ամէն երկնային ձիրք և շնորհք և կատարելութիւն՝ ինքն ալ հաւատարմութեամբ գործածեց և աճեցոյց զնոսա, և որչափ որ ճոխացեալ էր շնորհօք որպէս դուստր Հօր ամենակալի, մայր Միածնին և հարսն Հոգւոյն սրբոյ՝ նոյնչափ ալ իւր խոնարհութեամբ փոխարինեց Աստուծոյ իրեն տուեալ բարեմասնութիւններն, մինչև հասաւ նստաւ ընդ աջմէ Որդւոյն իւրոյ յերկինս՝ սրբոց համար պատրաստեալ օթեվանաց առաջին տեղին, իբրև զարեգակն փայլելով 'ի մէջ բիւրաւոր աստեղաց, և իւր ճառագայթներն սփռելով երկնից և երկրի անսահման պարունակին մէջ, և իր պետութիւնն տարածելով բովանդակ տիեզերաց վերայ, որով և ամենայն արարածք որ պաշտօն մատուցանեն Աստուծոյ՝ պատուեն և մեծարեն և զՄարիամ որպէս դշխոյ և թագուհի՝ յորմէ ընդունին ամենքն ալ զհոսանս շնորհաց, ոչ միայն մարդիկ որ 'ի վերայ երկրի և հոգիք երանելեաց 'ի յերկինս, այլ և հրեշտակք և հրեշտակապետք և ամենայն դասք լուսեղինաց՝ որ իւր լուսովն աւելի ևս պայծառանան: Վասն զի եթէ Աստուած ինքնին իւր մարդկութեամբն հնազանդեղև այս գերագոյն արարածոյն՝ կարելի բա՞ն է որ ազատ լիցի ոք նորա հզօր պետութենէն և իշխանութենէն:

Սակայն որչափ ալ մեծ է Մարիամու փառքն և իշխանութիւնն 'ի յերկինս, նոյնչափ ալ զօրաւոր է

իր մայրական հովանաւորութիւնն երկրիս վերայ՝ զոր գործադրել սկսաւ այն ատենէն երբ Յիսուս Քրիստոս 'ի յետին ժամու կենաց իւրոց իր մայրութեանն յանձնեց զբովանդակ որդիս Ադամայ՝ որով և ինքն եղև նոր Եւա մայր ամենայն կենդանեաց՝ ծնանելով զնոսա առ ոտս խաչի Միածին որդւոյն կսկծագին ցաւօք և չարչարանօք: Այնպէս որ իր լուսափայլ երևաց ճառագայթներովը զհոգիս արդարոց որ են յերկինս լուսաւորած ժամանակ՝ յիշէ թէ երկրիս վերայ ալ ունի ուրիշ զաւակներ զորս իւր Միածինն իւրով արեամբ գնած, և իրեն յանձնած է նոցա խնամքն և պաշտպանութիւնն. որով թէպէտ մարմնովը ալ վերափոխելով յերկինս հեռացաւ 'ի մէնջ, սակայն ինքն միշտ ներկայ և կենդանի է կաթողիկէ եկեղեցւոյ մէջ իր հզօր հովանաւորութեամբն և անդադար բարեխօսութեամբն առ Աստուած: Այսոր համար է որ Ս. Եկեղեցին ալ իրեն ուղղէ զաղաչանս իւր և զաղօթս, և յետ Յիսուսի Քրիստոսի Մարեմայ վերայ հաստատէ իւր ամեն յոյսն և ակնկալութիւնն. և իւր աստուածային հիմնարկութենէն մինչև հիմա՝ ոչ երբեք պարապ ելած է իր վստահութիւնն, և Տիրամօր բարեխօսութեամբն յաղթած է ամեն դժուարութեանց, հեթանոսաց հալածանացն, հերձուածողաց նենգութեանցն, կայսերաց և թագաւորաց ահարկութեանցն, սուտիմաստնոց խորամանկութեանցն, և վերջապէս սատանային իրեն դէմ հնարած ամեն տեսակ պատերազմաց: Եւ այս պաշտպանութիւնս ոչ միայն ընդհանուր եկեղեցւոյ վերայ տարածէ, այլ և իւրաքանչիւր մարդու ալ առանձինն, այնպէս որ զինքն յօգնութիւն կոչողներն ոչ երբեք պարապ ելանեն և զրկին իր ողորմութենէն: Զայս գիտելով ուրեմն և աներկբայապէս հաւատալով՝ մեր ամեն կարօտութեանց և նեղութեանց մէջ դիմեմք վստահութեամբ մեր ամենագութ մօր

գիրկն՝ որ ոչ երբեք զմեզ յերեսէ թողու՝ որչափ ալ անարժան լիցուք իր ողորմութեանն. «Մատիցուք համարձակութեամբ առաջի աթոռոյ շնորհաց նորա, զի ընկալցուք զօգնութիւն 'ի դէպ ժամանակի» . որում արժանի արասցէ զամենեսին զգրողս և զընթերցողս մատենիս ինքն Տիրամայրն մեր Աստուածածին Մարիամ:



# ՀԵՐՈՆԻՄՈՍԻ ՎԻՏԱ

## Ի ԿՈՒՍԱՄԱՅՐՆ ՄԵԾ

Այլ ո՛ւստ մատչել ինձ Սրբուհի քոց դրուատեաց յերգ մահացու՝
Ցոր պարանցիկք երկնաւորք երկնախօսիկ յիւրեանց բարբառ
Չագիւ ժտին՝ թէպէտ ոչ հակեալք խոնարհ հողագանգուած ,
Եւ ըզփառսդ իսկ տեսանեն հանապազօր դէմ յանդիման ։
Իսկ ես քանիցըս նըկրտիմ յառել 'ի դէմսըդ կենդանի՝
Եւ զաչս 'ի վեր ամբարձեալ պշնուլ յերեսըդ գեղանի ,
Շլացեալ ակնկորեմ յակնախըռտիղ լուսոյդ նըշոյլ ,
Նա և ոչ իսկ բացաձիգ ճառագայթիցըդ հանդուրժեմ
Ի քոց դիմաց շողշողենի . զի դու զմարմինդ աստուածազգեաց
Քողարկեալ վայելչապէս արփիազգեստ պճնեալ ճեմիս ,
Որպէս Դշխոյ պըսակեալ 'ի ծամակալս աստեղազարդ .
Եւ մինչ 'նդ ոտիւքդ շողայ լուսին փողփողենէջ և ոսկեփայլ՝
Դու զհրեղէն կոխես զաստեղս շուրջ զաշխարհաւս պարայածիկ ։
Անդէն 'ի սկզբանէ ամենիմաստ ամենից Հայր՝
Զի զաշխարհ ստեղծագործեալ ըզքեզ ընտրեաց բիւրից յէից
Միայնակ՝ զի զԹագաւորն ածցես 'ի լոյս դու զերկնաւոր ։
Զի 'ի ստունգանել նախաստեղծին 'ի դրժել զուխտն աստուածադիր
Երբ հայրն հանուրց առաջին՝ զանձըն և զիւրս եղծեաց համայն
Դարուց 'ի գարս հանդերձելոց՝ Դու միայնակ կացեր անախտ
Ի նախկին մեղանաց զերծ և յղացեալ ջինջ անարատ
Ցարգանդի մօրդ ամենևիմբ ազատ անբիծ 'ի մեղաց .
Եւ կամ՝ անդէն և անդ երկնաբնակաց արքայն հզօր՝
Զերծ կացոյց՝ ըզհասարակ զաղտըս մեղաց ջնջեալ 'ի բաց .
Մի եթէ բարձր յեթերաց վտակդ իջեալ յականակիտ
Պղտորեալ ինչ խառնեսցի , և առ յապայս ծընունդ քոյին
Ի մայրական արենէն նախկին ըզկեղտ յինքն ընկալցի ։

Ո՛ւստ՝ 'ի տխոյըդ զարդանալ հեռ՝ 'ի չարեաց մեղաց անդէտ
Սուրբ և անբիծ պահեալ խնամօքն ախնմաց իմաստութեամբ,
Որպէս ըզբոյս գեղաղէշ դաշտ յընդարձակ վերընձիւղեալ
Նախընծայ նորածաղիկ ծայրիւք թերթից փթթինազարդ
Ի բուրաստանս արքենի թէ փոխադրի երանաւէտ,
Նոյն և դու մանկիկ գողարիկ ըզհայրենին լըքեալ ըզյարկ՝
Ի դաբիրայն ընծայիս 'ի մայրական ուխտեալ ձօնի.
Ուր և կանուխ տեսանողաց 'ի սուրբ քարտէսս ներկուռ
վարժիւք
Նախաճառեալ պատգամաց խոստացելոց եղեր հասու՝
Եթէ երկնից Տէր վեհափառ 'ի մահացու ծնցի մօրէ:
Անդ ուրեմն 'ի քաղցր հրճուանս յեռանդագին խղձըս սրտիդ
Ըզժամանեալըն զԱստուած մերձ նկատեալ մտօքդ անբիծ,
Մօրն յղացելոյ ըղորբանուէր ձօնս պատրաստես.
Ո՜հ թէ պանծալին բաստ մօտ յաւուրս եկցէ նըւիհ,
Եւ քումդ իսկ ժամանակի տացի նուէրն այն գերապանծ:
Մինչ անծանօթ հանդերձելոց դու զարժանիսդ ոչ նշմարես,
Եւ տակաւին Հարսն չքնաղ ըզփառս քոյին անգիտանաս՝
Ահա հապճեպ սրացեալ յերկնից աւետաբեր բարձր յեթերաց
Խոնարհեալ իջանէ արագաթեւն սրբապատար՝
Եւ լսելեացդ հնչէ հեզիկ ըզուարթագին 'ի բարբառ.
“ Աւետիս, երկնաբնակաց դու արքային ակնահաճոյ,
Լի շնորհօք Բարձրելոյն գերազանց մայր երանաւէտ.
Մի զանգիտեր, կոյս պատկառոտ, զօրէնս մարդկան ածեալ
ընդ միտս.
Զաստուածային շնչեցես սիւք և ընդ երկնից դու հարսնացիս.
Զի յայսմհետէ ոչ այլ ումեք եղցէ ծննդեանս այս փառք վսեմ:
Դու զԱրարիչն համայնից՝ յեթերական սիւք սաղմնաւորիկ
Անփորձ յառնէ յղասցիս աստուածահրաշ արգասաւոր,
Եւ զկուսականդ անբծութիւն մինչ պահեսցես ամօթագեղ.
Որպէս ըզգեղմն իմանալի անթափանց ցօղ յանձրեւածին՝
Մինչ թանայ զերկիր համայն տեղատարափ խիստ շառաչուկ.
Դու յաւիտեան դուռնըն փակեալ՝ ընդ որ անցցէ Ամենակալն,
Ոչ զանշարժ զաղխըս նորին և ոչ զնիգսըն խարխարեալ.
Դու մորենին անկիզելի յառերեւոյթ հուր ճարճատուն՝
Ոյր սաղարթունք կանաչագեղ ոչ խանձողին 'ի բոց հրատին.
Որպէս երբեմն անդ ուրեմն 'ի բոլորաքեալ հնոցին զմանկունս

Անխայեաց հուրն անմըրնաս հեղիկ զմարմինսըն լիզելով.
Հրաշք զարմանալիք սքանչելեաց քեզ օրինակք,
Եւ վաղուեան զուշակութեանց առ ապագայս յոյս անկապաղ»:
Ասաց, ու անդէն որոտընդոստ ահեղ զերկինս դող փետե-
կեալ,
Եւ առ նմին թեւաքօղեալ յանկեդխակ ամպոց նըշոյլ՝
Առ քեզ եկաւորել զինն ըղղացեր անհատահրաշ,
Ի բարձանց 'ի յօդ հանդարտ ոգի չնչեալ եթերաշունչ:
Ո՛վ զիա՛րդ ըղմայլեցար անդէն կուսանդ սրտատըրոփ.
Հաւատամ աներկմիտ՝ սէր անուշակ ըղքեզ վառէր
Քաղցրաղուարճ 'ի տարփանս համայն կիզեալ խանդաղակաթ:
Իսկ յորպիսի՞ բերկրութիւն սիրտ քո հալեալ նուաղեցաւ՝
Ցորժամ ամուլն այն զառամ արեամնաւ քոյդ ազգակից
Այցելուիդ բերկրեցելոյ 'ի լեռնակողմն եւ ընդ առաջ,
Եւ 'ի խայտալ որդանդին ըղքոյդ ծանեաւ փառս զերապանծ,
Որովայնիդ երանի երիցս քաւիցըս կարդալով:
Իսկ դու չիկնեալ պատկառանօք որպէս ըղվարդ զիրդ վառ
'ի վառ՝
Ի լարս չըթանցըդ կարմրօրակ յերկինս ուղղես զերգս երախ-
տեաց
Անարժան զքեզ կոչելով այնքան շնորհաց անընդունակ:
Այլ դուղնաքեայ ցարդ ասացեալքս, ըղհրաշադոյնս եկից
ճառել:
Աղէ ածէք բանալիք՝ ածէք շուշանս ինձ կուսափայլս,
Տուք լիբանոն, պարմանիք, յաղօր 'ի կայթս ածէք պըսակս.
Զի 'ի պատկեր հողածնելոյ ծնանի մանուկ որ էր միշտ
Եւ է և եղիցի Ինն անսկիզբն և անվախճան,
Զոր ոչ տանել կարասցեն տիեզերաց անհուն սահմանք,
Որ անտես յաչաց մարդկան ու անզննական ձեռաց նորին:
Ցանկալ թուիմ տեսանել ըղքեզ Կոյս 'ի դոհձս հարեալ,
Եւ ծունր յերկիր պշուցեալ ընդ նորածինդ զորովալից՝
Որ հաւատայլթս ոսկենշոյլ փայլատակէ հարուստ սահմանս,
Եւ առ նմին կարկառեալ ըղծերունին ես նկատեմ՝
Ի տես հրաշիցըն պակուցեալ քեզ ու անդրանկանդ երկրպագու:
Երանի ձեզ դասք հովուաց՝ որոց բաղդ գեղանսիկ
Եսուն 'ի մսուրըն տեսանել ըղծնունդն անդուգական.
Ո՞հ թէ և ինձ հասանէր ժամանակիդ զոլ զուգակից.

Եւ 'ի ծըմակս անտառացդ հովուել զաւինս ճարակաւորս ,
Օ՜ն և օն զի ոչ գնայիք առանց իմ յայրըն նշմարեալ՝
Զոր ցուցին ձեզ զուարթունք նուաղաւոր յերգս երկնային .
Նա՛ զի ես ինք նախաժամման 'ի սաղարթուն յոստ մրտենեաց
Դիրանսանգըս ձըգէի յայրին 'ի մուտս ծաղկապատ ,
Յաւելեալ և երգս տաղից 'ի գեղջային յեղէգն 'ի սոյլ ,
Տաղս զոր Դչխոյդ արդ նուիրեմ ումպէտ իցեմ ես ձեռնհաս :
Եւ ոչ ես ոք իշխէր զիս յայրէն վտարել երանաւէտ՝
Յանուշակ 'ի սպասուէ քեզ և մանկանդ և ծերունւոյն .
Նա՛ ըզխշտեակն իսկ յարդարել յովանակին 'ի յարդ խոտոց :
Անդանօր էր ինձ տեսանել նուիրաբեր արքայս մանկանն
ՅԵթովպիոյ եկեալ յերկրէ աստղապուշակ կարապետեալ ,
Գետնամածս առ ոտս քո ու առ ոտս որդւոյդ սիրելւոյ .
Եւ զԹեւապարս իսկ լուսազգեստ 'ի սպաս քոյին փութացեալ՝
Սոէպ ընդ քեզ գոլ խօսակից և ըզվշտաց սփոփել թախիծ ,
Մխիթար մատուցանել կարօտելոյդ պէս պէս հնարիւք ,
Թէ զորդւոյդ խիթաս երբեք առ 'ի վտանգաց պատսպարել՝
Ըզգլուխըն նազելի սիրտ 'ի բուին գողդոջելով :
Անմեկին կայի ընդ քեզ և 'ի տաճարըն սրբավայր՝
Յորժամ յետին բանք ծերունւոյն օրհասական հարան 'ի քեզ
Մինչդեռ ըզզոյգս աղաւնեաց դու հանէիր զոհս 'ի բագին
Ըզնախնկին զերկունս լուծեալ՝ երբ վշտահար յանձն կարեվէր
Եւ 'ի սարսուռ սիրտ թափանցանց սայրասուր հարաւ սուսեր .
Ուրանօր և զվաղնջուց պատգամս աճեղս ածել 'ի յուշ
Զի փոխանակ բազմաց որդին նուիրեաց՝ 'ի մահ դառնադէտ :
Զոր և արկածք դժընդակ անդէն ըզխէթսըդ ճշգրտեն :
Ահա բանքեր թեւազգեցիկ ծերոյն յերազ ազդ առնէ
Յառնել փութալ փախչել ընդ քեզ 'ի խիթալի հայրենեաց .
Զ' ի միտս արքայն կասկածաւոր ընդ երկեան հարց զաւաղան
Ի խնդիր շրջի մանկանդ վայրագն հարուլ 'ի սայր անգութ :
Վատշուէր սնացեալ ուղեղ , յո՛ զքեզ մըղէ մոլեգնութիւնդ ,
Է՞ր խողխողել զանմեղ մանկտին 'ի մարցն 'ի ստեանցըն
քեցելով .
Համարիս կալ հակառակ յաւիտենիցըն խորհրդոց :
Այլ տակաւին չէ ժամն հասեալ մահու մանկանն հեզապատնի .
Զի դեռ ես ոչ շրջեցաւ ըզգերազոյն Հօրըն պատգամս
Ծաւալել յերկիր հանուր , և ոչ զանձնէ տալ ծանօթս

Անճառաճրաշ սքանչելեօք զմարդիկ զաշխարհս հիացուցեալ,
Ոչ զօրութեամբ մարդկայնոյ, ոչ արուեստից 'ի հնթիթանս:
Նա նորանոր օրէնս կարգաց, նոր ուխտ տացէ աշխարհի.
Ընդ աղտաղտուկ ալեաց կուտակ գնացէ անթաց 'ի դար-
շապար.
Հրաման տացէ վայրագ ծովու և փրփրերախ կոհակաց.
Ցակնարկել կամաց նորա ախտք 'ի մարմնոց հալածեսցին,
Եւ անդրէն 'ի կեանս դարձցին՝ որոց ոսկերք կային տապաստ.
Նա դուզնաքեայ 'ի պարէն ընկղողեալս հազարաւոր
Կշտապինդ յագեցուսցէ, բամբէ հրաշիցն, յանկոխ վայրի.
Ըզլթաքուն խորհուրդս մարդկան առակեսցէ՝ լեալ խելամուտ.
Ցամաքեսցին ծառք անտառաց, ծարաւահիւծ անդք խորխոլին.
Իսկ 'ի զայրոյթ արդարութեան 'ի կշտամբելն ըզթշնամիս
Խնայեսցէ ըզշրթունս յաղեղնաբան եպերանաց:
Ընդ այսոսիկ հրաշացեալ հրճուեսցիս Կոյս 'ի սրտիդ,
Եւ ըզմայլեալ քաղցրութեամբ զուարճասցիս բերկրապատար
Յորժամ զմանուկն 'ի տաճարին 'ի ճենճերել զոհից թողեալ՝
Ցես ընդ երկար դեգերանաց գտցես որպէս զարև ծագեալ՝
Լուսափայլ դիմօք պայծառ 'ի լիճ լուսոյն շողշողենի.
Մինչ հոլոնեալ ըզնովաւ ախիբերան կան 'ի յակճիռ
Նախաթոռքըն ծերունեաց և վարդապետք տղայոց՝
Ի պարզել նորին զպատգամըս վաղնջուց տեսանողաց,
Զորս համօրէն ուսուցանէ երկլեցս վեցեակ տիօք մանուկ,
Եւ զանհաւանս ըմբերանէ յոսկեղինիկ բարբառ շրթանց,
Անմահական ձայնիւն ըզմիտս այլ և ըզսիրտս ամոքելով.
Եւ 'ի մարմնոցըն բովանդակ սէր ծաւալեալ շուրջանակի,
Զերդ նոր արփի ծայրակարմիր կամ դեղանի աստղ ոսկեփայլ
Ուստի և մարց ակմբելոց բազմահոյլ դասք երամ երամ
Երանիս կարդային ում յարգանդի կրեաց ըզնա,
Եւ ըստեամբքըն դիեցոյց զփափկիկ շրթունսըն կաթնաստուն:
Ցայն տեսիլ դու գրկախառն բոլոր լանջիւք փարեալ զնովաւ
Համբոյր գլխոյն օծելոյ՝ համբոյր տայիր վեհ ճակատուն,
Ողջագուրեալ շրթամբքդ անբիծ ըզբիբս աչացն աստեղափայլ
Ի տուրևառս անուշակ քաղցր համբուրից սիրաբորբոք:
Այլ խնդալով խնդացեր և առ յապայս 'ի միտս քոյին՝
Յորժամ ըզՑուրն ականակիտ 'ի հրաշէկ փոխեաց գինի՝
Ի շնորհս քոյին ակնարկի զուրախարար խառնեալ բաժակ,

Բազմականացն 'ի զարմանս և կոչնատեառն խրախճանին։
Զայսպիսի տեսցես դու Մայր՝ չև տակաւին բռնաւորին
Շամբուշ կատաղութեան յագուրդ առեալ մոլեգնութիւն։
Այլ այժմ երկնից թելադրութեան միտ դիր զոր քեզ ազդեաց
զուարթունն.
Մի զահանդեալ ըղձումեր գնալ 'ի սահմանս Նեղոսական.
Բարեպաշտեան է քեզ ժամդ, ձեզ դիւցերոյն մութ հոլաթև
Ու աղօտ նշոյլ լուսնակին փախստէից պատսպարան.
Նայեաց զիա՛րդ հարթանան սաղարթուն լերանց պարերք,
Եւ անտառք վարատեղեք ծառք զծառի ծփեալ ցնծան։
Ու երկիր նորասքանչ զանուշահոտ բուրմունս յղէ.
Նոյն և գազանք դիւցերընթաց, թռչնոց երամք թեւապար
Էին զգալուստ իմացան զի գալով գայ և մերձենայ.
Գետոց ընթացք իսկ քարավէժ տանակառեալ պակեան կացին՝
Մինչ զուարթ յափունս իւր Նեղոս սառնջական կացցէ անկայթ,
Զոր արդէն դաժկան տխուր զողջոյն սահմանս զարհուրեցոյց՝
Թէ մանկասպան մատաղերամ յորդեն արեան հեղեղք
Ի խնդիր մանկան քոյին՝ քան թէ այլում, 'ի Բեթղեհէմ։
Ո՜հ զիա՛րդ հարար յողերդ, արիւն 'ի սիրտըդ պաղեցաւ,
Եւ ընդ անձնըդ սարսռադին էանց անդէն սուր սայրասուր։
Այլ ոչ առնէն վախճան ամենայն Կոյս քո վշտաց աղէտք ցա-
ւոց,
Եւ չեն հասեալ տակաւին ժամք դառնագին քոյդ տրամութեան,
Զի առ յապայս քեզ մեան ողբաղորմ ցաւք դժընդակ։
Ո՛վ աղետիցս, և ո՛վ երբեք հաւատայր մահ անհաղթելւոյր
Պատրաստեալ այնմ որոյ Հայրն դահակալէ բարձր յՈլիմպոս,
Որում ծով, որում երկիր, որում երկինք լսեն ու այերք։
Սակայն նա ինքըն հոխաբար դիմեաց 'ի մահ յօժարութեամբ
Արեամբ իւրով լուծանել ըղնախահօր մեղս մահաբեր,
Եւ կամակար իւր մահուամբ քաւել զյանցանս մահկանացուաց,
Այս իսկ եղով կամք Հօրն անդարձ, այն և երկնից հաշտարար,
Որում և Կոյսդ կանխագէտ հանդերձելոց ոչ անգիտակ՝
Սակայն զոդցես բընաւից դու մտացօնս արարեալ՝
Ո՛վ մայրենի սէր խանդակաթ, ընդ աղետիւք ընկճիս ցաւոց.
Որով այն ինչ գոյժ դժընդակ հնչեաց ահեղ յունկըն քոյին
Թէ անդրանիկըդ միամօր նենգեալ յհրէիցն ձերբակալ
Աւա՜ղ դրուժան մախանաց 'ի սպանդ վարի անպարտակիր

Եւ համակ բոլոր մարմնովն վիրաւորեալ դառնակսկիծ
Նշաւակ կախեալ զփայտէն կայ 'ի տեսիլ քամընափուշ՝
Ընդ չէնն ասեն ելեր արտաքս՝ զանցըս լցեալ և զուղիս
Գերաշխարան յողբս կականաց կողկողաձայն 'ի լալիս ։
Որպէս հաւիկ ջամբ 'ի բերան դարձեալ 'ի բոյն յուղէշ ծառոց
Ետես ընդառն իւր աւերեալ յանգութ ձեռաց մանկանն հովուի
Որ զաղուաթև զմանկունս աւա՜ղ չողեաց տարաւ ճռուողաձայն ,
Նա հիւ եկեալ ման առեալ ընդ ըղձայրն ողբոց 'ի ճիչ
Ցաւարատուէն նենգաւորէ հազիւ և զանձըն ճողոպրեալ ։
Ընդ աղետս քոյին յախժամ և տառապարք չարժեալ 'ի գութ
Եւ անտառք հողմակոծեալք քոյդ լալօնից եղեն կցորդ ։
Իսկ մինչ յոգիս ապաատան հապճեպ 'ի վայրն եղեր ժաման
Եւ տեսեր կախեալ զփայտէն՝ որ սորեալ զաչսըն մահաքուն
Ցայս կոյս և յայն չըջչըջելով խնդիր յիւրոցըն անձկայրեաց
Ի խուռն անդ ատելեաց շուրջ պատելոց ահեղատատ ,
Ծունգք կըլթուցեալ անկար անդէն յերկիր նուաղեալ կիսամահ,
Եւ զերկընդխառն ըղձայտիւ յոգւոց հանեալ կարդայիր ·
« Ա՞յս էր ուրեմն առեալ երբեմն յերկնից զուարթ աւետիս ,
Եւ զբաւական աստուածային ինձ խոստացեալ պարգևաց ·
Ա՞յս ինձ պահէր երանութիւն 'ի մարց երամ որդւովք բեր-
կրեալ ·
Սա՞մպէս ուրեմն ծաղկեսցին փառք իմ 'ի դարըս ապագայս » ։
Երանի կարդայիր բիւր երանիս դու այնոցիկ
Որոց եհաս ողբալ զորդիս 'ի նախադուռն սեամս հաստակին
Եւ ոյց երկար սուգ տրտմութեան դոյզն ինչ ցաւոցըն դիւր
մատոյց ։
Անցաւո՜րք ճանապարհի ողորմելոյն դուք գութ ածէք ,
Առ ձեզ կարդայ մայրն եղկելի՝ լալահառաչ հեկեկանօք
Ցեղերամայրս ըղձացեալ զձեզ կոչելով յիւր աշխարան ,
Որ 'ի նոյն փայտ անպարտակիր որդւոյն ըղձայ գոլ մահակից ։
Եւ դուք բարձունք ամպածրատ ողորմեցէք և դուք հիքիս՝
Մի յեղակարծ դըղորդմամբ 'ի մայրն հուսկ դուք գահավէժ՝
Թէպէտ ուխտիւք զայն թախանձէ բազմիցս արկեալ ձեզ
պաղատանս ,
Գէթ լըրուեմն առնել թէ հնար ցաւոց իւրոց դժընդակ » ։
Այլ ոչ նոյնպէս անտես որդիդ ըզմայրդ առնէ նազելի ,
Թէպէտ 'ի մահ խոց վիրաւոր խանդաղակաթ ձայն արձակեալ,

Զայն ապիկար անզօր լանջաց՝ ուր ոխերիմք իսկ ոչ ժաժեն.
Եւ զմահաքուն ականողիս 'ի քեզ յառեալ օրհասական՝
Ճգնի հնարի 'ի դէմս անոյշ ըղձէրն յայտնել եռանդուն:
Իսկ դու լռիկ և մնջիկ զարտօսր 'ի ծոց ժողովելով
Ոչ ես առնես լսելի ոչ հեկեկանս և ոչ հառաչս.
Այլ անխօսուն ցաւք անբարբառ կտտեալ զսիրտ երկիծանեն.
Անդ քեզ փոխան աշխարհ բերրի ըզբարերարն իւր աշխարհէր,
Եւ 'ի հիմանց դղորդեալ երկիր և դողալով երերէր.
Արարատոյ պարեխք և ժայռք յանտես ուժոյ ցնցեալ հերձուն՝
Ի նշանակ մեծի ցաւոց սուգ ըզգեցեալ մահահանդոյն.
Տեսիլն յահեղ և երկին պղլադունեաց, ու անդէն և անդ
Արեգակն արփիաճեմ յամպս սքօղեաց զգլուխ գերապանծ,
Ի միջօրեայն նըսեմացաւ, և թուխ գիշեր պատեաց զաշխարհ՝
Արհաւիրս ածեալ ազանց թ' երկիրս սուզի յանլոյս խաւար:
Այլ սակայն ոչ ընդերկար ծնդեալ ծիւրիս Կոյս սգաւոր,
Զի 'ի ծագել երրորդ արփւոյն ընդ արշալոյսն առաւօտուն՝
Նա զդըժոխոց խաւարին զալուցս ներքինս հետազօտեալ
Եւ մահաուիլծ 'ի սուրերաց թափեալ զհոգիս արդարոց՝
Ոստեաւ 'ի բազմաց 'ի չիրմէն ըզվէմն թողեալ սին և թա-
փուր,
Քեզ նախ զառաջին յաստուածահրաշ դէմս երևեալ,
Ապա և այլոց զորըս ընտրեաց յառաջագոյն
Գործոյն մեծի գործակիցս վաստակակից իւրոց երկանց:
Զխմրդ ցնծացար արտասուախառըն խնդութեամբ
Ի սիրտ քոյին հրճուալից զուարթացեալ բերկրապատար
Զակնկալեալդ աներկմիտ նկատելով դէմ յանդիման:
Տես զխմրդ քոյդ անդրանիկ մերկեալ զմարմին մահկանացու
Զգեցաւ ըզփառս աստուածային իրան անախտ անապական
Համակ ճառագայթեալ արփիապանչ և հրաշափայլ:
Իսկ յետ աւուրց տեսեր ըզնա զերկիր թողեալ 'ի բացէ
Ի բարձունս վերամբարձ վարագուրեալ ամպածածուկ
Երկնից կացեալ ռահահորդ հիքացելոց մահկանացուաց:
Բայց ոչ լքեալ անօգնական թողու ըզքեզ նա յաշխարհէ՝
Ցորչափ ըզշունչ մահկանացու դու չնչեցես 'ի յերկրի.
Քանզի նա ինքն Ամենակալն կացցէ ըզքև հովանաւոր,
Եւ զօրութիւն Բարձրելոյն միշտ անմեկին զտիւ և զգիշեր.
Նորին 'ի թևս օժանդակ յարկածս չարեաց դու աներկիւղ

Ի մարմնի մանկանացու կենօք կեցցես երկնահանդէս ,
Մերթ յընթերցուածս տեսանողաց գաղտնածածուկ հին պատգամաց ,
Եւ մերթ հոգւով սլացեալ յերկինս յԱստուած մտօքըդ խորամուխ
Ամենակալ Որդւոյդ 'ի տես զմայլեալ 'ի սէրն աստուածահրաշ
Ի վայելս սիրոյ Նորին յաւէրժական հիացմամբ ,
Որ զուղխըս փափկութեան տայ քեզ ըմպել ուրախարար ։
Սակայն ահա օր զուարթ գալով և գայ և մերձենայ՝
Զի և դու լքեալ զերկիր յերկինս ուղղիս արփիազեղ ·
Եւ այն ինչ զաչըդ կափուցեալ 'ի քուն մահու հեզաբար՝
Երագաթռիչ շարժմամբ 'ի վեր կառավարես ընդ այերս՝
Ի քոցափայլ ճառագայթից արեգական վառ բոլորեալ
Նշուլազեղ ամպք ծիրանի ըզքև պատին հովանաւորք ,
Եւ յաջմէ և յահեկէ թռչին թռանին և ճախր առնուն
Դասք զուարթնոց թեւապարիկ աստեղազարդ երկնից համբակք ,
Եւ սրաթռիչ հոլաթեւեան 'ի թիկնամէջս ըզքեզ բառնան ։
Ըզքեզ ընդ ամպըս երկնաչու 'ի սուրբ բարձանց հիասքանչ
Տեսեալ և հրաշացեան մանկունք հովուացըն Եդովմայ
Ընդ ճանապարհ Նորահրաշ հետըս թողեալ արփիաճեմ ·
Զերդ Արշալոյս յԱրեւելից վերամբարձեալ յալեաց ծովու
Կամ Նոր լուսին վարդակարմիր ծագեալ 'ի փայլ ոսկեճամուկ ·
Այլ երկոքին իսկ քաջ 'ի բաց աղօտափայլ տան քեզ տեղի ·
Նա և ոչ իսկ արեգակն աղբիւր լուսոյ ճաճանչազեղ
Ընդ քեզ մրցել կարասցէ շուրջ պար առեալ ժամուք տուընջեան ։
Այսպէս մտեալ տարփալիդ յերկինս կայթիւք և պարուք
Զգանդիւնս երգոց դաշնակաւոր հնչեն և ամպք ցօղազին ·
Որպէս զակառն՝ 'ի շողալ հանդիպակաց լերանց բարձանց
Ի փայլ զինուց շաչ և շառաչ, թնդիւն թմբկին կուռ պղնձոյ ։
Անդ հինաւուրց աւագանին պարծանք ազգիդ մեծապանծ
Քեզ ընդ առաջ ընթանան , և տեսանողք հանդերձելոց
Որ ըղձալոցըն պատմեցին զքերկրեալդ յինքեանս ընդունելով՝
Ի բարձունս ածեն ըզքեզ ընդ զուարթնոց վերնոց երամս ·
ՄԱՐԻԱՄ գոչեն երանելեաց պարք լուսեղէն կամարին

ՄԱՐԻԱՄ կրկնեն և արձագանք 'ի վեհավայր տաճարին.
Եւ զանգիւն ծափածայնից հարուստ ընդ վայր որոտացեալ
Լնուն զերկինս նոր խնդութեամբ կատարելով տօն ցնծալից:
Անդուստ և Որդիդ սուրբ Ոլիմպեայ արքայն հզօր
Որ ընդ աջմէ Հօր բազմեալ զենթերս երկնից զեկավարէ՝
Խանդաղակաթ փարեալ ընդ քեզ և խոնարհեալ առ ընծայմբոյր
Զմայրդ ընդ ինքեան անլոյծ կապեալ 'ի սէր անման յա-
    ւերժական:
Անտի և Հայրն 'ի բարձրագոյն 'ի գահոյից վերացելոյ
Անթառամ սաղարթու ածէ զգլխովդ թագ պարծանաց
Եւ 'ի մահիկ ակնակուռ աստեղազարդ ածնէ զճակատդ,
Եւ զեր 'ի վեր զլսարթնոց ակումբ արկեալ յերկնից տաճար
Ըզքեզ Դշխոյ տիեզերաց հրամանատար կարգէ երկնից,
Ուստի զշրջանըս տեսանես սաղապաձեմ այսր աշխարհիս,
Նոյն և զլուսին և զաստեղս և զգունտ արփւոյն հրաբորբոք.
Եւ 'ի բարձանց անտի ժմտիս 'նդ երկրիս զանդաղ բեւն ա-
    նարդիլ,
Եւ ընդ անմիտ հոգս և վարանս զանդոյր որտի մահկանա-
    ցուաց:
  Ողջոյն քեզ Մայր որբասուն, ողջոյն քեզ Կոյս անհարսնա-
    ցեալ
Ի յուդայեան արենէ շառաւեղեալ արքայազարմ,
Զոր Հայրն ամենակալ հոգւով ելից աստուածային,
Եւ շնորհօք ճոխացուցեալ եդ զերազանց մարց համօրէն.
Որով և զմեզ ածեր կրկին ծննդեամբ 'ի լոյս աշխարհի,
Եւ 'ի լուսոյդ անտի և յոյս մեր փրկութեանս ծագեցաւ:
Պատրանաց կնոջն առաջնոյ ու ամօթապարտ կորանաց
Լուծեալ ըզվրէժ, և զազգ քոյին յաստեղս երկնից հանեալ
    'ի վեր,
Մինչ նախամայր մարդկութեանս և մայրն հանուրց օձապատիր,
Ինքն առաջին նախ եմոյծ յազգ իւր զմահուն զախտ ժան-
    տաբեր.
Իսկ յետ դարուց անցանելոյ դու Կոյս ածեր նախ զառաջին
Հիքացելոյ մարդկութեանս ըզփրկութիւն անախտ ծննդեամբ:
Խորասուզեալ նա աշխարհիս ետ զարտասուս՝ իսկ դու հըր-
    ճուանս.
Նա հողածնաց ած պատուհաս, իսկ դու նըմին վարձըս բարեաց.

Գեւ բացան դրունք երկնակամարք՝ զորս նա փակեաց արգասրոց՝
Ցօժաջամբ զարանս անկեալ 'ի սադրանաց խարամանուոյն՝
Զոր դու 'նդ ոտիւք յաղթական ջախջախեցեր ըզգլուխ նորին՝
Որ զուր գելեալ գալարի յաղթ քնթանոց վիշապաշունչ։
Նովին շնորհօք գերադրանցեալ հասեր Դշխոյդ յերկնից սահ-
մանս
Ոտահանորդ վհեա ընթացելոց թեւրաւորաց յազգէ կանանց
Որ յօրինեալ պարս ըզքեւ և փութացեալ 'ի տօնս վերնոց՝
Խառնեին յերամս երկնաճեմ յեթերական մեծ յապարանս։
Համայն էակք ամենուրեք ակնարկութեանդ կան և մնան.
Որպէս և մեք՝ յոր ձեռնհաս փառս և պատիւ քեզ նուիրեմք
Կանգնեալ 'ի ձօն սեղանս հարիւր, հարիւր բազինըս խնկա-
նուէրս,
Ընծայաբերք տաճարացդ կասին նարդոս անուշահոտ։
Ահա և մարք ըզճամկասոր արկանելիս արկեալ զանձամբ՝
Նուիրաբերք բեհեզոյ՝ նորախայրի ծաղկանց 'ի փունջ
Գան ըզտաճարս քո պճնել 'ի հովասուն սաղարթ ծառոց.
Որ և զորդեակս թոթովախօս մինչդեռ ըզքաւս յօդեալ ճգնին
Զանուանդ հնչել տալ նկրտին 'ի նախաձայն 'ի բարբառ,
Եւ համօրէն հասակք և տունք առնեն զովերգըդ ելևել.
Նա և չէնք իսկ և քաղաքք 'ի բարձրաբերձ աշտարակաց
Զքեզ ողջունեն յելս այգուն, և զքեզ 'ի մուտըս նորուն,
Ու որոտընդոստ հնչեն տաճարք բազմափողեան յանկի չեփոր.
Եւ թէպէտ դու անկարօտ երգոց ձայնից հողեղինաց՝
Այլ ոչ խոտեալ զարտլես զօրհներգութիւնս մանկանացուաց.
Եւ ուրախօր և կոչիս՝ լսես զաղերս օրհնաւորս
Ու արդահատեալ ողորմութեամբ զաղէտըս մեր բառնաս 'ի
բաց.
Վանեալ 'ի մէնջ տարադիր ըզարածութիւն և զախտըս ժանդ,
Ըզմարտս, ըզսով, զարկածս մահու և զերկնասաստ սպառ-
նալիս,
Ո՛վ ապաւէնդ 'ի վտանգաց մեզ թշուառաց ձեռնկալու։
Որպէս 'ի ծով անպարագիր ալեկոծեալ նաւավին
Պատսպարան կայ սատող պայծառ՝ զամ մի փայլէ թէ 'ի քեւռ՝
Այսպէս և լոյս քո գերափայլ առաջնորդէ մեզ անվկանդ
Ցամենայն արկածս կենաց կարեօք հասեալ 'ի մեր վերայ։
Հա՛պա ուրեմն աստղիկ ծովուս հաշտ ակնարկեա՛ 'ի մեզ այժմիկ,

Նսեմաստուեր թուխ կոհակաց սանձեալ զայսոց զապառնալիս .
Ծագեալ ըղձողդ և զարուսեակ լուսոյդ 'ի մեզ ցոլացո՛ ,
Եւ ողորմեալ աշխարհիս փարատելով զամպոց զուպար .
Մի՛ , աղաչեմ , անօգնական թողուր ըզմեզ 'ի վտանգիս :
Յայն որ յաստիս քեզ քաղցրագոյն և սիրելի միշտ եկաց՝
Յանուն որդւոյդ քեզ պաղատիմք 'ի գթաւական քոյ սիրոյդ .
Վասն լուսեանցդ որոց մածեալ ելաց Միջեաց ողջաքար ,
Եւ ըղձողիս իւր փափկիկ զուլամբդ արկեալ քո մայրենի
Փարեալ 'ի խնդրելս պնդապէս՝ քեզ բերն թեթև անուշակ ,
Ծըծեաց զծորանսըդ կաթնաւուն ողոյ սանդեաց աղածրի .
Վասն աղուական քերթանաց յողջագուրանս քաղցրահամբոյր ,
Եւ մանկական զբօսանաց , և որ ինչ այլ հոգ խնամոց
Զորս դու նըմին պաշտեցեր 'ի մայրենի սէր խանդակաթ :
Ընդոյն և արդ մասո՛ , Մայրիկ , առ սեամբս Հօրն աղաչաւոր .
Եւ թէ երբեք վասն յանցանաց զաչս իւր յերկրէս դարձուցանէ՝
Փութա՛ լինել հաշտարար զիջուցանել ըղհօր զայրոյթ ,
Զարժանահաս պատրաստեալ պատուհաս վասն մեղաց մեր
Քաւել ջնջել լուանալ ցօղով արեանն աղջողական :
Բիւրս վտանգաց եւ նկատեալ անդոհականս 'ի հեռուստ ,
Բիւր կատարածս ամայութիւնս այրացուեր բիւր քանդմունս :
Ահա ճիւաղքն հազարածին յանհեղ բանակ սպառնալից
Տագնապ խուճապ ածեն կուսեն 'ի գէն վառեալ՝ բազմորոգայթ՝
Զերկիր համայն 'ի հարկի յաւակնելով կացուցանել .
Մինչ մերքն որոց հարկ անհրաժեշտ ըղձէմ ունել զաղանին՝
Ամր ընդ ընկեր կազմին արքայք յարիւնըռուշտ մարտից զոռամունս ,
Ազգք և ազինք միահաղոյն բաղխեալք ժխեալս ռազմ յանօրէն :
Դու զայսքանի զմբաղ խուճապ վհատելոցս փարատեա՛ ,
Դու Սրբուհի 'ի դուլթ եկեալ անդորրութիւն մեզ շնորհեա՛
Եւ հաշտարար խաղաղութեան աղ կարկատեա՛ աշխարհիս :

(Ի Հռոմ 'ի 15 աւգոստոսի 1884).

| ԷՋ | ՏՈՂ | ՍԽԱԼ | ՈՒՂԻՂ |
|---|---|---|---|
| 3 | 15 | մայրն ալ | մայրերն ալ |
| 58 | 32 | 616 | 610 |
| 63 | 34 | Կէյվըլն | Նրէվըլն |
| 63 | 40 | Պիոսի | Քսեստոսի Դ. |
| 93 | 7 | Եւ Սողոս | Եւ Աւոս |
| 95 | 6 | համեմատ ։ | համեմատ [17] ։ |
| 95 | 18 | աղօթքն , | աղօթքն [19] , |
| 96 | 4 | երեկոյ ։ | երեկոյ [25] ։ |
| 111 | 29 | մոլար թզենեաց | մոլաթզենեաց |
| 115 | 22 | գերդաստինեան | գերդաստանին |
| 122 | 15 | կուսին | կուսին [1] |
| 157 | 6 | Ֆերսուզապատի | Ֆիրուզապատի |
| 161 | 15 | քեղ„ ։ | քեղ ̃„ ։ |
| 161 | 17 | քերթողեական | քերթողական և |
| 163 | 18 | Արրինիոս | Արմինիոս |
| 169 | 23 | հայեէնն | հայերէնն |
| 169 | 31 | odoriferasn | odoriferans |
| 175 | 13 | ցնծային | ցնծան |
| 187 | 1 | որ ծանր | որ ծանր ծանր |
| 217 | 9 | ստիպել էր | ստիպեալ էր |
| 238 | 19 | իւր տալն Յովսեփայ քոյրն | իւր ներն Յովսեփայ եղբօր կինն |
| 241 | 34 | էր | չէր |
| 251 | 21 | ձեռքն . | ձեռքն Ա. |
| 286 | 11 | Ս. Դիոմոս | Ս. Դիոմաս. |

